ԷՕԺԷՆ ՏԸ ՄԻՐՔՈՒՐ

# ՄԱՐԻՕՆ ՏԸԼՕՐՄԻ
# ԽՈՍՏՈՎԱՆԱՆՔԸ
ԿԱՄ
## ՊԱՏՄԱԿԱՆ ՏԱՐՓԱՆՔ

ԹԱՐԳՄԱՆԵՑ
Դր. ՉԻԼԻՆԿԻՐԵԱՆ

ՀԱՏՈՐ ԱՌԱՋԻՆ





Զմիւռնիա

ՏԷՐ ԵՒ ՀՐԱՏԱՐԱԿԻՉ
ԳՐԵԱՆ ՅԱՐՈՒԹԻՒՆ ՏԷՏԷԵԱՆ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՏԷՏԷԵԱՆ
1876

# ՄԱՐԻՕՆ ՏԸԼՕՐՄԻ

# ԽՈՍՏՈՎԱՆԱՆՔԸ



## Ա.

ՇԱԼՕՆ-ՍԻՒՐ-ՄԱՐՆԻ մէջ ծնած եմ, 1601 մայիս 15ին։ Հայրս՝ Գաբրիէլ Տըլօրմ՝ դատարանի ձիաւոր նուիրակ մ՚էր։ Իր գրեթէ բոլոր ժամանակը կ՚անցունէր շրջակայ գիւղերն ուղեւորելով, ուր կ՚երթար դատական հրաւիրագիրներ տանելու և վճիռներ գործադրել տալու համար։ Խիստ միջոցներն անախորժ էին իր հեզահամբոյր և խաղաղասէր բնաւորութեան, և բազմիցս դրամապէս օգնած էր այն աղքատ գիւղացիին զոր հալածելու կը բռնադատուէր անողորմ պարտատէրներէ։

Արդ մայիսի 15ին այս սիրելի մարդն իր նիհար մատաղ ձիին վրան հեծնելով մեկնեցաւ իր սովորական ուղեւորութիւններուն մէկն ընելու համար։

Կէս մղոնի չափ հեռանալէն ետք մեծաձայն աղաղակներով իր կանչելը լսեց։

Անմիջապէս ձիին սանձը դարձնելով տեսաւ որ կանչողն իր դպիրն էր. կոպիտ դէմքով, կարմիր մազերով, ոռնաձայն երիտասարդ պատանի մ՚էր այս դպիրը, որ այն ատեն խօսք կը տար Շամբայնեի տգեղագոյն բնակիչներուն մին և գաւառին ամենէն անմիտն ըլլալու։

Դպիրը կատարելապէս բանեց իր խօսքը։

— Ի՞նչ կայ, հարցուց հայրս՝ անզգամին վրդովւած դէմքը քննելով։

Բոլորովին շնչասպառ պատանիին տուած պատասխանն եղաւ կտրտուք խօսքեր և այլանդակ աղաղակներ։ Սակայն վարժապետը հասկցաւ թէ ինչ ըսել կ'ուզէր դպիրը։

— Լա՛ւ, լա՛ւ, ետևս հեծի՛ր, անսուա՛կ, և լռէ՛։

Առանց պատասխան տալու հնազանդեցաւ Յովսէփ Գամիւղար*․ այս էր դպիրին անունը։

Հայրս տեսնելով թէ ծանր էր պարագան, երկու կողմէն խթեց ձին՝ արշաւակի Շալօն հասնելու համար։

Սակայն ողորմելի գրաստը մոռցած էր արշաւակի երթը, կամ թերևս բեռին ծանրութեան ակընկալը շատ ներողութիւն տուաւ իրեն։ Ուստի յամառեցաւ կեցաւ, և ամենակատարեալ անշարժութեամբը բողոքեց իր տիրոջ չափազանց պահանջումներուն դէմ։

Գաբրիէլ Տըլօրմ թէև բազմիցս մտրակեց ձին և իր երկու ժանգահար խթանները անոր կուշտը մխեց, սակայն գրաստը փոխանակ քայլելու բազմիցս աքացեց որով քիչ մնաց հայրս վար պիտի գլորէր և որու պատճառաւ Գամիւղար վայնալի աղաղակներով ոռնաց։

Բայց աւելի մեծ դժբաղդութիւն մը պատահեցաւ. նոյն միջոցին եկաւ ճամբուն վրայէն անցաւ ուղեկառք մ'որ արագօրէն կը սահէր. կառապաններուն մտրակը և ձիերուն բոժոժները ահագին աղմուկ մը կը կազմէին։

Հեստ գրաստն այս պատրուակը առիթ սեպեց վերստին աքացելու. մէկ և նոյն ժամանակ սաստիկ կերպով մը շեղեցաւ, և Պ. Տըլօրմ իր դպիրին հետ քսան քայլ հեռի նետուելով ճիշդ հաճարի դաշտի մը մէջէն ընկան։

* Ֆրանսերէնի մէջ գամիւ կամ գամիւղար կոչուած ու պաքնով մէկը սու-նեցող կը նշանակէ։

— Սո՛ւրբ Աստուած, նայէ՛ խե՛ղճ մեղքերուն, ըսաւ պզտիկ և անոյշ ձայն մ՚որ կառքէն կը գար. կեցնել տուր կառքը, մար-քիզ, և տե՛ս թէ վիրաւորուած են արդեօք :

Ու և նոյն ժամանակ կնիկի հարցական գլուխ մը կ՚երևար կառ-քին դռնակէն, և կը լսուէր մարդու ձայն մ՚որ երկու սպասա-ւորներու կը հրամայէր վար իջնել և շուտով օգնութեան հաս-նիլ :

Սակայն հայրս արդէն ոտքի վրայ ելած էր : Բաղդիցս մարա-կեց Գամիւզարը՝ սանձելու համար զան որ իր օրինակին հետևի. բայց կառքին մօտեցաւ ամօթահար, կրցածին չափ ներողութիւն խնդրե-լով յարգի ընկերութեան մ՚առջև այնքան անշնորհ կերպով ձիէն վար գլտորուած ըլլալուն համար :

Ուղևորներուն մեծ խնդում տուաւ այն միամտութիւնն որով հայրս ներում կը խնդրէր :

Գաբրիէլ Տըլօրմ քաղաքաւարներու յատուկ կենսախրական քա-ղաքավարութիւն մ՚ունէր որ տոհմը պատահած ժամանակ շատ տարօրինակ կը դառնար առանց ծիծաղական ըլլալու :

Ուստի՝ երեք անգամ յարգանօք բարև տալէն ետք՝ և ուղե-լով իրեն ցոյց տրուած հոգածութեան փոխարէն իր շնորհա-կալութիւնը յայտնել՝ ծածկահասակ կնոջ ձեռքը բռնեց, որ պզտիկ, սպիտակ, քնքոյշ և փափկայոյն էր, և կառքին միւս կող-մը նստող անձէն արտօնութիւն ուզելէն ետք միայն շրթներուն մօտեցուց զայն :

— Համբուրէ՛, պարոն, մի՛ քաշուիր, ըսաւ տիկինը ժպտե-լով : Մարքիզն ամուսինս չէ. եթէ ամուսինս ըլլար, կը ցա-ւէր ըլլալուն . . . այնպէս չէ՞, Վիլարսօ :

— Ո՛հ, կոմսուհի, այդ կարծիքդ զրպարտութիւն մ՚է կիրթ Ժաշանկիս դէմ, և հիմա պիտի հաւտացնէք թէ միայն Շալօնի մէջ կը գտնուին գեղանի կանանց նկատող ասպետական զգա-ցումները : Բայց աղէկ միտքս եկաւ, բարեկամ, միթէ այս Շա-լօնի մէջ կը բնակիք :

— Այո՛, Պարոն մարքիզ :

— Այդ քաղաքին մէջ փոքր 'ի շատէ լաւ պանդոկ մը կը գտնուի՞։

— Հա՛, ըսաւ Հայրս, Թուլուզինին պանդոկը կայ. բայց պարզապէս խոհանոց մ'է միայն, ուր՝ ներեցէք որ ըսեմ, տիկին, թէ օր մը նապաստակի մսի տեղ կատուի միս կերցուցին ինծ։ Կայ նաև Խաչով–Մեռելի պանդոկն որու տէրը զուարթասէր անձ մ'է. անենոք գողութեան համար հինգ տարի թիավարութեան դատապարտուած է ան Թրոյի վերին ատեանէն։ Դեռ տասնուհինգ օր առաջ արձակուեցաւ թիարանէն։ Իր վրայօք ըսուածներուն նայելով հիմա խիստ պարկեշտ մարդ մ'եղեր է ան, սակայն ես չեմ վստահիր իր պարկեշտութեանը։

— Եւ ո՛չ ես, ըսաւ տիկինը։ Ուրեմն շարունակե՛նք մեր ճամբան, մօրքիզ, և վաղը լաւագոյն կերպով պիտի հանգչիմ ապարանքիս մէջ։

— Բայց անշուշտ կատակ կ'ընես, տիկին կոմսուհի, ըսաւ Վիլարսօ։ Երկու օրէ և երկու գիշերէ 'ի վեր արշաւակի ճամբորդութիւն կ'ընենք. Սթրազպուրկէն մեկնելէս 'ի վեր դեռ բան մը չդրի բերանս.

— Դուն աստանկ ես միշտ, Վիլա՛րսօ։ Ձեռս ամենայն որկրամոլութիւնդ այդպէս ցոյց տալու։ Ըլլի՛ր ուրեմն Թուլուզինին պանդոկը, քանի որ քիչ մ'առաջ Թանկագին տեղեկութիւններ տուեցան քեզ այդ պանդոկին խոհանոցին նկատմամբ։

— Թերևս, ըսաւ Հայրս, տիկին կոմսուհին և պարոն մարքիզը առանց իջնելու պատիւը կը շնորհե՞ն ինծ։ Սեղանս անշուք է, բայց երկու պատուական անկողին ունիմ։

— Կեցցէ՛ Տէրը, ճշմարիտ բարեբաղդութի՛ւն մ'է ասի։ Կը հաւանիմ. . . ։ Հապա դո՛ւն, կոմսուհի՞։

— Ես ալ կը հաւանիմ, ըսաւ կոմսուհին իր սիրուն ժպիտովը։

Սակայն այս ժպիտը, ինչպէս նաև մարքիզին քաղցր նայուածքը, սարսռինակ կերպով մը Գաբրիէլ Տըլորմի մտքին շփոթութիւն կը տար. Հայրս պարզապէս կը մոռնար պահ մ'առաջ դպիրէն առած լուրը։

Մարգրիտին մէկ նշանին վրայ հայրս կառքը մտաւ՝ կառապաններուն գոչելով.

— Տէ Գորսօ փողոցը, մեծապատիւ դատաւորին դրան դիմացի կողմը . . . ։ Կեցցէ՛. մե՛նք ալ իրեն պէս պալատական անձեր պիտի ընդունինք։

Եւ արշաւակի մեկնեցան սաստիկ շուարած ձգելով Յովսէփ Գամբուզարը։

Դուքին ապուշի մը պէս ճամբուն վրայ կենալէն յոգնած, թեւերը կախած և բերանը բաց էր երբ իր տիրոջ անհնազանդ գրաստը բռնեց սանձէն, ապա երկուքը միասին ճամբայ ելան ագարակի ախոռն երթալու համար։

Հայրս անհնարին ուրախութեամբ համակուած էր։

Գիտէր այն ատեն թէ իր տանը հրաւիրուող կինը Սէնթ-Էվրըմօնի կոմսուհին էր։ Տիկին կոմսուհին այրի էր և դեռ բոլորովին պատանի աղայ մ՚ունէր. կոմսուհին Գերմանիայէն կը դար ուր գացած և մեծ ժառանգութիւն մը գտած էր, և Պ. Վիլարսօ՝ իր եղբօրորդին ըլլալով՝ այս ուղեւորութեան մէջ իր ընկերն ըլլալու ամենամեծ շնորհը ըրած էր իրեն։

— Կարգուած ես, հարցուց կոմսուհին հօրս։

— Ա՛հ, Աստուա՛ծ իմ, գոչեց Գաբրիէլ Տըլօրմ, որուն յիշատակները յանկարծ գրգռուեցան այս հարցումէն։

— Է՛, ի՞նչ կայ, ինչո՞ւ կը տժգունիս, սիրելի հիւրընկալս։

— Առանց պատճառի չէ, տիկին . . . ։ Երեւակայէ՛ անգամ մը . . . բայց ո՛չ, ըսել կ՚ուզեմ թէ . . . ։ Ա՛հ, Աստուա՛ծ իմ, Աստուա՛ծ իմ։

— Բայց վերջապէս խօսէ՛, ի՞նչ կայ։

— Սակայն խենդ չեմ, տիկին . . . ։ Արդեօք սա անիծեալ անկումն է . . . Թերեւս այս է պատճառը . . . ։ Ասկից 'ի զատ մարդս սակայ չունենար այսքան շնորհագեղ անձերու հանդիպելու բարեբաղդութիւնը։ Խոստովանեցէք թէ ներելի է շփոթիլս։

— Պիտի խոստովանիմ մանաւանդ, սիրելի հիւրընկալս, թէ հանելուկներ ըսելու մասին զարմանալի քաջութիւն մ՚ունիս։ Յիմարես չէ՞, մարքիզ։

— Ցիրուն, քոյր Վիլարոզ, ես չեմ ուզեր այդ հանելուկները գուշակելու աշխատիլ։ Ինձ նայէ, բարեկամ, քաղաքավարի դէպ 'ի նուիրակը դառնալով՝ որ ձեռքովը ճակատը կը շփէր յուսահատաբար, եթէ ես կ'առնու խօսքդ, պէտք է ըսել. մեզի տունդ կ'ընդունիս թէ չես ընդունիր։

— Բա՛յց է, պարոն մարքիզ... բա՛յց է, տիկին կոմսուհի, այս օր տունս պիտի ընդունուիք այնպիսի կերպով որ ձեզ արժանի չէ։

— Բայց ինչու համար, չըսե՞ս։ Բացատրութիւն տո՛ւր ուրեմն, գոչեց Վիլարոս, բարկանալու պատրաստ։

— Վասն զի... վասն զի կնիկիս աղայաբերութեան ցաւը բռնած է....։ Մոռցեր էի։

— Հա՛, հա՛, հա՛, գոչեց կոմսուհին ահագին քրքիջով մը կառքին բարձերուն վրայ ընկնելով. պզտիկ՞ե, շքեղ մոռացկոտութիւն. կը պաշտեմ այդ յիշողութեան տկարութիւնը....։ Հա՛, հա՛, այս երիկներն աշխարհիս մէջ ամենուրեք իրարու կը նմանին....։ Իր կնկան ծննդաբերութեան վիճակի մէջ ըլլալը մոռնալ. յիրաւի իր տեսակին մէջ շքեղ է այս մոռացումը... բայց, շարայարեց կոմսուհին՝ հովահարովը հօրս մտերմաբար զարնելով որ նոյն պահուն խիստ ողորմելի կերպարան մ'առած էր, տարի մեզի տունդ չընդունելու պատճառ մը չէ։ Հանդարտէ, սիրելի հիւրատէրս....։ Պէտք է յոգնութեան դիմանալ, կամ համակերպիլ այդ կերպով ընդունուելու։ Զաւկիդ կնքամայրը պիտի ըլլամ, և Վիլարոսն ալ չպիտի մերժէ անոր կնքահայրն ըլլալը։

— Ի՞նչ, մրմռաց Գաբրիէլ Տըլօրմ, տիկին կոմսուհին պիտի հաճի... պարոն մարքիզը պիտի հաճի՛...;!

— Այո՛, շարայարեց կոմսուհին ատենը մենք պիտի վճարենք, շքեղ կոչունք մը պիտի տանք. Վիլարոս ասպարեզի մը պէս հոգ պիտի տանէ, շա՛տ պիտի զուարճանանք։

Եւ ահա կոմսուհին ծափ կը զարնէր, մարքիզը ատամներն կը խնդար, իսկ հայրս՝ ամօթահար՝ իր երախտագիտութիւնը կը

ներուն, պայտաւոր մուճակներուն, ժապաւէնաւոր գաւազանին, հովուական տղին ու ցուպին հետ եկաւ։ Այս դաշտային հանդերձանքն ամենևին պակաս մը չունէր։

Գեղջուկին առաջին գործն եղաւ ամենուն ալ կարգաւ ոտքի փայտէ տեսակ մը զամբիւղ երկնցնել։

Իր աչերը փողփողեցան երբ մարքիզուհիին նրբազեղ մատներուն մէջ տեղէն երկու ոսկիի ադրբիլը տեսաւ։ Պ. տը Վիլարսօ իր ուղևորութեան ընկերուհիին վեհանձնութեան օրինակին հետևեցաւ, և միւս ամեն հանդիսականներն իրենց ընծան տուին։

Ուստի այդէն դիւրին էր տեսնել թէ կախարդը ստակիս համեմատ պիտի մարգարէանար իմ նկատմամբ։

Նախ գլուխս, ձեռներս և ոտներս քննել տուաւ։ Մարմնոյս այս անդամներուն ամէն մէկը սաստիկ ուշադրութեամբ մը քըննուեցաւ անորմէ։ Այս իր ժապաւէնաւոր գաւազանը և հովուական ցուպը օրորանիս վրայ դրաւ խաչաձև, պատուհանը բանալ տուաւ, և լուսնին ու աստղերուն նայեցաւ, միանգամայն մեկուսի և ինքնին չգիտեմ ինչ սատանայական պաղատանք մ'ընելով։ Ետքը քովս եկաւ նորէն. գաւազանը և ցուպը վերստին առաւ, արագօրէն շրջան մը գծեց օրորանիս բոլորտիքը, և իր պատգամը գաւառին բուն գռեհիկ բարբառովը տուաւ։

Այս պատգամը իմանալի խօսքով թարգմանելու հրաման կ'ուզեմ։

«Այս մանկիկը, ըսաւ կախարդը ծանր կերպով մը, տասն ու հինգ տարիէն Եւրոպայի և թերևս բոլոր աշխարհիս գեղեցկագոյն աղջիկը պիտի ըլլայ։ Աստղերը կ'իմացնեն թէ արքունական պալատին մէջ պիտի փայլի և մեծ իշխանի մը կինը պիտի ըլլայ նէ։ Հզօր անձերու թշնամութիւնը պիտի գրգռէ իրեն դէմ, պիտի փախչի թագաւորութեան երկրէն, և այն ատեն իր կեանքը բոլորովին խորհրդաւոր պիտի դառնայ։ Դարէ մ'աւելի պիտի ապրի. Հատ տարիներ անցնելէն ետք պիտի գիտցուի անոր ուր և երբ մեռած ըլլալը»։

Իւրաքանչիւր ոք սկսաւ խնդալ.

« քով. ձեռքէս օրհնած ջուրը ընդունիս, առաջարկութեանցս » քեզ հաճելի ըլլալը ինձ իմացուցած պիտի ըլլաս »։

— Անամօթ, գոչեցի ի բոլլի՝ տոմսակը բարկութեամբ ճզմելով։

Աչերս արտասուքով լեցուեցան, և այս առաջին անհաճութիւնը տառապեալէս վշտացուց սիրտս։

Սիրադիրներ ընդունելու ախտէն զիս ընդ միշտ բժշկելու ծառայած լաւ և խիստ յատուկ դաս մ'էր այս, սակայն օգուտ չքաղեցի այս դասէն։

Յամօթ իմ կը պարտաւորիմ խոստովանիլ, նոյն օր սիրականէն առջին նամակին մէջ հագուստիս նկատմամբ պարունակած կատակներն ամէն բանէ աւելի վիրաւորեցին զիս։

Սակայն վշտամանքն այս կատակներուն մէջը չէր։

Ընթերցողն ինչպէս կը գուշակէ, երեկոյեան ժամադրութեան չգացի։

Բայց այն օրէն սկսելով գիշերներուս մէկ մասը կանոնաւորապէս գործի յատկացուցի քիչ մը ստակ վաստկելու համար, որուն ոչ ոք կարենար խառնուիլ, և միտքս դրի այս ստակը պաճաճանացս քանի մը փոփոխութիւններ տալու գործածել։

Սիրագրին հեղինակին միտքէն անցած էր բնաւ զիս վշտամանել. անշուշտ ստուգապէս կը սիրէր զիս. այս թեթև ու միանգամայն լիրբ դարձուածներով կը յուսար բարձր գաղափար մը տալ ինձ իր հանճարամտութեան նկատմամբ։ Ճշմարիտ հաճոյք մը զգացի զինքը նորէն դպրոց ղրկելով, որպէս զի սորվի ուրիշ անգամ լաւագոյն կերպով լարել հրապոյրի ծուղակները, և խորամանկութեամբ գերեւելի այն ամէն հնարները զոր պէտք զիս առնելու և մեղմելու համար։

Յանդգնեցաւ երեք կամ չորս նոր նամակ սահելու ձեռքս։

Իր աչքին առջև պատռեցի այս նամակները, և որովհետև ազատիլ ալ ես չէր կրնար իր հալածանքներէն, եղելութիւնը ծնողացս իմացուցի։

Գաբրիէլ Ցըլօրմ անմիջապէս գնաց ոստիկանը գտաւ և գան-գատեցաւ:

Ցարդի պաշտօնակալը սաստիկ և երկար յանդիմանութիւն մը տուաւ իր քծնասէր ոգւոյն, և այս կերպով լիովին վրէժս առի . . . . մեծ-մօրս հնաձև բոպայիկն փոխարէն:

Սակայն այս դէպքն իր օգուտն ունեցաւ, որ էր անձնական արժէքս ընտանեաց նշմարել տալ և զգուշացնել ծնողքս այն վտանգներէն որոնց կրնայի ենթարկուիլ:

Հաւանեցան նշմարելու թէ աղուոր էի:

Այն օրէն սկսելով կանոնաւորապէս հսկողութիւն մ'եղաւ քայ-լերը դիտելու և առաքինութիւնս ձախողանքէ ազատ պահելու համար: Ծնողքս այս հսկողութեան ճամբան բռնելէն ետք ալ կը պարտաւորէին վեր նայիլ միայն՝ ազատ կամ անազատ հորի-զոնին վրայ ամուսնութիւն մը տեսնելու համար:

Այս բանս իսկ խիստ շուտ տեղի ունեցաւ, և հայրս օր մը զիս իր խուցը կանչեց որու սեմն ատենօք արգիլուած էր ինծի:

Հայրս աղաչեց որ նստիմ, և նախ ըսաւ ինծ.

— Սիրելի աղջիկս, ուզող մ'ունիս որ ինծ կը դիմէ:

Այս անակնկալ խոստովանութիւնը սարսուռ տուաւ ինծ: Ան-դամ մը հօրս նայեցայ, նայուածքս որ կիսովին հետաքրքիր և կի-սովին վեհերոտ էր: Իր դէմքին հանդիսաւորութիւնը խիստ ան-կատակ խօսակցութիւն մը կը ծանուցանէր, և իր ծխախոտին մուխը ծծելով կլլելուն յամր և խորհուն կերպէն կը յայտնուէր այնպիսի մարդու մը մտատանջութիւնը, որ իր պատճառաբանու-թեանց զօրութեան նկատմամբ խիստ ապահով չըլլալով իր դե-ղահատը խօսքի ձևերով ոսկեզօծելու կ'աշխատի:

— Այո՛, կրկնեց, կ'ուզեմ կարգել քեզի:

— Որո՞ւ հետ, հայր իմ:

— Ի՛նչ շուտ կը խօսիս. համբերէ: Որո՞ւ հետ, կը հար-ցնես. կը նայիմ որ անհամբեր ես: Ահա սանկ են աղջիկնե-րը: Որո՞ւ հետ, կ'ըսեն քեզ:

— Բայց բաւական բնական է այդ հարցումը:

— Չէ՛, Մարիոն, չէ՛. Հայր մ'իր զաւակներուն մէն հարգելու պէս ծանր խնդիր մը յուզելէ առաջ՝ խնդիրին յարմարութեան և օգտակարութեան վրայ որոշում մ'ըրած կ'ըլլայ: Ուստի խելացի և խոհեմ աղջիկ մը փոխանակ «Որմէ հեռու» պատասխանելու, կը պարտաւորի «Պատրաստ եմ» պատասխանը տալու: Այս երկու պատասխաններուն մէջ ամբողջ աշխարհ մը կայ. մէկէն կը հասկցուի թէ աղջիկը կարող է չհնազանդելու, իսկ միւսն անսահման հլութիւն և անձնուիրութիւն ցոյց կը տայ:

Դժուարին էր բարի գուշակութիւն մ'ընել այս յառաջաբանէն:

— Սակայն, հայր իմ, համարձակեցայ ըսելու երերուն ձայնով, չես կրնար հետս կարգուիլ ուզողին անունը ինծի գաղտնի պահելու նպատակը ունենալ:

— Մտիկ ըրէ՛, Մարիոն, պատասխանեց Գաբրիէլ Տըլօրմ՝ աթոռս իր հոլանտական կաշիէ հին թիկնաթոռին քովը քաշելով և ձեռքս բռնելով գորովանօք, բարի աղջիկ մ'ես դուն, և քու վրայ ունեցած գորովագին սիրոյս նկատմամբ բնաւ կասկած ունեցած չես, այնպէս չէ՞:

— Ամենևին չկասկածեր եմ, հայր իմ:

— Ծառանիկ կը յուսահատէի եթէ երանութիւնդ և ապագադ վտանգի մէջ դնէի: Քեզի ուզողն է յարգի, հանգարտ, աշխատասէր տղայ մ'որ խելքի և դէմքի կողմանէ թերևս չունի . . . :

— Սո՛ւրբ Աստուած, գոչեցի իւրովի, Գամիւզա՛րն (տափաքիթն) է ուզողը:

— Աղէ՛կ գտար, ըսաւ ա՛չքիս մէջը նայելէ զգոյշ կենալով: Ապա սկսաւ ցցամատը և բթամատը իր ծխատուփին մինչև տակը խօթել՝ կերպարան մ'առնելու համար:

— Ես կը կարծեմ, հայր իմ, թէ այնպիսի հրէշի մը կինը պիտի ըլլամ:

— Լռէ՛. Ցովլէզիը քիչ մ'առաջ դիւանապետին տունը ղրկեցի. Ժամկան երկար չէ. կրնայ հոս դառնալ և վրայ հասնիլ յանկարծ:

— Թո՛ղ գայ, հոգս չէ. Պատրաստ եմ իր երեսին իսկ այսօր,

վաղը, ամէն օր ըսելու թէ կ'ատեմ, կ'արհամարհեմ զինքը, թէ երբեք իր կինը պիտի չըլլամ. . . : Երբե՛ք, երբե՛ք, երբե՛ք. . . : Ո՛ Աստուած, ո՛րքան դժբաղդ եմ:

Այս բարկալի պատասխանէս ետք սկսայ արտասուել:

Հայրս՝ շուարելով վայրկենէ մ'աւելի կանգ առաւ առանց խօսք մ'ըսելու ինծի:

— Մարիօ՛ն, ըսաւ վերջապէս, Մարիօ՛ն, ինչո՞ւ կը լաս, սատրիկ կը վշտացնես զիս . . . . : Ցոմլէփ ոչ այնքան տգեղ է որքան կ'ուզես կարծել:

— Ո՛չ այնքան տգեղ է, սո՛ւրբ Աստուած:

— Լռէ . . . , : Ցիրաւի, կը խոստովանիմ թէ գեղեցիկ չէ. . . : Սակայն մօտ ժամանակներս ժառանգութի՛ւն մը ստացաւ, սիրելի աղջիկս: Իր հօրեղբայրներուն մին՝ որ Վիթրիի մէջ կը բնակէր՝ քսանուհինգ հազար ֆրանքի մօտ ժառանգութիւն մը թողուց անոր, և հիմակուան ժամանակս դրամը բան մ'է:

— Այսպէս զիս շահո՞ւ կը զոհես, մռմռացի հեծկլտալով հանդերձ:

— Թո՛ղ որ շարունակեմ: Խելահասութիւնդ սկսելէն 'ի վեր կրցար տեսնել թէ քանի՛ անգամ թշուառութեան մօտ գտնուեցանք: Հիմա կը ծերանամ, և ապագան սարսափ կը տայ ինծի: Կնքամօրդ սատկը կը կենայ, աղջիկս. լումայ մ'անգամ չառինք այն ատակէն և ոչ իսկ այն օրերն ուր ամենամեծ էր մեր չքաւորութիւնը: Այսօր դրամագլուխը կրկնապատկած է. վայելուչ օժիտ մ'է այն, և եթէ կը մերժես Գամիւզարը, երբոր ուզես, ապահով ես քեզ աւելի ախորժելի ուրիշ ամուսին մը գտնելու . . . . : Այո՛, ազատ ես, կատարելապէս ազատ ես . . . . : Սակայն մայրդ, եղբայրներդ և քոյրերդ ինչ պիտի ըլլան: Նուիրակի պաշտօնս, որ յաջախորդ չունի ամենևին, երբ հարիւր ֆրանք չարժեր. սակայն Ցոմլէփ տասնութ հազար ֆրանքի պիտի գնէ այն պաշտօնս, եթէ հաւանիս հետը կարգուելու:

Զարմացման շարժում մ'ըրի.

— Այո՛, Մարիօն, տասնո՛ւթ հազար ֆրանքի. Մեծ հարստու-

թիւն մը չէ այս․ բայց վերջապէս մօրդ և քոյրերուդ հետ պատուաւոր կերպով ապրելու կը նպաստէ ինձ այս գումարը։ Գանք եղբայրներուդ․ Գամիւզար իր քովը պիտի առնէ Անդրանիկը։ Ամենէն պզտիկը եօթը տարեկան հասակը մտնելու վրայ է, նաւի մանուկ պիտի ընեմ զինքը։ Կրտսերը՝ Ֆրանսուան՝ զինուորական պիտի ըլլայ, և հարկաժողովը խօսք տուաւ ինձ առջև քշելու Էօսթաշը։ Տղայ զաւակներէս երեքը պիտի մնան, որոնց գլուխին պիտի ըլլայ ինձ վայելուչ պաշտօն մը գտնել։ Քոյրերդ մեռնելէս ետք պիտի կարգուին, կամ չպիտի կարգուին, և չկարգուելով աւելի երջանիկ պիտի ըլլան։ Արդ, Մարիօն, անկեղծաբար կը խօսիմ քեզ թէ բոլոր ընտանեաց բաղդը ձեռքիդ մէջն է։

Այս խօսքերը սաստիկ յուզեցին զիս։

— Ուրեմն, հայր իմ, պիտի ընեմ ինչ որ լաւ պիտի թուի քեզ․ սակայն թողունք Գամիւզարը և իր խնդիրը։ Ինչո՞ւ ես ըլլամ հարցուողը և ոչ թէ Ժագըլինը, Իւրսիւլը, Ժօզէֆը և Սիւզօնը։ Յիրաւի աղուոր արհեստ մ'է ամուսնութիւնը․ ամեն ինչն առջին անգամ մը զաւակ մը, շատ անգամ երկու զաւակ ունենալ․․․ կ'երդնում թէ չեմ ախորժիր այդ արհեստէն։ Օժիտս քոյրերուս և իմ աշխատութեան հետ միանալով պիտի բաւէ ծերութեանդ օգնելու։ Ի՞նչ հարկ կայ Գամիւզար մը խօթել մեր ընտանիքին մէջ։ Հիմա համաձայն ենք, այնպէս չէ՞, հայր իմ։

— Չէ՛, աղջիկս, չէ՛։ Յիկլին կոմսուհիին ձգած գումարը մասնաւոր բանի մը սահմանուած է, առանց կնքամօրդ հաւանութեան ոչ դուն և ոչ ալ ես ազատ ենք ամենափոքր փոփոխութիւն մը տալու այդ սահմանուած իրողութեան։

— Բարիզ նամակ մը գրենք, և հարցունենք անմիջապէս․ շատ դիւրին բան է այս։

— Մտքէդ մ'անցուներ այդ բանը․ այդպիսի հարցում մ'ընելն իմ կողմէ նուաստութիւն ու միանգամայն խայտառակութիւն մ'է։ Կոմսուհիին սակը քեզի համար պարգև մ'է․ իսկ հօրդ

համար ողորմութիւն մը կ՚ըլլայ: Անկից ՚ի վեր կը պարտաւորիմ ըսել թէ Յովսէփին խնդիրն այնքան շահաւէտ եղաւ մեզ որ մայրդ և ես խօսք առինք իրեն: Գուշակեր էի դիմադրութիւնդ, ինքնին որոշեր էի անօգուտ ըլլալ, այլ սակայն դարձեալ որոշումներս տակնուվրայ կ՚ընես: Քանզի՝ ինչպէս միշտ՝ խելքս անկրաւ է սրտիս առջև:

— Հա՜յր իմ, բարեսի՛րտ հայր իմ:

— Այո՛, կը շայես զիս . . . : Սակայն ինչ ընելիքս չգիտեմ: Յովսէփ արդէն դրամ փոխ առաւ մեզ. հարկ պիտի ըլլայ ետ դարձնել այդ դրամը, և իմացնել իրեն թէ անկարելի չէ քեզ այս ամուսնութիւնը: Մայրդ կրակուբոց պիտի կտրի. կ՚ուզէ՛ հարիւր ոտք գետնին տակն անցնիլ:

— Լա՛ւ ուրեմն, գոչեցի, պէ՛տք է խօսամանկել:

— Խօսամանկե՛լ . . . բայց ինչպէս:

— Հիմա կ՚ըսեմ քեզ: Սակայն նախ և առաջ Պ. Գամիւզարին պահանջումները մտնենք: Ինչ որ ալ պատահի, երբէք չպիտի կարգուիմ այդ հրէշին հետ:

— Խե՛ղճ տղայ. ո՛րքան չարաչար կը վարուիս իր նկատմամբ:

— Փա՛ռք Աստուծոյ, բնաւ տիկին Գամիւզար չպիտի ըլլամ:

— Լա՛ւ, լա՛ւ: Հիմա տեսնենք թէ ինչ միջոցով պիտի յաջողիս մեր տունին հանդարտութիւնը չվրդովելու:

— Լռէ՛, ըսի, շուրթերուս վրայ դնելով մատերուս մին:

Նոյն միջոցին դուռը բացուեցաւ: Յովսէփ ետ եկած էր:

Հայրս աժգունեցաւ: Իր դէմքին բոլոր գիծերը ծայրայեղ շփոթութիւն մը կը յայտնէին:

Բայց ես՝ առանց բնաւ շփոթելու ուղղակի գացի Գամիւզարը դիմաւորեցի, և համեստութեամբ արտեւանունքս գոցելով ըսի.

— Պա՛րոն, խնդրեցիր հետս ամուսնանալ. պահ մ՚առաջ իմացայ խնդիրդ, և պահանջումներդ պատիւ կը սեպեմ ինծի: Եթէ այսօրուանէն իսկ չեմ կրնար որոշ պատասխան մը տալ քեզ, դէթ կրցածիս չափ պիտի աշխատիմ որպէս զի թէ՛ քու և թէ՛ իմ շահերուս նպաստաւոր որոշում մը առնուած կարելի եղածին

չափ շուտով։ Գիտես որ օժիտ տուած է ինձ Սէնթ-Էվրըմօնի դքսուհին, որ կնքամայրս է. ինծի համար պարտ մ'է իմացնել անոր այս ամուսնական նպատակը և յարգանօք խնդրել իր հաւանութիւնը։

Այսպէս խօսելէն ետք ամենաշնորհալի ձևով մը բարև տուի։

Գանփուզարին այտերը իր մազերուն գոյնը առեր էին։

Դուքսն իր ոսկեայ գաւազը մատերուն միջև ճզմելով քաղաքավարական չգիտեմ ինչ ծիծաղաշարժ խօսք մը մռմռաց, որմէ ետք երկրորդ անգամ ակնածական բարև մը շնորհեցի իրեն. ապա հօրս ականջին խիստ շուտով փսփսացի.

— Այս կէտը բանենք կենանք. միւս ամեն բան ես իմ վրայ կ'առնում։

Միանգամ հայրս սաստիկ կը զարմանար։

Թողուցի զինքը որ իր գաղիրին շնորհակալութիւններուն և երանգաղին ուրախութեանցն ենթարկուի, ապա փախայ սենեակս մտայ ուր երկու կամ երեք հարիւր ուղղագրական սխալներով հեռաւոր նամակը գրեցի տիկին տը Սէնթ-Էվրըմօնին։

Այն ատենէն 'ի վեր առած դասերս թոյլ կը տան ինծի սրբագրել նոյն նամակին բնագիրը։

» Տիկին և սիրելի կնքամայր,

» Անկից գրեթէ տասնուվեց տարի առաջ բերլինեան կառքէ մը
» Շալօն-Սիւր-Մարն կ'իջնէին աղքատ և անշուք ընտանիքի մը
» զաւակին կնքամայրն ըլլալու համար։ Բարեգործութիւններդ ո-
» րորանս շրջապատեցին, և աղօթքիս մէջ ամեն բանէ առաջ քու
» անունը օրհնեցի։ Եթէ երբեմն միտքդ բերիր սանուհիդ, սա
» ես խիստ շատ անգամ աշխատեցայ քու մէկ պատկերդ երևա-
» կայելու որպէս զի կարենայ իր սրտին մէջ պահել զայն։
» Մեծ աղջիկ մ'եմ, տիկին. աղուոր կ'երևամ ամենուն, խիստ
» անպիտան աղջի մ'անգամ որ հօրս քով կ'աշխատի։ Միտքը
» փոխեր է. կարգուիլ հեռս. իր այս դիտաւորութիւնը շատ կը
» վշտացնէ զիս։

» Ամուսնութիւնս բոլոր ընտանեաց երջանկութեան պատճառը
» պիտի ըլլայ, կ'ըսուի. դժուարին է հաւտալ այս երջանկու-
» թեան, վասն զի հարկաւ իմ դժբաղդութեան պատճառը պի-
» տի ըլլայ այն։ Այս նեղ պարագայիս մէջ քեզ կը գրեմ,
» սիրելի կնքամայր։ Բարեհաճէ հրաման տալու ինձ որ գամ
» հօրս հետ այցելութիւն ընեմ՝ քեզ. մեր հետը պիտի բերենք
» զիս ուզողը, և երբ անգամ մը նայիս իրեն, իսկոյն և բացար-
» ձակապէս պիտի հակառակիս սանուհիիդ նկատմամբ իր ունե-
» ցած դիտաւորութիւններուն։ Այս տղուն ամեն բանը, անունն
» անգամ տգեղ է։ Սակայն զրկելու պատրաստանդ այնպիսի կեր-
» պով մը գրէ որ հաս ոչ ոք կասկածի թէ հետը կարգուիլ չու-
» զելս քեզ իմացուցած եմ։ Եթէ կը տեսնես կնքահայրս, խըն-
» դրեմ՝, ցոյց տուր իրեն այս նամակս, և ըսէ թէ որքան երջա-
» նիկ կ'ըլլայի եթէ կեանքս քու և իր քով անցունէի։
» Կատարելապէս անկեղծ յարգանաց մնամ, սիրելիդ իմ կնքա-
մայր,

» Սիրեցեալ սանուհիդ
» ՄԱՐԻՕՆ ՏԸԼՕՐՄ»

Նամակատունը յանձնուեցաւ այս գիրը, և սանուհիոյն օրէն ետք չքեղ պահարանով նամակ մ'առինք. հայրս Գամիւզարին և մեր ընտանիքը կազմող բոլոր անձանց առջև բացաւ այս նամակը։

Նախ պահարանէն հինգ հարիւր ֆրանքի փոխանակագիր մը ինկաւ որ քաղքին առաջին սեղանաւորին վրայ քաշուած էր։

Կոմսուհին հետևեալ պատասխանը տուած էր.

» Բարեկամս և սիրելի Մարիօնս, շնորհակալ եմ մօտալուտ
» ամուսնութիւնդ ինձ իմացունելուդ համար, և ընտանիքդ ան-
» շուշտ արժանապէս ընտրած է այն մարդը, որու պիտի յանձ-
» նես բաղդդ։ Սակայն, սիրելի որդեակ, ամուսնութիւնը ծանր
» և հանդիսաւոր բան մ'է. մտածելու պիտի հրաւիրեմ՝ եթէ քեզի
» և փեսայուն տեսնեմ՝ որպէս զի քեզ ալ, անոր ալ խոհեմա-

» Թեան խրատներ տամ: Ճամբու ծախույ համար հարկ եղածը
» ահա կը ղրկեմ: Գ. Տըլօրմ ձեր հետը պիտի գայ, և 'ի գար-
» նին պիտի ամուսնանաք:

» Եկո՛ւր ուրեմն, սիրելի Մարիոնս, եկո՛ւր, ու հարսանեկան
» տարազդ, և առ այժմ ընդունէ՛ կնքամօրդ ամենադորովալի համ-
» բոյրը»:

Պատուական էր այս նամակը:

Երբ Գաբրիէլ Տըլօրմ աւարտեց ընթերցումը, ամենասաստիկ ուրախութեան եռանդներով համակուեցայ, և Գամիւղար ևս առանց բան մը գուշակելու՝ ամեն տեսակ ուրախագին ցոյցեր կ'ընէր:

Վաճառանաւը հետևեալ օրը կը մեկնէր: Հայրս պիտի երթար երեք տեղ բռնելու: Ուղևորութիւնը չորս օր կը տևէր:



## Գ.

Ապրիլի վերջին էինք: Անձկան պայծառութիւն ունեցող երկինք մը կը լուսաւորէր մեր մեկնելու օրուան առաւօտը:

Մայրս մինչև նաւն ուղեկից եղաւ մեզ եղբայրներուս և քոյրերուս հետ. աղմկարար, ցատկռտող, խայտացող ուղեկիցներ որք այտերս լափեցին 'ի նշան երթաս բարևի:

Անոնք յոյս ունէին թէ քիչ օրէն վերստին պիտի տեսնէին զիս ազնիւ կնքամօրս աղւոր պարգևներովը զարդարուած:

Եղբայրս Էօսթաշ, զոր միւսներէն աւելի կը սիրէի, եկաւ համբոյրներուս յանձնեց իր խարտեշագեղ սիրուն գլուխը, և իր այտերը շուրթերովս բռնած կեցայ՝ զատուելու ոյժը չունենալով: Սիրտս չգիտեմ ինչո՛ւ վշտաբեկ էր բոլորովին: Նախազգացում

մը կը գուշէր ինձ թէ վերջին անգամ կը համբուրէի մայրս, և այս նախազգացումը չէր խաբեր զիս։

Ա՛լ չէի պարտաւորեր նորէն տեսնել ծննդեանս քաղաքը, այն վայրերը որոնց կը յարէին մանկութեան յիշատակներս, հայրական տունը, այն բարձր չինէան որու ընդարձակ վերարկուին ներքև կը պատսպարուէր բոլոր ընտանիքը, տուսախէ օրհնեալ Քրիստոսը, մեծ Թիկնաթոռն որու վրայ երեք սերունդ նստած էր, ծաղկահասս աղջկի յատուկ սենեակս, պզտի ննջարանս ուր այնքան ազատ երազներ տեսեր էի, սպիտակ վարագոյրներով պատուհանը ուսկից առտու արեգական զուարթագին ճառագայթները սպրդելով զարթումս կ՚ողջունէին, պարտէզին բաղեղով բոլորովին ծածկուած պատը, վերջապէս այն հին կնձնիները, որոնց գլուխը կը նշմարէի մեր տան մօտերը գտնուած և աստիճանապէս շարուած պայծառաշէն տուներուն վերևէն։

Նաւն արդէն կը քալէր։

Մայրս միաս բարևի վերջին նշանս առած էր։ Գետեզրին երկու կողմէն բարև կը տրուէր մեզ. խաղախորդներն և լաթ լուացող կիները բարեյաջող ճամբորդութիւն մը կ՚մաղթէին մեզ։

Ես յուզալի խորհրդածութիւններ կ՚ընէի։ Խանաւ աչքս եկեղեցիին զանգակատան վրայ կանգ կ՚առնուր. Մարն գետին բարձրաբերձ կաղամախիներուն ետևէն զանգակատան անհետևոյթ ըլլալը կը դիտէի. Երբ կամուրջին կամարներուն տակէն կ՚անցնէինք, կարծեցի թէ գետին տրամագին մրմունջներ հանելը կը լսեմ. երկու կողմէս ուռիներուն իրենց ոստերը կը ծռէին տրամաղէս, և կը լսէք աղօթիին Թիգ-Թագը, միանձև և մեղմ ձայն որ հեռանալով կը նուաղէր մինչև անլսելի ըլլալը։

— Եթէ չեմ սխալիր, կը լայ, օրիորդ, ըսաւ յանկարծ բիրտ և անախորժալէս հնչող ձայն մը։

Վեր ըրի աչքերս, և Յովսէփ Գամիւզարը տեսայ։

Այս հանճարեղ դիտողութիւնը ինձ ուղղելու համար Գամիւզար գիջաւ հեռանալու տեսակ մը կոշտ սեղանէ որ նաւին տախտակամածին վրայ հաստատուած էր, և որու վրայ պահ մ՚ա-

առաջ չգիտեմ ինչ ըմպելիք խմած էր Հօրս և ուրիշ ճամբորդներու հետ:

Իր տեսքը բաւական եղաւ ուրիշ կարգի վերաբերող խորհրդածութիւններ ներշնչելու ինձ:

Այս ուղևորութեան միակ պատճառն ինքը չէր: Ուրեմն ցաւիլ այնպիսի քաղքի մը վրայ ուր պիտի բռնադատուէի այսպիսի էրիկի մը հետ կարգուելու:

— Ա՛խ, պարոն, ըսի ես հրելով Գամիւզարը, կ'աղաչեմ, մի՛ այդքան մօտէն խօսիր հետս:

Հայրս կեցած տեղէն լսեց, և համաձայնութեան նայուածքով ինձ նայեցաւ անգամ մը:

— Եկո՛ւր, Յովսէփ . . . . : Գնա՛ քովէն, քանի որ այդքան փափուկ է . . . . : Ձու՛զեր արդէն քովի օղի խմելու . . . . : Աղէկ, բայց ինչ ըսենք մինչև ճամբորդութեան վերջը:

— Աղէկ ըսիր, տէ՛ր, պատասխանեց Գամիւզար աղուշի պէս բարձրաձայն խնդալով:

Եւ սկսաւ նորէն խմել:

Գամիւզար իբր փեսացու ծնողացս հաճելի ըլլալով մեր հետն առնելի մտերմական յարաբերութիւն ունենալէն 'ի վեր իր վրայ նշմարեր էինք ինչ ինչ պարսաւելի միտումներ որոնց համարձակապէս հետևեցաւ, այն օրէն սկսելով ուր Հօրեղբօրը թալէռները իր ձեռքն անցան իբր ժառանգութիւն:

Շատ անգամ անոր գինովութեան մօտ վիճակի մը մէջ մեր տունը գալը տեսեր էինք:

Մայրս խստիւ կը յանդիմանէր զինքը. սակայն բարեհամ նախրանքը, որ մեղսակից եղած էր բոլորովին, Գամիւզարին բազդական յօժարութիւնները տալելով կը զուարճանար, քաջ գիտնալով թէ կնքամօրս առջև մեզի անիրաւ ցոյց տալու չպիտի ծառայէր Գամիւզարին ինչպէս միւս նշանակէս և այս հանգամանքը:

Ուստի տրտմութիւնս փարատեր էի, և հետաքրքրութեամբ կը քննէի նաւը, ինչպէս նաև ուղևորները:

Վաթսուն ոտք երկայնութեամբ և տասնութ ոտք լայնութեամբ

ծանր նաւ մ'էր այն ։ Պարաններու լծուած վեց ուժեղ ձիեր գետեզրէն կը քաշէին զայն ։ Տեղ տեղ կը փոխուէին ձիերը, և օրը դիւրութեամբ տասներկու կամ տասնուհինգ մղոն Ճամբայ կ'առնուէր ։ Նաւին տախտակամածին վրայ վրանի ձևով գրուած վարագոյրներ կային ուղևորները արևէն պատսպարելու համար ։ Երբ գէշ ըլլար օդը, նաւին ներսի կողմը կը պատսպարուէինք, ուր էր. հասարակաց սենեակը․ այս սենեկին բոլորտիքը կարգաւ բազմարաններ կային ։

Ամենքս երսուն Ճամբորդ էինք ։

Աջ կողմս Սուրբ-Բենեդիքթոսի միաբաններէն ահագին վանական մը կը խորդար ։ Նաւը Ճամբայ ելած ժամէն իսկ կարելի եղածին չափ հանգստաբար տեղաւորուած էր քնանալու համար ։ Իր քովը ուրիշ երկու բենեդիքթեան կրօնաւորներ իրենց աղօթքը կ'ըսէին, և աւելի հեռի տեղ մը խմբուեր էին տասներկուքի չափ Շամբայնեի գիւղացիներ կամ արջառի վաճառականներ, որք սարեայ գտակներ, մինչև կէս ծունկը կոճկուած երկայն կօշիկներ ունէին, նաև տեսակ մը գորշագոյն կրկնոցներ որոնց մէջքի կողմին վրայ կաշիէ գօտի մը կապուած էր ։

Ձախ կողմս դառնալով երեք բաւական առոյգ գիւղացի կիներ տեսայ որք Բարիզ կ'երթային մեծատուն մանկիկներ ետ տանելու համար ։

Առջևս սեղանին քով միշտ նստած կը կենային Գաբրիէլ Տըլօրմ և իր դպիրը Շալօնցի բազմաթիւ մարդերու հետ, և անոնց ետևը բազմարանի մը վրայ՝ որ խցիկիս դիմացի կողմն էր՝ դարձեալ դայեակներ, վանականներ և կղերանոցի երկու աշակերտ նստեր էին․ ասոնց քովը կը կենար չորաբեկ և դեղնագոյն քահանայ մը, անաչառ պահնորդ մ'որու յօնքը կ'ամփոփուէր երբ խեղճ երիտասարդները դէպ իմ կողմս կը դարձնէին իրենց աչքը։

Նաւին տէրը ղեկին քովը կը կենար ։

Իր կինը՝ որ անձնեայ, զուարթ, կաս կարմիր և գունդի մը պէս բոլորակ էր՝ թևը կողով մ'առած՝ նաւին տախտակամածին մէկ ծայրէն միւս ծայրը ծանրապէս ոստոստելով կը վազէր, գի-

նի, օղի, ոչխարի գլուխ, կարկանդակ և խոզի սխտորուտ խճող վառելու համար։

Այս ամեն բաներն անհաւատալի տեսարան մը, բազմադիմի անլուր խառնուրդ մը, հետաքրքրական խառնաշփոթութիւն մը կը կազմէին։

Տարօրինակ բզզումով մը կը վարակուէին ականջները։ Վաճառականը կը խորդար միշտ, իր եղբայրակիցներն իրենց աղօթքը կը մրմնջէին, գիւղացիներն իրենց գռեհիկ բարբառովը կը հայհոյէին, ըմպողները կը տրընքէին (trinquer), մանկիկները կը լային և գայլուկները կ'երգէին։ Աւելցուր այս ամենուն վրայ խորին քրթմնջիւն մը, աղաղակներ, նաւին կուշտերէն ելնող ողորմագին մայումներ (bêlement) զոր խաւարին վանդակի մը մէջ խառն 'ի խուռն դիզուած և իրենց լեզուովը օդ և անջրպետ պահանջող խոզերը, սագերը, ոչխարները կը հանէին, և ահա գաղափար մը կ'ունենաս այն սոսկալի նուագահանդէսին վրայ որ ձրիաբար կը տրուէր վաճառանաւին մէջ։

Այսպիսի գումարումի մը ծիծաղելի հանգամանքը եթէ 'ի բաց առնուի, համբորդութիւն ընելու հաճելի ու միանգամայն հանգիստ կերպ մ'էր այս։ Գարնան այն միջոցին բոլոր ծառերը կը ծաղկէին։ Քամին շրջակայ դեղձիններէն և կեռասենիներէն սպիտակ և վարդագոյն պզտի կօրօլներ—* երամ մը գողնալով մեր գլխին վերեւը կը բերէր։ Հոն հոս բնական զմայլելի վայրեր երեւան կ'ելնէին։ Աւատական հին աշտարակները բլուրներուն վերեւը կանգնած կը տեսնուէին. ապա յանկարծ հովանաւոր ծառերու անտառի մը մէջէն դուրս կ'երեւային աւելի ժամանակակից դղեակներ, մեր առջև ցոյց տալով իրենց փայլուն աղիւսներով ճակատը, բարձրաբերձ աշտարակիկները և սրածայր քիւերը։

Դիմացի կողմն նստող կղերանոցի աշակերտներուն մին փոքր 'ի շատէ կը յաջողէր 'ի դերև հանելու աբբասին խիստ հսկողութիւնը, և ժամանակ առ ժամանակ վեհերոտութեամբ ինձ կը

* Corolle. Ծաղկանց առէջքէ և դուրսի անմիջական պատուածքը։

նայէր, ուսկէ խիստ բնականաբար հետեւցուցի թէ հաճելի կ'երեւայի իրեն։ Անձամբ բաւական բարեձեւ, եւ քումայթ պատանի մ'էր այս քահանայացուն. ապահով եմ թէ աւելի աղէկ պիտի երթային իրեն կրկնոցն եւ սուրը քան թէ կղերական փողպատն եւ փոքր օձիքը։ Կը տեսնէի որ իր համրիչին հատերը վրդովալի կերպով մը կը չարչարէր, եւ իր կուրծքէն յաճախ հառաչներ դուրս կ'ելնէին։

Կղերանոցի աշակերտին այս յուզումն երկնային երանութեան վերաբերող խորհրդածութենէ՞ մ'առաջ կը գար թէ ոչ այս աշխարհիս ուրախութեանց մասնակցելու փափաքէ մը։ Այս մասին ետքը պիտի պարտաւորինք որոշ պատասխան մը տալ։

Օրն արագօրէն անցաւ, եւ իջեւանելու համար Էրըրնէյ հասանք։

Արդէն բազմութիւն կար այն օթեւանն ուր իջանք։ Միայն երեք անբնակ սենեակ կար։ Այս սենեակներուն առաջինը եւ երկրորդը մենք բռնեցինք. կղերանոցի աշակերտներն եւ իրենց մենտորը երրորդը բռնեցին, իսկ գայեակները պարտաւորեցան նաւը մնալու, ուր նաւաստիներն անոնց յարդ տուաւ անկողնի տեղ գործածուելու համար։

Գիւղացիներն ալ յաջողեցան այլուր տեղաւորուելու, եւ վանականներն իրենց ուխտին վերաբերող վանքի մը մէջ բնակարան մը գտան։

Մեծ փափաք ունէինք ընթրելու. սակայն պանդոկին սրահը լեցուն էր, սեղանն ալ գրաւուած էր երկու երիտասարդ եւ շքեղ բարիզցիներէ որք կոչունք կը տային քաղաքին քանի մ'երեւելիներուն։ Սրուակներուն խիցերն աղմկալի պայթումով մը կը հանուէին, գինին լայն բաժակներու մէջ կը փրփրէր, եւ Աստուած գիտէ թէ լեզուներն ինչպէս կը փափաքէին սեղանակիցներէն վրէժ առնուլ ասոնց անժուժկալութեան պատճառաւ։

Սրահին մէկ անկիւնը տեղաւորուելէն ետք յաջողեցանք քիչ մ'ուտելիք բերել տալու եւ մեր ստամոքսը գոհ ընելու մօտակայ սեղանակիցներուն ժխորին համբերելով։

Սակայն անոնց խօսակցութիւնը մեր հետաքրքրութիւնը գրգռեց սաստիկ։

— Խաչար, պարոններ, կ'ըսէր անոնց մին, իր բաժակը սեղանին զարնելով, կը պնդեմ թէ Պիրօնի մարէշալն ամենէն մեղադրուելու օձիր մը չունէր։ Անրի Թագաւորն այս գործին մէջ ներելի չէ։

— Խղճիս վրայ կ'երդնում թէ շատ զարմանալի է այդ պնդումդ։ Միթէ չյիշուեցան մարէշալին ձեռքովը ստորագրուած դաշնագիրն որով Սպանիայի և Սավոյայի խօսք կը տար կռուիլ իր հայրենեաց դէմ։

— Իրաւ է։

— Պիրօն մատնիչ մ'էր։

— Թող այնպէս ըլլայ, կրկնեց ուժղնութեամբ առաջին խօսողը. բայց քանի որ Անրի Չորրորդ անունը առած էր, իր գթութիւնը հաստատելու առիթն էր այն գործը։ Պիրօն առենօք հաւատարմութեամբ ծառայած էր իրեն, և մարէշալին եղբայրը, այսինքն Արման տը Կօնթօ Ճիշդ այս կողմերը Էբրնէյի պաշարումին ժամանակ պատերազմելով մեռաւ օգնելու համար միապետին որ իր գահը վերստին ստանայ յաղթութեամբ։

— Չէ, ես չէ կ'ըսեմ, կը լսէք. չի՛ք գթութիւն մատնիչներու, գոչեց ոռնալով հսկայաձև մարդ մ'որ միայն խնք երեք մարդու տեղ կը բռնէր սեղանին քովը, Անրի Դ. անիրաւութիւն չըրաւ անգութ երևալովը, և եթէ Լուի երեքտասաներորդի կողմն ըլլայի, առանց դեդևելու անմիջապէս կախել կը տայի այսօրուան մատնիչները, այսինքն այն ցեհենապարտ իտալացիները զոր մեր մայր-թագուհին անմտաբար կը պաշտպանէ Լուվրի պալատին մէջ։ Օ՛հ, լեցուցէ՛ք բաժակս . . . վասն մահուան Գօնչինիներու*։

Այս խօսքերը սոսկալի արձագանք մ'ունեցան։

Գրեթէ բոլոր սեղանակիցներն ոտք ելան հրայայտ աչերով. քանի բերան միահաղոյն աղաղակեցին.

— Իրաւո՛ւնք ունի. այն անիծեալ օտարականները Գաղղիան կը կործանեն։

* Ռիշլիէօյի ֆերդինանդը կարմիր անձերու հայերէն անունն է։

— Թոյլ կը տրուի անոնց որ տէրութեան գանձը վատնեն։
— Որ ժողովուրդին քրտինքը խմեն։
— Կործանի՛ մայր–Թագուհին և իր սիրելիները։
— Թո՛ղ կախուի մարէշալ Տանդրը։
— Մեռնի՛ Կալիկային։

Երկու բարիզեան ասպնջականներն ամենէն բան մը չէին ըսեր այս ամեն ժխորին ժամանակ։ Դիւրին էր զանազանել այս երկու երիտասարդները՝ իրենց հագուստը դիտելով որ գաւառաբնակներուն հագուստէն խիստ շատ աւելի մաքուր և աղուոր էր, դիտելով վայելչասիրութեան այն տեսակ մը դրոշմը որու հետքն անոնց փոքրագոյն շարժումներուն մէջ կ'երևար։

Ան՝ որ միւսէն աւելի դեռահաս կ'երևար՝ յամրաբար ոտք ելաւ, նշան ըրաւ լռութիւն պահանջելու համար և սկսելով խօսիլ քաղցրանման ձայնով մ'որ հեգնութեան յայտնի շեշտ մ'ունէր, ըսաւ.

— Պարոններ, քաղաքական խնդրոց վրայ շատ նուրբ և շատ փափուկ նշմարումներ ունիք։ Կը համարձակիմ ըսելու, և մտերմագոյն բարեկամս Տէմարէ տը Սէն–Սօրլէն իսկ կրնայ հաստատել թէ Բարիզի մէջ այս խնդիրներուն վրայ այդքան ճիշդ դատողութիւն և խորունկ դիտողութիւն եղած չեն։ Կարծեմ ամենքդ ալ համաձայն էք այն պատիժին նկատմամբ զոր ադան կամ անագան հարկ պիտի ըլլայ կրել տալ մարէշալ Տանդրին և Լէօնօր Կալիկային որ իր սիրելի և արժանապատիւ կինն է։ Ուրեմն կրնանք ուրիշ նիւթերու վրայ խօսիլ։ Ես շատ կողմնակից չեմ վիճաբանութեանց, մանաւանդ հացկերոյթի մը միջոցին։ Արդ կը հարցնեմ ձեզ. թէ ինչո՞ւ կերուխումի ուրախութիւնները վրդովենք վէճերով։

— Ճիշդ է այս պատճառաբանութիւնը, ըսաւ սեղանակիցներուն մին։

— Երբ բաժակները կը լեցուին, երբ գինին կը փրփրի, գոչեց ատենաբանն ոգի առնելով, ուրախալի խօսքեր, ազդուութեամբ հանճարեղ բաներ, կսկծալի կատակներու և աղուոր պա-

տախտակներու սեղատարակի մը պէտք է ։ Սեղա՛ն նստինք, պարոններ. պէտք է որ խնդանք, երգենք, զբօսանքի և սիրոյ վրայ խօսինք . . . ։ Կը խմե՛մ մեր սիրուհիներուն՝ կենացը ։

— Մեր սիրուհիներուն կենա՛ցը, կրկնեցին միւս բոլոր սեղանակիցները ։

— Եւ ահա, շարունակեց դէպ ինձ նայելով, մինչդեռ դուք, պարոններ, քաղաքականութեան բարձր կողմերն ելնելով կորսուեր էիք, ամենեւին չէիք նշմարեր հոս, այս սեղանին քով, երկրիս վրայ սիրոյ ամենէն գեղեցիկ հրեշտակը և այն երկու սեւաթոյր մեծ աչերը որոնց նմաններուն հեշտալի երազի մը մէջ փողփողիլը չտեսած էք բնաւ ։

Երիտասարդն իր աթոռը ետ հրելով մեր սեղանին մօտեցաւ ։

Ես կարմրած էի և ամօթահար կը մնայի ։

Գամիւզար ծաղրելի կերպով մը բերանը կը բանար և կը լուէր ։ Հայրս՝ տպշելով այսքան նոր տեսարանէ մը բան մը չէր գտներ խօսելու ։

Աքանչացման շշուք մը կը շրջաբերէր սեղանակիցներուն մէջ, սրահին ամեն անկիւններէն երեսիս կը նայէին որ աժգունելով կը տգեղնար ։

Երիտասարդն ամենաշնորհալի կերպով մը բարև տուաւ և անթերի քաղաքավարութեամբ մ'ըսաւ ինձ.

— Հանգիստ եղէ՛ր, օրիորդ, մեր մէջ յարգանք և մեծարանք պիտի գտնես միայն ։ Կը փափաքիս ճանչել ձեր չորս կողմը գըտնուող անձերը. այս քաղաքիս վերին ատենին խորհրդականներն են այս պարոնները. ընկերս՝ Սէն-Սալէն և ես՝ կոչունք կը տանք իրենց 'ի պատիւ դատի մը զոր հոս վարելու եկայ . . . ։ Ազնուութեամբ ինձ շահեցուցին այն դատը ։ Փաստաբան եմ, օրիորդ. անունս է Ժագ-Էմմանուէլ Վալէ Տէ Պարօ, և վաղը Բարիզ կը վերադառնամ դատին բարեյաջող ելքը իմացնելու պաշտպանելոյս որ տիկին տը Սէնթ-Էվրըմօնն է ։

— Տիկին տը Սէնթ-Էվրըմօ՛ն ։

Հայրս, Գամիւզար և ես միասին հանեցինք այս աղաղակը ։

— Այո՛, Սէնթ-Էվրըմօնի կոմսուհին, երկնային և շնորհալի կին մ'որ սակայն կ'սկսի պառաւնալ. մե՛ղք։ Այս կողմերս եօթը կամ ութ հարիւր հազար ֆրանքի արժողութեամբ կալուածներ ունի....։ Բայց, ըսէք ինձ, ի՞նչ է ձեր զարմացման պատճառը. չէ՞ք կարծեր թէ տակաւին շատ պզտիկ եմ և հետևաբար դանա մը վարելու անկարող։

— Ներեցէ՛ք, ըսի յուզուած ձայնով մը, զարմացայ, վասն զի տիկին կոմսուհին կնքամայրս է, և Բարիզ կ'երթամ զինքը տեսնելու համար։

— Ի՞նչ գեղեցիկ, ի՜նչ զմայլելի դիպուած. տիկին որ Սէնթ-Էվրըմօն կնքամայրդ է....։ Ուրեմն ամեն ժամանակ պիտի կրնամ իր տանը մէջ ձեզ հանդիպիլ....։ Աղէկ մտածելէն ետք կ'որոշեմ վաճառանաւով երթալ Բարիզ...։ Միայն ինձ կը պատահին այս բարեդէպ յաջողութիւնները։

Անզգամն երկու ձեռներս կը բռնէր և եռանդագին կը համբուրէր։

— Կեցի՛ր, կեցի՛ր, պարոն, կեցի՛ր, ըսաւ Գամիւզար, ու միանգամայն Տէ Պարօն քաշեց թեզանիքէն։

— Ի՞նչ... ի՜նչ կ'ըսես... ո՞վ է աս, հարցուց վերէն վար Ցօվսէփին նայելով, և խիստ անամօթ կերպով մ'աչքը թարթելով։

— Ասի՛, պատասխանեց Գաբրիէլ Տըլօրմ, ասի աղջիկիս հետ կարգուիլ ուզող մ'է։ Առանց աւելի հեռի երթալու ուզեցինք նախ այս պարոնը տիկին կոմսուհիին ցոյց տալ և այս ամուսնութեան հաւանիլը խնդրել։

— Բի՛ւր ներումն կը խնդրեմ...։ Հրաշալի զաւակի մը հայրն ես, և այդ յատկութեամբդ իրաւունք ունիս պահանջելու որ կատարելապէս յարգենք և պատուենք քեզի, ըստ փաստաբանը։ Իսկ այս պարոնը որ պահ մ'առաջ թեզանիքէս բռնելով քաշեց զիս....։ Բայց աղէկ միտքս եկաւ, ի՞նչ է անունը։

— Ցօվսէփ Գամիւզա՛ր։

— Գամիւզա՜ր . . . խի՜ստ աղւոր անուն մը։ Իսկ Պ. Գամիւզարին (Տափաքթին) գալով, կ'ըսեմ թէ զի՞նքը ցոյց տալ ուզելուդ պատճառը կը հասկնամ. . . ։ Ցիրաւի աղջիկդ առնուլ ուզող այդ պարոնն արժանի՛ է տեսնուելու։ Վկայ են ըսածիս հոս գտնուող այս ամեն անձերը։

Սեղանէն աՀագին քահքահ մ'ելաւ։

— Խնդալու բան մ'ըսի՞, հարցուց Տէ Պարօ, նորէն իր խօսուածքին այնպիսի անկատակ ձև մը տալով որ ես անգամ խաբուեցայ։ Եթէ Պ. Գամիւզար անձամբ բոլորովին գեղաձև չէ, փոխադարձաբար խիստ . . . պարկեշտ տղայի մը կերպարանը ունի։ Անշուշտ պիտի հաւանի բաժակ մ'ընդունելու և մեր հետը տրինկելու վասն շնորհալի գեղուԹեան իր ապագայ կնոջ։

Ցովսէփը իր տկար կողմէն բռնել էր փաստաբանին այս առաջարկուԹիւնը։

Պահ մը Ցովսէփին շուրԹերուն ճերմկիլը և իր աչքին բարկուԹեամբ շողալը տեսեր էի. սակայն երիտասարդին յանկարծ անկատակ կերպով մը խօսելէն խաբուեցաւ։

Ընդունեցաւ իրեն առաջարկուած բաժակը։ Գաբրիէլ Տըլօրմ նոյնպէս բաժակ մ'ընդունեցաւ, և ահա Շալօնի առեններն նուիրակն և իր գպիրը սկսան տրինկել Էրըրնէյի վերին ատենին խորհրդականներուն հետ։

Այս պարոնները հաճեցան բուր անգամ Թախանձել զիս որպէս զի հաւանիմ. հացկերոյԹին սեղանը նստելու։ Մերժեցի. վասն զի հոն չէր իմ տեղս, և ինձի համար պատրաստուած սենեակն երԹալու պատրաստուեցայ։

Անտիական փաստաբանն ետևէս եկաւ մինչև սրահին դուռը։

— Օրիո՛րդ, մրմնջեց ցած ձայնով, քեզի չափ գեղանի, քեզի չափ պաշտելի բան մը տեսած չեմ բնաւ։

— Պարո՛ն . . . ։

— Շնորհք ըրէ՛, մի՛ սրդողիր։ Ամենևին անկարելի է որ տիկին ըլլաս Սէնթ-Էվրըրմօն հաւանի . . . ։

— Կը կարծե՞ս, ըսի. ես ալ այդ յոյսը ունիմ։

Եւ արժանապատուութեամբ ու քաղաքավարութեամբ կեցիր բարևի ակնածական ձև մ'ընելով մեկնեցայ սրահէն ։

Այս ամեն պարոնները գիշերն 'ի բուն խմեցին ։ Փաստաբանն կատարելապէս զգլխեց Ցովսէփը ։

Երբ նաւը մեկնելու պատրաստ էր, հարկ եղաւ դպիրը հոն փոխադրել և հասարակաց սենեկին ճիշդ մէջ տեղը երկնցնել այն յարդերուն վրայ զոր դայեակները ձգեր էին ։ Օդն առջի օրուան պէս պայծառ ըլլալով ուղևորները նաւին դուրսը տախտակամածին վրայ կեցան, և Ցովսէփին այս վիճակէն ոչ ոք նեղութիւն կրեց ։

Կը խորհէի դիպուածին վրայ որ կոմսուհիին մտերիմ ճանչուորներուն մին առջևս կը հանէր ճամբուս վրայ ։

Մեծ մարդերու կենցաղավարութեան փորձառութիւնը տակաւին չունենալովս, բնազդումս միայն ցոյց կը տար ինձ այս պարագային մէջ ինչ կերպով վարուելու պարտաւորիլս ։ Սիրուն կ'երևար ինձ այս երիտասարդը, սակայն եթէ թեթևութեամբ վարուէի հետը, իրեն արտօնութիւն տուած կ'ըլլայի' մեր ուղևորութեան վերջը' գործածելու ինչ ինչ ընտանեկան կերպեր որոնցմէ կնքամօրս առջև պիտի չախորժէի ։ Ամեն բանէ առաջ ուզածս էր պզտիկ անձիս նկատմամբ կնքամօրս խիստ նպաստաւոր կարծիք մը տալ, որպէս զի անմիջապէս դատս վաստկէի Գամիւզարը մերժել տալով ։ Երկար ատենէ 'ի վեր պատրաստեր էի պաշտպանողական միջոցներս. կոմսուհիին փաստաբանն իսկ խիստ պատեհութեամբ պիտի գար գանգատներուս իրաւունք տալու իր վկայութեամբն և հաստատելու հետս կարգուիլ ուզողին տմարդի անժուժկալութիւնը ։ Յաջողութիւնը կասկածելի չէր ։

Երբ Պ. Տէ Պարօ եկաւ բարև տալու ինձ նաւին տախտակամածին վրայ, ուզեց առջի օրուան պէս արձակ համարձակ կերպով խօսիլ հետս ։ Ցուրտ քաղաքավարութեան մը սահմանէն դուրս չելլայ ամենևին ; և հասկցուցի իրեն թէ հարկ էր վարուիլ հետս եթէ ոչ իբր մեծ տիկնոջ մը, գէթ իբր պարկեշտ և խոհեմ աղջկի մը հետ ։

Բոլորովին շուարելով հեռացաւ և նաւին միւս ծայրը գնաց խօսակցելու համար իր բարեկամին այսինքն այն անձին հետ զոր Սէն-Մօրլէն անուանած էր։ Հայրս սքանչացաւ վարմունքիս վըրայ, և ներումն խնդրեց գիշերուան զեղխութեան մասնակից ըլլալուն համար։

— Այս երիտասարդները վտանգաւոր են, ըսաւ, խոհեմութիւն կ'ընես զանոնք հեռու կեցնելովդ։ Երեկ ասոր համարձակութիւնը բերանս կը գոցէր։ Ձեռներդ պագաւ .'. . . ։ Այո՛, բայց թո՛ղ հիմա գայ դարձեալ. . . ։

— Կ'աղաչե՛մ, հայր իմ, զգոյշ կեցի՛ր, ես պիտի կրնամ կատարելապէս ինքզինքս պաշտպանել։

— Անշո՛ւշտ, Մարիօն, անշո՛ւշտ։ Բարի սկզբունքով դաստիարակեցինք քեզի, և ոստիկանին տղուն դէպքը հաստատեց մեզ թէ կրնաս զգոյշ կեցնել զանոնք. սակայն, աղջիկս, գիտնաս որ այս տեսակ կատաղիներէն ·որքան շատ զգուշանաս, քիչ է։ Եթէ լսած ըլլայիր անոնց խօսքը. ինչ խօսքեր . . . ։ Կ'երեւայ թէ Բարիզի մէջ անթիւ տարփուհիներ ունին անոնք։

— Իրա՞ւ։

— Հապա ս՛ուտ կ'ըսեմ. համարձակապէս իրենց տարփուհիներուն անունները կը տան։ Միայն պզտի սեւը, այսինքն Պ. տը Սէն-Մօրլէն անոնց անխոհեմութեանց և յիմարութեանց չհետեւեցաւ։ Չափաւորապէս կը խմէր. այնքան էր միայն ըրածը։ Իրաւ է որ իրենց հետը կեցայ, բայց, ինչպէս կը հասկնաս, կեանքիս նպատակն էր Ցովսէփը ևս քան զևս նուաստացնել. . . ։ Խե՛ղճ տղան կը գտնուի այնպիսի վիճակի մը մէջ. . . ։

— Որու նկարագրութիւնը ընելուդ հարկ չեմ տեսներ։ Ընդհակառակն նայէ բանի մը պէտք ունի՞ թշուառը, և այսուհետեւ աւելի անուշութեամբ վարուէ հետը։ Իբր նշանած սաստիկ ատելի է ինձ. սակայն բարեսրտութիւն ունեցաւ մեր ընտանիքին նկատմամբ. ուստի դէթ կ'ուզեմ որ կարենայ սքանչանալ Բարիզէ վրայ և Շալօն վերադառնայ ողջ առողջ։

Հայրս նաւ՛ին ներսն իջաւ։

Տէ Պարօ և Սէն-Սօրլէն իրմէ տասնուհինգ քայլ անդին կը խօսակցէին․ կրցայ ամենայն դիւրութեամբ քննել զիրենք։

Սէն-Սօրլէն յոտից ցգլուխ սեւ հագած էր․ իր երեսէն երեսուն տարեկան ըլլալը կը հասկցուէր։ Բոլորովին ծանր կը կենար և շուրթերուն ծայրովը կը խօսէր։

Ինչպէս իմացայ ետքէն, Սէն-Սօրլէն կը կարծէր թէ այն ժամանակուան երևելի գրագէտն ըլլալով իր գրագէտի արժանապատուութեան պարտն էր հասարակութեան մէջ այս ծանր կերպարանը և վարժապետական ձևը առնուլ։ Սակայն, ինչպէս շուտով առիթ ունեցայ իմանալու, մտերմութեան մէջ Սէն-Սօրլէն կրնար իր դիմակը հանել և շատ խելանի տղայ մը կը դառնար։

Իսկ Տէ Պարօ հարկաւոր չէր սեպեր կեղծաւորութիւն գործածել, և փիզիքապէս ու բարոյապէս կ'երևար այնպէս ինչպէս ստեղծուած էր բնութենէն։

Այսպէս երևալովը կորուստ չունէր ամենևին։

Երբէք այսքան ազնիւ և հաճելի կերպարան մ'երևցած չէր ինծի։ Իր կապոյտ մեծ աչքը շուրթերուն պէս կը ժպտէր և իր նայուածքին բոլոր անամօթութիւնը ներում կը գտնէր այն ժպիտին շնորհիւ․ իր կորաձև քիթն անթերի կերպով ընտիր էր։ Պ. Տէ Պարօ այն ժամանակուան ամեն ուագանիին պէս թոյլ կը տար որ աճի իր արքայական ըսուած պզտի մօրուքը, և իր կապտագոյն պզտի պեխը բերնին երկու կողմէն վեր կ'ելնէր իբր երկու մետաքսեայ ակիշ։

Տէ Պարօ՝ իր արհեստին ծանրութեան հակառակ և 'ի մեծ դայթակղութիւն իւր արհեստակիցներուն՝ շարունակ պալատականաց վերջին նորաձևութեան համեմատ զգեստ կը հագնէր։

Քարայծի մորթէ խթանաւոր կօշիկներ ունէր որոնց լայն եզրերը ծունկին վերևէն դառնալով կը կախուէին։ Անդրավարտիքը նուագոյն թաւիշէ էր։ Մի և նոյն դիպակէն էր նաև մինչև ծունկն երկնցող իր դրատն որ կախուած թեզանիք ունէր և որ իր մէջքը կը սեղմէր այնպիսի ճշդութեամբ մը զոր թերևս կնկան մը մէջքը չունէր։

Այս դրատը վարի կողմէն կը բացուէր ցոյց տալու համար ներքաթել շապիկ մ'որ Գլանտրի ասղնագործութեամբ զարդարուած էր։ Նաշիհով օծուած օձիք մ'ետեւէն թեթեւակի վեր կ'ելնէր, և երկու ծայրը կուրծքին վրայ միանալով միակտուր ծայր մը կը կազմէր. երկու մեծագին զմրուխտ անոր գլխանոցին եզրերը վեր կը վերցնէին։

Պահ մ'առաջ բոլոր քաջասրտութեանս հարկաւորութիւն ունեցեր էի այսքան գեղանձն ասպետի մը դէմ անտարբեր մնալու համար։

Ի սկզբան բանաւորութիւնը հպատասիրութեան դէմ յաղթանակ տարած էր. սակայն երբ Տէ Պարօյին հաճոյական դիրքը մի առ մի դիտեցի, հպատասիրութիւնը վերստին յաղթանակեց և բանաւորութիւնը կատարելապէս յաղթահարելու սպառնալիքն ըրաւ։ Կը զայրանայի տեսնելով որ քովս չէին գար. Իմ կողմս չնայիլ կը ձեւացնէին. իմ խօսակցութենէս աւելի ուրիշներէն ախորժիլ կը ցուցընէին առ երեսս. վերջապէս այնքան անտարբերութեամբ կը վարուէին որ կարծես թէ ես հոն չէի, և կամ թէ հրապոյրներս սրտիս նկատմամբ երկրորդ փորձ մ'ընելու աշխատանքին փոխարէնը տալու չափ արժէք չունէին։

Նաւին մէջ գտնուող անձերու կացութիւնն առջի օրուան պէս էր ճիշդ։

Կղերանոցի պզտի աշակերտիս նայեցայ. իմ նկատմամբ իր առջի օրուան ընթացքը կը շարունակէր պատեհ առիթ սպասելով այն վայրկեանները ուր Մենտորն իր աղօթքը կ'ընէր։ Ուզելով Տէ Պարօյի անտարբերութեան դէմ վրէժ առնել, պատասխանեցի քահանայացուին դաղտագողի նայուածքին, և խեղճ պատանին իսկոյն ողորմելի կացութեան մը մէջ ինկաւ. հառաչները, սարսուռները կը շարունակուէին միշտ. տասն անգամ համրիչը վար ինկաւ անուշադրութեամբ։

Վերատեսուչն իր աշկերտին նայուածքին ուր ուղղուիլը գաղտնի դիտելով, իր նայուածքն ուղղեց իմինիս որուն վտանգաւոր իշխանութիւնը հասկցաւ։

Իսկոյն ոտք հանեց պատանիները, և նաւին մէկ հանդիպակաց անկիւնը քշեց․ ուսկէ չէի կրնար անոնց նայիլ առանց տեղ փոխելու և առանց ամենուն ուշադրութիւնը գրաւելու։

Ես խղճէ կ'ամչնայի և դժգոհ էի։

Անշուշտ շատ տղայական էր ընթացքս․ սակայն ինքզինքս իբր յանցաւոր կը մեղադրէի այսպէս ջերմեռանդ հոգիի մը հանդստութիւնը վտանգի մէջ դնելուս համար, հոգի մ'որ թերևս առանց իմ միջամտութեան՝ փորձութեան դէմ յաղթող պիտի ըլլար։

Նոյն միջոցին Տէ Պարօ կը զիջանէր ինծի նայելու։ Կը գուշակէր քահանային և աշկերտներուն տեղափոխութեան պատճառը։ Ես այնպէս կարծեցի, և կարծելովս աւելի դժգոհ և ամօթահար եղայ։

Տէ Պարօ ինծի մօտենալու շարժում կ'ընէր․ ուստի գիրք մը բացի որպէս զի ինծի խօսելու որ և իցէ պատրուակ մը չթողում իրեն։

Մինչև իրիկուն արիաբար կարդացի։

Երբ Շաթօ-Թիէրի իջանք, աղերսեցի պանդոկապետուհին որ մեզի առանձին սենեկի մէջ սեղան պատրաստէ։ Այս որոշումս կարծեմ թէ ողոքեցաւ Ցովսէփ Գամիւզար, որ այն միջոցին բոլորովին սթափած էր իր առջի գինովութենէն։ Ցովսէփ զգուշութեան նշան մը սեպեց Տէ Պարօյին դէմ ունեցած անհամ և ծիծաղելի դժկամակութիւնս։

Գաբրիէլ Տըլօրմ և իր դպիրը բարի քուն մաղթեր էին ինծի։ Անկողինս մտնելու վրայ էի երբ սենեկիս դրան կամաց մը քերուիլը լսեցի։

Վախն առաւ զիս․ վազեցի նայելու համար թէ արդեօք աղէկ գոցուած էր կղպակը, և նոյն միջոցին դրան տակ սպրդած թուղթ մը տեսայ։

Երիտասարդ փաստաբանէն նամակ մ'էր այն։

Բացի և յետագայ տողերը կարդացի․

» Բամբէ, օրիորդ, յուսահատութեան մէջ եմ․ կը սիրեմ քե-
» զի, և կ'ուզեն զիս արգիլել հետդ ճամբորդութիւն ընելու։

» Մեր վերատեսուչը տեղեր բռնեց կառքի մը մէջ որ այս քաղա-
» քէն ուղղակի Մօ կ'երթայ ուր կը պարտաւորինք կանկ առնել։
» Խօսք մ'ըսէ ինծի, թող տուր որ յուսամ, և ահա կղերական
» պարեգօտս կը պատռեմ ամենուրեք ետևէդ գալու համար։
» Գաւառիս մէջ երեք հարիւր ֆրանք ունիմ. հոս դիւրութեամբ
» աշխարհականի զգեստներ պիտի գտնեմ։ Բարիզ հասնելուս պէս
» պիտի երթամ հօրեղբայրներուս մին գտնելու, որ թագաւորա-
» կան պահնորդներու տեղակալ է. զինուոր պիտի ըլլամ, օրիորդ,
» պիտի պատերազմիմ։ Քաջութիւնս պարծանք պիտի ըլլայ քեզ,
» և զիս ամուսինդ ըլլալու արժանի պիտի համարիս։ Կ'աղեր-
» սեմ, խօսք մը տուր իբր պատասխան. բաղդիս նկատմամբ տա-
» լու վճիռիդ կ'սպասեմ դրանդ առջև »։

Գրողն էր կղերանոցի աշկերտը։

Խե՛ղճ երիտասարդ. ահա այս է պչրասիրութեանս աղետաւոր հետևանքը. զինքն իր պաշտօնէն հրաժարելու վտանգին կ'ենթարկեմ, պաշտօն որու Աստուծմէ կոչուած է։ Հաճելի եղաւ ինծի վրդովել իր սիրտը . . . ։ Ո՛հ, անարժանութիւն մ'է այս, բայց պիտի կրնամ յանցանքս ուղղել։ Ինքը հոն է ահա . . . ։ Արդեօք դուռը բանամ հասկցնելու համար իրեն թէ . . . ։ Բայց ո՛չ, լաւագոյն է գրելը։

Եւ շուտով իմ նամակին վարի կողմը յետագայ պատասխանը աւելցի.

» Ծնողքս արդէն նշանեցին զիս, պարոն. ուստի չեմ կրնար
» սիրել քեզի։ Ա՛լ մի՛ անսներ զիս, և անխոհեմութեամբ մի՛ թո-
» ղուր այն սրբազան շաւիղը ուսկէ քալեցիր մինչև հիմա։ Հաւ-
» տա՛ ինծի թէ երանութիւնն այս աշխարհիս մէջ չկայ. աւելի ա-
» պահովութեամբ պիտի գտնես զայն խորաններուն ստորոտը »։

Սաստիկ գոհ էի իմ այս խօսքերէս, զոր ես ալ դրան տակէ սպրդեցի։ Ապա քնացայ խղճիս հետ հաշտուելով և ապահով ըլլալով թէ բարի գործ մ'ըրեր էի։

Ութ տարիէն ետք նորէն հանդիպեցայ կղերանոցի աշակերտիս որ այն ատեն Նօգր–Տամի մեծ աթոռակալն էր։ Վաճառանաւին մէջ մեր միասին ըրած ուղեւորութեան վրայ խօսք բացի․ շատ աղէկ միտքն էր այս ուղեւորութիւնը։

— Է՛, ո՞չ ապաքէն պզտի քարոզիս շնորհիւը զգաստացար․ այն քարոզիս մէջ խիստ յարգի և քրիստոնէական խորհրդածութիւններ ըրեր էի։

— Ի՞նչ մեղքս պահեմ, տիկին, պատասխանեց, սիրոյ ախտէն զիս բժշկողն այդ քարոզը չէր։

— Վա՜յ . . . հապա ի՞նչ էր ուրեմն։

— Նամակիդ ուղղագրական սխալներն որոնցմով լի էր այն։



# Դ

Հետեւեալ օրը Տէ Պարօ ա՛լ ուղեւորներուն մէջ չկար։

Իր բարեկամը՝ Սէն–Սօրլէն, որ միշտ անխռով կերպով ծանր կը կենար, ղեկին քովի վանդակին վրան կը ծռէր․ տեսայ որ Սէն–Սօրլէն խորունկ կերպով կը խորհէր․ այս խորհրդածութեան առարկան Մարն գետին ընթացքն էր առ երևոյթս։

Ընթերցողը դիւրութեամբ կ'երևակայէ թէ որքան խռովութիւն կը պատճառէր ինձ Տէ Պարօյին աներևոյթ ըլլալը։

Ի՞նչ բան պատճառ բռնէր իր փախստեան․ ինչո՞ւ մինակ մեկնած էր։ Ուսկէ՞ յառաջ կը գար Օրէսթին առանց Բիլատի մեկնիլը։

Խորհելով վախն առաւ զիս, և սաստիկ զղջացի Տէ Պարօյին դէմ բռնած ընթացքիս վրայ։

Անտարբերութեանս և ցրտութեանս պատճառաւ բարկացած է ան․ կը պարտաւորէի աւելի անուշ կերպով վարուիլ այնպի-

ռի մարդու մը հետ որ կնքամայրս կը ճանչէ և կրնայ կոմսուհիին միտքը պղտորել և ինծի անհաշուելի վնաս պատճառել՝ տալով անոր այն առաջին տպաւորութիւնները, որք՝ լաւ կամ յոռի՝ դժուարաւ կ՚անցնին։ Տէ Պարօ ինծի դէմ գանգատ ունենալով անշուշտ իզմէ առաջ Բարիզ պիտի հասնի, տիկին տը Սէնթ–Էվրըմօնը պիտի տեսնէ, պիտի խօսի քահանայացու երիտասարդին խրողութեան վրայ որու ամէն մանր պարագաները կարծեմ երեկ գիտեց, հպատասիրութիւնս չափանցօրէն պիտի պատմէ, անարժան գոյներով պիտի նկարագրէ զիս. երկար չըսեմ, անարգական վարմունքիս դէմ իր վրէժը իզմէ լուծելու է զիս Գամիւզարին հետ ամուսնանալու հարկադրելով։

Զարհուրանքս և անձկութիւնս կրնան երեւակայել։

Բայց քանի որ Սէն–Սօրլէն կեցած էր, հարկաւ պատճառ մը ունէր կենալը, այս կարծիքը փոքր ինչ կը մխիթարէր զիս։

Ամէն բան կը տայի ընկերին քովը ըլլալու և այս ծանր խորհուրդը հարցափորձել կարենալու համար։ Անկարելի էր հոն ըլլալ հայրս. ա՛լ աւելի անկարելի էր Ցովսէփը ըլլալ. ասկէց ՚ի զատ ասոնք վերստին կ՚սկսէին իրենց առջի օրուան կացութեան մէջ ընկնիլ սեղանին քով ուր նաւաստերին կնիկը օղի կը տար, և ես չէի ուզեր անոնց ուշադրութիւնը գրգռել, վասն զի կ՚ուզէի ազատ ըլլալ եթէ յաջողէի Տէ Պարօյին բարեկամին հետ խօսակցութիւն մ՚ընելու միջոցը գտնել։

Նախախնամութիւնն օգնեց ինծի այն պահուն ուր ոչ այնքան յուսալի էր ինծի այսպիսի օգնութիւն մը։

Արջառավաճառ մ՚որ դայեակներուն մէկին էրիկն էր՝ նաւին միւս ծայրն իր որհեստակիցներուն քովը գացած էր, ուր ասոնք ծխելու հաճոյքը կը վայելէին. այս սովորութիւնը տակաւին շատ նոր ըլլալով ամէն մարդու ախորժելի չէր, ուստի նաւին տէրը կ՚աղաչէր զանոնք որ մեկուսի կենան ծխելու համար։

Արդ դայեկին աջ կողմը Կարմէլեան բոկոտն վանական մը կար, որ Հերքիւլի հասակաւ խիստ գեղանձն մարդ մ՚էր։

Բարեմիտ վանականն աղօթքը չըսած միջոցին հանդարտօրէն իր

դայեկին հետ կը խօսակցէր, մերթ քանի մ'անմեղ կատակներով զան խնդալու գրգռելով. մերթ մանկիկը ծունկին վրան առնելով Քրիստոսին օրինակին հետեւելու համար, և յիշելով Սուրբ Գրքին «Թող տուք մանկտւոյդ գալ առ իս» խօսքը։

Սակայն ծխողներուն խումբէն վանականին ընթացքը նշմարուեցաւ։ Զարամիտ գիւղացիները սկսան չարչարել արջառավաճառը և վախ տալ իրեն. այնքան նեղացուցին զինքն որ անպատեհաբար գրգռուելով կնկան քով եկաւ սաստիկ բարկութեամբ և հրամայեց որ հեռանայ Կարմելեան կրօնաւորին քովէն։ Դայեակը զարմացաւ այս յանդիմանական հրամանին վրայ, նախանձոտ էրիկին նայեցաւ վերէն վար և ըսաւ որ կորսուի երթայ։ Էրիկը թշնամական խօսքերով պատասխանեց, և կնիկն ալ գրգռուելով անշնորհ, դատարկասուն, անպիտան, կախուելու չարագործ անուանեց զինքը։ Էրիկ կնիկ պիտի սկսէին ծեծկռտիլ երբ վանականը միջամտեց և անոյշ կերպով յանդիմանեց էրիկը իր կասկածներուն անպատեհութեան և խօսքերուն անվայելչութեանը համար։

Ասով գործն աւելի գէշցաւ։

Գիւղացին իրեն եղած այս նախատանքէն սաստիկ բարկանալով, ինքն ալ վանականը նախատեց։

— Զգուշացի՛ր, տղաս, զգուշացի՛ր, կ'ըսէր վանականը. պէտք չէ որ այսպիսի գայթակղութիւն մ'երկարի։

Սակայն կոշտ գիւղացին կը շարունակէր իր թշնամանքը ու հայհոյութիւնները։

— Նորէն կ'ըսեմ, տղաս, լռէ, համբերութիւնս կը հատնի։

Մարդն այս բարեսէր ազդարարութիւնները բանի տեղ չդրաւ. անասնային կատաղութենէ մը գրգռուելով համարձակեցաւ մինչև անգամ ապտակ մը զարնելու վանականին։

Ա՛լ չափն անցաւ. վանականին կրօնասիրութիւնն ընկրկեցաւ այս վերջին թշնամանքին առջև։ Աչքը կրակուբոց կտրեցաւ, շրթները սարսռեցան, և ահա արջառավաճառը բռնելով վեր ըրաւ փետուր մը վեր ընելու պէս, և մանրքրկորդ մ'օրելով

վանդակին վերեւը՝ որու կռթնած էր Տէ Պարջին բարեկամը՝ նետեց գիւղացին դեպին ճիշդ միջեւը, ուր խեղճ անպիտանը գլխիվայր ընկաւ։

Ընկնելով անհրեւոյթ եղաւ ջուրին տակը։

Սակայն բարեբաղդաբար լողալ գիտէր, ուստի շուտով ջուրին երեսն ելաւ։

Մարդ մ'երկայն ձող մ'երկնցուց։ Գիւղացին ձեռներուն եւ ոտներուն օգնութեամբը նաւն ելաւ տրիտոնի մը պէս թրջուած։ Գիւղացիները չհամարձակեցան ամենեւին խօսք մ'ըսելու, վասն զի միւս ուղեւորները վանականին կողմը կը բռնէին։

Այս ծիծաղաշարժ արկածը միայն կրցաւ Սէն-Սօլէրնի մտածմունքը ցրուել եւ անոր ուշադրութիւնը գրգռել։

Իրօք Սէն-Մօրլէն տեսնելով թէ իր ոտքերուն վերեւէն մարդ մը կը նետուի, զիջաւ ետեւը դառնալու եւ այսպիսի տարօրինակ քրքջութեան մը պատճառը հարցնելու։ Այն ատեն պատահաբար իրեն բաւական մօտ կը գտնուէի, ուստի բացատրեցի վանականին ընթացքը։

Տարօրինակ բանաստեղծս իրողութեան ինչ ըլլալը հասկնալով քարէի խոնարհական ձեւ մ'ըրաւ ինձ, եւ կարծես ուզեց միշտ իր առջի տեղը կենալով՛ իր ընդմիջուած մտախոհութիւնները վերըստին շարունակել. սակայն ալ հաշիւիս չէր գար անոր նորէն մտախոհելը. ուստի ըսի իրեն այնպիսի աշխուժով մ'որու առջեւ չկրցաւ ժպիտ մը զսպել ան։

— Բայց, պարոն, չե՞ս բացատրեր ինձ թէ ինչ պատճառաւ այսօր մինակ կը գտնուիս նաւին մէջ։

— Մինչեւ հիմակ այս մասին ամենեւին հարցում մը չըրիր ինձ, օրիորդ։

Այտերս բոլորովին կարմրեցան։

Սէն-Մօրլէն շարայարեց.

— Սակայն կը պարտաւորիմ ես ալ ուրիշ հարցումով մը պատասխանել քեզ. ինչո՞ւ այնքան եռանդով ընթերցասէր կ'երեւաս։

— Այսպէս ուրեմն, մրմնջեցի, Պ. Տէ Պարօ սրդողած է ինծի դէմ։

— Ոչ ինչ իրաւունք կը տայ իրեն քեզի դէմ սրդողելու, օրիորդ. սակայն եթէ կարենար գիտնալ այն խռովութիւնը որով համակուած ես այս միջոցիս, ապահով եմ թէ իր ճամբան ցամաքէն շարունակելու խորհուրդը ունեցած ըլլալուն սաստիկ պիտի զղջար։ Դառնապէս պիտի ցաւէր իր սխալումին վրայ։

— Ի՞նչ սխալում։

— Այս առտու կ'երևակայէր թէ որոշած ես մերժել իր սիրանուէր մեծարանքը։

— Իրաւունք ունէր երևակայելու, պարոն։

— Ի՜նչ... ապա ուրեմն չեմ հասկնար թէ ինչ կը նշանակէ հարցափորձդ։ Քանի որ՚ այդպէս է, ես կ'առնում ըսածս, և Տէ Պարօ խոհեմութիւն ըրաւ փախուստի դիմելով, այս է սիրագրգիռ գեղութեանդ կախարդական ազդեցութենէն ազատելու միակ միջոցը։

— Ո՛հ, պարոն, կ'աղաչեմ, վերջ տո՛ւր այդ տեսակ խօսքերու։

— Ես ալ ահա հիմա վերջ տալու հրաման պիտի ուզէի քեզմէ. վասն զի վտանգը կայ ինչպէս ուրիշներու նոյնպէս և ինծի համար։

Երկրորդ անգամ պարտաւորեցաւ կռնակը ինձ դարձնելու։

— Բայց վերջապէս բարեկամդ ինչպէս կրնայ առջի անգամ զիս տեսնելով սիրահարիլ։

— Սէրը, օրիորդ, չնմանիր յամրաբոյս տունկի մ'որ երկար օրերու կը կարօտի կատարելապէս զարգանալու համար։ Մարդուս, ինչպէս նաև կնոջ սրտին մէջ յանկարծ և շտապաւ կը ծնի խորհրդածութեան օգնութիւնը առանց ունենալու։ Փոխադարձ նայուածքի մը, ժպիտի մը վրայ սէրը կը հաստատուի, կ'որոշուի։

— Կը կարծե՞ս, պարոն։

— Այս մասին կատարելապէս ապահով եմ, վասն զի խիստ մօտէն քննած եմ խնդիրը։

— Ներէ՛ ուրեմն որ շնորհաւորեմ քեզի քննութեանցդ հետեւանաց համար։

— Շնորհակալ եմ, օրիորդ . . . ։ Բայց, Ներէ, պահ մը առաջ բանահիւսութեան մը վրայ որոճել սկսեր էի, և գետին եղէգներուն մէջ պահուած յաւերժահարսանց կը խօսէի։ Քեզի չափ վտանգաւոր չեն այն յաւերժահարսերը. ուստի թոյլ տուր որ իրենց քով երթամ։

— Չէ՛, կեցի՛ր, պէտք չէ որ Պ. Տէ Պարօ զիս յանցաւոր համարի կարծելով թէ անքաղաքավարութեամբ վարուեցայ հետը։ Երեկ գիրք մ'առի երբ ան ինձ կը մօտէր, վասն զի . . . սրտի զգացումներու վաղահասութեան մասին համամիտ եմ հետդ, և կը վախնայի . . . ։

— Նայուածքէ մը հաստատուելու կամ ժպիտէ մը գրաւուելու, այնպէս չէ՞։

— Կարծէ՛ ինչ որ կ'ուզես, պարոն. սակայն մինչև տիկին տը Սէնթ-Էվրըմօնի որոշում մ'ընելը չեմ համարձակիր ըսելու թէ ես իմ տէրս եմ։ Եթէ երբէք այս որոշումը փափաքներուս համեմատ ըլլայ, այն ատեն նորէն ես իմ տէրս պիտի ըլլամ բոլորովին. և եթէ երբէք սիրուն և ազնիւ մարդ մը զիջանի ինձ դիմելու, կը հաւաստեմ քեզ թէ ա՛լ այնքան սաստիկ ընթերցասէր չպիտի երևամ։

— Ա՛խ, Տէ Պարօ երկինք պիտի թռէր առ ուրախութեան, եթէ կարենար լսել այդ խօսքերդ, գոչեց Սէն-Սօրլէն, յանկարծ 'ի բաց թողլով իր շինովի անտարբերութիւնը։

— Պա՛րոն, ազատ կը թողում քեզի խօսքերս իրեն հաղորդելու։

— Եւ ինչո՞ւ դուն ինքդ այս գիշեր չիմացուներ իրեն այդ կարի ողոքալի խօսքերը։

— Այս գիշեր . . . ։ Ո՞ւր պիտի տեսնեմ զինքը։

— Մօյի մէջ, ուր պիտի իջնենք քանի մը ժամէն ետք։ Բայց լռութի՛ւն, շարայարեց ձայնը ցած կերպով հանելով, կամ լաւ ևս է ուրիշ նիւթի վրայ խօսինք։

Վեր ըրի գլուխս, և մեզմէ երկու քայլ անդին հայրս և Գամիւզարը տեսայ։

— Այո՛, օրիորդ, կրկնեց բարձրաձայն Սէն-Սօրլէն անխռովութեամբ մ'որմէ շնորհակալ եղայ, վասն զի հաւքտուելու և չմատնուելու շփոթէն ազատեց զիս, այո՛, օրիորդ, Լիւսօնի վիճակին առաջնորդ՝ Գերապատիւ Արման Տիւ Բլէսի Արքեպիսկոպոսին մասնաւոր քարտուղարն ըլլալու պատիւն ունիմ։ Այս միջոցիս քաջալաւ է իր կացութիւնն յարքունիս. մայր-թագուհին իր ողորմաբաշխը ըրաւ զան, և թագաւորն ալ դեռ մօտ օրերս պատերազմի և ներքին գործերու պաշտօնատանց համար Պետութեան քարտուղարի պաշտօնին բարձրացուց զան։ Եթէ երբէք կրնամ օգտակար ըլլալ թէ՛ քեզ, օրիորդ, թէ՛ հօրդ որ ահա կը դայ, թէ պարոնին . . . որ նշանածդ պիտի ըլլայ, ըսաւ բարև տալով Գամիւզարին, յուսամ թէ ուրիշներուն դիմելու թշնամանքը չպիտի ընես ինձ։ Գերապատիւն Տիւ Բլէսի խնդիրներուս և ոչ մին կը մերժէ բնաւ։

— Է՛, լսեցի՞ր, ըսաւ Գաբրիէլ Տըլօրմ Յովսէփը հրելով, կը սխալէի՞, անմիտ։ Ապահով էի թէ այս երիտասարդ ազնուականը բոլորովին վայելուչ իրերու վրայ կը խօսակցէր Մարիօնին հետ։

— Ի՞նչ, ըսաւ Սէն-Սօրլէն՝ իր հանդարտ արժանապատուութեան դիմակը նորէն դրուելով, համարձակեցան ինծի դէմ թշնամական կասկածնե՞ր ունենալու։

— Այսինքն, թոթովեց Յովսէփ . . . . ։ Այո՛, կ'ենթադրէի . . . . ։ Չէ՛, պարզապէս դիտել կը տայի աներիս . . . բայց վերջապէս ե՛րբ վանականները մատ կ'ունենան գործի մը մէջ. . . ։

— Լռէ՛, ըսաւ Գաբրիէլ Տըլօրմ։

— Շատ աղէկ, կրկնեց Գամիւզար. սակայն քանի որ կ'առաջարկուի բարիք ընել մեզ, իմ մասիս չէի դժգոհեր եթէ վարոցաւոր նուիրակի աստիճանին անցնէի։ Այնպէս չէ՞, աներդ իմ։

— Ահա կը տեսնես, պարոն, ըսի Սէն-Սօրլէնին, որ դժուարին է քեզ մերժել այսքան վայելչապէս մատուցուած խնդիր մը։

— Իսկ ես, ըսաւ Գաբրիէլ Տըլօրմ, անձնական փառասիրութիւն չունիմ. սակայն եղբայրներդ պիտի մեծնան, աղջիկս, և եթէ պարոնը բարեհաճի տակաւին յիշելու իր այս գիշերուան բարեսէր առաջարկութիւնը . . . ։

— Անշո՛ւշտ, պատասխանեց Տէ Պարօյին բարեկամը շատ քաղաքավար կերպով մը. կ'աղաչեմ որ միշտ և ամենուրեք վստահ ըլլաս իմ վրայ։

— Այնքան պատրաստամիտ երևոյթին հետևանքն ահա այս կ'ըլլայ, ըսի ժպտելով։

Խօսակցութիւնն ընդհանուր եղաւ մեր մէջ. բանահիւսը Մարնի յաւերժահարսանց քովէն երթալու խօսքը չէր ըներ ա՛լ, և կը զուարճանար հետս կարգուիլ ուզողին ապշութեամբը։ Ցովսէփ կը կարծէր թէ Շալօնի առեննին սրահին մէջ բազմութեան առջև արդէն ձեռքը բռնած է նուիրակներու փղոսկրեայ յաղթական գաւազանը։

Այն պահուն ուր Սէն-Սօրլէն ահագին սուտ մը շտկած էր, բաւական անխոհեմ հարցում մ'ըրի իրեն՝ փաստաբանին բացակայութիւնը հօրս առջև բացատրելու համար։

— Ի՞նչ պատճառաւ Էբըրնէյ եկար բարեկամիդ հետը։

Նախ վարանեցաւ պատասխանելու. սակայն իսկոյն սկսելով խնդալ և որոշելով անկեղծ ու համարձակ ըլլալ, ըսաւ.

— Ցիրաւի կատարելութեան կաղապար մ'ըլլալու պահանջումը չունիմ։ Ինչո՞ւ պահեմ քեզմէ տկարութիւններս։ Լաւ կերուխումը և լաւ գինին կը սիրեմ, մանաւանդ լաւ գինին որ ծերերուն և բանաստեղծներուն կաթն է։ Արդ մեր Բարիզի գինեվաճառներն ապիրատ անհաւատներ են, և օր մը կախել պիտի տամ զանոնք, եթէ իշխանութեան հասնիմ. վասն զի մարդուս ժուժկալութեան յօժարութիւն տալու չափ կը խարդախեն իրենց ըմպելիքը. միթէ տանելի չէ՞ այս։ Ուստի պատեհ առիթ սեպեցի Գերապատիւ Տիւ Բլէսիին իր Լիւսօնի վիճակն երթալու համար ըրած

ուղեւորութիւնը, բարեկամս Տէ Պարոյին հետս ներհակ ճամբայ մը բռնելու եւ շամբանեան իր աղբիւրէն խմելու համար։ Հետս կը տանիմ երեք հարիւր օրուան շամբաներ որք կատարելապէս խցուած եւ կապուած են։ Հաւատա ինձ, օրիորդ, թէ ամէն հնարաւոր առիթներէն օգուտ քաղելով Գերմանայի միւս ամէն այգեստաններուն այցելութիւն պիտի ընեմ գինիի մասամբ լաւ եւ յարգի կերպով զարգարելու համար։

Սէն-Սօրլէն իր այս խօսքէն 'ի վեր կարծես յանձնարար համբաւ ունեցաւ Գամիլլարին առջեւ։

Այն օրն պայծառօրէն անցած էր։ Մեցի կը մօտէինք, եւ 'ի հեռուստ կը տեսնէի կոթեայ մայր եկեղեցին զոր արեւմուտքի ճառագայթները կը լուսաւորէին։

Սէն-Սօրլէն ցած ձայնով ըսաւ ինձ.

— Հաշտութեան միջոցները պէտք պատրաստեմ։ Ասի ինծի համար վեհ անձնուիրութիւն մ'է, վասն զի այնքան մօտեցայ բացին որ ես ալ զգայի անոր կիզողական ազդեցութիւնը։

Ցամաքը կը մօտէինք։

Բանաստեղծը ցայտելով ստեպեղն (berge) ելաւ, եւ քիչ մը անդին երիտասարդ փաստաբանին անոր քով գալը տեսայ։ Անհթարթի մը մէջ երկուքն ալ աներեւոյթ եղան։

Ի՞նչ կ'անցնէր յիս. թերեւս այս հարցումը կ'ընեմ այսօր որ փորձառութիւնը բացատրած է ինձ զգայութիւններս եւ թոյլ տուած է որ կէս առ կէս քննեմ զանոնք։ Տէ Պարոյին վրայ սէր ունէի՞։ Տակաւին ո՛չ։ Անշուշտ կ'ախորժէի իրմէն, սաստիկ պիտի հրճուէի եթէ կարենայի ընդունիլ իր սիրանուէր մեծարանքը. սակայն չէի զգար այն ներքին գրաւումը, սրտին այն սաստիկ վրդովումը որք սէրը ցոյց կը տան։

Փաստաբանը, բանահիւսն եւ ես պարզապէս խաբէբայի դեր կը խաղայինք։

Տէ Պարօ իր ճամբուն վրայ գաւառաբնակ հրաշքն եւ շնորհադէմ երիտասարդուհիի մը հանդիպելով զան սիրելու պահանջումն ունեցած էր, եւ Սէն-Սօրլէն զինս մոլորելու մասին Տէ Պարոյին

անցած նպատակներուն գործադրութեան մէջ աջակից կ'ըլլար անոր։ Բարեկամներու մէջ այսպիսի պզտի ծառայութիւններ փոխադարձաբար կը մատուցուին։

Զիս ընկճելու համար որոշեր էին գիտել այն դրութեան որու հետեւեցան, կը հետեւին և պիտի հետեւին անցեալ, ներկայ և ապագայ խորամանկները, դրութիւն որու ոգին հետեւեալն է. առաջին քայլն առնուլ և ապա նահանջել, որպէս զի կիները առաջուին երկու քայլ առնելու։

Գրեթէ միշտ կ'առնուն այս երկու քայլը։

Սակայն երկիւղը միայն ստիպած էր զիս Մէն-Եօրլէնին հարց ու փորձ ընելու, հետեւաբար Տէ Պարօ ոչ այնքան յաղթող էր որքան կը կարծէր թէ է։ Խորամանկութեամբ կ'յարձակէին իմ վրայ, ես ալ խորամանկութեամբ կը պաշտպանէի ինքզինքս։

Ընթրիքի ատեն կ'յուսայի թէ երկուքն ալ երեւան պիտի գան, սակայն 'ի զուր եղաւ յոյսս։ Տէ Պարօ՝ խոստովանաբար իր բարեկամին ըրած խօսքերուս հակառակ դեռ ոխ ունէր ինծի դէմ։ Մէն-Եօրլէն մատնիչ մ'էր, և արդեօք եղբէն վստահութիւնս չարաչար գործածելու համար խօսեցուցած էր զիս։

Սեղանէն կ'ելլէինք, և դեռ ոչ ոք եկած էր։

Բոլոր հին վախերս նորէն միտքս կը դառնէին. աչերէս բարկութեան արտասուք կը հոսէր։

Կարծեցի թէ պիտի հիւանդանայի։

Պանդոկապետուհին ուզեց զիս մօտակայ սենեակ մը տանիլ, ուր պատուական անկողին մը պատրաստել տուած էր ինծի համար, կ'ըսէր։ Հաւատով ընդունեցի իր առաջարկութիւնը, այս չոր ու ցամաք կերպով գիշեր բարի ըսի որպէս զի առիթուլի տեղն երթալու։ Սակայն կարծես չհասկցաւ միտքս, և ուղղելով դէպ 'ի պատուհանաձև դուռ մը, բացաւ զայն և ըսաւ.

— Օրիորդ, եթէ կ'ուզես գիշերցիկ լուսնկայէ մ'օգուտ քաղելով պարտէզին մէջ հով առնուլ և պտոյտ ընել, շուտով պիտի անցնի անհամբերութիւնդ։

— Երբոր աղէկ միտքս ձգեցիր առի. կը հաւանիմ, պատասխանեցի

— Օրիո՛րդ, կրնաս անվախ պատոյտ ընել. պատերը տասն ոտք բարձրութիւն ունին։ Գիշերն՝ եթէ անհանգիստ ըլլաս, մօտակայ սենեկի մը մէջ պառկած եմ, և ահա հնչակի մը լարը։

— Շա՛տ աղէկ։

Պանդոկապետուհին մեկնեցաւ։ Պատուհանաձև դրան շեմէն դուրս ելայ։

Իրօք լուսինը աքանչելի կերպով կը ճառագայթէր։ Երկու կողմէն վանդակով գոցուած քարաշէն սանդուղի մը վրայ գտնուեցայ ուսկէ նայուածքս ծաղիկներով և հովանաւոր ոստերով բոլորովին զարդարուն պարտիզակի մը ծամածուռ ծառուղիներուն մէջը կ՚ընկղմէր։

Օդին բարեխառնութիւնը մեղմ էր։ Վար իջայ, հոգիս ազատ՝ փակ ես երջանիկ ըլլալով, քանի որ կրնայի մինակս խորհրդածութիւններովս զբաղիլ այս գեղապայծառ գիշերուան և լռութեան միջէր։

Յանկարծ մօտէն եկող շշուք մը լսեցի։

Սարսուռ մը զգացի յոտից ցգլուխ։ Կանգ առի աճաբեկ, և ականջ տուի։

Երաժշտական գործի մը կը յարդարուէր. այս իսկոյն ծառերուն տակէն սկզբնական երգեր լսուեցան արագօրէն։

Հետաքրքրութիւնը վախս զսպեց։

Անգամ մ՚եւս նայելէն ետք նաև կատարելապէս սիրտ առի. երկու ոստումով կրնայի սանդուղին բազրիքները հասնիլ և սենեակս մտնելով դուռը գոցել։ Ուստի մտիկ ըրի, և ճանչցի Թէօրպին* ձայնը։

Այս երաժշտական գործին այն առեններ շատ հռչակուած էր, և յաջողակ մատերու շնորհիւ կրնար անթերի ներդաշնակութիւն մ՚ունենալ։

Մարդու ձայն մը յետագայ երգի տուները երգեց աղդու և զուարթ եղանակով մը.

* Տեսակ մը վին։

Ծ. Թ.

Կ'ըսուի թէ Աստղիկ ծովէն դուրս ելաւ
Բիւր շընորհալի հըրապոյրներով ։
Նէ ամենէին հետն ընկեր չունէր
Եւ գիք ծաղիկներ նետէին իրեն ։

Բայց, գեղանիդ իմ, քումայթ չէր Աստղիկ,
Եւ աստուածներն ալ միշտ շողոքորթ են ։
Եթէ բիբըդ սև, ձեռքըդ սպիտակ
Տեսնէին, նաև Ճակատըդ փայլուն ։

Եթէ, տատրակ իմ, Ճռուողուն ձայնիդ
Հնչումն երկնային լսէին անոնք,
Քեզ անմահութիւն տալ պիտ՝ ուզէին.
Յայնժամ Աստղիկն իր հացը կը մուրար ։

Բայց ինչպէս իրաք Հոմերոս կ'ըսէ,
Երբեմն Ոլիմբոս խիկ ձանձրալի է.
Ուրեմն, սիրելիս, այս աշխարհիս մէջ
Կեցիր ուր մարդիկ աւելի խնդան
Եւ զիրար սիրեն լաւագոյն կերպով ։
Օ՛ն, եկո՛ւր պա՛գ զիս, սիրանուէրդ իմ.
Դից լաւագոյնն է ով որ քաջ սիրէ ։

Միթէ ինձ կ'ուղղուէր այս երգը. խկոյն անկարելի եղաւ ինձ տարակուսիլ այս մասին ։

Տերևներուն մեկուսուիլը և Տէ Պարօյին ոտից առջև ընկնիլը տեսայ ։

— Երկի՛նք, գոչեցի, դո՞ւն ես, պարոն ։

— Այո՛, ե՛ս եմ, գեղանիդ և շնորհալիդ իմ Մարիօն, ըսաւ՝ թէօրպը մօտակայ բլրակի մը վրայ նետելով, ինձ չէ՞իր սպասեր ։

— Ո՛չ, պարոն, ո՛չ. . . ։ Թո՛ղ որ փախչիմ. այսպիսի միջոցի մ'այդպէս գալով ինձ վախ տալդ և յանկարծ վրայ հասնիլդ դէշութիւն է ։

— Ա՛խ, Մարիոն, կրնայի՞ աւելի երկար ժամանակ սպասել առանց քեզի տեսնելու։

— Կը պարտաւորէիր նաւէն չելնել, վասն զի հոն ամենայն դիւրութեամբ կը տեսնէիր զիս։

— Բայց ո՛րքան անգութ եղար նաւին մէջ. . . ։ Այդ հասակին մէջ այդքան քաղաքաւարութիւն ունենա՛լ, տուերկոյթ անտարբերութեան մը ներքեւ պահե՛լ զգացում մ՚որ երջանկութիւնս կը կազմէ։

— Ի՞նչ ըսել կ՚ուզես։

— Ա՛լ կեղծաւորութեան մի՛ դիմեր. Սէն-Մօրլէն ամեն բան իմացուց ինծ. կը սիրե՛ս զիս, Մարիոն, կը սիրես զիս։

— Ամենեւի՛ն, պարոն։ Սոսկալի է այդ ընթացքդ։ Եթէ հայրս, եթէ ուրիշ ականատեսներ . . . ։

— Հանգիստ եղի՛ր, ոչ ոք պիտի գայ։ Պանդոկապետուհին պարտաւորեցաւ շրջագայութեան մը խորհուրդը տալու քեզ, և ամենասաստարիկ պատուէրներ տուի իրեն. պարտէզին վրայ նայող բոլոր սենեակներն ամայի են։

— Բայց ասի դաւաճանութի՛ւն մ՚է, գոչեցի ահաբեկ։

Իսկոյն հասկցայ վտանգին մեծութիւնը, և այս վտանգէն ազատելու համար տեսայ թէ ո՛րքան հարկաւոր էր վերստին հանդարտ ըլլալ։

— Ո՛հ, Մարիոն, կ՚ըսէր փաստաբանը, միշտ ծունկի վրայ կեցած, խնդրե՛մ, թո՛յլ տո՛ւր ինծ որ ձեռքդ շուրթերուս մօտեցնեմ։ Դէպ ինծ դարձո՛ւր այդ սիրաբոյր աչերը որք անբուժելի վէրք մը կը տան ինծ։ Քո՛ւկդ են սիրտս, հարստութիւնս, կեանքս։ Մարիո՛ն, կը սիրե՛մ քեզի իբր խենդ մը, մոլեգնապէս կը սիրե՛մ քեզի։ Եթէ հիմա հարկ ըլլար ինծ յոյսս կտրել, եթէ հրամայես ինծ որ ա՛լ քու վրայ չխորհիմ. . . . հիմակ անմիջապէս քու առջեւդ, ոտիցդ քով ինքզինքս պիտի մեռցընեմ։

— Իրա՛ւ, կարելի՞ է այդ բանը, ըսի՝ ձայնիս երերումը զսպելու համար ամեն ջանք ՚ի գործ դնելով։ Բայց զգուշացի՛ր։ Կարող եմ քեզի այդ յիմարութիւնը ընելու ստիպել. . . ։ Ո՛հ,

ամենեւին պատասխանատուութիւն չեմ առներ վրաս, վասն զի յօժարութիւնս սաստիկ է։

Տէ Պարօ ինձ նայեցաւ մոլորագին կերպարանով։

— Այո՛, պարոն, գիտնաս որ ինծի համար աշխարհիս ատե-նարանին վրայ աղուոր սկիզբ մը կ'ըլլայ այդ բանը։ Ո՛րքան վէպի դիւցազնուհիներ, ո՛րքան պչրասէր կիներ այս փառքին հասնելու կը փափաքին։

— Կը նայիմ որ Սէն-Սօրլէն չսխալեր է, ըսաւ Տէ Պարօ. խելանի ես, Մարիօն, նա մանաւանդ անխոհեմ ես։

Փաստաբանն իր աղերսաւոր կեցուածքը թողուց, և սկսաւ իր թաղեայ խոյրովը թօթափել այն աւազները որոնցմով իր ծունկե-րը ծածկուեր էին։

Նստարան մը կար քիչ մ'անդին։ Նստայ և քովս տեղ մը ցոյց տուի իրեն ալ։

— Ցիրաւի, գոչեց, զմայլելի ես. կը հիանամ քու վրայ։ Անկարելի է ամենասաստիկ վախէ մ'ետք այդքան շուտով հան-գարտիլ կատարելապէս։

— Ասի ամենեւին զարմանալի բան մը չէ, պարոն։ Նախ վախ-ցայ. սակայն իսկոյն մտածեցի որ վախնալս քեզի թշնամանել է։ Չեմ կրնար հոս հետդ խօսիլ այնքան հանդարտօրէն որքան նա-ւին վրայ։ Պատուակիր մարդ մ'ես, ուստի վստահութիւնս չա-րաչար չպիտի գործածես։

— Ա՛հ, Մարիօն, կը մոռնաս քեզի սիրելս։

— Զիս յարգելու աւելի պատճառ մ'է սիրելդ։ Խեղճ, աղէտ և աշխարհիս սովորութիւններուն անտեղեակ աղջիկ մ'եմ, ուստի ինծի դէմ կրնաս շատ զօրաւոր ըլլալ։

— Ամենեւին. կը ճանչեմ արքունիքը յաճախող կիներ, նա մանաւանդ խիստ բարձրաստիճան կիներ որք այսպիսի պարագայի մէջ այդքան վայելուչ կերպով չպիտի կրնային գործել։

— Ինչո՞ւ։

— Պատասխանը շատ երկար բացատրութիւններու կարօտ է։

— Կը ձանձրանաս այս խօսակցութենէն։

— Ո՛չ. . . ։ Գիշերը զմայլելի է, և զայն քեզի հետ անցունելս մեծ ուրախութիւն է ինծ ։

— Տէ՛ր Աստուած, նայէ՛ ո՛րքան հանդարտ ես հիմա, դո՛ւն որ ինքզինքդ մեռցնել կ'ուզէիր դեռ պահ մ'առաջ ։ Օ՜ն, ահա Թէօրպդ-անգամ մ'ալ երգէ այն տաղը որու խօսքերը խիստ աղուոր երեւցան ինծ ։ Ինծի՞ համար չինեցիր այն երգը ։

— Այո՛, օրիորդ . . . ։ Այսինքն . . . աղաչեցի Սէն-Սօրլէնը որ այն երգին տուները չինէ ։

— Ի՞նչ, պարոն, ուրիշի մը կը յանձնես . . . ։

— Կրօ՛զը տանի, ա՛լ ի՛նչ ընելս չգիտեմ, գոչեց ։ Ծիծաղելի, այլանդակ կը գտնես զիս . անշուշտ այս միջոցիս աննման աղուշի մը, յաւանակի մը կերպարանքն ունիմ ։

— Բայց չէ՛, պարոն, իրաւ կ'ըսեմ թէ չէ՛ ։

— Ո՛հ, այո՛ . . . Գամփռզարին կը նմանիմ. . . ։ Ասի դաս մը պիտի ըլլայ ինծ այսուհետև բնաւորութեանս հակառակ չվարուելու ։ Կրնայի առջի անգամ երեւալ ինչ որ եմ, այսինքն ուրախասէր սրիկայ մը . Էբիգիւրի բուն աշակերտ մը . . . և սակայն կը հաւաստեմ քեզ թէ նաև խիստ քաղաքավար մարդ մ'եմ ։ Ո՛չ Աստուծոյ, ո՛չ սատանային, ո՛չ մարդերուն, ո՛չ կիներուն և ոչ առաքինութեան կը հաւատամ ։ Այս աշխարհիս մէջ ոչինչ կը հաւատամ . միայն մէկ բանի կը հաւատամ որ է սիրելու և սիրուելու երանութեան ։

— Բայց կը նայիմ որ կը խենդենաս, ըսի ։

— Այո՛, խենդութի՛ւն էր պահ մ'առաջ դուեհիկ սիրահարի մը պէս հառաչելս . խենդութի՛ւն էր քեզի հրապուրելու աշխատիլս այն ստորին խորամանկութիւններով, այն անհամ խաբեբայութիւններով, զգացումի այն հասարակ տեղիքով զոր պէտք է ստորին կարգի սիրահարներու թողուլ ։ Երբ առաջին անգամ Էբըրնէյի մէջ իրարու հանդիպեցանք, գեղեցկութեամբդ զարմացուցիր զիս . սև աչերէդ արտադրուած հուրը սիրտս այրեց, և ինքնովին ըսի . Տէ Պա՛րօ, սիրելիդ իմ պարոն, ահա քիչ մ'անդին գաւառաբնակ պատանուհի մը կայ որ Աստղիկին պէս աղուոր

է։ Վայելուչ կերպով մօտեցիր իրեն, և շատ մի՛ վախցներ զինքը. վասն զի վեհերոտ եղնիկի մը կը նմանի ան։ Ճարտարութեամբ վարուէ հետը, կամաց կամաց ոտնկանիդ մէջը բեր այդ սիրուն թռչունը, վասն զի եթէ սովորական կերպերովդ վարուիս, պիտի փախչի այդ որսը, և ա՛լ չպիտի բռնես զայն։ Ուստի սիրաբեկ կերպարան մ'առ, տրտում երեւյայ, մեկնեցայ որպէս զի չտեսնես զիս, ըսէ Սէն-Մորլէնին որ հառաչանքս մրմնջէ քեզ։ Անմիտ էի, Մարիօն. անմիտ էի այսպէս վարուելով. մարդս միշտ յանցաւոր է դիմակով մ'երեսը գոցելով. ես կը հանեմ դիմակս։

— Կ'երեւակայես, տղաս, թէ այդպիսի խոստովանանքով մը աւելի համարում կ'ստանաս իմ առջև։

— Տարակոյս չունիմ, գեղանիդ իմ։

— Կը սխալիս։ Այդ բաները խոստովանելէդ առաջ աւելի հաճելի էիր ինծի. Աստուծոյ չհաւատա՛լ. ի՛նչ զարշելի բան։

— Է՛հ, ի՛նչ ըսեմ. ընտանեկան պակասութիւն մ'է ատի։ Անաստուածութիւնը մեր արեան մէջ կայ։ Մեծ-հօրեղբայրս՝ Թէօֆիլ Վալէ՝ հազիւ իր համալսարանական խանձարուրէն ելած էր, և ահա Հաստատէն ծանօթախօսը անունով դիրքը հրատարակեց։ Խիստ հետաքրքրական գիրք մ'է, անաստուածութեան հմայք և ներհուն ճարտարովութիւն մ'է այն. սակայն իր արժէքը չճանչուեցաւ անցեալ դարուն մէջ, և այս պատճառաւ գիրքն ալ, հեղինակն ալ Խորհրդարանի հրամանաւն այրեցաւ Կրէվի հրապարակին վրայ։

— Աստուա՛ծ իմ, գոչեցի, ահա տես թէ ինչ է անկրօնութեան վերջը։

— Բայց մեծ-հօրեղբօրս պէս միամիտ չեմ, գեղանիդ իմ, և չեմ ուզեր նոյնը մագաղաթի վրայ մրոտել ներքին կարծիքներս։ Բաւ կը համարիմ ինծի այս կարծիքներս յայտնել խոհեմ և խելացի մարդերու, բարեկամներուս, սիրուհիներուս, և քեզ, Մարիօն, որ այսուհետև աշկերտս պիտի ըլլաս։ Հաճոյքի փիլիսոփայութիւնը պիտի սորվեցնեմ քեզ։

Բոլոր հաւատոյ զգացումներս և համեստութիւնս զայրացան Տէր Պարօյին այս խօսքերէն, և պատասխանեցի.

— Կը սխալիս, պարոն. երբեք ամբարիշտ չպիտի ընես զիս։ Ոտք ելայ սենեակէս երթալու համար. սակայն Տէ Պարօ զիս ստիպեց տեղս կենալու։ Այս բռնադատութիւնը արդարացնելու համար այնքան հեզաբէս աղերսարկու կերպարան մ՚առաւ որ բարկանալու համարձակութիւնը չունեցայ։ Միայն թէ նայուածքս երիտասարդ փաստաբանին նայուածքէն հեռացուցի, վասն զի հետզհետէ կը դիւթուէի։

— Ինծ նայէ՛, սէ՛րդ իմ գեղանի, գէշութիւն է անկեղծութեանս ապաշխարանքը այդքան խստութեամբ ինծ կրել տալդ։ Հաւատքիս դաւանանքս զայրոյթ կը պատճառէ քեզ, ուրեմն ա՛լ չխօսինք ատոր վրայ։ Նախապաշարումի շղթան խորտակեր եմ կամ ոչ, հոգ չէ՛։ Կը հաւատամ երկնային նայուածքիդ, ժպիտիդ, թարմացնել այտերուդ, վարդանման շուրթերուդ, և սա նրբաձև ու շնորհալի մարմնոյդ զոր երկու ձեռներովս կը շրջապատեմ։ Նայէ՛ ինծի. քսանուհինգ տարեկան եմ. մայրական ժառանգութիւնս կը վայելեմ։ Փաստաբանի արհեստս անկասկած կերպով նկատել կը ձեւացնեմ, իրաւ է, բայց պատճառն է խոշընդոտին չըլլալ նախագահին որ հայրս է։ Սա յիսուն հազար ֆրանք եկամուտ պիտի թողու ինծ։ Կ՚ուզե՞ս առնուլ զիս ինչպէս որ եմ, այժմէն ծաղկահաս․ հարուստ, անհաւատ, սիրահար։ Սիրելի հրեշտակս, հեռու փայլուն կեանք մը պիտի վարես. շարունակ հանգիստ և երջանիկ պիտի ըլլաս. երբեք չպիտի ճանչես վիշտը . . . Մարիօ՛ն, այնքան գեղանի ես որ չես կրնար կասկածիլ հաւատարմութեանս վրայ։ Կը սիրե՛մ զքեզ, և կը պարտաւորիս աչերէս գիտել թէ այս սէրը սուտ չէ։ Այո՛, կը սիրե՛մ քեզի, և կ՚ուզեմ որ միւս կիները նախանձին վիճակէդ . . . Կը սիրե՛մ քեզի, և կեանքս քու՛կդ է։

Տէ Պարօ անմեկնելի աւիւնով մը կը խօսէր։

Նորէն առջևս ծունկի վրայ եկաւ և համբոյրներով լափեց ձեռքս զոր իրեն թողած էի։

Իր ամբարիշտ պատճառաբանութիւններն արդէն մտքէս ելեր էին։

Երբ իր սէրը կը յայտնէր, ո՜րքան գեղանձն, ո՜րքան ուրախ զուարթ կ'երեւար ինձ. իր ձայնն այնպիսի հնչիւններ ունէր որ բոլոր հեշտասիրական միտումներս կ'ողողէին. կ'զգայի թէ սրտիս մէջ կ'արթննային սին փառքի արձագանքներն որք քնացեր էին, և զմայլումով կը նշմարէի այն փողփողուն և աշխարհային հեռաւոր տեսարանը զոր իմ առջև կը պարզէր։

Զիս անարգել կը տանէր դէպ իր երևակայական աշխարհը։

— Այո՛, ըսի, այո՛, կը հաւատամ սիրոյդ, սակայն իզմէ զատուելու ժամանակն է ա՛լ։ Վաղը նորէն նաւը մի՛ գար. Հետդ տա՛ր Պ. տը Սէն-Յօրլէնը. եթէ նաւն ըլլաք, զգացածս հօրմէս և նշանածէս գաղտնի պահելու չափ կեղծաւորութեան զօրութիւն չպիտի զգամ յիս։ Բարիզի մէջ կնքամօրս տունը նորէն կը տեսնուինք։

— Կնքամօրդ տունը, գոչեց. ա՜յդքան յոյս կը տաս ինձ... կնքամօրդ տունը, ուր մարդիկ չորս կողմդ պիտի բռնեն, պիտի շրջապատեն քեզի և ուր ընկերութեան ծաղրելի պատշաճութիւններն իս պիտի ստիպեն ձեռքս շարունակ սրտիս վրայ դնելու որպէս զի չցատքէ... կնքամօրդ տունը. մի՛ և նոյն բանն է ըսել ինձ որ մոռնամ քեզի։

— Ա՜խ, ո՜րքան անիրաւ ես, պարոն։ Կոմսուհին իմ կամքի հակառակ որոշուած ամուսնութեան մը հաւանիլ չուզելս գիտէ. Անտարակոյս չպիտի ուզէ որ կատարուի այն, և երբ ազատ ըլլամ, կրնաս անվախ ներկայիլ։ Տիկին տը Սէնթ-Էվրըմօնին պիտի թողում բաղդս որոշելու հոգը, և եթէ ուզէ որ հետդ կարգուիմ, ապահով եղի՛ր թէ արգելք չպիտի դնեմ իր կամքին առջև։

— Ի՞նչ աղուոր կը խօսիս, զմայլելի կին, ըսաւ Տէ Պարօ՝ աճապարանօք ոտք ելնելով։ Կը տեսնեմ որ իրարու միտքը չհասկըցանք, իրաւ է որ քիչ մ՚ուշ տեսայ։ Յանցանքն իմս է. կը պարտաւորէի աւելի բացորոշ կերպով միտքս իմացնել։ Ոչ՛, սիրելիդ իմ, ոչ, կնքամօրդ պիտի չառաջարկեմ որ ինձ տայ քեզի....։ Այնքան շատ կը սիրեմ քեզի որ չեմ ուզեր կարգուիլ հետդ։

— Ի՞նչ կ'ըսես։

— Ամուսնութիւնը սատանայական հնարագիտութիւն մը, սոսկալի վտանգաւոր փոս մ'է, վայելումի գերեզմանն և երանութեան խափոյցն* է։ Կը զարմանամ, ես որ կը կարծէի թէ այս աշխարհիս իրերուն նկատմամբ աւելի առողջ և լաւագոյն կերպով հաստատուած գաղափարներ ունիս։ Անլուծելի կապերով իրարու շղթայուող և իրենց սիրոյն աւերակներուն վրայ միասին հեծելու բռնադատուող երկու անձերու վիճակին պէս անլուր, այլանդակ, ապուշ բան մը գիտե՞ս։ Ցիրուի անըմբռնելի ցաւ մը կը պատճառես ինձ։ Սէրն ազատ ծնած է, սիրելիդ իմ. կապէ իր թեւը, և ահա անհամ ու վէս տղայ մը կը դառնայ։ Այն ատեն մարդս յօժարակամ կ'ուզէ գաւազաններ առնուլ զան արիւնը հանելու չափ գանահարելու համար։

Այս խօսքերէն սրամտեցայ, վասն զի անհնարին նուաստութիւն մը կը բերէին ինձ անոնք. սակայն ինքզինքս բաւական զսպելով կրցայ շատ հանդարտ ձայնով մը պատասխանել յանդուգն երիտասարդին.

— Հաճէ՛ ներողամիտ ըլլալու, պարոն, պատանութեանս և գաւառական ողորմալի գաղափարներուս. երբ սկզբունքդ իմ առջև պարզեցիր, կը պարտաւորէի անոնց հետեւանքը գուշակել և ծիծաղելի հանգամանք մը չստանալ քու մտքի առջև։

— Ա՛խ, Մարիօն, կ'երդնո՞ւմ թէ . . . .

— Աղէ՛կ, պարոն, զատուինք ա՛լ։

— Ի՞նչ . . . զիս այսպէս թողլու քաջասրտութիւն պիտի ունենա՞ս։

— Անշո՛ւշտ։ Կին մը դէպ յառաջ քայլ մ'առնելովը յանցանք ըրած է. արդ պէ՞տք է որ յուրի ամօթ մը զինքն արգիլէ ետ դառնալու։

— Օրիո՛րդ, դու քու անձիդ վրա՛յ մեծ իշխանութիւն մ'ունիս, և յառաջ պիտի երթաս։

* Eteignoir. Խափոցանելու, իջելով մարելու գործի։ Ծ. Թ.

— Ատի արդէն մարգարէաբար ըսուեցաւ ինծ, պարոն։

— Խնդրեմ, խորհէ՛ տակաւին․ միայն մէկ հարուածով մի՛ կորեր յոյսերս։

— Յոյսե՞րդ։ Հաւանեցայ զգայնելու Պ․ տը Սէն-Մօրլէնին Թէ անտարբեր չէիր ինծի համար․ ․ ․ ․։ Ցանցա՛նք մ՚է այս․ այո՛, Թերեւս։ Սակայն, պարոն, սրտին անբարդյութեամբ ապականիլը միայն կրնար ընդունելի ընել ինծ առաջարկութիւններդ․ արդ այս ապականութեան և պատանուհիներու յատուկ անխոհեմութեան մը մէջ վիհ մը կայ․ ․ ․ ․։ Ծառա՛յ եմ, պարոն։

Իւ Տէ Պարօն սաստիկ շուարումով մը համակուած Թողլով դէպ 'ի պարտէզին սանդուղը քայլեցի։ Բազրուաններուն վրայ կռթնելով վեր ելնելու պատրաստ էի երբ փաստաբանը սկսաւ վազել ետեւէս հասնելու համար։

— Մարիօն․ ․ ․ գէթ բարեկամ մնալով պատուինք։

— Շա՛տ աղէկ, պատասխանեցի։

— Մանաւանդ Թէ կնքամօրդ չիմացնենք մեր մէջ տեղի ունեցող այս իրողութիւնները։

— Իրօք անօգուտ է իմացնելը։

— Ուրեմն երթաս բարեւ, անգո՛ւթ։

— Երթաս բարեւ, պարո՛ն։

— Բայց ինծ նայէ՛, կ՚ուզե՞ս գրաւ մը բռնել։

Բազրուաններուն վերի կողմն էի․ Տէ Պարօ չհամարձակած էր ետեւէս վեր ելնելու։

— Ի՞նչ գրաւ, ըսի՛ սանդուղին վանդակին վրայ կռթնելով արմուկովս։

— Գրաւ կը դնեմ Թէ վեց ամիս չանցած մարդապետութիւններս ընդունած պիտի ըլլաս։

— Չէ, ամենեւի՛ն։

— Բայց գրա՛ւ կը դնեմ․ ․ ․ ․։

— Ի՞նչ գրաւ կը դնենք։

— Յիսուն հազար ֆրանքի արժողութեամբ ադամանդազարդ զարդմանակ մը գեղեցիկ Ճակատդ զարդարելու համար։

— Չեմ կրնար այդպիսի ծանր գրաւի մը փոխարէն դնել։

— Բայց ես, սիրելիդ իմ, այս գրաւին դէմ համբոյր մը կ՚ընդունիմ։

— Համբո՜յր մը . . . աղէկ չես խորհիր․ համբոյրն արդէն պէտք է տրուած ըլլայ գրաւը կորսնցնելու համար։

— Իրաւ ըսիր . . . ։ Ուրեմն գրաւականիս փոխարէն երկու տարի համաստարիմ պիտի մնաս եթէ սիրուհիս ըլլաս։

— Ո՛հ, երկու տարին շատ է երբ պիտի ենթադրես թէ վարդապետութիւններովդ տողորուած եմ։

— Ուրեմն մէկ տարի։

— Լա՛ւ, կը բռնեմ գրաւը․ բայց մատնութիւն չուզեր, լսեցի՞ր։

— Անարատ ոսկիի զանգուածի մը պէս անխարդախ պիտի ըլլամ։

— Ինչպէս ըսի, մի՛ մոռնար․ միայն կնքամօրս տունը պիտի տեսնուինք։

— Որոշուած է ատի, Մարիոն։ Դուն ալ քու մասիդ յիշէ՛ գրաւին թուականը։ Այսօր ապրիլին 25ն է։ Ձեռքդ կը շնորհե՞ս, ձեռնհասլի՞դ դու։

Վերէն երկնցուցի ձեռքս։

Հինգ կամ վեց անգամ պագաւ ձեռքս, և փախայ սենեակս մտայ, պատուհանաձև դուռը գոցելու և կղպակը երկու անգամ դարձնելու հոգ տանելով։

Այսպէս լմնցաւ այս արկածն որ կրնար աղետաւոր ըլլալ ինծ եթէ պատրաստամտութիւն չունենայի։

Տէ Պարօ՝ տակաւին դեռահաս ըլլալով՝ շատ կընկրկէր ներկային տպաւորութեան առջև, և աղէկ մը հրապուրելու մասին չունէր այն ամեն խորամանկութիւնը և սատանութիւնը զոր ետքէն ցոյց տուաւ։ Հետս ուղևորիլ ուզելու առեն սխալ ճամբայ մը բռնեց․ ապա ետ դարձաւ զարտուղի ճամբու մը ցեխերուն մէջ բոլորովին ընկղմելու համար։ Սակայն յաջողած էր զիս յուզելու իր խօսքերուն եռանդոտութեամբը, հակառակ այն ներքոր-

ծութեան զոր 'ի սկզբան ըրած էր իր սկզբանց ցաւալի յայտարարութեամբը ։

Սակայն կորսուեցաւ իր դատն երբ ամուսնութեան վրայ պատճառաբանելը լսեցի ։

Հարկաւոր չսեպած էր դարձուածներ և շրջասացութիւններ գործածել գաւառացի պզտիկ աղջկան մը հետ, որ ոչ այնքան տեղեակ էր խօսքի պատշաճութեանց և լեզուային ազնիւ զգուշութեանց ։ Արդ գաւառացի պզտի աղջկան սրտին թելերը շատ մը կենցաղագէտ կիներու սրտին թելերէն աւելի դիւրազգրգիռ էին թերևս, և Տէ Պարօ կրցաւ այն օրը կարծել թէ կատարելապէս սխալ ընթացք մ'ունեցած էր անփորձութեան պատճառաւ ։

Գիշերն 'ի բուն չպառկեցայ ։

Երբ ինքզինքս մինակ գտայ սենեկիս մէջ, վախն առաւ զիս ։ Տէ Պարօ ինծի համար ստակ կերցուցած ըլլալով իր վրայ միջակ վստահութիւն ունէի, և պանդոկապետուհիին մեղսակցութիւնը զիս կրնար նորանոր վտանգներու ենթարկել որոնցմէ ողջ առողջ ազատուելու ապահովութիւնը չունէի ։

Անկից 'ի զատ կը փափաքէի փոքր ինչ վրէժ առնուլ այս կնիկէն, և ցոյց տալ իրեն թէ իր խորամանկութիւններն ապարդիւն մնացեր էին ։

Բոլոր ոյժովս հնչակը շարժեցի ։

Պանդոկապետուհին եկաւ ։

— Տիկին, ըսի, պահ մ'առաջ ապահովութիւններ տուեր էիր ինծ, բայց սուտ էին անոնք ։ Երբ պտոյտ կ'ընէի, ծառերուն տակէն շուքի մ'անցնիլը տեսայ. ետևէս վազող մ'եղաւ. բարեբաղդաբար վազողը չհասած հոս եկայ և այս դուռը գոցեցի. բայց քանի որ կարելի է մէկու մ'այս ապակիներուն մին կոտրելով ներս մտնելու փորձ ընելը, որոշեցի մինչև առտու աթոռի մը վրայ նստած մնալ, ուստի պիտի հաճիս քովս կենալ ։

Պանդոկապետուհին դէմքը ծամռեց, ապա համակերպեցաւ՝ սաստկապէս պնդելս տեսնելով ։

Մօտակայ սեղանի մը վրայ Գլեման Մարօյի բոլոր հնատիպ եր-

կերը գտնելով մինչև տասը նամակներ, պարսաւագրութիւններ, շրջանաւոր տաղեր, պալլատներ* (ballade) կարդացի։ Պանդոկապետուհին շատ դէշ քնացաւ. բայց կ'ուզէի աշխատանքովը վաստկել տալ իրեն այն ոսկը զոր Տէ Պարօ հարկաւ տուած էր զինքը շահելու համար։

Առտու ժամը հինգուկէսին մեկնեցանք։

Օդն աւրուած էր. սաստիկ անձրև կը գար, և պարտաւորեցանք ամենքս հասարակաց սենեկին մէջ դիզուիլ։

Սակայն այն օրը միւս օրերէն աւելի շուտ անցաւ։

Երևակայութեանս առջև կը բերէի փոստարանին հետ ինձ պատահած արկածին մանրամասն պարագաները։ Կը թուէր ինձ միշտ թէ կը սիրաբանէ հետս. առջևս ծունկի վրայ եկած կը տեսնէի զինքը. իր ազնիւ և գեղեցիկ դէմքին. ինչպէս նաև հեղնական ու միանգամայն սիրավառ ժպիտին վրայ կ'աքանչանայի։ Կամքիս հակառակ բանաստեղծական հանգամանք կ'առնուր մինչև անգամ այն պժգալի դրութիւնը զոր անամօթաբար պարզած էր իմ առջև, և չեմ համարձակիր ըսելու թէ այս առաջին և վտանգաւոր դասը սրտիս մէջ չթողուց այնպիսի սերմեր որք ետքէն աղետալի կերպով մ'աճեցան։

Մեծ քաղաքին կը մօտէինք։

Քիչ մ'ետ, և ահա Փարիզ աչքիս առջևը պիտի ըլլայ, Փարիզ որ շռայլութեան և հեշտութեանց բնակարանն է, Փարիզ որու պատկերը շքեղ և փառաւոր կ'երևայ երևակայութեան։

Հազիւ դուշակութիւնները միտքս կը գան։

Ծաղկահաս և գեղանի եմ. ինչու ամեն կողմէ մեծարանք և յարգանք չգտնեմ։ Տեսնուած են ուրիշ շատ կիներ որ անշուք դասէ մ'առջև գալով ամենաբարձր սփեռներու մէջ փողփողեցան։

* Գաղղիական հին բանաստեղծութիւն, որ մի և նոյն յանգերու վրայ հիմնուած տողերգութիւններէ կը բաղկանայ, և որուն վերջը մի և նոյն տողը կը գայ միշտ։ Ծ. Թ.

Այս աշխարհիս մէջ ուրախութիւնը, երջանկութիւնն և փարթամութիւնը կը վերաբերին անոնց որ կրնան յաղթութեամբ առանձնալ զանոնք։ Եթէ բաղդին ճամբան լի է քարընդանեքով, ինչո՞ւ չխորտակեմ զանոնք։ Կ'երթամ մտնելու այն փառաւոր ասպարէզն ուր պսակներ կ'ընծայուին յանդգնութեան և քաջասրտութեան։ Բարիզ փառասէրներուն աշխարհն է։



## Ե

Նաւը յառաջանալով արդէն ետեւը թողուց Շարանթօնը։

Անցանք նաև Մառն և Սէն գետերուն խառնարանէն (confluent), և գետին մէջէն յառաջացանք առանց մեր սովորական լծուած ձիերու օգնութեան։

Եւ ահա պահ մ'ետք թանձր մուխի ամպ մ'իմաց տուաւ մեզ թէ Բարիզի մօտ հասած ենք։ Նօթր-Տամի աշտարակները հորիզոնին վրայ կը ծրագրուէին։

Արագօրէն վեր ելնելով նաւին տախտակամածին վրայ կեցայ, ուրկէ շէնքերու ահագին դէզ մը, քիւեր, զանգակատուներ, գմբէթներ, տուներ, փոքր աշտարակներ նշմարեցի որք կը խըմբուէին, իրարու կը խառնուէին, տեսութենէ աներևոյթ ըլլալու չափ հեռաւորութեամբ կը տարածուէին՝ մերթ խռնոց ահեղ զանգուածովը գետինը ճզմելով, և մերթ դէպ երկինք խոյս տալու համար գետնէն զատուելով։

Կը հիանայի, այս քարային աշխարհին, մարդկային փեթակներուն կը նայէի որոնց բզզումը մինչև մեզ կը հասնէր. կը հարցնէի իւրովի թէ արդեօք երազ մը չէ՞ր տեսներ, թէ արդեօք այս խորին և վեհաշուք ժխորը մեծաշէն քաղաքին ձայնն էր ի-

րօք, և թէ արդեօք այս լայն և գեղեցիկ գետը մեզի պէտք ունէր նմրուը կը տանէր։

Արդէն կը հասնէինք պատուարներուն։

Մեր աջ կողմէն սկսաւ երևալ նոր պատնէշը, ապա Զինուորա-նը, ապա իր պարտէզները, որոնց վերևէն անցաւ Պալաթէյին իր սպառնալի աշտարակները և թնդանօթներով բռնաւորուած ժայ-ռերը ցոյց կը տար մեզ։ Մէն գետին այս կողմը քարափանց ան-բառ գիծ մը շինուած լինելու է որ Սէն-Բօլի քարափէն մինչև Զինարանը կը տարածուի։ Նաւը քով քովի խռնուած տանձերու երկու կարգի մէջ անցէն միշտ յառաջանալով արագօրէն անցաւ Մարնի կամուրջին կամարներուն տակէն։ Հօգրիէթի երկայնու-թեամբը չուելով մեր ձախակողմէ ունեցանք Միջնաքաղաքը, այ-նինքն դարերու այն սևաթոյր հին որոշանը զոր գետոյն ամէն կողմէ կը շրջապատէ, իբր թէ տանեաք ուզած ըլլար աղայ Բարիզը քնացնել իր ջուրերու կարկաչումին ձայնովը։ Նորէն տեսանք Նօդր-Տամ եկեղեցին, և անմիջապէս ետք նաև Սէն-Ժան Լըրօ-նի եկեղեցին, ուր զանգակատան սրածայր փոքր բուրգը համեր-տաբար անտրևայթ կ՚ըլլայ ամէհաշէն աշտարակներու քուքին մէջ։

Վերջապէս անցանք Շաթըլէն, բարևեցինք Թագաւորներուն հինաւուրց պալատը. ապա նաւավարը նաւը դէպ աջ կողմէ ուղ-ղելով հասաւ գետեզրը և մեզի կեցուց Բօն-Նէօֆի մօտ որ Բէ-րէնի Ջրարբին վերև կողմն է։

Որեվէ հրապարակէն սկսեալ մեր երկու կողմէն ժողովուրդի ա-հագին բազմութիւն մը նշմարեր էինք։ Բազմութիւնն եւ աւելի շատցաւ այն տեղն ուր նաւէն դուրս պիտի ելնէինք։

Բայց ոչ ոք համարձակեցաւ դուրս ելնելու։

Ի՞նչ կրնար ըլլալ այս ժողովրդային աղմուկին պատճառը. չգիտէինք. բայց յայտնի էր թէ այն օրը բան մը, տարօրինակ և սոսկալի բան մը կ՚անցնէր Բարիզի մէջ։

Նաւավարը դուրս ելաւ բազմութեան հետ խառնուելու և տե-ղեկութիւններ առնելու համար։

Բողէէ մ՚ետք նորէն նաւն եկաւ ահաբեկ դէմքով։

— Ի՞նչ է, ի՞նչ կայ, հարցուցին Համբորդները։

— Երեկ Լուվրի պալատին մէջ Մարէշալ տ'Անգրը մեռցուցե՜ր են, գոչեց։ Այս գիշեր պահնորդ զինուորներ գաղտնապէս Սէն-Ժերմէն-Լօքսերուա եկեղեցիին մէջ թաղեցին իր մարմինը, և խաժամուժ ամբոխը գուշակելով թաղուած տեղը՝ պահ մ'առաջ դիակը գերեզմանէն հանած է, աղխին մէջէն կը քաշէ կը տանի և կ'ուզէ կախել սա կախաղանէն զոր Փօն-Նէօֆի վրայ կը նշմարէք։

Ոտից ցգլուխ սարսուռ մը զգացի։ Մէն մի Համբորդ ամէն կողմէ որոտացող ժողովրդային փոթորիկին հետ նաև հազարաւոր ձայներէ կրկնուող աղաղակ մը կը լսէր որոշակի։ Այս աղաղակն էր.

— Մեռնի՜ն Գոնչինիները։

Էլլընէյի ազնուականները յիշեցի։

Երկու օր առաջ անոնք ալ և նոյն սպառնալիքը կ'ընէին՝ ալ և նոյն համաձայն ատելութեամբ։

Մարէշալ տ'Անգրը՝ որ Ֆլորէնցացի դիւանագէտ (diplomate) մը տղան էր՝ իր բախտաւորութիւնը կը պարտաւորէր Մարի տը Մէտիսիսի որու հետն եկած էր այն իշխանուհիին ամուսնութեանը ժամանակ։ Թագուհիին դայեկասնունդ քոյրն էր իր կինը՝ Լէոնօր Կալիկայի՝ որ անշուք առհմէ էր։ Թագուհին շատ սէր ունէր Լէօնօրին վրայ և ուզեց Ֆրանսա բերել զան։ Իրաք հետը բերաւ իր դայեկաառհմ քոյրը և շուտով կարգեց Գոնչինիին հետ որ իր ամվոլական գործերուն ծառայող աղնուականն էր։

Այս երկու բախտաւորուններուն այնքան ազդեցութիւն ունէին Մարի տը Մէտիսիսին վրայ որ Անրի Դ. անգամ չէր կրնար դիմադրել այն ազդեցութեան։ Կալիկայի բազմաթիւ խռովութիւններ հանեց Թագաւորին և Թագուհիին մէջ։

Անրի Դ. օր մը Լուվրի պարտէզին մէջ Գոնչինին ցոյց տալով քանի մ'աղնուականաց, ըսաւ.

— Կը տեսնէ՞ք սա մարդը. ահա ան պիտի կառավարէ Ֆրանսան՝ մեռնելէս ետք, և գործերն աւելի աղէկ պիտի չերթան։

Իրաւ Ռավայեաք իր աչքը գոցելէն ետք* երկու Ֆիօրէնցացիները սանձարձակ քայլեցին ։ Ծիւլէի բոլոր ջանադրութիւնները չյաջողեցան արգիլելու Տէրութեան գանձին վատնուիլը ։ Թագաւորը Մայիսի 14ին սպաննուեցաւ, և օգոստոսի 1ին Պասթիյլի ստորերկրեայ գանձարաններէն հինգ միլիոն Ֆրանք վերցուած էր ։

Գոնչինի առջի օրն օճղը ըսուած թուղթի խաղին մէջ վեց միլիոն ֆրանք կորսուած էր ։

Այս կորուստը չարգիլեց զինքը Անգրի Մարքիզութեան երկիրը գնելու ։ Իր կինը՝ Կալիկայի՝ արկղը լեցնելու հոգ կը տանէր ։ Պարգևական կալուածները, պաշտօնները, մենաշնորհութիւնները, վերջապէս ամէն բան կը ծախէր. այս առևտուրն իրեն համար այնքան մեծ ախտ մ'եղած էր որ՝ եթէ հաւատանք աղէկ տեղեկութիւն ունեցող անձանց՝ Կալիկայի ինքզինքն անգամ ծախելու փափաքը բազմիցս կատարեց ։ Մանաւանդ որ Գոնչինի իր կնկան ծախուելուն այնքան ուշադրութիւն ընող մարդ չէր ։ Թագուհին ամէն ատեն այնքան անակնկալ շնորհներ կ'ընէր այս մարդուն որ շատ անգամ ծիծաղաշարժ կը դառնային այն շնորհները ։

Բոլոր արքունիքն անբաւ քրքիջ մ'արձակեց այն օրն որ իտալացին Ֆրանսայի մարէշալ անուանեցաւ, վասն զի Գոնչինի յառաջապահ զօրքի ամենապարզ կռիւի մ'անգամ մասնակից չեղած էր ։

Թագուհին այս սիրականին անոնց բարկութիւնը, անոնց նախանձը, վերջապէս ամէն բան առ ոչինչ կը համարէր ։ Պայազատ իշխանները խնամակալ Թագուհին դիտողութիւններ ըրին այս մասին. սակայն Մարի տը Մէտիսի իր սիրականին համար պայազատ իշխաններուն հետ անգամ աւրուեցաւ ։ Խռովութիւն և անկարգութիւն ամենուրեք կը տիրէին ։ Ազնուականաց ատելութիւնը նաև քաղաքացիներուն, ապա նաև ժողովուրդին անցաւ ։

Ֆրանսայի մէկ ծայրէն միւս ծայրը միայն մէկ աղաղակ կար ։

* Ռավայեաք ժեզուիթներուն ներշնչումովը Անրի Չորրորդը սպաննեց ։ Ծ. Թ.

Մահուան սպառնալիք կ'որոտար մարէշալին ականջներուն ։

Եթէ հպարտութենէն կոյր դարձած չըլլար, բարիգցիններուն տրամադրութեանցը մէջ իր նկատմամբ աղետալի գուշակ մը տեսած պիտի ըլլար ։ Արկած մ'որ Լուսէօնի բանակցութեան ժամանակ պատահեցաւ իրեն՝ կը պարտաւորէր իր պատրանքը փարատել և ստիպել զինքը Ֆրանսայէն ելնելու կարելի եղածին չափ շուտ ։

Գիշեր մը Պիւսիի դրան քովը տեղի ունեցաւ իրողութիւնը ։

Քաղաքաւորները զինուելով պահնորդութիւն կ'ընէին ․ ոչ ոք կրնար քաղաքէն մեկնիլ առանց անցագրի, և տ'Անգրը մարէշալը զատկական տօնի օրերն իր արուարձանի ամառանոցը երթալու և զբօսնելու քմահաճութիւնը ունեցաւ ։

Ուստի կառքը մտաւ ազնուականներէ բաղկացող պատկառելի ուղեկիցներու հետ, և գնաց Պիւսիի դրան առջեւ երեւցաւ ։

Քաղաքաւորներն իր կառքը կեցուցին ։

— Անցագիրդ, վսեմափայլ տէր, ըսաւ Բիգար անունով կօշկակար մը դռնակին առջեւը գալով ։

Գոնչինի ուսերը վեր ընելով հրաման տուաւ իր կառապանին որ ձիերը մտրակէ ։ Բայց Բիգար իր գեղարդը երկնցուց անոր առջեւը, և գոչեց իր ընկերներուն որ օգնեն իրեն ։ Ակնթարթի մը մէջ կառքը նիզակներէ շրջապատուեցաւ, պահնորդներն իրենց հրացանները լեցուցին ։

Մարէշալը սաստիկ բարկանալով դուրս հանեց գլուխը և քաղաքաւորները կախաղանը ղրկելու սպառնալիք ըրաւ ։

— Հոգ մի՛ ընէք և դիմացէք, ըսաւ Բիգար, և եթէ շարժին, հրացանները արձակեցէք ։

— Անզգամ, պատասխանեց մարէշալը, ի՞նչպէս չես տեսներ ով ըլլալս ։

— Ներէ, ըսաւ կօշկակարը ծաղրական ձայնով մը ։

— Այս ուրեմն ետ քաշէ մարդերդ ։

— Ձեր անցագիրը ․ ետքը կը նայինք քեզ հատուցում տալու խնդիրը ։

— Ենչապէր չունիմ, պատասխանեց Գօնչինի։

— Քանի որ չունիս, կը պարտաւորիս Լուվրը վերադառնալ, վսեմափայլ տէր։ Պատուէրին կը հնազանդինք։

— Սրիկայ ես եղեր։

— Նաեւ դուն։

— Ծեծի տակ մեռցնել պիտի տամ քեզի։

— Մոռցած ես այդ բանին։

— Բարկութենէս չվախնալով ինչ վտանգի ենթարկուիլդ չգիտես։

— Այո, մեծ ազդեցութիւն ունիս յարքունիս, խեղճ ժողովուրդին ատելի ըլլալու չափ ազդեցութիւն ունիս. բայց ամբոխը պիտի տեսնէ։

Ամբոխը գիտնալով թէ մարէշալն իր կառքին մէջն է՝ կ՚սկսէր հաւքուիլ. սկսաւ Թշնամական խօսքեր ըսել մարէշալին և խնամակալուհիին դէմ։

— Չնայինք թէ ինչպէս կը սիրուիք. ըսաւ Բիգար։ Ինծ նայեցէք, շարայարեց այս խօսքը քաղաքացիներուն ուղղելով, հոս եկէք դուք և նորին վսեմափայլութիւնը Թաղին ոստիկանութեան գործակալին տարէք։ Եթէ Թող տրուի իրեն դուրս ելնել առանց անցագրի, Թող ելնէ և կորսուի երթայ։

Գօնչինի կատաղութեամբ կը փրփրէր։

Հարկ եղաւ ճամբայ ելնել և ոստիկանութեան գործակալին բնակարանն երթալ՝ դուրէն անցնելու հրաման ստանալու համար։

Խնամակալուհիին և Թագաւորին մինչև մայրաքաղաքը դառնալն իտալացին իր կրած նախատինքը կլլելով համբերեց, վասն զի կը վախնար ապստամբութեան մը տեղի տալու. բայց երբ այս մասին ալ ամենևին վախ չունեցաւ, իր ծառաներէն եօթը կամ ութը հոգի կօշկակար Բիգարին տան բոլորտիքը դարանակալ կեցուց, և հրաման տուաւ անոնց որ՝ ծեծելով մեռցնեն զան։

Ծառաներն այնքան առատիկ արագութեամբ հնազանդեցան այս հրամանին որ խեղճ բանուորը փողոցը ձգուեցաւ իբր մեռեալ։

Սակայն Բիզարի գանահար մարմինն առողջացաւ, և կօշկարարը Գօնչինիին ամենէն կատաղի թշնամին եղաւ։

Գօնչինի ամենուրեք իր ճամբուն վրայ կը հանդիպէր Բիզարին։ Սա տօրին դատու ժողովուրդը մարէշալին կառաձիին քոլորտիքը կ՚ապստամբեցնէր։ Այն օրն որ Գօնտէի իշխանը ձերբակալ եղաւ, Բիզար ուղղակի մարէշալին հոյակապ ապարանքը տարաւ բեռնակիրներու և բաղերու խումբ մ՚որք դուռերը խորտակեցին, պահոցները աւերեցին, և կարասիներն ու ադամանդեղէնները պատուհանէն դուրս նետեցին։ Իտալացին գողալով ապարանքին ծառաներու սենեկին մէջ պահուեցաւ ժողովուրդին խուժարկութիւններէն ազատելու համար։

Այսպէս ուրեմն տ՚Անգրը մարէշալն ինչպէս պալատին, նոյնպէս և քաղքին մէջ ալ միայն թշնամի երեսներու կը հանդիպէր։
Խնամակալ Թագուհին անգամ սկսաւ վրդովիլ։

Երբեմնակի ստուգապէս յորդորեց Լէօնօրը որ Ֆիօրէնցա վերադառնայ, հետն առնու տանի իր հարստութիւնը, նաև էրիկը. սակայն անխոհեմը չհաւտաց վտանգին՝ առարկելով թէ Թագաւորն ոչ երբէք այնքան խնդումերես երևած էր մարէշալին որքան այն ատեն։

— Մի վստահիր ատոր. Թագաւորը բան մը կ՚ըսէ և հակառակը կը խորհի։

Այս եղաւ Մարի տը Մէտիսիին պատասխանը։

Իրօք ապրիլի 24ին Լուի ԺԳ. անկողնէն ելած միջոցին ստորագրեց իտալացին բռնելու հրամանը։ Գօնչինին ըստ սովորութեան երբ ժողովին կը գար, Լուվրի գաւիթին մէջ Վիթրիին հանդիպեցաւ որ պահնորդաց հրամանատարն էր, և որ խստիւ հրամայեց իտալացիին իրեն յանձնել սուրը։

Գօնչինի ուզեց դիմադրել. սակայն մի և նոյն պահուն հրացէն մը պարպուեցաւ, և իտալացին մեռնելով ինկաւ անշարժ։

Հրացէնին պայթիւնը պալատին ամեն կողմէ արձագանք գտաւ։ Դրեթէ իսկոյն մայր–թագուհիին բնակարանին մէկ պատուհանը բացուեցաւ, և Մարի տը Մէտիսի ինքն անձամբ երևալով ահաբեկ ձայնով մը հարցուց թէ ինչ կար։

— Մարէշալը մեռաւ, պատասխանեց Վիթրի։

— Ապիրա՛տ, գոչեց Թագուհին՝ գլուխը նշմարելով, դուն ես մեռցնողը։

— Այո՛, տիկին։

— Մեռցնելու հրամանը ո՞վ տուաւ քեզ։

— Թագաւորը։

Մարի տը Մէտիսի պատուհանէն ներս քաշուեցաւ, և սկսաւ հերարձակ, գրեթէ իբր յիմար վազել մօտակայ սրահներէն, յուսահատութեամբ գոչելով.

— Արդէն ըսե՛ր էի, արդէն ըսե՛ր էի։

Այս եղաւ մարէշալ տ'Անգրի տրամալի վախճանը։ Պատմութիւնը սրամտելով մարէշալին անամօթ բախտաւորութեան և իր ծայրայեղութեանց վրայ չհամարձակեցաւ իր պատիժը պարսաւելու։

Դիակն օրն 'ի բուն նեղ խորշի մը մէջ կեցաւ, որ Լուվրի դռնակին տակի կողմը բացուած էր, և ուր կը կենային պահապանութիւն ընող զինուորները։ Երեկոյեան դէմ կտաւերու մը մէջ ծրարուելով պատգարակի մը վրայ դրուեցաւ և գաղտնապէս Սէն-Ժէրմէն Լօքսէրուա եկեղեցիին երգիչներուն տակը թաղուեցաւ։

Քահանայ մը գերեզմանին եզրին վրայ ուզեց Փառք 'ի բարձունս ըսել, սակայն երկու զինուոր իր բերանը գոցեցին.

— Լռէ՛, ինչպէս աւելորդ ժամանակ ունիս Աստուծու աղօթքը ընելու այդ անզգամին համար։

Թէև թաղումը գաղտնի պահուած էր, բայց և այնպէս հետեւեալ օրն եկեղեցին խուժեցին ճիշդ այն անձերն որք մարէշալին ապարանքը թալլեր էին։ Նախ Սէր-Ժէրմէն Լօքսէրուայի եկեղեցականներն ուզեցին պաշտպանել եկեղեցին, սակայն ժողովուրդը զօրաւորագոյն էր. ուստի տաճարն արշաւեց, դասու այնտեղը ուր գիշերային փորապեղները (fossoyeur) ալլաքարերը հաներ էին, բացաւ գերեզմանը, բանեց և դուրս քաշեց դիակը յաղթութեան աղաղակներ արձակելով.

Լուվրէն քանի մը զինուոր ղրկուեցան մեծ վերակացուին առաջնորդութեամբ որպէս զի մարէշալին մարմինը բազմութեան ձեռքէն կորզեն, սակայն լոկ արտաքին ցոյց մ'էր այս։

Մեծ վերակացուն դռնակին առջը հասնեցաւ եւ հաւանեցաւ ետ մղուելու առանց մեծ դիմադրութեան։

Գտնուեցան իսկ պաշտպաններու ամբողջ խումբ մ'որ խռովութեան տեղէն անցնելով փութաց երեսունի չափ հրացէնի պատրոյգ տալ ժողովուրդին։

Այս պատրոյգներն իրարու կցուելով դիակը կապելու և զայն տղմին մէջէն քաշքշելու ծառայեցին։

Ամբոխը հինգ անգամ Լուվրին բոլորտիքը ժուռ ածեց մարէշալին մարմինը՝ ամեն անգամ սոսկալի ոռնումներով Գալիկայի Լէոնօրին պատուհաններուն տակ կանգ առնելով։ Վերջապէս անհնարին կատղութեամբ վարակուած խաժամուժ բազմութիւնը դէպ 'ի Բօն-Նէօֆ (Նոր-Կամուրջ) խուժեց մարմինը կախելու համար կախաղանի մը զոր մարէշալն ինքն ամիսներէ 'ի վեր կանգնել տուած էր խռովարարները վախցնելու համար։

Մենք ահա խռովութեան այս միջոցին Բարիզ հասեր էինք։

Սառնարեկ քրտինքը քունքս կ'ողողուէր։

Գաբրիէլ Տըլօրմ և Ցովսէփ նոյնպէս վրդովեր էին. ինչպէս իմ, նոյնպէս և անոնց ծունկերը ահաբեկ կը ծռուէին, և որոշեցինք մեր երեսը քօղել այս սոսկալի տեսարանէն ազատելու համար։

Հինգ կամ վեցը մարդ՝ բազմութեան խիտ զանգուածը ճեղքելու փորձը ունայնաբար ըրելէն ետք եկան մեր նաւը մտան, ուսկից աւելի աղէկ կրնային տեսնել ինչ որ Բօն-Նէօֆին վրայ տեղի կ'ունենար։

Այս մարդերը հօրս և Գալիգային սպասելով ըսին.

— Միթէ դեհեննապարտ մարէշալին բարեկամներէ՞ն էք.

Անոնց մէկն անարգութեամբ երեսս բանալով գոչեց.

— Նայէ՛, պզտիկ, նայէ. պէտք է գիտնալ թէ ժողովուրդն ինչպէս կը վարուի մատնիչներուն հետ։ Սքանչելի՛ է. ահա ատ-

ներքէն կը կարդին․ ի՛նչ շքեղ անասուն։ Բայց չնայի՛ս, պղտոր կղ-դու, չնայի՛ս։

Եւ թեւս կը շարշարէր իր կարմիր և կոշկռուած ձեռքովը։

Բռնադատուեցայ հնազանդելու։ Մանաւանդ որ այս անձն անձինք կրնային խիստ գէշ վարմունք մ'ունենալ մեզի դէմ։

Կառապանը մեր առջին էր․ դիմացը գլխիվայր կախեր էին արդէն։ Ցեռակ մ'արիւնաթաթաւ և աղմուս մարդակերներ մատղածառի երկայն դանակ մը բռնելով այս մարդկային գլխակէն վերայ կը յարձակէին կատաղութեամբ։

Կ'զգայի թէ պիտի նուաղիմ։

— Վա՛յ, Բիգա՛րն է ան, գոչեց այն մարդերուն մին որը մեզի կը բռնադատէին այս ողակայի մանր պարագաներուն նայելու․ ազատաւորներէն սաստիկ ծեծ ուտող կոշկարա՛րն է ան . . .։ Այո՛, ճշմարիտ ա՛ն է։ Կեցցե՛ս, Բիգար, կեցցե՛ս։

Այս խօսքերուն անմիջապէս արձագանք գտան բազմութեան մէջ։ Մոլեգնական ծափահարութիւններ որոտացին, և այս ահագին բազմութիւնը միաձայն գոչեց․

— Կեցցե՛ս, Բիգար։

Կոշկարարը բազմութեան ընդհանուր ծափահարութենէն զըրգռուելով գլխակէն կուրծքը ձգեց, սիրտը կորզեց առաւ, և հրաշէկ ածուխներու վրայ դրաւ ուր ուրիշ մարդակերներ պահ մը առաջ թերեր և կամրջին պարիսպին վրայ դրեր էին։ Այս սոսկալի կերակուրը բաւական խորոված սեպելով կերեց, առաջին շերտը կերաւ, և մնացորդը իր մօտականերուն տուաւ։

Խռովութեան այս գազանային պարագան վերջ չտեսած ես արդէն նուաղեր էի։

Երբ սթափեցայ, նաւին մէջ ա՛լ միայն հայրս, Գամպուզար և նաւապետին կինը կար որ անոնց հետ կ'աշխատէր զիս սթափելու։

Գամպուզար քովս ծունկի վրայ եկած՝ սաստկապէս կ'արտասուէր։ Երբ աչերս բացի, ուզեց՝ զիս համբուրելով իր ուրախութեան բոլոր եռանդը ցոյց տալ ինծի։ Խե՛ղճ տղայ․ իր բարե-

սրտութեան այս նոր ապացոյցն արգահատութիւնս գրգռեց։ Սակայն զիս համբուրելու հոգէն ազատեցի զինքը։

Կը կարծէի թէ սոսկալի երազ մը տեսեր եմ։

Զօրս կողմս նայելով կը փնտռէի այն բազմութիւնը, որու սոսկալի աղաղակները լսեր էի պահ մ'առաջ. դէպ 'ի Գրէվի հրապարակը խուժած էր այն, դիակին կոծը կախաղանէն վար առնելէն ետք, և զայն նորէն քաշքշելով տարած էր իր արիւնարբու շառայութիւնը այլուր վերստին սկսելու համար։

Նաւավարին կինը մեզ Սէն-Թոմա-Տիւ-Լուվրի փողոցը ցոյց տուաւ ուր էր տիկին Տը Սէնթ-Էվրըմօնի ապարանքը։

— Մեկնինք, հայր իմ, գոչեցի։

Գամփիզար աղջէն մեր սպասներով բեռնաւորուած էր։ Դուրս ելանք նաւէն։

Գաբրիէլ Տըլօրմին Թեւը ուժգնապէս բռնած կը քալէի։

Բօն-Նէօֆի անկիւնը դարձեալ ապիրատներու խումբ մը տեսայ, որք պահ մ'առաջ այն տեղն իսկ այրեր էին նահատակին քանի մ'անդամները։

Այս ապիրատներն ունկնով մոխիր կը վաճառէին։

Անոնց մէն Գոնչինիին մարմինը կախաղանէն կապած ըլլալը յայտնելով իր Թաղիէ գլխանոցն անցորդներուն կ'երկնցնէր և անոնցմէ բան մը չ'ուզեր պարան մազելելու կտրած ըլլալուն փոխարէն։ Իւրաքանչիւր ազ կը փութար բան մը տալու։

Վերջապէս Սէն-Թօմա-Տիւ-Լուվրի փողոցը հասանք։

Ցոյց տրուեցաւ մեզ կոմսուհիին տունը, և ստիպուեցանք երկար ատեն դուռը զարնել մինչև բացուիլը, վասն զի խուժանը նոյն Թաղին մէջ խռովութիւնը սկսած ըլլալով յանկարծական իրողութիւններէ կը վախնային Թաղին բնակիչները։

Վերջապէս կառնադուռին մէկ մասին բարձրութեամբ վերե կողմէն տեսակ մը վանդակաւոր պզտի պատուհանին բացուիլը, և ապարանքի դռնապանին խաղաղարար ծածկուած ուռեցիկ երեսին երևալը տեսանք։

— Ի՞նչ կ'ուզէք, ըսաւ մեզ բոլորովին գերմանական արտասանութեամբ չեշտուած ձայնով մը։

— Տիկին Տը Սէնթ-Էվրըմօնը կ'ուզենք։

— Ի՞նչ պիտի ընէք.... ։ Ո՞վ էք դուք։

— Անունս Մարիոն Տըլօրմ է, և նաւով եկայ հօրս և հե-տամախս հետ։

— Չեմ ճանչեր։

— Բայց կոմսուհին ինծ կ'սպասէ. իր սանն եմ։

— Կեցէ՛ք ուրեմն, երթամ նայիմ։

Դռնապանը պատուհանը գոցեց նորէն։ Քանի մը րոպէէն ետք նորէն եկաւ և փութաց ներս առնելու մեզի։

— Բիւր ներումն կը խնդրեմ, օրիորդ։ Ըսուեցաւ ինծ որ շուտ, խիստ շուտ վեր ելնէք։

Այսպէս ըսելով դռնապանը ցոյց կը տար ինծ շքեղազարդ սանդուղ մ'որ փառաւոր օթոցներով ծածկուած էր, և որուն բազրոցներուն վրայ ծաղկաւէտ թուփերով լի արկղեր շարուած էին։

Ցաւալի յուզմանցս յիշատակը բոլորովին ելաւ մտքէս երբ սանդուղին գլուխը կայնած տեսայ շքեղապէս հագուած տիկին մ'որ թեւերը կը բանար և ամենակաթողին կերպով մը կը ժպտէր ինծ։

Կնքամայրս էր այս տիկինը։

Սիրտս ուժգնակի կը բաբխէր. արագօրէն վեր ելայ բազրոցներէն, և գացի կնքամօրս ոտքը նետուեցայ իսկոյն։

— Չէ՛, չէ՛, գի՛րկս, ծո՛ցս նետուէ՛, սիրելի պզտիկս, ըսաւ զիս վերցնելով և հազարումէկ խանդաղատանք ցոյց տալով ինծ։ Տե՛ս որքան աղուոր է. ի՜նչ կենդանի գոյներ. ի՜նչպիսի սև աչեր։

Կոմսուհին անյապաղ կը համբուրէր զիս։

— Ի՞նչ կը նշանակէ ասի, օրիորդ. աղաչեցի՜ քեզի որ ատանկ աղուոր ըլլաս. ինչու նախ հրաման չառիր ինծի, չըսես.... ։ Գէթ անգամ մը կնքամօրդ խորհուրդ հարցնելու էիր.... գիտնամ որ նախանձոտ եմ ես.... ։ Սա Վիլարսօն խելք ունի՞ եղեր որ զիս թողուց և գնաց խռովութիւնը տեսնելու։ Սիրելի մարքիզը շատ կ'ուզէր այս բանը, և ահա բոլորովին ուրախ զուարթ

կը գտնես մեզի, աղջիկս։ Ահա թագաւորն ազատեցաւ մարէշալէն . . . ։ Բայց, Տէ՛ր Աստուած, աղէկ միտքս եկաւ. անկից անցար հոս գալու համար։

— Բօն-Նէօֆէն, կնքամայր իմ։

— Եւ տեսար . . . ։

— Սոսկալի՜ իրողութիւններ։

— Որք սոսկում տուին քեզ . . . ։ Խե՛ղճ որդեակ։ Բայց բան մը չպատահեցաւ քեզ, այնպէս չէ՞։ Ալիրատ մ'էր ան. արժանի եղաւ իր վիճակին. ա՛լ իր խօսքը չընենք։ Վիլարսօ այս գիշեր պիտի վերադառնայ։ Ի՞նչպէս պիտի սքանչանայ վրադ, սիրելի Մարիօնս։ Բայց տե՛ս ո՛րքան սիրուն, ո՛րքան շնորհալի ես եղեր։

Բարեսիրտ կոմսուհին առանց յոգնելու կը համբուրէր զիս։

— Հա՛, ճանչեցի քեզի, սիրելիդ իմ Տըլօրմ, ըսաւ ապա հայրս նշմարելով։ Բարի՜ եկար. տունս իբր քու տունդ սեպէ։ Տակաւին միտքս է այն համբաւաւոր անկումը որու շնորհիւ ճանչուոր եղանք քեզի հետ։ Անկից 'ի վեր նոյնպիսի կերպով դարձեալ չընկա՞ր։

— Չէ՛, տիկին. սակայն մեծ ազնուութիւն մ'է այն անկումս յիշելդ, պատասխանեց հայրս. անկից 'ի վեր տասնուվե՛ց տարի անցաւ։

— Տասնուվեց տարին, սիրելիդ իմ Պ. Տըլօրմ, ծերութիւն կը բերէ մեզ։

— Ո՛հ, տիկին, միշտ առոյգ, միշտ ծաղկահաս ես . . . ։

— Լռէ՛, շողոքո՛րթ։ Երկար ատենէ 'ի վեր հայելիս առոր ներհակը կը հաստատէ . . . ։ Սո՛ւրբ Աստուած, ի՞նչ կը տեսնեմ, ըսաւ ինծի յանկարծ տիկին Տը Սէնթ-Էվրըմօն ցած կերպով և ահաբեկ ձայնով։

Ցովսէփ Գամիւզար մեր սպասներուն հոգովը զբաղած ըլլալով դեռ նոր կը հասնէր սանդուղին վերի գլուխը։

— Հետամուտս է ան, կնքամայր իմ։

— Այո՛, իր հետամուտն եմ, կրկնեց Գամիւզար, անթերի

կոշտութեամբ մը բարեւ տալով։ Տղայ մ'էի երբ, տիկին, բեր-լինեան կառքդ Շալօնէն անցաւ... Հոգ չէ տակից անցնիլը. շատ աղէկ կը ճանչեմ։

— Կառքը, բարեկամ։

— Ո՛չ, տիկին, քու վրայ է խօսքս։ Համարձակութեամբ կը տես-նեմ որ գէշ չէ առողջութիւնդ։ Ո՞ւր պէտք է դնել մեր սպասա-նքը։

— Ծառաներուս հրաման տրուած է. Հիմա ձեր տեղը պի-տի տանին ձեզի. առաջնորդուեցէք, պարոններ. ես սենեակս կը տանիմ այս օրիորդը։

Եւ երբ մինակ մնացինք, կոմսուհին ըսաւ ինծի.

— Բայց ստուգապէս հրէշ մ'է ան։

— Բայց է, այո, հիւրամայր իմ։



Զ

Կոմսուհին զիս այնքան շնորհալի կերպով ընդունած էր, զիս վերստին տեսնելու ուրախութիւնն այնքան անկեղծօրէն կը յայտ-նէր որ պինդ շատ ընտանի եղայ. չուշնացայ պատասխանելու իր քաղցր գգուանաց որոնցմով կը շոյէր զիս։

Տիկին Տը Սէնթ-Էվրըմօն կրնար քառասունէն մինչեւ քառասուն ու հինգ տարեկան ըլլալ։ Տակաւին շատ գեղանի երեւցաւ ինծի ան։ Չէի գիտեր յարդուզարդի այն պզտի գաղտնիքները, որոնց-մով այն ժամանակ մեր սեռը կրնար խորշոմները կոցել եւ ժամա-նակին աւերումները ծածկել։ Կնքամայրս խիստ գեղեցիկ մազեր ունէր տակաւին, եւ անտիկական կանանց պէս զանոնք վեր կ'ընէր իր ճակատին բոլորտիքը։ Նայուածքը հրեշտակային քաղցրութեան

մ՚ունէր․ կրնար ամեն միացեալ շնորհագեղութեանց տեղը բռնել այն բարեսրտութեան հոգին որ երեսին վրայ կը ծաւալէր։

Երբ իր սենեակը հասանք, նախ քաջ դիտեց թէ մի և նոյն հասակին ունէինք, ապա հնչակը շարժեց, հինգ կամ վեց շքեղազարդ հագուստներ ուզեց, և ամենն ալ մի առ մի ինձ փորձել տուաւ։

Վերջապէս անոնց մին ընտրեց որոշակի։

Գաւառական հագուստներս հանելով հագայ երկնագոյն սնդուսէ րօպա մ՚որու շրջազգեստին առջևի կողմէն կը բացուէր։ Րօպային լանջակալն և քամկոնակը զարդարուած էր թեթև տասններով որք վայելչութեամբ մէջքին բոլորտիքը կ՚ընկնէին։ Ցակայն կը պարտաւորիմ ըսել թէ այս նոր հագուստին ամեն մասերը հաստատապէս հաճելի չեղան ինձ։ Պարանոցի բարձրաձև զարդերն ըստ իս կուրծքը անշնորհ կերպով մը կը ծածկէին։ Անկից 'ի վեր պարանոցի այն բարձրաձև զարդերը աներևոյթ ընելու նպաստեցի։

Սենեկի սպասուհիները գլուխս շտկեցին։

Երբ աւարտեցին գլխիս յարդնուզարդը, կնքամայրս անոնց մէկին տուաւ հին լաթերս, ապա ձեռքս բռնեց, զիս ոտք հանեց, քալեցուց, աջ կողմը, ձախ կողմը դարձնել տուաւ, և յանկարծ իր զարմանքը յայտնեց։

— Ինչպէս լաւ կ՚երթայ իրեն այս հագուստը․ գոչեց․ ինչ ընտիր կերպարան, ինչ զմայլելի մարմին։ Սիրելիդ իմ պզտիկ, այսօրէն իսկ կրնաս արքունեաց պարահանդէսի մը զարդն ըլլալ։ Առաջին պարահանդէսին՝ որ պիտի տրուի՝ երբ ազգականուհիներուս մին ընդունել պիտի տամ քեզի, և կ՚երդնում թէ հետս պիտի գաս։

— Արքունեաց պարահանդէ՞սը, կնքամայր իմ․ արքունեաց պարահանդէ՞սը պիտի երթամ։

— Եւ աղուորներուն յետնագոյնը չպիտի ըլլաս։ Համբուրէ՛ զիս։

Յօժարակամ հնազանդեցայ։

Կոմսուհին գնաց հովահար մը բերաւ և ձեռքս տուաւ․ զայն

գործածելու կերպը ցոյց տալով։ Աքանչելի տրամադրութիւններ ունէի. այնպիսի հաճելի, այնքան սիրուն պչրասիրութեամբ մը կարդարուեցայ որ կոմսուհին արմանալով կը զարմանար։

Թեթև նախաճաշիկ մը բերուեցաւ ինծի ընթրիքին սպասելու համար։ Մինչդեռ նարինջ և շաքարեղէն կ'ուտէի, տիկին Տը Սէնթ-Էվրըմոն ըսաւ.

— Աղէկ միտքս եկաւ. ի՛նչ պիտի ընենք հետամուտդ արտաքսելու համար։

— Զգիտեմ, կնքամայր իմ. յոյս քու վրայ դրի։

— Բայց, պզտիկ խենդ, ինչո՞ւ յայտնապէս չմերժեցիր և հոն չթողուցիր զինքը։

— Անկարելի էր, կնքամա՛յր իմ։

Եւ պատմեցի իրեն այն չքաւորութիւնը որ շարունակ կը տիրէր հայրական տան մէջ, օժիտս պահելու և աւելցնելու մասին հօրս տարած ազնիւ հոգը, առանց փոյթ մը ծախս ընելու օժտիս սահմանուած ոսկիէն, թէև ընտանիքս նեղութեան և աղքատութեան մէջ ըլլար. նոյն գումարը իրեն համար պահելու առաջարկութիւնս մերժելը, և՝ երբ վճռողական պատճառ՝ այն տեսակ մը պատուոյ խոստումը որով ընտանիքս Գամբուզարին հետ կը կապուէր։

— Միակ յոյս դուն էիր, կրկնեցի։ Աղէկ յաջողեցայ հայրս ինծի կողմնակից ընելու, սակայն իր խօսքն ոչ այնքան կ'անցնի կնիկին քովը։ Մայրս կ'իշխէ իր վրան։ Եթէ մերժէի, մայրս անողոքելի որոշում մը ցոյց պիտի տար ինծի։ Իր սիրալ՝ զօր աշխատութիւնն և վիշտը դառնութեամբ համակած է՝ չպիտի կրնար հասկնալ դժկամակութիւնս, և ենթադրելով թէ 'ի նպաստ իմ նամակ գրած ըլլայիր, Գամբուզարին հետ կարգուելու մեծ վտանգին մէջն էի։

— Մայրդ ուրեմն ամենևին չնայած էր այդ կնախնդրին երեսը....։

— Նե՛րէ....։ Բայց սովորութի՛ւնը։ Ընտանիքիս մէջ կրնէթէ գեղեցիկ կը համարուի ան։

— Իրաւ է որ շքեղ տգեղութիւն մ'ունի ան, գոչեց կոմսուհին քահ քահ մը ձգելով։

— Ծնողքս հարկաւ սա պատասխանը պիտի տային քեզ. «Մարիոն ուղիղ դատողութիւն չունի. զինքն ուզողն ամեն ուզողներու պէս բան մ'է. իրեն համար խիստ օգտակար ամուսնութիւն մ'է այդ». և կրնաս երևակայել թէ դեռ ուրիշ ինչեր պիտի գրէին։ Ուստի ինքնովին ըսի. Լաւագոյն է Բարիզ երթալ և դատին վերաբերող բոլոր թուղթերը տիկին Տը Սէնթ-Էվրըմօնին առջևը դնել որպէս զի օգնութիւն գտնէ դատը գիտութեամբ կտրելու։

— Այն ատեն ինձ գրեցիր, այնպէս չէ՞։

— Այո, կնքամայր իմ. պատասխան գրեցիր, և ահա եկայ։ Ներում կը խնդրեմ Գամիւզարը հոս բերած ըլլալուս համար։

Այս պատասխանը տալով ելայ այն սեղանէն ուր նախինջ կերեր էի, և եկայ կոմսուհիին քովը նստայ այնպիսի կերպարանով որ անոր քրքիջները կրկնապատկեցին։

— Վերջապէս, ըսաւ, նպատակիդ հասնելու համար ինչ կերպով պիտի շարժինք։

— Դժուարին է խնդիրը։ Հայրս մեր մեղսակիցն է, բայց կը զարհուրի երբ միտքը կը բերէ թէ կինը կրնայ իմանալ իր մեղսակցութիւնը. եթէ իմանայ, իր գործը շատ դէշ պիտի ըլլայ։ Ես կ'ուզէի ճարպկութեամբ մը Գամիւզարը դնել այնպիսի կացութեան մը մէջ որ ինքնին հրաժարի այս ամուսնութենէն։

— Ինչ աղւոր կը խօսիս, սիրելիդ իմ. թէև կին, բայց պաշտելի Մաքիավէլ մ'ես։ Տէ՛, խօսէ՛ նայիմ, խրատ տուր. ապահով եմ թէ արդէն խիստ հանճարեղ միջոց մը պատրաստած ես մտքիդ մէջ։

— Այո, կնքամայր իմ։

— Ըսէ՛, նայիմ, մտիկ կ'ընեմ։

— Եթէ տեղդ ըլլայի, հետամուտս կանչել կը տայի։

— Շա՛տ աղէկ։

— Եւ կ'ըսէի իրեն. «Պա՛րոն, կը սիրեմ սանուհիս»։

— Իրաւ է։

— «Կ՛ուզեմ հոս քովս պահել, ընկերութեանց մէջ նետել զայն»։

— Ինչո՛ւ չէ։

— «Հետեւաբար իրեն պէս կը պատրաստուիս համակերպիլ ալ Շամբրանները չվերադառնալու եւ Բարիզ մնալու»։

— Այդպէս Բարիզ ինչպիսի ընտիր ապրանք մը ստացած կ՚ըլլայ։

— «Այսօրէն սկսելով գեղեցիկ ձեռք եւ գեղեցիկ խօսուած ատ-ներու պիտի հետեւիս, հագուստ պիտի փոխես, բարքդ պիտի ուղղես եւ վերջապէս պիտի ջանաս անթերի պարոն մ՚ըլլալու»։

— Վիպասանութիւն կարդացած ես, օրիորդ։

— Այո՛, կնքամայր իմ։

— Շարունակէ՛։

— Գամբուզար աղէկ պիտի զգուշանայ պատասխանելու. «Տի-կի՛ն, շատ տգեղ, շատ կարճամիտ եմ, հետեւաբար երբէք չպի-տի կրնամ կենցաղավար մարդ մ՚ըլլալ»։

— Անշուշտ ամեն մարդիկ, այս անշնորհ մնացած արարած-ներն անգամ ինքնասիրութիւն ունին։

— Պիտի ուզէ խրատներուդ հետեւիլ։ Այն ատեն, կնքամայր իմ, պիտի ըսես նաեւ. «Պա՛րոն, այդպէս շուտով հնազանդելուդ սաստիկ ուրախութիւն կը պատճառէ ինծի, եւ սանուհիիս վրայ ու-նեցած սէրդ պիտի չափեմ ջանադրութիւններովդ զոր պիտի ընես արժանի ըլլալու համար այն նոր ընկերութեան ուր պիտի տա-նիմ թէ՛ քեզի եւ թէ զայն»։

— Հա՛, պզտիկ շուտիկ, դեռ ինչե՞ր ըսելդ այժմէն գիտեմ։

— «Վաղուանէն սկսեալ պիտի բարեհաճիս քերականութեան դասատու մը բռնել»։

— Աղէ՛կ. Ճիշդ Վօկըլա այս գիշեր մեզի հետ պիտի ընթրէ. ականջին կամաց մ՚երկու խօսք պիտի ըսեմ։

— «Նաեւ լեզուագիտութեան դասատու մը»։

— Երկու, սիրելիդ իմ. իտալերէնն եւ սպանիարէնն այսօր ա-մենահարկաւոր են յարքունիս. Մարի տը Մէտիսի առջինը չմու-

ցաւ երբէք, և մեր Թագուհին՝ Աննա տ՚Օթրիշը միշտ երկրորդը կը խօսի։

— «Նաև զինավարժութեան դասատու մը»։

— Շատ պէտք է, որպէս զի կարող ըլլայ իր անձին ոսոխները մեռցնել։ Թշուառը շատ մենամարտութիւններ պիտի ունենայ։

— «Նաև պարի դասատու մը»։

— Իր սրունքը ուղղելու համար։ Մարիօ՛ն, փոքր ինչ ծուռ չե՞ն սրունքը։

— Շատ քիչ են, տիկին կոմսուհի։ Արդ. հետամնացիս կերպարանքը անգամ մը քննողը կը գուշակէ թէ ան երբէք յաջողակութիւն պիտի չունենայ ոչ գիտութեանց և ոչ ճարտարութեանց մասին։ Անկից 'ի զատ հոգ պիտի տանինք զինքը բժիշկի մ՚ամենատարակի հոկողութեանը ներքև դնել. այս բժիշկին անոր մէջքը քիչ մը նրբելու և երեսին կաշին քիչ մը կակղելու համար պիտի պատուիրէ խիստ քիչ ուտելու և ամենևին չխմելու։

— Աստուած իմ. միթէ հետամնացուդ իր Թանկագին յատկութեանցը հետ . . . ։

— Նաև խելքն է, կնքամայր իմ. անասելի կերպով կը սիրէ աղէկից ըմպելիքը։

— Բայց չըսե՞ս թէ այդ տղան հաղուագիւտ գանձ մ՚է եղեր։

— Երևակայէ՛ թէ ո՛րքան պիտի նեղանայ։ Եթէ կարելի է, պէտք է որ օրը տասնուհինգ կամ քսան զանազան դասեր ունենայ, շուարի մնայ այս ամեն դասերուն մէջ, իտալերէնը պարին, սպանիարէնը զինավարժութեան հետ, վերջապէս միւս դասերը նոյնպէս խառնէ հետ չփոթէ։ Առջի օրը պիտի համբերէ. երկրորդ օրը պիտի զայրանայ. երրորդ օրը պիտի խորհի, և չորրորդ օրը պիտի գայ հրաման խնդրէ քեզմէ Շալօն վերադառնալու։

— Առանց քեզի։

— Անտարակոյս։ Մեկնելէն ետք հրաման պիտի տաս հօրս որ օժիտս ինձի տանու. Գամիւզար փարոցակիր նուիրակ պիտի անուանուի, եա քոյրդ պիտի մեռանի, և խրատաբանչիր ող գոհ պիտի ըլլայ։

— Բայց ուսկէ՞ քաղեցիր այդ ամէն խելքը, սիրո՛ւն շուտիկ։

— Քեզի անսնելու հաճոյքն է ինձ խելք տուողը, կնքամայր իմ։

— Զգուշացի՛ր, հիմա գգուանքով կ'ուտեմ քեզի․․․։ Հա՛, ըսէ նայիմ, մոռցեր էինք երաժշտութեան դասատուն։

Կոմսուհին հաղիւ ըսած էր այս վերջին խօսքը, և ահա սպասաւոր մ'ըսաւ․

— Պ. Վալէ Տէպարօ՛ն եկաւ։

Կերասի մը պէս կարմրեցայ, և հովահարս օթոցին վրան ընկաւ։ Բարեբաղդաբար կոմսուհին չնշմարեց այլայլումս։

Այցելուն կը մտնէր։

Տիկին Տը Սէնթ-Էվրըմօն այցելուին երկնցուց իր ձեռքը, զոր փաստաբանը խիստ շողոքորթութեամբ շուրթերուն տարաւ. ապա կոմսուհին գոչեց.

— Ահա երաժշտութեան դասատուն ալ գտանք, Մարիօն։ Տէ Պարօ առաջին կարգի ջութակահար մ'է. դաս պիտի տայ հետամուտ․․․։ Այնպէս չէ՞, սիրելիդ իմ Էմմանուէլ։ Սանուհիս կը ներկայեմ քեզ։

Տէ Պարօ առջևս խոնարհեցաւ իբր բոլորովին անծանօթ անձի մ'առջև։

— Եկեր ես, Էմմանուէլ. բայց մեր դամը, հարցուց կոմսուհին։

— Վատակուեցաւ, գեղանի՛ տիկին։

— Հակառակորդս ծախսը պիտի վճարէ՞։

— Հարկաւ։

— Բայց կը խորհիմ որ, գոչեց կոմսուհին, այսօր յիրաւի երանութեանց օրն է։ Օ՛ն, համբե՛նք միասին. այս առտու կ'իմանամ թէ մարէշալը մեռաւ․․․ մ՚՛կ. ապա սանուհիս եկաւ․․․ երկո՛ւ, դատս վաստկեցայ․․․ երե՛ք։ Չորրորդը պիտի գայ թերևս։ Առ այժմ ընդունէ՛ շնորհաւորութիւններս, Էմմանուէլ։ Ինչպէս միշտ ըսեր եմ հօրդ, արժանիք ունիս, և եթէ խոհեմութեամբ խրատներուս ուշ դնէիր․․․։

— Միթէ պարտքս չէ՞, տիկին։

— Կը հրաժարէիր անհեդեդ սովորութիւններէդ, այն ամեն գեօսանքի ընկերներէն որք կը խանգարեն քեզի։ Մտուգապէս կ՚աշխատէիր երեւելի փաստաբան մ՚ըլլալու, և՝ պարկեշտ ու ջերմեռանդ ընտանեաց վստահութիւնը գրաւելու համար՝ ալ արձակ համարձակ չէիր յայտներ մանաւանդ այն անաստուածութեան սկզբունքը, զոր կը յայտնես, կ՚ըսեն, ինչ ինչ զաղանի շուայտութեանց մէջ։

— Կոմնուհի՛, կոմսուհի՛, զրպարտիչներն ասկից անցեր են, գոչեց Տէ Պարօ խնդալով։ Զիս Էօըրնէյ ղրկեցիր անոնց ունկնդիր ըլլալու համար. մատնութիւն մ՚է ասի։

— Կատակ չեմ ըներ, Էմմանուէլ։

— Ոչ ալ ես։ Կ՚երդնում թէ խաքեր են քեզի. յիս կը տեսնես աշխարհիս ամենէն կարգասէր, ամենէն աշխատասէր և նուազագոյն ամբարիշտ մարդը։

— Ո՛հ, նայէ՛ սա խաբեբային, ըսի մտապէս. տե՛ս ինչպէս կը համարձակի անամօթաբար սուտ խօսելու։

Եւ հովահարովս երեսս գոցեցի, վասն զի ծածկապէս ինձ ցաւագին ակնարկութիւններ կ՚ընէր որոնց առջև ալ չէի կրնար ծանրութիւնս պահել։

Սակայն բաւական սաստիկ անհանգստութիւն մ՚ունէի։

Տէ Պարօ իր պահ մ՚առաջ ըսած խօսքերովը անթերի կեղծաւորութեան ճամբայ մը բացած էր մեզ, ուր նախ և առաջ գայթելու վտանգին մէջն էինք, եթէ հայրս և Գամբիզար պանդոկին մէջ մեր իրարու հանդիպիլը և Տէ Պարօյին օր մը նաւով հետս ճամբորդութիւն ըրած ըլլալը երևան հանէին։ Սակայն Տէ Պարօ Մօյի մէջ մեզի ձգելէն առաջ զանոնք հրաւիրած էր լռելու, ըսելով թէ տիկին Տը Սէնթ-Էվրըմօն շատ պիտի դժգոհէր եթէ իմանար թէ ինք ստրհանդակի հետ շուղևորած և ուղղակի չվազած էր դատին բարեբաղդ ելքը անոր իմացնելու։

— Հարկաւորութիւն ունիմ հաւտալու քեզ, Էմմանուէլ, ըսաւ կնքամայրս, գիտես թէ որքան հոգդ տարած եմ միշտ։

Ծառան դրան վարագոյրը նորէն վեր ընելով գոչեց մեր ականջներուն.

— Պ. Տը Վիլարսօ մարքի՛զը։

— Լուսթի՛ն… քաւ կամուհին։

Լուսթին հրամայելու ատեն ինձ կը նայէր և շուրթերուն վրայ մատ մը կը դնէր։

Ես անդէս չէի շարժեր։

Յիսնամեայ մարդ մ'երևցաւ, որ տակաւին առոյգ, պչրասէր, բոլորովին քաղջակազմ և երիտասարդ էր՝ իր ալևոր գիսերուն և ճակատը դոցող սպիտակ մազերուն հակառակ։

— Յաղթութի՛ւն, գոչեց՝ իր ծփուն փետուրներով զարդարուն փեղոյրը վեր նետելով և ապա զայն նորէն բռնելով իր երկայն և ոսկեզօծ գաւազանին ծայրովը։ Օ՜ն, ինձ նայէ՛, կոմսուհի, յաղթողի մը կերպարանքը չունի՞մ։

— Ո՞ւսկէ կը գաս, մարքիզ. խուժանը վերջապէս հանդարտեցա՞ւ։

— Լռէ՛, լռէ՛, ա՛լ խուժանի խօսք չընենք։ Գիշերուան ժամն ութուկէս է. կ'երևակայես թէ յոգնեցայ խռովարարներուն ետևէն երթալով մինչև Պասթիյլ ուր հիմա մարէշալը պարել կը տան։ Չէ՛, սիրելի բարեկամուհիս, չէ։ Լուվրի պալատը կեցայ ուր պատիւ ունեցայ Թագաւորին հետ խաղալու սկիզբ ընել։

— Իրա՞ւ, հարցուց կոմսուհին։

Պ. Տը Վիլարսօ յարմար գտաւ նորէն դէպ 'ի ձեղունը զրկել իր փետրազարդ գլխարկը, և երկրորդ անգամ գոչել.

— Յաղթութի՛ւն, յաղթութի՛ւն։

— Ուրեմն խիստ բարեբաստ բա՞ն մը պատահեցաւ քեզ, մարքիզ։

— Անշո՛ւշտ… անուղղակի կերպով…։ Գործն աւելի քեզ կը վերաբերի քան թէ ինձ, կոմսուհի՛։

— Դա՞րձեա՛լ. ուրեմն ահա չորրորդը, գոչեց կոմսուհին ծափ զարնելով։ Տէ՛, խօսէ շուտ, հոգիս մի՛ հաներ։

— Համբերէ՛. կարգաւ խօսիմ։ Թագաւորն որ տարիէ մ'ի վեր ինձ երեսը կը կախէր շնորհիւ այն… բայց ա՛լ մոռաւ… Թո՛ղ շուտովկին բերանն երթայ, այս է միակ փափաքս… Թագաւորը,

կ'ըսեմ, գլխս սրահին մէջ տեսնելով, եկաւ ուսիս զարկաւ . . . :

— Մարքի՛զ, մարքի՛զ, մի՛ այդքան շաղակրատեր. մանր պատգամները ուրիշ անգամ կը պատմես մեզ: Կարեւոր կէտը ըսէ. չորրորդ երանութիւնս կ'ուզեմ, [illegible]ա կ'ուզեմ:

— Բայց համբերէ քիչ մը . . . : Թագաւորն այսպէս մտերմաբար ուսիս կամաց մը զարնելէն ետք ըսաւ ինծի. «Դո՛ւն ես, Վիլարսօ. ուրախ եմ քեզի տեսնելուս»: Է՛, ի՞նչ կը խորհիս, կոմսուհի:

— Կը խորհիմ որ . . . անտանելի՛ ես, ըսաւ կոմսուհին ոտքովը գետինը զարնելով:

— Բայց այժմէն կ'իմացնեմ որ եթէ մտիկ չընես, բան մը չպիտի գիտնաս: «Պահնորդներս պահ մ'առաջ ձերբակալ ըրին սա աղքատ իտալուհին, շարայարեց Լուի ԺԴ. (մարէշալուհիին կ'ակնարկէր). չպիտի հաւատաս թերեւս, Վիլարսօ, եթէ ըսեմ որ իր խշտեկին մէջէն երկու միլիոն ֆրանքի արժողութեամբ ադամանդեղէն գտնուեցաւ»: — Վեհափա՛ռ տէր, գոչեցի, ասի մեծ զարմանք չտար ինծի. ուրիշ շատ գողութիւններ ալ ըրին»:

— Այնպէս չէ՞, կրկնեց թագաւորը, խայտառակութիւն մ'է ասի: Կ'երդնում թէ Կալիկային գահիճին ձեռքովը պիտի մեռնի, եւ եթէ մեր մայր տիկինն այս մասին դիտողութիւն մ'ընէ, զինքը Ֆլօրէնցա պիտի ղրկենք որ երթայ հոն գանգատի: Աղէկ միտքս եկաւ, մարքիզ. անցեալ տարի աղաչեր էիր մեզի որ մեր պահնորդներու մէջ տեղակալութեան պաշտօն մը շնորհենք Սէնթ-Էվրըմոնի իշխան՝ Մարգրիտ Տը Սէն-Տընիին որ քու փոքր հօրեղբօրորդին է . . .»:

— Կարելի՞ է ասի . . . Նորին Վեհափառութիւնն ըսա՞ւ այդքանը, Վիլարսօ:

— Հապա կը հարցնե՞ս. անշուշտ ըսաւ, տիկին:

— Բարեկամ, բարեկամ, որքան շնորհակալ եմ քեզմէ . . . զուկիս պահնորդներու խումբ մը առուի՛. համբուրէ զիս, Վիլարսօ . . . դուն ալ համբուրէ, Էմմանուէլ. հապա դո՛ւն, սիրելիդ իմ Մարիօն, եկո՛ւր դուն ալ . . . : Զաւակս է ան որու

Թագաւորը....։ Բայց մոռցեր էի քեզ ըսել, Մարիօն, այո՛, զաւակ մ՚ունիմ... որբիկայ մը... խնդ՛րձդ իմ, Մարիօն, գեղեցիկ ասպետ մը, որ զմայլելի դէմք և խիստ լաւ կերպարանք ունի, բայց այնքան ստակս կ՚ուտէ որ ամիսէ մ՚ի վեր զինքը Գուրթանի երկիրս մինակ ձգեցի իր կառավարչին հետ։ Սակայն մօտերս պիտի գայ....։ Պիտի տեսնես թէ ինչպէս խելանի է ան....։ Ուստի կը սիրեմ զինքը, բայց քեզի տուածիս չափ երբեք չեմ տար իրեն, վասն զի կրնայ պինդ շուտ երես առնուլ զգուշանքէս....։ Խնա՛մք մը, Վիլարսօ։ Բայց ատի շատ սուղի պիտի նստի ինձ. մեր երիտասարդ զօրականը և իր հետազաները կ՚ուզեմ շքեղապէս հանդերձել....։ Ա՛խ, բարեսի՛րտդ իմ Էմմանուէլ, շատ աղէկ ըրիր ինձ հարիւր հազար ֆրանք շահել տալով, ամենն ալ այս պատրաստութեան պիտի երթայ։

Կոմսուհին ուրախագին կ՚արտասուէր։ Յանկարծ սկսաւ խնդալ խեւի մը պէս և վազեց Վիլարսօյին քովն որ դեռ նոր նշմարեր էր զիս, և բոլորտիքս կը դառնար անհանդարտ կերպարանով։

— Վերջ պիտի տաս, գոչեց կոմսուհին. նայուածներովդ կը վախցնես այդ մանկուհին....։ Չտեսնե՞ս թէ ինչպէս կարմրած է, ինչպէս վար կ՚ընէ արտևանունքը....։ Մարքի՛զ, մարքի՛զ, այդ բնութիւնդ երբէք պիտի չփոխե՞ս։

— Ներէ՛, տիկին, ինձ այնպիսի բաներ կ՚ըսես....։ Օրիորդն օտարական ըլլալով....։

— Աղւո՞ր է։

— Շա՛տ աղւոր. բայց յանդիմանութիւններդ անիրաւ են։ Խիստ բնական բան է որ....։

— Համբուրես զինքը, Վիլարսօ. լա՛ւ, կը հաւանիմ որ համբուրես։ Մանաւանդ թէ կատարելապէս իրաւունք ունիս պագնելու։

— Իրաւո՞ւնք ունիմ, մրմռաց մարքիզը ծիծաղելի շուարումով մը։

— Այո՛, կնքահա՛յր իմ, ըսի քովն երթալով։

— Կնքահա՛յրդ, գեղանի՛ աղջիկս։

— Անշուշտ ։ Որորանիս քով տօրպադանը պարեցիր ։

— Պարեցի . . . ։ Բայց աղէկ լսէ . . . կը յիշեմ . . . այո , մտքս եկաւ . կը յիշեմ Զվիցերիէն մեր վերադարձը , Շալօնը , Նոտրբրակը , իր ձին , հովուական սիկը , միրաւութիւնը . . . ։

— Եւ Ճա՛շը , մարքիզ ։

— Այո՛ , տիկին , Ճաշն ալ . . . ։ Ի՛նչ , այս զմայլելի օրիորդը . . . ։

— Մեր սանուհին է . բերել տուի զինքը . ալ հոս պիտի մնայ ։ Սէր իմ կուզէ՞ քեզ պատրաստուած յանկարծական ախորժելի խաղ մը չէ՞ , Վիլարսօ ։

Կնքահայրս առանց ամենեւին պատասխան տալու անթիւ համբոյրներ տուաւ իզմէ այնպիսի եռանդով որ բաւական վտանգաւոր էր եւ որմէ ծաղկահաս փաստաբանը խիստ սաստիկ գոհունակութիւն մը չէր զգար ։

Ուրիշ անձեր ալ եկան ներս մտան ։

Տիկին Տը Սէնթ–Էվրըմօն իր աղուն շնորհուած պաշտօնը անոնց իմացուց ։ Հանդիսաւորապէս իս ներկայեց նորեկներուն . առաջ Գաբրիէլ Տըլօրմին , նոյնպէս Գամուզարին չերեւալուն վրայ զարմանալով ծառայ մը ղրկեց որ զանոնք փնտռէ ։

Իսկոյն հետամուտս սրահները մտաւ ծիծաղաշարժ կերպով մը , որու վրայ իւրաքանչիւր ոք Ճայթելու չափ պիտի խնդար հարկաւ եթէ հայրս անորմէն առաջ գալով բան մը չըսէր կոմսուհիին ականջին ։

Ուստի կոմսուհին փութաց պատուիրելու մեզ որ մեր խնդուկը բռնենք , եւ Գամուզար եկաւ երեւցաւ ամենատարօրինակ հագուստով մը ։

Գամուզարին գլուխը դեղնորակ գլխարկ մը կար որ Լուի մետասաներորդի իշխանութեան ժամանակ Տէ Լօմար փողոցին հրէաներուն մէկինն էր անշուշտ ։ Իր սովորական հագուստին միւս մասերուն յաջորդեր էին անօրինակ այլանդակութիւն մ'ունեցող զգեստներ , եւ մայրաքաղաքին հնավաճառները կարծես գրաւ բռներ էին մեր առջեւ դնելու երկու դարէ 'ի վեր մոռցուած բոլոր նո-

բաձեւութեանց օրինակները։ Գաբրիէլ Տըլօրմի դժբաղդ դպիրին վիզը կորսուած էր սոսկալի զանգուր փողակապի մը մէջ, և իր խոյրին պէս դեղնորակ վերարկու մը հագած էր կարմիր բաճկոնակի մը հետ որ երկայն տուտուններ և ուռեցիկ թեզանիք ունէր, և որ հաւանականաբար ատենօք՝ տօնախմբութեանց օրեր՝ մեր հին թաղաւորներուն մէկ խենդը զարդարելու սահմանուած էր։ Այս ամենէն 'ի զատ մէջքը կապած էր նաև զօմէշի կաշիէ լայն գօտի մ'որմէն յանչափս երկայն սուր մը կախուած էր։ Դեղին և սև կապերով խառնուած մազերու հիւսակներ, յարկի քարի գոյն ունեցող փոկաւոր կուլպաներ և նաւացռուկի նման մուճակներ այս այլանդակ հագուստը կատարելագործեր էին։

Այս կերպով հագուելու գաղափարը հետամուխ տրուած էր կոմսուհիին սենեկապանուհիներուն մէկէն, որ Թերէզա Պիւլման անունով գերմանացի չարաճճի աղջիկ մ'էր։

Թերէզա ապարանքին Պիւլման անուն դռնապանին աղջիկն էր։

Երբ ա՛լ զգեստներս փոխեր էի, Թերէզան՝ բնութեամբ բաւական հետաքրքիր ըլլալով՝ ցանուցիր բօպաները ծալլելու և զանազան բաներ մօտակայ կլորցաւոր պահարանի մը մէջ կարգադրելու պատրուակով մեր բոլորտիքը կը թափառէր։ Չարամիտ աղջիկն ամենևին մեր խօսակցութիւնը չլսել ձևացնելով՝ կատարելապէս լսեց։ Ուստի մտքին մէջ բոլորովին ծիծաղաշարժ նպատակ մը կազմուեցաւ։

Թերէզան վար իջնելով սկսաւ Գամիւզարը փնտռել։

Մինչդեռ հայրս կը տեղաւորուէր այն սենեկին մէջ որ իրեն ցոյց տրուած էր, Ցովսէփ՝ դռնապանին կարմիր և զուարթ դէմքը տեսնելով և կանխաւ բարեմիտ մարդուն վրայ անշուշտ համակրութիւն զգալով անոր հետ բարեկամութիւն հաստատելու փորձ մ'ըրաւ և յաջողեցաւ ամենապարզ միջոցով մ'որ կ'ողոքէր իր ու միանգամայն դռնապանին յօժարութիւնները. այսինքն մօտակայ կապելայէ մ'երկու սրուակ պուրկօնեի հին գինի բերել տալ։

Թերէզան հետամուխ հանդիպելու համար հայրական օթեկէն անդէն չգնաց, ուր գրեթէ ժամէ մ'ի վեր Գամիւզար ու Պիւլման

միասին կը տրոփէին այնպիսի մտերմութեամբ որ ապագային նկատմամբ շատ բարեգուշակ էր։

Սակայն իրենց խօսակցութիւնը շատ զանազանութիւն չունէր։ Պիւլման՝ նստելով՝ Ցովսէփին ըսաւ.

— Ո՞ւրկէ կը գաք։

— Շալօն-Սիւր-Մարնէն։

— Շա՜տ աղէկ . . . ։ Ես Շէլըստաթէն եկած եմ . . . ։ Խմե՛նք։

Եւ իրօք սկսաւ խմել առանց աւելի խօսք ըսելու, բաւական համարելով գոհունակութեան ծիծաղելի շարժում մ'ընելը երբ իր դատարկ սկահը սեղանին վրայ կը դնէր։

Հետամուտս քառորդէ մ'աւելի աշխատեցաւ հանճարեղ խօսք մը գտնելու որպէս զի այս լռութեան կապը խզէ, և վերջապէս սա ծաղրալի հարցումը ըրաւ Պիւլմանին.

— Բայց աղէկ միտքս եկաւ, սիրելիդ իմ, ինչու Սվիս* կ'անուանես քանի որ Գերմանացի ես։

Դռնապանը (Սվիս) աչերը դէպ 'ի ձեղունը վերցուց և քանի վայրկեանի չափ խորհեցաւ։ Կրնար արձան մը կարծուիլ, ան եթէ ժամանակ առ ժամանակ գինիին գաւաթը սեղանէն դէպ 'ի շրթները և շրթներէն դէպ 'ի սեղանն ուղևորել չտար։

Գամիւզար վերջապէս սա պատասխանը առաւ.

— Այո՛ . . . աղէկ ըսիր . . . ինչ պատճառաւ։

— Բայց քեզ կը հարցնեմ պատճառը, սիրելիմ իմ։

Պիւլման վերստին իր հիացական դիրքն առաւ, հինգ վայրկեան աւելի խորհեցաւ, և վար ըրաւ քիթը՝ խորունկ համոզումի ձայնով մը Ցովսէփին ըսելու համար.

— Չգիտեմ պատճառը։

Սակայն Թերէզան սոյն միջոցին ներս մտնելով, Պիւլման շարայարեց.

* Հոս բառախաղ մը կայ։ Սվիս բառը Գաղղիերէնի մէջ ոչ միայն Հելվետիացի, այլ նաև դռնապան կը նշանակէ։ Ընթերցողը բառախաղին ուժը հասկնալու համար կը պարտաւորի երկու նշանակութիւններն ալ 'ի միտ ունենալ այս և յետագայ տողերը կարդալու ատեն։ Ծ. Թ.

— Հարցո՛ւր աղջկիս ։

— Ի՞նչ է , ըսաւ Թերէզան , և խիստ ուրախացաւ այսպէս առաջին անգամին իր նպատակին վրայ խօսակցելու առիթը գտնելով ։

Երբ Ցովսէփ իր հարցումը կրկնեց , Թերէզան գոչեց .

— Տէ՛ր Աստուած , բոլոր «ժու-ժու»ները Գերմանացի են , և բոլոր Գերմանացիները կ'ուզեն «ժու-ժու» ըլլալ ։

— Չեմ հասկնար , ըսաւ զօ՛ռնապանը ։

— Ուրիշ օր մը պիտի հասկնաս , հայր իմ ։ Եթէ չեմ սխալիր , շարայարեց պահ մ'ետք , պարոնը օրիորդ Մարիօնին նշանածն է ։

— Ճիշդ ըսիր , պատասխանեց Գամիւզար ։

— Աղէկ , ուրեմն կրնաս յուսալ թէ արմանք զարմանք կը տեսնեն . . . ։ Ի՛նչ . առանց հանդիսա կերպով մը հօ՛ս կը կենաս ։

— Ուրեմն դժբաղդութի՞ւն մը պատահեցաւ ։

— Ցակաւին ո՛չ . սակայն նշանածիդ քով ծիծաղելի պիտի ըլլաս ։ Քի՛չ մ'առաջ շքեղ բօպա մը հագած էն . . . արդ կը հարցնեմ քեզ թէ այդ զգեստներդ ինչ տպաւորութիւն պիտի անեննան իր վրայ ։

— Ուրիշ զգեստ չունիմ ։

— Պէտք է ծախու առնուլ , պարոն ։ Գիտցած եղի՛ր որ այս գիշեր հիւր ունինք ։ Եթէ քեզի այդպէս տեսնեն օրիորդ Մարիօնին քով , որ այնքան շքեղ և փողփողուն է , ոչ ոք պիտի համարձակի ըսելու թէ իր նշանածն ես , և քննասէրները քթիթ և մօրուքիդ առջև պիտի համարձակին հետը քծնելու ։

— Հա՛ , հա՛ , պիտի տեսնենք ։

— Շատ աղէկ պիտի տեսնես . . . ։ Ի՛նչ խեղճութիւն , մէջքէդ կախուած բթասայր սուր մ'անգամ չունիս ։

— Միթէ պէ՛տք է ունենալ . . . ։

— Այո՛ , պարոն ։ Ի՞նչպէս պիտի պատժես անամօթները եթէ ուզեն փսփսալ տիրուհիիս հետ ։

— Իսկոյն Շալօն տանելով զէնքը . . . ։ Խե՞նդ եմ որ երթամ կեանքս վտանգի դնեմ անհեդեդ կռիւի մը մէջ ։

— Ոչ զոք Շալօն պիտի տանիս, և դուն իսկ ալ հոն չպիտի վերադառնաս ։

— Ինչ ըսիր. և ով պիտի արգիլէ զիս ։

— Ամէն մարդ ։

— Չեմ հաւատար ։

— Նախ դուն ։

— Ե՛ս ։

— Ապահով եմ ։ Նախ տիկին կոմսուհիին մառաններն ընտիր գինիներով լեցուն են . . . ։ Եթէ չես հաւատար, հարցո՛ւր հօրս ։

— Իրաւ է, ըսաւ դռնապանը, կիրակիներն այն գինիներէն կը տրուի մեզ ։

— Պարոնն ամէն օր պէտի խմէ այն գինիներէն ։ Անկից 'ի զատ մեր տիրուհին կ'ուզէ քովը պահել իր սանուհին, շարայարեց Յովսէփին կողմը դառնալով ։ Եթէ կարգուիս օրիորդ Մարիօնին հետ, հոս պիտի կարգուիս ։

— Ուր կարգուիլս հոգ չէ, բաւական է որ կարգուիմ հետը. այս է կարևոր կէտը ։

— Այո՛, սակայն ամենևին չպիտի կարգուիս, եթէ պատուէրներս չկատարես ։ Տիկինը պահ մ'առաջ յայտնապէս իր կամքը յայտնեց. քեզի կենցաղավար երիտասարդի մը տիպարը պիտի ընեն. զինավարժութեան, երաժշտութեան, պարի դասեր պիտի առնուս. շատ բարիք պիտի ընեն քեզ. յառաջադրած են իսկ քեզի արքունիքը տանիլ և ներկայել . . . ։

— Բա՛րէ, լաւագոյն է ինձ վարոցաւոր նուիրակ ըլլալ ։

— Ի՞նչ է ատի, հարցուց Թերէզան ։

— Այո՛, ըսաւ Պիւլման, չեմ հասկնար . . . բացատրէ՛ վարոցաւոր նուիրակին ինչ ըլլալը ։

— Բայց ինչո՞ւ չէք հասկնար, գոչեց Յովսէփ սրտնեղութեամբ։ Յայտնի բան է թէ վարոցաւոր նուիրակ մը վարոցաւոր նուիրակ մ'է ։ Ա՛խ, ինչ ձանձրոյթներ . . . կ'ուզէի Շալօնի մէջն ըլլալ ։

Գաբրիէլ Տըլօրմ երեցաւ. և հարցուց թէ ինչ բանի վրայ է խնդիրը ։

Խորամանգ սպասուհին քաջ յիշողութիւն ունէր, յիշեց թէ հայրս մեղսակիցս էր, և համամտութեան երկու կամ երեք նշան ըրաւ իրեն, բացատրելով թէ ինչ պատճառաւ կը յորդորէր դպիրը հագուստը փոխելու։

— Օրիորդն իրաւունք ունի, Յովսէփ, ըսաւ Նուիրակը. չես կրնար այդ կերպով հագուած մնալ։ Հոգ չէ եթէ ես դաւառական հինուփուտ լաթերս հագած մնամ. ես ծերուկ հայր մ'եմ որու չպիտի զիջանին ուշադրութիւն ընելու։ Սակայն դուն քանի որ աղջկանս նշանածն ես, ամեն մարդ քեզ պիտի նայի . . .։ Իւրաքանչիւր ոք զգեստներուդ պիտի նայի ուշադրութեամբ, տղաս։ Անկեղծաբար խօսելով եթէ ես տեղդ ըլլայի, կը ջանայի անստգտանելի ըլլալ։ Տիկին կոմսուհին ողոքուած պիտի ըլլայ, եթէ իր փափաքը կանխաւ կատարես։

— Բայց ո՞ւր զգեստ գտնելու է, անե՜րս։

— Ես իմ վրայ կ'առնում այդ հոգը, ըսաւ Թերէզան. քսակդ միայն տո՛ւր ինծ, և պիտի տեսնես։

Յովսէփ գրպանէն կաշիէ պզտի քսակ մը հանեց որ բաւական ուռեցած էր։

— Ահա՛, ըսաւ հառաչելով, հարիւր յիսուն ֆրանք կայ մէջը . . . ամենը մի՛ վատներ։

Պիւլմանին աղջիկն ապարանէն դուրս ելաւ, և իսկոյն ետ եկաւ հնավաճառի մը հետ։ Երկուքը միասին Գամիւզարը հագուեցուցին այն կերպով զոր արդէն ըսի։

Երբ այս այլանդակ զգեստները խեղճ դպիրին կռնակին և սրունքին վրայ կոճկուած էին, ծառայ մը կոմսուհիին կողմէն եկաւ իմաց տալու թէ սեղան նստելու ժամը հասած էր։

Յովսէփ հայլիի մ'առջևը վազեց, և ինքն իր դէմքը ծռեց անգամ մ'ի նշան անվստահութեան և կասկածոտութեան։

— Ի՞նչպէս կ'երևամ քեզ, անե՛ր։

— Յիրաւի չքե՛ղ ես, տղաս։

— Սքանչելի կերպով կը կրես սուրդ, ըսաւ սպասուհին։

— Հապա քեզ ի՞նչպէս կ'երևամ, հարցուց Գամիւզար Պիւլմանին։

— Ամենաթիրուն կ'երևաս ինձ, պատասխանեց դռնապանը։

Նշանածս իր այսպէս հաւնումիը տեսնելով սիրտ առաւ. ուսաթ պատույ սանդուղէն վեր ելնելով մեր սրահը մտաւ փառաւորապէս։

Կոմսուհիին պատուէրներուն շնորհիւ յաջողեցանք մեր խնդուկը թունելու։

— Բայց ինձ նայէ, պարոն, ըսաւ կոմսուհին Գամիւզարը դիմաւորելով, աշխարհիս ամենէն ախորժելի զարմանքը կը պատճառես մեզ. հապուստդ անթերի ճաշակ մ'ունենալդ կը յայտնէ։ Ինձ այդ պատիւը ընելէդ կը հասկնամ թէ որքան հլութեամբ պիտի կատարես փափաքներս։ Թեւդ ինձ տուր, և սեղանատունն երթանք։

Զուարթութեամբ ընթրեցինք։

Սեղանակիցները խօսակցութեան ամենէն թեթև պատրուակը պատեհ առիթ կը սեպէին, և այն ատեն արձակ համարձակ թող կը տային իրենց քահքահները։

Իբր գերերջանիկներ կը զուարճանային Գամիւզարին պշուցեալ կերպարանքովը։ Տիկին Տը Սէնթ–Էվրըմօն իր քովը նստեցուցած էր Գամիւզարը, և կը հասկցնէր իրեն թէ ինչ կը պարտաւորէր ընել իր բարութեանցն արժանի ըլլալու համար։ Թշուառը վերջապէս հասկցաւ քանի մ'ակնթարթեր և ինչ ինչ փսփսուքներ որոնց պատճառը բաւական կը տեսնուէր։ Չէր ուտեր, հազիւ կը խմէր, մէկին կը նայէր, միւսին կը նայէր, կը հառաչէր, կը շնչէր, ճակտին վերեւն ունեցած մեծ աչերը կը գարձնէր. վերջապէս կը չարչարուէր։

Երբ ընթրիքը լմնցաւ, Գամիւզար փախաւ դռնապանին օթեակն իջնելու համար ուր Պիւլմանը և Թերէզան գտաւ։

— Սուտցիւ, գոչեց. Շալօն պիտի վերադառնամ։

— Անիրաւ ես, կրկնեց չարաճճի սպասուհին, պէտք է համբերել։ Տիկինը նշանածդ իր աղջիկը կը սեպէ։ Կ'ուզուի որ օրիորդ մ'ըլլայ ան... իրաւունք չունիս գանգատելու։

— Հըմ, օրիորդ մը։ Մարիօն ալ առջի Մարիօնը չէ, և ինձ

շատ աւելի սիրելի էր երբ կը հագնէր իր սպիտակ դարձեր ունեցող շրջազգեստը, իր մանիշակաւոր գոտիկը կամ սեւագոյն թեթեւ փեղոյրը... ինչպէս ահա ճիշդ դուն հագուած ես հիմա։

— Ասոնք նշանածիդ զգեստներն են. ինքն ինձ տուաւ։

— Քե՛զ տուաւ, ըսաւ Ցովսէփ հառաչով մը։

— Այո՛, բայց զգուշացի՛ր զիս օրիորդ Մարիոնը սեպելու... թէ ոչ չեմ թողուր քեզի, վասն զի շատ յօժարութիւն ունիմ կարգուելու։

Գամիւզար Թերէզային նայեցաւ, և ահա նոր նշմարեց թէ այս երիտասարդուհին բաւական թարմագեղ այտեր, կորշագոյն և փողփողուն պզտի աչեր, և վերջապէս կլորակ և բաւական սիրագրգիռ երես մ՚ունէր։

— Ցիրաւի, ըսաւ նոր հառաչով մը, ինձ կը թուի թէ... այո՛... արդէն Մարիոնէն աւելի կը սիրեմ քեզի։

— Լռէ՛, ըսաւ Թերէզան... կրնայ ըլլալ որ հաւատամ խօսքիդ, չե՞ս վախնար։

— Այո՛, լռէ՛, կրկնեց Պիւլման. մի՛ սիրաբաներ աղջկիս հետ։

— Ի՞նչ վնաս ունի, ես կ՚ուզեմ սիրաբանել, գոչեց Գամիւզար կռուփովը սեղանին վրան զարնելով։ Ամուրի՛ եմ, և եթէ չարչարեն զիս, ամենուն ալ ճամբայ կը տամ։

— Ա՛խ, բա՛յց։

— Չեմ հասկնար, ըսաւ Պիւլման։

— Ես կը հասկնամ ըսածս, շարունակեց Ցովսէփ միշտ տաքնալով. իմ հասկնալս բաւ է։ Բայց կրողէն բերանը գացէք. միթէ խմելու բան մը չկա՞յ հոս։

— Ա՛լ մի՛ հայհոյեր... հիմա ըմպելիք կը բերուի քեզ։

Գունապանը նշան մ՚ըրաւ Թերէզային։ Սա պահարան մը բացաւ և հօրն ու Ցովսէփին մէջ անդը կապձուա հողէ շինուած բարձ մը դրաւ որ մինչև բերանը լի էր։

— Տէ՛, հանդարտէ՛, ըսաւ Գամիւզարին, հանդարտէ՛։ Եթէ իրաւ այս բաները ցաւ ու վիշտ կը տան քեզ, մի՛ կարգուիր...։

— Չկարգուիմ, գոչեց Ցովսէփ. ատի ըսելը դիւրին է... բայց ես կ'ուզեմ մէկու մը հետ կարգուիլ... որու հետ ըլլայ, հոգ չէ. Շալօն չպիտի վերադառնամ ձեռնունայն: Եթէ մինակ երթամ, մարդիկ պիտի խնդան, զիս պիտի ծաղրեն, ամէն մարդ քիթէս պիտի բռնէ...:

— Կենա՛ցդ, ըսաւ դռնապանը. ինչպէս է այս պզտիկ ըմպելին:

— Գաւառակա՛ն... լեցուր բաժակը միշտ...: Այո, պիտի ամուսնանամ մէկու մը հետ, շարունակեց Թերէզային նայելով:

Խարամանի աղջիկը վար ըրաւ աչքերը և պատասխանեց.

— Որու հետ պիտի կարգուիս ուրեմն:

— Ծաղկահասակ աղջկի մը հետ զոր կը ճանչես...: Ո՛հ, այն աղջիկը օրիորդ Տըլօրմին պէս կոտրտուող պչրասէր մը չէ. կոմսուհի կնքամայր մը չունի:

— Ամենեւին չեմ հասկնար, ըսաւ Գիւլման:

— Լեցուր բաժակը, Գիւլման, լեցո՛ւր...: Միթէ հօրմէդ աւելի աղէկ կը հասկնաս, օրիորդ Թերէ՛զա:

— Յիրաւի... ո՛չ, ես ալ չեմ հասկնար, պատասխանեց շուտիկ աղջիկը՝ սրտագրգիռ նայուածք մ'արձակելով անոր:

— Ուրեմն խօսիմ յայտնապէս, գոչեց Գամիւզար: Տիկին կոմսուհին պահ մ'առաջ աղաչեց զիս որ լեզու սորվեցնող վարժապետ մը բռնեմ. իմ լեզուս պիտի կրնայ այդ վարժապետին, ինչպէս նաև աշխարհիս ամէն քերականներուն ըսել. Կորո՛ղը տանի ձեզի: Չպիտի կարգուիմ օրիորդ Տըլօրմին հետ որ աչք ունի կ'ըսէ սա Տէպարօյին հետ... որ ապուշ մ'է... և ամենուն հետ:

Ապա ոտք ելաւ՝ գինիին սկահը երկնցնելով.

— Կենա՛ցդ, Գիւլմա՛ն, մեծդ իմ գերմանացիդ...: Կ'առաջարկեմ որ ինծի տաս աղջիկդ:

— Կարելի՞ է: Կը հաւանիմ անմիջապէս:

— Բայց կարծեմ պէտք է իմ կարծիքս առնել, ըսաւ Թերէզան. արդ ես չեմ հաւանիր: Պարոնին առաջարկութիւնը զայ-

րայթէ թելադրուած է. շուտով պիտի զղջայ այդ առաջարկու-թեանը ըրած ըլլալուն:

Յովսէփ սեղանին վրայ կռթնեցաւ արմուկովը. ապա յանկարծ ոտք ելնելով իր գլխարկը օթեակին միւս ծայրը նետեց, պատռեց փողպատը, բաճկոնակին կոճակները կտրեց, զօտին մէջքէն հանեց, կատաղութեամբ ուսերէն նետեց կարմրագոյն կրկնոցն ալ, և կը պատրաստուէր զգեստներուն մնացորդն ալ հանել:

— Պարո՛ն, պարո՛ն, գոչեց Թէրէզեան:

— Շուածի՛կ տղայ... գէթ վայելչութիւն ունեցիր:

— Աղէկ ըսիր, իրաւունք ունիս, ըսաւ Յովսէփ: Մի՛ վախնար. հիւանդներս չպիտի հանեմ: Բայց այսքան ալ ընելով կ՚ուզեմ իմացնել ձեզ թէ սէրս կը հանեմ կը նետեմ վրայէս...: Խղճէ հեռի կը նետեմ զայն, ինչպէս ահա զգեստներս նետեցի:

— Շա՛տ աղէկ, ըսաւ Պիւլման:

— Ա՛լ մէկալէն խօսքը մի՛ ըներ ինծի. չե՛մ ճանչեր զինքը...: Տե՛ս, օրիո՛րդ, գեղեցիկ չեմ... բայց սիրտս բարի է: Հօրեղբայրս քսանուհինգ հազար ֆրանք թողուց ինծի. կ՚առաջարկեմ որ հետս վայելես այս գումարը, կ՚ընդունի՞ս:

— Պարո՛ն, վաղը թերևս պիտի զղջաս. չեմ ուզեր նախատինք մը կրելու վտանգին ենթարկուիլ:

— Բայց եթէ հիմակ անմիջապէս ամուսնութեան խոստմնագիր մը ստորագրեմ, պիտի հաւտա՞ս:

— Ո՛հ, ըսաւ Թէրէզեան, անմեղի մը կերպարանքով աչուըները վար ընելով, պիտի սորվիմ հաւտալու:

— Ուրեմն շուտ թուղթ և գրի՛չ, գոչեց Գամփռդար:

— Ահա՛ թուղթ, ըսաւ դռնապանը:

Եւ Գաբրիէլ Տըլօրմին դպիրն իսկոյն իր գեղեցկագոյն գիրովը գրեց.

» Աստուծոյ և մարդկան առջև կը խոստանամ և կ՚երդնում
» թէ մինչև ութ օր պիտի ամուսնանամ Օրիորդ Թէրէզա Պիւլ-
» մանին հետ, իրեն տասն հազար ֆրանք հատուցանելու պայմանաւ, ե-
» թէ չկատարեմ այս պատուոյ խոստումը»:

— Կեցցէ՛ս, կեցցէ՛ս, եկո՛ւր համբուրէ հիմա զիս, փեսայ . . . . : Հիմա պագ աղջիկս ալ :

Ապարանքին ժամացոյցը գիշերուան ժամը տասնումէկը նոր զարկած էր :

Այս տաւերնէն ներսը ժամ մ' անցած էր Բարիզ գալէս 'ի վեր, և Գամիւզար արդէն այս գաղտնական մասնաւորութեանը յանցաւոր եղած էր :

Վստահէ՛ ալեւոր մարդերու գիրքին :



# Է

Ընթրիքին ատենը Տէ Գարօ ալ կորսնցնելու վարպետութիւնը ունեցաւ, առանց մեծ ճարտարութեան :

Միւս սեղանակիցս մօտակայն էր Սէնթ-Էսփրի ուխտին մէկ ծեր աղջիկը, որ այն ուխտին լայն կապոյտ ժապաւէնը և պատուանշանները կը կրէր : Տարօրինակ կերպով մը կը նայէր ինծի, կը հառաչէր, խօսք մը կ'ըսէր, կիսկատար կը թողուր խօսքը, նորէն կը հառաչէր, դարձեալ կը նայէր և միշտ մեծ անհանգստութիւն կը տար ինծի այս աղջիկը :

Երբ երկրորդ խօսք մ'ըսելու փորձը կ'ընէր, շուտով երեսս անդին դարձուցի, և երիտասարդ փաստաբանին հետ խօսակցեցայ :

Բաւական ատեն էինք ես և փաստաբանը : Տիկին Տը Սէնթ-Էվրըմօն խրատ կը տար Գամիւզարին. միւս սեղանակիցները նշանածիս հագուստը ու ձեռնոցը կը զուարճանային կամ օրուան դէպքին վրայ կը վիճէին :

Տանտիրոջին ծանր և խոհուն դիրքը, և այն ազնուականին քաղաքավարութեան կերպը ու վայելչութեան եղանակին ապաւինեալ

հեռու կը խօսէր, տարօրինակ հակապատկեր մը կ'ընծայէին համ-բորդութեան դէպքին հետ, և զիս կ'ստիպէին ժպտելու։

— Մարիօն, ըսաւ փաստաբանը կիսաձայն, պէտք է դէմքդ լաւագոյն կերպով կազմելու միջոցը ունիլ։ Կոմսուհին յանկարծ և շատ անխոհեմութեամբ քեզի մեր բարիզեան ընկերութեան գա-ղը կը նետէ, ուր ամեն ինչ խաբէբայութիւն, կեղծաւորութիւն, ստութիւն է։ Հսկէ՛ ինքզինքդ, աշխատէ՛ չարասիրտներուն և մատ-նիչներուն առիթ չտալու։ Գեղանի ես, պիտի ողոքեն քեզի. բարեսիրտ ես, պիտի մատնեն քեզի. խոհեմ ես, պիտի ուզեն մոլորել քեզի։

— Կարելի՞ է, ըսի՝ հեգնաբար իրեն նայելով անգամ մը, պա-րոն, կը կարծե՞ս թէ կան բաւական անկիրթ մարդեր որք...։

— Լռէ՛... խելամտութիւն չէ ատի, Մարիօ՛ն. կը պարտաւո-րիս լաւագոյն կերպով հետեւիլ խրատներուս. չէ՛իր կրնար ան-տարբերութեամբ պատասխանել՝ շարունակելով կաքաւդ ուտել։ Սա պզտիկ հետաքրքիր Մայնարն՝ որ ահա մեր դիմացը նստած է՝ քեզ պահ մ'առաջ չարասիրական խօսք մ'ըսելդ նշմարեց։ Մի՛ նայիր իրեն։ Սեղանի վրայ կամ ակումբի մէջ մարդս կը պար-տաւորի ամէնէն չնայիլ որու հետ որ կը խօսի. ընդհանուր կա-նոն է ասի։

— Պա՛րոն, երկդիմութեան վրայ չէ՛իր խօսեր պահ մ'առաջ. ահա բաւական հաճելի դասեր կը տաս ինձ այդ մասին։

— Սիրելի՛դ իմ. պէտք է միշտ մեր թշնամիներուն դէմ բուն իրենց զէնքովը կռուիլ։ Ինչո՞ւ մեր երեսին վրայ երեւան հանենք մեր ներքին խորհուրդները և սրտին գաղտնիքը։ Երեւան հանելը չէ թէ անկեղծութիւն, այլ ապշութիւն է։ Ահա նայէ, սոյն մի-ջոցիս ամէնէն ուշագիր դիտողը կը հրաւիրեմ գուշակելու թէ ո՛ր-քան կը սիրեմ քեզի, ո՛րքան երջանիկ եմ հոս քովդ գտնուե-լով...։

— Ու ո՛րքան կը հրճուէիր, պարոն, եթէ գրաւդ վաստկէիր։

— Աքանչելի՛. ատի առանց ունքդ շարժելու, առանց գլուխդ շարժելու ըսիր փոքր ինչ անտարբեր կերպով մը. անկարելի է

,ուսացուն կերպով օգտել գտօներէս։ Ահա Մէյնար պատուականապէս խաբուեցաւ։ Հիմակ՝ ըստ իս՝ անտարակոյս համոզուած է թէ մեր խօսակցութեան նիւթն է արեւը, անձրեւը կամ ատոնց նման նոր և հետաքրքրական որ և իցէ բան մը։

— Ի՞նչ է այդ Պ. Մէյնարը, հարցուցի։

— Կը ներուի քեզ այդ հարցումդ, վասն զի Շալօն-Սիւր-Մառնէն նոր եկար. սակայն բոլոր բարիզցիները Օրլէանցի նախագահը կը ճանչեն. Օվէրնեի մէջ ծնած է ան, և բնութեամբ բանաստեղծ է։ Փոխանակ իր քաղքին մէջ հանդարտօրէն դատ կարելու՝ հոս եկած է զանազան երգեր, ոտանաւորներ, տաղեր շինելու։ Եթէ իր բարեկամուհին ըլլաս, թո՛ղ տաղերն ալ զգոյշ կենան, վասն զի Մէյնար անոնց ամէն առեակ թշնամանք պիտի ընէ, և պիտի հաստատէ թէ կը պարտաւորին ամօթահար պահուիլ գեղափողփող աչերուդ պայծառութեան առջև։

— Թո՛ղ ուրեմն իրենց ճարը նային տաղերը . . . ։ Հապա ո՞վ է սա մարդն որ կնքամօրս աջ կողմը նստած է։

— Անունն է Գլօտ Ֆավրը Տը Վօկըլա, օրուան մարդ մ՚որ՝ միայն երկու պակասութիւն ունի. առաջինն է ծուռ քիթ մ՚ունենալը, երկրորդն է քերական ըլլալը։ Իր յստակախօսութեան սխալները ձանձրալի են։ Այս այլանդակ մարդը թագաւորին եղբօրը՝ Կաստօնին՝ սենեկապանն է, և Կաստօն բացարձակապէս պատուիրեց իրեն որ իր առջև համաձայնութեան վրայ չխօսի, ըսելով թէ բոլորովին երեսէ պիտի ընկնի եթէ խօսի։ Վօկըլա քերականական սխալներու և լեզուին ներհակ վրիպանաց տիեզերական սրբագրիչն եղած է ինքնին։ Օր մը կասկօնցի ազնուական պատանիէ մը առտոնկ նախատուելէն և մենամարտութեան հրաւիրուելէն ետք իր հակառակորդին խօսքերուն մէջ ինչ ինչ դժուարամարս սխալներ նշմարեց, և պատասխանեց անոր. «Պարոն, ինձ սուրի վէրք մը տալու իրաւունքն ունիս, բայց ոչ ականջներս վիրաւորելու։ Յօժարակամ կը խօսակցիմ մենամարտութեան ժամանակ. իմ վրայ շատ առաւելութիւն ունիս, ուստի գնա երկու կամ երեք տարի եւս կեցիր դպրոցը, ապա կը մենամարտինք»։

Սէնթ-Էվրըմօն իրեն նայեցաւ խոժոռ, և սեղանէն ելնելով ըսաւ.

— Ուրեմն պիտի երթանք վերջապէս։ Պ. Տը Րօշֆորում, բարեՀաճէ՞ք թէք տանելու սանուՀիս այն ակնածութեամբ և յարգանօք զոր ունիս Ճիշդ ինծի Համար։

Սալերը փութաց Հեռացնելու և զիս խիստ խոնարՀաբար ողջոյնին մէջ թիկնաթոռը տարաւ։

— Խնդրեմ, ըսաւ ինծ Տէպարօ ամբնացած ձայնով. տատանիկ բաները ամենեքին յայտնի չեն ըներ։

— Ի՞նչ. կ'ուզէիր որ Հաւանէի....

— Չեմ ըսեր որ Հաւանէիր... բայց լաւագոյն էր ծածկել այս պատկառելի մեղաւորին և յանցանքը խօսքով մը, նայուածքով մը Հասկցնել զինքը առանց ենթարկելու կնքամօրդ յանդիմանութեանց։ ԱնՀաշտ թշնամի մը վաստկելու վտանգը ունեցար։ Բարեբաղդաբար պերճութեանդ Հրապոյրներուն տպաւորութեամբը գրաւուած է ան. քեզ ու պաՀելու գաղափարը մտքէն չանցաւ ... եթէ չես Հաւատար, նայէ։

Իրաւ կ'ըսէր փաստաբանը։

Պ. Տը Րօշֆոռա սենեկին մէջ անկիւնը նստած կ'աքանչանար վրաս և կարծես Հոգեպէշ կը նայէր։

— Գէթ վաթսունամեանի յաղթանակ մ'է առի, Մարիօն։ Բայց, շարունակեց Տէպարօ, այս գիշերուան չափ ազատութիւն պիտի չունենանք միշտ. կ'ուզեմ պատեհ առիթ ստեղծել այս ազատութիւնը, և ուրիշ խրատներ տալ քեզ։

— Ցիրուն խիստ երախտապէտ եմ, պարոն։

— Այդ ներողութիւնը մի՛ կրեր. իմ օգտիս Համար կ'աշխատիմ։

— Հա՛, Հա՛։

— Ինչպէս քաջ գիտես ... այնքան շատ կը սիրեմ քեզի որ չեմ կրնար քեզի անթերի ընելու չաշխատիլ։ Գեղանի ես, Մարիօն. բայց գեղեցկութիւնդ չգիտնալ ձեւացո՛ւր որպէս զի ազատիս այն Հազարումէկ մանր մունր նենգութիւններէն զոր ուրիշ կիները Հարկաւ պիտի ընեն քեզ յաղթանակներուդ փոխարէն։

Իսկ մարդերուն գալով՝ զգուշացիր այն յանկուցիչ ազդեցութենէն որ քեզի դէպ երիտասարդները պիտի տանի. բայց ծերերուն մանաւանդ մի՛ վստահիր. ամենէն աւելի անոնցմէ վախնալ պէտք է։ Ծերերն իրենց որսապարկին (gibecière) մէջ խել մը խաբեբայութիւններ ունին որոնցմով կրնան իրենց Փիզիքական տկարութեանց կարուտը փոխարինել։ Ամեն բան ընելու կը համարձակին անոնք. այս է յաջողելու միջոցը, և շատ անգամ խեղճ պատանուհի մ՚ալեւոր մօրուքէ մը բռնուած կ՚ըլլայ առանց գիտնալու թէ ինչպէս և ինչ պատճառաւ բռնուիլը։ Վստահ մի՛ ըլլար մանաւանդ կնքահօրդ վրայ։ Վօկըլլա այս միջոցին քերականական սահմանով մ՚անոր գլուխը կը ցուցնէ, թէ ոչ այնքան բարեպատեհ առիթ մը չէի ունենար քովդ։ Կնքահօր տխաղան իրեն տեսակ մ՚իրաւունք կը տայ զոր արդէն պահ մ՚առաջ չարաչար կը գործածէր։ Հիմակ ահա գիտես եղելութիւնը, և ճաշակի մասին այնքան ուղիղ դատողութիւն և ճարտարութիւն ունիս որ կըրնաս անանց սահման մը դնել իր առջև։ Այսպէս վարուելու պարտաւոր ես մանաւանդ՝ կնքամայրէդ ակնածելու համար։ Զրուցեր թէ Վիլարսօ և տիկին Տը Սէնթ-Էվրըմօն պիտի ուզեն հաւանիլ որ իրենց Ցեղակերպութեանց ամեն երեսները կարգացուին, և իմ մասին լսած եմ դէպ 'ի Զվիցերի եղած ճամբորդութեան մը վրայ խօսուիլը որ . . . ։

— Լռէ՛, չարախօս։

— Ոչինչ հաստատուած է, բայց ինչ և է ա՛լ ատոր խօսքը չընենք։ Օր մը դուն ինքդ պիտի պարտաւորիս ընտրութիւնդ ընել։ Գեղանիդ իմ Մարիօն, ամեններին որոշում մը մի՛ ըներ առանց խորհրդակցելու սրտիդ հետ . . . ուրիշ բան է եթէ վայելուչ էրիկ մը պատահի, թէև պատահիլը խիստ տարակուսելի է ինձ։

— Ինչո՞ւ տարակուսելի է, պարոն։

— Գեղանիդ իմ, կնիկ ուզող էրիկներն երկու տեսակ են. այսինքն երիտասարդներ և ծերեր են . . . միշտ։ Առաջինները սատակ կը փնտռեն, երկրորդներն երբեմն սատակ կը բերեն։ Երիտասարդ-

ները քեզի միայն գեղեցկութեամբ հարուստ պիտի գտնեն, և կեցիր բարև ըսելով եա պիտի դառնան. Իսկ ծերերուն ալ դուն ճամբայ պիտի տաս։ Այն ատեն, Մարիոն, եթէ կը յիշես մարդ մ'որ կը սիրէ քեզի, մարդ մ'որ անկարող է իր կեանքը շղթայելու, և որ սակայն բոլորովին պատրաստ է քու կեանքի վրայ վարդերջատերևատելու և մէն մի այտը, երանութեան ճառագայթներով զարդարելու, դիմէ՛ այն մարդին, և անոր քով կաթողին սէր, անձնուիրութիւն, հաւատարմութիւն պիտի գտնես։

— Աստուած սիրես, վերջ տուր այդ խօսքերուն։ Արդեօք կը գիտե՞ն մեզի։

— Ամենքն, Մարիոն. կոմսուհին բռնուած է սա շաղակրատ նախագահէն. Բօշգրուա կը յարատևէ հողեպիչ նայելու. մեր յառակատէր քերականը տակաւին Վիլարսօյի գլուխը կը ցուցնէ, իսկ Պ. Տըլօրմ իր թիկնաթոռին վրայ կը քնէ։ Անկից 'ի զատ դրութենէս չեմ շեղիր, և ահա օժոյներուն կամ սրահին սա ծնօտներուն արաբական նկարներուն վրայ խօսիլ կը ձևացնեմ։

— Պարոն, կեղծաւորութեան վրայ քաջ դասեր առած ես....

— Չէ... բնականաբար ամեն պակասութիւնները ունիմ։

— Աւելի որքան կը պարտաւորիք ապահովել զիս։

— Այսօր կը կեղծեմ և իմաստունի դեր կը խաղամ։ Կոմսուհին ամենակատարեալ վստահութիւն պիտի ունենայ և վերջ աներկիւղ քովդ պիտի թողու մինչև այն րոպէն որ, գեղանի հրեշտակս, մեր պարտէզի դրանը պիտի վասակիմ։

— Երբէք, պարոն։

— Պիտի տեսնենք, Մարիոն։

— Ի՞նչ բանի վրայ կը խօսիս սանուհիիս հետ, Էմմանուէլ, հարցուց կոմսուհին մօտելով։

— Օրիորդին անունը, պատասխանեց Տէպարօ, կարծել կը տար ինձ թէ ինք Լիօնի մէջ ծնած է, և կը հարցնէի իրեն թէ արդեօք իր մեծ-հօրեղբայրը չէ՞ր Ֆիլիպէր Տըլօրմը, այն հռչակաւոր ճարտարապետն որ Թիւիլըրիի ապարանաց յատակագիծը տուաւ։ Տիկին, երբ բացասական պատասխան տուաւ ձեր սանու-

հին, կարգը թերթելով Լուվրի, Սուասօնի ապարանքին, Շաթըլէին, վերջապէս Բարիզի գլխաւոր յիշատակարաններուն վրայ կը խօսէինք։ Օրիորդը շատ փափաք ունի ճանչնալու զանոնք, և այժմէն աղէկ գէշ կը նկարագրէի զանոնք։

Ցէպարօ այսպէս պատասխանելէն ետք մեծ բարև ըսաւ կնքամօրս։

Միւս սեղանակիցներն իր օրինակին հետևելով պատրաստուեցան կեցցէք բարև ըսելու մեզ։ Ժամը տասնումէկին կը զարնէր։

Գամիւզար իր մատնութիւնը բոլորովին գործադրելու վրայ էր, թէև այն ատեն ամենևին չէի կարծեր անոր այսպիսի մատնութիւն մ՚ի գործ դնելը։

Հետևեալ օրն առտու արթննալով տեսայ այն սպասուհիներուն մին որը առջի օր հաղուեցուցեր էին զիս։

Տեսածս էր Թերէզա Պիւլման։

Նախ վախցայ, վասն զի հանած վարած աղջիկն այնպիսի ահարեկ կերպարան մ՚առած էր որ կրնար վրդովում տալ ինձ։

— Ի՞նչ ունիս, ըսի։

— Բամբէ, օրիորդ, երէկ ինչո՞ւ բօպադ և փեղոյրդ ինձ տուիր։

— Ինչո՞ւ . . . չգիտեմ . . . կնքամայրս այնպէս յարմար դատեց . . . ատոր մէջ ի՞նչ գէշութիւն կայ։

— Հապա կարդալու փափաքողն այն փեղոյրը և բօպան տեսնելով յանկարծ իմծի սիրահարեցաւ։

Զարմացմամբ ցայտեցի անգամ մը, և ինքզինքս անկողինս վըրայ նստած գտայ՝ Թերէզային նայելով ուղղակի, և աշխատելով այս աղջկին դէմքին վրայ կարդալու այն պատճառը որ կրնար այս տարօրինակ խօսքերը իրեն թելադրելու։

— Սիրահարեցա՞ւ քեզ։

— Այո՛, օրիորդ . . . և կ՚ուզէ կարգուիլ հետս։

— Հապա կարգուէ՛։

— Մի՛ զարմանար․ միայն գրած է կարգուիլը, քանի որ երէկ ամուսնութեան խոստմնագիր մը ստորագրեց և ինձ տուաւ։

Շատ զարմանալի երևցաւ ինձ այս բանը, և ամենախիստ ձայնով մը խօսելով պատասխանեցի սպասուհիին.

— Հաղորդեցո՛ւր զիս . . . ։ Այս հեռու պիտի դառնայ տիկին կոմ-տուհիին սենեակը։ Կը փափաքիմ իր բերնէն լսել թէ հրաման կու տայ քեզ տասնեակ մնալու կատակներ ընելու։

— Բայց կ'երդնում թէ կատակ չէ ըրածս, ըսաւ Թերէզա առջի օրն ստորագրուած թուղթը կուրծքէն հանելով։

Այս թուղթը անգամ մը կարդալէն ետք սպասուհիին նայե-ցայ շուարումով։ Աչերս կը շփէի, առանց սակայն անոնց վկա-յութեանը վրայ տարակուսիլ կարենալու։ Անշուշտ բան մը կ'անց-նէր յիս. ուրախութեան և բարկութեան դէմ կը կռուէի։

Բոլոր խղճերս կը կատարուէին այնպիսի արագութեամբ զոր բնաւ չէի յուսար, այլ սակայն հպարտութիւնս կը զայրանար. կը սրտմտէի տեսնելով որ Ցովսէփ համարձակած էր զինքը կա-պող շղթաներս խորտակելու առանց իմ յատուկ կամքի, առանց իմ ուղղակի մասնակցութեան. ուստի Թերէզային ուղղելով խօսքս ըսի.

— Մեծ յանդգնութիւն է, օրիորդ, այդպէս գալով ինքնին խնդրել . . . ։

Ցանկարծ խօսքս կտրեցի։

Այլանդակ բարկութիւնս չէր կրնար կամաւոր շարժումի մը սահմանէն անցնիլ. խեղճին զսպեցի այս շարժումս. դժգոհութեան բոլոր ամպերն աներեւոյթ եղան, և Թերէզան ալ ոչ այնքան սառ-կալի նայուածքով մ'երեւակայեցի։

— Բայց ինձ նայէ, ըսի, ինչպէս ըրիր, ինչ ստամնութեամբ, ինչ կախարդութեամբ . . . ։ Թշուառն որբեւ զինով էր։

— Շատ չէր, օրիորդ։

— Անշուշտ ամեն երեւակայելի հրապոյրներդ երեւան հանեցիր, այնպէս չէ՞։

— Զինքը միայն հօրս առջև տեսայ որ այս արտօնանքին դռնա-պանն է։

— Լաւ, գոչեցի, նախախնամական դէպք մ'է այս։ Երկինք իմծի համար աշխատեցաւ։ Հաղւով սրտով կը շնորհաւորեմ քե-զի . . . ։ կարգուէ որքան շուտ որ կրնաս, վաղը, այսօր, հիմակ

թեկ . . . . և աշխատէ շատ զաւակ ունենալու որք իրենց հօրը չնմանին ։

Այս խօսքերէն ետք այնքան զուարթացի, այնքան աղմկալի և այնքան երկարատև քահ քահ մը թողուցի որ տիկին Տը Սէնթ-Էվրըմօն, որու պառկելու խուցն իմինիս մօտ էր, վազեց եկաւ առանց տակաւին հագուած ըլլալու, և ըսաւ.

— Բայց ինձ նայէ, սիրելիդ իմ, խե՞նդ ես ։

— Այո՛, կնքամայր իմ, ուրախութենէս խենդեցած եմ ։ Ահա տե՛ս, կարդա՛, զարմացի՛ր, ծունր դի՛ր ։ Գամիւզար սենեկի սպասուհիիդ հետ կը կարգուի՛ ։

Կոմսուհին տոմսակը կարդալէն ետք ինքն ալ սկսաւ քահքահներ թողուլ ։

— Է՛, ըսէ նայիմ, գոչեցի, տակաւին պիտի համարձակիս շրջազգեստաւոր Մաքիավէլ անուանել զիս ։ Դռնապանիդ աղջիկը մեր ամէն նպատակները 'ի դերև հանեց, թաղեց, մեզմէ աւելի վարպետ եղաւ, Գամիւզարին սրտէն արտաքսեց զիս. անգամ մը լարը քաշեց միայն, և անոր սրտին դուռը իսկոյն բանալով ներս մտաւ և տեղաւորուեցաւ . . . ։ Կնքամա՛յր իմ, տե՛ս ահա ընտանիքի սովորութիւնները ։

Եւ կոմսուհին ալ ինծի պէս զուարթանալով, քառորդէ մը աւելի խնդացինք ճայթելու չափ ։

— Շիտակը խօսելով լաւագոյն կը համարիմ այդ մարդը էրիկ ընել ինձ քան թէ ամենևին էրիկ չունենալ, ըսաւ Թերէզան. փոքր ինչ կայտառ կերպարանով մը ։

Ասոր վրայ աւելի սաստկացան մեր քրքիջները ։

Տիկին Տը Սէնթ-Էվրըմօն նստած տեղէն կ'ելնէր կ'իջնէր. խնդուքը կը խեղդէր զինք ։ Վերջապէս այս ջղաձգային ժամն անցաւ, և Պիւլմանին աղջիկը բոլոր մանրամասն պարագաներովը պատմեց մեզ առջի օրն իր հօրն օթեկին մէջ տեղի ունեցող իրողութիւնը ։

Շուտով պարեգօտ մ'անցուցի վրաս և Թերէզային ըսի.

— Ա՛ռ այս տոմսակդ, վար էջի՛ր, բան մը մի՛ ըսեր և վեր ղրկէ Գամիւզարը ։

Հինգ վայրկեան ետք Ցովսէփ ներս մտաւ․ անկեղծ էր ան և սրտաշարժ խանդաղատութիւն մը կը տիրէր դէմքին վրայ․ անասելի զմայլումներ կրեցինք մեր քերթողներէն նորէն չսկսելու համար։

— Պարոն, ըսաւ կոմսուհին, եթէ կը հաճիս, ըսէ նայիմ, ինչո՞ւ համար առանց մեր հրամանի վերստին հազար գաւառական գրեաններով։ Ասոր տակ խորհրդաւոր նշանակութիւն մը կայ զոր չեմ համարձակիր հասկնալու։ Մի՛ զուցէ Բարիզ արդէն քու վրայ թանեցուցած ըլլայ իր աղետալի ազդեցութիւնը։ Իրա՞ւ է զուեհիկ հրապոյրներէ արտադրուած ծայրայեղ մոլորութի մը ժամանակ երդմնազանցութեամբ խոստում մ'ուտելդ, և սանուհիիս ընելդ այն արինաբոյր նախատինքը զոր կին մը չկրնար ընդունիլ։

— Ա՛խ, տիկին . . . ա՛խ, Մարիօն, ըսաւ Ցովսէփ, արդէն իմացե՞ր էք ուրեմն . . . ։

— Անարժան ընթայքդ, այո՛, պարոն, գոչեցի, և շնորհակալ եմ քեզմէ որ յոյսերս չթուլցուցիր․ ատկից աւելի կոշտութեամբ և ատկից աւելի շուտ չէին կրնար կտրուիլ անոնք։

— Բա՛րէ, Մարիօն, սակայն կը սիրէի քեզի։

— Պապանձէ՛, պարոն . . . ։ Ակքամա՛յր իմ, սվոր նայէ անգամ մը, պատրաստ է ոտքս ընկնելու և սիրաբոյր խօսքերով իս շոյելու . . . ։ Գեղանի՛ Աւօնիս, կը հաճի՞ս ինծի համար ամուսնական խոստմնագիր մը ստորագրելու . . . ։ Մե՛ղք քեզ, ապերա՛խտ․ մե՛ղք քեզ, դրուժա՛ն . . . ։ Շիտակը, պարոն, արժանի չես եղեր այն ներողամտութեան զոր ցարդ կը տայի կոպիտ և ծաղրելի անձիդ համար . . . ։ Չնայիր իր աղւոր քիթը և կը համարձակի խաբեբայ ըլլալու։

— Եկո՛ւր, Մարիօն, եկո՛ւր, բզիկ բզիկ ըրէ, ծեծէ իս . . . ոտներս և ձեռներս կապուած անձնատուր կ'ըլլամ վրիժառութեանդ։

— Ի՞նչ օգուտ ունի ինձ վրէժ առնելս․ կրնամ այդ կերպով վերստին գրաւել ձեռքէս փախող էրիկը։

— Բա՛, ուրիշ էրիկներ պիտի գտնես, Մարիօն։

— Ի՞նչ կը նշանակէ ատիկա։

— Եւ իրմէ լաւագոյն, իրմէ աւելի փառաւոր էրիկներ։

— Բայց, կնքամայր իմ, գիտէ՞ք սա հրէշին հանգարտ կերպարանքը....։ Ի՞նչ. չե՞ս երդնուր ինծի, պարոն, թէ սխալմամբ կամ մոռացման վայրկեանի մը մէջ այդպէս վարուած ես։

— Ձե՞ս աղերսեր զիս, ըսաւ կոմսուհին, որ Թերեզայէն ես առնում խոստմնագիրը։

— Չէ, ըսաւ Գամիւզար հառաչով մը... յիրաւի պլանդակ էք....։ Ա՜խ, եթէ Շալօնի մէջ մնացած ըլլայինք, բայց և այնպէս եթէ հոն մնացած ըլլայինք անգամ, միթէ նպատակիս կրնայի՞ հասնիլ. ես կարի տգեղ եմ, կամ Մարիօն այնքան աղուոր է որ... վերջապէս քաջ խորհելով կը նայիմ որ խենդութիւն մ՚ըրած կ՚ըլլայի։

— Ի՞նչ ըսել կ՚ուզես այդ խօսքերով։

— Շալօնի մէջ կնիկս կղպուած սենեկի մէջ պիտի պահէի, բայց Բարիզի մէջ չէի վստահեր կղպանքներու։ Ասկէց ՚ի զատ միթէ երբեք կրնայի՞ ինչ ինչ գեղեցիկ պարոններուն ձեռքերն ու կերպերը ունենալ։ Մարիօն երեք ամիս անգամ պիտի չսիրէր զիս, և երեւակայեցէ՛ք աղմուկը։ Այս ամէն գաղափարներուն կէսը ուղևորութեան ժամանակ, կէսն ալ երէկուան ընթրիքին ատեն միտքս եկաւ....։ Ա՜խ, ինքնին ստուգիւ ըսի. Յովսէփ, տղա՛ս, բժշկէ՛ սիրտդ, խիստ շուտ բժշկէ։

— Պատճառաբանութիւններդ շատ իրաւացի են, պարոն, ըսաւ կոմսուհին՝ անոր խօսքը կտրելով։ Եւ Թերեզա Պիւլման պիտի փութայ բժշկելու սիրտդ։

— Աստուած իմ... այո....։ Ի՞նչ միտքս պահեմ, տիկին. երբեք չպիտի համարձակիմ անգամ րոպէ մը մտածելու։ Թող Մարիօն դուքսի և ատենակալի մը կամ արքայազուն իշխանի մը կինն ըլլայ....։ Ես Թերեզային հետ կը կարգուիմ....։

— Ուրեմն կը պարտաւորիս համբերել, ըսաւ ինծի կնքամայրս։ Պիտի կրնա՞ս համբերել։

— Անշո՛ւշտ պիտի կրնամ....։ Ամենափոքր սէր չեմ պահեր իր վրայ, և զինքը տգեղ կը գտնեմ, շա՛տ տգեղ կը գտնեմ։

— Լա՛ռ, ըսաւ Գամիւզար, միթէ առաջի՞ն անգամն է առի ըսելը, Մարիոն։ Գ. Տէպարօյին ազնուաբարոյութիւնը չունիմ անշուշտ, և նուէրին վրայ աւելի անոր կը նայէիր քան թէ ինձ։

— Նուէ՞րին վրայ, կրկնեց տիկին Տը Սէնթ-Էվրըմօն զարմացմամբ։

Կոմսուհին իմ կողմս դարձաւ ուժգնապէս. իսկոյն կարմրեցայ։

— Էշ եմ եղեր, է՛շ, գոչեց Գամիւզար. սակայն պատուէրներ էին ինձ....։

— Ի՞նչ, հարցուց կոմսուհին։

— Լռութի՛ւն. արդէն շատ եղաւ ըսածս։

Ծայրայեղ շփոթութեամբ մը համակուած էի, և կը տեսնէի որ տիկին Տը Սէնթ-Էվրըմօն ունքը կը պռստէր տհաճու կերպով մը։

— Դուրս ելի՛ր, պարոն, ըսաւ Յովսէփին։

— Խօսելու համար ոխ ունի՞ս ինծի դէմ, հարցուց Յովսէփ դուրս չելած։

— Ինչո՞ւ ոխ ունենամ, պատասխանեցի. եթէ Տէպարօ լսելու պատճառ մ'ունեցաւ, ես չունիմ, հետևաբար անվստահութիւն ցոյց չեմ տար պաշտպանուհիիս։

Գամիւզար աներևոյթ եղաւ, և կոմսուհին ինձ ըսաւ այնպիսի ծանրութեամբ զոր մինչև այն ատեն չտեսեր էի իր վրայ։

— Խօսէ, մանիկ, կ'ըսեմ քեզ։

— Խօսիմ ուրեմն, կնքամայր իմ։

— Ոչ և է մանր պարագայ չմոռնաս, կ'ուզեմ ամեն բան գիտնալ։

Սարսռուքս կ'աւելնար. ձեռներս կ'երերային։

— Ա՛խ, Մարիոն. աղջիկս, ուրեմն անկատակ է իրողութիւնը։ Երբէք չպիտի հաւանիմ Փարիզի մէջ պահելու քեզի, եթէ կամահաճութիւնս կրնայ կորստեանդ պատճառ ըլլալ։ Սիրելիդ իմ, հոս տղիկները կը վխտան, և երբ պիտի կրնամ հաւտալ թէ....։ Խոհեմութիւնդ կը պարտաւորի փորձուիլ....։ Օ՛ն,

մի՛ լար այդպէս . . . գիտես թէ որքան կը սիրեմ քեզի . . . բան մը մի՛ պահեր ինծմէ , երբէք չպիտի զղջաս անկեղծութեանդ վրայ ։

Բա՛յց , հարկ եղաւ գրեթէ ամէն բան պատմել ։

Կոմսուհին հրաշալի ճարտարութեամբ մը կը գուշակէր այն պարագաները զոր շփոթութեանս հակառակ տակաւին կ'աշխատէի պահելու ։

Նոյն օրն իսկ Վ․օժըլա կոմսուհիին կողմէն վեց հազար ֆրանքի փոխանակագիր մը տարաւ Էմմանուէլին իր փաստաբանական վարձուց փոխարէն , և գրամատիկոսը խիստ ազնիւ կերպով հասկցուց անոր թէ խոհեմութեամբ վարուած կ'ըլլայ եթէ մինչև նոր հրաման մ'ելնելը Սէն-Թոմա-տիւ-Լուվրի փողոցին ճամբան մոռնայ ։



# Ը

Գաբրիէլ Տըլօրմի գալիրին չէր ներեր , և առանց վայրկեան մը կասկածելու գիտէի թէ խիստ կամայական անխորհրդութեան մը նահատակն էի . այսպիսի անզգոյշ խօսքի մը մէջ աւելի չարասրտութիւն քան թէ ապշութիւն կար ։

Վ․օժըլայի դեսպանական այցելութեան հակառակ , կամ դուցէ այս այցելութեան պատճառաւ Էմմանուէլ այն գիշերն իսկ կոմսուհիին տունն եկաւ . սակայն խիստ կարճատև եղաւ իր երեւումը ։

Վեց հազար ֆրանքի փոխանակագիրը հանդարտօրէն սրահին շիմինէային վրայ դնելէն ետք կնքամօրս ըսաւ .

— Շատ կը ցաւիմ քանի որ կրցեր եմ անհաճոյ ըլլալ ձեզ . . . սակայն , տիկին , ատի չկրնար ձեր աղքատները ողորմութենէ մը զրկելու պատճառ մ'ըլլալ ձեզ ։

Ապա կարդալ ամենուն բարև տալու, այս բարերարութեան բաշխումին մէջ առանց մոռնալու զիս։

Երբ քովէս անցաւ, խիստ կամաց մ'ըսի.

— Գամիւզարն է պատճառը։

— Լաւ, ըսաւ, վրէժս պիտի լուծեմ։

Այս խօսքերը այնքան արագօրէն ըսինք իրարու որ ոչ ոք տեսաւ և ոչ իսկ մեր շրթներուն շարժիլը։

Փաստաբանը մեկնելէն ետք տիկին Տը Սէնթ-Էվրըմօն սաստիկ բարկացած երևցաւ։ Շուարեցուցած էր զինքը փաստաբանին այս անփոփոխելի համարձակութիւնը. իրեն համար նուաստութիւն մ'էր դատապաշտպանական խօսք մը գտնելու անկարող ըլլալը։ Այն իրիկուն մինչև հիւրերուն մեկնիլը խիստ քիչ բարեկամութիւն ցոյց տուաւ, և ասկից 'ի զատ Գամիւզարին ամուսնութեանը տեսակ մը մասնաւոր հոգ տանելը տեսնելու անհաճութիւնը ունեցայ։

Որոշուեցաւ որ դպիրն և Թերէզան մինչև երեք օր պսակուին Բէր Տը Լօրաթուարի մատուռին մէջ որ շրջակայ տեղուանքը շինուած էր։

Ապա՝ կարծես կոմսուհին վիշտս կրկնապատկել ուզելով Ցովսէփը բերել տուաւ որ անշուշտ գոնապանին օթեկին մէջ զինովութեամբ կ'ըսպասէր, և զէջա. ինքն անձամբ իմացնելու իր ըրած որոշումը։

— Ա՛խ, տիկին, ըսաւ տղուշը՝ ծունկի վրայ գալով, բարեհաճեցէք ձեր բարեգործութիւնը կատարեալ ընելու։ Երջանիկ ըլլալու համար ուրիշ բանի մ'ևս կը կարօտիմ։

— Ի՞նչ բանի։

— Շալօնի աւետնին վարքոյաւ որ նուիրակ ըլլալու . . . կեանքիս երազն է այս, և մինչև մեռնիլս պիտի օրհնեմ ձեզի։

— Փափաքդ պիտի կատարուի, ըսաւ կոմսուհին։ Տը Վիլարսօ մարքիզը Տիւվէրին հետ սերտ բարեկամութիւն ունի, և պսակուելու օրդ իսկ պիտի ընդունիս այդ պաշտօնը։ Խօսքս կը տամ քեզ։

Կոմսուհին հաճոյք կ'զգար իմ վաղեմի նշանածիս նկատմամբ

զիս չարչարելով։ Բաւական չէի պահեր ոխս, և ասկից 'ի զատ զեղջումներով խառն խոստովանութիւնս չկրցած էր խաբել իբրև պէս փորձառու կին մը։ Կոմսուհին քաջ կը տեսնէր որ Ցէպա-րօյին նկատմամբ ոչ այնքան անտարբեր էի որքան կ'ուզէի հաւ-տացնել։

Շատ անգամ խորհած եմ կնային բարեկամութեանց անհաս-տատութեան վրայ. քմահաճութիւն մը կը հաստատէ և ուրիշ քմահաճութիւն մը կը ջնջէ այս տեսակ բարեկամութիւնները։

Կնքամայրս անշուշտ կրնար յանցանք գտնել իմ վրայ, բայց վերջապէս թեթև երևեր էի միայն։ Յանդիմանութիւնը ամէն ետք պէտք էր զիս պատժել նաև անտարբերութեամբ։

Եթէ կարող ըլլայի այն գիշեր նորէն տեսնել Էմմանուէլը և երկու վայրկեան առանձին խօսիլ հետը, հարկաւ պիտի աղաչէի զինքն որպէս զի Գամիւզարին փափաքներուն կատարումը արգի-լէ՝ բանեցնելով այն ամեն զսպանակները զոր իր կամքին ներքև ունէր դատաւորներուն քով։

Բաւական տրտմալի եղան այն իրիկունէն ետք անցնող երեք օրերը։

Տիկին Տը Սէնթ–Էվրըմօն տակաւին սրդողած կ'երևար ինծի դէմ. ասկից 'ի զատ իր տղուն սենեակները պատրաստել տալու կ'զբաղէր։ Սուրհանդակ մ'արդէն արշաւելով կ'երթար Գուլթան-ոի Ճամբէն, և մայիսին առաջին շաբաթուան վերջին երիտասարդ Մարգրիտին գալստեան կ'սպասէինք։

Մայրաքաղաքին հետաքրքրական լուրերէն ոչինչ տեսեր էի տա-կաւին։

Գաբրիէլ Տըլօրմ կ'ուզէր զիս հետը տանիլ իր գացած քանի մը տեղերը. սակայն փողոցներուն մէջ հետի քալելու պաճու-ճանք չունէի ալ, և կնքամայրս խիստ կերպով մ'իմաց տուաւ թէ Բարիզը ճանչելու շատ ժամանակ ունէի։

Իր ըսածին նայելով նախ պէտք էր դաստիարակութիւնս կա-տարելագործել։

Հետևաբար այն ամեն վարժապետները, որք, — զինավարժու-

թեան վարժապետէն 'ի զատ — կը պարտաւորէին Յովսէփը տանջել, ընդհակառակն զիս տանջելու եկան։

Կը կատղէի, և նախ խիստ գէշ կերպով ընդունեցայ զանոնք։

Եկաւ երաժշտութեան դասատուն։ Իր մեթոտին պատուականութիւնը գովեց, և խօսեցաւ հեռու իր աշկերտներուն մէկուն վրայ, զոր, կ՚ըսէր ան, զարմանալի կերպով յաջողակ ըրած էր ջութակը նուագելու։

Յետոյ ըսաւ թէ Տէպարօն էր այն աշակերտը։

Այնպէս ձևացուցի թէ շատ անտարբերութեամբ մտիկ կ՚ընէի իր խօսքերը. վասն զի կնքամօրս սպասուհիներուն մին դասատուութեանս ժամանակ ներկայ էր։ Բայց իսկոյն կասկած մը մտաւ միտքս. կարծեցի թէ Էմմանուէլ գաղտնապէս վարպետութիւն բանեցուցած էր սորվելու համար կոմսուհին որ աւելի այս դասատուն ընտրէ քան թէ ուրիշ մը։ Ա՛լ անկասկած եղայ այս մասին երբ հետևեալ օրն երաժշտութեան տետրակիս մէջ հետևեալ տոմսակը գտայ.

«Հանդարտէ՛, սիրելի հոգիս. մեր վրէժը կը մօտի, և Գամբուզարին մատնութիւնն իրեն շատ սուղի պիտի նստի։ Բիւրից կը համբուրեմ ձեռքդ»։ «ՏԷՊԱՐՕ»

Խելքս կը յոգնեցնէի գուշակելու համար թէ ինչ էր իր վրէժը, և քաջ չէի տեսներ թէ Էմմանուէլ ինչպէս պիտի լուծէր զայն, վասն զի ամեն բան վաղեմի խօսնայրիս փափաքներուն համեմատ կը կատարուէր։

Իր ահային անուշ դէմքը կարծես կը ծաղրէր զիս։

Արդարութեան սպաշտօնեայ՝ Տիւվէր՝ մարքիզին խնդրանաց համեմատ՝ միջակ շնորհք մ՚ըրաւ Գամբուզարին, և Գաբրիէլ Տըլօրմի դպիրին ամենուն առջև գլուխ բռնելը և պարծիլը ծիծաղելի տեսարան մ՚եղաւ տեսնողներուն։

Երբէք գաւազանակիր նուիրակ մ՚այնքան հպարտութիւն ցոյց տուած չէր։ Եթէ թագաւորն անցնէր անգամ, նա ամբոխանա-

ւորը թերեւս խիստ ակամայ համակերպէր իր գլխարկը հանելու ։

Մայիսին առաջին օրուան առաւօտը, որ Ծաղկանց տօնն էր, Յովսէփ ճամբայ ելաւ եկեղեցին երթալու Թերէզա Պիւլմանին հետ, որ իր նոր հարսի սպիտակ հագուստին ներքեւ առոյգ և սիրուն էր ։

Վարդ մը տանող սոսկալի ոսկեծաղիկ մ՚էր ան ։

Կնքամայրս և ես ապարանին պատշգամը կենալով անոնց ետեւէն կը նայէինք, և ինքնիրեն կ՚ըսէի.

— Բայց ո՜ւր է խոստացուած վրէժը ։

Կէս ժամ ետք հասաւ վրէժը, և այս լուրը մեզ բերաւ Յովսէփ ։ Կարծես տակաւին աչքիս առջեւն է ասոր մոլորագին նայուածքով, խառնուշփոթ զգեստներով ներս մտնելը մինչդեռ կարմիր մազերէն քրտինք կը հոսէր ։

— Թերէ՛զա, գոչեց, Թերէ՛զա, ո՜ւր է Թերէզան ։ Կնիկս առին, Թերէզաս գողցան . . . ։ Օգնութեան հասէ՛ք, մարդասպանները բռնեցէ՛ք ։

— Բայց ի՞նչ կը նշանակէ ասի, պարոն, հարցուց կոմսուհին ։

— Ա՛խ, տիկին, պէտք է երթալ Թագաւորը տեսնել, հրաւիրել զինքն որ մեր իրաւունքը պաշտպանելով հափշտակողները պատժէ . . . ։ Ո՞ւր կրնայ ըլլալ Թերէզան, ո՛ Աստուած իմ . . ։ Յոյս ունէի թէ հոս պիտի գտնէի զինքը . . . ։ Վա՜յ ինծի, վա՜յ ինծի ։ Կնիկս կ՚ուզեմ . . . ։ Օգնութի՛ւն, օգնութի՛ւն ։

Այս Գամիւզար գնաց լալով, ձեռները ճակատին զարնելով, և այս այլանդակ արկածին վրայ առանց ամենափոքր տեղեկութիւն մը տալու մեզ ։

Իսկոյն հայրս եկաւ հարսանեկան միւս վկաներուն հետ, և իմացուցին մեզ թէ ինչ տեղի ունեցած էր ։

Հարս ու փեսայ Սէնթ-Օնորէի փողոցը հասեր էին ուղեկիցներու հետ, որոնց մեծագոյն մասն ապարանքին ծառաներովը կը բաղկանար ։

Յանկարծ քանի մը չար պահնորդներ Ագաշաղի փողոցին վերի

կողմէ անոնց առջեն ելան և Ճամբան գոցեցին ։ Ուզելով անշուշտ իրենց յատուկ կերպովը պատուել Նշանաւորը , պահնորդներուն իւրաքանչիւրն իր հրացանը դէպ հարսանեաց շքադիրներուն ականջը պարպեց ։

Թերէզա շատ վախցաւ այս հրացանի պայթիւններէն . սաստիկ աղաղակներ արձակեց , և վազելով պատսպարուեցաւ մօտակայ տանիք մը մէջ , մինչդեռ զաւազանակիր նուիրակը հրացան արձակող զինուորաց Ճառ կը խօսէր ծանրապէս և կ'աշխատէր այսպիսի ընթացքի մ'անպատեհութիւնը ցոյց տալու անոնց ։ Պահնորդները ծաղրեցին զինքը և իրենց Ճամբան շարունակեցին ։

Գաւիւզար ուզեց վերստին Թերէզային թևը մտնել . բայց նա՛ չերևար ալ ։ Ցոյց տրուեցաւ իրեն այն տունը ուր նէ մտած էր պատսպարուելու համար . ինքն անձամբ ներս մտաւ , դուռներուն զարկաւ սաստկութեամբ , դատիկոններուն ելաւ նայեցաւ , բնակիչներուն հարցուփորձ ըրաւ , մէն մի խորշը փնտռեց , վար իջաւ , ապա դարձեալ փնտռելու համար նորէն վեր ելաւ հայհոյելով , գոչելով , ոռնալով , հեծկլտալով . այլ ամեն ինչ 'ի զուր եղաւ . այն տանիքին մէջ ոչ ոք տեսած էր Թերէզան ։

Վերջապէս օձապտոյտ ձևով նեղ Ճամբայ մը գտաւ որու երկու կողմը տխուր պատեր կային , և որ խոնաւ գաւիթներէ անցնելէն , նորէն խաւարամած դառնալէն ետք կը յանգէր մինչև դուռ մ'որ Շան-Ֆլէօրի փողոցը կը նայէր ։

Թերէզան հարկաւ այն Ճամբէն անցած էր ։

Կոմսուհիին ծառաներն ալ Գաւիւզարին հետ խուզարկութիւն ըրին իրեն օգնելու համար ։ Այս նոր փողոցին բնակիչներուն հարցու փորձ ըրին . անոնք պատասխանեցին թէ իրօք ծաղկահասակ աղջիկ մը պահ մ'առաջ նեղ Ճամբէն դուրս ելած էր . բայց մին ըսաւ թէ աջ կողմէն մեկնած էր նէ , միւսն ալ պնդեց թէ ձախ կողմէն գացած էր . ուրիշ մը հաստատեց թէ Թերէզա կառք մը մտած էր . որու ձիերն ուժգնակի մտրակուելով մեկներ էին ամենասաստիկ արագութեամբ ։

Երկար չըննեմ , ո՛չ ինչ իմացան , ո՛չ ինչ գտան ։

Նոր փեսան՝ գրեթէ խենդ դառնալով՝ ապարանքը վերադարձաւ, և ըսաւ մեզ այն բառական խառնաշփոթ խօսքերը զոր անկից առաջ գրեցի։

Տիկին Տը Սէնթ-Էվրըմօն իր բոլոր ծառաները ոտք հանեց, Փարիզին ամեն կողմերը մարդ ղրկուեցաւ, լրտեսներ վազեցին քառուղիի բերանները, այլ ամեն խուզարկութիւն ընդունայն, ամեն ջանք անօգուտ եղաւ։

Ամենևին տեղ մը չերևցաւ Թերէզան։

Այս ծաղկահաս աղջիկը հափշտակելու համար բռնութիւն գործածուեցա՞ւ։ Ուզելո՞վ գնաց իր հափշտակողներուն հետը։ Ա՛լ ես ինկ չգիտէի ինչ խորհիլս, և թէև երաժշտութեան տետրս թղթատեցի, թէև նայուածքով հարցափորձ ըրի վարժապետիս, բայց ոչինչ կրցայ իմանալ. կա՛մ վարժապետս հրաման ընդունած էր լռելու, կամ Տէպարօ ամենևին մաս չունէր այս հափշտակութեան մէջ։

Այս խռարանցումին, մեկնութեանց և գանգատներու մէջէն միայն մէկ մարդ հանդարտ մնաց, այսինքն ապարանքին դռնապանը։ Աս յօդացաւութեան մը պատճառաւ չկրցած էր հարսանեաց հետ երթալու, և երբ իր հարսազուրկ փեսան եկաւ և.

— Թերէզան կորսուեցա՜ւ, ըսաւ։

Դռնապանը լակեդեմոնական անխռովութեամբ մը պատասխանեց.

— Քեզ յանձնեցի զինքը... իմ հոգս անգամ չէ։

Չորս կամ հինգ օր Գամիւզար ուրիշ պատասխան չընդունեցաւ։ Շարունակ մի և նոյն բանը լսելէ ձանձրանալով վերջապէս դռնապանին հարցուց.

— Բայց ինծի նայէ, Պիւլման, ի՞նչ. ըսել կ՚ուզես ատով։

— Ըսել կ՚ուզեմ թէ պիտի գտնես Թերէզան, պիտի կարգուիս հետը... և կամ քանի հազար ֆրանք պիտի վճարես։

— Կրողին բերանը կնա՛յ, գոչեց Յովսէփ։

Ապա սաստիկ բարկութեամբ վեր գալով կնքամայրս տեսաւ դռնապանին ծայրայեղ պահանջումները իմացնելու համար։ Սա-

կայն կոմսուհին ալ ձանձրացած էր այս ամեն անմտութիւններէն, ուստի բաւական խստութեամբ ըսաւ.

— Մարիոնին հայրն իր քաղաքը վերադառնալ կ՚ուզէ. կը յորդորեմ որ հետը երթաս, պարոն։ Մանաւանդ որ քեզի համար հաձոյք մ՚է անշուշտ երթալ և սկսիլ նոր պաշտօնդ կատարել։

— Սակայն, տիկին, այն խոստմնագիրը . . . տակաւին ետ չտրուեցաւ ինձ։

— Է՛, ո՞վ աղաչեց քեզի որ ստորագրութիւնդ տաս, պարոն։ Եթէ՛ յարձակում կրես, պատրաստուէ՛ ինքզինքդ պաշտպանելու . . . ։ Եթէ դատ մը բանան, արդէն ատի է քու գործդ ալ։ Այս իրիկուն Մարիոն երթաս բարեաւ պիտի ըսէ հօրը, և վաղը հետս պիտի գայ տղաս դիմաւորելու համար։ Մեր ճամբան ձեռքինին հակադէմ կողմն է . . . ։ Բարի ճամբորդութի՛ւն, պարոն Գամիւզար։

Կոմսուհիին քովն էի, և վաղեմի խօսնայրիս խիստ ակնածական բարեւ ձև մ՚ըրի, ես ալ հեգնապէս կրկնելով.

— Բարի ճամբորդութի՛ւն։

Ըստ իս այսպէս կոչտութեամբ ճամբայ դրուելու արժանի էր յիրաւի։

Երբ երթաս բարև ըսինք հօրս, սա շնորհակալ եղաւ տիկին Տը Սէնթ-Էվրըմօնէն իր բարեսիրութեան փոխարէն որու հաւատակցը կը տար ինձ կնքամայրս։

— Կը յուսամ, ըսաւ հայրս, որ Մարիոն ձեր բարութեանցն արժանի պիտի մնայ միշտ։

— Անշուշտ, սիրելիդ իմ Պ. Տըլօրմ . . . թէ ոչ ետ կը ճամբեմ զինքը։ Սիրտս կ՚ըսէ որ քովս պահեմ զինքը. սակայն պէտք չէ որ խելքս օր մը կարող ըլլայ սիրտս յանդիմանելու։ Կը խոստանամ թէ սանուհիիս համար վայելուչ ամուսին մը պիտի գտնեմ . . . եթէ պաշտպանելոյն խոհեմութիւնը պաշտպանին բարի դիտաւորութիւններուն հետ համընթաց գանուի միշտ։

Կնքամօրս ձայնը յուզուած էր։

Տեսայ թէ Տէպարօյին հալածումներն որքան ցաւ պատճառեր

էին անոր, հալածումներ որոնց պատուաւոր շըլլալը գիտէր, և որոնց դէմ անօրմէն առաջ ես զայրանալու պարտաւոր էի։ Խղճի տագնապը սրտիս կսկիծ տուաւ. անկեղծաբար անիծեցի պչրասիրական բնազդումներս, և պատուական կնոջ գիրկը նետուեցայ երդում ընելով իրեն թէ լաւագոյն պիտի սեպէի մեռնիլ քան թէ ամենափոքր ցաւ տալ իրեն։

Ո՛ երդումն. ի՜նչ եղար։

Հետևեալ օրը Գաբրիէլ Տըլօրմ և Ցօվսէփ միասին մեկնեցան։ Հայրս յառաջապէս արտօնութիւն ընդունած էր օժիտս իրեն ձեռհականներու։ Անկից 'ի զատ մօրս և քոյրերուս համար շատ պեղեցիկ պարգևներ կը տանէր հետը։

Ընտանեացս ապագային նկատմամբ ալ հնհնուք չունէի։

Մինչդեռ նաւն առաջին ընկերներս կը տանէր Սէն գետին վերայէն դժուարաւ երթալով, տիկին Տը Սէնթ-Էվրըմօն և ես Մանթի ճամբայէն արշաւակի կ'երթայինք։

Կէսօրին Մանթէն անցեր էինք, և երեկոյեան միջոցին Էվրօյի մէջ ուղևորներու պանդոկը հասնելով գտնուեցանք փառաւոր ընկերութեան մը մէջ որ Էբըրնէյի ճաշը յիշեցուց ինձ։

Սակայն անգամ մը պարզապէս նայելով դիտեցի որ ալ առջևս չկային այն բարեմիտ քաղաքաւորներն և այն գաւառական զգօն խորհրդականները, որք նաև իրենց անմեղ շուայտութեանց միջոցին միշտ պարծ, միշտ ծանրաշարժ են։ Այս ընկերութիւնը կազմող անձերուն հագուստէն, ձևերէն, իրենց սպասաւորներուն հետ խօսելու կարճ ու կտրուկ կերպէն, նա մանաւանդ տիկին Տը Սէնթ-Էվրըմօնին ցոյց տուած ընդունելութենէն իսկոյն գուշակեցի թէ պալատական մարդիկ են անոնք։

Վեցը սեղանակից կար։

Անոնց ամենէն երիտասարդն արագօրէն ելաւ սեղանէն, և եկաւ կոմսուհիին 'գիրկն ընկաւ՝ գոչելով.

— Մա՛յր իմ, բարեսիրտ մայր իմ։

— Դո՞ւն ես, Մարգրիտ, դո՞ւն ես, զաւակս. մտքէս չէր անցներ քեզի Բարիզի այսքան մօտ գտնել։

— Այնպէս չէ՞, մայր իմ․ ․ ․ ։ Ո՛հ, մի՛ զարմանար, վասն զի, երբ խնդիրը անդրակալութեան մը վրայ է, մարդս թեւեր կ'առնու, կամ՝ լաւ ևս է ըսել՝ ձիեր կը սատկեցնէ շուտ հասնելու համար։ Անիծեալ սուրհանդակն՝ որու նամակդ յանձնուած էր՝ եօթն օրէն ետք հասաւ․ ․ ․ ․ ։ Նզովի՛ց արմատը կը համարձակէր զանգատելու թէ կողերը կը ցաւին, ուստի քիչ մնաց որ իրաւ պիտի խորտակէի իր կողերը։ Ինչ և է, երէկ մեկնեցայ արշալոյսէն առաջ․ ․ ․ օրն երսունը հինգ մղոն ճամբայ առի․ ․ ․ Եթէ չես հաւատար, հարցո՛ւր, մայր իմ, իջևանին չորս կամ հինգ անպիտան գրաստներուն որք ճամբան ձգուեցան կէս մեռած։

— Մարգրի՛տ․ ․ ․ պարոն, միշտ մի և նոյնն ես․ ․ ․ քիչ ուղղուեր ես, ըսաւ տիկին Տը Սէնթ-Էվրըմօն դէպ եկեղեցական մը դառնալով, որ խոնարհութեամբ իր քովը ծռուած էր։

— Բա՛, տէր հայրն առաւօտէն մինչև գիշեր խրատ կը տայ ինծի․ ․ ․ ․ ամեն բանի պէս ձանձրալի է խրատ լսելն ալ․ ․ ․ ․ ։ Բայց, մա՛յր իմ, չտեսնե՞ս որ ճանչւորներու մէջ ես։ Թո՛յլ տուր որ քեզ ներկայեմ տիկին Տը Լիւյն դքսուհին, Պ. Տը Պասօմբիէրը, Տիկին մարքիզուհին՝ որ իր կինն է, և սա գեհենապարտ Րօշգրուան որ սրահէդ խոյս կը տայ հոն հոս թափառելու համար։

Այսպէս անուններն յիշուող բոլոր անձերն ելան սեղանէն և եկան բարևեցին կոմսուհին։

— Ո՛հ, Աստուած իմ, երազ մ'է այս․ ․ ․ ի՛նչպէս հոս կը գտնուիք, շնորհալի տիկիններ, դո՛ւք ալ հոս էք, զնդապետ․ հապա՞ Կրիզօնացիները*․ հապա՞ Լուվրի պահպանութիւնը․ ․ ․ ․ ։ Րօշգրուա ասպետն իսկ հո՛ս է․ ․ ․ ․ ։ Ցիրաւի զարմանալով կը զարմանամ։

— Մտի՛կ ըրէ՛ք, ըսաւ Րօշգրուա, պէտք է պատմեմ ձեզ․ ․ ․ ․ ։

Սակայն կիներն ընդմիջեցին անոր խօսքը, և գոչեցին․

— Թո՛ղ տուէք, ասպետը, տիկի՛ն, աւելի աղէկ է որ պատնուինք։

— Երևակայեցէ՛ք, տիկին, շարայարեց Րօշգրուա՝ ուզելով խօսքը շարունակել․ ․ ․ ։

*Կրիզօն Հելվեթիոյ մէկ գաւառն է։ Ծ. Թ.

— Բայց լսէ՛ քիչ մը, տղա՛ս, ըսաւ Պասօմբիէր. սովորաբար օրը վեց խօսք չես հաներ բերնէդ, եթէ հանես խեղ, բնաւ չես կրնար վերջ տալ խօսքիդ, և ահա հիմա կ'ուզես պաշտօնական փաստաբանի մը պէս շաղակրատել յատկապէս ժամանակ վատնելու համար որպէս զի պաղի սա մսեղ վառեկը . . . : Ճաշե՛նք, տիկիններ . . . : Անշուշտ ախորժակ ունիք, այնպէս չէ՞, կոմսուհի . . . : Բայց ի՞նչ կը տեսնեմ, ըսաւ զիս նշմարելով, մինակ չէք եղեր, տիկին :

— Ո՛հ, ըսաւ Բօշգրաւա, չէի տեսներ . . . :

Բերանաբաց մնաց՝ առանց աւարտելու սկսած խօսքը, մինչդեռ Պասօմբիէր կը դառնար զիս տեսնելու որահին մէկ մթին խորշէն ուր զգուշութեամբ կեցեր էի մինչև այն ատեն. ձեռքս բռնեց և զիս ներկայ գտնուող անձանց առջևը տարաւ :

— Ինձ ներեցէք, գոչեց, յիրաւի արդէն Խարիթեանց քոյրերուն երկուքը ունէինք, ահա երրորդն ալ . . . կամ լաւ ևս՝ է ըսել ահա Աստղիկը . . . Աստղիկն անձամբ ինքն է :

— Խե՞նդ ես, Պասօմբիէր, ըսաւ կոմսուհին խստութեամբ :

— Յիրաւի գնդապետը չսխալիր, վրայ բերաւ Մարգըրիտ՝ ինձ մօտենալով. այդքան քաղցր, ազնիւ և շնորհալի դէմք մը չտեսեր եմ բնաւ . . . :

— Լսէ՛ նայիմ, անզգամ: Սանուհիս է ան, տիկիններ . . . . պատանուհի մը զոր կը սիրեմ, և կ'աղաչեմ քեզի, Պասօմբիէր, որ անոր հետը վարուիս այն ամէն զգուշութիւններով որով պիտի վարուէիր եթէ աղջիկս ըլլար :

— Ուրեմն քոյր մը կը տաս ինձ, ըսաւ Մարգըրիտ, սիրուն քոյր մը, զոր պիտի պարտաւորիմ սաստիկ սիրել . . . : Սակայն ինչ մեղքս պահեմ, իբր քոյրս սիրելու խօսք չեմ տար . . . լաւագոյն է կին ընել ինձ զինքը, այնպէս չէ՞, գնդապետ :

— Լռէ՛, ըսաւ սա, կացութեանս շփոթութիւնը և կոմսուհիին դժգոհ կերպարանը նշմարելով :

Սակայն կոմսուհին յարմար սեպեց չյայտնել իր դժգոհութիւնը, սեղանը նստաւ և զիս քովը նստեցուց :

Իր ձախ կողմն էի, Պասօմբիեր մարքիզն ալ աջ կողմը։ Մարքիզուհին և Տը Լիւյն դքսուհին մեր դիմացի կողմը իրենց առջի տեղը նստան, Մարգրիտն ալ անոնց մէջ տեղը նստաւ։ Սեղանին իմ կողմիս ծայրն էր կառավարիչը. միւս ծայրն ալ Բօշգրուան կը նստէր։

Ծերունի Տիւ Սէնթ-Լօրրի ասպետն անշուշտ կը յիշէր ընթրիք մ'ուր Գամպուզար կար, և չէր համարձակեր մերձաւորութիւնս առ ոչինչ սեպել, վախնալով որ դարձեալ գետինը կը ձգէ իր պատառաքաղը։ Բայց Ճանչւորի կերպով կը ժպտէր ինծ, շարունակ կը ջանար նայուածքս իր վրայ հրաւիրելու, և սիրահարի դեր կը խաղար՝ այս անգամ քիչ մը հեռուէն։ Անոր այսպէս վարուիլը աւելի աղէկ կը գտնէի, և չէի վախնար որ աբբասը Բօշգրուային պէս տիկին Տը Սէնթ-Էվրըմօնէն յանդիմանութիւններ կրէ։ Խեղճ մարդը քիթը պնակին վրայէն չէր վերցներ, և շատ անմխիթար կ'երևար իր աշկերտին վրիպանաց պատճառաւ։

Սակայն Մարգրիտ քիչ մ'ուշ կը հասկնար իր ցոյցերուն անպատեհութիւնը։ Եթէ դէպ 'ի կողմս նայէր, գաղտնի կերպով կը նայէր այն միջոցին ուր կը յուսար 'ի դերև հանել մօրը հսկողութիւնը։

Յիշեցի այս երիտասարդին տրուած գովեստները, և զինքը անոնց արժանի չգտայ։ Սքանչելի չէր իր խելքն որու պահ մ'առաջ ապացոյցները տուած էր ամենուն առջև՝ անհամ խօսքերով ինծ յարձակելով կոշտաբար և հրապարակաւ սիրոյ յայտարարութիւն մը նետելով երեսիս։

Գանք իր անձին առաւելութեանց. կնքամայրս շատ չափազանցութեամբ խօսած էր նաև անոնց նկատմամբ։

Իր երեսին գիծերը հասարակ, շինական, աննշան և աննշորհ էին։ Երկու աչքին միջէը, քթին վրայ թուշտ մ'ունէր որ ծայրայեղապէս զարգանալու պատրաստ էր։ Վերջապէս անունը Մարգրիտ էր. արդ մարդերու կնային անուններ տալու այս անտեղի սովորութիւնը պահանջատութիւն և անմտութիւն մը կ'երևայ ինծ. անտեղի կը համարիմ նոյնպէս մարդի անունը կնիկի տալու սո-

վորութիւնը։ Այսպէս հակառակ կերպով սիրուիլը ծիծաղելի բան մ'է սիրուողներուն համար, նաև միշտ ուրիշներուն համար միամտաբար ծաղրուելու պատճառ մ'է այն։

Երբ քաղցր անուն մը կ'արտասանուի առջեւդ, կը նայիս, և ահա տեսածդ է մօրուսաւոր, կօշկաւոր և խթանաւոր մարդ մը։

Պարահանդէսի մը մէջն ես ու պարընկեր պարոնները սակաւաթիւ են։ Դրան շեմէն սպասաւորը մարդու անուն մը կը նետէ։ «Աղէկ, ուրախ ենք, կ'ըսեն կիները», և սակայն իրենց երազն է փափուկ և սպիտակագեղ սիրուն անձ մը, աղջիկ կամ կին մը, որ կը ժպտի, կը քծնի, և անոնց բոլոր պարողները կը դրգռէ։

Այլանդակ բան մ'է այս։

Ուստի կոմսուհիին տղուն վրայ շատ հրապուրիչ բան մը չէի գտներ բնաւ։ Ի՞նչ տարբերութիւն իր և Տէպարոյին մէջ։ Բայց Տէպարօ անառակ մ'է. պիտի չկարգուի հետս, ինչպէս որ ինքն անձամբ յայտնեց ինձ առանց վախնալու։

Տէ՜ր Աստուած, ո՜րքան կարեկցութեան արժանի է խեղճ աղջիկ մ'երբ կը պարտաւորի իր սրտին յօժարութիւնները մարդկանց պահանջումներուն հետ համաձայնել։

Ներկայ գտնուող միւս երեւելի անձերը քննելու պարապ ժամանակ ունեցեր էի։

Պասօմբիէրը քննելով առաջին անգամ նշմարեցի որ՝ պալատի մարդ էր ան բառին բոլոր նշանակութեամբը։ Գեղեցիկ, քաջակազմ, շատ խելանի և վառվռուն էր, և այն ատեն իր յաջողութեանց յետին գագաթը կը գտնուէր ան։

Շատ քիչ տեսեր եմ մարդ որ կրցած ըլլայ Պասօմբիէրէն աւելի աղէկ հագնիլ ոսկեհուռ վերարկուն, թաւշեայ բաճկոնակը, և դրուիլ տանթելայէ վզնոցը և թևնոցները։ Իր անձին վըրայ միայն մէկ պակսութիւն կը գտնէի, այսինքն քիչ մը շատ գեր էր ան։

Այն ժամանակ արքայական հելվէտիացի զօրաց գնդապետ էր ան. ետքէն մարէշալութեան գաւազանը ստացաւ։

Իր թարմագեղ և խարտեաշահեր կինը նրբաձև ձեռք մ՚ունէր վարդագոյն ըղունգով և սիրուն փոսիկներով որք մէն մատին ըսկիզբը փորուած էին։ Տիկին Տը Պասօմբիէր խօսելու ատեն կը թոթովէր բայց խիստ ազնիւ կերպով մը․ իր շուրթերուն վրայ անընդհատ ժպիտ կար։

Իսկ Տը Լիւյն դքսուհիին գալով, որ՝ ինչպէս գիտէ ամեն մարդ՝ եօթէն հուշակաւոր Մարի Տը Շէօվրէզն եղաւ՝ Ֆիզիքական կատարելութեան և անսգիւտ գեղեցկութեան մասին ոչ ես և ոչ Օրիօրդ Տը Լանգլօ երբէք չպիտի կրնանք լիովին գովաբանել։ Անոր սև աչերն այնպիսի արփաւէտ արտայայտութիւն մ՚ունէին որ Լուի ԺԳ.ի սիրտը անգամ յուզեր էին, թագաւոր մ՚որ անաչառ խոհեմութեան, կանոնաւոր ժուժկալութեան և սառնական զգուշութեան անթերի կաղապարն էր։

Ինչպէս պիտի տեսնենք քիչ մ՚եաք, դքսուհիին համբօրդութեան պատճառն այս էր քիչ մը։

Բաւական զարմանալի բան մ՚էր տիկին Տը Լիւյնին քաներկու մղոն հեռալու չափ Բարիզին մօտ և էրիկէն հեռի զտնուիլն այն միջոցին ուր ասի մարէշալ տ՚Անգրի ժառանգութիւնը կ՚առնուր բոլորովին։

Տիկին Տը Սէնթ–Էվրըմօն այս գաղտնիքը չէր հասկնար։

— Այս բանը ձեզ զարմանք կը տայ, այնպէս չէ՞, տիկին, կ՚ըսէր գնդապետը կնքամայրիս․ արդ հիմակ ամեն բան պիտի իմանաս։

— Այո, հիմակ ամեն բան պիտի իմանաս, կրկնեց Բօշգրուա, որ չյաջողելով ուշադրութիւնս հրաւիրելու կ՚ուզէր ճառաբանել առելի աղէկ յաջողելու յոյսով։ Ներկայ էի երբ Նորին Վեհափառութիւնը . . . ։

— Տիկիններ, ըսաւ Պասօմբիէր, ասպետին լեզուին այդքան սասափիկ մարմաջելը տեսե՞ր էք երբէք . . . վախնալու բան մ՚է այս . . . կ՚աղաչեմ, քննեցէք իր երակին զարկը։

— Գնդապետ, ըսաւ Բօշգրուա, միթէ դիտաւորութիւն ունիս . . . ։

— Դարձեալ . . . ։ Շատ գէշ վիճակի մէջ էք, խե՛ղճ իմ ասպետ ։

— Իրաւ է, ըսաւ դքսուհին, անտանելի է ան ։

Բօշգրուա խոնարհեցաւ ։

— Գիտցէ՛ք, կրկնեց Պասօմբիէր, որ մարէշալ տ'Անգրին մահուան երկրորդ օրը Թագաւորը պահակներու սրահին մօտ ճեմասրահէ մ'անցնելով մեր գեղանի Մարիին հանդիպեցաւ, և քովը գնաց ամենազուարթ դէմքով.

— «Տիկին, ըսաւ ձեռներն շփշփելով, Էրիկդ առաջին պաշտօնեայ է. Ֆոնչինիին* Ֆրանսայի մէջ ստացած բոլոր աստիճանները անոր կը պարգևեմ, թէև Տիւվէր հակառակ է այս պարգևին, և օրէնքը ու սովորութեան իրաւունքը առջև բերելով կ'ուզէ արքայական գահին յատկացնել և անվաճառելի դարձնել այն ստացական գոյքը ։ Կ'երդնում ձեզ, տիկին, թէ Տիւվէր իրաւունք չունի . . . ։ Այս մասին քիչ մ'երախտագիտութիւն ցոյց պիտի տաք ինձ ։

— «Բարեհաճեցէ՛ք այս մասին կասկած չունենալու, Վեհափառ տէր. պատրաստ եմ երախտագիտութեանս ամէն հնարաւոր նշանները ցոյց տալու ձեզ . . .» ։

— Ա՛հ, ներեցէ՛ք, Պասօմբիէր, ընդմիջեց տիկին Տը Լիւյն. Լուի ԺԳ. այդ բանը չըսաւ ինձ, և բերանս կը դնես պատասխան մ'որու դէմ կ'ապստամբիմ ։

— Տէ՛ր Աստուած. պատմութիւնը քիչ մը կը զարդարուի, գեղանի տիկին . . . ։ Թագաւորը՝ գոհ ըլլալով՝ դքսուհիին ձեռքը պագաւ, և ըսող կայ անգամ թէ անոր շուրթերը զարտուղելով ժուռ եկան այն շնորհալի վզին վրայ որուն սպիտակութիւնն այնքան սիրագրգիռ է ։

— Ա՛հ, ի՛նչ չարասիրտ պատմիչ ես եղեր, գոչեց ծաղկահաս կինը ։ Բօշգրուա, հրաման կը տամ քեզ մնացորդ մասը պատմելու ։

* Մարէշալ տ'Անքրին բուն անունն է ։ Ծ. Թ.

— Ըմա աղէկ, ըսաւ ասպետը։ Պ. Տը Լիւյնի հետ դուրս կ՚ելնէի . . . ։

— Ծուղովիս դահլիճէն, այո՛, ճիշդ այդպէս է, ըսաւ Պասօմբիէր ասպետին խօսքը ամարտելով. պատուական յիշողութիւն և խօսելու գեղեցիկ դիւրութիւն մ՚ունիս, Ռօշֆըրւա, այսինքն այս տիկնանց ջիղերուն այնքան սաստիկ հոգ կը տանիմ որ այդ խրողութիւնը պատմելու հոգը քեզ չեմ թողուր։

— Պարո՛ն մարքիզ, չարաչար կը գործածես . . . ։

— Համբերութիւնս դո՛ւն չարաչար կը գործածես, Ռօշֆըրւա։ Նոր պաշտօնէին հետն էիր, և իրեն կ՚ըսէիր այն հետաքրքրական ճառերուդ մին որոնց գաղտնիքը դու միայն գիտես։ Տը Լիւյն յանկարծ ճանչեց Թագաւորը, և զարմանօք անգամ մը ցատկեց՝ տեսնելով թէ ուրախութիւնն ինչ քմահաճութիւններու կ՚առաջնորդէ միապետներուն ամենէն իմաստունը։ Լուի ԺԳ տիկին Տը Լիւյնի էրիկին մօտիլը տեսնելով պտուղի գող մանկան մը պէս կծիկը դրաւ։ Տիկին գքսուհին նոյնպէս փախաւ, հետևաբար Ռօշֆըրւա կենացը մէջ առաջին անգամ թերևս ժամանակ պիտի ունենար խօսքի մը վերջ տալու, երբ ես ալ վրայ հասայ, ամենևին չգուշակելով թէ ինչ անցած էր պահ մ՚առաջ։

— «Ա՛հ, դո՛ւն ես, Պասօմբիէր, ըսաւ ինձ Տը Լիւյն դուքսը. շատ ուրախ եմ քեզի տեսնելուս։

— «Ես ալ սաստիկ կը հրճուիմ քեզ հանդիպելուս, պարոն, պատասխանեցի, որպէս զի գիտնամ թէ յիրաւի արդար պահանջմամբ պիտի գործադրես։ Առջի օրը հելվէտիացիներու* հետ զէս պահապան դրեր էին մայր-թագուհիին, յանկարծ պատուիրելով ինձ որ թոյլ չտամ իրեն դուրս ելնելու իր բնակարանէն . . . ։ Է՛, ինչ կ՚ըսէք մայր-թագուհիին նկատմամբ, տի-

* Ֆրանսայի Թագաւոր Կարոլոս Ը. Հարիւր-Հելվէտիացիներ անուանով փոքրիկ հելվէտիացիներու խումբ մը հաստատեց 1496ին, որ Ֆրանսայի Թագաւորներուն քով էր պահպանութեան պաշտօնը շարունակեց մինչև 1792։

կին, զիս Մարի Տը Մէտիսիին, Մեծն Անրիի կնկան բանտապահը կարգե՛լ։ Ա՛յնքան բարկացեր էի որ . . . և եկած էի պաշտօնէս հրաժարելու հաստատ որոշումով. սակայն դուքսն ինձ պատասխանեց.

— «Հելվէտիացիներուդ այժմէն իսկ կը յաջորդէ այն նորահաղիմ գունդն որ է Թագաւորին հրացանակիրներուն գունդը։ Ընդունելի պատրուակ մը գտի՛ր՝ օրինակի աղագաւ, ճամբորդութիւն մ'ընելու հարկը ցոյց տուր . . . ։ Աղէկ միտքս եկաւ. Եւվրէօյի եպիսկոպոսն՝ որ հօրեղբայրս է՝ կարծեմ նաև քու հետ ազգականութիւն ունի, այնպէս չէ՞։

— «Այո՛, պարոն դուքս։

— «Սատանիկ հիւանդ է ան։ Սուրհանդակի երիվարներ լծել տուր՝ ա՛ռ կինս, ա՛ռ քու կնիկդ ալ, և Էվրէօ գնա Բօշգրուայէն հետ . . . ։ Դքսուհիին հոմանին կ'ընեմ զինքը։ Ութ օրէն ետք կը վերադառնաք. կացութիւնս աղէկ հաստատուած կ'ըլլայ այն ատեն, և Նորին Վեհափառութեան պիտի իմացնեմ իր խոստովանահօր ձեռքովը»։

— Գրո՛ղը տանի զիս եթէ այն ատեն մտքէս կ'անցնէր թէ արքայական համբոյր մ'էր այս ամեն անհանգստութեան պատճառը։ Ի՞նչ կ'ըսես, կոմսուհի, դժբաղդ նախանձոտին համար։ Ինձ կը յանձնէ իր կինը, ի՛նձ, Պասօմբիէրի՛ն, այսինքն ա՛յն մարդուն որ հազարումէկ սիրավէպներու դիւցազն է . . . ։

— Շա՛տ լաւ, պարոն, արձակ համարձակ խօսէ. ըսաւ խնդալով Պասօմբիէրի կինը՝ պզտի մարքիզուհին։

Հելվէտիացիներուն գնդապետը կնկանը նայեցաւ ամօթահար, և իւրաքանչիւր ոք սկսաւ խնդալ։

— Է՛յ, բայց. ըսաւ տիկին Տը Սէնթ-Էվրըմօն, Տը Լիւյն այնքան մեծ անխոհեմութիւն մ'ըրած չէ առ այժմ։ Աղաչեմ քեզի որ կինը հետդ տանիս, քու կնիկդ ալ միասին առնելու պայմանաւ։

— Ես ալ միասին երթալու պայմանաւ, ըսաւ ասպետը։

— Ապրի՛ս, Բօշգրուա, ապրի՛ս . . . ։ Ի՛նչ սիրուն բարեկամ.

... Վերջապէս ահա կատարեալ խօսք մը, ճշմարիտ խօսք մ՚որ ոչ յօշուած, ոչ կտրուած, ոչ զեղջումէ մը սանձուած, ոչ ալ ընդհատումով մը ծաղրուած է։ Այս խօսքը կարճ է; սաստիկ կարճ է, ըսէք ինծ թերեւս. հոգ չէ, Բօշգրուա; գեղեցիկ յաղթանակ մ՚է ատի... գոհ եղիր ատով, բարեկամ, կը խրատեմ քեզի որ գոհ ըլլաս ատով. ատի կը բաւէ փառքիդ։

Տիւ Սէնթ-Էսբրի ասպետը կարծես անկատակ մտքէն այս խել մը Թշնամական խօսքերը։

Ուստի ՚ի նշան շնորհակալութեան գլուխը ծռեց, յաղթական կերպարանով մ՚ինծ նայեցաւ, ապա ակներեւ գոհունակութեամբ մը սկսաւ ուտել ու խմել։

— Հիմա գիտէք, կոմսուհի, թէ ինչու Էվրէօյի մէջ կը գտնէինք, շարայարեց Պասօմբիէր, բայց չգիտէք որ եպիսկոպոսը քաջառողջ վիճակի մէջ գտանք։ Գերապատիւ եպիսկոպոսը պալատականներու, պաշտելի կիներու, Բօշգրուային պէս մեծաւորի մ՚ու ինծի պէս շաղակրատի մը գալը տեսնելով գայթակղութենէ վախցաւ, եւ շատ քաղաքավարութեամբ մեզի եպիսկոպոսարանէն ճամբայ տուաւ, հետեւաբար այս պանդոկը մեզի բնակարան ըրինք, ուր հինգ օրէն ՚ի վեր կ՚ուտենք, կը խմենք եւ կ՚ուրախանանք։ Քիչ մ՚առաջ երբ քաղքին բոլորտիքը ժուռ կը գայինք, ձեր դղեկն հանդիպեցանք, որ կորսուածի մը պէս ստիպով կ՚երթար. բռնադատեցինք զինքը մեր ետեւէն գալու... եւ ահա հոս է, կոմսուհի։ Եղաւ պատմութիւնս։

Տիկին Տը Լիւյն հանդարտութեամբ եւ ժպտումով մտիկ ըրած էր։

Երբ Հելվէտիացիներուն մշտաբարբառ գնդապետը վերջացուց իր պատմութիւնը, տիկին Տը Լիւյն իր կնքամօրն ըսաւ.

— Խոստովանէ, սիրելիդ իմ, թէ կը փափաքիս կշտամբել զիս։

— Ինչ պատճառաւ, սիրունիկ իմ։

— Վասն զի Գ. Տը Պասօմբիէրի բոլոր պատմածներուն մէջ ՚ի նպաստ իմ ամենափոքր եզրակացութիւն մը չկայ։ Իր ըսածին նայելով Թագաւորին հետ պչրանքրաբար վարուեր եմ, երկիւ

նախանձելի է . . . և ես ապաշխարեր եմ մահացու մեծ մեղքի մը համար որ է արքայական շուքին մ'ուսիս վրայէն քաղած մէկ պզտի համբոյրը . . . :

— Կը լսէք, համբոյրն անունն է :

— Այո՛, գնդապետ, սակայն քեզ չըսի տակաւին, բայց կըն-կանդ ըսի և կը պարտաւորիմ կոմսուհիին ալ ըսել թէ երէկ ինքն աղերսեց զիս որ հաւանիմ այն համբոյրը տալու :

— Ա՛հ, բայց ատի մեծ բռնութիւն մ'է, գոչեց Պասոմբիեր :

— Բայց ո՛չ. ամենապարզ բան մ'է ատի : Անկից ամիս մ'առաջ՝ արքունեաց վերջին պարահանդէսին մէջ Պ. Տը Լիւսօնի քովն էի : Թագաւորն եկաւ, միւս կողմը թիկնաթոռի մը վրայ նստաւ, և քծնաժպտական վեհերոտ խօսքեր ուղղեց ինծի : Ի մեծ զարմանս իմ սկսաւ շատ ուշադրութեամբ քննել պզտի սև պուտակ մը զոր ցաւելով ունիմ աջ ուսիս սկիզբը :

— Իրաւ կը նշմարե՛մ պուտակը, գոչեց Մարգրիտ :

— «Վեհափա՛ռ տէր, ըսի, մի՛ նայիք այս անշնորհ բծին. նախատինք ցաւ է ինծի այն : Ամեն փորձ ըրի որպէս զի աներևոյթ ըլլայ այս բիծը, բայց չյաջողեցայ» :

Թագաւորը շատ կարմրեցաւ, և Պ. Տը Լիւսօն պատասխանելու դժուարութենէն ազատեց զան՝ ինծ ըսելով.

— «Այսուհետև այն փորձերը նորէն ընելէ զգոյշ կեցէք, տիկին. շնորհալի նշան մ'է, ճշմարիտ հրապոյր մ'է ան. . . . Այնպէս չէ՞, Վեհափա՛ռ տէր :

— «Այո՛ . . . անշո՛ւշտ», ըսաւ Թագաւորը թոթովելով :

Եւ սկսաւ նորէն նայիլ հոգեպիշ :

Կ'սկսէի ես ալ շփոթիլ երբ Րիշլիէօ Տէ Մարէ Տը Սէն-Սորլէնը տեսաւ որ իր քարտուղարն է :

— «Օ՛հ, պարոն բանաստեղծ, ըսաւ քարտուղարին, այս միջոցիս անմիջապէս չե՞ս կրնար ութը տող ոտանաւոր մը շինել նշանի մը վրայ զոր տիկնոջ ուսն ունի : Այս նշանը շատ աղւոր կ'երևայ Նորին Վեհափառութեան :

— «Յօժարակամ, տէր իմ. . . : Բայց այդ ոտանաւորին մէջ կը պարտաւորիմ Թագաւորը խօսեցնել :

— «Եթէ կը ներէ»
— «Կը հաւանիմ», ըսաւ Լուի ԺԳ.։
Քարտուղարը պիտակս տեսնելու համար ծռուելէն ետք պահ մը խորհեցաւ, և առանց ամենափոքր վարանումի հրապարակաւ յետագայ տողերը ըսաւ.

Գլուխ սև կէտ, զոր իր Թիֆղոյն մանեակին
Սպանուհի մը փափաքէր անցունել.
Գանձըդ քնքոյշ, որու դէմ մի ամուսին
Կը նախանձի քանի որ քեզ լըսեց։

Կը ցանկայի տեղդ իսկ ես ըլլալու . . .
Կին դու սիրուն, կ'իմացնեմ քեզ այժմէն
Թէ քաղցր է ինձ քեզի սիրել սրտագին,
Անմիջապէս եթէ նշան մը տաս ինձ։

— «Շատ աղէկ, ըսաւ Թագաւորը . . . բայց մի՛ մոռնար որ խօսողն ե՛ս եմ, դքսուհի»։
Թագաւորն անըմբռնելի յանդգնութիւն մը կ'առնուր, և սկսաւ խիստ ցած ձայնով շարայարել.
— «Ի՞նչ բարիք ար ուզես ինձմէ, կը շնորհեմ անգամ մը միայն այդ շնորհալի նշանը համբուրելու համար»։
Այս թիկնաթոռէն ելաւ և աներևոյթ եղաւ։
Արքային խօսքը բառ առ բառ կրկնեցի Պ. Տը Լիւսօնին, և խնդալով խօսք առաւ ինձմէն որ եթէ երբէք Թագաւորին աչքէն ընկնի, պիտակիս շնորհիւր վերստին առջև պիտի անցունեմ զինքը . . . ։ Կ'սկսիս գուշակել, Պասօմբիէր։
— Ա՛հ, սոսկալի՜ բան է ասի. Թագաւորն երես կ'առնու, տիկիններ, Թագաւորն երես կ'առնու, ըսաւ գնդապետը ծիծաղաշարժ վշտակրութեամբ մը։
— Այդ, շարայարեց դքսուհին, Գօնչինիին մահուան օրն ինչ պատահեցաւ, գիտէք։ Տէրութեան կնիքը Մանկօյէն առնուեցաւ. գործակալներու հրաման տրուեցաւ Պարպէնի Թուղթերը արձա-

նագրել, և երբ Րիշլիէօ եկաւ թագաւորը բարևելու, որ նոյն պահուն գնդախաղ կը խաղար, սա սոսկալի խօսքը լսեց. «Հէ՛յ, Պ. Տը Լիւսօն, բռնակալութենէդ ազատեցա՛յ վերջապէս»:

Րիշլիէօին շնորհաբեկութիւնը (disgrâce) անկից աւելի սոսկալի չէր կրնար ըլլալ: Նուաբեկութեան մը մէջ մարդս ամէն բանի կը յարի, գնդապետ, և յուսաբեկ եպիսկոպոսն ուսիս պիսակը յիշեց....: Եւ իրօք գերապատիւ սրբազանին ուսիս կռթնելու միակ առիթն այս էր.

— Ո՛հ. սքանչելի՛ է, գիտեմ յիշեմ այդ խօսքը, դքսուհի՛, գոչեց Պասօմբիեր: Սակայն այս ամէն իրերու մէջ ոչ այնքան հանճարեղ դեր մը խաղալ տուին ինծի:

— Ինչ. ութ օր շարունակ ընկերակցութեանս հաճոյքը վայելած ըլլալուդ կը զղջա՞ս: Պ. Տը Լիւյն դուքսը Րիշլիէօն քամահրելու ամենեւին պատճառ մը չունէր. եպիսկոպոսին դիւանագիտական յատկութիւնները ժողովին հարկաւոր են իսկ: Պարահանդիսին դէպքը ամուսնոյս պատմեցի. բոլոր սրտովը խնդաց այս իրողութեան վրայ, և լիուլի արտօնութիւն տուաւ ինծի Պ. Տը Լիւսօնը (Րիշլիէօ) ազատել իր շնորհաբեկ վիճակէն: Թագաւորն ամէն առտու նախաճաշէն ետք ժուռ կը գայ ճեմասրահին (galerie) մէջ որ իր բնակարաններէն մինչև պահակներուն սրահը կ'երթայ: Այս ճեմասրահին մէջ անոր հանդիպելու և իր խօսքը յիշեցնելու հոգ տարի....: Կը հաստատեմ թէ այս է ահա զուտ ճշմարտութիւնը: Սակայն էրիկս չուզեց որ իր արքայական տէրն այս ընթացքս փուիթ բռնէ ուրիշ յայսեր ունենալու: դիպուածէն դրդուելու պէս հասաւ ուր որ իրողութիւնը տեղի ունեցաւ, և նախանձոտ ըլլալ ձևացուց... անկից ետք եղածը գիտես: Այս միջոցիս ուր կը խօսիմ, թագաւորն իր խոստովանահայրէն խիստ ծանր և խիստ քրիստոնէական յանդիմանութիւն մը կերած պիտի ըլլայ: Ուստի այսուհետև ուսիս աչք տնկել ուզելու վտանգ չկայ:

Դքսուհին խօսքը աւարտելէն ետք սեղանէն ելաւ, և կնքամայրը ըսաւ անոր.

— Պատիւդ տեղն եկաւ, սիրելիդ իմ... գնդապետը կը պար-տաւորի ներումն խնդրել քեզմէ։

— Ո՛հ, ներում խնդրելու աշխատանքէն կ՚ազատեմ զինքը։ Միայն թէ գնդապետին, ինչպէս նաև ամենուդ ալ աղաչանք մը ունիմ ընելու. խնդրեմ որ երևան չհանէք այս... պետական դաղտնիքը. առաջին պաշտօնէի մը կինն անխոհեմութեան մը վրէ-ժը լուծելու շատ միջոցներ ունի, այնպէս չէ՞, Պասօմբիէր։

— Վա՛շ, ըսաւ գնդապետը, մի՛ վախնար, պալատականները ինծի դէմ խնդացնելով զուարճացընելու փափաք չունիմ։ Սա-կայն ներէ որ բան մ՚ըսեմ քեզ։

— Ի՞նչ բան։

— Բիշլիէօ շատ սուղի պիտի նստեցնէ քեզ այդ ծառայութիւ-նը։ Այո՛... այո՛...։ Ուզածիդ չափ մեծ աչերդ բանալով զար-մացի՛ր։ Բիշլիէօ սմսեղուկ աղուէս մ՚է... բայց վագրի նմա-նութիւն ունի... կամ շատ կը սխալիմ... և՝ ինչպէս գիտես՝ վայրենի գազան մ՚անհոգութեամբ կը փարատէ իր ճարակը տուող ձեռքը...։ Առ այժմ պէտք է մեզ հանգչիլ։ Վաղը հեռոդ կը մեկնիմ, կոմսուհի։ Մեր ութ օրուան աքսորը լմնցաւ։

Ապա ամեն մարդ իր տեղը գնաց։

Տիկ. Սէնթ-Էւրրի ասպետը կնքամայրս թեւն առնելու քաղա-քավարութիւնը ունեցաւ, որպէս զի զինքն իր սենեակը տանի։

— Չէ՛, շնորհակալ եմ, Բօշգրուա, ըսաւ կոմսուհին, գնա՛, պառկէ։

— Բայց աղէկ միտքս եկաւ, տիկի՛ն, միթէ չըսի՞ր... ինչ ըրիր... խնդրոյս նկատմամբ։

— Խնդրքդ թուեր է, խեղճ ասպետս։

Բօշգրուա պնդեց և սկսաւ կոմսուհիին քանի մը կարտուք խօսք ըսել մեղմիկ և դաղտնի կերպով։ Մարգըրիտ երկու քայլ անդին էր. ականջ տուաւ, և յանկարծ աղմկալի քրքիջ մ՚արձակեց։

— Հա՛, հա՛, հա՛, Բօշգրուա՛ն է... սա ծեր խենդն որ կ՚ու-զէ օրիորդ Մարիօնին հետ կարգուիլ...։ Շա՛տ զուարճալի բան...։ Զգուշացէ՛ք, ասպետ, պիտի պարտաւորինք մենամարտիլ

․․․․ Հա՛, հա՛ ․․․ ինծ նայէ․ մայրս իրաւունք ունի․ աւելի աղէկ կ'ընես եթէ երթաս պառկիս։

Եւ ուսերէն հրելով դուրս հանեց ասպետը։

Իսկ ես շուարեր մնացեր էի։

Կոմսուհին կը յանդիմանէր իր տղան, բայց սուտի չէր հաներ անոր խօսքը․ ուրեմն ասպետն իրօք յոյս ունեցած էր զիս իբր կին առնելու։

Մարգրիտ մեր ետևէն եկաւ մինչև սենեակի մը դուռը որու մէջ երկու անկողին պատրաստուած էր։

Գիշեր բարի ըսաւ մօրը, և ապա պարզապէս անորմէ հրաման ուզեց զիս համբուրելու։

— Ո՛չ, պարոն, ըսաւ տիկին Տը Սէնթ-Էվրըմօն, շատ գժգոհ եմ։ Ո՛չ պատշաճութեան ձև ունիս, և ոչ մանաւանդ այն համեստութիւնը զոր տարիքդ կը պահանջէ։

— Ա՛հ, մայր իմ, թագաւորն ալ տասնութ տարեկան է, և սակայն առանց քաշուելու տիկին Տը Լիւյնին ուսը համբուրեց։

Մարգրիտ կոմսուհիին պատուէրին հակառակ վարուելու յայտնի որոշումով ինծ կը մօտենար․ բայց նէ թևէն բռնելով դուրս հանեց զինքը, և դուռը գոցեց։

Երբ մինակ մնացինք, տիկին Տը Սէնթ-Էվրըմօն ինծ նայեցաւ․ երեսը տժգոյն էր․ արտևանունքին ներքև արտօսր մը կը գլտորուէր։

— Բա՛րէ, ըսաւ, շա՛տ ցաւեր պիտի ունենանք։

— Ցաւե՞ր, կնքամայր իմ։

— Այո՛ ․․․ կը պարտաւորէի նախատեսել այս ցաւերը ․․․։ Զարմանալի՛ բան ․․․ ասանկ վախեր չունեցեր էի երբէք։ Դառն է մտածել թէ այս աշխարհիս մէջ մարդս միշտ կը զղջայ վերջապէս իր սրտին դրդումին հետևած ըլլալուն ․․․։ Մտիկ ըրէ, Մարիօն․ իրաւ է, ասպետը խնդրեց որ հետդ կարգուելու հաւանիմ։

— Խե՛ղճ մարդ․ իրօք խնդալու բան է խնդիրը։

— Աստուած իմ, թերևս իրաւունք չունիս մերժելու։

— Կատակ կ'ընես։

— Ո՛չ... վասն զի Բօշգրուա հարուստ է, և ասկէ քանի մը տարի առաջ, սիրելիդ իմ, քեզի համար շատ ախորժելի բան մը կ'ըլլար որբևարի մնալ տիտղոսով մ'և երեք կամ չորս հարիւր հազար ֆրանքի հասնող հարստութեամբ մը։

— Ո՛ կնքամայր իմ. էրիկ մ'առնուլ և ամեն օր անոր մահուանը փափաքիլ... ինչպիսի անարժանութիւն։

Կոմսուհին սարսռեցաւ և տժգունեցաւ։

— Իրաւ է, իրաւունք ունիս... կ'ուզէի փորձել քեզի...։ Ա՛խ, խե՛ղճ աղջիկս, ո՛րքան դժուարին է պատշաճ ամուսնութեան մը վիճակիլը... Թերևս սպասելիս Շամբանեը վերադառնալու։

— Սո՛ւրբ Աստուած. Շամբանեը երթամ, Գամիւզարը նորէն գտնելո՞ւ համար։

— Օ՜ն, հանդարտէ՛...։

— Չէ՛, գոչեցի՛, չէ՛. այդպէս խօսիլը գէշ է։ Ի՞նչ ըրի քեզ. ի՞նչ է յանցանքս։

Եւ աթոռի մը վրան ընկայ դառնութեամբ հեծկլտալով։

Կոմսուհին շատ յուզուած էր, և սենեկին մէկ ծայրէն միւսը կ'երթևեկէր։

— Խե՛ղճ պզտիկ... միթէ ի՞մն է յանցանքը...։ Եթէ ամենամեծ հսկողութիւն առնեմ վրաս, ինքզինքս գերի մ'ընեմ, դարձեալ զինքը չպիտի կրնամ ազատել։ Քանի որ մի և նոյն յարկին ներքեն են... կրնամ հաւաստի ըլլալ թէ նէ ինքը չպիտի տեսնէ զան։ Միւս կողմէն, անկարելի՛ է որ բաժնուիմ զաւակէս։ Իր զօրագունդը Լուվրէն չզատուիր. տունս պէտք է իր տունն ըլլայ...։ Ի՞նչ որոշում ընեմ...։ Նէ՛ կը պարտաւորի հեռանալ։

Կոմսուհին իր մոլորագին վիճակին մէջ լսուելու չափ բարձր ձայնով կը խօսէր. ամեն բան հասկցայ, և սրտիս սաստիկ վիրաւորիլը զգացի։

Ցաւի բնութիւնը յաղթող հանդիսացաւ յիս. ատելութեան և

բարկութեան զգացումներով կը համակուէի. կոմսուհիին բարեկամութիւնը անապօրոյն ծաղր մը կ՚երեւար ինձ։

Սակայն արգիլուած էի զգացումներս երեւան հանելու։ Տիկին Տը Մէնթ-Էվրըմօն մօտեցաւ. որոշեցի կեղծաւորութիւն ընել։

— Ինձ նայէ, սիրելի աղջիկս, ըսաւ կոմսուհին, ուրիշ օժիտ մը, առջինէն շատ աւելի ճոխ օժիտ մը պիտի ունենաս, եւ գաւառիդ երեւելի անձերուն մէջէն ուզածդ պիտի ընտրես։

— Ա՛խ, մրմռացի աչքերս սրբելով, ո՛րքան բարերարս ես, կնքամայր իմ... անկից 'ի զատ շատ իրաւունք ունիս ես ճամբելու խեղճ աղջիկ մ՚որ ամեն բան քեզ կը պարտաւորի. անշնորհ բան մ՚ըրած կ՚ըլլամ եթէ գանգատիմ...։ Ուստի այս յանկարծական որոշումին պատճառը անգամ չպիտի հարցնեմ, տիկին։

— Խե՛ղճ աղջիկս. բայց գիտնաս որ միշտ կը սիրեմ քեզի։

— Կը հաւատամ, կնքամայր իմ...։ Եւ ահա ատոր համար կը համարձակիմ շնորհ մը խնդրելու քեզմէ...։ Մէկ կամ երկու շաբաթէն ետք ղրկէ զիս։ Մինչեւ այն ատեն մտածելու եւ ինքնիս խորհրդակցելու պէտք ունիմ։ Քանի որ հեռու պիտի կենամ, թերեւս երթամ վանքի մը վանդակներուն ետեւը բանտարկուիմ՝ վիշտս հոն մոռնալու համար։

— Տէ՛ր իմ Աստուած, ծաղիկ հասակդ, ամեն գեղեցիկ օրերդ վանատան մը մէջ անցունե՛ս... ամենեւի՛ն, անկարելի՛ է. հրաման պիտի չտամ։

— Վերջին անգամ մ՚ալ կը պաղատիմ, տիկին, թող տուր որ խորհիմ։

Կոմսուհին ըալով զիս կուրծքին վրայ առաւ եւ դպաւեց։

Իսկ ես արտօսր մը չէի թափեր։





Երեւակայութիւնս գիշերն 'ի քուն աշխատեցաւ։

Կրօնուհի ըլլալու դիտաւորութիւն չունէի անշուշտ. նպատակս էր ժամանակ վաստկիլ՝ կնքամայրս աւելի դիւրութեամբ խաբելու համար։ Կ'ուզէի զինքը պատժել, անիրաւ քաղկութեամբս կարծելով թէ հպարտութիւն և չարամտութիւն մ'է անոր ընթացքը։

Հարկ էր ինձ խոստովանիլ թէ կը սիրէի Ցեպարօն։

Սակայն այս սէրն ոչ այնքան սաստիկ էր որքան պէտք էր ըլլալ որպէս զի որոշէի օրուան մը մէջ զոհել այն ամեն յարգը և համարումը զոր կրնայի յուսալ մարդկանց մէջ։

Եթէ ծեր Տը Րօշգրուա տարեան արդէն ուզեց կարգուիլ հետս՝ աւելի փառքահաս և նուազ ծաղրելի մարդ մը կրնար երեւան ելնել զիս կնութեան ուզելու համար։ Ամեն աղջնականները գաւառային նախապաշարումները չունին. կան անոնց մէջ ոմանք. որոնց աղջիկ խելամտութիւնը և գեղեցկութիւնը քաղաքաւորութեան և հարստութեան փոխարէն կը սեպուին։ Բայց ինչ և է, ոչինչ կ'արգելէ զիս կոմսուհիին ունայն երազները յարգելու։ Զինքը աղաչեցի որ նախ և առաջ դնէ զիս ճիշդ այն աստիճանն ուր ինք կը գտնուի, և փաղփողուն հեռանկարովը ցոյց տայ ինձ այն ընկերութիւնը ուսկէ հիմա կ'ուզէ դուրս թողուլ զիս։

Ինչ կ'ուզէ թող պատահի, Շամբանը չպիտի վերադառնամ։

Կացութեանս կախութիւնը կ'արգիլէ զիս յայտնապէս մերժելէ. մեղքը թող ըլլայ անոնց վրայ որք կը հարկադրեն զիս խորամանկութեան դիմելու։

Սենեկին միւս ծայրը կնքամօրս հառաչելը կը լսէի։ Ան ալ չէր քնանար, և որովհետեւ իբր պայմանաժամ քիչ մը ժամանակ ուզեր էի իրմէն, թերեւս կը խորհէր նէ թէ այս պայմանաժամին մինչև լրանալն ինչ միջոցներով կրնար դիմադրել հրապոյրնե-

քում աղջկութեան դէմ, որու կ'ենթարկուէր իր տղան՝ Մար-գրիտ։

Առաւօտուան ժամը վեցի միջոցին կարծեմ քիչ մը մրափեցաւ տիկին Տը Սէնթ-Էվրըմոն։

Արեւն արդէն կը լուսաւորէր մեր պատուհանները։ Ձայն ձուն չհանելով ելայ, անձայնաքայլումով հագուեցայ, և դուրս ելայ կոմսուհիին տղուն խօսելու համար գիտութեամբս, սակայն դեռ չգիտնալով թէ ուր և ինչպէս կրնայի միայնակ տեսնել զայն։

Հազիւ տասը քայլ առեր էի փողին մէջ, և ահա դուռ մը բացուեցաւ։

Գ. Տը Պասոմպիէր մեր սենեկին հանդիպակաց սենեկի մը շեմին վրայ երեւցաւ, և շուտով քովս եկաւ։

— Արդէն ելեր ես, գեղանի աղջիկս, ըսաւ ինձ։

— Այո, պարոն գնդապետ։

— Եւ այս միջոցիս ու՞ր կ'երթաս։

— Տէ՛ր իմ Աստուած, պատասխանեցի բաւական շփոթով, մայր եկեղեցիին զանգակը կը հնչէ . . . 'ի հարկէ պատարագ մը կայ . . . կը փափաքիմ տեսնել այս պատարագը։

— Ո՛հ, ո՛հ, ատի շատ բարի օրինակ մ՚է։ Շնորհակալ եմ գիտցածէն, քանի որ իր շնորհիւ ճամբուդ վրայ քեզ կը հանդիպիմ և կրնամ թեւս առնուլ քեզի։ Էվրէօյի փողոցները չեմ գիտեր. ուրեմն հինգ օրուան փորձառութենէս հիմա օգուտ պիտի քաղես։

— Բայց չգիտեմ թէ կը պարտաւորիմ. . .։

— Կ'աղաչեմ, հոգ մի՛ ըներ, մեր երեք կառքերուն բանելու չափ ձիերու պէտք կայ. հիմա պիտի երթայի անձամբ հոգ տանելու այս բանին. սակայն քեզի սուրբ վայրը տանելէս ետք ժամանակ պիտի ունենամ այն գործին ալ զբաղելու։

Պարտաւորեցայ ստախօսութեանս հետեւանքը կրել և անոր հետ դուրս ելնել պանդոկէն։

— Բայց ինձ նայէ, ըսաւ Գ. Տը Պասոմպիէր, երբ կրօնասիրական պարտքդ աւարտես կանուխ կատարելով [illegible] ըսէ, արշալոյսին նախանձը պիտի գրգռես։

— Արշալոյսին։ Ձեր հաւնեաց, պարոն գնդապետ։

— Սակայն դիւրին է հասկնալը։ Երբ կ՚երևաս, ձեր Թիթոնեան* ամուսնուհին իր գունեղ երեսին ամօթխածութիւնը կը տեսնէ. չունի նէ այն շուշանի և վարդի գոյները զոր այտերուդ վրայ կը նշմարեմ։

— Շողոքորթութիւնդ բարեպաշտ չէ, վասն զի այս գիշեր աչք չգոցեցի . . . ։ Ուրեմն երեսս 'ի հարկէ խիստ գունատ է։

— Աչք չգոցեցի՞ր, գեղանի հրեշտակս . . . և ինչու համար։

— Ա՛խ, մի՛շտ ունիմ, պարոն։

Յանկարծ որոշում մ՚ըրեր էի. ուստի այս պատասխանը տալէս ետք շարունակեցի.

— Տիկին Տը Սէնթ-Էվրըմոն զիս կ՚ուզէ Շամբանիը դրկել նորէն։

— Ի՞նչ կը նշանակէ ասի . . . ։ Քեզի Բարիզի մէջ ցոյց տալ, արժանիքդ, անձնական անթիւ հրապոյրներդ մեզ ճանչցնել, և ապա ոչհաճութեան չարչարանաց դատապարտել մեզի . . . ։ Այս բանս անկարելի է. բոլո՛ր ոյժովս դէմ պիտի կենամ կոմսուհիին այս ընթացքին։

— Իրա՛ւ, գոչեցի։

— Պատուոյս վրայ կ՚երդնում։

— Ուրեմն, կ՚աղաչեմ, հաճէ նախ և առաջ աղէկ յանդիմանութիւն մ՚ընելու Պ. Մարգրիտին, որուն անօրինակ անխոհեմութիւնն է ամէն դէշութեան պատճառը։

Եւ անմիջապէս պատմեցի Պասօմբիէրին ինչ որ անցքի անեցած էր, Տը Բօշգրուա ասպետին հետ ամուսնանալու առաջարկութիւնը և այն խօսքերը զոր կոմսուհիին խոստովանութեանը ժամանակ լսեր էի յանկարծ։

— Եթէ կնքամայրս ազատ սիրահար է, սիրահարութիւնը մայրին առջև յայտնելն անօգուտ է բոլորովին։

* Թիթոն՝ ըստ առասպելաբանութեան՝ Տրովադայի իշխան, Լաօմեդոնի որդի և Պրիամոսի եղբայրն էր։ Այնքան ծերացեր էր որ Արշալոյսն ամուսնացեալ ըլլալ՝ ճիճու անմահանալու համար։

— Անշուշտ, նա մանաւանդ ծայրայեղապէս փցուն ընթացք մ՚է.

— Այնպէս չէ՞, գնդապետ. այդպէս վարուելով զիս կատարելապէս կ՚արգիլէ իր սիրոյն պատասխանելէ:

— Աղէկ, շա՛տ աղէկ կը խօսիս, գեղանի՛ օրիորդ:

— Պէտք է իմաց տալ այդ երիտասարդին և խրատել զինքը որ ինծի հետ բոլորովին անտարբեր, բոլորովին պաղ կերպով վարուիլ ձևացնէ:

— Անհրաժեշտ է այդ բանը.

— Կնքամայրս տղուն անտարբերութիւնը տեսնելով ա՛լ ամենափոքր կասկած մը, վախ մը պիտի չունենայ:

— Քեզի ա՛լ Շամբաները չպիտի վերադարձնէ:

— Ի հարկէ, գնդապե՛տ . . . և թերևս պիտի յաջողինք սակաւ առ սակաւ անհետ ընելու այն գժկամակութիւնը զոր հարկաւորապէս կրէ զիս իր տղուն հետ կարգելու . . . :

— Կրո՛ղ. առաւ աւելի գժուարին կ՚երևայ ինձ . . . : Բայց վերջապէս գաղտնի պսակը ունինք:

— Կը կարծե՞ս, պարոն:

— Անկից աւելի դիւրին բան չըլլար. ամեն օր գաղտնի պսակով կարգուողներ կան:

— Եթէ տարանկ է, գաղտնապէս կարգուելու կը միտիմ յոժարակամ:

— Իրաւունք ունիս վախնալու. մէկ անգամին ամեն դժնդակութիւններէ կ՚ազատիս . . . : Ըսել է թէ ժամ կ՚երթայիր այս բաներուն վրայ խորհելու համար, հրեշտակդ իմ:

Պասօմբիէր ինձ նայեցաւ ուղղակի, և ծաղրական կերպով մը պեխերն մազերը գգուեց:

Ամչցայ:

— Կը ծաղրես զիս, գնդապետ . . . : Սակայն հիմա կրնամ ճշմարտութիւնը խոստովանիլ: Մարգրիտ Տը Սէնթ–Էվրըմոնին հանդիպելու յոյսով դուրս ելայ որպէս զի ըսեմ իրեն ինչ որ հիմա ըսի քեզ: Քու առջև նախ նեղի դալով դիմեցի ծառային

դաստիարակին որ միայն եկաւ. բայց գրեթէ իսկոյն զգացի թէ աւելի վայելուչ էր շահերուս պաշտպանութեանը համար միջամտութեանդ դիմել, քան թէ կնքամայրիս աղային հետ ուղղակի խօսակցիլ այս նիւթին վրայ։

— Շատ աղէկ..., ուրեմն եկեղեցի չե՞նք երթար։

— Չէ, գնդապետ, եթէ սակայն դուն ալ չուզես երթալ։

— Ամենեւին. ծառայելու կարգս եկած ատեն թագաւորին պատարագին ներկայ գտնուիլս արդէն բաւական է։

Եկեղեցիին ձախ կողմը պատուհան մը կար, որու երկու կողմը թմբիկներ անկուած էին, Պասսոմպիէր դէպ 'ի հոն տարաւ զիս. առաւօտներն այս պողոտային մէջ ժուռ եկողներ չկային։

— Հիմա, ըսաւ ինձ Պասսոմպիէր, համառօտակի որոշենք ըսելիքս. սա խնդրոյ Մարգրիտին ակնարկէն քաշելով պիտի հրամայեմ իրեն որ կոչածին չափ գաղտնի կերպով սիրէ քեզի. և այս բարեսիրտ կամեցուհիին շուտիկ լեզուն առանց հոգ ընելու ինձ՝ խօսք կը տամ ձեզի կարդալու...։ Ասի քեզի համար շատ աղէկ կարգադրութիւն մ՚է...։ Բայց ես, սիրելի գեղեցիկս, ո՛ր է իմ վարձատրութիւնս։

— Վարձատրութի՞նդ։

— Անշուշտ... ինձ պարգեւես խորհրդակցի մը դերը խաղցնելու թշնամանքը կ՚ընէիր։

— Ցիրաւի, գնդապետ, չեմ ըմբռներ...։

— Ի՞նչ. միթէ զիս ձեր ծառայեցնելու դիտաւորութիւն ունիս։

Սկսայ խնդալ, և պատասխանեցի.

— Բայց ի՞նչ կը պահանջես ուրեմն։

— Սրտիդ մէջ թեթեւ տեղ մը... այն պզտի Մարգրիտը բալորովին չպիտի գրաւէ սիրտդ։

— Կը կարծես։

— Զարմանալի՛ հարցում, կ՚երեւակայեմ թէ սէր անձին վրայ չէր հիմնար. երէկուընէ 'ի վեր չէի՞նար բաւ սէր մը ներշնչած ըլլալ քեզ, և սիրոյդ մէկ պզտի մասը ինձ կը պահանջեմ։

Տը Լիւյն դուքսն ու դքսուհին կը բնակէին Ֆրանսայի Թագաւորին զաւակացը սահմանուած ընդարձակ բնակարանին մէկ մասին մէջ. այս բնակարանին պատուհանները Օրաթաւարին (Աղօթարան) և հիւսիսային պարտէզին վրայ կը բացուին։

Մինչդեռ Հելվէտիացի պահակներուն սրահէն կ'անցնէինք, փառաւորապէս զգեստաւորեալ պաշտօնատար մը մեր քովը եկաւ։

Եկողը Պասօմբիէ-ն էր։

Մեր առողջութեան նկատմամբ լուրեր հարցուց, բիւր քաղաքավարական խօսքեր ըսաւ մեզ, և ուզեց ինքն անձամբ տիկին Տը Լիւյնի գուռը տանիլ մեզի. սակայն մեծ սրահին միջևը, որ իր գինուորներուն բռնած սենեկին մօտ է, Պասօմբիէր կոմսուհիին մեզմէ քիչ մ'առաջ երթալու վայրկեանը պատեհ առիթ սեպելով համբոյր մ'ալ առաւ իզմէն։

Իր իրաւունքն էր համբուրելը. չէի կրնար բան մ'ըսել։

Տիկին Տը Լիւյն աղմկալի ուրախութեամբ մ'ընդունեց մեզի։

Իր կիներուն հետ յարդուզարդովը կ'զբաղէր, և ցոյց տուաւ մեզ Կալիկայիին փառաւոր գոհարեղէնները զոր Թագաւորն այն օրն առտու իրեն պարգևած էր դուքսին միջնորդութեամբը։

Լուի ԺԳ. իր յանցանքին թողութիւնը ստացած ըլլալով չէր ուզեր վերստին տեսնել նորա սիրայրգիու սխալը և աւելի սատոիկ ապաշխարանքի մը վտանգին ենթարկուիլ։

Ժամէ մ'ետք կնքամայրս պարտաւորեցաւ միայնակ մեկնիլ. դքսուհին խօսք մտիկ չըրաւ և իշխանաբար պահեց զիս, ըսելով թէ իր քով ութն օր պիտի անցունեմ։

Ահա այսպէս Գաբրիէլ Տըլօրմին աղջիկը Թագաւորներուն պալատին մէջ տեղաւորուեցաւ իր տանն պէս։

Ու առտուըն վեց շաբաթ անցած էր այն օրէն 'ի վեր ուր քաղքէս մեկներ էի՝ ձգելով այն անշուք յարկը ուր պատսպարուած էի.որորանս, կարի աշխատասէր և պարզասէր մայրս, եղբայրներս և քոյրերս որոնց մանկութիւնը կը խնամէի. և արդէն բոլորովին կը մոռնայի անշուք ծագումս։

Գլուխս կը դառնար, շլմորումով մը կը գրաւուէի։ Շքեղ

տրուական մ՚անցելոյն դուռերը կը գոցէր անդառնալի կերպով և ալ թոյլ չէր տար ինձ ապագային զուարթ հեռանկարներէն ՚ի զատ որ և է բանի նայելու ։

Կնքամայրս մեծ անխոհեմութեամբ մը յանցաւոր կ՚ըլլար՝ յանկարծ բանալով այն վարագոյրը որ մինչև այն ատեն աշխարհս պահած էր ինձմէն ։

Անհնարին եռանդին դիմադրելու ոյժը չէի զգար ․ յանդէտս իմ պատուաւոր մտածումները կը խղդէի ամբարտաւանութեան և ստութեան իմաստակութիւնները ընդունելու համար ։ Բարեգործուհիս բացարձակապէս անիրաւ կ՚երևար ինձ ․ կը բարկանայի նորա դէմ, չէի ուզեր համբերել որ կարէ զգլխիչ բաժակ մը զայն շուրթերուս մօտեցուցած ըլլալէն ետք ․ սակայն խղճի խայթի կ՚աշխատէի իր հանգստութիւնը ջնջելու և իր կեանքը վշտով համակելու ։ Բոլորովին հրապուրելի և փառաւոր կացութիւն մը կորուսելու չուզելով համակերպիլ, կեղծաւոր կ՚ըլլայի, չարասիրտ կը դառնայի ։

Տը Լիւյն դքսուհին իր քովը դեռահաս որբուհի մը կը պահէր զոր դուրսէն ընդունած էր ։ Անունն էր Լիզ Տը Լօնժիւմօ, կամ պարզապէս Լիզէթ, վասն զի իր ազնուականութիւնը դէթ իմինիս պէս կեղծ էր ։

Այս Լիզէթը շուտիկ աչեր և ապշեցուցիչ շատխօսութիւն մը ունէր, նաև այնպիսի շարժում և ընթացք մ՚որ առաջին անգամ իր հետը անծանօթներուն կրնար շուարում պատճառել ։ Տը Գօնթի իշխանուհիին սանուհին էր ․ փոխանորդի ձեռքով մկրտութեան աւազանին վրայ բռնուած էր նէ, հետևաբար յայտնի յայտնապէս կ՚ըսէր թէ Անրի Դ․ին և իշխանուհիին աղջիկն է ինք ։

Այնքան բացարձակ և ճիշդ կերպով կը հաստատէր այս բանը որ մարդիկ կը դրդուէին հաւատալու իր խօսքին ։

Երեկոյեան միջոցին՝ տիկին Տը Լիւյն՝ Բարիզի մէջ անհրաժեշտաբար պատրաստ ըլլալով քանի մը տեղ երթալու՝ զիս մինակ թողուց Լիզէթին քովը, որ իմ վրայ գեղեցիկ բարեկամութեամբ մը կը գրաւուէր եռանդագին, վայրկեանի մը մէջ քսան անգամ

կը համբուրէր զիս և ամեն տեսակ սուտումուտ պատմութիւններ կը չինէր, որք մէկ մէկէ աւելի այլանդակ էին։

Օրիորդ Տը Լօնժիւմօ թեւս մտնելով պալատին ամեն կողմը ժուռածեց զիս։

Պահակները թոյլ կը տային զինքն անարգել անցնելու. ամեն բան կը բացատրէր ինձ, ամեն բանի վրայ կը խօսէր հետս, բոլոր մարդիկը կը ճանչէր։

· Երբ արքայածին իշխանաց բնակարանին ծայրը հասանք, ուր՝ ինչպէս ըսի արդէն՝ նոր պաշտօնեան և իր կինը կը բնակէին, հարկ եղաւ մեզ անցնիլ ուրիշ ճեմապատիթէ մ'ալ ուր հելվէտիացի պահակներ և հրացանակիրներ կը վխտային։ Առջինները կարմիր զգեստներ հագեր էին և ժապաւէնով զարդարուն գլխարկ ունէին. երկրորդները կապոյտ ներքնակներ հագեր էին, և ասոնց ամէն մէկին կռնակին և կուրծքին վրայ բանուած մեծ խաչ մը ունէին։

Այս զինուորականները բարեւ կը տային մեզ երբ կ'անցնէինք։

Հազիւ ժամանակ ունեցեր էի ուր ըլլալս դիտելու, և ահա Լիզէթ սենեակ մը մտաւ որ պահապան զօրքով լի էր։ Ճանչեցի զանոնք տեսնելով իրենց փառաւոր համազգեստը որ Մարգրիտինն էր։

Անոնց մէն յանկարծ սկսաւ մեր ետեւէն գալ, ես քան զեւս մօտենալով մինչդեռ մենք դրան կողմէն կը յառաջանայինք։ Վերջապէս սկսաւ մեզի հետ քով քովի քալել։ Այն ատեն՝ առանց գլուխը դարձնելու՝ ընկերուհիիս ձեռքը տոմսակ մը տուաւ գաղտնապէս, ապա կատարելապէս հանդարտ կերպով իր ճամբան շարունակեց։

Մեծ էր յանդգնութիւնը։ Սակայն Լիզէթ ամենեւին բարկացած չերեւցաւ ինձ. այս տեսակ դրակցութեան մեծ սովորութիւն մ'ունէր ան։

Խրոզութեան տեղէն երբ քիչ մ'աւելի հեռացանք, օրիորդ Տը Լօնժիւմօ տոմսակը բացաւ կարդալու համար։

— Հա՛, հա՛, սիրելի՛դ իմ, ըսաւ հարեւանցի կերպով նամակը

կարդացէն ետք, պահակներուն մէջ սիրահա՞ր մ՚ունիս....: Աղէ՜կ է, աղէ՜կ է, մի՛ նուաղիր. խղճիս վրայ մի և նոյն ոճիրը ունիմ....: Ցանցանք չունին անոնք, շարայարեց Լիզէթ ինքնին խօսելով և տոմսակը նորէն կարդալով. չորս հոգիի տեսութիւն մ՚ոչ այնքան վտանգաւոր է....: Պիտի երթանք:

— Բայց, ըսի անոր խիստ յուզուած, ինչ կայ, ինչ է:

— Ետքը պիտի իմանաս: Նախ թագաւորին ընթրիքին ներկայ գտնուինք:

— Ինչ ըսե՞ր. զիս կ՚ուզես տանիլ....:

— Է՛հ, առանց շուարուն կերպարան մը մի՛ առներ, գեղանի՛դ իմ... տեսնուլն ըսէ թերևս թէ. Արջերու փողոցը բնակող հասարակ աղջիկ մ՚ես... ինչ ամօթ: Այսօր Համբարձման տօնն է... մեծահաց սեղան կայ, շտապե՛նք:

Լիզէթ խօսքին վերջ տալով զիս քշեց տարաւ ոսկի դրուագներով փողփողուն ուրիշ ձեմասրահներէ որ արքայական բնակարանին բոլորտիքն են, պեսպաններուն սրահը, ժողովին դահլիճը ցոյց տուաւ ինձ, թագուհիին բնակարանին մօտեցող նոր ձեմասրահներէ անցաւ, և վերջապէս զիս տարաւ լայնատարած նախասենեակ մ՚որ այլ և այլ դուռեր ունէր: Այս դուռերը կը բացուէին սեղանատան, մատուռին, պահակներու յատուկ ուրիշ սրահի մ՚և այն բնակարաններուն վրայ որոնցմէ պահ մ՚առաջ անցեր էինք:

Նախասենեակին մէջ աւագանիի և մեծ տիկիններու բազմութիւն մը տեսայ. Լիզէթ ասոնց մեծագոյն մասին բարև տուաւ ճանչուորի կերպարանով:

Կ՚զմայլէի այս տեսարանէն որ այնքան նոր էր ինծի համար. Շլմորումով կը նայէի պալատական շքեղ զգեստներով հագուած սփուած այս մարդերուն և կիներուն. մարդերուն որք շքանշաններով և ժապաւէններով զարդարուած էին. կիներուն որք թաւշեայ և մետաքսեայ զգեստներով և տանթելաներով կը փողփողէին և կը պչրէին: Բազմութիւ երևելի անձեր մեր քովէն եկան և սկսան քաղաքական անհամ մեղրաբանութիւններով խօսիլ որոնց ինչ ար-

մէջ առնելը Լիզէթ երևան հանեց հրաշալի համարձակութեամբ մը։

— Է՛, լաւ՛, Պ. Տը Մարսիյլեագ, ըսաւ Լիզէթ՝ ամենուն հետ ալ խօսիլ սկսելով. քսանուհինգ տարիէ 'ի վեր այդ սուտումուտ խօսքերը կը կրկնե՛ս աբքուններուց ամեն տիկիններուն․․․․։ — Զգուշացի՛ր, Պ. Ցը Գրամմոն, տիկին Տը Ֆարժիին աչքը վրադ է. անհաւատարիմ ըլլալու իրաւունքը միայն ինքն իրեն կը վերապահէ։ — Ո՛հ, Պ. Տը Պրէզէ՛, չես համարձակիր զիս տիկին Տը Մերդէօրէն աւելի աղուոր սեպելու. եթէ համարձակիս, հիմա կ'երթամ կ'ըսեմ իրեն, և քեզի կ'արտաքսէ, սիրելիդ իմ. և արտաքսուիլդ երեսներորդ անգամինը կ'ըլլայ։

Երբ այսպէս ճամբեց այն մարդերը որք իր ականջին քով կը բզզային; քովս օգնութեան հասաւ ինձ։

Զիս սատտկապէս շփոթելու կերպով կ'սքանչանային վրաս։

— Ինձ նայէ՛, պարոն դուքս, ըսաւ շատ գեղեցկահասակ և շնորհագէմ իշխանի մը, թէև յիսուն տարեկանէն աւելի ըլլալան, կը տեսնե՛ս որ ահա դարձեալ կը բռնեմ քեզի․․․։ Կ'ըսես թէ օրիորդին այտերը վարդի, շուրթերն ալ բուստի կը նմանին․․․։ Երէկ՝ քու խօսքիդ նայելով՝ աչերս շափիղայի, ակռաներս սատեֆի, ճակատս ալ յասմիկի կը նմանին․․․։ Ցիրաւի եթէ բնութիւնը կնասիրական շողոքորթութիւններուդ համեմատ ուզէր վարուիլ մեր հետը, բուսական ցեղին և հանքային ցեղին վրայ կատարեալ ուսումն առնել ուզողն այսուհետև մեր երեսներէն աւելի հեռի երթալու հարկաւորութիւն պիտի չունենար։

— Ա՛խ, մեռայ, գոչեց շողոքորթ սիրախնդիրը։

Եւ ուրիշներէն շատ աւելի շուտ աներևոյթ եղաւ։

— Խե՛ղճ Պէլկարտ, ըսաւ Լիզէթ. անուղղելի է․․․։ Մարիօն, Ֆրանսայի մեծ ախոռապետն է․․․ դժբաղդաբար ամեն օր խելանի չէ ան։ Ամեն րոպէ կը կրկնէ թէ ծեր է. այս աղաղակն իր շուրթերուն վրան է մշտնջենապէս։ Անգամ մը կը հարցընէր թագուհիին թէ ինչ կ'ըլնէր այն մարդուն որ պիտի յանդըգնէր զինքը սիրելու խօսքը ընել։ — «Կը մեոցնէի այն մար-

դը», պատասխանեց Թագուհին. և Պէլկարտ պոռաց. «Ա՛խ. մեռա՛յ» ։

Լիզէթ չարախօսելու միտում ունէր. չար աղջիկն իր այս միտումը անյագաբար 'ի գործ կը դնէր ։

Նստարանի մը վրայ քովը նստեցուց զիս որպէս զի աւելի աղէկ տեսնէ ներկայ գտնուող բոլոր անձերը ։

— Նայէ՛, ըսաւ ինծի ապա՝ հեռուն կեցող մարդ մը ցոյց տալով. Տը Կիզ ասպետն է ան . . . ։ Անձնօք գնաց խոստովանանք եղաւ Ծիզուիթի մը փիլոնին տակը, ըսելով անոր թէ կը սիրէ սա պզտի պառաւը որ անոր թևին փակած է, որ ա՛լ երեք ակռայ ունի միայն և տակաւին կը քծնի ։ Խոստովանահայրը՝ Թողութիւն շնորհելէն առաջ պահանջեց որ ապաշխարութեան ամէն արփական յարաբերութիւն դադրեցնելու խօսք տայ յատկապէս. «Ա՛խ, հա՛յր սուրբ, ըսաւ Կիզ, այդ քաջութիւնը չունիմ» ։ — Ուրեմն, որդեակ իմ, պատասխանեց Ծիզուիթը, երթամ ծունր դնեմ խաչանին առջև և աղօթեմ Աստուծոյ որ օգնութեան հասնի քեզ» ։ Իրաւ սկսաւ աղօթք ընել կրօնաւորը. բայց ասպետը տեսնելով թէ շատ եռանդագին բարեպաշտութեամբ աղերս կը մատուցանէր Աստուծոյ, անոր փիլոնը բռնեց և քաշելով գոչեց. «Քիչ մը չափով աղօթէ՛, հա՛յր սուրբ, քի՛չ մը չափո՛վ. եթէ այդքան ջերմեռանդութեամբ շարունակես, վախնամ որ Աստուած պիտի չշնորհէ՛ ուզածդ» ։

Ընկերուհիիս պատմութիւնները շատ կը զուարճացնէին զիս ։

— Այս իրողութիւնը, շարայարեց Լիզէթ, ասկէ տասներկու կամ տասներեք տարի առաջ տեղի ունեցաւ, և Կիզ այսօր իր մեղքին մէջ իսկ տրտմալի ապաշխարութիւն մը կը գտնէ . . . ։ Բայց հաւատացէ՛ և ակնածական բարև մը տուր ։ Ահա Տը Պրիսագ Նիհար պարոնը իր ծանրաբեռն կնկան՝ Պիւյեօն Րիւէլանէն՝ հետ ։ Պէլկար չնաշխարհիկ խելանի և հանճարեղ մ'է այս խեղճ մարդուն քով որ կը պնդէ թէ Գոչիոս Ներվա կայսրէն սերած է ինք. Ցիշեալ կայսրը 'ի հարկէ կմախքի վիճակը մտաւ, այս պատճառաւ Պրիսագ անոր կը նմանի շատ . . . ։ Բայց ո՞վ է սա

հեռուէն եկողը։ Պ. Տ'Անկուլէմ, որ իր դարուն ամենէն մեծ գողն է։ Թեր Տիւ Թիյեէ անուն կնկան տուած է....։ Ընտրհալի՜ միաւորութիւն։ Այս կնիկը Տ'Էբըրնօնին հետ խօսքը մէկ ըրաւ իր էրիկը սպաննել տալու համար, և ահա հոս կ'ընդունուին այնպիսի անձեր որք գլխատութեան հրապարակին վրայ երևալու կը ծառայեն միայն... ի՜նչ նողկալի բան։ Դարձո՛ւր գլուխդ. դիմացի կողմը կեցողն է օրիորդ Տը Լա Մուսէյ, որ երկրորդ Լիւգրեցիա Պօրճիա մ'է. ապտակներ կը բաշխէ նէ որոնց որ զինքը կը շողոքորթեն. ես աւելի աղէկ ունիմ լեզուովս խածնել քան թէ ձեռքովս զարնել։ Սո՜ւրբ Աստուած. սա պատուհանին խորշին մէջ դեղանի Մօնմօրենսիին հետ պահուողն ո՞չ ապաքէն Լիւսօնի վիճակին գերապատիւ եպիսկոպոսն է....։ Ո՛հ, եթէ մայր-թագուհին գիտնա՜ր....։ Նայէ՜ քիչ մը. կղերը սուտգիւ գայթակղութիւն կը տայ ինձ. ահա ճիշդ դէմ առ դէմ կը գտնուի Տը Լա Վալէթ գարտինալն որ տիկին Տը Գօմպալէի ձեռները կը պաղնէ....։ Ո՞ւր ենք, ո՞ւր կ'երթանք։ Փախի՜նք, սիրելիդ իմ. քանի որ պատանուհիներ ենք, մեր հասակին յատուկ անտարբերութիւնն այսպիսի օրինակներու առջև շատ վտանգի մէջ է։ Ա՛հ, Պ. Տը Լա Վալէթ, Պ. Տը Րիշլիէօ, Աստուած չընէ որ ձեր գերապատուութեանց փիլոնին ներքև խոստովանանք ըլլալու գանք։

Լիզէթ ճեմասրահներէն ետ դառնալու կը պատրաստուէր.

— Հապա՞ թագաւորին ընթրիքը, ըսի։

— Հա՛, աղէկ ըսիր։ Նորին Վեհափառութիւնը մեզի սպասել տալէն ոչ այնքան աղնիւ կ'երևայ ինձ։ Տիկին Տը Լիւյնի ուսին առջև տեղ մը միթէ ախորժակ կորուսո՞ղ կայ։

— Վա՜յ չարասիրտ, վա՜յ, դոչեցի, ոչ զոք ազատ կը թողու իր լեզուին խայթէն։

— Խոստովանէ՛, ըսաւ Լիզէթ, թէ դքսուհին առուլ երկու միլիոն ֆրանքի արժողութեամբ ադամանդներ վաստկեցաւ չիտակ հաշխուով։ Բայց թագաւորն այնքան ապուշ է։ Տղայ մ'է ան, որ միշտ տղայ պիտի մնայ... խիստ անկատակ կերպով այլան-

դակ զուարճութիւններու և զբաղումներու կը տայ ինքզինքը։ Սէն գեաի կողմին պարտիզին մէջ հանդստեան առթիւ արձակուած աշակերտի մը պէս անոր վազվզելը և ցատկռտելը տեսայ գաղտնապէս։ Հարցուց ինծի թէ որո՞նք էին իր խաղակիցները։ Սէնթ-Ամուր, իր կառապանը, և Հարամ՝ իր շուներու սպասաւորը․․․։ Աղուո՛ր ընկերութիւն թագաւորի։ Աւելի նոր բան մը կայ․ երէկ չէ միւս օր խոհարանի դուլթէն խոհակերոցի տեսակ մը սպասաւոր վեր բերել տուաւ անոր անուշեղէն եփել սորվեցնելու համար։ Արդէն ուռկան և շրջանակ շինել գիտէ։ Իր սափրիչը քսան երկու դասով կատարելապէս ցոյց տուաւ իրեն ածիլուելու եղանակը․․․։ Այո՛, սիրելիդ իմ, այս պատուական իշխանն իր ժողովուրդին մօրուքը ածիլելու խիստ ատակ է։ Ա՛խ, ինչո՞ւ Մեծն Անրի սեռի և օրի մասին սխալեր է։ Եթէ սխալած չըլլար, Լուի ԺԳ․ իմ միջազգեստներս կը հագնէր և ես Ֆրանսայի թագաւոր կ՚ըլլայ։

Լիզէթ այս տարօրինակ աւինավը համակուելով անկատակ կերպարան առաւ։

— Պիտի տեսնե՛ս, պիտի տեսնե՛ս, ըսաւ ինծի, այս կամ այն աննշան փառամոլը պիտի՛ գրաւէ այս արքայական պէպէկը, դերձանի մը ծայրը պիտի կապէ և ուզած կերպովը պիտի խաղցնէ՛․ Լուի ԺԳ․ սրտի ամենափոքր ոյժ չունի․ անկատար և պիտակ բնութիւն մ՚է ան․ ամեն բան, սիրտն անգամ կը պակսի իրեն․ ․․ չսիրեր իր մայրը։ Մարէշալ Տ՚Անգրին մահուանէն ՚ի վեր հսկողութեան ներքև կը պահէ իր մայրը, առանց և ոչ անգամ մ՚անոր այցելութեան զիջանելու, և հուսկ յետոյ պիտի աքսորէ զան։ Այս չբաւեր, և ահա միապետն երկու օրուան մէջ խօսք մը չըսեր ծաղկահաս թագուհիին, որ իր կինն է․ նորա քովը ճշմարիտ արձանի մը պէս կը կենայ, և ամենամեծ համարում մը չպիտի ունենաս իր Պարոն եղբօրը ֆիզիգային և բարոյական յատկութեանց վրայ․․․։ Բայց լո՛ւռ կենանք․ հիմա պիտի տեսնես զան․․․։

Մեր բոլորտիքը շարժում մը ցոյց տրուեցաւ։

Սեղանատան դրան երկու փեղկերը բացուեցան։ Նուիրակ մը տաւագանիին բազմութեան մէջէն անցաւ և գնաց գաւազանովը պահակներուն սրահին դուռը զարկաւ։

— «Պարոններ, գոչեց, թագաւորին սեղանի սպասքը»։

Անմիջապէս պահակ մ'երևցաւ՝ սուր 'ի ձեռին։ Նուիրակին ետևէն գնաց, և երկուքն ալ աներևոյթ եղան կողմնական դուռէ մը։

— Ո՞ւր կ'երթան, հարցուցի Լիզէթին։

— Թագաւորին սպասաւորը, պատասխանեց. սեղանի սպասաւորները հոն կը կենան։ Հիմակ ամենքը միասին պիտի երևան նորէն։

Իրօք քիչ մ'ետք նուիրակն ու պահակն եկան ուրիշ հինգ երևելի անձերու հետ որք սեղանատունը մտան։ Փառոցը պարզեցին և ապա հացի պզտի շերտեր առին և թագաւորին սեղանի ղենջակին, պատառաքաղին, դրդալին, դանակներուն և ատամնաշիղերուն աղէկ մը քսելէն ետք կերան։

Այս ամեն պատրաստութիւններն բաւական այլանդակ կ'երևային ինծ, և՝ չկրնալով համբերել՝ ժպտեցայ։

Լիզէթ ծիծաղաշարժ ծանրութեամբ մ'ըսաւ ինծ.

— Օրիո՛րդ, միթէ շա՛տ կ'երևան քեզ այս զգուշութիւններն որոնց նպատակն է թոյլ չտալ Ֆրանսայի թշնամիներուն որ թունաւորեն պարոն եղբայրս*։

— Ո՛չ, ըսի, բայց առ՝ այժմ շատ ախորժելի բան չէ չոր հաց ուտելը։

Նուիրակը վերստին անցաւ մեր առջևէն, և գնաց գաւազանովն անգամ մ'ալ զարկաւ պահակներուն սրահին դուռը։

— «Պարոններ, գոչեց, թագաւորին մի՛սը»։

Չորս մարդ դուրս ելան սուսերամերկ, և նուիրակին հետևե-

* Ընթերցողը կը յիշէ անշուշտ թէ Լիզէթ Ժնեվիէվը Անրի Դ.ին աղջիկն կը սեպէ, և առ այս պատճառաւ իրեն եղբայր կը համարէ Լուի ԺԳ.ը որ Անրի Դ.ին որդին է։ Ծ. Թ.

լով կողմնական դուռէն գացին։ Ապա ետ եկան իրենց հետ ունենալով Թագաւորին տաճարապետը և ուրիշ հինգ սեղանի սպասաւորներ։ Ասոնք մեծ պնակներ ունէին, զոր կը բերէին չորս պահակներուն չորս մերկ սուրերուն մէջէն քայլելով։

Ամենքն ալ սկսան պնակներուն փորձը ընել. հացի կտոր մը կը թաթղէին անոնց մէջ, ապա վեր կ'ընէին հացի կտորը և կ'ուտէին։

— Կը տեսնես, ըսաւ Լիզէթ, պարոն եղբօրս մարդիկն ապաշխարութեան մէջ չեն միշտ։

Երբ կերակուրներով ծածկուեցաւ սեղանը, իւրաքանչիւր ոք սկսաւ սեղանատունը մտնել։ Թագաւորին դեռ թափուր աթոռին ետեւը մարդերու խումբ մը կազմուեցաւ. կիներու խումբ մ'ալ Թագուհիին աթոռին ետեւը կազմուեցաւ։ Իսկ միւս ներկայ գտնուողներէն ոմանք սենեկին ներսի կողմը տեղաւորուեցան; ոմանք ալ շեմին վրայ կեցան։

Մենք շեմին վրայ կեցողներուն հետն էինք։ Լիզէթ կ'ուզէր ամենայն հանդարտութեամբ հետս խօսիլ։

Իմաց տրուեցաւ թէ Թագաւորը կը գայ։

— Գրաւ կը դնեմ, ըսաւ Լիզէթ, թէ պարոն եղբայրս ընթրելու պիտի չհրաւիրէ զիս . . . ։ Ի՛նչպէս ախորժելի բան է իր ընտանիքէն ըլլալը։

Լուի ԺԳ. երևցաւ գլխարկ 'ի գլուխ, և ձեռքովը բոլոր ներկայ գտնուողներուն բարև տալու։ Բոլորովին սեւեր հագած էր, որով ալ աւելի կը նշմարուէր իր երեսին բնական դեղնութիւնը։ Իր դէմքը գիծերու ոչ այնքան հասարակ կանոնաւորութիւն մ'ունէր. սակայն նաև գժգոհութեան և մարդատեցութեան այնպիսի դրոշմ մը կը կրէր որ այս Թագաւորին միայն տեսքը տըրտմութիւն կը տար մարդուս։ Երբէք չտեսեր եմ երես մ'որու վըրայ ձանձրոյթին ու վշտին հետքն այսքան երևար։ Լուի ԺԳ. այն ատեն տասնութ տարեկան էր, սակայն տեսնողն երեսուն տարեկան կը կարծէր զան։

Իմ վրայ ըրած տպաւորութեան պատճառն էր թերևս իր սև

զգեստները, որք ոգալի կերպով մը հակապատկեր կ՚ընծայէին ախկնանց և ատաղանիին զգեստներուն հետ։

Նստաւ Թագաւորը, և Թագուհին ալ անոր աջ կողմը նստաւ։

Թագաւորին որքան անհամ երևած էր, այնքան իր մանկլաշ կինը շնորհալի, խնդումերես և զուարթ թուեցաւ ինծ. Նէ գե֊ղանի էր ամէն սիրաշունչ կիներու պէս, և իր Սպանիացիի մեծ աչերը կարկեհանի պէս կը փողփողէին։

— Կը հասկնամ, ըսաւ Լիզէթ, պարզ եղբօրս ատամնի աղուոր կնկան մը նկատմամբ անտարբերութիւնը։ Պէտք չուշանայ իր տխմարութեան պատիժը կրելու։ Որովհետև թագուհի ենք, այս միթէ պատճառ մ՚է մեր կեանքը միութեան և մոռացումի մէջ անցունելու։ Բնութիւնն այս ամէն հրապոյրները միթէ մեզ տուաւ որպէս զի ատամնակ փապկես մը մօտէն անարգաբար անցնի առանց ըմպելիք տեսնելու.... Ո՛հ, ո՛չ ըսաւ.... Մարիո՛ն, քիչ մը դիտէ Թագուհիին նայուածքը, որ սակայն կը հանդիպի խիստ գե֊ղեցիկ երիտասարդի մը նայուածքին. այս երիտասարդը նորա դի֊մացի կողմը կենալու հոգ կը տանի միշտ.... Կը նշմարե՞ս զան.

— Այո՛, պատասխանեցի. ի՞նչ է անունը։

— Անրի Ցը Մօնմօրէնսի՜.... Ո՛հ, ո՛հ, շարունակեց Լի֊զէթ ուրիշ իշխան մը ցոյց տալով ինձ, որ սաստիկ այլ 'ի զուր ջանացած էր Թագաւորին ուշադրութիւնը հրաւիրելու. մեր սիրե֊լի դքսուհիին երիկը վայրապա՜ր իր ժամանակը և աշխատանքը կը վատնէ։ Իրեն դէմ դժգոհութիւն ցոյց տալ կը ձևացնեն. ծանր կերպարան կ՚առնու խնդիրը։

Իսկ Գ. Ցը Լիւյն դուքսը՝ արքայական աթոռին ետևն ոտքի վրայ կեցած՝ հեռու վայրկենէ 'ի վեր կը խօսէր. Լուի ԺԳ. չէր զիջաներ անոր պատասխան տալու։

Թագաւորն որ իր ոսկեղէն պնակին մէջ փասիանի կտոր մը զորդել տուած էր պահ մ՚առաջ, յանկարծ վեր ըրաւ գլուխը, և նոյն միջոցին ծառայող իր ազնուականներուն մէկին ըսաւ.

— Պատօմբիէր հո՞ս է։

— Այո՛, Վեհափառ տէր, պատասխանեց գնդապետն ինքն իսկ։

Սրահին ներսը հաւքուած նշանաւոր անձերուն մէջէն չտեսեր էի զինքը։

Պասօմբիէր յարգանօք մօտեցաւ։

— Նայէ՛ ինչ կ՚ըսեմ, պարոն. միթէ կը ջանա՞ս աչքէս ելնելու. հրամաններս առ ոչի՞նչ կը դնես։

— Կը հաստատեմ Ձեր Վսեհափառութեան թէ ոչինչ կ՚արդարացնէ . . . ։

— Հա՛, հա՛ . . . պահ մ՚առաջ դատիկոնի մը քովէն կ՚անցնէինք, և նշմարեցինք որ Հեղվէտիացիներուն անոր դուռը չէին պահպաներ։

— Վեհափա՛ռ Տէր, Պ. Տը Լիւյն դուքսն ինք հրաման տուաւ ինձ որ . . . ։

— Պարոն դուքսը յանցաւո՛ր է . . . ։ Մեր թշնամիները կըրնան մոլորել հրացանակիրները, որք նոր զինուորներ են և որանցմէ ապահով չեմ։ Կ՚ուզեմ որ Կրիզօնացի պահակներդ այս իրիկունէն իսկ սկսին իրենց պաշտօնը կատարել։

Գնդապետը խոնարհութիւն ըրաւ առանց պատասխանելու։

— Բայց, շարայարեց Թագաւորը, կը մօտենայ այն ժամն ուր պիտի ազատինք այս անկարգութիւններէն։ Վաղը մեծ պարահանդէս պիտի ըլլայ պալատը . . . ։ Գիշերն ՚ի բուն պիտի պարեք, տիկիններ, և երբ առաւօտ ըլլայ, պիտի կրնաք մեզի հետ երթալ բարև ըսել և Լուվրին պատշգամին վերէն բարև տալ Մարի Տը Մէտիսիի կառուձիներուն։ Աղաչեցինք մեր տիկին մայրը որ Ճամբայ ելնէ Պլուա երթալու համար։

Լիզէթ սեղանատունէն դուրս քշեց զիս։

— Երթա՛նք, ըսաւ, վասն զի թերևս չհամբերելով խօսիմ. այս չար սիրտն ամրութիւն կը ցուցընէ միայն այն պարագաներուն մէջ ուր խնդիրն իր մայրը վշտացնելու վրայ է . . . ։ Ասկից ՚ի զատ պէտք է վազել դէպ ՚ի մեր ժամադրութեան տեղը։

— Ի՞նչ ժամադրութիւն։

— Է՛հ, չես գուշակեր . . . ։ Մեր սիրահարները մեզ կ՚սպասեն։

— Մեր սիրահարնե՞րը։

— Անշո՛ւշտ․ տոմսակին գաղտնիքն այս է ահա։ Պ․ Տը Լիւտրը դերկոմսը, որ ամիսէ մ'ի վեր սիրաբար կը քծնի քովս առանց երբէք ոչինչ ստանալ կարենալու․․․ վասն զի խիստ անգութ՝ եմ․․․ կամ լաւ ևս է ըսել՝ փորձառութիւն ունիմ․․․ վերջապէս ինչ կ'ուզես ըսէ, Պ․ Տը Լիւտրը՝ կ'ըսեմ, կը գրէ ինձ թէ շատ մտերմութիւն ունի իր գունդին մէկ երիտասարդ պաշտօնատարին հետ։ Այս նոր բարեկամը սիրող է, և դու Լուվր եկար որպէս զի միասին միաբանելու միջոցը գտնէք։ Խուրն է, Մարիօն։

Գլուխովս ստորասական նշան մ'ըրի։

— Քանի որ այդպէս է, դժուարութիւն մը չկա՛յ ամենևին։ Այս պարոնները ժամն եօթուկէսին ժամադիր եղած են մեզ. Սէն գետի եզրին նշդարիններուն ներքև։ Առ նուազն երկու ժամի չափ ազատութիւն ունինք․ դքսուհին շրջագայութիւններէն ետ դառնալով ըստ սովորութեան՝ Թագաւորին խաղարանը պիտի երթայ։ Շատ ուրախ եմ որ Պ․ Տը Լիւտրին դիտաւորութիւնները պիտի կրնամ ճշդիւ իմանալ։ Այս պարոնները սէրոյ մասին ծայրայեղ աղնուութեամբ մը չեն վարուիր։ Շատ անգամ ընկած եմ անոնց այս ծուղակը։

— Կարելի՞ բան է ատի։

— Այո՛, Աստուա՛ծ իմ։ Պարտէզին իջնենք։

— Խոհեմութի՛ւն․ դեռ շատ լոյս է․․․ եթէ մեզի տեսնող ըլլայ․․․։

— Ի՞նչ ըսել կ'ուզես, օրիորդ․ նախամեծար կը սեպե՞ս գիշերային ժամադրութիւն մը շնորհել։

— Աղէկ․ շա՛տ խենդ ես եղեր։

— Հա[illegible]արտ եղի՛ր․ խելքս գլուխս է բոլորովին։ Եթէ պզտի դերկոմսն երդում չընէ ինձ խիստ անխարդախ և օրինաւոր ամուսնութեամբ մը կարգուելու հետս, մատիս ծայրը անգամ չպիտի պագնէ։

— Շա՛տ աղէկ, ըսի Լիզէթին, և եթէ պզտի Մարգրիտը՝ ծառաս՝ այդպիսի երդում մը չընէ, կը ճամբեմ զինքը։

— Այո՛, անողոքելի՜ ըլլանք։

— Մանաւանդ սիրադրգիռ ըլլանք։

— Այդ մասին վարպետ մ'եմ։

— Հապա՜ ես։

— Ա՛խ, թշուառնե՜րը, ո՛րքան կը մեղքնամ իրենց վրայ, գոչեց Լիզէթ։

Այսպէս խօսելով արտաքին նեղ սանդուղէ մը կ'իջնէինք, որ պարտէզը կը տանէր, և երկու քայլ ետք նշդարքներուն տակը կը մտնէինք։



## Ժ

Կը պարտաւորիմ խոստովանիլ թէ երիտասարդ Տը Լիւտըը գերկոմսը կնքամօրս տղայէն շատ աւելի քարեձև էր։ Այս պարագան զիս անգութ ըլլալու շատ նպաստեց։

Մարգրիտը հեռի կեցուցի շքեղ համարձակութեամբ մը։

Լիզէթ ալ իր կողմէն՝ կը ջանար իրեն աւելի արժէք աւելցնել իր ընթացքին անաչառ արժանապատուութեամբը։ Մեր երկու պահակները շուտով անձնատուր եղան բոլորովին. խիստ դիւրին բան մ'եղաւ հարկադրել զանոնք որ նախ իրենք գաղտնի ամուսնութիւն մ'առաջարկեն մեզ։

— Գասօմբիէր, ըսաւ Մարգրիտ, հնարագէտ մա[illegible] մ'է. իր զօրախումբին քահանան փոխ պիտի տայ մեզ։

— Շա՛տ աղէկ, պարոն, ըսաւ Լիզէթ. սակայն պէտք է որ առանց Լուվրէն դուրս ելնելու կարգուինք։ Ես պարզ խոստումի մը չեմ վստահիր, և էրիկիս հետ երթալու համար միայն պիտի զատուիմ տիկին Տը Լիւյնէն։

Ընկերուհիէս նոր յայտնեցի թէ պսակի խորհուրդին առաջ որ և է ընթացք անկարելի կ'երևար ինծի.

— Քանի որ այդպէ՛ս է, գոչեց Մարգրիտ. Պասօմպիէրը ունինք գործելու: Վաղը պարահանդիսին ժամանակ կրնայ Լուվրի մատուռը տանիլ մեզի, և ձեր անձն փափաքները պիտի կատարուին:

— Ահա եղաւ որոշումը, ըսաւ դերկոմսը. կէս գիշերի մօտ պարահանդէսէն զատ զատ դուրս կ'ելլենք առանց սեթևեթի, և ապա մատուռին մէջ վերստին կը միանանք:

Ինչպէս կը տեսնենք, գործը շատ կը ծանրանար:

Ա՛լ խնդալու փափաք չունէինք, և բարեբաղդաբար գիշերուան մութը տիրել սկսելով մեր շփոթը և կարմրութիւնը կը ծածկէր.

— Շուտով տեսնուելու համար, բարեկամս, ըսաւ Լիզէթ սիրալիր ձայնով մը. անշուշտ առաջին անգամն էր ձայնը այսպիսի կերպով հանելը:

Տը Լիւտրը Լիզէթին առջև ծունկի վրայ եկաւ և սիրաւէտ ձայնով մրմնջեց.

— Վերստին տեսնուինք, կինս:

Եւս քան զես կը յուզուէինք: Մարգրիտն ալ իմ առջև ծունկի վրայ եկած էր. ձեռքս իր ձեռքին մէջ կը դողար, և սիրտս կը բաբխէր՝ եթէ ոչ սիրով՝ գէթ տեսակ մ'երկիւղով՝ միտքս բերելով մեր ամուսնութեան այնքան մօտալուտ պայմանաժամը:

— Մարիօն, կ'ըսէր Մարգրիտ, միակ ուրախութիւնս, միակ երջանկութիւնս, միակ սէրս դո՛ւն ես:

Տը Լիւտրին և Մարգրիտին սիրաբորբ եռանդները կ'սկսէին վտանգաւոր դառնալ. ուստի փախանք՝ գոչելով.

— Վա՛ղը:

Լիզէթ և ես սաստիկ կը բերկրէինք, և Պասօմպիէրին այս անձն իրողութեանց մէջ մաս ունենալը մեզ կատարելապէս վստահութիւն կը տար:

Հելվէտիական զօրաց պարոն գնդապետն այնպիսի ժամապահու-

*Թեամբ գարանակալ կ՚ըլլար, իր պաշտօնն այնքան թոյլ կը տար իրեն պալատին ամեն կողմը ժտւռ գալու, դուռերը բանալու, ամենուրեք ճամբուս վրայ ինձ հանդիպելու, որ ապահով եմ թէ առ նուազն քանի չափ համբոյր առաւ իզմէն այն ժամանակի միջոցին որ Լուվրը գալէս մինչև պարահանդիսին սկսիլն անցաւ։ Այս քան համբոյրները, եթէ միասին հաշուենք նաև միւս տասնի չափ համբոյրները զոր Էվրէօյի մէջ և ճամբուն վրայ զողցած էր իզմէն, կարծեմ թէ աղուոր վարձատրութիւն մը կը կազմէին, նա մանաւանդ երբ կը մտածեմ՝ թէ Պասօմբիէրին իրաւանցս անձնուէր ըլլալը գիտնալով յիրաւի սրտովս կը հաւանէի պագնուելու։*

*Հետևեալ օրը պարահանդէսէն առաջ տիկին տը Լիւյն Լիզէթին և ինծի համար մոխրագոյն մնդուսէ երկու մարգարտազարդ շքեղ րօպաներ բերել տուաւ, և իր գոհարներուն մէկ քանին ալ փոխ տուաւ մեզ։*

*Թուեցաւ իրեն թէ ծանրաբարոյ ենք, և այս պատճառաւ յանդիմանեց մեզի. սակայն եթէ յանդիմանութեան իբր պատասխան մեր գաղտնիքը յայտնէինք իրեն, մեծ անխոհեմութիւն մ՚ըրած կ՚ըլլայինք։*

*Դքսուհիին և մեր հագուստն ու պաճուճանքը երբ բոլորովին եղան կատարուեցան, կնքամայրս եկաւ իր հետ ունենալով Սէն-Թոմա-տիւ-Լուվրը փողոցին սովորական հիւրերը, որք էին Վիլարսօ, Մէյնար, Վօժըլա և Բօշգրուա։*

*Սառուցիւ ծեր ասպետն ինքզինքը յաղթուած չէր համարեր։*

*Բօվս եկաւ, կնասիրաբար քծնիլ ուզեց, երեք հառաչանք հանեց, չորս զանազան խօսք սկսաւ և վերջապէս ինձ երկնցուց իր թաթպանաւոր ձեռքը պարահանդիսին սրահներն երթալու համար։*

*Դժուարին պիտի ըլլար ինձ մերժել իր թեւը. ա՜լ ասպետէն ՚ի զատ ոչ զոք ունէի։*

*Պասօմբիէր՝ որ նոր եկած էր՝ իր կինը Մէյնարին կը յանձնէր և ինք կ՚առնուր տիկին Տը Լիւյնը. Վիլարսօ կնքամայրս կը տանէր, և Վօժըլա Լիզէթը գրաւած էր։*

ժամը տասն էր։

Լուվրի պալատին ձեմարաններն ճրագներով կը փողփողէին, և Թագաւորին երաժշտաց կառավարիչը տրուած նշանին վրայ կաքաւները կ՚սկսէին կարգի դրուիլ։

Այս հրաշալի տեսարանին վրայ սքանչանալով կ՚սքանչանայի։

Այս լուսափողփող բազմութիւնը, որ անընդհատ կ՚երթար ու կը դառնար, գոհարազարդ պսակներ դրուած այս ամեն կիները, ժպիտի մ՚ունքերը թռուցու ճապարող այս ամեն մարդերը, եղած աղմուկը, ամենուած փառաւորութիւնը, և ուրիշ այլ և այլ պարագաներ տեսակ մը գլխու պտոյտ կը պատճառէին ինծի, և այնքան սերտիւ կը յարէի ասպետին թեւին որ խեղճ մարդը կարծեց թէ սիրային նշան մը կ՚ընդունի ինծմէ, և արմուկի խիստ յայտարար ճնշումով մը պատասխանեց մէկ մեքենայական և բոլորովին անիմաստ շարժումիս։

Բօշգրուային այս նոր յանդգնութիւնը պատեհ առիթ սեպելով Հելվետիացիներուն գնդապետին պաշտպանութեանն ապաւինելու։

Տիկին Տը Լիւյն նոր ձգած էր գնդապետը, որպէս զի սրահներուն միւս ծայրն երթայ և Թագուհիին աթոռին բոլորովին մօտ նստի։

— Ի՞նչ է, ի՞նչ կայ, հարցուց Պասօմբիէր։

— Ի՞նչ պիտի ըլլայ, պատասխանեցի՝ Բօշգրուային նայելով. պարոն ասպետը՝ սովորական լեզուի միջոցով միտքը հասկցնելու յոյսը կորսնցնելով շարժումներու լեզուն կը գործածէ։ Ասի երկրորդ անգամն է իր կողմէն, և յուսամ թէ այս լեզուն շարունակելէ առաջ պիտի բարեհաճի կնքամայրէս արտօնութիւն ուզելու։

Բօշգրուան բոլորովին ամօթահար թողուցինք։

— Ուրախ եմ որ հետդ քիչ մ՚ազատօրէն պիտի խօսիմ, ըսի Պասօմբիէրին։ Երկու օրէ 'ի վեր իմ նկատմամբ ֆերէի մը դերը կը խաղաս, կ՚երևաս ճիշդ այն միջոցին միայն ուր կրնաս համբոյրներդ գողնալ. . . շատ է այդ զգուշաւորութիւնը, պարոն։ Ըսած եմ քեզ երբեք թէ խօսակցութիւնդ անախորժելի չէ ինծի։

— Զգուշացի՛ր, Մարիօն, սկի՛զբ մը կ'ընես ինձ։

— Ո՛չ, ամենէն առաջ բան մը միայն չանցնիր կարծեմ. պատրաստ եմ շատ ծանր գործ մը կատարելու․․․։ Ըսէ՛ ինձ նայիմ, զօրագունդիդ քահանան պիտի բերե՞ս մեզի համար։

— Այո՛, օրիորդ, պատասխանեց ցամաք կերպով մը։

— Է՛, ինչ ունիս, բարեկամ։

— Ոչի՛նչ․․․ Հոգ մի՛ ըներ․․․ Լուվրին մատուռը պիտի բացուի քեզի համար, և հարսանեկան պսակը պիտի կատարուի անարգել․․․։ Բայց, մինչև վերջը խոստացիր ինձ կատարել տալու անգթութիւնը կրկնած ունենալ։

— Բայց, գնդապե՛տ․․․։

— Ո՛չ, իրաւունք չունիմ գանգատելու. կարգուած եմ. անկարելի է ինձ սիրոյդ փոխարէն քահանայի մ'օրհնութեան գինը վճարել քեզ․․․։ Գիտեմ այս ամէն բաները, և ատոր համար աւելի դժբաղդ եմ։

Կը զղջայի Րօշգրուային թևը ձգած ըլլալուս. Պատգամբերէրին այս խօսքը տարօրինակ շփոթութիւն կը տար ինձ։

— Ինձ նայէ՛, Մարիօն, ըսաւ գնդապետը, զիս մխիթարելու և վերջին յուսադրելու միջոց մ'ունիս․․․։

— Ի՞նչ միջոց։

— Խօսքը մեր մէջ և գաղտնի մնալու պայմանաւ կամաց մը ըսէ ինձ թէ Մարքիզ Տը Սէնք-Մարը չես սիրեր, թէ երբէք չպիտի սիրես, թէ այս ամուսնութիւնը պատրուակ մ'է քեզի համար, և թէ զիս նախամեծար պիտի համարէիր եթէ ամուրի ըլլայի։

— Լա՛ւ, ըսե՛մ ուրեմն, այո՛, այդպէս է․․․ գո՞հ ես, գնդապետ։

— Չե՞ս սիրեր Մարքիզը։

— Չէ՛։

— Երբէք պիտի չսիրե՞ս։

— Երբէ՛ք։

— Այդ ամուսնութիւնը փառասիրական յաջողութիւն մ'է։

դամանդս. փնտռէ, եւ դարձիր ուսկէ որ եկար, հոս կ'սպասեմ քեզ... վազէ, շուտ վազէ։

Ասպետը փութաց հնազանդելու։

Սէն-Մօրլէնին հետ աներեւոյթ եղայ, մինչդեռ խեղճ ծերուկը դէպ եւ կ'երթար և աչքը կը յոգնեցնէր ժուռ եկողներուն ոտքին տակը ադամանդ մը գտնելու համար զոր բնաւ չունեցեր էի։

Բանահիւսն առանց ուրիշ յառաջաբանի ըսաւ ինծ.

— Շտապենք, հոս տեղ մը բարեկամ մը կայ որուն անհամբերութիւնը սաստիկ է։

— Բարեկա՞մ մը. ո՞վ է։

— Զարմանալ մի՛ ձեւացներ. գուշակեցիր անշուշտ թէ Տէպարօն է։

— Տէպարօ՞... չէ՛, չէ՛. չեմ ուզեր տեսնել զինքը...; անկարելի է, թո՛ղ զիս։

— Պէտք տեսնես զինքը, օրիորդ. տեսնելդ կարեւոր է, շատ կարեւոր է նոյն իսկ ինծի համար։ Ի՞նչ ոճիր գործեց. ի՞նչ միտքով այդքան խստութիւն ցոյց կը տաս անոր նկատմամբ։ Ութ օրէն 'ի վեր տոմսակները ետ կը ղրկես առանց բանալու։

— Իրաւ է, պարոն։ Անկից 'ի զատ միտք ունիմ իրողութիւնը կնքամօրս իմացնելու, աղաչելով որ Ճամբայ տայ Ընէօդէի վարժապետին, որ կը յանդգնի այն տոմսակները ինծ տալու։

— Ի՞նչ է այդպիսի քմահաճութեան մը պատճառը։ Չեմ հասկնար միտքդ... սակայն կը սիրէիր Էմմանուէլը. անշուշտ չարախօսութեամբ զան աչքէդ հանելու ջանք եղած է. իրաւունք չունիս, օրիորդ. իրաւունք չունի՛ս. չարախօսներուն ուշ չըրինք։ Կը հաւատեմ քեզ թէ գովելի դիտաւորութիւններով Տէպարօյին կը տանիմ քեզի։

Խօսելով հանդերձ զիս տարաւ սրահին նեղը, վեր ըրաւ դամասկեայ ծանր վարագոյրները, և դուռի մը կոճակը հրելով հազիւ լուսաւորուած բազմաթիւ սենեակներէ անցուց զիս, ուր միայն տկար կերպով մը կը լսուէր պարահանդէսին շշուկը։

Սրահին մէջ անտանելի շփոթութիւն մը կը յարուցանէր Տէպա-

թըլին անունը, որ իմ առջև կը տրուէր այն միջոցին ուր կը պատրաստուէի ուրիշի մը հետ ընդ միշտ կապուելու։ Կ'ուզէի դիմադրել Սէն-Մօրլէնին, որ կը քշէր կը տանէր զիս. սակայն դիմադրելու քաջարտութիւնը չէի զգար։

Զղջալս կը հաւնէր Սէն-Մօրլէն և միշտ կը քայլէր։

Վերջապէս՝ բոլորտիքս տիրող լռութենէն վախնալով՝ գոչեցի.

— Հէ՜, աւելի հեռի չե՞մ երթար հետդ.... Չեմ ուզեր տեսնել զինքը, ոչ ալ խօսիլ հետը....։ Մանաւանդ որ ա՛լ ժամանակն անցաւ։

— Ա՛լ ժամանակն անցա՞ւ, Մարիօ՛ն. ի՞նչ կը նշանակէ այդ խօսքը, ըսաւ Էմմանուէլ՝ յանկարծ առջևս երևալով։

Նուաղիլ զգացի, և ընկայ ծալածոյ աթոռի մը վրայ զոր Սէն-Մօրլէն առջևս բերաւ։

Թանահիւսն ապա շատ ծանր կերպով մ'ըսաւ ինձ.

— Օրիո՛րդ, կը գտնուիս այն սենեկին մէջ ուր Գերապատիւ Տիւբլէօի (Ռիշլիէօ) և ես կը բնակինք երբ ծողովին գործերը մեզ Լուվրի պալատը կը հրաւիրեն։ Խօսք տուի քեզի հոս բերելու, բայց պայմանաւ մ'որ է ձեր տեսութեան սկիզբը ներկայ գտնուիլս և առաջ իմ խօսիլս։ Այսօր կը ցաւիմ մեր ուղևորութեան ժամանակի խօսակցութեան վրայ։ Կէս մ'անգործութեամբ, կէս մ'ալ անհոգութեամբ խառնուեցայ այնպիսի տաղտուկի մ'որ իմ դերս ոչ խիստ ազնիւ և ոչ խիստ փափուկ եղաւ... սակայն յանցանքի մը դարմանը գտնելու ժամանակ կայ միշտ, և առաջապէս կը յորդորեմ Տէպարօն որ հրաժարի քեզմէ կամ հետդ կարգուելու խորհուրդէն։

Աչքերս Էմմանուէլին դարձուցի որ հեգնական ձայնով մ'ըսաւ ինձ.

— Կը տեսնես, Մարիօն, այս սիրելի բարեկամք խղճմտութեանց կ'ապացուցանէ։ Իրաւ կ'ըսեմ թէ պատուաւոր մարդու յատուկ այնպիսի քմահաճութիւններ ունէր որք սաստիկ գովութեան արժանի են։

— [illegible] է, ըսաւ Սէն-Մօրլէն, դու զիս աղայամիտ սեպէ,

դեռ կ՚ուզէի շարունակ հող քովդ ըլլալ։ Ճշմարիտ սէրը չպառաւ-
ճառաքաններ և դրութիւններ չհնարեր։

Տէպարօ ոտք ելաւ և ամենամեծ անտարբերութեամբ մ՚ըսաւ
ինձ.

— Օրիորդ, կրնաս պարահանդէսը վերադառնալ։

— Այսպէս ուրեմն, անողոքելի ես։

— Մեր առջի տեսութիւնը յիշէ, Մարիօն. ես կը յիշեմ ը-
սելս թէ քեզի շատ սիրելուս համար չեմ ուզեր ամուսնանալ
հետդ։ Հաւատարմութիւնս և կեանքս քեզի կը տամ. առելի ինչ
կ՚ուզես... շղթայ մը. բայց այդ շղթայն մեր հարսանեաց հե-
տեւեալ օրը կատղութեամբ կը խորտակէի... այո, կը քամահ-
րէի քեզի այն րոպէէն սկսելով ուր պիտի բռնադատուէիր իբր
պարտ տալ ինձ ինչ որ այսօր իբր սէր կ՚ուզեմ քեզմէն։

— Ո՛հ, պարոն։

— Քեզի կը քամահրէի, կ՚ըսեմ... այլ սակայն քեզի հա-
մար ինքզինքս մոռցնելու չափ սէր ունիմ վրադ։ Կարգի մը գծէր
այս բանը, ջանք ըրէ միտքս հասկնալու, խենդ սեպէ զիս, եթէ
կ՚ուզես, հոգս անգամ չէ... ամեն զոհողութիւններու պատ-
րաստ եմ, 'ի բաց առնլով սակայն այն զոհողութիւնները որք
կրնան վնաս տալ մեր երանութեան։

— Ըմմանուէ՛լ, մի՛ աշխատիր ինքնամոլութիւնդ արդարացնելու։
Ո՞ւր են զոհողութիւններդ։ Եւ ոչ մէկ զոհողութիւն կ՚ընես, և
իզմէ անոնց ամենը կ՚ուզես։ Եթէ քեզ մաքի ըլլամ, հասարակու-
թեան առջև յարգս պիտի կորսուի։

— Նախապաշարում, Մարիօն, նախապաշարում է այդ։ Գե-
ղանի ես, հարուստ եղիր, և վաղը բոլոր Բարիզ քու առջև
ծունկի վրայ պիտի գայ։

Եւ Տէպարօ սկսաւ ինքը ծունկի վրայ գալ իմ առջև։

— Եթէ սուտ կ՚ըսեմ, սիրելիդ իմ, եթէ սուտ կ՚ըսեմ, թո՛ղ
կայծակի գամ, կը լսե՞ս. այո, ամենէն երևելի տիկնանց պիտի
յաղթես, և թագուհիի մը պէս արքունիք պիտի ունենաս դան
ալ։ Երբ ձանձրանաս Բարիզէն, ճամբորդութիւն պիտի ընենք, և

հրապուրելի գեղեցկութիւններդ բոլոր Եւրոպայի ցոյց տալով փառաւորուելը պիտի տեսնես : Պիտի երթանք ուր որ քաղցր է արեւը, ուր որ գեղեցիկ են ծաղիկները, ուր որ Թռչունը կ'երգէ, ուր որ գինիները կ'զգլխեն : Տարուան մէն մի եղանակին մէջ նոր կլիմաներ, նոր հանդէսներ, նոր զբօսանք պիտի վայելենք : Ամէն տեղերը, ամէն ժողովուրդներու մէջ պիտի սիրուինք, և երկրիս ամէնէն գաղտնի արձագանքները մեր համբոյրներուն յիշատակը պիտի պահեն.

Տէպարօ կը խօսէր այն եռանդով որուն վտանգաւոր ազդեցութիւնը արդէն զգացեր էի : Պատրաստ էի ընկճելու :

Լուվրի ժամահարը կէս գիշերուան տասներկուքը զարկաւ :

Էմմանուէլ սարսռելով ելաւ. քաշեցի ձեռքս զոր տակաւին կը բռնէր :

— Դաստ ըղձանշելի կերպով կը վարես, պարոն, ըսի. սրտիս մէջ կան թելեր զոր կը շարժես. բայց դժբաղդաբար հանդիպեցայ մարդու մ'որ քեզի չափ չատեր ամուսնութիւնը :

— Հա՛, այո, ասպետը, ըսաւ՝ քիթմռինչ ընելով. գիտենք այդ պատմութիւնը, և նոյն կնքամայրդ կեանքդ ախորժելի ընելու ուրիշ միջոց չգտներ . . . :

— Ռօշգրուային չեմ ակնարկեր, պարոն : Ուրիշ ամուսին մը այս միջոցիս իսկ ինձ կ'սպասէ խորանին առջևը :

Տէպարօ սարսուռ մ'ունեցաւ և ոտք ելաւ :

— Զիս կը խաբե՛ս, գոչեց :

— Ո՛չ, պարոն. քեզ և ինձ անարժան բան մը կը համարիմ ստութեան դիմելը : Քիչ մ'առաջ «Ա՛լ ժամանակն անցաւ ըսի» վ այս էր ահա այն խօսքին գաղտնի նշանակութիւնը :

— Կը հաւատամ խօսքիդ, մրմռաց խռովելով : Փոքրահասակ է՛ այդ էրիկը :

— Քեզմէն աւելի փոքրահասակ, Էմմանուէլ :

— Հարուստ է :

— Խիստ հարուստ :

— Միշտ այս գիշեր պիտի կարգուիք հետը :

*— Հիմակ իսկ քովը պիտի երթամ։*

*Տէպարօ քանի մը մանրերկրորդ խորհուն երևցաւ, և ապա չանադրութեամբ ըսաւ.*

*— Աղէկ, ա՛լ իրաւունք չունիմ զանգատելու . . . ։ Երթաս բարեաւ, Մարիոն։*

*— Ըմմանուէլ, ըսի՛ երերուն ձայնով մը, մնացէ, բարեկամս . . . ։ Տակաւին կրնաս ամեն բան դադրեցնել . . . և հիմակ իսկ կը մեկնիմ հետդ եթէ կ'ուզես երդնուլ թէ պիտի ամուսնանաս հետս։*

*— Երբէք, երբէք։*

*Տէպարօ դէպ 'ի դուռը կ'ուղղուէր երբ յանկարծ Սէն-Մօրլէն վերստին երևցաւ անհնարին յուզումով և վայրենի նայուածքով. Ըմմանուէլին թևը բռնեց, անձապարանօք քովս եկաւ, և մեզ ըսաւ.*

*— Պահուեցէ՛ք, թէ ոչ կորսուած եմ։*

*Զարմացմամբ իրեն կը նայէինք. Սէն-Մօրլէն շարայարեց.*

*— Այս խուցը միայն երկու դուռ ունի. Պ. Տը Լիւսօն աջ կողմէն, մայր-թագուհին ալ ձախ կողմէն կը յառաջանայ հոս գալու համար . . . գաղտնի ժամադրութիւն մ'է այս. երբէք պիտի չներեն ինձ ականատեսներ եղած ըլլալս . . . ։ Հա՛ն, այս վարագոյրներուն տակը պահուեցէ՛ք . . . ։ Շո՛ւտ ըրէք, յանուն Աստուծոյ։*

*Սէն-Մօրլէն մեզի դէպ 'ի պատուհանին խորշը հրեց։*

*Հազիւ հասեր էինք հոն, և ահա Մարի Տը Մէտիսի և Րիշլիէօ խուցը մտան։*

*Սէն-Մօրլէնի երկիւղը մեզի ալ դրուած էր. չէինք համարձակեր ոչ շունչ առնելու, ոչ ալ շարժում մ'ընելու։*

*— Ի՞նչ անխոհեմ ընթացք, գոչեց եպիսկոպոսը՝ մայր-թագուհին տալով ծալածոյ աթոռը որու վրան ես նստեր էի պահ մ'առաջ։*

*— Երկար ատեն քեզ սպասելու կը պարտաւորէի, պարո՛ն, պատասխանեց Մարի Տը Մէտիսի։ Վեց շաբաթէ 'ի վեր դժբաղ-*

և վրդովմամբ համակուած ըլլալս գիտեմ . . . ։ Խեղճ Լէօնօրայիս դատը կը քննուի․ պիտի մոռցնեն անի ալ, ինչպէս մոռցուցին էրիկը . . . սոսկալի՛ բան․ և զիս մինակ, անմխիթար, անյոյս կը թողուս մինչդեռ շատ դիւրին է քեզ ամենուն արթուն հսկողութիւնը խաբել։ Հարկ եղաւ Պաստոմբիէրին իրեն արուած պատուէրին հակառակ վարուիլ և այս տեղ քեզ հանդիպելու հաւանիլ, թէ ոչ մեկնած կ'ըլլայի առանց քեզի տեսնելու։

— Տիկին, Նորին Վեհափառութիւնն արգիլեց զիս . . . .

— Սուտ կը խօսիս։

— Իրաւ կ'ըսեմ որ . . . ։

— Անամօթաբար սուտ կը խօսիս։ Տղաս ինքն աղաչեր էր քեզի որ հետս Պլուա գաս։

— Բայց եթէ հեռանամ պալատէն, ամեն պաշտօններէս կը զրկուիմ։ Չեն պակսիր փառամոլներ որք տեղս պիտի անցնին, հակառակորդներ որ ինձ վնասելու պիտի աշխատին։

— Ա՛հ, խօսէ՛ ուրեմն վերջապէս․ լաւագոյն կը սեպեմ այդ գարշելի անկեղծութիւնը քան թէ կեղծապատիր խօսքեր, որք միայն մէկ օգուտ ունին, այսինքն կասկածներ տալ ինձ մատնութեանդ վրայ։ Այսպէս ուրեմն, զիս կ'ուրանաս . . . զիս որ բարերարդ եմ, զիս որ թագուհիդ եմ, զիս որ տկարութիւն ունեցայ քեզի . . . ։

— Ներեցէք, տիկին . . . ։ Եթէ ձեր բոլոր ծառաները Բարիզէն հեռանան ձեզի հետ, ա՛լ ոչ որ ձեզի պիտի պաշտպանէ։

— Իրա՛ւ կ'ըսես, կրկնեց թագուհին արիւնաբոյր հեգնութեամբ մը․ ուրեմն զիս պաշտպանելո՞ւ համար պալատը կը մնաս, Սրբազա՛ն . . . զիս պաշտպանելո՞ւ համար թշնամիներուս հետ կը դաշնակցիս, տիկին Տը Լիւյնին աղջկան ծունկի վրայ կը գաս, և կը ջանաս տղայիս սիրուհին ընել զան . . . ։ Ո՛հ, լռէ՛, ամե՛ն բան գիտեմ . . . ։ Անարգաբարո՛յ, շողոմարար, աննշա՛ն և տգէ՛տ քահանայ որուն գլուխը եպիսկոպոսական խոյր դրի․ իժ զոր ծոցիս մէջ տաքցուցի։

— Տիկին, չեմ կրնար համբերել այդպիսի նախատանաց։

— Ես չինեցի քաղդը . . . ուրեմն կը պարտաւորիս ամեն բան լսել իմինէն և ամեն ընթացքիս համբերել ։

— Բայց զիս այսպէս պղծելով ինչ կը յուսաք ։

— Յուսա՜լ . . . կը համարձակի յուսա՜լ ըսել ։ Կը հրամայեմ, կը լսես, պարոն ։ Տակաւին ինձ ծառայող բաւական մեկեր կան պատժելու համար դրուժանը որ կինը կը մոռնայ, այնպիսիները որ Թագուհին կը մատնէ ։ Պէտք է հեռու Պլուա գալ ։

— Անկարելի՜ է . . . ։

— Կը պահանջեմ . գալդ, կը հրամայեմ որ գաս . գոչեց Մարի Տը Մէտիսի բարկութեամբ ։

Երակներուս մէջ սարսուռ մը կը վազէր ։

— Հա՛, հա՛, շարայարեց Մարի Տը Մէտիսի, մեծ յուսահատութիւն մ՚է այն գեղանի դքսուհիէն զատուիլը . . . և օրիորդ Տը Մօնմօրէնսի անշուշտ բացակայութեանդ վրայ պիտի լայ ։

— Բայց, յանուն Աստուծոյ, բարեհաճեցէք քիչ մը կամաց խօսելու, տիկին. այդ ալպաղակները կրնան սրահներէն լսել. մօտակայ ձեմասրահներուն մէջ մարդ կայ ։

— Ըստ կը վախնաս ։ Այս ժամադրութեան մէջ եթէ վտանգի ենթարկուող մը կայ, Թագուհին է. ինծի համար գողալու հոգէն կ՚ազատեմ քեզի ։

Մարի Տը Մէտիսին այս խօսքին վերջ կը տար երբ նայուածքը հոլահարիս հանդիպեցաւ ։ Զայն մոռցեր էի աշտանակի բաղմոցի մը վրայ որ ներս նստած աթոռին մօտ էր ։

Կատաղի աղաղակ մը լսեցինք ։

— Պարոն, գոչեց մայր-Թագուհին. հոս կին մ՚ունիս ։

— Կին մը, ըսաւ եպիսկոպոսը զարմանքով ։

Այնքան մեծ վախ մը զգացի որ ձեռքս ջղաձգային շարժում մը վարագոյրները թուլեց ։

Թագուհին վարագոյրներուն շարժիլը տեսաւ, շուտով վազեց և ուժգնակի թագստոցէս քաշելով սենեկին մէջ տեղը բերաւ զիս ։ Ընչմարած էր ոչ Տեպարօն և ոչ Սէն-Սօրլէնը՝ վասն զի պատուհանին մօտ խորշը կծկուած էին ։

— Է՛, հիմա դա՛րձեալ ուրացիր, ըսաւ Րիշլիէօյին։

Մարի Տը Մէտիսիին լանջակալին տակէն Նաբոլիական պզտիկ դաշոյն մը հանելը տեսայ, դաշոյն որուն երկաթը փայլակի մը ցոլումին պէս շողաց։ Ծունկերուս վրայ ինկայ անմռունչ և սարսափահար։

Եպիսկոպոսն ալ չէր գիտեր թէ արթո՞ւն է թէ ոչ երազի մը ազդեցութեան ներքև կը գտնուի։

— Բայց շատ աղուոր աղջիկ մ՚է եղեր, ըսաւ մայր-թագուհին ահարկու քրքիջով մը։ Թո՛յլ տուր ինձ, Պ. Րիշլիէօ, որ շնորհաւորեմ քեզի այսպիսի փափուկ ընտրութիւն մ՚ըրած ըլլալուդ համար։

Այս ըսաւ ելաւ և դաշոյնը վերցնելով.

— Անմի՛տ, թէ ոչ մեռած ես, ըսաւ ինձ։

Տէպարօ՝ ինձ սպառնացող այս վտանգէն ահաբեկ՝ հեռացաւ պալատահանէն, և Նէն-Եօրքէն ևս ստիպուեցաւ երևալու։

Թագուհին դիմակը երեսը դրաւ։

Երկու անձանց երևումէն նէ սոսկալապէս շուարեցաւ. Ներա այս շուարումը պատեհ առիթ սեպելով ոտք ելայ և արագօրէն խոյս տուի. երկիւղը թևիչք կը տար ինձ։

Վայրկեան մը չէր անցած, և ահա իրողութեան տեղէն երկու հարիւր քայլ հեռի կը գտնուէի։

Ի զուր կը ջանայի ուր գտնուիլս հասկնալու նախասենեակներու և փողոցներու լաբիւրինթոսի մը մէջ։ Պահականներուն հարցու փորձ ընելու կը պատրաստուէի երբ իմ երկու քայլ անդին ծերունի Տիւ Սէնթ-Էսբրի ասպետը նշմարեցի, որուն ահաբեկ դէմքն ալ քիչ որ և իցէ պարագայի մէջ շատ պիտի խնդացնէր զիս։

Ասպետն ուզեց խօսիլ, բայց բերանը գոցեցի և ըսի.

— Կը հասկնամ, սիրելիդ իմ Պ. Տը Րօշգրուա, աղամանդը չգտար. չեմ զարմանար։ Բարեհաճէ՛ ցոյց տալու ինձ, ո՛ւր է մատուռը . . . մեծ վտանգէ մ՚ազատեցայ հիմա, և կ՚ուզեմ շնորհակալ ըլլալ Աստուծմէ։

Զիս թևէն առնել ուզեց եռանդով։

— Չէ՛, ասպետ, չէ՛։ Շարունակէ՛ խուզարկութիւններդ, և մատուռին ճամբան ցոյց տուր ինծի միայն։

Ռօշգրուա սկսաւ ցուցնել ճամբան իր սովորական խօսքերովը, զոր իր տեսնելու ուրախութիւնն աւելի կը յօշէր և կը խառնաշփոթէր։

— Բայց, շարայարեց, կնքամայրդ ... քիչ մ'առաջ, երբ պարահանդիսէն կ'անցնէի։

— Բնական է ատի, ասպետ։ Գտէ՛ր դեղին աղամանդը, և լաւ վարձատրութիւն մը պիտի ունենաս։

— Համբոյր մը, հարցուց։

Պասօմբիեր ներկայ չէր որ հիանար այս կարելի եղածին չափ կատարեալ նոր խօսքին առջև։

— Այո՛, Ռօշգրուա, համբոյր մը կը խոստանամ, եթէ աղամանդը գտնես։

Եւ սկսայ ճամբայ շարունակել. կէս ժամի չափ ուշ մնացեր էի։

Այս անգամ որոշումս հաստատ կերպով տրուած էր. Ցէպարօյի յամառութեանը պատճառաւ զգացած զայրոյթս ալ անդրդուելի կ'ընէր այս որոշումս։

Կը կարծէի թէ տիկին Տը Սէնթ-Էվրըմօնին կրակուբոց թափելը պիտի տեսնեմ։

Գիտէի որ՝ ամուսնութեան լուրին վրայ իր զգալու առաջին բարկութեանը մէջ՝ ամեն ջանք 'ի գործ պիտի դնէր այս ամուսնութիւնը խզելու համար. սակայն կը յուսայի այն ատեն իր միտքը առնուլ անսահման յորդորներովս և թախանձալի աղաչանքովս։ Ըստ իս անկարելի էր որ տիկին Տը Սէնթ-Էվրըմօն չհաւանէր մեղմուելու և քիչ մը բարեկամութիւն ցոյց տալու ինծի երբ զաւակն ալ նորա առջև ծունկի վրայ գար և պաղատէր որ յերկնաւոր օրհնուած ամուսնական կապերը չխզէ։

Այսպէս յանդգնութեամբս յանկարծ բարձր կացութեան մը տէրն եղեր էի, և Շամբանեի խեղճ Նուիրակին աղջիկն արքունեաց ամենէն մեծ տիկնանց դասը կ'անցնէր։

Այն միջոցին ես եռանդագին աղաղակեցի.

«Ո՛ գուշակութիւն ապագայիս, ո՛ գուշակութիւն ապագայիս»։

Մարգրիտը մատուռին սեմին վրայ գտայ։

— Վերջապէս եկա՛ր, ըսաւ. անհամբերութեամբ սաստիկ կը տանջուէի...։ Քահանային համբերութիւնը կը հատնի. Պ. Տը Լիւտը և օրիորդ Տը Լօնժիմօ պսակուեցան... դեռ հիմա գացին։

— Մեզի առանց սպասելու, մրմռացի։

— Անհոգ եղիր, պիտի գտնենք զանոնք։ Դերկոմսն և ես հոս մօտ տեղ մը, Տըլարպրը—Սէք փողոցին մէջ մենական տուն մը վարձու բռնեցինք. հոն պիտի պատսպարենք մեր երջանկութիւնը, գեղանի բարեկամուհիս։

— Ա՛խ, Աստուած իմ, ըսի, այժմէ՞ն պիտի պարտաւորիմ հեռանալ։

— Անշուշտ, Մարիօն. պահ մ'ետք այլ ոչինչ պիտի կրնաս մերժել էրիկիդ։

Պահակներուն պարոն տեղակալը ասի կ'ըսէր ինձ փոքր ինչ յաղթական ձեւով մ'որ գրեթէ չէր ապահովեր զիս։ Դէպքին ամենէն զուարճալի պարագան չէր երեւար ինձ այն հնազանդութիւնն որուն ապացոյցը պիտի պահանջէր ինձմէն. բայց պէտք էր համակերպիլ։

Մատուռը գրեթէ կատարեալ մթութեան մը մէջ ընկղմած էր։ Պատուհաններ ունէր որք պատկերներուն վրայ կը բացուէին, հետեւաբար ամենամեծ անխոհեմութիւն մ'եղած կ'ըլլար ճրագները վառելը։ Միայն թէ տիրացուներու դասին ներսը լուսաւոր կէտ մը տեսայ ուր Մարգրիտ կը տանէր զիս։ Ոսկեղէն լամպ մ'էր այն որ աւագ խորանին աջ կողմը կը վառէր, և անկէ քիչ մը անդին կեցած էր Ֆրանչիսկեան քահանան՝ մեզի պսակելու պատրաստ։

Քահանային ետեւը կեցեր էին երկու պահապան զինուոր որք արդէն վկայի պաշտօն վարեր էին դերկոմսին և Լիզէթ Տը Լօնժիմօյին համար, և կը պատրաստուէին մեզի համար ալ նոյն ծառայութիւնը ընելու։

Ծնրադրեցինք քահանային առջեւ որուն գլուխը մեծ կնգու-ղով մը ծածկուած էր։

Յանկարծ իմ կը խոստովանիմ սակայն թէ այն ատեն միայն խոր-հեցայ կատարուելու պատրաստուող գործին հանդիսաւորութեան վրայ։ Մատուռին մէջ տիրող այս մթութիւնը, լռութիւնը, նուի-րական վայրն ուր կը գտնուէինք, ձեռները մեր գլուխներուն վե-րեւ երկնցող և սրբազանին խօսքեր արտասանող այս եկեղեցա-կան պաշտօնեան, վերջապէս ամէն բան ինծի տեսակ մը զարհու-րանք առթել կը նպաստէր։ Իսկոյն կը հարցնէի թէ քրէական յանցանք մը չէ՞ր այսպիսի խոստումով մը կապուիլս կնքամայրէս գաղտնի, առանց ստանալու այն կնկան հաւանութիւնը, որ ցա-ւալի և մթին կեանքէ մ'ազատած էր զիս, և որուն բարերարու-թիւնը մինչև ընտանեացս վրայ ծաւալեր էր։ Կ'զգայի թէ ո՛րքան յանցաւոր էր ընթացքս և որքան ահագին ապերախտութիւնս։

Երբ խորհրդական այո՛ն ըսելու վայրկեանն եկաւ, բոլոր ան-դամներովս դողացի, ճակատէս պաղ քրտինք մը հոսեցաւ։

Ուզեցի ելնել և փախչիլ. բայց Մարգրիտին ձեռքն զիս կը բռնէր. մատս կ'անցունէր փառաւոր մատանին որ խոստումներուն գրաւականն էր, զիս իր կի՛նը կ'անուանէր Աստուծու առջև։

Գլխու պտոյտ ունեցայ։

Մէկ բառով փարթամութեան և ուրախութեան ամբողջ ասպա-րէզ մը պիտի բանայի. մէկ բառով պիտի հաւասարէի այն սէգ գեղուհիներուն որք սպաս մ'առաջ Լուվրի սրահներուն մէջ ինծ կը դպէին իրենց արմուկովը։ Ինչպէս այն տիկնանց համար, նոյն-պէս և ինծի համար պիտի սքանչանային, զիս ալ պիտի յար-գէին և մեծարէին....։

Քահանան նորէն կը հարցնէր ինծ. խղճի տագնապին աղա-ղակը լռեցուցի, և հաստատ ձայնով մը պատասխանեցի.

— Այո՛, Մարգրիտ Տը Սէնթ-Էվրըմօնը ամուսին ընելու կը հաւանիմ։

Հազիւ լմնցուցեր էի այս խօսքը, և ահա ընդունեցայ այնպիսի սոսկալի ապտակ մ'որու նման թերևս երբէք չզարկուած է մարդ-կային այտի մը վրայ։

# ԺԱ

Այստակէն 'ի զատ բարկալի ձայնի մ'ականջներուս սապէս գոչելը լսեցի.

— Ա՛հ, պզտի Թշուառական, անարժան արարած, քեզ ըրած բարիքներս փոխարէնը այսպէ՞ս կը հատուցանես ... այս է անհերքելի բարերարութեանս արժէքը ... քեզի ընդունող հիւրասէր տան մէջ խռովութիւն ձգելու՞ կ'աշխատիս ... ։ Ա՛հ, տղուս հետ կարգուելու կը համարձակիս, մուրացկանդ դու ։ Եկուր, եկուր տե՛ս թէ ինչպէս կ'ուզեմ հատուցանել այդ աղւոր ամուսնութիւնը ։

Եթէ մատուռին սալայատակները զատուելով քայլերուս տակ հարիւր ոտք խորութեամբ անդունդ մը բանային, անմիջապէս անոր յատակը թաւալելով կ'ընկնէի այս նախատինքէն ազատելու համար ։

Պալատուհիին հոն երեւալուն պատճառն ամենապարզ էր. կը պարտաւորէի այս մասին ինքզինքս ամբաստանել թեթեւութեանս և անխոհեմութեանս համար ։ Երբ Բօզզըրուան թողուցի, պարահանդէսը վնաց նորէն և կնքամայրս գտաւ որ որդէն անհանդարտ էր զիս ա՛լ չտեսնելուն համար ։ Ասպետին ամենեին չպատուիրեր էի որ լռութիւն պահէ. հետեւաբար փութաց հանդարտելու տիկին Տը Սէնթ-Էվրըմօնը՝ ըսելով թէ Լուվրի մատուռը կը գըտնուէի ։

Հոն գտնուիլս զարմանալի երեւցաւ կնքամայրիս ։

Առանց ամենեին բան մը գուշակելու իրողութեան նկատմամբ, ուզեց սակայն տեսնել թէ ճի՞շդ էին Բօզզըրուա ասպետէն տրուած տեղեկութիւնները ։ Ուստի անոր թեւը մտաւ, և երկուքը միասին եկան որպէս զի կարենան իմանալ թէ ինչպիսի քմածին ջերմեռանդութեամբ մ'այսպէս պարահանդէսէն կը հեռանայի Աստուծոյ աղօթք ընելու համար ։

Մեղմիկ ներս մտան. մութն անտես ըրաւ մեզ անոնց մօտիկը ։

Սակայն ամէն բան իմացան ։

Այն ատեն կոմսուհին՝ շատ արդար սրամտութեան մը տեղի տալով՝ ապտակեց զիս։ Ապտակին յաջորդող յանդիմանութեան թելադիրն էր անզուսպ բարկութիւն մը։

Մենք գետինն անցեր էինք ամօթահար։

Տիկին Տը Սէնթ-Էվրըմօն՝ մէկ ձեռքովը զիս վերցուց ուժգնապէս, միւսովը քահանային կնգուղը վար առնելու փորձ ըրաւ։

— Ցիրարի, ըսաւ, շատ կ'ուզեմ տեսնել սա եկեղեցական պաշտօնէին երեսը, որ այսքան արժանաւորութեամբ կը կատարէ քահանայական պաշտօնը և դեռահաս անձերը կը պսակէ առանց անոնց ընտանեաց հրամանին։

Ֆրանչիսկեանը քայլ մ'առաւ դէպ ետ, և ահագին քահ քահ մ'արձակեց զոր մատուռին արձագանքը կրկնեց աղմկալի կերպով։

— Մի՛ աճապարէք, կոմսուհի. զիս ալ կ'ուզէք ապտակել։ Կը նայիմ որ ուժգին կը զարնէք, և խստիւ կը պատժէք այս խեղճ պատանուհին պզտի կատակի մը համար որուն հեղինակները մենք ենք։ Օ՛ն, հանդարտեցէք. կարծուածին չափ դէշութիւն մը չկայ. կրօ՛ղը տանի զիս եթէ վաւերական է պսակը։

Քահանան ասի ըսելէն ետք կնգուղը հանեց, և տեսայ որ Պասոմբիէրն էր կարծեցեալ քահանայն։ Սատանիկ շուարեր էի։

Մարգրիտ՝ այս նոր դէպքէն կնքամայրիս սաստկապէս զարմանալը պատեհ առիթ սեպելով՝ աներեւոյթ եղաւ երկու պահակներուն հետ. Ննջաւորն այս զզուելի նշաւակութեան մեղսակից էր։

Հապա՛ Լիզէթ, որ ինքզինքը օրինաւորապէս պսակուած կը կարծէր։

— Ա՛հ, գնդապետ, ըսաւ տիկին Տը Սէնթ-Էվրըմօն, չվայելէր քեզ այդպէս խեղկատակութեան դարձնել եկեղեցիին հանդէսները և զԱստուած նախատել մինչև իր տաճարին մէջ։

— Բայց, տիկին, ինծի կը վերապրէք այնպիսի ամբարիշտ դիտաւորութիւններ զոր չունեցած եմ....։ Չէ, պատուոյս վրայ կ'երդնում թէ չունեցած եմ....։ Սակայն ըսեմ միայն. ամեն օր ես քան զես կը շփոթինք կը մնանք. այս պզտի աղջիկներուն խելքը միտքը կարգուիլ է։ Եթէ ժամանակ առ ժամանակ խա-

բէութեան չդիմենք, սովամահ կը մեռնինք ... և այս վիճակն անխորժելի չէ յիրաւի ։

— Լռէ՛, պարոն, կ'ամչնամ այդ խօսքերը լսելով ։

— Եղածն եղած է, ըսաւ Պասօմբիէր. ամենէն կարճ միջոցն է՝ ըստ իս՝ անկէ հեռանալ և ամենևին չտարածել այս դէպքը. ..։ Մնաք բարեաւ ... այս բանիս վրայ կը խօսինք երբ աւելի հանդարտ ըլլաք ։

Եւ այս մասնիկը նոյնպէս աներևոյթ եղաւ ։

Մինակ մնացի կնքամայրիս և Տը Րօզզրուա ասպետին հետ ։

— Ի՞նչ դաս, ի՜նչ դաս, օրիորդ, ըսաւ ինձ կոմսուհին սուրբ տեղէն դուրս տանելով զիս ։ Ամեն մարդ վրադ պիտի խնդայ հիմա, և այսօրուանէ կը պարտաւորիմ քեզի որ և է մարդու հետ կարգելու դիտաւորութենէ հրաժարիլ.

— Իզմէն 'ի զատ, ըսաւ Րօզզրուա ... այո՛, կ'առաջարկեմ տակաւին ... և՝ եթէ կը ներէք, տիկին ...։

— Ի՞նչ. խնդրեմ բարեկամս, տակաւին այս անխոհեմ աղջիկը երբ կին կ'ընդունիս ։

Ասպետն իբր ստորասական նշան գլուխը ծռեց, և կնքամայրս՝ որ իր բարկութենէն ամօթահար կ'երևար քիչ մը՝ գրեթէ բարեկամական ձայնով մ'ըսաւ ինձ.

— Կը տեսնես, Մարիօն, նախախնամութիւնն ահա օգնութեան կը հասնի քեզ. այս գիշերուան յախուռն ընթացքդ գաղտնի պիտի պահենք. խոհեմութեամբ որոշում մ'ընելու և յանցանքներդ ինձ մոռցնելու առիթն ահա առաջին և վերջին անգամ կը պատահի ։ Թոյլ կը տամ որ Բարիզ մնաս, յատուկ թէութեամբ մ'որ է Պ. Տը Րօզզրուային հետ ամուսնանալ ....։ Ի՞նչ կ'որոշես ։

Այսօր դժուարին է ինձ նկարագրել այն անագորոյն զգայութիւնները որք այն ատեն կը յուզէին զիս ։

Ներքնապէս տեսակ մը բանդագուշանքով գրաւուած էի. գաղափարներս ուղեղիս մէջ իրարու կը զարնուէին. կը հարցնէի ինքզինք թէ խենդ եմ թէ երազ կը տեսնեմ ։ Ինձ եղած նախա-

տանաց իրականութեան վրայ ալ չկրնալով ամենափոքր կասկած մը պահել, անզօր կատղութեամբ մը յանկարծ համակուիլս զգացի։ Վրէժս այս կամ այն անձէն առնլու անհնարին փափաք ունէի, կ'ուզէի նոյն պահուն, հոն՝ ձեռքիս տակ նահատակ մը գտնել... և երբ աղէկ ըմբռնեցի կնքամայրիս առաջարկութիւնը, երբ հինօրեայ սիրահարը մօտեցաւ՝ սպառնիկ ու բախտանալով և համոզուած ըլլալով թէ պատասխանս իր յոյսը պիտի իրագործէր, նորէն անհաւատալի անխռովութիւն մ'եկաւ վրաս, և լրջութեամբ խոնարհական ձև մ'ընելով՝ ըսի ասպետին.

— Ներեցէք, պարոն... չեմ կրնար ընդունիլ ձեր առաջարկութիւնը... չէ, յիրաւի, բնաւորութեամբ շատ փոքրահաս էք. տարիները թերևս կատարելութեան վիճակի պիտի հասցնեն ձեզի, և պիտի սպասեմ որ հարիւր տարեկան հասակը մտած ըլլաք։

Ռօզղրուա շլմորելով նահանջեց։

— Գացէք, Ռօզղրուա, ըսաւ կոմսուհին։

Այն ատեն պալատին մեծ գաւիթին մէջն էինք։ Տիկին Տը Սէնթ-Էվրըմօն ձեռքս բռնեց առանց բան մ'ըսելու, և զիս հետն իր կառքն առաւ որ քիչ մ'անդին կը կենար։

Կառապանին գաղտնապէս հրաման մը տրուեցաւ։

Կառքը հիւսիսային դուռէն դուրս ելաւ, Տիւ Գօք փողոցը մտաւ, Սէնթ-Օնօրէ փողոցէն անցաւ, ապա փոխանակ ապարանքին ճամբան բռնելու դէպ 'ի Մօնմարդրի փոսերն ուղղեցաւ։

Ո՞ւր կ'երթայինք։ Չէի համարձակեր հարցնել կնքամայրիս որ միշտ լուռ էր։ Կառքը ժամանակ մ'ամայի քաղքին մէջէն գլորեցաւ. մերթ ընդ մերթ կը կենար, և գիշերուան պահնորդները շղթաները կը քակէին որպէս զի անցնինք։

Թէև մութ էր, բայց և այնպէս շուտով և դիւրութեամբ գիտցի թէ դաշտավայրներու մէջ կը գտնուէինք բոլորովին. ձիերը քալելով կ'երթային և ցից զառիթափէ մը վեր կ'ելնէին։

Ցուրտէն ու վախէս մարմնովին կը սարսէի։

Վեհերոտաբար հարցուցի կոմսուհիին թէ ո՞ւր կը տանի զիս.

չկրնալու պատասխանելու։ Վերջապէս մութին հսկայաշէն գմբէթի մը ստուերագծերը նշմարել կարծեցի. գիշերուան լռութեան միջոցին զանգակի մը ձայնը հնչեց։

Կառքը սեւաթոյր և ահալի շէնքի մ'առջև կանգ առաւ։

Մեր կառապանը նստարանէն իջաւ, դուռի մը մօտեցաւ, երկաթէ ծանր դռնահարով մ'երեք անգամ այն դուռին զարկաւ, և խուցին շատ մը կղպանքներու ճռինչը վախս աւելցուց։

Երկու կրօնուհիներ երևցան. առաջինը լապտեր մը կը բռնէր, միւսը բանալիներու ահագին տրցակ մ'ունէր մէջքը։

Այս կրօնուհիներն եկան մեր երեսները քննելու։

Կոմսուհին անշուշտ անծանօթ չէր անոնց, վասն զի անոնք անձամբ վար ըրին կառքին ապակիները և իրենց ձեռքը երկնցուցին մեզի իջեցնելու համար։

— Թողութիւն շնորհէ՛, դուքսայի ալ չկրնալով դիմադրել սարսափիս, և կնքամայրիս ոտքն ընկայ աղերսելով։

— Է՛հ, ինչ ունիս, խե՛ւ. այցելութիւն ընելու եկայ Մարի Տը Գօզիլըքէյի որ Մօնմարթրի սուրբ աբբասուհին է։ Առաւօտեան աղօթքի ժամն է հիմա. ուստի պիտի կրնայ ընդունիլ զիս։

Մտանք, դուռը մեր ետևէն գոցուեցաւ։

Տիկին Տը Սէնթ-Էվրըմօն զիս սպասաւոր քոյրին սենեակը թողուց, ապա չորս նոր կրօնուհիներու հետ ետ եկաւ։

Նորեկները շուրջս բռնեցին որպէս զի խոյս տալու արգելք ըլլան ինծի։

— Օրիորդ Տըլօրմ, ըսաւ կոմսուհին կարծր ձայնով մը, պիտի բարեհաճիս այս նուիրական տունը մնալ մինչև այն օրն ուր մայրդ պիտի գայ քեզ առնելու, նորէն Շալօն տանելու և խենդութեանցդ պատասխանատուութենէն զիս ազատելու համար։

Ցուրտ կերպով մը բարևեց զիս և աներևոյթ եղաւ։

Յուսահատութեան աղաղակ մը հանեցի, և ուզեցի անոր ետևէն սուրալ, սակայն կրօնուհիներն արգիլեցին զիս, և կառքին հեռանալը լսեցի։

Փախուստի ամենափոքր յոյս չկար։ Վանքի մը մէջ բանտար-

կուած էի․ բոլոր այլանդակ փառասիրութիւններս կը խորտակուէին վանդակապատի մը զարնուելով։

Լուվրի պալատէն մեկուսարան (cellule) մը կ՚ընկնէի։

Հաւատուհիները զիս ուժով կը բռնէին խօսարանին մէկ աթոռակին վրայ։ Կը ջանայի վազելու դէպ ՚ի դուռն որուն կղպակներն աղէտալի ձայնով մը վերստին կը գոցուէին։ Կը յուզուէի, ահարկու աղաղակներ կ՚արձակէի, կնքամայրս կը կանչէի որ ա՛լ չէր կրնար լսել ձայնս, կը լայի, կը հեծկլտայի, այլ բոլորովին ՚ի զուր։ Այս սոսկալի պատսպարանին մէջ չկար սիրտ մ՚որ վշտիս կարեկից ըլլար։ Կրօնուհիներն ինծի գերեզման մը բանալու պատրաստ ուրուականներու պէս առջևս էին տժգոյն և անբարբառ։

Անոնց ոտքն ընկայ, արտասուք թափելով աղերսեցի որ թոյլ տան ինձ փախելու։ Բայց անոնք լռելեայն զիս վերցուցին և պատրաստուեցան քարշելով տանելու։

Տեսնելով թէ չէի կրնար այս կիները յուզելու յաջողիլ, իսկոյն ծայրայեղ վշտէ մը ծայրայեղ բարկութեան մ՚անցայ։ Բիւր թշնամանք ըրի և զարկի անոնց․ մատերս անոնց լանջանակները կը քաշէին և քօղերը կը պատռէին։ Շուտով զսպեցին այս բռնաբարութիւնս և յաջողեցան հանդարտ կեցնելու զիս։ Անմիջապէս խօսարանէն դուրս տարուեցայ։

Գաւիթներէ, խոնաւ կամարներու տակէն անցուցին և լպրծուն բազրտաներէ վար իջեցուցին զիս։

Դուռ մը բացուեցաւ, զնդանի մը մէջը հրուեցայ։

Միայնակ գտնուեցայ այս զնդանին մէջ որ բոլորովին խաւարամած էր։

Դուրսէն այս դուռն ալ նիգերով գոցուեցաւ։ Միտ դրի կրօնուհիներուն քայլին որ կամարներուն ներքև իսկոյն դադրեցաւ լսուելէ, ապա ամեն բան լռութեան մէջ թաղուեցաւ։ Ա՛լ որ և է մարդկային շշունջ չհասաւ ականջս։ Կ՚զգայի թէ միայն Աստուած կրնար լսել աղաղակներս, որք պատերուն թանձրութեան մէջ կը կորսուէին։

Բարկութիւնս անցաւ և ջանացի աղօթք ընելու։

Ափսո՜ս, ափսո՜ս, ես ինքզինքս կը պարտաւորէի ամբաստանել դժբաղդութեանս համար ։ Բոլո՛ր ընթացքս մտքիս առջեւը բերելով՝ անկեղծապէս անարժան և արհամարհելի կը գտնէի զայն ։ Նոր կեանքիս մէն մի օրը նենգութեամբ և ստութեամբ նշաւակուած էր ։ Աշխարհիս սովորութեանց մասին առանց ամենեւին տեղեկութիւն մ՚ունենալու եկեր ամեն ժայռերու զարնուեր էի . ուրիշները խաբել ուզելով իմ ծուղակներուս մէջ ես ինքս ընկեր էի ։ Կը նմանէի այն անխոհեմ փալէններու* որք ճրագներու պայծառութենէն կը շլանան և անոնց բոլորտիքը դառնալու գալով իրենց թուիչքը կ՚այրեն ։

Բայց յիշատակներուս ամենէն տրտմալին ու վրդովիչն էր տիկին Տը Սէնթ–Էվրըմօնի նկատմամբ ապերախտութիւնս ։

Քաջ կը հասկնայի թէ այն օրէն սկսեալ ա՛լ անոր և իմ մէջ ամեն բան կը վերջանար ։ Երբեք պիտի չներէր ինձ ոչ իր վստահութիւնը խաբելս, ոչ իր բարերարութիւնը մոռնալս, ոչ ալ այն խօսքերը զոր իբր Բօղղրուային պատասխան ելեր էին բերնէս և որք յայտնապէս կը հաստատէին թէ մատուռին դէպքէն ետք ոչ կը վախնայի և ոչ կը զղջայի ։

Կոմսուհին կը պարտաւորէր նամակ գրել ծնողացս . մօտ օրէն մայրս պիտի գար . . . մայրս որ ա՛յնքան խստաբարոյ, ա՛յնքան արդարասէր և ա՛յնքան անողոքելի էր ։

Այս կէտին վրայ երբ կը խորհէի արիւնս երակներուս մէջ կը սառէր ։

Արդէն ժամանակն անցած էր ։ Ամենեւին լուսոյ ճառագայթ մը չէր թափանցեր զնդանս ։ Սառնային խոնաւութիւն մը կ՚իջնէր հոլանի ուսերուս վրայ և մազերս կը թրջէր ինչպէս կը թրջէ մէգ մը ։ Զիս կրաւող մահաբոյր ցուրտին շարժումով դիմադրելու ջանալով բանտին լայնութեամբն և երկայնութեամբը ժուռ կը գայի թեւերս կախած . պատերը կը շօշափէի, որոնցմէ սառնաբեկ ջուր մը կը ծորէր ․ կարծեցի թէ օձեր կը բռնեմ պատերուն վրայ ։

* Phalène. Տե՛ս ֆէրէլանէօլ ։

կուրծքէս ահաբեկ աղաւնի մը փախաւ։

— Փրկէ՛ զիս, Տէ՛ր իմ, փրկէ՛, գոչեցի։

Աղաւնիս լռեցաւ։ Իսկոյն կղպանքին մէջ բանալի մը դարձաւ։

Երկու կրօնաւորհիներ՝ գողի կանթեղ մը բռնած՝ դրան քով կեցեր էին, բարկութեանս վերջանալուն սպասելով համբերութեամբ։

Երկնաւոր ղրկուած երեւցան ինծ ասոնք, և կատարելապէս հնազանդելու խօսք տուի անոնց։

Վերջապէս ելայ բանտէն ուր հազիւ մէկ ժամէ 'ի վեր կը գըտնուէի. բայց այս կարճ ժամանակուան մէջ սոսկալի վիշտեր կրեր էի, և իւրովի երդում ըրի այլ անօգուտ կեանք մը չսկսելու։

Կրօնուհիներն հետս վարուեր էին ինչպէս կը վարուին մանկանց հետ. զիս վախցուցեր էին։

Է՛հ, Տէ՛ր Աստուած, ես ալ վերջապէս ո՛չ այնքան շատ երբես առած, անզգամ, խենդ. և՝ կը խոստովանիմ թէ նաև քիչ մը չարասիրտ մանկուհի մ'էի։ Տասնութերորդ տարիս տակաւին չլրացած էր։ Պչրասէր կը ցուցնէի ինքզինքս՝ վասն զի գեղեցիկ էի. բնաւորութեանս մէջ քիչ մը նենգաւորութիւն կար, վասն զի կին էի։ Սակայն՝ ինչ և է՝ շատ գէշ սիրտ մը չունէի, և դիւրաւ կը ճանչէի յանցանքներս։

Եթէ բնութիւնն աւելի ագահ երևած ըլլար իր պարգևներուն նկատմամբ, աւելի քիչ պակսութիւն ունեցած կ'ըլլայի. եթէ նուազ հրապոյրներ ունենայի, լաւագոյն եղած կ'ըլլայի. եթէ տգեղ ըլլայի, կարծեմ թէ բոլորովին բարեսիրտ մ'եղած կ'ըլլայի։

Արեւը կ'սկսէր ծագիլ։

Բաւական մաքուրկեկ պզտի սենեակ մը տարուեցայ։ Կրօնուհիները կրակ վառեցին հոն, վասն զի ցուրտէն ընդարմացեր էի. անկողնոյս սաւանները տաքցնելու ուշադրութիւնը անգամ ըրին և զիս յորդորեցին քիչ մը քնանալու որ անհրաժեշտ էր այնքան բուռն յուզումներէ ետք։

Երբ արթնցայ, գաղափարներուս գոյնն ոչ այնքան սև էր որ-

քան էր այն որով նախ մթահարած էր զանոնք բանտին մէջ բնակիլս։ Աղէկ մտածելով շատ յանցաւոր չէի գտներ ինքզինքս։ Ի՞նչ բանի համար կը մեղադրէր զիս կոմսուհին. իր տղային հետ կարգուիլ ուզելուս համար։ Բայց իր համովիկ տղան սրիկայ մ՚է. իր համովիկ տղան ոչ զոք իրեն կին ընելու ճամբան խիստ ուղղակի բռնող մ՚է։ Մազ մնացած էր զիս նետելու ծուղակի մը մէջ, ուսկէ ես՝ խեղճ աղջնիս՝ պիտի չկրնայի՞ պրծիլ առանց հոն ձգելու ամենէն գեղեցիկ փետուրներս։ Նա իր տղուն դէմ բռնութիւն չէր բանեցներ, և ան զիս կը խաբէր նուազ փափուկ կերպով։ Երկար չընեմ. ամեն յանցանք իմս չէ. մեղսակիցներէս աւելի պատժուեցայ. այսինքն սոսկալի ապտակ մը կերայ. քէն չեմ պահեր սակայն Տը Սէնթ–Էվրըմօնին դէմ. ինչու ինքն ալ չներէ ինձ։

Իսկոյն գրիչ մ՚առի, երկայն նամակի մը մէջ այս աղւոր խորհրդածութիւնները ընդարձակելով գրեցի, և կրօնուհիները խօսք տուին ինձ այս նամակը կնքամօրս հասցնելու։

Նամակին մէջ հոն հոս ՚ի նշան հլութեան քանի մը խօսք տեղաւորեցի. բայց էապէս կը ջանայի զիս արդարացնել՝ յանցանքը ուրիշներուն վրայ թողլով, և՝ եթէ աւելի խորհրդածէի՝ դիւրին պիտի ըլլար ինձ հասկնալ թէ այսպէս գրելով դարձեալ խիստ աղւոր անխմաստութիւն մը կ՚ընէի։

Նամակը գնաց Սէն–Թոմա–Տիւ–Լուվրը փողոցն ուր էր սիկին Տը Սէնթ–Էվրըմօնին ապարանը, և յոյսով ինքզինքս կ՚սփոփէի՝ միանգամայն խորհելով նախորդ գիշերուան գլխաւոր անձանց վրայ։ Խնդուկս չէի կրնար զսպել՝ երբ կը յիշէի այն զարմանքը որով գրաւուած էի՝ Գրանչիսկեան կրօնաւորի մը կնգուղին տակէն տակէն ելնող Պասօմբիէրին ծիծաղկոտ դէմքը տեսնելով։ Չգիտեմ ինչու կը սիրէի այս անձնեայ մարդը. իրեն դէմ ոչ այնքան ոխ ունէի որքան ունէի պահակներու պզտի տեղակալին դէմ որուն խաղալիկն էի ես որ խարդախութեանս հանճարեղ կարգադրութեանց համեմատ միայն ունէի բաղդս շինելու գործի մ՚ընել զան։

Սակայն բան մ՚ինձ իրապէս ցաւ կը տար։

Տէպարօ կրնար այս իրողութիւնը ամեն մանր պարագաներովը լսել։ Ինքնասիրութեանս յետին ծայր նուաստանալը կ՚զգայի։ Բայց այս գործին մէջ շահ ու մաս ունեցողներն անշուշտ ամեն ջանք ՚ի գործ պիտի դնեն արկածը չտարածայնելու համար. Հետեւաբար Էմմանուէլ բան մը չէր լսեր։

Նոյնպէս ցաւօք կը խորհէի խեղճ Լիզէթին վրայ։

Ո՞ւր էր նէ։ Ի՞նչ եղած էր իր շինծու էրիկին հետ։

Ցիրաւի երջանիկ կը համարէի ինքզինքս. աղէկ պրծեր էի Թակարդէն։ Ահա թերեւս այս պատճառաւ կը ներէի Պասօմբիէրին։ Եթէ իր ծպտումը չյայտնած ըլլար, այս միջոցիս խիստ օրինաւորապէս կարգուած պիտի կարծէի ինքզինքս. աւելի ցաւակցութեան արժանի պիտի ըլլայի, և կնքամայրիս առջև շատ աւելի յանցաւոր պիտի երեւայի։

Բայց մայր-Թագուհիին ձեռքն անցնող հովահարիս մէճակն ի՞նչ եղաւ։ Ասանկ երկար ժամանակ վանքի մը վանդակապատին ետեւը պիտի մնայի և անգէտ պիտի մնայի այն իրերուն նկատմամբ, որք խիստ հետաքրքրական էին ինծի համար։

Նամակս ղրկուելէն հինգ կամ վեց ժամի չափ ետք՝ երեկոյեան ժամանակ կրօնուհիներուս մէկն եկաւ իմաց տուաւ ինծ թէ վանքին մայրապետը զիս կը հրաւիրէր իր սենեակն երթալու։

Բանբերուհիին ետեւէն երթալու փութացի։

Զիս անցուց երկայն փողէ մ՚որուն աջ և ձախ կողմերը կրօնուհիներու մենարաններ կը բացուէին։ Շուտով մտայ սենեակ մ՚որ դրեթէ իմինիս նմանն էր, և ինքզինքս աւագուհիին առջեւը գտայ։

Մարի Տը Պօվիլիէյին առենօք շատ գեղեցիկ ըլլալը կը գուշակէիր, թէև խստամբերութիւնն աւերած ըլլար անոր գեղեցկութիւնը։ Տակաւին հեռի էր նէ պառաւութենէ։ Քառասնամեայ կնկան ազնիւ կերպուածքը, վայելուչ հասակը և վեհաշուք դէմքը կ՚իմացնէին թէ պատանուհին առենօք հզօր հրապոյրներով զարդարուած էր անշուշտ։

Երբ ներս սենեակը մտայ, ցոյց տուաւ ինծի կաղնիէ աթոռակ մ'որ քանդակուած փայտէ թիկնաթոռի մը մօտ էր. այս թիկնաթոռին վրայէն նոր ելած էր ու ինծի բարի եկար ըսելու համար։

Ապա նորէն նստաւ և վար ըրաւ աչերը, իբր թէ ինծի խօսք ուղղելէն առաջ ուզէր մտովին հաւաքուիլ։

Վերջապէս անոյշ և համբերատար ձայնով մ'ըսաւ ինծի.

— Շատ պզտիկ ես, աղջիկս...։ Չպարտաւորեցար սակայն նշմարելու թէ մենք լալու և տառապելու համար այս աշխարհիս մէջ կ'գտնուինք։ Երբ երանութիւնը ուղիղ ճամբէն խոտորելով կը փնտռենք, Աստուծոյ ձեռքը կը պատժէ մեզի։ Ամենէն ցաւակցութեան արժանի են անոնք որոնց կը խնայէ այս աշխարհիս մէջ, վասն զի հանդերձեալ աշխարհի մէջ պիտի պատժէ զանոնք։ Ահա այս պատճառաւ ստուգապէս քրիստոնեայ անձերն ամեն բան, անիրաւ բաները անգամ կ'ընդունին ապաշխարութեան տեղով. այսպէս ընդունիլն արժանիք մ'է յերկինս...։ Այս առաւօտուան քեզի դէմ գործածուած միջոցը խիստ գտար, աղջիկս։

— Ո՛հ, տիկին, արժանի եղեր էի այն միջոցին։

— Պատիւ կը բերէ քեզ այդ պատասխանը։ Սակայն կը պարտաւորիմ ըսել թէ իմ հրամանաւ չէ ստորերկիրը տարուիլդ։ Տիկին կոմսուհիէն բաժնուելով հարկադրեցայ առաւօտեան աղօթքիս երթալու, և՝ աղօթքի միջոցին՝ երբ փոխ–վանամօր խորհուրդ հարցուեցաւ՝ բաւականէն աւելի խստութիւն ցոյց տուաւ քու նկատմամբ։

. — Բոլոր սիրտովս կը ներեմ իրեն, տիկին։ Իցիւ թէ կրօնաւորները՝ զոր սաստկութեամբս թշնամանեցի՝ մոռնային յանցանքս ինչպէս ես պատիժը կը մոռնամ։

— Քիչ մ'առաջ նամակ մը գրեցիր կնքամայրիդ, շարայարեց վանամայրը տեսակ մը վարանումով...։ Ահա այն գիրն որով պատասխան կը տրուի քուկինիդ։ Նաև քեզ ղրկուեր են այն բաները որք քուկդ են։

— Աստուած իմ, բոլորովին կորսուեցայ, գոչեցի իւրովի։

Այս քանի մը խօսքը կը ջնջէին այն յոյսը զոր ցնորները ի-

րութիւններ սեպելու, քիչ մը շատ պատրաստ երեւակայութիւնս ունեցած էր առատ իսկ։ Տիկին Տը Սէնթ-Էվրըմոն ինծի յանձնել կը տար այն առարկաները որք իմս էին. ուրեմն ստուգապէս որոշած էր իր ապարանքին սեմը արգիլել ինծի. ուրեմն կը պարտաւորէի բանտարկուած մնալու որոշում ընել՝ սոսկալի սպառնալիքի մը հետեւանքին սպասելով։

— Նորանոր վիշտեր կը նախատեսես, ըսաւ մայրապետը. քաջասրտութիւն ունեցիր, աղջիկս. եւ եթէ Տիրոջ զոհ մը մատուցանելու առիթը պատահի, մի փախցներ զայն։

Այս նամակը երկնցուց ինծի. բայց, անոր պարունակութիւնը կը գուշակէի։

Ահաւասիկ կնքամայրիս անողորմ պատասխանը.

«Էվրէօյի մէջ օրիորդ Տըլօրմ երիկ մը կամ վանքը ընտրելու մասին կը վարանէր։ Արդ այսօր նէ կը պարտաւորի նուազ յօժարութիւն ունենալ կարգուելու. ամուսնութիւնն այնքան անյաջող կ'երթայ իրեն որ չկրնար վանքը նախամեծար չընտրել։ Իր ամենէն սիրելի իղձերը կանխաւ կատարել կարծեցի ես անձամբ զինքը Մօնմարթրի վանքը տեղաւորելով ուր աղէկ կ'ընէ կարելի եղածին չափ շուտ հագնելով նորընծայի զգեստը, ուրիշ է եթէ՝ իր յօժարութեանց մէկ նոր փոփոխութեամբը նախապատիւ համարի Շամբաներ երթալ եւ մայրը գտնել իր ընտանեաց շնորհաւորութիւնները ընդունելու համար»։

Թուղթը ձեռքէս ինկաւ, եւ երեսիս վրայ դեղնութիւն մը ծաւալեցաւ բոլորովին։

Վանամայրը զիս նուաղելու մօտ տեսնելով՝ թեւերը երկնցուց եւ զիս բռնեց անկեցուկ աթոռակին վրայ ուր նստեր էի։

— Յիշէ՛ քիչ մ'առաջ ըսած խօսքերս, ըսաւ ան. «Մեզ անիրաւ երեւցող բաները անգամ պէտք է ապաշխարութեան օգուտ ընդունիլ. ընդունիլն արժանիք մ'է յերկինս»։ Այս խօսքերը արտաբերած ըլլալս առանց պատճառի չէր, աղջիկս....։ Կնքամայրդ չպիտի հաւանի ողոքուելու։

Բոլորովին սարսափած էի։

Մայրապետին սենեակը մտնելով չէի յուսար թէ այսպիսի տրտմալի լուրեր պիտի առնուի. այս սրահն ալ յուսահատութիւնս աւելի սաստկութեամբ յայտնեց՝ յա

Զնդանէ մ՚ելլէր և վայելուչ կերպով մը խնամուեր էի. այս հակապատկերին ազդեցութիւնը կրելով սխալ դատողութեամբս ինձ նպաստաւոր եզրակացութիւններ հաներ էի։ Ըստ իս յայտնի էր թէ ինչպէս կրօնուհիները նոյնպէս և տիկին Տը Սէնթ–Էվ–րըմօն ալ գէթ էին վախ տալ ինձ։ Ցիմար միտքս բացարձակ սարսափէ մ՚ելած և կատարեալ անդորրութիւն մ՚ընդունած էր առանց անցումի։ Խորովի կ՚ըսէի թէ կոմսուհին այսքան ծանր կեր–պով զիս պիտի զղջացնէ կատակի մը համար, և սար վրայ շատ թեթև և անվայել նամակ մը ղրկեր էի՝ մոռնալով թէ Լուվրի մատուռին մէջ ինծի համար այն կատակը խիստ անկատակ էր։

Պատիժը շուտ հասաւ, և պահ մ՚աներևոյթ եղող վիշտս ա–ւելի սաստկութեամբ զգալի եղաւ։

Մարի Տը Պօվիլիէ տակաւին կը բռնէր զիս։

Գունաթեկ դէմքս, տխուր նայուածքս և կուրծքիս շառաչաւ ել և էջը տեսնելով՝ ըսաւ ինձ.

— Լա՛ց, որդեակս, լա՛ց . . . լացը սփոփիչ է։ Ո՜հ, հաւ–տա՛ որ քեզմէն աւելի ծանչած եմ վիշտերը։ Բնութիւնը ակար է, և սրտին փոթորիկներին՝ ամպերուն փոթորիկներուն պէս՝ կը պարտաւորին անձրևի դառնալ։ Մեր տրտմալի մարդութիւնն իր ընթացքը ունենալ կ՚ուզէ . . . ։ Լա՛ց, աղջիկս, լա՛ց . . . ա–ղօթքն արտասուքէն ետք կը գայ։

Թուեցաւ ինձ թէ վիշտս սփոփելու համար յատկապէս յերկ–նաւոր իջնող հրեշտակի մը ձայնը կը լսեմ։ Սկսայ հեծկլտալ, և մայրապետին ծունկին ընկայ՝ գոչելով.

— Տիկի՛ն, գութ ունեցէ՛ք իմ վրայ, կ՚ուզէի մեռնի՜լ։

— Այո՛, այնպէս չէ՞ . . . վասն զի ան ամենեւի՛ն անհաւատա–րիմ չեղաւ քեզ . . . ուրեմն շատ կը սիրես զան։

Քաղցր կարեկցութեան մը ձայնով արտաբերուած այս քանի մը խօսքը լսելով ինքզինքէս և յուսահատութենէս ամչցայ։

Իրօք ի՞նչ էր արտօսքիս պատճառը։ Եթէ սիրած ըլլայի Մարգրիտը, թուռն վիշտս կրնար չքմեղութիւն մը գտնել... բայց չէի սիրեր, բնաւ չսիրեր էի զան։ Ուրեմն ի՞նչ բանի վրայ կը ցաւէի. կորսուած ապագայի մը, աշխարհային ուրախութիւններու, պչրասիրական գոհունակութիւններու վրայ։ Բոլոր վիշտերս գձուձ և անարգ ինքնամոլութենէ մը կ'աղբերանային. կը վախնայի նորէն ընտանեացս քովը երթալ, անշուք կեանքս վերստին վարել. չկար յիս և ոչ իսկ մէկ առաքինութիւն որ նուաստութենէ ազատ ըլլար և զոր կարենայի խոստովանիլ արքայութեան կրօնուհիին որ բարեսիրտ ըլլալով վիճակիս վրայ կը ցաւակցէր։

Երեսս գոցեցի, և վիշտս՝ եթէ տակաւին կը տևէր՝ նոյն միջոցին զղջումի նմանութիւն մ'ունէր։

Մարի Տը Պօվիլիէ չէր գիտեր թէ որքան անարժան էի իր միխիթարութեանց։

— Ափսո՛ս, խե՜ղճ որդեակս, ըսաւ, այս աշխարհիս մէջ այսպէս հեծկլտանքով և արտասուքով կը վերջանայ ամեն սէր։ Այս դրուժան սէրքէն արտադրուող հաճոյքը չմօտիր այն անարատ ուրախութեանց զոր կը վայելեն Աստուծոյ ծառայողները։ Ինչո՞ւ արարածին յարինք և երջանկութիւնը անորմէն ուզենք։ Եղէգն եղէգին նեցուկ չըլլար, աղջիկս։ Ի՞նչ է սէրը, ի՞նչ է նոյն իսկ թագաւորի մը սէրը. կորնչելի զգացում մը, որ իր ետևէն ցաւեր և խայտառակութիւն կը թողու։ Մտիկ ըրէ ինձ, սիրելի որդեակ, թող տո՛ւր որ փորձառութիւնս քու փորձառութեան առաջնորդ ըլլայ....։ Ատելութիւն մի՛ կրեր կոմսուհիին դէմ. նէ աշխարհիս մէջն է. աշխարհիս տրամաբանութեան կը հետևի։ Իր տղան հարուստ է, իսկ դուն աղքատ. ազնուական է ան, իսկ դու ժողովուրդի զաւակ. բնաւ իր հաւանութիւնը պիտի չտայ ամուսնութեանդ։ Հաւտա՛ ինձ, դարձի՛ր ծնողացդ քով....։

— Չէ՛, չէ՛, գոչեցի։ Յանո՛ւն Աստուծոյ, տիկին, ազատէ՛ զիս մայրիս բարկութենէն... և քեզի պիտի օրհնեմ, սիրեմ, խրատներուդ պիտի հնազանդիմ։

— Բայց, ըսաւ վանամայրը, ինձ պատուիրեցին որ մայրիդ, միայն մայրիդ յանձնեմ քեզի։

— Ո՛հ, պիտի աքօղիմ, կրօնուհի պիտի ըլլամ... այո, ա՛լ չեմ թողուր քեզի։

Մայրապետը սիրալիրն համբուրեց զիս։

— Աղջիկս, կրկնեց նա, եթէ Աստուած իր բարութեամբը քեզ տուաւ այս սուրբ կոչումը, փառք կը տամ իրեն թէ քեզի և թէ ինծի համար, վասն զի համակրութիւն ունիմ վրադ. կ'զգամ թէ կը սիրեմ քեզի։

Մարի Տը Պօվիլիէ զիս իր քովը պահեց մինչև երեկոյեան նախընթրիքը։

Կրօնքն այսքան մխիթարական և զօրավոր կերպարանքով երևցած չէր երբէք. կ'զգայի թէ երկնային բալասան մը կ'իջնէր սրտիս վրայ, և աչքէս աներևոյթ կ'ըլլային հպարտութեան և փառամոլութեան այն ամպերն որք մինչև այն ատեն զիս կուրցեր էին։ Հաստատ որոշեր էի վանքը մնալ և ա՛լ չզատուիլ այն առաքինի և արժանապատիւ կնիկէն որուն խօսքերը չարութեան ամէն բնազդումներս կը հալածէին և առաքինութեան ճաշակը կը տային ինծի։

Իսկոյն երկրորդ նամակ մը գրելով կնքամօրս աղերսեցի զինքը որ ծնողացս ղրկած ազդարարութիւնը ետ առնու։ Մայրս Բարիզ կանչելն այսուհետև ինչ օգուտ ունէր քանի որ կրօնական պատսպարանի մը մէջ թաղուելու և մնացորդ կեանքս հոն անցունելու կը պատրաստուէի։

Կոմսուհին ընդունեցաւ այս խնդիրս, և օժիտս վանքին վճարելու խօսք տուաւ։

Այն օրէն սկսեալ Մարի Տը Պօվիլիէ ինծի համար ընտանեացս առջև երաշխաւոր էր։

Շաբաթ մ'անցաւ։

Ես քան զևս կը հաստատուէի բարձր որոշումիս մէջ. անկեղծաբար բարեպաշտ եղեր էի, և խորաններուն առջև կը գտնէի քաղցրաւէտ հանդարտութիւն մը, անխառն երանութիւն մը զոր չճանչեր էի աշխարհիս մէջ։ Վանամայրին խօսակցութիւնն և իր քրիստոնէական յորդորներն անհուն հրապոյր կ'ընծայէին ինծի. ան-

հանգիստ կ'զգայի ինքզինքս երբ կը զարնէր այն ժամը ուր սովորաբար զիս կ'ընդունէր ան։

Ամէն օր երկու անգամ բաւական երկար այցելութիւն կ'ընէի իրեն։

Երբեմնակի զիս հետը կ'առնէր պտոյտ ընելու համար, և միասին կ'երթայինք աբբայարանին լայն պատերուն վրայ ուսկից անբաւ մայրաքաղաքը մեր առջևը կ'երևար իր բոլոր տարածութեամբը։ Կը քննէինք այս շէնքերու անտառը և քարեղէն աշխարհը. իրիկուններուն անոր պալատներուն պայծառ լոյսերը կը նշմարէինք, և անոր հանդէսներուն հեռաւոր աղմուկը մինչև մեր ականջները կը հասնէր։

Սակայն կուրծքէս հառաչանք խոյս չէր տար բնաւ. զինքն ամենևին չէր գար սիրտս պաշարելու։ Քովս ունէի ապաշաւի հրեշտակ մ'որ խօսքով մը կրնար նայուածքս երկրէն անջատել և դէպ երկինք տանիլ։

Աչերուս արտասուքով լեցուիլը կ'զգամ երբ այսօր կը յիշեմ այն բոլորովին անթերի հանդարտութեան և անարատ երջանկութեան վայրկեանները։

Ինչո՞ւ թողուցի ձեզի, սրբանուէ՛ր մենարաններ, ուր առաքինութիւնն իր քաղցրութիւնը ցոյց տուած էր ինձ։ Անիծեա՜լ ըլլայ այն օրն որ զիս ձեր շրջապատէն դուրս հանեց, և հանգըստեան զոգէն փոթորիկներու մէջը նետեց։

Ճակատիս վրայ գրուած էր որ բախտս կատարեմ։

Սատանան երդում ըրաւ զիս Աստուծմէ ետ առնուլ։ Այնքան սատանութիւն և խաբէութիւն բանեցուց, սրտիս քնացած յօժարութիւնները այնքան յարմարապէս գրգռեց, և դէպքերը՝ որք կը պարտաւորէին վանքէն կորզել զիս՝ այնպիսի արագութեամբ իրարու յաջորդեցին որ յաղթուեցայ առանց դիմադրութեան արժանիքը ունենալ կարենալու։

Ամիսէ մ'ի վեր մենաստանին մէջ խիստ զարմանալի յուզում մ'երևան կ'ելլէր։

Հոն հօս, գաւիթներուն, պարտէզներուն, ննջարաններուն մէջ

գաղտնի ժողովակներ կ'ըլլային ուր գաղտնապէս կը խօսակցէին ։ Ամեն երեսները տխուր, ամեն ականջներն ուշադիր էին ։

Սովորաբար կրօնուհիներուն մին ժողովին միջնը կը ճառաբանէր ։

Իր ընկերուհիները հաւանութեան շարժումներով կը պատասխանէին նորա ճառախօսութեան, և ոմանք շրջակաները կը հըրկէին, որպէս զի գդակը գլուխը ծածկուած առեհաքանին իմաց տան եթէ դաւադրութենէն դուրս մնացող կրօնուհի մը գար ։

Վասն զի ստուգիւ դաւադրութիւն մը կար. այս մասին յաջողակ էին կրօնուհիները պալատի մարդկանց պէս ։

Բազմիցս այս խումբերուն մօտէն անցեր էի, և երևումովս վառվռուն խօսակցութենէ մ'ետք յանկարծ խորին լռութեան մը յաջորդելը դիտեր էի ։ Այս բանը վտանգաւոր երեցաւ ինծ, և պարտ համարեցի վանամայրին իմացնել իրողութիւնը ։

Նէ սաստիկ տժգունեցաւ և պատասխանեց ինծ.

— Երկար ատենէ 'ի վեր գիտեմ անոնց ատելութիւնը, կը գուշակեմ իրենց սոսկալի նպատակները. պիտի մեռցնեն զիս ։

— Սո՛ւրբ Աստուած, գոչեցի, ի՞նչ կ'ըսես, տիկին ։

— Ո՛հ, մրմնջեց խոովութեամբ, թերևս 'ի վերուստ պատիժ մ'է այս . . . ։ Չէի պարտաւորեր ընդունիլ այս վանամայրութեան տիտղոսը . . . արժանի չէի այս տիտղոսին ։ Մեր քոյրերուն մեծագոյն մասը գիտէ այն դայթակղութիւնը զոր ատենօք տուի վանքին ։

— Գայթակղութի՛ւնը, կրկնեցի շուարումով ։

— Այո՛, աղջիկս, տրտմալի մեղուհի մը կը տեսնես յիս, և օրուան մը խեւութեանս վրայ որքան ալ լամ, քիչ է ։ Ինչո՞ւ չխոստովանիմ քեզ այն խեւութիւնս. ագան կամ անագան աղէտալի մանր պարագաներ պիտի լսես . . . վասն զի ապահով եմ թէ այս մանր պարագաներուն վրայ կը խօսին այն կրօնուհիները, և ահա քեզ պիտի ըսեմ ոճիրս, որպէս զի ուրիշներէն չլսես զայն ։

Եւ ահա պատմեց ինծ իր պատմութիւնը, որու միջոցին շատ անգամ աչերս վար ըրի նորա կարմրիլը չտեսնելու համար ։

# ԺԲ

Տը Սէնթ-Էյնեան կոմսին կրտսեր աղջիկը՝ Մարի Տը Պօվիլիէ՝ որ իր պատանութեան ժամանակը վանքը ձգուած էր՝ Մօնմարթրի աբբայարանին մէջ ուխտադրութիւնը կատարելու և կրօնուհի ըլլալու պատրաստուած էր երբ Անրի Չորրորդ՝ Արգէ և Իվրիյի Ճակատամարտերէն ետք ահարկու դառնալով եկաւ մայրաքաղաքը պաշարեց։

Իր զօրաց կայանքը հաստատուած կը գտնուէին վանքին մօտ, որու կանոնն այն ատեն բոլորովին թուլցած էր։

Կրօնուհիները չէին նեղուեր, յայտնապէս կոչունք կ՚ընէին, և գլխաւոր պաշտօնատարներուն հետ իշխանը կ՚ընդունէին որ երկրին ամենէն յանդուգն յաղթողն երեցաւ ամեն անգամ որ հարկ եղաւ յարձակումով տիրել քաղաքի մը կամ կնային սրտի մը։

Անրի վանական հոյլին մէջ շուտով նշմարեց նորընծայուհի մը, որուն յայտնապէս քծնեցաւ։

Մարի Տը Պօվիլիէն էր այս նորընծայուհին։

Գիշեր մ՚Անրի նորա սենեակը մտնելու յանդգնութիւնը ունեցաւ։

Նորա քրիստոնէական սարսափները փարատեց, դիմադրութեանը յաղթեց և վերջապէս համոզեց իր քօղը նետելու և խոյս տալու մետաքսեայ ելարանի մը միջոցով, որ արևմտեան կողմէն վանքը պաշտպանող պարսպին ատամանց մէկին կապուած էր։

Ապա Մարին Քէօվրի դղեակը տարաւ, ուր Անրի ամենայն հանգստութեամբ կ՚երթար այցելութիւն կ՚ընէր անոր։

Սակայն աղետալի դիպուածով մ՚այս դղեկին մէջ Մարիին մէկ տոհմուհին կար Գաբրիէլուհի անուամբ, որ աչքովը քաջ խաղալ գիտէր, և որ Թագաւորին խեղճ նորընծայուհիին վրայ ունեցած սէրը մարեց։ Մարի պչրասիրութեան խաբէութիւնները չէր գիտեր ամենևին։ Լոկ իր սրտովը կը սիրէր նէ, մինչդե

իր առհմուհին շատ կը սիրէր խելքովը, և խելքը շատ քիչ ան-գամ կը կորսուէր ամենէն քաղցր հեշտութեանց դոզն իսկ։

Մարի շուտով մոռցուեցաւ Գաբրիէլուհիին նենգութեանց շնորհիւ, և սովրուեցաւ վանքը դառնալու։

Եկաւ խորանին առջև իր յանցանքը ողբալ, ուխտը կատարեց, կրօնուհի եղաւ, և իր յեղյեղուկ սիրողին հրամանաւը մայրա-պետ եղաւ Ճիշդ այն վանքին ուսկէ խոյս տուած էր անոր ետևէն երթալու համար. տարօրինակ մխիթարութիւն, զարմանալի՜ յի-շատակ։

Վանամայրը տաք տաք արտասուք կը թափէր այս տրտմալի պարագաները ինձ պատմելով։ Տեսայ թէ սէրն ո՛րքան խորունկ արմատներ կը թողու կնիկի սրտի մը մէջ։ Վանքի անաշառ գմբէթներուն ներքև Մարի չդադրած էր Անրին սիրելէ, և հի-մակ անոր յիշատակը կը պաշտէր։ Սրտին վրայ կախուած մե-տայեօն մ'արքայական սիրահարին պատկերը կը պարունակէր։ Մետաքսեայ ելարանը ցոյց տուաւ ինձ նէ։ Մայրապետութեան պաշտօնը վարել սկսած միջոցին իր կրօնուհիներուն ձեռքէն դժուարութեամբ առած էր այս դայթակղութեան նշանայաղթը։ Ապա արինաթաթաւ կտաւ մը տեսայ, զոր Մարի ջերմեռանդու-թեամբ պայպաւ, և զոր Ռավայեագի* ոճիրին հետևեալ օրը Պ. Տը Պասօմբիէր բերաւ, ըսաւ վանամայրը։

Այս Պասօմբիէրի անունը սարսուռ մը տուաւ ինձ, և յան-կարծ զիս տարաւ դէպ անցեալ մը զոր մեռած կը կարծէի։

Մարի Տը Պօմիլիէյի հետ լացի. իր ողբալի պատմութիւնը սիրտս կը տրտմեցնէր, և նորա վրայ ունեցած սիրոյս աւելնալը կ'զգայի. բայց այս յաւելումին փոխարէն վանամայրն այն օրէն սկսելով իջաւ այն պատուանդանէն ուր զինքը կը տեղաւորէր յարգս ու համարումս։ Ակամայ կը զրկէի զինքը այն փառապսա-կէն որով կը հաճէի պսակել իր ճակատը։ Սուրբ մայրապե-տին տեղ՝ որու մտիկ կ'ընէի Աստուծոյ մտի՛կ ընելու պէս՝ խեղճ

*Եղեռնին ժեղուէին ո՛ր Անրի Դ.ը սպաննեց։ Ծ. Թ.

և անբաղդ կին մը տեսայ, որ ինք նոյնպէս իր սեռին տկարութեան նահատակուած էր, և որ իրաւունք ունէր մխիթարելու և ցաւակցելու, այլ ոչ պախարակելու և աղարտելու։

Անշուշտ նէ հասկցաւ իր խոստովանութեան հետևանքը, վասն զի ըսաւ ինձ.

— Ա՛խ, անմեղ զաւակս, շա՛տ յանցաւոր կը գտնես զիս. ապաշխարութիւնը Տիրոջ առջև յանցանքը կը լուայ, բայց մարդերու աչքը միշտ կը տեսնէ զայն։ Կը պարտաւորիմ իմ ձեռքովս կազմուած կացութեանս հետևանքը ընդունիլ և խոնարհիլ երբ պէտք է խոնարհիլ։ Եթէ օտար բերան մը հաղորդէր քեզ այս մանր պարագաները, թերևս այլայլելով հաղորդէր։ Յանցանքէս 'ի վեր շարունակ զրպարտութիւն կ'ընեն էութեանս դէմ։ Պնդեցին թէ վանքը վերադառնալէս ետք թագաւորը շատ անգամ ինձ այցելութեան եկած է . . . անվայել ստութիւն մ'է այս։ Քսան տարիէ 'ի վեր ապաշխարանք քաշելս և լալս չկրցան մեր քոյրերուն առջև թողութիւն գտնելու արժանի ընել զիս։ Վերանորոգում մը ստիպողական կը դառնար. պարտաւորութիւններս ինձ կը հրամայէին գրգռել զայն. մեր քոյրերն անընդհատ խոչընդոտներ հանեցին, ամենէն փրկաւէտ միջոցներս անընդհատ մերժեցին։ Վերջապէս մեծ հարուածը տալու որոշումը ըրի։ Չեմ ուզեր մեռնիլ միաբանութիւնը ձգելով այն ողբալի թուլութեան մէջ որ կորստեանս պատճառն եղաւ . . . . Չէ՛, չէ՛։ Ազա՛տ են դաւադրելու, ազա՛տ են կեանքիս դէմ ոճիր գործելու. . . . Բայց Աստուած կը խօսի, և ես կը հնազանդիմ։

Աղերսեց զիս որ բոլոր զօրութեամբս աշխատիմ դաւաճանութիւններուն դիտաւորութիւնը իմանալու։

Պէտք չունէի այս աղաչանքին, և այն վախերն՝ որով գրաւուած երևցաւ նէ՝ այնքան մեծ վիշտ մը կը տային ինձ որ արաշեցի դաւադրութիւնը 'ի դերև հանել կամ ես ալ անոր նահատակն ըլլալ։

Դիւրին էր վանամայրին թշնամուհիները զանազանել այն կրօնուհիներէն որք իրեն հնազանդ կը մնային։

Առջինները կը պահուէին, կը փսփսային, ահարեկ կերպարան մը կը կրէին. երկրորդները պարզապէս սովորական կարգին կը հեռուէին, սակայն քիչ մը զարմանք ցոյց տալով երբ իրենց ընկերուհիներուն գաղտնի խօսակցութիւնները կը տեսնէին:

Կարգ ըստ կարգէ հաւատարիմ կրօնուհիներուն մօտեցայ:

Անոնց երկիւղը աւելցնելով, եռանդը գրգռելով յաջողեցայ զօրաւոր հակական (contre-mine) մը հաստատելու, և 'ի նպաստ բարութեան դաւադրութիւնն աւելի կուսակիցներ ունեցաւ քան թէ դէշութեան համար դաւադրութիւնը:

Երբ երկու բանակներն ուրուագրեցան, ժամանակ առ ժամանակ քանի մը նախամարտ կռիւներ եղան:

Չորս կամ հինգ դասալիքներ մեր վրաններն անցան, և իմացայ որ մեքենայութիւնը փոխ-վանամայրին փառասիրական նպատակներուն համար կը նիւթուէր: Նէ Մարի Տը Պօվիլիէյի տխազոսին և պաշտօնին աչք տնկած էր:

Արդ տիկին փոխ-վանամայրը ժամանակաւ զիս զնդանը նետելու հրամանը տուած ըլլալով, կ'ուզէի իր այս ազնուութեան փոխարէնը կարելի եղածին չափ շուտ հատուցանել իրեն:

Բայց ներա դէմ ապացոյցներու պէտք ունէի, և ամեն օր աւելի դժուարին կ'ըլլար ապացոյց ստանալը. Երկու բանակին մէջ բացարձակ էր անվստահութիւնը. անյայտ կասկածներ ունէի միայն. հրաշալի յաջողակութեամբ կը պահուէին թշնամուհիները, և լանջանակի կեղծաւորութիւնը սքանչելիք կը գործէր անոնց քով:

Այս ամեն կրօնուհիներուն բոլորովին անկեղծ բարեպաշտութեան մը դիմակով մի և նոյն տապանակին առջև ակնկոր և ձեռնամած ժողովուիլը տեսնելով և գիտնալով սակայն թէ անոնցմէ իւրաքանչիւր ոք սրտին մէջ ատելութեան թոյն մը կը կրէ և յօժարակամ կ'ուզէ ըղունգով յօշել իր առջև ծնրադրած ընկերուհին, ստուգիւ կը սոսկայի:

Այս ամեն բաները չէին հաստատեր այն յանկարծական կոչումը զոր վանքին համար զգացեր էի: Նորընծայութեան զգեստն արդէն ծանր կը գար ինծ:

Այս կիները ամեն բանի կարող համարելով և մայրապետին սարսափները տաղձուանէն աւելի աղէկ ըմբռնելով՝ աղաչեցի որ Ճաշարանին մէջ կերակուր չուտէ և իր սենեկին մէջ գործածէ այնպիսի սնունդներ որոնց փորձն եղած ըլլայ։ Բայց այս զգուշութիւնն ալ անօգուտ կ'ըլլար եթէ աչերս կատարելապէս բացած չըլլային։ Դատաւորութեան գաղտնիք թելերը բռնելու յայտ կարելով, մեր թշնամիներուն ամեն ընթացքը և շարժումները կը գիտէի, համառօտ որոշած ըլլալով աղմուկ մը հանել եթէ փոխ—մայրապետը ամօթապարտ ձգելու առիթը ներկայանար։

Այս առիթը ներկայացաւ Քրիստոսի մարմնոյ և արեան տօնին հետևեալ օրը։

Երեկոյեան միջոցին միաբանուհիները սովորութիւն ունէին Ճաշարանէն ետք սենեկի մը մէջ հաւաքուելու, ուր իրենց համար նստարաններ շարուած էին պատերուն բոլորտիքը։

Այս սենեկին մէջ տեղը հնդկափայտէ (bois des Indes) տեսակ մը բեմ կար։

Մարի Տը Պօվիլիէ բեմին վրայ կը տեղաւորուէր, Աւետարանին մէկ քանի վկայութիւնները կը մեկնէր, կամ բարեպաշտական ուրիշ գիրք մը կը կարդար, մերթ ընդ մերթ կենալով և կրօնուհիներուն հաղորդելով այն խորհրդածութիւնները զոր ընթերցումը կը թելադրէր իրեն։

Աւելի վարը, կաղնիի փայտէ շինուած թիկնաթոռի մը վրայ կը նստէր փոխ—մայրապետը, ժողովին նիստը լմննալէն առաջ նշան մը կ'ընէր, նորընծայուհիներուն մին իսկոյն կ'երթար և նորէն կու գար արծաթեայ սկահ մը բերելով զոր վանամօր գլխակալին քովը կը դնէր։ Վանամայրն ամանը կ'առնուր, որուն մէջ սովորաբար շաքարախառն ջուր կ'ըլլար, կը խմէր ծարաւը անցունելու համար, և իր ընթերցումը կամ մեկնաբանութիւնները կը շարունակէր։

Կը յիշեմ թէ այն օրը Մարի Տը Պօվիլիէ բարեպաշտական գիրք մը կը կարդար որ այն ատեն մեծ համբաւ ունէր, և որ կ'անուանէր Ներածութիւն 'ի Ջերմեռանդ կեանս։ Ըսած էր ինձ թէ

քաշ կը ճանչէ հեղինակը, որ էր Ֆրանսուա Տը Սալ՝ Ժընեվի եպիսկոպոս։

Փոխ-մայրապետին մէկ նշանին վրայ արծաթեայ սկահը բերուեցաւ ըստ սովորութեան։

Այն ատեն յունիսի մէջն էինք. օդն անտանելի կերպով տաք էր։ Մարի Տը Պօվիլիէ տեսակ մը բարեհաճութեամբ կը նայէր նորընծայ կուսին որ ջուր կը բերէր իրեն։

Սրահին մէջ յանկարծ դողում մ՚եղաւ։

Մօտս նստող կրօնուհիներուն մին կարծես ջղաձգային յանկարծահաս յուզումէ մը սարսռեցաւ։ Իրեն նայեցայ. խմբակներուն մէջ ամենէն եռանդային խօսողներուն մին էր ան։ Իր երեսը կապտագոյն էր։ Փոխ-մայրապետին դէմքն ևս աւելի այլայլած էր, և իր նայուածքը չէր զատուեր մայրապետէն որ աճապարանօք սկահը շուրթերուն կը մօտեցնէր։

Երակներուս մէջ ցուրտ մը զգացի, ինչպէս փայլակ մ՚անցաւ։

Անգամ մը ցայտելով մինչև բեմը նետուեցայ, և Մարի Տը Պօվիլիէյին ձեռքէն յափշտակեցի սկահը որուն պարունակութեան մէկ պզտի մասը խմած էր տակաւին։ Շարժումը, ցայտն և գործն այնքան արագօրէն տեղի ունեցան որ կրօնուհիներն ոտք ելլան դունարեկ և դողահար։

— Ի՞նչ ունիս, աղջիկս, հարցուց վանամայրը։

— Այդ ամանին մէջ թո՛յն կայ, պատասխանեցի, սրտմտութեամբ լի նայուածք մը սեւեռելով փոխ-վանամայրին վրայ։

Այս կինը նայուածքս անդոսնեց և գոչեց.

— Զրպարտութի՛ւն, զրպարտութի՛ւն։

— Տիկին, ըսի անոր, բարեհաճէ աւելցածը խմելու և անմեղութիւնդ այդ կերպով մեր առջև հաստատելու։

Փոխ-վանամայրը նահանջեց մեռելի մը պէս դեղնելով, և իր թիկնաթոռին վրան ինկաւ խայտառակութեամբ և կատղութեամբ ճզմուած։

— Քովս եկէ՛ք, քոյրե՛րս, քովս եկէ՛ք, գոչեց Մարի Տը Պօվիլիէ զարհուրանքով։

Ակնթարթի մը մէջ մեր բանակի զինուորները բեմը շրջապատեցին :

Մեր թշնամիներուն մեծագոյն մասը դաւադրութեան գերեւումը տեսնելով անձապարանօք եկաւ միացաւ հաւատարիմ գունդին հետ :

Մեզմէ հեռի հինգ կամ վեցը յանցաւորներ միայն որոնց ոտքը սաստիկ բռնուեցաւ երբ իրենց յանցաւորութիւնն երեւան ելաւ, հետեւաբար չկրցան իրենց ընկերուհիներուն հետեւիլ :

Փոխ–վանամայրին վրայ յարձակելով արիութեան առաջին օրինակը տուի :

Կաշկանդուեցաւ նէ, և իսկոյն նետուեցաւ ճիշդ այն ստորերկրեայ զնդանն ու ր իր հրամանաւն այնքան սոսկալի անձկութեան ժամ մ'անցունել տուեր էր ինձ. զնդանին դուռը կղպուեցաւ :

Միւս մեղսակիցները դիւրութեամբ զսպեցինք :

Բայց այս ամէն անկարգութեանց ժամանակ կը մոռցուէր օգնութիւն հասցնել Մարի Տը Պօվիլիէյի : Արծաթեայ սկահին մէջ մոլախինդի օշարակ կար. նէ այս օշարակէն բաւական խմած ըլլալով իր կեանքը վտանգի մէջ էր, և արդէն ահարկու ախտանշաններ կ'երևային : Իր սենեակը տարինք զինքը. վազելով վանքին ագարակը դացին և պնակ մը տաք կաթ բերին. և երեկոյին իսկ ստուգապէս գիտէինք թէ վտանգն աներևոյթ եղած էր :

Հետեւեալ օրը բոլոր Բարիզ Մոնմարթրի Պենետիգթուհիներուն այս տարօրինակ պատմութեան տեղեկացաւ. իմացաւ թէ անոնք իրենց աբբատուհին թունաւորել ուզեր էին :

Մարի Տը Պօվիլիէ պալատին մէջ բազմաթիւ բարեկամներ ունէր տակաւին, և ամէն կողմէն այցելութեան եկողներ եղան : Հետզհետէ ընդունեցաւ նէ Տը Գօնտէ իշխանուհին, տիկին Տը Նըվէրը, Տը Վանթատուր և Տը Սիւլլի դքսուհիները, Տը Պոյեօն մարէշալուհին և տիկին Տը Լա Ֆայէթը որ իր աղջիկը ձեռքէն բռնելով բերած էր. զմայլելի և դեռ բոլորովին փոքրահաս պատանուհի մ'էր այս, և եղնի մը պէս փողերուն սալաքարերուն վրայ կ'ոստոստէր :

Մայրին քով ներա այսպէս զուարթութեամբ վազվզելը տես-

ներով մինչեւ չէի անցըներ թէ թագաւորի մը սէրը տասնութ տարիէն ետք զան եւս վանքի մը վանդակապատներուն ետեւը պի-տի տանէր ։

Անոնց դասէն նախ միայն Տ'Էֆրէ մարէշալին եկաւ, նաեւ ծե-րունին Միւլլի որ հաղուստին անգամ հաւատարիմ մնացած էր իր տիրոջ՝ Անրի Դ.ի յիշատակին ։

Այս ծերուն ընտանեկան պատկերի մը տպաւորութիւնը ըրաւ իմ վրաս ։

Այս ամեն ականաւոր անձերը մայրապետին սենեակը կը տա-նէի ։

Արդէն անոնց մեծագոյն մասը Լուվրի մէջ տեսեր էի, եւ նոր-ընծայութեան քօղերուս ներքեւ անոնց եւ ոչ մին ճանչեց տիկին Տը Սէնթ-Էվրըմօնի տանտիկին ։

Իսկ կնքամայրս չերեւցաւ՝ անշուշտ վախնալով որ զիս կը հան-դիպի ։

Բայց շուտով դէմ առ դէմ գտնուեցայ ճանչուորի մը զուարթ երեսին հետ .

— Ի՛նչ. դո՞ւն ես, Մարիոն . . . խե՜ղճ պատանուհի . . . ա-տանկ հագուած ըլլաս . . . ։ Այս հանդիպումին փոխարէն փառք կը տամ Աստուծոյ ։ Ես մեր շուտիկ կոմսուհին երբեք չուզեց մեզ ըսել թէ ո՛ւր թաղած է քեզի. երեւակայէ՛ թէ որքան ան-հանգիստ էինք ։ Տէպառօ սոսկալի կերպով զայրացած վիճակի մէջ կը գտնուի. Սէն-Թոմա-Տիւ-Լուվրը փողոցն աղմուկներ պիտի հանէ ։ Իրաւի ձանձրոյթ եմ . . . մի՛շտ երկրորդ կարգի եմ, եւ երբ սիրահարին մէկը կ'երթայ, ուրիշ մ'ուննեալը կը տեսնեմ . . . . ։ Վերջապէս հոգ չէ, պա՛գ զիս . Հ. տէ . . . . ։ Զմայլելի՛ ես այդ նորընծայութեան հագուստովդ ։

— Բայց, գնդապե՛տ . . . . ։

— Լռէ՛ . . . մարդ կը գայ . . . . ։ Վիշտերուդ պատճառ ե-ղայ, պիտի փարատեմ զանոնք, անհոգ եղի՛ր ։

Եւ վանամայրին սենեակը մտաւ, որ էր արդէն պզտի մար-քիզուհին՝ իր կինը ։ Միայն խնքը զիս ճանչած ըլլալով արագօրէն

այս խօսքերը ականջիս ըսելու համար թոյլ տուած լ՚ըր որ մարքիզուհին իմէն քիչ մ՚առաջ մեկնի։

Ուրիշ անձեր վրայ հասան, որով Պասոմբիէր արգիլուեցաւ ուրիշ խօսք ալ ըսելու. եկողներն էին Ֆրանսուա Տը Սալ եպիսկոպոսն և տիկին Տը Շանթալ։ Սրբազան եպիսկոպոսն այն ատեն Բարիզի մէջ կը գտնուէր Վիզիթանտին ըսուած կրօնուհիներուն վանքը մեկուսանալու համար։

Իր օրհնութիւնը տուաւ ինծ։ Բայց, կ՚սկսէի այս օրհնութեան անարժան ըլլալ։

Կրօնուհիներուն ապստամբութիւնը զսպելու ազդու կերպով նպաստեր էի. սակայն սրտիս մէջ ուրիշ ապստամբութիւն մը կը զուար, և ամեն օր այս ապստամբութեան նորանոր սնունդներ կը տար։ Ա՛լ չէի աղօթեր. դայթակղութիւն տուեր էին ինծ այն մոլութիւնները, չարանիւթ նպատակներն և անողոքելի ատելութիւնն որոնց վանքի մը մէջ զարգանալը տեսեր էի։

Փախելու դիտաւորութիւնս յայտնի և ճշմարիտ էր. հոգեբոյր ուրախութեամբ ընդունեցայ այն յոյսը զոր պահ մ՚առաջ Պասոմբիէր տուած էր ինծ, և անհամբերութեամբ այս յոյսին իրագործութեանը սպասեցի։

Օրէ մ՚աւելի չէի պարտաւորիր մաշուիլ։

Հետևեալ օրն երբ մայրապետին սենեակը մտայ, կին մը նշմարեցի որ կրակարանին առջև ծռած էր և բուաջուրերը կը տաքցընէր. գլուխը դարձուց այս կինն և զարմացման աղաղակ մը չկրցայ զսպել։

Թերէզա Պիւլմանն էր նէ։

— Այս պատանուհին կը ճանչե՞ս, սիրելի աղջիկս, հարցուց վանամայրը։

— Այո՛, փութաց պատասխանելու Թերէզա, օրիորդը Տը Պասոմբիէր մարքիզուհիին տունը տեսած եմ։

Հիւանդուհին անկողնոյն մէջ կնդապետէն ստորագրուած յեսապայ տոմսակը տուաւ ինծ.

» Խնդ՜ մանամայրս ,

» Երէկ Բարիզ վերադառնալու ժամանակ մարգիզուհին և ես
» կը խօսակցէինք ցաւալի կացութեանդ և այն վտանգին վրայ ,
» որու թերևս առաւելին երկար ատեն ենթարկուած պիտի ըլլաս
» կրօնուհիներուդ հետ ։ Աւելութիւնն օրուան մը մէջ չանցնիր .
» կը վախնանք որ քեզի թունաւորելու նորանոր փորձեր ըլլան
» թերևս ։ Մարգիզուհին քեզ կը ղրկէ իր սպասուհիներուն մին ,
» որու իբր անձիդ կրնաս վստահիլ . կինս կը յորդորէ քեզի որ
» այս կնկան ձեռքովը դուրսէն գնել տաս ընթրիքիդ հարկաւոր
» ամեն բաները և անոր միայն վստահիս » ։

Անմիջապէս հասկցայ Պասօմպիէրին յանդուգն խաբէութիւնը, և յաջողեցայ յուզումս Մարի Տը Գօվիլիէյէն պահելու ։

Քառորդ մ՚ետք Թերէզա խցիկիս մէջն էր , ուր հազարումէկ կերպով զիս շոյեց և բացատրեց ինձ զինքը վանքը բերող զարմանալի խարդախութեան պարագաները ։

Նախ իր առևանգին նկատմամբ կասկածներս փարատեց , վասն զի Տէպարօ՝ Րիշլի՛օի սենեկին մէջ ուրիշ ըսելիք ունենալով՝ այս մասին բան մը չիմացուցած էր ինձ , և իմ ալ մաքէս չանցած էր այս առևանգին վրայ հարցումներ ընել իրեն ։

Իրօք Էմմանուէլ ինքն աներևոյթ ըրեր էր դժբաղդ դաւաճանակիր նուիրակին նշանուհին՝ Թերէզան ։

Հարսնիքէն երկու օր առաջ Թերէզային հետ խօսքը մէկ ըրաւ , և ամենայն դիւրութեամբ ընդունել տուաւ անոր իր նպատակը , պատուոյն վրայ խօսք տալով աւելի փոքրահաս և մանաւանդ աւելի գեղեցիկ էրիկ մը տալու անոր ։

Ինչպէս կրնայ գուշակուիլ , այս համաձայնութենէն ետք՝ հարս ու փեսան տանողներուն ճամբուն վրայ պահակներուն յարձակիլը միայն դիպուածի արդիւնք չէր ։ Անոնց պաշտօնատարներուն մին՝ որ Էմմանուէլին բարեկամն էր , յատկապէս զանոնք այն ճամբան բերած էր , և առևանգին մէջ ամէն մասնաւոր պարագայ խիստ յաջողակ կերպով մը կարգադրուած էր ։

Տէպարօ իր խօսքին հաւատարիմ մնալով՝ ստուգապէս Թերէզան կարգած էր գեղեցիկ կալուածքի մը հողաբարձութին հետ. այս կալուածքը Սէն-Վիքթօր արուարձանին մէջ. Տէպարօյին սեպհականութիւնն էր։ Թերէզա ինծ նկարագրից պաշտելի պզտիկ տուն մ՚որ զմայլելի պարտէզներ, գիւթական անտառակներ ունէր, անթերի գրախտ մը, հուրիներու բնակարան մը, ուր՝ ըսաւ ինծ նէ իր նկարագրութիւնը աւարտելով՝ տեղաւորուելէ շուտով տեսնելու յոյս ունիմ»։

Թող կը տայի որ խօսի Թերէզա։

Սիրտս ուժգնակի կը բաբխէր, գլուխս սաստիկ տաքցած էր. ալ չէի կրնար։

Ազատութիւնն ինծ տրուելու եկած էր. առիթով, հոգեկին ուրախանալով ընդունեցի զայն։

Կը մնար ինծ հասկնալ այն զարմանալի համաձայնութիւնը, որով Տէպարօ և Պասօմբիէր՝ շղթայս խորտակելու նպատակաւ միացեր էին միասնական ջանադրութեան մը համար։ Շատ պարզ էր այս բանը։

Հելվէտիացիներուն գնդապետն իր կնոջը նետելէն ետք պարահանդէսին սրահը գնաց և հոն գտաւ Տէպարօն և Սէն-Սորլէնը որոնց սիրտը տակաւին թունդ կ՚ելնէր մայր-թագուհիին բարկութեան պատճառաւ։ Ռիշլիէօյին քովը ձգեր էին Մարի Տը Մէտիսին, որ ստիպուած էր բաւական համարիլ անոնցմէ տրուած քանի մը բացատրութիւնը, նաև կատարեալ և ակնածական խորհրդապահութեան մը խոստումը։

Այս պարոնները զիս կը փնտռէին որպէս զի յորդորեն լուռ կենալու, նոյն միջոցին գնդապետն եկաւ իրենց քովը։

Փութաց յայտնելու անոնց մատուցին հետաքրքրական պատմութիւնը, և Տէպարօ այս արկածին շնորհիւ իր յոյսերուն որսին շահիլը անմիջապէս ընդնշմարելով Պասօմբիէրին խոստովանեցաւ զիս սիրելը։

Հետեւեալ օրն իմացան աներեւութանալս։

՚ Էմմանուէլ՝ սաստիկ բարկացած՝ գնաց կնքամօրս տունը. Հար-

ցուց տուող թէ ինչ բրած էր զիս, և՝ ինչպէս կ՚ենթադրուի՝ տիկին Տը Սէնթ-Էվրըմօն ծաղրեց Տէպարօյին ժպրհութիւնը. խեղճ փաստաբանն ամենէն քան մ՚իմացած պիտի չըլլար եթէ բարեքաղցրաբար գնդապետը Մարի Տը Պօվիլիէյին այցելութեան եկած չըլլար։

Այս այցելութեան օրն իսկ իրենց նպատակը գործադրելու միջոցները կազմեցին, և իսկոյն Թերէզան եկաւ։

Պասօմբիէր համարձակեցաւ այս կինը ղրկելու իբր իր կնկան մէկ սպասուհին. այս առաջարկը շատ ճշմարտանման էր, հետեւաբար ամենափոքր կասկածի տեղի չտուաւ։

— Հիմակ, ըսաւ ինծի այս քոյր կինը. փախուստը դիւրին է։ Վանքին մէջ աշխարհական սպասուհիի մը կացութիւնը ունիմ. ուզած ժամանակս և ամեն պատրուակներով կրնամ դուրս ելնել։ Վանքին շրջակաները բանուոր մը կ՚սպասէ, որ պատրաստ է իմացնելու թէ ինչ օր և ինչ ժամ ընտրած ենք փախչելու համար։ Պէտք է վստահիլ դրան պահնորդուհին, բանալիներուն տրցակը առնուլ, և ահա կ՚ազատինք։

— Չէ, ըսի, չէ։ Դաւադրութեան մէջ դրոյլուհին (touirère) մեզի դէմ էր. իսկոյն այս առիթը պիտի բռնէ վրէժը լուծելու և զիս վանքը կեցնելու համար...։ Լաւագոյն բան մը կը մտածեմ...։ Այս գիշեր թող արևմտեան պարսպին ստորոտը մարդ գտնուի կառքի մը հետ։

Թերէզան այս մասին ուրիշ բան չհարցուց. և վաղուց բանբերին իմաց տալու։

Իսկ ես շուտով վանամայրին սենեակն իջայ։

Երբ գիշեր եղաւ, զինքը աւելի դէշ վիճակի մէջ տեսնել ձևացուցի. Թերէզա հաւաստեց անոր թէ խոհեմութիւն էր թոյլ տալ մեզ իր անկողնոյն քով հսկելու, և այս առաջարկութիւնն առանց դժուարութեան արուեցաւ մեզ։

Բոլոր կրօնաւորները ժամը ինին իրենց ննջարանը կ՚երթային։

Կէս գիշերին մօտ Մարի Տը Պօվիլիէ հանդարտ քուն մը կը քնանար։

և անբաղդ կին մը տեսայ, որ ինք նոյնպէս իր սեռին տկարութեան նահատակուած էր, և որ իրաւունք ունէր մխիթարելու և ցաւակցելու, այլ ոչ պախարակելու և աղարտելու։

Անշուշտ նէ հասկցաւ իր խոստովանութեան հետևանքը, վասն զի ըսաւ ինծ.

— Ա՛խ, անմեղ զաւակս, շա՛տ յանցաւոր կը գտնես զիս. ապաշխարութիւնը Տիրոջ առջև յանցանքը կը լուայ, բայց մարդերու աչքը միշտ կը տեսնէ զայն։ Կը պարտաւորիմ իմ ձեռքովս կազմուած կացութեանս հետևանքը ընդունիլ և խոնարհիլ երբ պէտք է խոնարհիլ։ Եթէ օտար բերան մը հաղորդէր քեզ այս մանր պարագաները, թերևս այլայլելով հաղորդէր։ Յանցանքէս 'ի վեր շարունակ զղպարտութիւն կ'ընեմ էութեանս դէմ։ Պնդեցին թէ վանքը վերադառնալէս ետք թագաւորը շատ անգամ ինծ այցելութեան եկած է... անվայել ստութիւն մ'է այս։ Քանի տարիէ 'ի վեր ապաշխարանք քաշելս և լալս չկրցան մեր քոյրերուն առջև թողութիւն գտնելու արժանի ընել զիս։ Վերանորոգում մը ստիպողական կը դառնար. պարտաւորութիւններս ինծ կը հրամայէին գրգռել զայն. մեր քոյրերն անընդհատ խոչընդոտներ հանեցին, ամենէն փրկաւէտ միջոցներս անընդհատ [illegible]րևեցին։ Վերջապէս մեծ հարուածը տալու որոշումը ըրի։ Չեմ ուզեր մեռնիլ միաբանութիւնը ձգելով այն ողբալի թուլութեան մէջ որ կորստեանս պատճառն եղաւ....։ Չէ՛, չէ՛։ Ազա՛տ են դաւադրելու, ազա՛տ են կեանքիս դէմ ոճիր գործելու. ...։ Բայց Աստուած կը խօսի, և ես կը հնազանդիմ։

Աղերսեց զիս որ բոլոր զօրութեամբս աշխատիմ դաւաճանուհիներուն դիտաւորութիւնը իմանալու։

Պէտք չունէի այս աղաչանքին, և այն վախերն՝ որով գրաւուած երևցաւ նէ՝ այնքան մեծ վիշտ մը կը տային ինծ որ որոշեցի դաւադրութիւնը 'ի դերև հանել կամ ես ալ անոր նահատակն ըլլալ։

Դիւրին էր վանամայրին թշնամուհիները զանազանել այն կրօնուհիներէն որք իրեն հնազանդ կը մնային։

Առջինները կը պահուէին, կը փսփսային, ահարեկ կերպարան մը կը կրէին. երկրորդները պարզապէս սովորական կարգին կը հետեւէին, սակայն քիչ մը զարմանք ցոյց տալով երբ իրենց ընկերուհիներուն գաղտնի խօսակցութիւնները կը տեսնէին։

Կարգ ըստ կարգէ հաւատարիմ կրօնուհիներուն մօտեցայ։

Անոնց երկիւղը աւելցնելով, եռանդը գրգռելով յաջողեցայ զօրաւոր հակական (contre-mine) մը հաստատելու, և 'ի նպաստ բարութեան դաւադրութիւնն աւելի կուսակիցներ ունեցաւ քան թէ գէշութեան համար դաւադրութիւնը։

Երբ երկու բանակներն ուրուագրեցան, ժամանակ առ ժամանակ քանի մը նախամարտ կռիւներ եղան։

Չորս կամ հինգ դասալիքներ մեր վրաններն անցան, և իմացայ որ մեքենայութիւնը փոխ-վանամայրին փառասիրական նպատակներուն համար կը նիւթուէր։ Նէ Մարի Տը Պօվիլլիէյի տիրազօրին և պաշտօնին աչք տնկած էր։

Արդ տիկին փոխ-վանամայրը ժամանակաւ զիս գնդանը նետելու հրամանը տուած ըլլալով, կ'ուզէի իր այս ազնուութեան փոխարէնը կարելի եղածին չափ շուտ հատուցանել իրեն։

Բայց ներա դէմ ապացոյցներու պէտք ունէի, և ամեն օր աւելի դժուարին կ'ըլլար ապացոյց ստանալը։ Երկու բանակին մէջ բացարձակ էր անվստահութիւնը. անյայտ կասկածներ ունէի միայն. հրաշալի յաջողակութեամբ կը պահուէին թշնամուհիները, և լանջանակի կեղծաւորութիւնը սքանչելիք կը գործէր անոնց քով։

Այս ամեն կրօնուհիներուն բոլորովին անկեղծ բարեպաշտութեան մը դիմակով մի և նոյն տապանակին առջև ակնկոր և ձեռնամած ժողովուիլը տեսնելով և գիտնալով սակայն թէ անոնցմէ իւրաքանչիւր ոք սրտին մէջ ատելութեան թոյն մը կը կրէ և յօժարակամ կ'ուզէ ըղունգով յօշել իր առջև ծնրադրած ընկերուհին, ստուգիւ կը սրամտէի։

Այս ամեն բաները չէին հաստատեր այն յանկարծական կոչումը զոր վանքին համար զգացեր էի։ Նորընծայութեան զգեստն արդէն ծանր կը գար ինձ։

Այս կիները ամեն բանի կարող համարելով և մայրապետին սարսափները առաջնուանէն աւելի աղէկ ըմբռնելով՝ աղաչեցի որ Ճաշարանին մէջ կերակուր չուտէ և իր սենեկին մէջ գործածէ այնպիսի անօթներ որոնց փորձն եղած ըլլայ։ Բայց այս զգուշութիւնն ալ անօգուտ կ՚ըլլար եթէ աչերս կատարելապէս բացած չըլլայի։ Դաստիարակութեան գաղանի թելերը բռնելու յոյսս կտրելով, մեր թշնամիներուն ամեն ընթացքը և շարժումները կը դիտէի, հաստատ որոշած ըլլալով աղմուկ մը հանել եթէ փոխ-մայրապետը ամօթապարտ ձգելու առիթը ներկայանար։

Այս առիթը ներկայացաւ Քրիստոսի մարմնոյ և արեան տօնին հետևեալ օրը։

Երեկոյեան միջոցին միաբանուհիները սովորութիւն ունէին Ճաշարանէն ետև սենեկի մը մէջ հաւաքուելու, ուր իրենց համար նստարաններ շարուած էին պատերուն բոլորակը։

Այս սենեկին մէջ տեղը հնդկափայտէ (bois des Indes) տեսակ մը բեմ կար։

Մարի Տը Պօվիլիէ բեմին վրայ կը տեղաւորուէր, Աւետարանին մէկ քանի վկայութիւնները կը մեկնէր, կամ բարեպաշտական ուրիշ գիրք մը կը կարդար, մերթ ընդ մերթ կենալով և կրօնուհիներուն հաղորդելով այն խորհրդածութիւնները զոր ընթերցումը կը թելադրէր իրեն։

Աւելի վարը, կաղնիի փայտէ շինուած թիկնաթոռի մը վրայ կը նստէր փոխ-մայրապետը, ժողովին նիստը լմննալէն առաջ նշան մը կ՚ընէր, նորընծայուհիներուն մին իսկոյն կ՚երթար և նորէն կը գար արծաթեայ սկահ մը բերելով զոր վանամօր գրքակալին քովը կը դնէր։ Վանամայրն ամանը կ՚առնուր, որուն մէջ սովորաբար շաքարախառն ջուր կ՚ըլլար, կը խմէր ծարաւը անցունելու համար, և իր ընթերցումը կամ մեկնաբանութիւնները կը շարունակէր։

Կը յիշեմ թէ այն օրը Մարի Տը Պօվիլիէ բարեպաշտական գիրք մը կը կարդար որ այն ատեն մեծ համբաւ ունէր, և որ կ՚անուանէր Ներածութիւն ՚ի Ջերմեռանդ կեանս։ Ըսած էր ինձ թէ

քաջ կը ճանչէ հեղինակը, որ էր Գրանսուա Տը Սալ՝ Ժընէվի եպիսկոպոս։

Փոխ-մայրապետին մէկ նշանին վրայ արծաթեայ սկահը բերուեցաւ ըստ սովորութեան։

Այն ատեն յուլիսի մէջն էինք. օդն անտանելի կերպով տաք էր։ Մարի Տը Պօվիլիէ տեսակ մը բարեհաճութեամբ կը նայէր նորընծայ կուսին որ ջուր կը բերէր իրեն։

Սրահին մէջ յանկարծ դողում մ՚եղաւ։

Մօտս նստող կրօնուհիներուն մին կարծես ջղաձգային յանկարծահաս յուզումէ մը սարսռեցաւ։ Իրեն նայեցայ. խմբակներուն մէջ ամենէն եռանդագին խօսողներուն մին էր ան։ Իր երեսը կապտագոյն էր։ Փոխ-մայրապետին դէմքն ալ աւելի այլայլած էր, եւ իր նայուածքը չէր զատուեր մայրապետէն որ աճապարանօք սկահը շրթներուն կը մօտեցնէր։

Երակներուս մէջ ցուրտ մը զգացի, ինչպէս փայլակ մ՚անցաւ։

Անգամ մը ցայտելով մինչեւ բեմը նետուեցայ, եւ Մարի Տը Պօվիլիէյին ձեռքէն յափշտակեցի սկահը որուն պարունակութեան մէկ պզտի մասը խմած էր տակաւին։ Շարժումը, ցայտն եւ գործն այնքան արագօրէն տեղի ունեցան որ կրօնուհիներն ոտք ելան ծունաբեկ եւ դողահար։

— Ի՞նչ ունիս, աղջիկս, հարցուց վանամայրը։

— Այդ ամանին մէջ թոյն կայ, պատասխանեցի, սրտմտութեամբ լի նայուածք մը սեւեռելով փոխ-վանամայրին վրայ։

Այս կինը նայուածքս անդոսնեց եւ գոչեց.

— Զրպարտութիւն, զրպարտութիւն։

— Տիկին, ըսի անոր, բարեհաճէ աւելցածը խմելու եւ անմեղութիւնդ այդ կերպով մեր առջեւ հաստատելու։

Փոխ-վանամայրը նահանջից մեռելի մը պէս դեղնելով, եւ իր թիկնաթոռին վրան ընկաւ խայտառակութեամբ եւ կատղութեամբ ճզմուած։

— Քովս եկէք, քոյրերս, քովս եկէք, գոչեց Մարի Տը Պօվիլիէ զարհուրանքով։

Անկնթարթի մը մէջ մեր բանակի զինուորները բեմը շրջապատեցին։

Մեր թշնամիներուն մեծագոյն մասը դաւադրութեան դերեւումը տեսնելով անձապարանօք ելաւ միացաւ հաւատարիմ գունդին հետ։

Մեզմէ հեռի հինգ կամ վեցը յանցաւորներ մնացին որոնց ոտքը սաստիկ բռնուեցաւ երբ իրենց յանցաւորութիւնն երեւան ելաւ, հետեւաբար չկրցան իրենց ընկերուհիներուն հետեւիլ։

Փոխ-վանամայրին վրայ յարձակելով արիութեան առաջին օրինակը տուի։

Կաշկանդուեցաւ նէ, և իսկոյն նետուեցաւ ճիշդ այն ստորերկրեայ զնդանն ուր իր հրամանաւն այնքան սոսկալի անձկութեան ժամ մ'անցունել տուեր էր ինձ. զնդանին դուռը կղպուեցաւ։

Միւս մեղսակիցները դիւրութեամբ զսպեցինք։

Բայց այս ամեն անկարգութեանց ժամանակ կը մոռցուէր օգնութիւն հասցնել Մարի Տը Պօվիլիէյի։ Արծաթեայ սկահին մէջ մոլախինդի օշարակ կար. նէ այս օշարակէն բաւական խմած ըլլալով իր կեանքը վտանգի մէջ էր, և արդէն ահարկու ախտանշաններ կ'երեւային։ Իր սենեակը տարինք զինքը. վազելով վանքին ագարակը գացին և պնակ մը տաք կաթ բերին. և երեկոյին իսկ ստուգապէս գիտէինք թէ վտանգն աներեւոյթ եղած էր։

Հետեւեալ օրը բոլոր Բարիզ Մօնմարթրի Պենետիգթուհիներուն այս տարօրինակ պատմութեան տեղեկացաւ. իմացաւ թէ անոնք իրենց աբբաուհին թունաւորել ուզեր էին։

Մարի Տը Պօվիլիէ պալատին մէջ բազմաթիւ բարեկամներ ունէր տակաւին, և ամեն կողմէն այցելութեան եկողներ եղան։ Հետզհետէ ընդունեցաւ նէ Տը Գօնտէ իշխանուհին, տիկին Տը Նըվէրը, Տը Վանթատուր և Տը Սիւլլի դքսուհիները, Տը Պույեօն մարէշալուհին և տիկին Տը Լա Ֆայէթը որ իր աղջիկը ձեռքէն բռնելով բերած էր. զմայլելի և դեռ բոլորովին փոքրահասակ պատանուհի մ'էր այս, և եղնի մը պէս փողերուն սալաքարերուն վրայ կ'ոստոստէր։

Մայրին քով ներս այսպէս զուարթութեամբ վազվզելը տես-

նեղով մինչեւ չէի անցուներ թէ թագաւորի մը սէրը տասնութ տարիէն ետք զիս եւս վանքի մը վանդակապատներուն ետեւը պիտի տանէր։

Անոնց դասէն նախ միայն Տ՚Էֆիա մարէշալն եկաւ, նաեւ ծերունին Սիւլլի որ հաղուադէպ անգամ հաւատարիմ մնացած էր իր տէրոջ՝ Անրի Դ.ի յիշատակին։

Այս ծերին ընտանեկան պատկերի մը տպաւորութիւնը ըրաւ իմ վրաս։

Այս ամեն ականաւոր անձերը մայրապետին սենեակը կը տանէի։

Երբեմն անոնց մեծագոյն մասը Լուվրի մէջ տեսեր էի, եւ նորընծայութեան քօղերուս ներքեւ անոնց եւ ոչ մին ճանչեց տիկին Տը Սէնթ-Էվրըմօնի սանուհին։

Իսկ կնքամայրս չերեւցաւ՝ անշուշտ վախնալով որ ինձ կը հանդիպի։

Բայց շուտով դէմ առ դէմ գտնուեցայ ճանչուորի մը զուարթ երեսին հետ.

— Ի՛նչ. դո՛ւն ես, Մարիօ՛ն... խե՛ղճ պատանուհի... առանձին հագուած ըլլաս....։ Այս հանդիպումին փոխարէն փառք կը տամ Աստուծոյ։ Ես մեր շուտիկ կոմսուհին երբէք չուզեց մեզ ըսել թէ ուր թաղած է քեզի. երեւակայէ՛ թէ որքան անհանգիստ էինք։ Տէպարօ սոսկալի կերպով զայրացած վիճակի մէջ կը գտնուի. Սէն-Թոմա-Տիւ-Լուվրը փողոցին աղմուկներ պիտի հանէ։ Ցիրուսի ձախորդ եմ... մի՛շտ երկրորդ կարգի եմ, եւ երբ սիրահարին մէկը կ՚երթայ, ուրիշ մ՚ունենալդ կը տեսնեմ....։ Վերջապէս հոգ չէ, պա՛գ զիս. մ. տէ....։ Զմայլելի՜ ես այդ նորընծայութեան հագուստովդ։

— Բայց, գնդապետ....։

— Լռէ՜... մարդ կը գայ....։ Վշտերուդ պատճառ եղայ, պիտի փարատեմ զանոնք, անհոգ եղիր։

Եւ վանամայրին սենեակը մտաւ, ուր էր արդէն պզտի մարկիզուհին՝ իր կինը։ Միայն ինքը զիս ճանչցած ըլլալով արագօրէն

այս խօսքերը ականջիս ըսելու համար թոյլ տուած էր որ մար-քիզուհին իրմէն քիչ մ'առաջ անցնի ։

Ուրիշ անձեր վրայ հասան, որով Պասօմբիէր արգիլուեցաւ ուրիշ խօսք ալ ըսելու. եկողներն էին Ֆրանսուա Տը Սալ եպիսկոպոսն և տիկին Տը Շանթալ ։ Սրբազան եպիսկոպոսն այն ատեն Բարիզի մէջ կը գտնուէր Վիզիթանտին ըսուած կրօնուհիներուն վանքը մեկուսանալու համար ։

Իր օրհնութիւնը տուաւ ինձ ։ Բայց, կ'սկսէի այս օրհնութեան անարժան ըլլալ ։

Կրօնուհիներուն ապտամբութիւնը զսպելու ազդու կերպով նպաստեր էի. սակայն սրտիս մէջ ուրիշ ապստամբութիւն մը կը գոռար, և ամեն օր այս ապստամբութեան նորանոր սնունդներ կը տար ։ Ա՛լ չէի աղօթեր. դայթակղութիւն տուեր էին ինձ այն մոլութիւնները. չարանիւթ նպատակներն և անողոքելի սանելութիւնն որոնց վանքի մը մէջ զարգանալը տեսեր էի ։

Փախչելու դիտաւորութիւնս յայտնի և ճշմարիտ էր. հոգեբոյր ուրախութեամբ ընդունեցայ այն յոյսը զոր պահ մ'առաջ Պասօմբիէր տուած էր ինձ, և անհամբերութեամբ այս յոյսին իրագործութեանը սպասեցի ։

Օրէ մ'աւելի չէի պարտաւորիր մաշուիլ ։

Հետեւեալ օրն երբ մայրապետին սենեակը մտայ, կին մը նշմարեցի որ կրակարանին առջև ծռած էր և բուսաջուրերը կը տաքցնէր. գլուխը դարձուց այս կինն և զարմացման աղաղակ մը չկրցայ զսպել ։

Թերէզա Պիւլման էր նէ ։

— Այս պատանուհին կը ճանչնա՞ս, սիրելի աղջիկս, հարցուց վանամայրը ։

— Այո՛, փութաց պատասխանելու Թերէզա, օրիորդը Տը Պասօմբիէր մարքիզուհիին տունը տեսած եմ ։

Հիւանդուհին անկողնոյն մէջ գնդապետէն ստորագրուած յետագայ տոմսակը տուաւ ինձ .

» Խե՛ղճ վանամայրս,

» Երէկ Բարիզ վերադառնալու ժամանակ մարգիզուհին և ես
» կը խօսակցէինք ցաւալի կացութեան և այն վտանգին վրայ,
» որու թերևս տակաւին երկար ատեն ենթարկուած պիտի ըլլաս
» կրօնուհիներուդ հետ։ Ատելութիւնն օրուան մը մէջ չանցնիր.
» կը վախնանք որ քեզի թունաւորելու նորանոր փորձեր ըլլան
» թերևս։ Մարգիզուհին քեզ կը ղրկէ իր սպասուհիներուն մին,
» որու իբր անձիդ կրնաս վստահիլ. կինս կը յորդորէ քեզի որ
» այս կնկան ձեռքովը դուրսէն գնել տաս ընթրիքիդ հարկաւոր
» ամեն բաները և անոր միայն վստահիս »։

Անմիջապէս հասկցայ Պասօմբիէրին յանդուգն խարէութիւնը, և յաջողեցայ յուզումս Մարի Տը Պօվիլիէյէն պահելու։

Քառորդ մ'ետքը Թերէզա խուցիկիս մէջն էր, ուր հազարումէկ կերպով զիս շոյեց և բացատրեց ինծի զինքը վանքը բերող զարմանալի խարդախութեան զոյանակները։

Նախ իր առևանգին նկատմամբ կասկածներս փարատեց, վասն զի Տէպարօ՝ Րիշլիէ'օի սենեկին մէջ ուրիշ ըսելիք ունենալով՝ այս մասին բան մը չիմացուցած էր ինծի, և իմ ալ մաքէս չանցած էր այս առևանգին վրայ հարցումներ ընել իրեն։

Իրօք Էմմանուէլ ինքն աներևոյթ ըրեր էր դժբաղդ դաւաղանակիր նուիրակին նշանուհին՝ Թերէզան։

Հարսնիքէն երկու օր առաջ Թերէզային հետ խօսքը մէկ ըրաւ, և ամենայն դիւրութեամբ ընդունել տուաւ անոր իր նպատակը, պատուոյն վրայ խօսք տալով աւելի փոքրահաս և մանաւանդ աւելի գեղեցիկ էրիկ մը տալու անոր։

Ինչպէս կրնայ գուշակուիլ, այս համաձայնութենէն ետք՝ հարսն ու փեսան տանողներուն ճամբուն վրայ պահակներուն յարձակիլը միայն դիպուածի արդիւնք չէր։ Անոնց պաշտօնատարներուն մին՝ որ Էմմանուէլին բարեկամն էր, յատկապէս զանոնք այն ճամբան բերած էր, և առևանգին մէջ մի մասնաւոր պարագան խիստ յաջողակ կերպով մը կարգադրուած էր։

Տէպարօ իր խօսքին հաւատարիմ մնալով ստուգապէս Թերէզան կարգած էր գեղեցիկ կալուածքի մը հողաբաժնին հետ. այս կալուածքը Սէն-Վիգթոր արուարձանին մէջ. Տէպարօյին սեպհականութիւնն էր: Թերէզա ինծի նկարագրեց պաշտելի պզտիկ տուն մ'որ զմայլելի պարտէզներ, դիւթական անտառակներ ունէր, անթերի գրախտ մը, հուրիներու բնակարան մը, ուր՝ ըսաւ ինծ նէ իր նկարագրութիւնը աւարտելով տեղաւորուիլը շուտով տեսնելու յոյս ունիմ»:

Թող կը տայի որ խօսի Թերէզա: .

Սիրտս ուժգնակի կը բաբխէր, գլուխս սաստիկ տաքցած էր. ա՛լ չէի կրնար:

Ազատութիւնն ինծ տրուելու եկած էր. ու խինդով, հոգեկին ուրախանալով ընդունեցի զայն:

Կը մնար ինծ հասկնալ այն զարմանալի համաձայնութիւնը, որով Տէպարօ և Պասսոմբիէր՝ չղթայս խորտակելու նպատակաւ միացեր էին միասնական ջանադրութեան մը համար: Շատ պարզ էր այս բանը:

Հելվէտիացիներուն գնդապետն իր կնոջու ղը Նեռալէն ետք պարահանդիսին սրահը գնաց և հոն գտաւ Տէպարօն և Սէն-Սօրլէնը որոնց սիրտը տակաւին թունդ կ'ելնէր մայր-թագուհիին բարկութեան պատճառաւ: Ռիշլիէօյին քովը ձգեր էին Մարի Տը Մէտիսին, որ ստիպուած էր բաւական համարիլ անոնցմէ տրուած քանի մը բացատրութիւնը, նաև կատարեալ և ակնածական խորհրդապահութեան մը խոստումը:

Այս պարոնները զիս կը փնտռէին որպէս զի յորդորեն լուռ կենալու. նոյն միջոցին գնդապետն եկաւ իրենց քովը:

Փութաց յայտնելու անոնց մատուռին հեռաքրքրական պատմութիւնը, և Տէպարօ այս արկածին շնորհիւ իր յոյսերուն առարկան շահիլը անմիջապէս ընդնշմարելով Պասսոմպիէռին խոստովանեցաւ զիս սիրելը:

Հետևեալ օրն իմացան աներևութանալս:

Էմմանուէլ՝ սաստիկ բարկացած՝ գնաց կնքամօրս տունը: Հօր-

ցուց անոր թէ ինչ բրած էր զիս, և՝ ինչպէս կ'ենթադրուի՝ տիկին Տը Սէնթ-Էվրըմօն ծաղրեց Տէպարօյին ժպրհութիւնը. խեղճ փաստաբանն ամենևին բան մ'իմացած պիտի չըլլար եթէ բարեբաղդաբար գնդապետը Մարի Տը Պօվիլիէյին այցելութեան եկած չըլլար։

Այս այցելութեան օրն իսկ իրենց նպատակը գործադրելու միջոցները կազմեցին, և իսկոյն Թերէզան եկաւ։

Գասօմբիէր համաձայնեցաւ այս կինը ղրկելու իբր իր կնկան մէկ սպասուհին. այս առաջարկը շատ ճշմարտանման էր, հետևաբար ամենափոքր կասկածի տեղի չտուաւ։

— Հիմակ, ըսաւ ինծի այս քսու կինը. փախուստը դիւրին է։ Վանքին մէջ աշխարհական սպասուհիի մը կացութիւնը ունիմ. ուզած ժամանակս և ամեն պատրուակներով կրնամ դուրս ելնել։ Վանքին շրջակաները բանուոր մը կ'սպասէ, որ պատրաստ է իմացնելու թէ ինչ օր և ինչ ժամ ընտրած ենք փախելու համար։ Պէտք է վստահիլ դրան պահնորդուհին, բանալիներուն տրցակը առնուլ, և ահա կ'ազատինք։

— Ոչ, ըսի, ոչ։ Դաւադրութեան մէջ դրալուհին (touirère) մեզի դէմ էր, իսկոյն այս առիթը պիտի բռնէ վրէժը լուծելու և զիս վանքը կեցնելու համար....։ Լաւագոյն բան մը կը մտածեմ....։ Այս գիշեր թող արևմտեան պարսպին ստորոտը մարդ գտնուի կառքի մը հետ։

Թերէզան այս մասին ուրիշ բան չհարցուց. և վազեց բանբերին իմաց տալու։

Իսկ ես շուտով վանամայրին սենեակն իջայ։

Երբ գիշեր եղաւ, զինքը աւելի դէշ վիճակի մէջ տեսնել ձևացուցի։ Թերէզա հաւաստեց անոր թէ խոհեմութիւն էր թոյլ տալ մեզ իր անկողնոյն քով հսկելու, և այս արտօնութիւնն առանց դժուարութեան արուեցաւ մեզ։

Բոլոր կրօնուհիները ժամն ինին իրենց ննջարանը կ'երթային։

Կէս գիշերին մօտ Մարի Տը Պօվիլիէ հանդարտ քուն մը կը քնանար։

Պահարան մը բացի որու մէջն էր մետաքսեայ ելարանը․ առի ելարանը և Թերէզային տուի։ Այս հիւանդին մերձենալով շուրթերս կամաց մը կցեցի նորա ձեռներուն մէկին որ անկողինէն դուրս կախուած էր։ Աչքս արտասուքով կը թրջուէր․ կը փափաքէի աւայուհին քունէն արթնցնել և վերջին համբոյր մ'ուզել իրմէն։

Բայց փախուստիս դէմ պիտի դնէր․ բնաւ պիտի չուզէր թողուլ որ այսպէս միայնակ երթամ, եթէ նաև իրեն ըրած ծառայութեանս վարձատրութիւն ըլլար թողուլը․ վասն զի իր խիղճն իրեն պիտի հրամայէր կուսահին ազդ առնել, հետևաբար մայրս նորէն պիտի կանչուէր....։

Չէ՛, չէ՛, անկարելի՛ է արթնցնել․ պէ՛տք է մեկնիլ։

Սրբեցի արտասուքս և դուրս ելայ Թերէզային հետ՝ փողոցէն երթալով անձայն, սանդուխներէն անցնելով զգուշութեամբ։

Հինգ վայրկեան ետք պարտէզին վրան էինք։

Պիլմանին աղջիկը կը պատրաստէր ելարանը առնուլ տանիլ՝ իջնելէս ետք, նորէն պահարանը դնել և լուսնալու մօտ միայն մեկնիլ մենաստանէն, նախ և առաջ վանամայրին պահպանութիւնը կրօնուհիի մը յանձնելու հոգ տանելով․ արդէն ցոյց տուեր էի իրեն այս կրօնուհին, որուն անձնուիրութիւնն ու խոհեմութիւնը կը ճանչէի։

Ելարանը պատին ատամանց մէկին կապեցինք։

Սկսայ իջնել, և սոսկումէ ազատ չմնացի երբ ամպերը ճեղքող լուսինին նսեմ ճառագայթներուն օգնութեամբը տեսայ անդունդը որուն վրայ կախուած կը կենայի։ Քանի մը վայրկեան աչքս գոցեցի գլխու պտոյտ չունենալու համար, ապա քաջասրտութիւն ունեցայ և գետինը հասայ։

Էմմանուէլ պարտէզին ստորոտը կ'սպասէր ինձ։ Զիս սրտին վրայ սեղմեց և գոչեց․

— Դո՛ւն ես, Մարիո՛ն, գեղանիկդ իմ Մարիոն....։ Ազատութի՛ւն, ազատութի՛ւն։

Իբր պատասխան կրնայի մէկ բառ ըսել, միայն մէկ բառ որ, քա՛րբէ, բոլոր ապագաս կ'ամփոփէր․

«Անպատուութի՛ւն»։

ՎԵՐՋ ԱՌԱՋԻՆ ՀԱՏՈՐԻՆ

ԷՕԺԷՆ ՏԸ ՄԻՐՔՈՒՐ

# ՄԱՐԻՕՆ ՏԸԼՕՐՄԻ

# ԽՈՍՏՈՎԱՆԱՆՔԸ

ԿԱՄ

## ՊԱՏՄԱԿԱՆ ՏԱՐՓԱՆՔ

ԹԱՐԳՄԱՆԵՑ

*Գր. ՉԻԼԻՆԿԻՐԵԱՆ*

ՀԱՏՈՐ ԵՐԿՐՈՐԴ



*Զմիւռնիա*

ՏԷՐ ԵՒ ՀՐԱՏԱՐԱԿԻՉ

ՏԻԳՐԱՆ ՅԱՐՈՒԹԻՒՆ ՏԷՏԷԵԱՆ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՏԷՏԷԵԱՆ

1876

# ՄԱՐԻՕՆ ՏԸԼՕՐՄԻ

# ԽՈՍՏՈՎԱՆԱՆՔԸ



## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

### Ա.

ՀԵՏԵՒԵԱԼ օրն Էմմանուէլ յարդուզարդիս միջոցին ե-բեալով տեսաւ որ արտասուք կը թափէի ։

Երազը լմնցած էր, պատրանքը կը փարատէր ։

Այն ամեն խաբէական քօղերն՝ որով մոլութիւնը կը վարագուրուի երբ մեր հոգին հրապուրելու կը գայ՝ այն առեն կը պատռուէին եւ զայն իր սոսկալի մերկութեամբը ցոյց կը տային ինծ ։

Այսուհետեւ չէի կրնար պատուաւոր մարդու մը հետ ամուսնանալ առանց մատնութեան ։

Այսպէս ուրեմն ողբալի պչրասիրութեամբս այս վիճակը հասայ, այսինքն պարտաւորեցայ ուրիշին սպառնելու, խայտառակութեան մէջ պատսպարան մը փնտռելու ։

Ո՛ մանկութեան օրերս, ո՛ պատանեկան հասակիս հանդարտաւէտ եւ անարատ օրերը ։

Ո՛ հայր իմ, սուրբ ծերունի որուն ճակատը պիտի պարտաւորի կարմրիլ... ո՛ մայր իմ, սրբակեաց եւ արժանապատիւ կին որ այնչափ առաքինի եւ բարեպաշտ է, եւ որ ա՛լ պիտի չհամարձակի աղօթք ընելու ինծի համար ։

Ո՛ կուսական սենեակս, իր պարզ ննջեակովը, սպիտակափայլ վարագոյրներովը և արևի գեղեցիկ ճառագայթներովը որք սենեակս ոսկեպէս կը փայլեցնէին և աղօթքի նշանք կը տային ինձ. ո՛ Մարնի կաղամախիներս, հին ու փլուն պատերս, ծաղիկներով զարդարուն և օրմայեց տունկերս... ո՛ յիշատակներս. ո՛ պատանութիւնս. ո՛ անմեղութիւնս.... Ա՜լ պիտի չտեսնեմ բարձր չմինէան որու ներքև կը պտտապարտէինք գիշերները, օձապտոյտ փողոցները ուսկէ եկեղեցի կ'երթայի, խորանին Աստուածածինը որու բարեխօսութիւնը կը հայցէի մանկութեանս ժամանակ և որ կը կարծէի թէ կը ժպտի՛ ինձ։ Հօրս տունը մշտանջենապէս գոցուած է ինծի համար. հօն խանդաղատանք չպիտի գտնեմ այսուհետև, հօն յուսահատութիւն պիտի բերեմ։ Թող պիտի չտրուի ինձ պզտի քոյրերս համբուրել։ Խաղի հին ընկերուհիներս ճամբուս վրայ մեկուսի պիտի քաշուին և իրենց մայրերը զանոնք քշելով պիտի տանին ահարեկ։ Ամենուն աչերուն մէջ արհամարհանք պիտի տեսնեմ, և ամեն բերանները նախատի՜նք պիտի թափեն վրաս։

Մոլութիւնը զիս կը գրաւէ՛, բա՛յց, և մոլութիւնը կը պարտաւորէ զիս պահել... անդառնալի կերպով կորսուած եմ։

Թերեզա առաւօտուն եկած էր վանքէն։

Նէ պաշտօնէի տեղ կը ծառայէր ինձ և մետաքսեայ րօպա կը հագուեցնէր, որ նորընծայութեան զգեստներուս կը յաջորդէր։ Այս աղջիկը չէր հասկնար արտասուքս. իր մխիթարութիւններէն կ'ամչնայի։

Հրամայեցի որ լռէ, և մինակ թողուց զիս երբ Տէպարօ եկաւ։

Տէպարօ՝ քաջ գիտալով թէ խօսքերն անկարող էին այս մեծ վիշտը կեցնելու՝ երկար ատեն առջևս կեցաւ անմռունչ և ծունկի վրայ եկած։ Վերջապէս հանդարտած երեցայ։ Երկու ձեռներս բռնեց ան և հօգեբոյր բերկրութեամբ լի աչերով ինձ նայեցաւ։

— Կը սիրե՜մ զքեզ, Մարիօն։

— Ո՛հ, այո՛, պատասխանեցի մինչդեռ կը հեծկլտայի, սիրէ՛ զիս... այսուհետև աշխարհիս մէջ քեզմէ զատ ո՛չ զոք ունիմ։

— Մարիօ՛ն, կը յիշե՞ս վաճառատնական մեր ըրած ճամբորդութիւնը և Մօյի պանդոկին պզտիկ պարտէզը, ուր սիրոյս վրայ առաջին անգամ խօսեցայ հետդ։

— Բա՛քէ։

— Զմոռցար մեր դրաւը։

— Ի՞նչ կը համարձակիս ինծի յիշեցնելու։

— Պէտք է որ խօսիմ մեր այն դրաւին վրայ քանի որ կորուսի զայն։

— Էմմանուէլ, Էմմանուէլ, անգթութիւն է ատի։

— Այո՛, կորուսի գրաւը... քանի որ կը լաս....։ Լալդ ո՛չ ապաքէն յայտնի և մեկին կերպով կ'ապացուցանէ սկզբունքս չընդունիլդ. Թերևս հուսկ յետոյ ես քու սկզբունքդ պիտի ընդունիմ... ո՛վ գիտէ. չպիտի զարմանամ եթէ հրեշտակի մը քորհի Աստուծոյ հաւատամ։

— Ո՛հ, բարեկամ, քեզի նորէն սուրբ հաւատքի բերելը նեղութիւնս ստանալ է։

— Առ այժմ, ըսաւ Տէպարօ, քիչ մը բաց սա տուփը։

Ծունկերուս վրայ սիրուն արկղիկ մը դրաւ որ մինէներով և բուստի գրուագներով զարդարուած էր փառաւորապէս. ապա ոսկէ պզտիկ բանալիով մը բացաւ զայն։

— Ի՞նչ է ատի, բարեկամ։

— Կորսուած գրաւս է։

— Ադամանդնե՛ր, գոչեցի տուփին խուփը վերցնելով....։ Ո՛հ, ի՛նչ ականախտիղ երեսիկներ. ի՛նչ շքեղ ջուր։

— Տե՛ս այս մատանին, Մարիօն։

— Շքե՛ղ է։

Տէպարօ մատս անցուց մատանին։

Երկար ատեն է 'ի վեր տիկին Տը Սէնթ-Էվրըմօնին յանձնել տուեր էի իր համովիկ ալրուն մատանին։

— Հապա՛ այս զմրուխտահուռ ապարանջանը. Արեւելքէն եկած են այս զմրուխտները, սիրելիդ իմ։

Ապարանջանը ես թեւս անցուցի։

— Հապա՛ այս դարդմանակին ինչ կ՚ըսես ։

— Սո՛ւրբ Աստուած, աստղեր են վրայի գոհարները ։

— Թո՛ղ որ սափ ես զնեմ Ճալկատը ։ Վ՚իզդ անցո՛ւր սա ընտիր մարգրիտներու մանեակը . սա միւս գոհարներն ալ լանջակալին վրայ տեղաւորէ . . . սքանչելի՛ է . . . ։ Հիմա հայլին նայէ, Մարիօն ։

Հայելիի մը մօտեցուց զիս, և չկրցայ ուրախագին աղաղակ մը զսպել . կը մոռնայի ցաւերս . աղամանդներու փողփողում մ՚արտասուքս չորցուցած էր ։

Ո՛հ, կինե՛րը, կինե՛րը ։

Ցէպարօ խորհելու հնարաւորութենէն անգամ զիս զրկելու ջանք կ՚ընէր ։

— Կ՚ուզեմ, ըսաւ ինծի, ամէն խոստումներս կատարել և շնորհակալութիւններս լոկ կենացդ երանութեանը յատկացնել ։ Գիտես որ հարուստ ենք . հայրս աւելի մեծ հարստութիւն մը պիտի թողու ինծի ։ Այսուհետև ինչո՞ւ տաղտուկ գործերու զբաղելով կորսնեմ թանկագին ժամանակ մը զոր կրնանք զիրար սիրելու ուրախութեան տալ . . . ։ Ներո՛ւր . պէտք է որ իրաւագիտութեան ամէն ձանձրոյթներու հետ յարաբերութիւն ունենալէ դադրիլս աչքովդ տեսնես ։

Զիս տունէն տարաւ ։

Այն ատեն արուարձանին պզտիկ տունին մէջը չէինք, այլ Տօֆինի հրապարակին վրայ ուրիշ տան մը մէջ ուր կը բնակէր ան և ուր կառքն ուղղակի տարած էր մեզ Մօնմարթրի բլուրէն իջնելով ։

Իսկոյն զիս իր աշխատութեան սենեակը տարաւ ։

Թէև տաք էր եղանակը, բայց և այնպէս զարմանօք տեսայ որ վառարանին մէջ ահագին կրակ մը կը վառի ։ Սեղանի մը վրայ ոսկիէ և արծաթէ դրամներու սինակներ կային, նաև դատաւորութեան թուղթերու բազմաթիւ տոպրակներ ։

Էմմանուէլ զիս նստեցուց ։

— Նախ պէտք է գիտնաս որ պատուարժան հայրս՝ զիս աշ-

խառութեան՝ գրգռելու գովելի դիտաւորութեամբ՝ անկից երեք ամիս առաջ... Ճիշդ Էբըրնէյէն դարձիս ժամանակ վերնագոյն աստիճան խորհրդական կարգել տուաւ զիս։ Անկից 'ի վեր և անշուշտ դարձեալ հայրական մեքենայութեանց զօրութեամբ դատերը տունս կը անդայյին զիս վրդովելու կերպով մը։ Այս ամեն աղմուկներուն մէջէր, Մարիօ՛ն, հազիւ օրը մէկ ժամ կրնայի սիրել քեզի։ Կը հասկնաս արդէն թէ անտանելի է այս վիճակը, և ահա խորհրդականութեան պաշտօնիս հրաժարականը կը տամ։

— Բարեկամդ իմ, խորհէ տակաւին. պիտի պախարակուիս այդպիսի որոշում մ'ընելուդ համար, և հայրդ....։

— Ա՛խ, Մարիօն, ես քեզի հոս բերի միայն տեսնելու և լսելու համար։ Երբ խրատները դուռէն դուրս կը վարեմ, դուն նաքէն ներս մի՛ առնուր զանոնք... հակառակութեան ոգի մ'է ասի։

Ցէպարօ զանգակը հնչեցուց։

Երկու ծառայ եկան։

— Պաշտպանեալներս եկա՞ն։

— Այո՛, պարոն։

— Ժամը քանիի՞ն 'ի վեր կ'սպասեն։

— Ժամն ինէն 'ի վեր։

— Օ՛, օ՛, ըրաւ Էմմանուէլ՝ սենեկին ներսովը դրուած ժամացոյցին նայելով, կէսօրին քանի մը վայրկեան մնացեր է....։ Երեք ժամ սպասե՛լ։ Գրեթէ մեծ բան մը չէ այսպիսի անձերու համար որք հիմա իրենց դատը պիտի վաստկին։ Ինչ և է, ներս կանչեցէք, և ձեր երկուքին մէկը հոս սեղանիս քովը մնայ։

Ծառաներուն մին մօտեցաւ։

Իր ընկերը դուրս ելաւ, և իսկոյն ետ դարձաւ Մարէյի թաղէն բարի քաղաքացիի մը հետ. այս մարդը դեռ ծալլուած ձեւերով գլխարկ, պղտի տուտններով բաճկոնակ, նեղ բանթալօն, և բարդով գործուած անդրավարտիք կը հագնէր, նաև վերջին դարու այն սև մուճակներէն որոնց ներբանները կարմիր և բարձր են։

Հինգ կամ վեց անգամ բարև տուաւ Ցէպարօյին, որ ծանրութեամբ ըսաւ անոր;

— Անունդ ի՞նչ է։

— Նիգօլա Բասքալ։

— Աղէկ. ահա թուղթերդ.... Ի՞նչ կը պահանջէիր հակառակորդ կողմէն։

— Յիսուն թալեռ։

— Հա՛, հա՛.... Վարձքիս համար ինծի ի՞նչ տալու միտք ունիս։

— Կարծեմ թէ, ըսաւ քաղաքաւորը շատ շփոթելով, տասը թալեռ....

— Տա՛սը թալեռ. խե. ես. ես երեք հարիւր ֆրանքէն պակասի դատ չեմ առնուր վրաս։

— Վա՜յ ինծի. պահանջածիս ճիշդ կէսն է ատի, ըսաւ դատավարը (plaideur)։

— Այո՛, բարեկամ. եւ ահա այս պատճառաւ կրնաս հաւանելու երթալ յիսուն թալեռիդ հետ։ Կրա՛կը նետէ տոպրակը, շարայարեց Տէպարօ՝ սպասաւորին տալով մաքրուն թուղթերը որք իսկոյն թռչտեցան բոցին մէջ։

— Բայց, պարո՛ն....

— Բայց ըսի քեզ որ հով առնելու երթաս յիսուն թալեռիդ հետ... ահա՛ յիսուն թալեռդ, ընդմիջեց Էմմանուէլ՝ սեղանին վրայ շարուած ստակի սիւնակներէն մին ցոյց տալով։

— Ի՛նչ. այս ստակը....

— Շո՛ւտ... շո՛ւտ... ա՛ռ եւ կծիկը դի՛ր... այս առտու կարգադրելու ուրիշ գործեր ալ ունիմ։

Քաղաքաւորը սիւնակը գրպանեց (empocher) եւ սաստիկ գոհունակութեամբ մ՚ըսաւ.

— Կրնաս ապահով ըլլալ, պարոն, որ դատավարներ պիտի ղրկեմ քեզ։

— Զգուշացի՛ր ղրկելէ, գոչեց Տէպարօ։

Վաճառանոցի սիւներուն տակը ծովի ձուկ ծախող անձնեայ կին մ՚եկաւ ապա, եւ կողովը ուսերին վրայ դրած մեր առջեւն եկաւ կեցաւ, եւ բիրտ ձայնով մը սկսաւ ըսել.

— Ի՞նչ ըսել կ'ուզես, ի՞նչ է միտքդ, պզտըլիկ փառատարած. գեղեցիկ «եզը» (սեռ) ճիշդ երեք ժամ սպասել կը տայ, հա՞... Միթէ համ հոտ ունի՞ ըրածդ։

— Տէ՛ր Աստուած. տիկին, պատասխանեց Էմմանուէլ, այս առտու կարգուեցայ այս նորաբոյս աղջկան հետ որ աչքդ ներկայ է։ Հիմա կը հասկնաս ուրեմն երեք ժամ սպասելուդ պատճառը. գոհ սպասեցիր, վասն զի նշանածս չէր կրնար սպասել։

— Գեղի մը պէս կը պատճառաբանես, պզտիկ...։ Բայց գործը... ի՞նչ վիճակի մէջ է դատը։

— Ա՛խ, աղէկ ըսիր... գործին կարգն այսօր էր ճիշդ։ Դատարանին դատաւորուն կարգէն էր զոր նախագահը՝ հայրս՝ հրամայած էր ինծ տակաւին վարել՝ խորհրդականի կացութեանս հակառակ...։ Այդ մարդն ուշ կամ կանուխ գործերով պիտի խեղդէր զիս։ Արդ կ'զգաս, տիկին, թէ չէի կրնար մի և նոյն ժամանակ դատարանին և պսակի պատարագին առջև գտնուիլ, հետևաբար երկու հարիւր Ֆրանք տուգանք, նաև դատին ծախսը վճարելու դատապարտուեցայ։

— Դատս կորսուեցա՞ւ... բայց հիմա պիտի խեղդեմ քեզի, չարագո՛րծ, ըսաւ անձնեայ ձկնավաճառուհին ոռնալ սկսելով։

— Յայտնի է որ, ըսաւ Էմմանուէլ առանց յուզուելու և դատին վերաբերող թուղթերը քննել շարունակելով. յայտնի է թէ կը վաստկինք դատը եթէ վերակոչման ատեանին դիմենք... սակայն զանց կ'ընեմ դիմելը, վասն զի շատ կուշտ ես... կրակը։

Երկրորդ տոպրակը նոյնպէս կրակը նետեց։

— Ա՛խ, գո՛ղ, աւազա՛կ, գոչեց վաճառուհին։

Ուզեց Տէպարօյին վրայ յարձակիլ։

Սպասաւորը բարեբաղդաբար գաղտնի հրաման առած էր. ուստի կնկան թեւը բռնեց և հանդարտ կեցուց։

— Դուռէն դուրս նետէ տիկինը, ըսաւ Տէպարօ...։ Սակայն նախ տո՛ւր իրեն սա չորս հարիւր ութսունըհինգ Ֆրանքը, որ տուգանաց և ծախուց գումարն է։

— Ո՛ւֆ, գոչեց ոստրէվաճառ կինը...։ Ա՛հ, բայց, պզտիկ,

ատի գրքին մէջ գրուած է ... ուրեմն պէտք է որ պագնեմ քեզի ։

— Ամենեւին, ամենեւին, գոչեց Տեպարօ ճշմարիտ վախով մը ։

— Կարճ կապէ ... հասկցայ ... տիկնոջ տղէն, իրաւունք ունիս ... նախանձի զացէ ։ Կորուստ պիտի չունենաս ամենեւին, սիրո՛ւն հոգի, և եթէ երբեք քեզ հանդիպիմ, կրնաս վստահիլ անկեղծ երախտագիտութեան մը վրայ ։

Ասի ըսելէն ետք Տեպարօյին նայեցաւ արփօրէն, մատերը շուրթերուն տարաւ, պագաւ, տակը գրպանը դրաւ, և դուրս ելաւ ցեօշենկի պէս կաքաւելով ։

— Ի՞նչ կը մտածես, Մարիօ՛ն, այս կատակերգութեան վրայ զոր քեզի համար կը ներկայացնեմ, հարցուց ինձ Տեպարօ ։

— Զուարճալի կ՚երեւայ ինձ . բայց քիչ մը սուղ է ։

— Օ՛, ո՛, դեռ վերջը չհասաւ ։

Մտաւ երրորդ անձ մ՚որուն վհատած և տրտմալի կերպարանքը սիրտս կտոր կտոր ըրաւ ։

— Դո՞ւն ես, խե՛ղճ Պէրնարս, ըսաւ Էմմանուէլ ։

— Պարո՛ն, պատասխանեց նորեկը, կարծեմ թէ վարձքդ պահանջելու համար կանչել տուիր զիս ։ Ափսո՜ս, ա՛լ փուլ մ՚անգամ չունիմ ... կործանեցայ, բոլորովին կործանեցայ ... կնիկս և զաւակներս խշտեակի մը, յարդի մը վրայ մնացինք ... սակայն կրցայ քանի մը քուրջեր մէկ տեղ բերել և ծախել ։ Ահա քսան թալեր . այս է ամեն ունեցածս, այսքան միայն կրնամ տալ քեզ ։

— Պահէ՛, բարեկամ, պահէ՛, քեզի հետ ուրիշ հաշիւ մը պիտի կարգադրենք այժմ ։

Տեպարօ՝ դէպ իմ կողմս դառնալով .

— Է՛, ասոր ի՞նչ կ՚ըսես, Մարիօ՛ն . սակայն դուն ես այս դժբաղդ Պէրնարին կործանման պատճառը ։

— Ե՞ս . ի՞նչ խօսք է ատի, գոչեցի՝ տարօրէն զարմանալով բացադարձութեան վրայ ։

— Այո՛, կը կրկնեմ թէ անոր կործանման անմեղ պատճառը դուն ես ։ Աներեւոյթ ըլլալէդ ութ օր ետք կը պարտաւորէի իր

կողմէն խիստ ապահովապէս վաստկուելու դատ մը վարել. ծանր էր գործը. խնդիրը քսանութ հազար հարիւր ֆրանքի, այսինքն այս պարոնին բոլոր հարստութեան վրայ էր։ Բայց շաբաթը խա-ղարկութիւններով, հարցուփորձերով, այցելութիւններով անցած էր. ամէն բան աչքս առեր էի քու վրայօք լուր առնելու համար, հետեւաբար այս դատին վերաբերող թուղթերուն և ոչ մէկ տողը քննեցի։ Գործը պիտի նայուէր. ա՛լ երկարաձգում չկար, և մեր հակառակորդ կողմին փաստաբանն ամէն կէտերուն մէջ ինծի դէմ յաղթող հանդիսացաւ։ Կը թոթովէի, հակա-ռակութեան մէջ կ'ընկնէի, խօսք մը կ'սկսէի և չէի աւարտեր . . . Բօզգրուային կը նմանէի։ Վերջապէս դատը կորուսի։ Ըսէ նա-յիմ, ինչ կ'ընէիր եթէ իմ տեղս ըլլայիր։

Ցէպարոյին ձայնը յուզուած էր. աչերուն մէջ արտասուք կը փողփողէին։

— Ո՛հ, պատասխանեցի, ես կարող չեմ ըսելու ինչ որ սիրտդ ճշմարտութեամբ կ'ըսէ քեզ ընելիքդ։

— Շնորհակալութի՛ւն, Մարիո՛ն, հասկցա՛ր միտքս։

Թղթակալէ մը թուղթ մը քաշեց և իր աննահ պաշտպանե-լոյն տուաւ։

— Ահա՛, ըսաւ Էմմանուէլ, ա՛ռ այս երսուն հազար ֆրանքի փոխանակագիրը, որ թագաւորին արծաթեղինաց գանձապետ Էմրբի ստորանուորէն պիտի վճարուի։ Էմրբին Ցըլէգօլ քարափին վրայ իր ապարանքին մէջը պիտի գտնես։ Մտերիմներուս միակ է ան. ստակը անմիջապէս պիտի համրէ քեզ, և հազար երկու հա-րիւր ֆրանք աւելին պիտի պահես։ Պարտքս է աւելին տալ քեզ ստակը ուշ ետ դարձնելուս համար . . . ։ Բայց ասոր ալ պատ-ճառն օրիորդն է . . . ։ Հիմակ առնելիք տալիք չունինք, այն-պէս չէ՞, Պէրնար։

Զանց կ'ընեմ նկարագրել խեղճ մարդուն զարմանքը և ուրա-խութիւնը. Էմմանուէլին ոտքը կ'ընկնէր ան, կ'ուզէր խօսիլ, բայց բառ չէր գտներ երախտագիտութիւնը յայտնելու համար։

— Օ՜ն, ելէ՛ր, ի՞նչ կայ, ըսաւ անոր Ցէպարօ. ահա ճիշդ այնպէս ես՝ ինչպէս էիր երբ դատդ կորուսի։

Մինչև դուռը տարաւ Պէրնարը. խեղճը կը լար և անոր ձեռները կը պագնէր։

— Ո՜հ, բարեկամ, ըսի Էմմանուէլին՝ երբ քովս եկաւ, մեծ է, ազնիւ է այդ ընթացքդ... կը սիրեմ քեզի։

Ինը կամ տասն անձեր ես հեռուհեռէ եկան. բայց Նախորդ վրդովութենէն ետք ամեն ծիծաղական տեսարան անհաճոյ պիտի գար մեզ։ Տէպարօ շուտ շուտ լմնցուց գործերը. մէկ ձեռքով կրակը կը նետէր թուղթերը, միւսովը թալերի սինակը կը տար. Հետևաբար սեղանին վրայի ստակները կը թուէին երբ միւս կողմէն կրակարանը մոխիրով կը լեցուէր։ Վերջապէս դատի բոլոր տպրակներն աներևոյթ եղան, յետին դատավճիռն ալ մեկնած էր։

Տէպարօ խնդութիւններ ըրաւ։ Ուրախութենէն ցատկրտեց, իր խուցին գաղտարկութեան առջև հրճուանօք հիացաւ, և խորհրդականի պաշտօնին հրաժարականը ղրկեց անմիջապէս։

— Հիմա, Մարիօ՛ն, գոչեց, բոլորովին մեր սիրոյն կը տամ անձս։

Ձիս վար իջեցուց։

Տօֆինի հրապարակին վրայ մեզ կ'սպասէր փառաւոր կառք մ'որուն ներսը կակաչագոյն թաւիշով զարդարուած էր։ Կառապանը ձիերը մտրակեց, կամուրջներէն անցաւ և հովին պէս վազեց դէպ 'ի Սէն-Վիգթօր արուարձանն ուր քսան վայրկեան չանցած հասաւ։

Էսթրաբատին մօտերը Գլամարի խաչին ճիշդ դիմացի կողմն էր այն պզտի տունն որուն վրայօք Թերէզա խօսած էր հետս։

Այս տունը դուրսէն քննուած ժամանակ շատ տեսք չունէր. բայց ներսէն ստուգիւ զմայլելի էր այն։ Մանրաձև Եդեմի նման բան մ'էր։ Հովանիներէ շրջապատուած վայելչաձև քէօշկեր, ընդարձակ աւազաններ՝ որոնց մէջ սպիտակաթև կարապներ կը լողային, ջրբուխներ, մերմերէ արձաններ, նա մանաւանդ ծաղիկներ, տեղական ծաղիկներ և օտարոտի ծաղիկներ, արևադարձային երկիրներու փառաւոր գաքթուսէն (cactus) սկսեալ։ Մինչև

Նուրապայի սիրուն և գեղջին հրամանքը. ամեն տեսակ գոյն և ամեն տեսակ հոտ ունեցող ծաղիկներ՝ որք իրարու հետ մրցելով կը փթթէին, մարգագետիններուն, պողոտաներուն, գաւիթի ծառուղին բաղրոտներուն Չինեյի ձև կը տային, անդաստակին մէջ կը փայլէին և սենեակներու շեմերուն առջևը կը կենային իբր զուարթուն պահնորդներ. ահա այս էր տունին ներքին տեսքը։

Քանի չափ այր և կին ծառաներ, ամենքն ալ հանդիսական զգեստներով զիս ընդունեցին այս երկրային դրախտին դրան առջև, և Թերէզան տունին բանալիները բերաւ ոսկեզօծ արծաթէ ափսէի մը մէջ, ինչպէս կը բերուի իր իշխանութեան երկիրներուն տիրող թագուհիի մը։

Նոյն քեր էթեկը ներկայեց ինձ։ Կարող կապող աղջիկն իրօք վարակած էր փոխանակութեամբ։

Տարուեցայ այն քէօշկը, որ ինձ սահմանուած էր։

Հրաշալիք հրաշալեաց վրայ կը տեսնէի, և իմ բնակարանս իր պերճութեամբն ու շքեղութեամբը պալատին ամենէն բարձր տիկնանց արժանի էր։ Արահին չթինէան պատնշելի որմանկար մը ունէր ուր կ՚երևային Աստղիկն ու Խարիթեան քոյրերը։ Գերընտիր պատուհաններու վրայ ապիտակ մարմարինէ կազմուած ամանէ մ՚ոսկեզօծ թևեր կ՚ելնէին սանդղաւոր շքեղ աշտանակներ բռնելու համար. իսկ թերթև կապոյտով ներկուած ձեղունէն բիւրեղեայ բազմաստեղն աշտանակներ կրող ճահեր (lustre) կախուած էին։

Այս ամեն առարկաները Վենետիկի հայլիներէն վերարտադրուելով զմայլելի տեսարան մը կ՚ընծայէին։

Թիկնաթոռներ, յենակաւոր աթոռներ, ծալածոյ աթոռներ սենեակը կը զարդարէին, և լայն աղխումներ ձևացնող օթոցը գոյները այնպիսի զանազանութիւն մ՚ունէր զոր ամենէն շքեղազարդ ծաղկոցը չէր կրնար ունենալ։

Պառկելու խուցիս վարագոյրները նարնջագոյն թաւիշէ էին։ Ձեղունին վրայ պզտի գեղեցկայեան կուպիդոններու հոյլ մը նկարուած էր, յաւերժահարսեր՝ այս զուարթագին խումբէն զրգռուելով

կը ջնջային վարդաշէն պսակներով կապել այս գուբիտոնները ։

Անկողնոյն՝ որ հովանոց և քանդակուած սիւներ ունէր՝ և պատին մէջ տեղի փոքրիկն Աննիպալ Գարաշի մէկ պատկերը ցոյց կը տար․ որու մէջ Արամազդ իբր ոսկեղէն անձրև Ագրիսիոսին (Acrisius) աղջկան քովը կ՚իջնէ ։

Էմմանուէլ առաջին սենեակը վերադառնալով գունաւոր ապակիներով շինուած դուռ-պատուհան մը բացաւ, և ինքզինքս խիստ աղւոր կախակայ կամուրջի մը վրայ գտայ որ մէկ քէօշկէ միւսին վրայ նետուած էր ։

— Այս կամուրջը, ըսաւ Տէպարօ, կը տանի իմ բնակարանս, և, սիրելիդ իմ, ինչպէս կը տեսնես, եթէ երբէք սրամտութեան կամ քմահաճութեան մը միջոցին զիս արտաքսես, դիւրին պիտի ըլլայ ինծի այս պատուհանէն վերստին տունդ մտնել ։

Հազիւ լսեցի այս խօսքը, վասն զի խելքս միտքս նայուածքիս երևցող հեռանկար տեսարանին կը տայի սքանչանալով ։

Աջ կողմն էին մարգագետիններն և ծաղկոցներն ուր արդէն ժուռ եկեր էինք․ ձախ կողմէն կը տարածուէին ընդարձակ պարտէզներ զոր զանազան զարմանալի բոյսեր կը զարդարէին ։ Ճարտարութիւնը հազարումէկ բարեբաստ դիպուածներ կազմած էր ։ Արահետներ օձապտոյտ կը դառնային պզտի բլուրներու կուշտերուն վրայ․ այս ամէն բլուրներուն վրայ դալարազարդ թուփեր կը վխտային, և իրենց կատարներուն վրայ կամ ժայռաշէն մեհեան մը, կամ գմբէթի ձևով կտրուած նշդարիէ հովանոց մը․ կամ խրճիթ մը կար, ճիշդ այն խրճիթներուն նման զոր երազէն Հելվէտիայի մէջ տեսայ ։ Կարծեմ Պիէվրի պզտի գետէն առնուած էին ջուրերն որք մարգագետիններուն թարմութիւնը կը պահէին ։ Այս ջուրերը թեթևահոս առուակներ դառնալով կ՚ընթանային, ջրվէժներու ձևով կ՚ընկնէին, և պարտէզներուն ճիշդ կեդրոնը կղզի մը կը կազմէին, որուն վրայ անճող մրտենիներուն և նարնջենիներուն տերևներուն տակն աղաւնիներ կը խաղային․ Երիտասարդ փաստաբանս՝ բնութեամբ խիստ դիցաբանական ըլլալով Կիպրոս կղզին կ՚անուանէր այն կղզին ։

կամուրջէն անցուց զիս, և ցոյց տուաւ ինձ իր բնակարանը որ թերևս իմինէս աւելի պարզ ճաշակով այլ մի և նոյն ճոխութեամբ և անթերի վայելչութեամբ զարդարուած էր։

Բա՛յց է, ինչպէս չըլանայի, չխաբուէի։

Այս աղուոր տունին մէջ կը բնակէինք ահա և համայն աշխարհէ պահուած էինք։ Էմմանուէլ սոյն տունը գնած էր Նաբոլիացի սեղանաւորէ մ'որ մարէշալ Տ'Անգրի մասնաւոր պաշտպանութեան շնորհիւ խիստ շահաւէտ գործեր ըրած ըլլալով անոր մահուանը միջոցին Ալպեան լեռներուն միւս կողմն անցնելու փոյթ ունեցած էր։

Սեղանաւորին ապարանքը, ինչպէս նաև իր արուարձանի կալուածքը շատ աժան ծախուած էր։

Տէպարօ իրաւամբ կը վախնար իր հօրը դժգոհութենէն, և ես ալ ամէն պատճառ ունէի կոմսուհիէն վախնալու՝ եթէ մեր առանձնական բնակութեան ուր ըլլալը իմանար։

Ուստի որոշեցինք ոչ զոք տեսնել։

Կը պարտաւորիմ հոս նկարագրել առաջին ամիսը զոր Էմմանուէլին հետ անցուցի։ Այս ամիսը գեղեցիկ, շարունակ պայծառ և սքանչելի ճառագայթ մը, երանութեան և սիրոյ անընդհատ ժպիտ մ'եղաւ։

Սիրօղս միայնակ կը կատարէր այն ամեն վարժապետներուն պաշտօնը, զորս տիկին Տը Սէնթ-Էվրըմօն բռնած էր ինծի համար։ Տէպարօյին հետ կ'ուսնէի մեր քաղցր հովանիներուն ներքև, դալարագեղ մարգերուն վրայ, մենական քարայրերուն մէջ։ Դասերուս փոխարժէքը համբոյրներով կը վճարէի. վարժապետն և աշակերտուհին շնորհալի նախանձաւորութիւն մը ցոյց կը տային։

Թէօրպ զարնելու արհեստին մէջ արդէն քաջ էի. ասկից ՚ի զատ խիստ գեղեցիկ ձայն մ'ունէի, զոր մեթոտը կը զարգացնէր լարերը յափշտակելու կերպով։ Էմմանուէլ յանպատրաստից երգեր կը շինէր ինձ, և այնքան դիւրութեամբ կը շինէր որ Մօլիէրին համար Սէն-Սօրլէնի դիմած ըլլալուն զինքը կշտամբեցի՝ չկրնալով համբերել։

— Մեր առաջին տեսութեան ժամանակ, Մարիօն, ըսաւ Ցէպարօ, աղուոր կ'երևայիր ինծ. բայց քեզի չէի սիրեր այն անխանով և հոգեբոյր զգացումով ինչպէս կը սիրեմ հիմա։ Բանահիւս եմ, սիրելիդ իմ, բայց սրտիս հզօր կերպով յուզուիլը զգալու թէութեամբ. մինչդեռ Սէն-Մօրլէն և ուրիշ շատ սոնձիկք բանաստեղծութիւնը արուեստ մը կ'ընեն։ Իրենց ուղեղին մէջ յանգերու շտեմարան մ'ունին, և այս շտեմարանը հասարակութեան և իրենց բարեկամներուն կը ծառայեցնեն կամակատարութեամբ։

Շատ երջանիկ եղած կ'ըլլայինք եթէ այս հոգեշունչ հեշտութեան վայրկեանները կարենայինք միշտ տևել։

Տակաւին փորձառութիւն չունէի որ երկար առանձնակեցութեան վտանգը իմանայի։ Վեց շաբաթ անցան, և արդէն Էմմանուէլին մտիկ ընելով մերթ ընդ մերթ յօրանջելս յանկարծ կը տեսնէի։ Ան ալ յանպատրաստից խօսելու դիւրութեան և եռանդագին հարտասանութեան մէկ մեծ մասը կորուսած էր։

Մեր երկրային դրախտը նուազ զուարթ կ'երևար մեզ, և արգիլեալ պտուղին համն առնելու պէտքը կ'զգայինք։

Ցէպարօ առաջարկեց որ երթանք և Բարիզի մէջ խիստ զգոյշ կերպով քիչ մը պտոյտ ընենք՝ մէն մի անգամին նոր ծպտումով մը։

Ամենայն ուրախութեամբ ընդունեցի առաջարկութիւնը։

Կառքը Բարիզէն մինչև շրջապատ որմը կը տանէր մեզի։ Այն տեղէն կ'իջնէինք։ Էմմանուէլին թևը կը մտնէի, և զուարթագին շրջագայութեամբ մ'աղմկալի քաղաքը, փողոցները, հրապարակները և քառուղիի մայթանները կը քննէինք։ Անպատժութիւնը յանդգնութիւն կը տար մեզ։ Նախ Սէն-Ժէրմէնի և Տիւ Մարէ թաղերուն բոլոր պզտի թատրոնները տեսայ. ապա գեղեցիկ գիշեր մ'երբ Մօզօնէյլ փողոցէն կ'անցնէինք՝ Ցէպարօն Պուրկօնեի տպարանը մտցուց զիս։

Գ. Կարնիէին Պրադամանդ անունով շինած թատերգութեան ներկայացումը կը տրուէր հոն. Կարնիէ այն ժամանակին երևելի

հեղինակն էր։ Կ՚ըսուէր թէ իր նախորդները, այսինքն ծօսելները և Պարիզները անշքութեան դատապարտեց. բայց ինքն եւ մոռացման անդունդն ընկաւ երբ Սէրի հայրը՝ Գօրնէյլ՝ տասը տարի ետք իր ողբերգական խանդին վսեմ ներշնչութիւնները երևան հանեց։

Ճաշակիս նկատմամբ միջակ գաղափար մը պիտի տամ ըսելով թէ ծափ կը զարնէի Րօպէր Գէրասանին, որ Պըրգօնեանին մէջ իր տարփուհին ոտքի մը տալու սոփոյութեն բաւական ծիծաղաշարժ տողեր կը կարդար աշխուժով. . . ։

Ինքզինքս արդարացնելու համար պէտք է խոստովանիլ թէ հասարակութիւնն ինծմէն շատ աւելի ծափ կը զարնէր։ Ասիներուն իրենց թաշկինակը հանելը և Պըրգօնեանի անհամ հատածին վրայ առատօրէն արտասուելը անզամ տեսայ։

Ներկայացումին աւարտումէն ետք փափաքեցանք Կօթիէ-Կարկիլի, Թիւրլիւբէնի, Կրօ-Կիյեօմի և Պէլրօզի խեղկատակութեանց ներկայացումները տեսնել։

Բայց դէշ ըրինք. վասն զի այս զաւեշտներուն ներկայացման տեն հանդիսականները բաւական յօժարութեամբ կը ձգէին իրենց աթոռները, և յաջ ու աճեակ կ՚երթային իրենց. Ճանչուորներուն բարև տալու և քանի մը քաղաքավարական խօսք ընելու համար։

Կրօ-Կիյեօմին Թիւրլիւբէնին ապտակը զթիլը և Ճիշդ քթին վրայ ընկնիլը տեսնելով երբ խենդի մը պէս կը խնդայի, ետևէս բաւած յետապայ խօսքը լսեցի.

— Է՛հ, անշուշտ ան է, Մարիօնն է։

Նոյնս դարձայ ուժգնապէս, և սիրելի կնքահայրս՝ Տը Վիլարսօ մարգիզը և Վօժըլա քերականը տեսայ։

Ճակատիս վրայ կարմրութ ծառալեցաւ, և աչերս վար ըրի ամօթահար։

Ընմանուէլ այս պարոնները մեկուսի քաշելու փութաց։ Խընդրեց որ դաղտնի պահեն այս հանդիպումը. սակայն որեւէ իսկոյն Պասօմբիէրն եկաւ, ետևէն հասաւ Սէն-Սօրլէն. ասոր յա-

ջորդեց Շըմըրի նախագահը, որ Գիյլէէ անուն պզտիկ բժիշկը բերաւ մեզ. այս բժիշկին թեւը մնած էր Վօղըլէն Տէզ-Իվէթօ անունով այլանդակ մարդ մ'որ հեռուստ Թէօֆիլ անունով շատ տղեղ տղայի մը նշան ըրաւ, և ահա այս ամեն մարդիկ յանկարծ մեր շուրջը հաւքուելով, մեզի շրջապատելով, հարցումներ և յանդիմանութիւններ կ'ընէին ինծ և Տէպարօյին:

Այս ամեն պարոնները մեզի տեսեր էին թատրաբեմին վրայէն ուր աթոռներ ունէին:

Ես ներկայացումին ուշադիր զանուելով ոչ զոք նշմարեր էի, և Տէպարօ ես՝ սաստիկ կարճատես ըլլալով՝ իր բարեկամները չճանչած էր:

Մեզի ամեն թատրոնին փողերը տարին:

Ամեն կողմէ զարմացման աղաղակներ կ'արձակուէին հետզհետէ:

— Ի՞նչ կը նշանակէ ասի, կը գոչէր Պասօմբիէր, պէ՞տք է այդպէս վարուիլ այն ծառայութենէն ետք զոր ըրի ձեզ... ապերա՛խտ էք:

— Ձնայի՛ք սա տատրակի ձագերուն. մեղրալուսնի առեն պահուի՛լ, ի՛նչ ինքնամոլութիւն, կը շարայարէր Սէն-Սօրլէն:

— Ուզածիդ չափ հրաժարէ խորհրդականի պաշտօնէդ, սիրելիս, կ'ըսէր նախագահը Տէպարօյին, բայց տիկնոջ գեղեցիկ աչերը մի՛ պահեր մեզմէ... Գիտնա՛ս որ չպիտի համբերենք ատոր:

— Ո՞ւր կը կենաս, գեղանի՛ սանուհիս, հարցուց Վիլարսօ լրբութեամբ:

— Ներէ, մարդիկ, կենալ բառը գործածելովդ կը սխալիս. պէտք է «ո՞ւր կը բնակիս» ըսել, վասն զի կենալ բառը քու նշանակութեամբը....

— Լռէ, Վօժըլա, իմաստակութիւններդ մի՛ սկսիր, և մի՛ ձանձրացներ մեզի քերականական կանոններովդ, ըսաւ պզտիկ բժիշկը: Լաւագոյն է այս գեղեցիկ ամոլքը տեսնելդ, շարայարեց զիս Էմմանուէլին հետ ցոյց տալով. կ'ուզեմ տիկնոջ մեծարանք մատուցանել քերթուածովս որուն վերնագիրն է. De pulcheræ prolis habandœ ratione.

— Հըմ, ըրաւ Վօղըլէն, ամենեւին չեմ կարծեր թէ այդ քերթուածին սպասած ըլլան՝ իրենց գործին ձեռնարկելու համար։

— Շուտ ըրէք, մեկուսի քաշուեցէք, գոչեց այն անձն որ Թէօֆիլ կ՚անուանուէր։

Այս անձը կոշտաբար խումբը հրելով մինչեւ մեր քովը հասաւ, և շարայարեց.

— Վերջապէս ահա գտայ սա պատուական բարեկամս, սա սիրելի աշկերտս որ այնքան օգուտներ քաղեց անաստուածութեան դասերէս....։ Հիմակ իզմէն աւելի հզօր միտք և աւելի ամբարիշտ է... ամենքդ ալ վկայ կը բռնեմ ըսածիս....։ Օրիորդը վանքէն չհափափե՞ց։ Իր տարփուհին կրօնամոլութեան դէմ պաշտպանել և խորանէն կորզելը... չքե՞ղ բան մ՚է։ Էմմանուէլ, կը պատուե՛մ քեզի և առջեւդ ծունր կը դնեմ...։ Բայց ա՛լ չեմ զատուիր քեզմէ, սիրելի բարեկամ... այսուհետեւ չենք թողուր զինքը, պարոննե՛ր։

— Ոչ, չե՛նք թողուր, գոչեցին ամենքն ալ։

— Նորէն չպիտի փախի մեր ձեռքէն։

— Մի՞ գուցէ հօրմէն վախնայ։

— Բայց անշուշտ կը վախնայ։

— Հոգ չէ. իր առանձնական բնակարանը չպիտի յայտնենք։

— Ա՞ն վախնայ իր հօրմէն... ոռնաց Թէօֆիլ. դեռ զինքը չէք ճանչեր ուրեմն... այնպիսի կերպով դաստիարակած եմ զան որ այս մասին քաջ գիտէ ինչ կերպով վարուիլը։ Պարոննե՛ր, սիրելի բարեկամս հիմա մեզի պիտի տանի իր հետը միասին ընթրելու համար, կամ կ՚ուզեմ որ սատանան — եթէ երբեք սատանան էութիւն ունի, հիմակ անմիջապէս զինք առնու տանի։ Շըվրի իր կառքը ունի. Վօղըլէն և Վիլարսօ ևս անշուշտ իրենց կառքերը ունին։ Երեք կառք կայ, և մենք երկու, հինգ, եօթը, տասի հոգի ենք....։ Բա՛հ, կրնանք մեր հետն առնուլ ծեր Մալէրպը և իր ամենասիրելի Ռագանը. Գիյլեէ՛, գնա՛ կանչէ զանոնք, թատերաբեմին առջեւի կողմը նստած են։ Մալէրպ թիւրլիւրինեան խեղկատակութիւնները կը քամահրէ, և

ընթրիք մը մերժելը չտեսած եմ երբէք . . . ։ Գնա՛ ուրեմն կանչելու, շո՛ւտ գնա՛։

Այս ամէն աղմուկները, շարժումները, ժխորներն և խօսքերն այնքան յանկարծապէս կը տեղային մեր վրայ որ ես և Էմմանուէլ գրեթէ չէինք կրնար շունչ առնուլ։

Գասոմբիէր թեւս կը գրաւէր, Թէօֆիլ Տէպարօն առած էր անոր բաճկոնակին տտուններէն բռնելով. մեզի հետ կը վարուէին իբր ճշմարիտ կալանաւորներու հետ։

Սպիտակ մօրուք և ներհուն ճակատով գեղանձն ու մեծահասակ ծերունի մը կը գար մեր քովէ առաջնորդութեամբ մարդու մ'որ խիստ փոքրահասակ էր և պատանեկան երես ունէր։ Ծերունին Մալէրպն էր, իսկ առաջնորդը Հովուերգութեանց հեղինակը՝ Րագանն էր։

Կրնայիր կարծել թէ Հոմերոսը պատանիէ մ'առաջնորդուած կը տեսնես։

— Է՛յ, ըսաւ ինձ Էմմանուէլ՝ իր առջի շուարումէն բոլորովին սթափելով, պատրաստուէ, թագուհիս, հիւրերդ արժանապէս ընդունելու, և հաւանէ որ թագաւորութեանդ երկրին սահմանէն անցնին։ Այսուհետև ինչո՞ւ չընդունինք մեր բարեկամները։ Եթէ մէկն ուզէ մեր երանութեան դէմ յարձակիլ, զայն պաշտպանելու համար ալ մինակ պիտի չըլլանք։

Կէս ժամէն ետք երեք կառքերը Սէն-Վիքթօր թաղէն պզտիկ տան դուռին առջևը կանգ առին։

Մեր բոլոր ծառաներն ակնթարթի մը մէջ կազմ ու պատրաստ գտնուեցան։

Ճրագները վառուեցան, պողոտաները լուսաւորուեցան։ Գիշերը զմայլելի գիշեր մ'էր, և մեր յանկարծական հանդէսը շատ աղէկ յաջողեցաւ։

Մինչդեռ նախաճաշի համար հրամաններ կը տայի, սեղանակիցներս մեր դիւթական պարտէզները ժուռ կը գային ջահերով։ Այս ամէն լոյսերուն հոն հոս հովանիներուն ներքև վառելը, բլուրներուն վրայ ելնելը, քարայրներու ներքև աներևութանալը

կը տեսնուէր, և աղմկալի գոչումներ, եռանդագին աղաղակներ, զուարթագին կեցցէներ կը լսուէին։ Ես ինքս ալ բոլորովին հանդարտած կ'զգայի, և ինքզինքս երջանիկ կը գտնէի այս յանկարծական ազնուութեան շնորհիւ որ մեր ապաստանարանին զարթում կը տար։

Արդէն Հելվէտիացիներուն գնդապետը, որ Մոնմարթրի վանքին մէջ չկրցած էր շատ խօսիլ հետս, այժմ աւելի երկարօրէն խօսելու միջոցը գտած էր։

Ծիծաղաշարժ կերպարանով զիս կ'աղերսէր որ ներեմ իրեն Լուվրի մառանին մէջ տեղի ունեցող խեղկատակութիւնը, և ոյժ չունեցայ ցոյց տալու իրեն ոխ մը զոր չունեցեր էի։

— Բայց, ըսի գնդապետին, ի՞նչ կը յուսայիր այդպիսի մատնութենէ մը։

— Նախ, սիրելիդ իմ, եթէ կնքամայրդ եկած չըլլար, ամուսնութիւնդ խիստ վաւերական պիտի սեպէիր։

— Անշուշտ, և ահա իրողութեան ամենէն պժգալի կողմն այն է։

— Չէ... վասն զի Մարգրիտը չէիր սիրեր։

— Չեմ հասկնար ինչ ըսել ուզելդ, գնդապետ։

— Ա՛հ, անիծեա՛լ կոմսուհի, գոչեց հառաչումով մը։

— Բացատրէ՛ միտքդ։

— Է՛հ, խօսիմ ուրեմն, գոչեց Պասօմփիէր. ութ օրէն ետք կ'արտաքսէիր սլքտի տեղակալը, և այն ատեն խիղճդ հանգարտելու բոլորովին պատրաստ միջոց մ'ունէի... մինչդեռ յաւիտենապէս Տէպարոյին հետ պիտի բնակիս....։ Հիմակ ո՛ւր է յոյսս։ Վանքէն փախստեանդ օգնելու ազնուութիւնը ունեցայ, քեզի ուրիշի մը կինը նետելու համար....։ Գործերս առաջ տանելու աղուո՛ր միջոց։

Ժպտիլս տեսնելով յանդգնեցաւ իր հին իրաւունքը պահանջելու որ էր զիս համբուրել։

Նախ անգութ եղայ. սակայն իր բարի և զուարթ դէմքն այնքան տրտմեցաւ որ ձեռքս իր շուրթերուն երկնցուցի, ըսելով.

— Ա՛ռ նայիմ, մեծդ նենգաւոր։

Նոյն պահուն Սէն-Սօրլէն հանելով մի և նոյն շնորհը պահանջեց, և որովհետև բարոյականութեան մասին իր տուած ապացոյցները Պասօմբիէրին տուածներէն նուազ կասկածելի էին, յարմար չդատեցի մերժել իր խնդիրը։

Սէն-Սօրլէն խնդալով իմացուց ինծ թէ Գերապատիւ Տիւբլէսի՝ բնութեամբ բաւական ծանծաղամիտ ըլլալով՝ չդժգոհած էր այն անձերէն որք մայր-թագուհիին նախանձոտութեան տեսարանին ականատես եղեր էին։

— Մեր եպիսկոպոսը նորա հետ Պլուա գնաց, շարայարեց Սէն-Սօրլէն. սակայն հովահարդ իր խուցին մէջ պահեց, և կ'աղաչէ քեզի որ երբ Պլուայէն ետ դառնայ, իր խուցն երթաս հովահարդ առնելու համար։

— Լա՛ւ, գոչեցի, թո՛ղ ունենայ այդ յոյսը։

Մեր բոլոր սեղանակիցներն աւարտելով իրենց շրջագայութիւնը Փոր ըրեր էին ջահերով, ա՛լ ետ կը գային։ Սեղան նստանք, և նախաճաշիկը սաստկապէս զուարթ եղաւ։ Վիլարսօն աջ կողմս նստեցուցի, և վերջապէս ժամանակ ունեցայ քննելու Էմմանուէլին այն բարեկամները զոր տակաւին չէի ճանչեր։

Տօմարակալութեան ատենին* նախագահ Շըվրի՝ Պասօմբիէրին պէս անձնեայ, դէմքը գրեթէ անոր դէմքին պէս շնորհալի, բայց միտքն ոչ այնքան կայտառ էր։

Գիյլեէ՝ պզտի բժիշկը՝ վառվռուն երևակայութիւն, ուսերուն մէջ մխուած վիզ մ'և լատինական մատենագրութիւններէ օրինակներ յառաջ բերելու մոլութիւնը ունէր։

Վօդըլէն Տէզ-Իվէթօ մեծահասակ, չոր ու վտիտ մարդ մ'էր կլորաձև պզտի աչերով և նեղ ճակատով. խիստ քիչ անգամ այլ սոսկալի ձևով մը կատակ կ'ընէր, և երբեմնակի ժամերով կը կենար առանց բերանը բանալու։ Լուի Երեքտասաներորդին

* Հասարակաց գանձուց հաշիւները քննելու և ստուգելու պաշտօնով հաստատուած ատեան։ Ծ. Թ.

և Տը Վանտոմ դուքսին դաստիարակն եղած, ապա անկրօնութեան պատճառաւ իրեն ճամբայ տրուած էր։ Անլուր էր իր հագուստն որուն վրայ ոչ ոք կը համարձակէր խնդալու վարժապետին հանդիսաւոր կերպարանքին պատճառաւ։ Իր մուճակները կապեր ունէին և ժապաւէններով կապուած էին Պասոմբիէրին Կրիզօնայի պահակներուն մուճակներուն պէս. չինական մնդուսէ թեզանիքը, հին կաշիէ բաճկոնակ մը, հոտաւոր կաշիէ գլխարկ մ'և վիզն ալ յարդեայ շղթայ մ'ունէր։

Մալէրբ ճշմարիտ բարեկամութիւն մը ցոյց կը տար այս այլանդակ մարդուն, և կարծես մեծ յարգ կ'ընծայէր անոր։

Այս ընկերութեան մէջ մէկ մարդ միայն անզուսպ ատելութիւն մը կը ներշնչէր ինձ, և այս մարդն էր ճիշդ ան զոր կարծես Էմմանուէլ նախամեծար կը բռնէր։

Այս մարդը Թէօֆիլն էր. ծաղկի հիւանդութենէ մնացած նշաններ, գալարուած քիթ մը, ցցուած շուրթեր, և ոսկրկալ թռչունին աչքին պէս խոշոր ու կլոր աչեր ունէր և տգեղութեան մրցանակը վաստկելու համար կրնար Գամիւզարին հետ մրցիլ։ Տէպարօ սաստիկ խելանի կը համարէր Թէօֆիլը. բայց ես ասոր շատխօս մ'ըլլալը գիտեմ միայն։ Աժէն քաղքէն էր ան. հարաւաբնակի յատուկ և սաստկապէս շեշտուած ձայնովը ալ աւելի տհաճոյ կ'երևար ինձ։

Ինչ և է, գնդապետէն, Վիլարսօյէն և նախագահ Շըվրիէն 'ի զատ մեր բոլոր սեղանակիցները գրագէտ կամ պոէտ էին։

Վօժըլա արդէն Գրինթ-Գիւրսը խիստ նշանաւոր կերպով թարգմանած էր. Գիյլեէ, կ'ըսուի, Վիրգիլիոսէն աւելի աղէկ ոտանաւորներ կը շինէր. Սէն-Սօրլէն նոր 'ի լոյս ընծայած էր Գըվիս անուն քերթուածը. Թէօֆիլ անգամ վարնոց սեղերու յատուկ համբաւ մ'ունէր, զոր ամբարշտական ոտանաւորներու և համարձակ երգերու կը պարտաւորէր. Վօգըլէն Տէզ-Իվէթօ բաւական լաւ տաղեր և հնչերգներ (sonnet) կը շինէր, և Ռագանին սրբազան մեղեդիներն անարժէք չէին։

Իսկ Էմմանուէլ, որ իմ բանահիւսս էր, հասարակութեան

նկատմամբ սաստիկ անարգութիւն մ՚ունէր, և լոկ ինձ կը պատհէր իր ներշնչումները և խանդը։

Ամենքը սաստիկ կը յարգէին Մալէրպը, վասն զի յանգի և կանոնաւոր շարժում մը, ոճին յստակութեան և ներդաշնակութեան մասին զան իրենց վարժապետը կը սեպէին։

Սակայն՝ որոնք որ գրիչ 'ի ձեռին աւելի խելք ունէին՝ Հէլվէտիացիներուն գնդապետին քով չփայլեցան։ Այն գիշեր Պասօմբիէր զարմանալի աշխոյժ և անսպառելի ճարտարաբանութիւն ունեցաւ. ամենազմայլելի երգիծաբանութիւններ ցանեց և օրուան ծիծաղելի իրերը կատարելապէս հեգնեց։ Ոչ ոք, և ոչ իսկ Թագաւորը խնայուեցաւ իր չարաբոյր եպերաբանութեան առջև։

Իր չարախօսութիւնները Անրի Դ.ին աղջիկը յիշեցուցին ինձ. ուստի անոր խօսքը ընդհատելով,

— Աղէկ միտքս եկաւ, գնդապետ, ըսի, ինչ եղաւ սա խեղճ Լիզէթին վիճակը։

— Է՛հ, սիրելիդ իմ, երջանիկ են և շատ աղէկ տուն տեղ կը կազմեն այն ամեն անձերը զոր ես կը կարգեմ...։ Արդ, շարայարեց, մեր արքայական տէրը — և այս մասին իր նախորդ-դաստիարակ Վօգըլէնը թո՛ղ չնեղանայ — մեր արքայական տէրը, կ'ըսեմ, շատ քիչ կը ճանչէ նուրբ ու փափուկ կատակը և խօսքի վայելչութիւնները. Թագաւորին կատակը զուարթութիւն պատճառող և մարմնոյդ եռք տուող թեթև խայթոց մը չէ ... չէ, այլ լախտ մը զոր ուղղակի գանկին վրայ կ'իջեցնէ ուժգին։ Միւս օրն ուզելով իր տխրութիւնը փարատել պատմեցի անոր թէ երբ իբր դեսպան Սպանիա գացի, հետս, նիհար և կաղ ջորիի մը վրայ հեծած էի և բաւական ծիծաղաշարժ կերպով մը Մատրիտ մտայ։ Իրևակայէ թէ ինչ պատասխանեց Լուի ԺԳ։

— Էսէ նայինք, գոչեցին ամենքն ալ։

— «Իրօք շատ ծիծաղաշարժ բան մը պիտի ըլլայ քեզի պէս մեծ էշ մը ջորիի մը վրայ հեծած տեսնելը», ըսաւ Թագաւորը։

— Աղուո՛ր է, շա՛տ աղուոր։

— Նո՛ւրբ է։

— Փափուկ է։

— Ո՛հ, ինչ խելանի միապետ։

— Պսակնե՛ր դնենք գլուխը։

— Եւ ինչ պատասխանեցիր, Պասօմբիէր, հարցուց կնքահայրը։

— «Վեհափա՛ռ տէր, խնայեցէք ինձ, ձեր փոխանորդն ըլլալու պատիւը ունէի»։

— Ապրի՛ս, ապրի՛ս։

— Պարոններ, ըսաւ Սէն-Մօրլէն, թոյլ տուէք ինձ որ այս պաշտելի հեղնաբանութիւնը հայունեցնեմ։

— Օ՛ն, Բէկազին վրայ նետուէ, բայց նայէ որ թուագլոր չընկնիս։

— Ահաւասիկ, պարոններ.

Պասօմփիէր Թագաւորին կ՚ըսէր թէ
Իր վերջնայոյն դեսպանութեան ժամանակ
Սպանիոյ մայրաքաղաքն էր մնած
Հեծանելով ջորւոյ վրայ անճոռնի.
«Բո՛ւհ, ինչ ամօթ, ծիծաղաշարժ ինչ վիճակ»,
Պատասխանեց արքայական վեհափառն.
«Լաւ խնդալու բան մ՚էր անշուշտ տեսնել թէ
Ջորիի վրայ մեծկակ էշ մը նստած է»։
«Տէ՛ր իմ, գթա՛», ըսաւ անդրէն խորամանգն,
Զի էի Ձեր Վեհափառութեան փոխանորդ»։

— Գէշ չէ, շատ գէշ չէ, օրհնելիդ իմ պատրաստաբան։

Սէն-Մօրլէնին յաջողութիւնն ուրիշներուն գրգիռ տուաւ, և բանաստեղծական ճշմարիտ հեղեղ մը, յանգերու տեղատարափ մ՚ունեցանք։ Երբ այդ ամեն մուսաներն անգամ մ՚արձակուեցան, ալ իրարու խօսքը հասկնալ անկարելի եղաւ, և բնականաբար գեղջիկ աչերը իրենց փաղաքուշ խօսքերուն բնաբան ըրին։ Էմմանուէլ անիրաւ չէր. այս պարոններն այս առթիւ ամեն տեսակ

չէր Տէպարօ․ ոչ ևս․ և անշուշտ ոչ ալ դուն, սիրելիդ իմ Մարիօն, չէիր ուզեր երբէք Տ'Անգրը մարէշալուհիին գլխատուիլը տեսնել։

Այս խօսքերը սարսուռ տուին ինծի։

Բօն-Նէօֆի արիւնաբոյր իրողութեանց յիշատակը տակաւին մտքիս մէջն էր։

Նախախնամութիւնը՝ զիս այսպիսի տեսարաններու հանդիսական ընելով, թերեւս կ'ուզէր փրկութեան դասեր տալ ինծի, փառամոլ հոգիս բռնել և ցոյց տալ ինծի թէ այս աշխարհիս մէջ մարդս որքան արագօրէն բարձրանայ, այնքան աւելի խոր անդունդ կը գլորի։

Վիթրի՝ մարէշալ Տ'Անգրը Լուվրի դուռին և դրեթէ մայր-թագուհիին առջևը մեռցնելէն ետք՝ զինուորներ ղրկեց նահատակին կնկան տունը։ Մարէշալուհիին սենեակները դրաւուեցան, կահ ու կարասին խորտակուեցան, Լէօնօրին ադամանդները, ստակը, թղթադրամներն և մինչև իսկ անհրաժեշտ զգեստներն առնուեցան։ Երբ պէտք եղաւ Պաստիյլի բանտը տանիլ Լէօնօրը, հարկ եղաւ իր տասնուհինգ տարեկան աղջկէն քիչ մը ստակ ուզել՝ այս Ֆրանսայի մարէշալուհիին շապիկ մ'և մէկ քանի զոյգ գուլպայ գնելու համար։

Լէօնօր ողորմելի մերկութեան վիճակի մը մէջն էր երբ եկաւ բանտը մտաւ։

Գօնտէի իշխանն անգամ՝ զոր նէ բանտել տուած էր՝ գթաց նորա վիճակին վրայ և Պաստիյլի կառավարչին ստակ տուաւ՝ աղաչելով որ այս դժբաղդ կնկան պիտոյքը հոգայ։ Բայց մարէշալուհին իր վեհանձն թշնամիին օգնութիւնը ընդունելու հազիւ ժամանակ ունեցաւ․ հետևեալ օրը Պաստիյլէն Գօնսիէրժըրի բանտը փոխադրուեցաւ Լէօնօր, ուր դատաւորները ծայրայեղ խստութեամբ մը քննեցին իր դատը։

Նորա մահապարտութեան կատաղաբար աշխատողներուն եղան մանաւանդ ինչ ինչ անձեր, որոնց առհաւատչայ բան մ'եղած կ'ըլլար փախել իրենց կերածը և հրաժեշտ տալ այն անբաւ հարստու-

թեանց որոնց ժառանգութիւնը փոխանցուած էր արքայական կալուածքով։

Թագաւորն՝ իր բացասական յատկութեանց հետ նաև աւելորդապաշտական դիւրահաւատութիւն մ'ունենալով՝ դիւրաւ համոզուեցաւ թէ Լէօնոր սատանայական միջոցներ 'ի գործ դրած էր մայր-թագուհիին խելքը գրաւելու համար։

Բոլոր ամբաստանութիւնն ահա այս հիման վրայ կայացաւ։

Հաստատուեցաւ թէ մարէշալուհին կախարդութիւն, յուդայութիւն գործած էր և թէ սատանային հետ մտերմական յարաբերութիւն ունէր։

Դատարանին խիղճը չէր կրնար այսքան մեղադրական պատճառներ ընդունելու արգիլուիլ. ուստի կանխորոշուեցաւ կառափնարանին վրայ մեռնելու դատապարտուեցաւ։ Այս նորա մարմինը Գրէվի հրապարակին վրայ պիտի այրուէր և մոխիրը հովին պիտի նետուէր։

Լէօնոր համարձակութեամբ լսեց իրեն դէմ տրուած այս վճիռը, և երկիւղածութեամբ պատրաստուեցաւ իր պատիժը կրելու։

Առջևէս անցաւ սոսկալի սայլին վրայ նստած։

Անկարելի եղաւ ինձ արտասուքս զսպել երբ տեսայ թէ նոյն սոսկալի միջոցին որքան համակերպութիւն և բարեպաշտութիւն ունէր իր դէմքը։

Խոստովանահայրն իր քովն էր։

Մարէշալուհին անոր յորդորանաց ուշադիր ըլլալով կարծես թէ ոչինչ կը տեսնէր, ոչինչ կը լսէր, և միշտ լուռ մերթ կը ծռուէր եռանդագոյնս պագնելու համար խաչելութիւն մը, զոր ձեռքը բռնած էր։

Լէօնոր երջանկութեամբ տարակուսիլ և տանջանքին շատ դիւրեցին էր։

Բազմութեան մէջէն հեծկլտանք լսուեցաւ երբ մարէշալուհին կառափնարանին վրայ հասնելով յայտ ըրաւ թէ կը մեռնի անմեղ՝ առանց գործած ըլլալու այն ոճիրները որոնց համար զինքը դատապարտեր էին իր դատաւորները։ Քրիստոսին պատկերը վերջին անգամ մ'ալ պագնելէ, ձեռները իր սպիտակ բաճկոնին վրայ խա-

չամեները, աչքը դէպ երկինք վերցնելը տեսայ. ապա գաճիճին կողմը դարձաւ, որ նորա երկայն մազերը կարեց։

— Ա՛խ, գոչեցի՝ Ճակատս Էմմանուէլին ծունկերուն վրայ դնելով, հեռանանք ասկից, կ՚աղերսեմ քեզի, երթանք։

Նոյն միջոցին բազմութիւնը կառափնատին բոլորտիքը մէկզմէկ հրելով կը խռնէր։ Մեր կառապանը վերջապէս կրցաւ կառքը դարձնել և մեզի այս քստմնելի տեսարանէն հեռի տանիլ։

— Աստուած վկայ, ըսաւ Էմմանուէլ. դատաւորներն անարժան են, և չեմ տեսներ թէ ուր է այս կինը դատապարտելու հարկը։

— Ո՛հ, իրաւունք ունիս, բարեկամ, մեծ վատութիւն մ՚է անոնց ընթացքը. մարէշալուհին մահուան պատիժին արժանի չէր։

— Ահա այդ պատճառաւ վճիռը երեսակայական պատճառներու վրայ հիմնելով տուին։

— Խե՛ղճ կին. նշմարեցի՞ր իր հրեշտակային բարեպաշտութիւնը։

— Լէօնօր երկինք երթալու ստուգութեամբ կը մեռնի. կը փափաքիմ որ նէ երկնից դուռը գանէ։

— Աստուած պիտի բանայ զայն, վասն զի նորա համբերատարութիւնը և զղջը կը տեսնէ։

— Աստուած լոկ բառ մ՚է, սիրելիդ իմ։

— Ո՛հ, բարեկամ։

— Չեմ կարծեր անգամ որ անմահ կինք կարենայ շատ յոյս ունենալ աստուածային վրայ, որու հետ տակաւին շատ մտերմական յարաբերութիւններ ունենալը կը հաստատեն իր պաշտօնեները։

— Կը համարձակիս այդ բաները ծաղրելու։

— Բայց անշուշտ, Մարիոն, ամբողջ շաբաթ մ՚արտասուք թափելու նպատակ չունիս՝ դիպուածով կառափնատ մը տեսնելուդ պատճառաւ։

— Բայց, Էմմանուէլ, քու ամբարշտութիւնդ է ինծ յուսահատութիւն տուողը։ Այդպիսի սկզբունք ունենալու համար ծնած չէիր։ Դուն բարի սիրտ մ՚ունիս... բայց շատ վտանգաւոր բարեկամներ ունիս։

— Հա՛, հա՛, կը հասկնամ միտքդ. սա սիրելի Թէօֆիլը քու

վրայ նորատուր պատուութիւն մ'ընելու բարեբաղդութիւնը չու-նեցաւ։

— Կը քամահրե՛մ այդ մարդը, գոչեցի։

— Եւ ինչո՞ւ համար։

— Ինքն իսկ կը պարծի թէ անաստուածութեան վարժապետ է։

— Ցոյց տուր պատճառ մը զինքը քամահրելու . . . ամբարիշտ աշկեր-տը սիրեցիր . . . ամբարշտութիւնը չկրնար քեզ տալ վարժա-պետը։

— Ներէ՛, կ'ատե՛մ այդ մարդը. պարծուկի կերպեր, քամահ-րելի ձեւ մ'ունի։

— Այդ պատճառն աւելի տրամաբանական կը գտնեմ։

— Ծխախոտ կը հոտի։

— Ի՞նչ ըսիր։

— Անկից 'ի զատ մարդս երբ տգեղ երես մ'ունի, հարկաւ չարասիրտ մ'է։

— Ես քան զեւս տես որ կը տրամաբանես, սիրելի Մարիոն. ահա ըստ իս այսոնք են կնային պատճառաբանութիւններ, խոշոր պատճառաբանութիւններ որք ոչինչ կը նշանակեն և մանաւանդ քմածին են։ Կ'եզրակացնեմ թէ չես սիրեր Թէօֆիլը, վասն զի տգեղ է։ Քեզի համար ծանր է այս պատճառը, բայց կ'զգաս թէ ինծի համար քիչ արժէք ունի այն։ Մարիօն, կը սիրեմ զքե-զի, սակայն դժուարին է մեզ յարաբնակելէս առանձնութեան մէջ ապրիլ, և եթէ բարեկամներս հաճելի չեն քեզ . . . ։

— Ո՛հ, ան միայն հաճելի չէ։

— Կը գուշակեմ միտքդ . . . գոհ կ'ըլլայիր եթէ ճամբայ տայի իրեն . . . ։ Հաւատա ինձ, սիրելի՛ գեղանիս, մեր մէջ տատանկ խըն-դիրներ մի՛ յարուցաներ երբէք։ Կը սիրեմ Թէօֆիլը, անկատակ կերպով կը խնդրեմ որ զգուանքի ամենէն զուարթաբարոյ ընկեր-ներուս մէկին դէմ ունեցած հակակրութիւնդ զսպես։

Այն ատեն Նօթրը-Տամ եկեղեցիին անդաստակէն կ'անցնէինք։ Ըմմանուէլ՝ յանկարծ խօսակցութիւնը փոխելով գոչեց.

— Նայէ՛, Մարիօն, ահա հոս կը բնակի Շվէրի նախայաբհը.

Մեղսակիցս է ան պզտի զարմացման մը մէջ զոր քեզ կը վերապահեմ։

— Զարմացո՞ւմ մը։

— Այո . . . քիչ ատենէն նորէն պիտի տեսնենք անձ մը զոր կը ճանչնենք . . . Թերեւս մ՚ար կրնայ ազատ կերպով առջեւ երթալու յոյս ունենալ։ Գաւառական պարզ դատարանի մը վարձուոր նուիրակն առուանեցաւ ան գեռ մօտ ժամանակներս. իր պաշտօնին պարտականութիւնները այնքան քաջ կատարեց որ արդէն կամք կայ զինքը Փարիզ բերելու և Հաշուեկալութեանց ատեանին պարգեւելու։

— Կարելի՞ բան է, գոչեց Յովսէփ Գամիւզայր նա կը բերէք։

— Անշուշտ․ կ՚ուզենք վերջ տալ սրիկան պատժելու գործին։ Մինչեւ հիմա վրէժս առ առատերն կէսը լուծեր էի . . . ։ Ա՛խ, ո՛հ պահած եմ անոր դէմ։ Շըվրի անոր նոր պաշտօնը խիստ կանոնաւոր ձեւով յանձնել տուաւ։

— Յովսէփը պատժելու տարօրինակ կերպ մ՚է ատի, բարեկամ։

— Մի՛ սխալիր այս մասին․ օշինդրով լի բաժակի մ՚եզրին մեղրն է այն պաշտօնատուութիւնը․ անգղամն այսպիսի վիճակութեան մ՚առջեւ կանգնած պիտի չունենայ իր դէմ լարուած թակարդէն. Ճամբայ ելլէ ամենայն անձապարտումով։ Եթէ ճիշդ են հաշիւներս, այսօր իսկ վաճառանէն դուրս պիտի ելնէ . . . ։ Բայց զարմանք, նայէ անգամ մը, հրապարակէն անցնող սա անձն ան չէ՞։

Կառքէն դուրս ծռեցայ, և իրօք ճանչցայ Գաբրիէլ Ցըլօրմին վաղեմի դպիրը որ դէպ ՚ի Շըվրիի ապարանը կ՚ուղղուէր։

Խօսակցութեան շեղումն անակնկալ ու միանգամայն հետաքրքրական էր։ Մոռցայ Թէօֆիլը, և ալ մտքէս հեռացուցի այն անձը, որ պահ մ՚առաջ սիրոյ առջեւէն առաջին անգամ անցած էր։

Ցէպարօ ձիերը շուտ քայլել տուաւ կարելի եղածին չափ կանուխ տունը վերադառնալու համար, և ճամբան իր նպատակը

ութիւն . . . այժմ . . . կը խնդամ . . . . Ես արդէն գերեզմանիս հեռը չեմ . . . պէտք ամենուդ կը թողուց զիս , սիրելի՛ս իմ ։

— Կեցի՛ր պահ մը , ըսաւ զինուորականը . կ'աղաչեմ , պատմելիքան ամբողջութիւն չըներ . Պ. Տը Լի՛ւոնը երկարաւ ձանձրացութեան մը համար մեկնեցաւ , քեզի մանաւանդ բարեկամութեանս յանձնելէն ետքը ։

— Լաւ՛ , ըսաւ Լիզէթ . չեմ մոռնար , պարոն , ով է քեզ այդ մանր պարագաները հարցնողը ։

Եւ նորէն վերցուց իր ձեռնոցաւոր թեւը , ապարանջ մ'եւս փչեցընելու համար ։

Պասօմբիէր ազատեցաւ ապտակէն , կեցուց ձեռքը՝ իր այտին վրայ փչելու միջոցին , եւ չթողուց մինչեւ նորա ուսէն համբոյր մը քաղելը ։

— Քաղցր է սակ , Մարիօն , ըսաւ Պասօմբիէր , սակայն ասով չեմ մխիթարուիր խոստովանութեանդ դէմ ։

Շփոթեր մնացեր էի ։ Պասօմբիէրին ընթացքն եւ Անրի Դ.ին այնքան խօսքերուն պատշաճութիւնը բաւական կասկածելի կ'երեւային ինծ . սակայն այս մասին ամենեւին գիտութիւն մը չունէի , եւ կրցածիս չափ համապատասխանեցի Լիզէթին բարեկամական ձեւերուն ։

Իմացուց ինծ Լիզէթ թէ գլուխս եկածները մինչեւ տիկին Տը Լիւյնի ականջը հասնելու չափ լսուեր էր ։ Դքսուհին անգթաբար կը մերժէր Լիզէթը իր քովը նորէն ընդունիլ ։

— Այո , ըսաւ Լիզէթ , Լուվրէն կ'արտաքսուիմ . . . բայց թող ծննդեանս փոքրագոյն ապացոյցը միայն ձեռք անցունելու յաջողիմ , եւ պիտի տեսնենք թէ յաղթանակաւ նորէն պիտի չմտնե՞մ հոն ։ Այսօրէն սկսեալ երիկ մը կը գտնեմ , ազեղ , գիւղացի , ով կ'ուզէ թող ըլլայ , հոգս չէ՛ . այս ամուսնութեան պտուղը անկնգոզ քահանայի մը օրհնել տալու հոգ կը տանիմ . սիրելի ամուսինս պաշտօնատաց ծախսը կը վճարէ , յարգածուի (porte-respect) տեղ կը ծառայէ ինծ . . . խնդի մարդը , եւ իմ գաղտնի սատանութիւններս կ'սկսիմ ։

շութեամբ վարուելու այս խեղճ աղջկան հետ և մեղքնալ իր յղութեան վիճակին։

— Յղութի՜նը, յղութի՜նը ... բայց ասի անարժանութի՜ւն մ՚է ...։ Այսպիսի բան մը չտեսնուած է բնաւ, գոչեց Յովսէփ բոլոր զօրութեամբը շարժումներ ընելով։

— Բարե՛, բարեկամ, դժբաղդութիւննե՛ր ունեցայ, մռմռաց Թերէզան՝ արտօսր մը սրբել ձևացնելով։

— Կը լսէ՞ք ...։ Ի՞նչ խայտառակութիւն ...։ Բարեբաղդաբար արգիլուեցաւ ամուսնութիւնը ...։ Նախախնամութիւն մ՚է արգիլողը ...։ Յիրաւի պիծակներու բոյնի մը մէջ պիտի ընկնէի։

— Այսպէս ուրեմն հիմա չե՞ս ուզեր կարգուիլ հետս, հարցուց Թերէզա զարմացած դէմքով մը զոր շատ աղէկ կը ձևացնէր։

— Զարմանալի՛ հարցում։

— Ո՛հ, քեզի բռնադատելու դիտաւորութիւն չունիմ, և ինծ քան հազար փրանք համրելով պարտքէդ ազատած պիտի ըլլաս. մեր համաձայնութեան ամէնէն կարճ միջոցն այս է։

Թերէզա ծոցէն թուղթ մը հանեց և բացաւ։

Գամփռգարին երեսին վրայ կապարի գոյն մը ծաւալեցաւ տեսարանին այս յանկարծական նոր փոփոխութեան վրայ։

— Տո՛ւր անգամ մը նայիմ այդ թուղթը, ըսաւ Շըվըրի։

— Ա՛ռ, ըսաւ Թերէզա։ Դատարանի մ՚առջև պատրաստ եմ ձեռքս վերցնելու և երդում ընելու թէ խոհեմ և անարատ էի այն ժամանակ ուր պարոնն այս գիրը ստորագրեց։

— Ամօ՜թ և նախատի՜նք, գոչեց Յովսէփ. հիմա նէ պիտի ըսէ թէ ...։ Բայց ա՜յր մ՚է այս, աւազակուա տեղ մը բեր-ուե՞ր եմ ...։ Հասէ՛ք, իս կը մեռցնե՜ն, օգնութեա՜ն հասէք։

Եւ Յովսէփ յուսահատութեանը մէջ բարկութիւնը իր կարմիր մազերուն վրայ կը թափէր, անոնցմէ լիաբուռն արցակներ քաշելով և հանելով։

Սակայն Լիզէթ Շըվըրիին մօտեցած էր, և անոր ուսին վրայէն նայելով կը կարդար ստորագրուած խոստմնագիրը։

— Օ՛, օ՛, ըսաւ Լիզէթ, քանի՜ հազար փրանք․․․ այսպիսի գումարով մ՚այս Պ. Գամիւզարը սպասուհիէ մը լաւագոյն կին կրնար գտնել ։

— Ի՞նչ մեղքս պահեմ, ըսաւ Շըմէրի, երբ մարդս այսպիսի բան մը ստորագրելու ապշութիւնը կ՚ընէ ։ կը պարտաւորի վճարել կամ ամուսնանալ ։ Աշխարհիս բոլոր դատաւորներն այս երկու միջոցին մէկն կամ միւսը պիտի ընտրեն միայն ։

— Ճի՛շդ է, ըսաւ Տէպարօ. այսպիսի պարագայի մը մէջ քիչ դատաւորները չեն դնէիր. այսպիսի յայտնի և մեկին խոստում մը կատարուած իրողութեան պէս արժէք ունի ։ Որդ․․․ պարոնը դատարանէն պիտի դատապարտուի, յայտնի՛ բան է դատապարտուիլը ։

Ցավեկեթին յուսահատութեան զարհուրանք կը յաջորդէր ։

Թերէզա այն ատեն անոր առջև ծունկի վրայ եկած էր և ողբալին ձայնով մը կը մռմռար .

— Բարեկամս, կ՚երդնում թէ սիրոյ հաւատարիմ մնալ քեզ ։

— Ե՛ս ալ, ե՛ս, գոչեց Գամիւզար ցատկելով ։

— Չարագործներն որք զիս առևանգեցին․․․ ։

— Լռէ՛. Թշուառական ։

— Տկարութիւնս չարաչար գործածեցին ։

— Մահիկ չե՛մ ընէր քեզ ։

— Արտասուքս չկրցաւ անոնց գութը շարժել․․․ ։

— Սատանայ՝ խօսքե՛ր ։

— Օգնութեան կը կանչէի քեզի ։

— Աստուած խե՛լք տայ քեզ ։

— Երբ յանկարծ բերանս գայլ դրին․․․ ։

— Երա՛. կ՚ըսես, մումբակաց վարագուր նախիրակը. այդ բարբարոսական միջոցը գործածեցի՞ն ։

— Այո՛, բարեկամս իմ ։

— Բարեկամս չե՛մ, ըսաւ Գամիւզար գլուխը ցնցելով. որպէս զի հեռացնէ այն յաղթումը որ կ՚սկսէր զարնել զինքը ։

— Այն ատեն նաւաղեցյա, և ապիրատները․․․ ։

— Մի՛ վերջացներ խօսքդ, գոչեց Գամիւզար, մի՛ վերջացներ . . . ։ Ի՜նչ քստմնելի իրողութիւն ։

Խեղճ տղան կը վարանէր. աչքը թրջուած էր ։

— Տէ՛ր, ըսաւ Էմմանուէլ, ի՜նչ կը կենաս . . . տո՛ւր որոշումդ . . . ։ Մօտակայ անդուանքը Ֆրանչիսկեան պարկեշտ քահանայ մը կը ճանչեմ, որ եթէ կը փափաքիս՝ խիստ յաջողակ է ակնթարթի մը մէջ ձեզի պսակելու ։ Մանաւանդ որ Պասօմբիէրին բարեկամներուն մին է ան, և ես ու գնդապետն երաշխաւոր կ'ըլլանք անոր պսակի օրհնութեան վաւերականութեանը ։

Յովսէփ երկու ձեռքովը գլուխը բռնելով գետին ընկաւ նըստած ։

Արդ Էմմանուէլէն և հաշուեկալութեան ատենին նախագահ մզօակցէն հնարուած այս կատակերգային ներկայացումը բաւական դէշ երևցաւ ինձ ։ Յօժարակամ կը սուլէի այս ներկայացման դէմ ։

Գամիւզարին դէմ ոխս իրեն համար իրաւէս դէշութիւն մ'ուզելու չափ սաստիկ չէր ։ Ցիրաւի իր յուզումը շատ ծանր կը գտնար ։ Խեղճ նուիրակին առջև ըրուած անամօթութիւններն արդէն բաւական պատիժ մ'էին ։ Որոշեցի կատակերգութեան վերջին արարքէն ազատել զան ։

Վերջին արարքին նիւթն էր Թերէզային վիճակին վրայ անոր գութը շարժել, զինքը համոզել որ լաւագոյն համարի նորա հետ պսակուիլը քան թէ քսան հազար ֆրանք համրելը ։

Պասօմբիէրի հնարած ձևով պիտի պսակուէին Գամիւզար և Թերէզա ։

Այս պիտի տրուէր կոչունք մը՝ ուր Գամիւզարին բաղդական բնազդումները սաստկապէս պիտի գրգռուէին, և այս միջոցին Յովսէփ Տէպարոյի տան հոգաբարձուին գիրկը պիտի առնէր Թերէզան ։

Արարքին այս ելքին վրայ Գամիւզարին խելքը կրնար թռիլ ։

Այս ամեն բաները կրնային շատ զուարճալի երևալ ուրիշներուն, սակայն ըստ իս լոկ անօգուտ անդթութիւն մ'էին անոնք ։

Յովսէփ ինչն խել ինծ օգնեց կարճ կապելու կատակը, և՝ ինչպէս սիրոյ անունի եղջէն՝ զոՀ եղայ կարեկցութենէս։ Գամիւզար խորհելէն ետք խօսքը Շըմըիին ուղղելով,

— Պարոն, ըսաւ, ներէ՛ որ բան մը Հարցնեմ քեզ. Հաշուեկալութեան տետրին գլխ վարդագոյնոր նախօրոք անուանելը իրա՞ւ է։

— Բոլորովին իրաւ։

— Այդ պաշտօնը պահելու յոյս ունիմ։

— Այո՛, եթէ անոր պարտականութիւնները ճշդիւ կատարես։

— Շատ աղէկ, ըսաւ Յովսէփ։

Ապա իմ կողմս դարձաւ։

— Տիկին, անցեալ փառաց Հարստութիւնս զոՀելով անխոհեմութեանցս փրկանքը սիրոյ Հատուցանեմ... քիչ մը ատ՛ք սիրոյ փրկուիմ.... Ուզիւ թէ այս մասին չզղջաս օր մը։ Կ՚աղաչեմ, եւ յանձնել տուր ինծ ամուսնական խոստմնագիրս՝ քանի Հազար ֆրանքնոց մուրՀակի մը փոխարէն զոր պատրաստ եմ ստորագրելու։

— Շատ աղէկ. գրէ՛, պարոն, ըսի Գամիւզարին, ցոյց տալով իրեն աշտանակի պզտի քաշմոց մ՚որ գոյնզգոյն սատափակէնրով դրուագուած էր և որուն վրայ թուղթ, մելան և գրիչ կային։

Էմմանուէլ խօսիլ ուզեց, բայց շրթներուս վրայ մատ մը դրի և Տէպարօ երևակայեց թէ մի և նոյն նպատակին Հասնելու Համար նոր և զուարճալի Հնարք մը գտեր էի։

Գամիւզար գրեց և իսկոյն օրինաւոր ձևով գրուած փոխանակագիր մը բերաւ ինծ։

Նախագահը տակաւին բռնած էր Թերէզային քանի Հազար ֆրանքնոց թուղթը. դարձ ձեռքէն առի զայն փոխանակագրին Հետ միացընելու Համար, և երկուքը մէկ պատռեցի Գամիւզարին առջև, ըսելով.

— ԱՀա՛, պարոն, աՀա այսքան կարևորութիւն կը տամ ինքնագրութեանցդ.... Ուրիշ անգամ առանց գիտութեանս չկանես ստորագրութիւններդ։

Յովսէփ ինծ նայեցաւ շլմարուն դէմքով։

երազութիւնը ձեզ խոստովանիլ՝ երբ նշմարեցի թէ զիս կը ծաղրէք։ Կը պարտաւորիք Բարիզէն և Թերևս աւելի խոհեմութիւն է Փրանսայէն իսկ մեկնիլ։

— Խօսէ՛, Ցովսէփ, խօսէ՛, գոչեցի, ուսկէ՞ կը գայ վտանգը։

— Մեծամայրդ ծնողացդ նամակ գրեց, և մայրդ քիչ մ՚առաջ ինծի հետ վաճառատունէն ելաւ։

— Մա՛յրս․ Սո՛ւրբ Աստուած։

— Հա՛, ահա՛, շարայարեց Գամիւզար, ահա ճիշդ գրպանիս մէջն է կոմսուհիին նամակը։ Ճամբան հարիւր անգամէն աւելի ինծի կարդացուցին այս գիրը, և սիրելի մայրդ կարծեմ գոց սորված է անոր պարունակութիւնը․․․։ Խե՜՜ղճ կին․ կը լար․․․ արտասուքը գութս կը շարժէր․․․։ Բայց այս խորհրդածութիւնները ստիպողական չեն։ Ահա նամակը․․․։ Սակայն մի՛ խոստովանիք թէ գաղտնիքը յայտնեցի, վասն զի Մադըլինին հետ կարգուիլս արգիլած կ'ըլլաք։

— Տէ՛ր Աստուած, ըսաւ Լիզէթ կարտուելով, ուրիշ մը հետ պիտի կարգուիս, սիրելի՛դ իմ։

Այնքան սաստիկ յուզուած էի որ ուշադրութիւն չէի ըրեր Անրի Դ․ին աղջկան այս խօսքին։

Տէպարօ նամակը կը կարդար։ Ես իրեն կը նայէի, և իր դէմքին վրդովութեամբ այլայլիլը կը տեսնէի։

— Աղէկ գիտե՞ս, ա՛յս է տիկին Տը Սէնթ-Էվրըմօնին գիրը․ հարցուց ինձ։

— Այո՛, բարեկամ․․․ ինչ բանէ կը պարտաւորինք վախնալ։

— Ամէ՛ն բանէ, պատասխանեց․ աղետաւոր անդորրութեամբ մը կ'ապրէինք, և մութին մէջ մեզի դէմ կը գործէին։ Հիմակ անմիջապէս պէտք է որ մեկնինք։

— Ի՞նչ, ըսաւ Պասօմբիէր, կատակերգութենէ ողբերգութեա՞ն կ'անցնինք․․․։ Ի՞նչ կայ, ըսէ՛ք նայիմ, միջոցներ գտնող մարդ մ'եմ․․․ երօք Պասթիյլ կա՞յ գործին ծայրը․․․ սիրահարութեան մը համար Պասթիյլը, բայց Պետական բանտը չարաչար գործածել է ասի։

Մինչդեռ Պասօմբիէր վերջ կը տար իր այս խօսքին, դուռը սաստկապէս բացուեցաւ, և Թէօֆիլ երևցաւ առանց գլխարկի, բղխկ բղխկ զգեստներով և արիւնաթաթաւ ձեռքով։

— Ի՞նչ կ'ընէք հոս, գոչեց, չլսէ՞ք դուրսի աղմուկը։ Տասն ու հինգ կամ քանի չափ զինուորներ կը ջանային ինծի հետ այս տունը մտնել... «Կծիկը դրէ՛ք նայիմ, պարոններ», գոչեցի, բայց մտիկ չըրին։ Սուրս քաշեցի, մենամարտութեան ճանոններով դէմ դրի և կռուեցայ անոնց հետ Արիօսթին Կատաղի Օրլանտոյին պէս. դուրս մղեցի զանոնք, կառնադուռը արգիլեցի ետևէն... բայց աւազակները պաշարեցին զայն... Ելարան մը գտան, և պատէն վեր կ'ելնեն։

— Սո՛ւրբ Աստուած, հարուեցա՛նք, գոչեցի։

— Չէ՛, ըսաւ Էմմանուէլ... Շո՛ւտ, շո՛ւտ, կրնանք պարտէզներէն փախիլ։

— Աղէկ մտածեցիր, ըսաւ Պասօմբիէր։ Գիշերուան մութը տիրել սկսած է, մինչև Շարանթօն զացէք հետս։ Երկու ժամէն ետք ես ալ կը գամ հետս կառք մը, ձիեր և ոսկի բերելով։

Տէպարօ զիս քաշելով տարաւ։

Կարծես թէ մեռած էի։

Երկու վայրկեան արագօրէն վազելէն ետք հասանք պզտի դրան մը քով որ դաշտավայրերուն վրայ կը բացուէր, և կը պատրաստուէինք մեր ետևէն գոցել այս դուռը երբ Թէօֆիլ հեւալով վազեց և գոչեց.

— Անիծեալնե՛ր, առանց ինծի՞ պիտի մեկնիք։ Սուրս այն սրիկաներուն մէկին փորը մխեցի... և եթէ մեռնի, Արէվլի հրապարակին վրայ գլխատուելու նպատակ չունիմ։



## Գ.

Հոս կը գտնեմ ազնիւ կնքամօրս նամակին պատճէնը որպէս զի իբր օրինակ ծառայէ որոնց որ օրին մէկն ուզեն թերեւս նորա նամակագրական ոճին հետեւիլ։

«Կը բռնադատուիմ Օրիորդ Տըլօրմին ծնողաց իմացնել իրենց աղջկան կողմէն սրուած գայթակղութիւնը։ Իմ նկատմամբ անօրինակ ապերախտութեամբ մը վարուելէն, իր վրայ ունեցած բարեկամական սէրս ջնջելէն և ներումը անհնարին ընելէն ետք Մարիոն իր յանցանքները բոլորովին ծանրացուց անոնց հետ խառնելով նաև կեղծաւորութիւնը։ Կը պատրաստուէի աղաչելու ձեզի որ գաք զինքը բարիզեան կեանքին հրապոյրներէն ազատէք, երբ կեղծ զղջումով մը խաբեց զիս, ինչպէս նաև արժանայարգ վանահայր մ'որուն պաշտպանութեանը յանձներ էի զան։ Ձեր աղջիկն անկեղծ կ'երևար կրօնուհի ըլլալ ուզելով. երբեք չէի երեւակայեր թէ այս հասակին մէջ աղջիկ մը կարենայ այսքան անարժանաբար ջերմեռանդ ձևացնել ինքզինքը և ամենէն սրբազան բաները ծաղրել։

«Վանքին մէջ վեց շաբաթ մնալէն ետք վանահայրին վստահութիւնը կեղծելով խոյս տուաւ նէ։

«Այն ատենէն 'ի վեր Օրիորդ Տըլօրմ սիրողի մը հետ կ'ապրի. իր յարաբերութեանց անպարոյականութիւնը ամենուն ցոյց կը տայ յայտնի յայտնապէս, հասարակութեան արհամարհանքը առ ոչինչ կը դնէ և պատուաւոր ասպարէզէ մը կը մոլորեցնէ երիտասարդ մ'որուն ընտանիքը յուսահատութեան մէջ է։

«Յանուն այս ընտանեաց կ'աղաչեմ Օրիորդ Տըլօրմին ծնողքը որ գան իրենց իշխանութեամբը միջամտեն անարժան յարաբերութեան մը վերջ տալու համար։ Դեռ երէկ իմացայ ձեր փախստա-

կամ աղջկան գաղտնապէս ուր բնակիլը, բայց ես ինքնիս չեմ ուզեր բան մ'ընել։ Մարիօնին հայրը կամ մայրը միայն կը պարտաւորին գործել։

«Անոնց կը վերաբերի չթողուլ որ անպատուութիւնը հանրածանօթ ըլլայ և վնասէ իրենց միւս զաւակներուն, որոնց վրայ բարեսիրութիւնս տարածելու խօսք կը տամ այժմէն։

«Մեղուհին աւելի խիստ վանք մը պիտի դնենք, և իր սիրողն ալ Պասթիլլի բանտը պիտի նետուի որպէս զի հոն քանի մ'ամիս խորհի անառակութիւնը աշխատութենէն վեր դասելու վտանգին վրայ»։

Դիւրաւ կ'երևակայուի այսպիսի նամակի մ'ազդեցութիւնը։

Բարեբաղդութեամբս այս նամակը գրուած էր ճիշդ այն միջոցին ուր Գամիւզար Բարիզի մէջ իր նոր պաշտօնը ընդունած էր, և տեսանք թէ պարագաներու ինչ անլուր կցորդութեամբը կրցեր էինք վտանգէն ազատիլ։

Տէպարօ և իր բարեկամը դաշտերու մէջէն զիս կը վազցնէին։

Անդաւէ մուճակներ և թաւշեայ բոպա հագեր էի, իսկ մազերուս մէջ ադամանդեայ զարդեր կային. և ահա այս հագուստով էի երբ Բուսական Պարտէզի հանդիպակաց կողմը գետէն անցայ լաստափայտի մը վրայ կենալով։

Անցուողն ինձ կը նայէր շուարուն կերպարանով։

Տէպարօ ոսկի նետեց այս մարդուն՝ որպէս զի լուռ կենայ եթէ ոստիկանութիւնը գար իրեն հարցափորձ ընելու։

Երբ Պերսիի պզտի գիւղէն կ'անցնէինք, գիշերը բոլորովին խաւարեցաւ։ Հալածուելու մասին մեր երկիւղը շատ մեղմցաւ, և բաւական հանդարտութեամբ սկսանք Շարանթօնի ճամբայէն երթալ։

Շնորհակալ էի Թէօֆիլէն մեր փրկութեան օգնած ըլլալուն համար. բայց երախտագիտութիւնը չէր կրնար արտաքսել հակակրութիւնը։

Ինծի համար շատ անշնորհ բան մը պիտի ըլլար այս մարդը

իբր երրորդ անձ մը մեր հետն ունենալ միշտ այն ամեն տեղերն ուր մեր փախուստը կրնար տանիլ մեզի ։

Սակայն մեր հետը գալու համար իր տուած պայմաններն առարկութիւն չէին ընդունէր, և իմ կողմէ որ և է առարկութիւն ոչ միայն այս պարագայիս մէջ անտեղի պիտի ըլլար, այլ նաև Տէպարօ պիտի չընդունէր զայն, նա մանաւանդ մեր առաւօտեան վիճաբանութենէն ետք ։

Բարեբաղդաբար առիթ ունեցեր էի ատելութիւնս արդէն յայտնելու Պասօմբիէրին առջև ։

Պասօմբիէր խիստ հաճելի ըլլալու ստուգութեամբն ինքնին ինչ ինչ միջոցներ կազմած էր, որք կրնային անախորժ ուղեկից մը ազատել զիս ։

Մինչդեռ մենք կը ջանայինք ապահով պատսպարան մը գտնել, մեր սիրելի մենատան մէջ ինչե՞ր կ՚անցնէին ։

Պէտք էր որ յօժարութեամբ սրտի մենք մեզի բարեբաղդ սեպէինք՝ քանի որ կրցեր էինք խոյս տալ այն տունէն ։ Հազիւ դուրս ելեր էինք պարտէզներէն, և ահա քաղաքապահ զինուորները տունը մտան և ուզեցին ձերբակալ ընել հոն գտնուող բոլոր անձերը ։ Պասօմբիէր և Շըվրի մեծ դժուարութիւն կրեցին իրենց ով ըլլալը ճանչցնելու և իրենց ազատումը ստանալու համար ։

Լիզէթ Գամիւզարին հետ մնալու անխոհեմութիւնը ունեցած էր ։ Երևակայելով թէ իրեն համար վտանգ չկայ, թեթևամիտ աղջիկն իր գեղեցկութեան հրապոյրովը վաղեմի ուզողս գրաւելու փորձ կ՚ընէր ։

Թերէզա Լիզէթին այս ընթացքը գիտեց, և զուարճալի իրողութիւն մը սեպեց մեր տեղը Գամիւզարը և Լիզէթը ձերբակալ ընել տալը ։ Ուստի զարհուրիլ ձևացուց երբ ոստիկանութեան որսորդներն ուզեցին սրահը մտնել ։ Մեր միւս ծառաները հասկցան և նպաստեցին սխալումին, հետևաբար զինուորները Անրի Դ.ին աղջիկը և վարդյաւոր նուիրակը բռնեցին առանց ուշ դնելու անոնց ժխտումներուն և բողոքներուն, և Շաթըլէի բանտերը տարին,

Զինուորներն երբ Գամիւզարին դէմքը քննեցին, պարտաւորե-ցին շատ միջակ գաղափար մ'ունենալ ճաշակիս նկատմամբ։

Նոյն միջոցին Պասօմբիէր իր ապարանը գնաց արշաւակի։

Երեք յանձնարար նամակ գրեց, առոյգ ձիեր լծել տուաւ ու-ղեկառքի մը, և արագօրէն արշաւեց դէպ 'ի Շարանթօն ուր մեզմէ կէս ժամէն աւելի առաջ հասաւ։

Գնդապետը մեզ կ'սպասէր շքեղ ամառանոց մը մօտերը, ուր քանի տարի առաջ իր բոլոր պայծառութեամբ կը փողփողէր այն գրաւժան Գաբրիէլլուհին, որուն սիրոյ մասին սատանայութիւնը Մօն-մարթրի խեղճ մայրապետը վանքը քշուելու ստիպած էր։

Պասօմբիէր խօսքը նախ Թէօֆիլին ուղղելով՝ ըսաւ.

— Համբերութիւն ունեցիր, Պարո՛ն պոէտ. միասին Բարիզ պիտի վերադառնանք հիմա... երկու տեղ ունեցող բերլինեան կառքէ մ'ի զատ կառք գտնել անկարելի եղաւ։ Ասկից 'ի զատ զինուորին վէրքն անվտանգ է, գործը կարգի պիտի դնենք։

Պասօմբիէրին վիզը չցայտելու համար ինքզինքս զսպելու հար-կաւորութիւն ունեցայ։

Թէօֆիլ ամենևին առարկութիւն մը չունէր այս մասին և Ցէ-պարօ չէր կրնար զիս այս դէպքին մէջ իբր մեղսակից ամբաստա-նել։ Գնդապետին կողմէն պաշտելի պատրաստամտութիւն մը, ըմբռնելի ուշադրութիւն մ'էր այս բանը։

— Բայց ո՞ւր է այդ բերլինեան կառքը, ըսաւ Թէօֆիլ յայտ-նապէս գժգոհ կերպարանով մը։

— Հոս մօտերս, պատասխանեց Պասօմբիէր. պզտի պանդոկէ մը գաւիթը, ուր ընթրիք մը պատրաստել տուի. վասն զի անօթեալ զինուորները երբ հալածեցին մեզի, դատարկ էր մեր ստամոքսը։

— Բայց ասոր անխոհեմութիւն չէ՞, գնդապետ, հարցուցի։

— Ո՛չ, ամենևին... շուտիկը միայն կրնայ երևակայել թէ Շարանթօն կը գտնուինք։ Միայն թէ, օրիո՛րդ, շարայարեց Պա-սօմբիէր, խոհեմութիւն սեպեցի սմի հետս բերել։

Եւ իր վերարկուին տակէն կնային թաւշեայ դիմակ մ'և մետաք-սէ թխագոյն կրկնոց մը հանեց։

Դիմակը աչերուս վրայ դրի, և կրկնոցով գլուխս ծածկեցի զգուշութեամբ։

— Ուղևո՛ր տատրակներս, ըսաւ գնդապետը, կը վախնամ որ պանդոկին մէջ անզգոյշ ականջներ կը լսեն ըսելիքս, ուստի հոս բաց օդին տամ ձեզ հրահանգներս։ Կարճ պիտի խօսիմ. նախ ցոյց տամ ձեզ ձեր ուղեգիծը. ասկից ուղիղ գծով պիտի երթաք դէպ 'ի Բրօվէն, ուր արևին ծագումէն առաջ պիտի հասնիք առաջնորդներուն կոկիկ վարձք տալով։ Ապա կը վազէք դէպ Արսի—Սիւր—Օպ. Արսիէն Վ.ասի կը հասնիք, և անկից տասն երկու մղոն անդին Լօրէնի մէջ կը գտնուիք։ Հոն ձեր թշնամիներն ալ բան մը չեն կրնար ընել ձեզի դէմ։ Լօրէն ազատ և հիւրասէր երկիր մ'է, ուր իշխող դուքսին պաշտպանութիւնը պիտի ունենաք։ Ձեզի Նորին Բարձրութեան պաշտպանութեան ներքև կը դնեմ. ահա իրեն գրած նամակս. կարճ է այս գիրը, բայց պարունակութիւնն ազդու յանձնարարութիւն մ'է։ Այս երկրորդ նամակը պիտի տաք Պ. Տէ Բիլիէյին որ Լօրենցի լաւ բարեկամներուս մին է. զինքը կը գտնէք Միրգուրի մէջ. պզտի քաղաք մ'է այս ուր աղէկ կ'ընէք եթէ երթաք՝ սահմանագլուխը անցնելէն ետք։ Հոն պիտի հանգչիք քիչ մը։ Պ. Տէ Բիլիէ սիրուն մարդ մ'է ... թէև քիչ մը ջերմեռանդ, վասն զի գաւառին մէջ նորաձևութիւն մ'է ջերմեռանդութիւնը։ Իր տունը բոլորովին ձեր կամքին պիտի յանձնէ, և կրնաք վստահ ըլլալ թէ շատ մարդավարութեամբ պիտի հիւրընկալէ ձեզի։ Միրգուրէն՝ երբ որ հանձիք՝ պիտի երթաք այցելութիւն ընելու Արուէյի դղեակը, որ սպառնական բերդ մ'է. հրաման կը տամ Էմմանուէլին որ այս բերդին մէջ իբր երևելի պարոն վարուի. պիտի համբուրէք պառաւ մայրս որուն ուղղուած է այս երրորդ նամակս ...։ Այս է ամենը ...։ Հա՛. կառքին արկղերուն մէկին մէջ եօթը հարիւր յիսուն լուիճի դրած եմ։

— Գնդապե՛տ, գոչեցի, թանկագին մարդ մ'ես։

— Այո՛, ճշմարիտ կ'ըսեմ թէ ոչինչ կը մնայ ան, ըսաւ Տէպարօ։

— Եւ ոչ իսկ զիս ամենագեղեցիկ ուղեւորութենէ մը զրկելը, շարունակեց Թէօփիլ։

— Օ՛ն, մխիթարուէ՛, առանձին մ՚եռք պիտի գաս զանոնս մեզի, ըսաւ Էմմանուէլ։ Պասօմբիէր ապահովութեանց երաշխաւոր է մեզ. Բարիզ միալուդ գոհ եմ, և նայէ՛ որ հայրս հանդարտելուն միջոցը գանես։ Նաև հոգ տա՛ր մեր պզտի տան կոցուելուն և ծառաներուն ճամբուելուն, Կրասէնէն և իր կնիկէն ՚ի զատ. վաճառականութիւն հետ մեզ ղրկէ զանոնք։ Այս Էմըրիյին քով աւանդած գոյքէս եօթն հարիւր յիսուն լուիձի առ և գնդապետին պարտքս վճարէ՛։

— Աղէ՛կ, աղէ՛կ, ըսաւ Պասօմբիէր, հիմա պանդոկն երթանք։

Ջիս թեւն առաւ, թողուց որ Տէպարօ և Թէօֆիլ մեզմէ քիչ մ՚առաջ երթան, և կէս ձայնով ըսաւ ինծ.

— Գո՞հ ես։

— Եթէ համարձակէի պաղնելու քեզի, հիմակ իսկ կը պաղնէի, գնդապետ։

— Հարկաւ ինքնին կ՚ըսես, Մարիօ՛ն, թէ սիրահար ըլլալովս բաւական ապուշ կերպով կը վարուիմ, այնպէս չէ՞։

— Կը հաւատամ թէ չէ՛։

— Չէ՛, չէ՛, խոստովանէ՛ թէ դրութեանս ինչ նշանակելը չես գիտեր.... Կ՚ուզե՞ս որ երկու խօսքով բացատրեմ այս դրութիւնը։

— Խօսէ՛, գնդապետ, խօսէ՛։

— Խօսիմ ուրեմն... երբ առաջին անգամ Էվրէօյի մէջ տեսնուեցայ հետդ, անմիջապէս հասկցայ թէ հասարակ կին մը չես։

— Իրա՛ւ։

— Այո՛, չես. դու ազատ սիրոյ համար ծնած ես. Հիմենոսի շղթաներն անախորժ կերպով մը սանձած կ՚ըլլային քու քնքոյշ և շնորհալի շարժումներդ։

— Հա՛, հա՛։

— Ահա այս պատճառաւ կ՚ուզէի ստուգապէս չկարգել քեզի։

— Շատ շնորհակալ եմ։

— Եթէ օրինաւոր ամուսնի կացութեան մէջ չգտնուէի, ամեն ջանք 'ի գործ կը դնէի ամենէն առաջ ես քեզի սիրելու համար. սակայն կանամբի ըլլալովս եթէ այսպէս վարուէի. դուն ալ, ես ալ անթիւ քսութիւններու կ'ենթարկուէինք: Անձնատրութեան և վեհանձնութեան մի և նոյն արտաքին երևոյթովը քեզի պաշտպանելու ազատութիւն չէի ունենար: Երբ մարդս գանձի մը առաջին վայելողը չըլլայ, կայն ժառանգելու փառաւորութիւնը կ'ունենայ:.

— Ցիրաւի, գնդապետ, այնպիսի պատճառաբանութիւններ ունիս որք շատ . . . շուտիկ են:

— Այնպէս չէ՞: Ամենէն անկեղծ բարեկամդ պիտի ըլլամ. երբէք պիտի չուզեմ սրտիդ ընտրութեան դէմ կռուելու:

— Ի՞նչ անձնուրացութիւն:

— Բայց, սիրելի՛դ իմ, քանի որ սէրը թռիչք ունի, և քանի որ կը թռի . . . :

— Կը կարծես որ կը թռի՞ սէրը:

— Առոր ապացոյցը շուտով պիտի տեսնէք դուն և Տէպարօ:

— Է՜, այն ատե՞ն, պարոն:

— Այն ատեն անցումի ցաւագին վայրկեաններ, վշտալի և ձանձրալի ժամեր կ'ունենաս. արդ խօսք տուր ինձ միշտ զիս կանչելու այն ժամերուն մէջ:

— Ա՜յնքան երախտապարտ եմ, քեզ, գնդապետ, որ շատ ծանր է ինձ մերժել խնդիրդ:

— Զիս մի՛ ծաղրեր . . . խնդիրս խիստ անկատակ է:

— Բայց ես ալ խիստ անկատակ կերպով կը շնորհեմ ուզածդ:

— Միջնարարքին միակ գերասանը պիտի ըլլամ:

— Այո՛, գնդապետ:

— Ա՜խ, գոչեց, երկնային ես, Մարիո՛ն . . . : Ինչո՞ւ առաջին արարքն արդէն վերջ առած չըլլար . . . : Սէ՛ր, սէ՛ր, թռէ՛:

Կը հասնէինք պանդոկը, ուր շատ վայելուչ ընթրիք մը կ'ըսպասէր մեզ: Զուարթօրէն աւարտեցաւ ընթրիքը. Տէպարօ կառապանը կանչեց և Ճամբայ ելնելու միջոցուան բաժակ մը գինի խմցուց:

Ապա իսկոյն կառքը նստեցայ։

— Գնդապետը բոլոր սրտովը համբուրեց զիս պահ մ'առաջ, և բաւական յօժարութեամբ Թէօֆիլին անգամ այտերս համբուրելու արտօնութիւն տուի զինքը Բարիզ վերադարձնելու սաստիկ ուրախութեանս փոխարէն։ Արդէն կառապանն իր ձիերը կը մտրակէր, երբ Գասոմբիէր գոչեց.

— Շուտիկներ... կեցէք... քիչ մնաց պիտի մոռնայի կարեւորագոյն յանձնարարութիւնս։ Կատակի չեն գար Անրի Տը Լօրէն դուքը, Բիլիէները, և նա մանաւանդ մայրս...։ Շիտակը շատ տխուր կացութեան մը մէջ կը գտնուիք։

Գնդապետը կառքին սանդուղքին վրան ելաւ, և քանի մը վայրկեան ցած ձայնով մեր հետը խօսեցաւ։

— Հիմա գացէք, գոչեց նա։ Աստուած առաջնորդէ Գ. Տը Ֆերթուսաք ասպետին և իր ծաղկահասակ կնկան։

Կառքը հովին պէս մեկնեցաւ. Ձիերը կանխաւ կառապանին ձեռքը սպրդող խիստ օրինաւոր պարգեւի մը յոյսը կ'զգային։

Գիշերը շքեղ էր և անհնարին արագութեամբ վազեցինք մինչև Բրօվէն, ուր՝ մեր հալածիչներուն մեզ հասնիլը անկարելի սեպելով կը ծաղրէի զանոնք։ Իջեւաններուն մէջ մեր կառքին ձիերը կը փոխուէին արագութեամբ մ'որուն պատճառը Տէպարօյին առատաձեռնութիւնը կրնար ըլլալ միայն, և եթէ Թագաւորին ճամբաներն անուոյ հետքով բոլորովին լի չըլլային՝ քսանչորս ժամուան մէջ Լօրէնի երկիրը մտած կ'ըլլայինք։

Սակայն հարկ եղաւ մեզ երկրորդ գիշեր մ'անցունել կառքին մէջ։

Մեր ուղեւորութեան երրորդ օրը՝ սահմանագլուխին մօտ շէն մը հասանք ցնցումներէն բոլորովին ցաւահար։

Այս շէնին անունն էր Տօմրըմի-լա-Բիւսէլ։

Ժան Տ'Արքի այս հայրենիքը մեզ կրցաւ տալ միայն խիստ յոռի անկողին մ'և սաւաններ որ մեր կաշիները կրնային սկրդել. Սակայն ոչ ես և ոչ Տէպարօ աւելի հեռի երթալու և լաւագոյն դադար մը փնտռելու քաջասրտութիւնը ունէինք, և որովհետեւ

լաւագոյնը չունէինք․ պարտաւորեցանք ընդունիլ այս յարդեայ կարծր անկողինները, ուր յաղթութիւնը մեզի մինչև հեռանալու օ-րը քնացուց։

Սրաձայն փողերու ժխոր մը, ձիերու վրնջիւններ և Տօմբըլի բոլոր բնակիչներուն ուրախալի աղաղակները զիս արթնցուցին։

Այն օրը Ժան Տ՚Արգի ծննդեան տարեդարձը կը տօնէին, և Լօրէնի դուքսը յատկապէս Նանսիէն եկած ըլլալով կը պատ-րաստուէր հանդիսին ներկայ գտնուելու։

Նորին դքսական Բարձրութեան մօտենալու և Պասօմբիէրին նա-մակը տալու առիթը գեղեցիկ էր։

Բայց ճամբորդութիւնը հագուստս կապուտաւ անպատշաճաբար խանգարած էր։ Ամէն հնարաւոր դժուարութիւններ կրեցի բաւական վայելուչ վիճակի մը վերածելու համար, և այս մասին չպիտի յաջողէի եթէ ինձ օգնութեան չհասնէր գիւղացի պզտի աղջիկ մ՚որ Նէօֆշաթօյի մէջ դերձակուհիութեան սորված էր․ Նէօֆշաթօ շրջակաները պզտի քաղաք մ՚է։

Վերջապէս Էմմանուէլին հետ չէնսին հրապարակը գացի՝ յոյս ունենալով թէ դուքսը ճամբորդի կացութեանս համար ներողամիտ պիտի ըլլայ։

Բազմոցի մը բոլորտիքը նիզակաւորներու, գեղարդնաւորներու և հրացանաւորներու խումբեր կը կենային ձիերու վրայ հեծած․ մեր քոնին ժամանակ շինուած էր այս բազմոցը, և վրան գահ մը կանգնուած էր Անրի Տը Լօրէն դուքսին համար։

Դուքսը բաւական գեղեցիկ մարդ էր։

Բազմոցին վերն իր գահին վրայ կը բազմէր կատարեալ վե-հափառութեամբ մը, բազմութեան կը ժպտէր, և շնորհալի շար-ժումներով կը պատասխանէր այն եռանդագին աղաղակներուն ո-րոնց առեղի կը տար իր ներկայութիւնը։

Շրջակայ քաղաքներէն եկող բազմաթիւ հետաքրքիրներ խիտ բազմութիւն մը կը կազմէին, ուստի մինչև դուքսին քովը հաս-նելու յոյսը կը կորուսէինք։ Անկից ՚ի զատ նոյն միջոցին գրե-թէ անյարմար էր մեր իր առջև ներկայանալը։ Բազմոցին առջև

շինուած խորան մը կը ծանուցանէր թէ բացավայրին վրայ պատարագ մը պիտի ըսուէր, կրօնական յառաջաբան առանց որոյ հանդիսին զբօսանքը չէր կրնար սկսիլ։

Այն տեղին պզտի մատուռէն Թափօր մ'ելաւ։

Քահանաներ, որոնցմէ ոմանք եկեղեցական զգեստներ, և ոմանք ալ պարզ զգեստներ հագած էին, եկան տեղաւորուեցան խորանին աջ կողմն ուր աթոռներ շարուած էին բոլորակն։

— Մարիօն, միթէ հաճելի՞ է քեզ այս պարոններուն եկեղեցականութեանց ներկայ գտնուիլ, ըսաւ ինձ Էմմանուէլ, որ միշտ պատրաստ էր իր յուսահատական ամբարշտութիւնը հրապարակաւ անգամ յայտնելու։

Լսուեցաւ Ցէպարօյին այս խօսքը։

Մեզի մօտ խմբուող գիւղացիները դժգոհութեամբ նայեցան այս խօսքը ըսողին, և որովհետև ան միայն իր գլխարկը չհանած էր, բազմաթիւ ձայներ գոչեցին.

— Գլխարկդ հանէ՛։

— Ցեխնուած են այսպիսի գռեհիկներ, ըսաւ Էմմանուէլ՝ հպարտութեամբ, և արհամարհութեամբ անգամ մ'անոնց նայելով։

Սկսաւ խնդալ և գլխարկը չհանեց։

Գիւղացիներն ալ առաւել սրտմտեցան երբ տեսան թէ Ցէպարօ գլուխը չէր բանար և ոչ իսկ այն միջոցին ուր պատկառելի քահանայ մը կ'անցնէր. այս քահանան միւս եկեղեցականներուն խումբէն զատուած էր ելնելու համար տեսակ մը բեմի վրայ, որ հրապարակին մէջը նեցուկներով և տախտակներով շինուած էր։

Բարձրահասակ մարդ մ'որուն մերկ թևերը կարծես թէ պողպատեայ ջիղեր ունէին՝ Էմմանուէլին քովն եկաւ, գլխարկը քաշեց առաւ, աւազին վրայ նետեց, և մեզի ցոյց տալով քահանան որ այն ատեն բոլորովին մօտեցած էր, գոչեց.

— Ողջունէ՛, պարո՛ն. Լօրէնի սուրբին առջևն ես։

Ահուդողով համակուած էի։

Ցէպարօ՝ բարկութեան սաստկութեամբը դեղնելով ձեռքը սուրին տարաւ այս թշնամանքին վրէժը լուծելու համար երբ քա-

Հանան յանկարծ ծռեցաւ, գլխարկը գետնէն առաւ, Էմմանուէլին Թէր բռնեց մեղմիկ, և գիւղացիին ըսաւ.

— Ո՛րդեակս, պախարակելի է այդ ընթացքդ . . . : Կը պարտաւորիս ներումն խնդրել այս անձէն զոր Թշնամանեցիր:

— Ամբարիշտ մ'է ան, տէ՛ր հայր, առարկեց յարձակողը:

— Աստուած իր կրօնքին դէմ եղած նախատանաց վրէժը լուծելու պաշտօնը տուա՞ծ քեզ: Եթէ Թողութիւն չխնդրես. պիտի ստիպուիմ քեզի համար խոնարհելու, որդեակ իմ:

Գիւղացին Էմմանուէլին առջև խոնարհեցաւ, և քանի մը խօսք Թոթովեց ներումն խնդրելու մաօք:

— Հիմա, բարեհաճեցէ՛ք ձեր գլխարկը դնելու, պարո՛ն, ըսաւ քահանան Տէպարօյին, և ներեցէ՛ք ինձ այս կռիւին ակամայ պատճառն եղած ըլլալս: Ինձ ողջոյն չտալով ամենևին յանցանք մը չգործեցիք . . . : Թշուառ մեղաւոր մ'եմ, և անարժան եմ եղբարց յարգանաց:

Ապա իր ճամբան շարունակեց:

Տէպարօյին երեսը բոլորովին ամօթահար էր:

Ամեն զոհողութիւն աչքը կ'առնուր բազմութեան մէջէն դուրս ելնել կարենալու համար. բայց գիւղացիները մեր առջև ճամբան գոցելու չարամտութիւնը ունեցան՝ մեր բոլորտիքը քով քովի սեղմուելով: Երկրորդ կռիւ մը մօտալուտ կը դառնար:

— Ո՛հ, բարեկամ, կ'աղերսեմ, հանդարտ կեցի՛ր. փսփսացի Տէպարօյին ականջին. ի՛նչ հարկ կայ առ ոչինչ սեպելու ժողովուրդ մ'որ քու սպաննելու կերպդ չունի: Աչերը մեր վրայ սևեռուած են: Աղմուկի և գայթակղութեան տեղի տալը Լօրէնի դուքսին բարեսիրութիւնը մեր վրայ հրաւիրելու շատ գէշ միջոց մ'է:

Տեսայ որ խօսքերս ազդեցութիւն կ'ընէին անոր վրայ:

Սակաւ առ սակաւ հանդիսականները կարծես մոռցան մեզի: Մանաւանդ որ պատկառելի եկեղեցականը բոլորին վրան էր, և բազմութիւնն անյագաբար ուշ կը դնէր անոր խօսքերուն:

Տէպարօ անգամ իսկոյն ճշմարիտ ուշադրութեամբ մտիկ ըրաւ, և միւս ամեն հանդիսականաց պէս գլուխը բաց կեցաւ:

· Վստահ զի եթէ այս քահանային կերպարանքը ազգութեան այնքան ճշմարիտ դրոշմ մը կը կրէր, իր կուսա ճակատն աւետարանական այնպիսի անարատ փառապսակով մը զարդարուն կ'երեւար, որ քրիստոնէական հաւատքին ամէնէն մեծ թշնամիներն անոր առջեւ կը յուզուէին եւ կերպիւ իւիք կը բռնադատուէին պզանչանալու անոր վրայ։

Անունն էր Բիէր Գուրիէ։

Իր ծննդեան վայրն էր Միրգուր, ճիշդ այն պզտի քաղաքն ուր գնդապետը պատուիրած էր մեզ երթալ երբ Բարիզէն կը մեկնէինք. Բիէր Գուրիէ իր արդէն երկար տեւող կեանքը ամէն տեսակ բարեգործութիւններով նշանաւոր ըրած էր։ Բոլորովին անձնուրաց, ամէն պարագայի մէջ անձնուէր եւ միշտ ողորմած ըլլալով Լօրէնի մէջ թերեւս ոչ այնքան փառաւոր, այլ այնքան արժանաւոր կերպիւ կը կատարէր այն նուիրական պաշտօնը զոր այն ատեն Վէնսան Տը Բօլ ինքնին յանձն առած էր։

Բիէր Գուրիէ իր ծննդեան երկրէն կէս մղոնի չափ հեռի գըտնուած անշուք վիճակի մը ժողովրդապետն ըլլալով իր գործութեամբը գրեթէ գերբնական միջոցներ կը գտնէր։

Բարեպաշտական հաստատութիւններ, աղքատ տղայոց համար դպրոցներ կը հիմնէր, նաեւ կանխատեսութեան արկղեր, որք սահմանուած էին օգնելու այն աղէտից դէմ որք՝ քա՛մբէ՝ սաէպ կը պատահին պատերազմէն միշտ աւերուող երկրի մը մէջ։

Իր ժողովրդապետական վիճակին հողը առանց զանց ընելու կը բարեկարգէր կանոնաւոր կանոնիկոսներու ժողովը որուն ինքն ալ անդամ էր, ազնիւ տիկնանց դաս մը կը հաստատէր, որք փոքրահասակ անձանց դաստիարակութեան կը նուիրուէին բոլորովին, առաքեալի մը պէս Լօրէնին ամէն կողմը կ'երթար հետիոտն՝ կռուելով հերետութեան դէմ՝ որու վարդապետութիւններն այն ատեն կը տարածուէին, ժողովուրդները քարոզներու հուրովը արծարծելով, ամէն տառապանաց դարման տանելով եւ ամէն վիշտերը մխիթարելով։

Բիէր երկու ընտիր յատկութիւնով երեւելի կը հանդիսանար.

որոնց մին կը բանէր մեծ մարդ մը կազմելու, այսինքն բարեկարգելու տաղանդը և ճանչելու զօրութիւնը ունէր։

Բիէր Գօրբիէլին այս երկու յատկութիւնն անոր քրիստոնէական եռանդէն զրգռուելով անհաւատալի արդիւնք կ'ունենար։

Այն ժամանակ յիսունը հինգ տարեկան էր ան։

Իր բարձր և վայելուչ հասակը տակաւին թեթևակի կը ծռուէր։ Երբէք այդքան յանկուցիչ ու միանգամայն պատկառելի դէմք մը չտեսեր էի։

Ամէն կանոնաւոր կանոնիկոսներուն պէս ան ալ թեզանաւոր շապիկին վրայէն կը հագնէր կշերական այն սև թիկնոցակը որուն վրայ իջնող իր սպիտակ մօրուքը կը ծփար։ Իր լայն հերատ ճակատը քաղցր հանդարտութիւն մը, խաղաղ պայծառութիւն մը ցոյց կը տար։

Կը սեպուէր թէ Բիէր առաքինութեան օրի մ'իրիկունը կը գտնուէր։ Իր նայուածքն երկնային հրապոյր մ'ունէր. ամէնէն քարասիրտը չէր կրնար դիմադրել անոր ժպիտին անտարբերական արտայայտութեան։

Անրի Տը Լօրէն՝ որ այս սուրբ առաջնորդը անսահմանօրէն կը մեծարէր և անհամեմատ կերպով կը յարգէր՝ աղաչած էր զան որ Տօմբրմի գայ իր և այս ամէն հաւաքուած բազմութեանց առջև քրիստոնեայ գիւցազնուհիին ջատագովութիւնը ընելու համար։

Բիէրին եռանդալի և անոյշ ձայնն 'ի պահանջել հարկի մեղաղական և հնչողական բան մ'ունէր։ Բոլոր ունկնդիրներն անոր ճառին և ոչ իսկ մէկ խօսքը կորուսին։ Կատարեալ վայելչաշնորհութեամբ մը, հաղուադէպ դիւրութեամբ մը, պարզիչէն յստակութեամբ մը կը խօսէր ան, և երբեմն իր ճարտասանութիւնը բարձր վսեմութեանց կը հասնէր, թէև ինք հարկաւոր չսեպէր որ և է կերպով զարդարել իր խօսքերը։ Իր սրտէն անոր խօսքերը դուրս կը թափէր սրտառուչ պարզութեամբ մը։

Դաշտերուն մէջ իր աշխարհներուն քովը նստող գիւղացի խեղճ աղջկան (Ժան Տ'Արգին) պատմութիւնը ըրաւ մեզ։

«Ցերկնուստ ձայն մը կը լսուի, և Ժան կ'իմանայ թէ Աստուած զինքը Ֆրանսան փրկելու կը սահմանէ։

«Դէ կը մեկնի, անծանօթ երկիրներէ կ'անցնի, բիւր վտանգներ առ ոչինչ կը դնէ, ուղղակի կը քալէ և կը յառաջանայ պաշտպան Նախախնամութեան մ'առաջնորդուելով. և վերջապէս կը հասնի Թուրէնի դաշտը, ուր իր Թագաւորը կը գտնէ որ իր թագը և երկիրը կորուսած է։

«Երկնառաք եկած ըլլալը իմացնող և մեծաձայն աղաղակներով սուր մ'և դրօշ մ'ուզող անտիպական հովուուհիին զարմանալի դիւցազներգութիւնն ահա այն ատեն կ'սկսի։

«Իսկոյն կը հագնի այն զրահը, և կ'առնու սուրը։

«Եւ ժան Տ'Արք նախատամարտներու հրեշտակին առաջնորդութեամբը սրարշաւ կը մեկնի, թշնամի գունդերուն վրայ կը յարձակի արիաբար, ամբողջ բանակներու վրայէն կ'անցնի. Օրլէանի պատերուն տակ Անգլիացին կը զարնէ, քաղաքը կը պաշարէ, Րէյմի վրայ կը քալէ, ճամբուն վրայ եւս կ'առնու թշնամիին ձեռքն ընկած բոլոր երկիրները, վերջին պատերազմի մը մէջ Թալպօթը յաղթահար կը ճզմէ և վերջապէս իր Թագաւորը օծել կը տայ։

«Մեռոնն երբ Կարոլոսի ճակատին վրայ կը վազէ, հովուուհին վար կը դնէ իր թուրը, իմացնելով թէ իր պաշտօնը լրացած է։

«Կ'ուզէ իր շէնը վերադառնալ, հովուական ցուպը նորէն առնուլ, դարձեալ իր ոչխարները արածել, իր Լօրէնի գեղափայլ երկինքը, դալարուէտ մարգերը և անտառներու շուքը . . . վերստին տեսնել։

«Սակայն, ափսո՜ս որ կեցուցին զինքը, ուզեցին որ դեռ պատերազմի երթայ Աստուծոյ թեւը քաշուած էր։

«Իսկոյն առիւծին կը յաջորդէ վախկոտ եղնը. մարտիկուհին (guerrière) աներեւոյթ կ'ըլլայ, և կը մնայ տկար կին մը զոր Անգլիացիք կը բռնեն և որուն համար հրատը կը պատրաստեն»։

Ես խիստ համառօտաբար յիշեցի հոս Բիէրին այս ճառը։

Սակայն 'գիտելի է հասկնալ թէ ինչպէս տպաւորութիւն ըրաւ այն երբ ըսուեցաւ. Ճիշդ այն տեղն ուր դիւցազնուհին ծնած էր, այն խեղճ տնակին քովը ուր նէ կը բնակէր և որ երկու դարէ 'ի վեր երկիւղածութեամբ պահուած էր։

Աչքիդ առջեւը կը գային ժան Տ'Արգին առաջին տարիները, իր բնական անմեղութեան օրերը, իր ուխտաւորներուն գեղ 'ի ծաղկազարդ մարգերուն առաջնորդելը կը տեսնէիր. Ք՝ կը լսէիր հրեշտակային ձայնը որ անոր կը հրամայէր դաշտերը թողուլ եւ Թագը Ֆրանսան ազատելու համար։ Ճակատամարտերու աղմուկը, մեռնողներուն աղաղակները հովին շշունջներուն, անակէն՞ քաղցր օրհներգութիւններուն կը յաջորդէր, եւ քրիստոնեայ աւետարանը ցոյց կը տար մեզ թէ Աստուած 'ի վերուստ կը նայէր այս որբական պատմութեան վերեւը։

Երբ Բիէր Փուրիէ պարտաւորեցաւ նկարագրել մարտիրոսուհիին չարչարանքը, եւ մահուանը միջոցին իր համբերատարութիւնը, բազմութեան հեծկլտալը լսուեցաւ, եւ Էմմանուէլին իզէ-արտօսր մը պահելու համար գլուխը դարձունելը տեսայ։

— Եկո՛ւր, Մարիօ՛ն, ըսաւ, վտանգաւոր է այս քանհանան. . . . Կարծե՛մ թէ յաջողեցաւ զիս յուզելու։

Փուրիէ բեմէն կ'իջնէր, եւ կը պատրաստուէր պատարագի մատուցման հանդէսը կատարելու։ Բոլոր գիւղացիները խորանին մօտեցան, եւ այն ատեն կրցանք բազմութեան մէջէն հեռանալ։

Էմմանուէլին ըսի.

— Ո՛հ, բարեկամ, անշուշտ ճշմարիտ է այն կրօնքն որ՞ այսպիսի ճարտասանութիւն մը կը ներշնչէ։

— Միամիտ ես եղեր, սիրելի՛դ իմ. եռանդն ու կրօնամոլութիւնը սուտերով կ'ապրին։

— Կ'աշխատիս այս մասին ինքզինքդ խաբել. լալդ տեսայ։

— Բա՛հ, ըսաւ, ջղային հեռեւութիւն մ'էր այն։

Այն ատեն կը դառնուէինք ժան Տ'Արգի հին բնակարանին քովը, ուր այն օր ամենուն թոյլ կը տրուէր ազատօրէն մանել։ Քաշելով հետս առի եւ ներս մտայ. պարզ եւ անշուք խրճիթ մը տեսանք, որուն պատերուն վրայ վերնագրութիւններ կային. ասոնց ամենն ալ 'ի պատիւ հովուուհիին գրուած էին։

Ցոյց տրուեցան մեզ նորա կաղնիի փայտէ անկողինը, երկաթեայ աշտանակին բեւեռներով զարդարուած մորթապատ արկղ մը

որու մէջ կը դնէր իր գիւղացիի յատուկ հանդերձները, պղնձեայ պզտի շղթայէ մը կախուած գաւաթիկ դգալ մը զոր իր ուսին վերեւէն ետեւը կը նետէր երբ դաշտերը կ'երթար. փայտէ քանդակուած խաչելութիւն մ'որուն առջեւ ատու և իրիկուն նէ իր աղօթքը կ'ընէր, և վերջապէս հովուական ցուպն որ ոչխարները առաջնորդելու կը ծառայէր իրեն։

Հետաքրքիրները մեծ յարգանօք կը նայէին այս ամեն բաներուն։ Պատերուն վրայի զանազան վերնագրութիւնները կը կարդային, նոր վերնագրութիւններ կ'աւելցնէին, և ամենէն անուաններն իրենց անունները կը նշանակէին թէր յիշատակ իրենց այցելութեան 'ի խրճիթն.

Էմմանուէլ ցուպին աջ կողմը յետագայ ոտանաւորը գրեց.

Չէ, Յովհաննա, քեզ ներշնչողն երկինք չէ.
Կը պնդեմ թէ ատենաբանն այս ատէ.
Կը նուաղէր, գիւցազնուհիդ մեծանուն,
Արժէքդ՝ եթէ Տիրոջ գործին էիր լոկ.
Վեհ քաջութիւնդ անխրատ կ'անարգէ
Ով որ յերկնուստ քեզի սեպէ ներշնչուած.
Փառքիդ համար այսօր պէտք է մի մերժում.
Չէ, Աստուծմէ պէտք չունի այն քաջ բաղուկ
Զոր գերութեան ատելութիւն կը վլնէր,
Անպլիացւոյն տալու համար խիստ պատիժ։

Այս ոտանաւորը մարդուս զայրոյթը կրդուող ամբարշտութիւն մ'ունէր, և պատրաստ էի յանդիմանելու Տէպարոն իր յամառութեան համար որով կրօնական յարգելի և սուրբ կարծիքներ ու ոչինչ կը գրէր, երբ ներկայ գտնուող նշանաւոր անձանց մէն մեծր ուսին զարկաւ և ցած ձայնով մնմռաց.

— Պարոն, կը համարձակիք ստորագրել այդ տողերը։

— Ինչո՞ւ չէ, ըսաւ Էմմանուէլ։

Եւ անոնց տակը ՏԸ ՔԵՐԻԽՍԱԳ ԱՍՊԵՏ անունը գրեց.

— Քաջասրտիկ էք, ըսաւ անծանօթը, և շատ ուրախ եմ ձեր քաջասրտութիւնը իմանալուս։ Բայց կը կարծէք թէ այս գիւղերուն անուս բնակիչները մեծ շահ մ'ունենան այդքան.... բանաստեղծական կերպով ձևուած կարծիք մ'ընդունելով։ Օտարական էք, պարոն, և չէք երևակայեր ինչ այն վտանգը զոր ձեզի կ'ենթարկէ այս երկրին նուիրական աւանդութեանց դէմ ուղղակի յարձակում մը։

Այս կերպով պատճառաբանողը հեղահամբոյր և քաղցր դէմքով գրեթէ քառասնամեայ մարդ մ'էր։

Անթերի քաղաքավարութեամբ արտաբերուող խօսքերը չէին կրնար թշնամանել Տէպարօն, որ կրկնեց.

— Կարևորութիւն չեմ տար ամենևին այս աւանդութիւններուն, և զանոնք դատապարտելու զիս պատրաստ կը տեսնէք քանի որ ձեզ անհաճոյ երևալու դժբաղդութիւնը ունիմ։

Տէպարօ մատովը մի առ մի սրբեց բոլոր տողերը որք մատիտով գրուած էին։

— Շնորհակալ եմ, պարոն, ըսաւ անծանօթը։ Ձեր հագուստէն և կերպերէն կը դիտեմ որ Բարիզցի ազնուական մ'էք։ Ատենօք ես ալ մեծ քաղքին մէջ կը բնակէի, և հոն ստէպ պատահեցայ այնպիսի անձերու որք միայն ձևի համար կը դաւանէին արտամալի գրութիւններ զոր իրենց սիրտը կը մերժէր։

— Ո՛հ, ըսաւ Էմմանուէլ, ես այն տեսակ մարդոց կարգէն չեմ։

— Գուցէ։

— Չէ՛, յիրաւի չէ՛, բոլոր ժէզուիթներուն հրաւէր կը կարդամ որ դան հաւատքի բերեն զիս։

— Տէ՛, տէ՛, հաւատքի գալը դժուարին բան մը չէ, և ձեր սիրտը տակաւին ոչ այնքան քարացած է որքան կը ցուցնէք թէ է։ Պահ մ'առաջ ձեզմէ տասը քայլ անդին էի, երբ ձեր քովը պտտուող կոշտ գիւղացիներուն մին ձեզ նախատինք մ'ըրաւ։

— Ո՛հ, ականատե՞ս էիք այն արկածին։

— Այո՛։ Սուրբ քահանային մեղմ ընթացքը սաստիկ յուզեց ձեզի։ Ապա մտիկ ըրիք իրեն գլխաբաց, և անոր ատենաբանութեան վերջը ձեր աչքը թրջուած էր։

— Վերջապէս ի՛նչ ընել կ՚ուզէք, պա՛րոն, հարցուց Տէպարօ։

— Կ՚ուզեմ ապացուցանել ձեզ թէ բարի էք, և ձեր կամքին հակառակ բարի էք։ Յատկապէս ձեր ետևէն եկայ որպէս զի ձեզի հրաւիրեմ՝ պատարագէն ետք ճաշելու մեր ատենաբանին հետ։ Պարտաւոր էք անշուշտ շնորհակալութիւն յայտնել անոր։ Եթէ ան չըլլար, սրով պիտի զարնէիք այն գիւղացին որմէ նախատինք կրեր էիք.... Աստուած գիտէ թէ այն ատեն ինչ պիտի ըլլար մարդասպանութեան հետեւանքը։ Կը յուսամ թէ տիկինն ևս կ՚ընդունի հրաւէրս։ Երբ կին մ՚այսքան վայելչաշնորհութիւններով զարդարուած է միանգամայն, արժանի է վեհապետ իշխանի մը սեղանին քով փողփողելու։

— Ի՛նչ, պարո՛ն, ըսի, այդ ճաշին ժամանակ Լօրէնի դուքսը պիտի տեսնենք։

— Անշո՛ւշտ, և ձեզի ներկայացնելու հոգը վրաս կ՚առնում։

— Յօժարակամ կ՚ընդունինք նա մանաւանդ որ կինս և ես նամակ մ՚ունինք Նորին Բարձրութեան համար, ըսաւ Էմմանուէլ։

— Ուրեմն կրկնակի երջանիկ եմ։ Պիտի ներկայացուիք մարդէ մը զոր իշխանը կը զիջանի քիչ մը յարգելու.... Անունն է Ֆրանսուա Տէ Բիլիէ, և կը բնակիմ....։

— Միրգուրի՛ մէջ, գոչեցի։

— Այո՛, մռմռաց փոքր ինչ զարմանալով։ Միրգուր Լօրէնի ամուր քաղաքներուն մին է, ուր պիտի գաք անշուշտ, և ուր շատ ուրախ պիտի ըլլամ ձեզի հիւրընկալելու։

Էմմանուէլ ծռեցաւ Պասօմբիէրին նամակը անոր տալու համար։

— Խա՛չըր, շա՛տ զարմանալի բան է այս. տե՛ս ինչ համակրութիւն, գոչեց Պ. Տէ Բիլիէ. կը գուշակէի թէ դուք հիւրերս էք, և ձեզի արդէն կը սիրէի, ապե՛ա, ձեր անկրօնութեան հակառակ... կամ պատճառաւ, վասն զի կամ դարձի պիտի գաք, և կամ պատճառը պիտի ըսէք մեզ։ Նախ այսօրուանէ սկսեալ ձեզի տունը և ձեռքը կապած կը յանձնեմ մեր սուրբ առաքելոյն։

— Իրաւունք ունիք, պարոն, ըսի խոկոյն, և խօսք կը տամ այս մասին ձեզ օգնելու։

— Ա՛հ, սիրելի՛դ իմ, նենգութիւն մ'է ատի, և դուն անկարող ես այդպիսի նենգութիւն մ'ընելու, ըսաւ ինծ Էմմանուէլ։

— Պիտի տեսնե՛ս, պիտի տեսնե՛ս։

— Ապա ուրեմն երբ կեղծաւոր պիտի վարուիմ հանգիստ ըլլալու համար, շարայարեց խնդալով։

— Ե՞րբ կեղծաւոր . . . զգուշացի՛ր, Թշուառ, գոչեց Պ. Տէ Բիլիէ։ Ամբարիշտ եղի՛ր, վիճի՛նք, կռուի՛նք, գրաւ դնենք թէ ով որմէն համոզուելով դարձի պիտի գայ . . . ։ Բայց տանս մէջ կեղծաւո՞ր մը. աւելի աղէկ կը համարէի սատանան տեսնել քան թէ կեղծաւոր մը։ Այսպէս ահա որոշեցինք, ազատ է ընթացքը . . . ։ Երթանք նայինք թէ ճաշը պատրաստ է։

Քծնամիրաբար թեւին մէկը ինծ տուաւ, միւսն ալ Տէպարօյին։ Արդէն շատ լաւ բարեկամներ էինք։

Պատարագը մատուցուած էր մինչդեռ մենք Պ. Տէ Բիլիէյին հետ կը տեսնուէինք։ Հրապարակէն անցնելով տեսայ որ զինուորները վարժութիւններ և ռազմական խաղեր կ'սկսէին որք մինչև իրիկուն պիտի տևէին։

Քիչ մ'ետք Պ. Տէ Բիլիէ բազմոցին մօտերը կանգնուած վրաննին ներքև տարաւ մեզ ուր պահ մ'առաջ արդէն մտած էր Անրի դուքսն իր հետը գտնուող ազնուական անձանց հետ։ Այս իշխանն ամենաշնորհալի կերպով պատուեց մեզ։ Մեզմէ լուր ուզեց Պասօմբիէրին նկատմամբ զոր շատ կը սիրէր, երդում ըրաւ մեզ յամենայնի և ամենուն դէմ պաշտպանելու, և ըսաւ Պ. Տէ Բիլիէյին որ մեզ իր պալատը բերէ կարելի եղածին չափ շուտով։

Էմմանուէլ պատշաճութեան կիրթ ճաշակի պարտաւորութիւն սեպեց Բիէր Ֆուրիէին մօտիլը, և անոր քովն երթալով ինքն ալ իր մեծարանքը մատոյց այն փառաւոր ընկերութեան մէջէն ուր սուրբ մարդն ուրիշներէն կը մեծարուէր արդէն։

Տէպարօ հրապարակին վրայ տեղի ունեցող գայթակղական իրողութեան նկատմամբ ուզեց կամաց մը ներումն խնդրել Բիէր Ֆուրիէէն, բայց ծերունին անոր բերանը գոցեց՝ ըսելով.

— Ա՛լ անցեալին վրայ չխօսինք, ո՛րդեակս՝ ապագային վրայ խօսինք։ Պ. Տէ Բիլիէյին հիւրն ես. Միրզուրի մէջ բնակած տեղդ այցելութիւն կ՚ընեմ իրեն, և սիրելի է իրեն փոխադարձապէս ինծ այցելութեան գալ. զիս իր տունը պիտի կրնաս տեսնել առանց մեծ ցաւ մը զգալու. այս միջոցիս քեզմէ մայրդուն ցոյց տուած քաղաքավարութիւնը նկատելով կը պարտաւորիմ հետեւցնել թէ ատելութիւն պիտի չունենաս քահանային դէմ, և ատկէց 'ի զատ ժամանակ առ ժամանակ պիտի զիջանիս գալու երէցատունիս դուռը զարնելու։

Էմմանուէլ եռանդապէս ըսաւ անոր թէ իրեն պատիւ և փառք մը կը համարէր այս առաջարկութիւնը։ Աղէկ չգիտեմ թէ անկեղծ էր թէ ոչ իր այս խօսքը։

Վրանին ներքև տրուած մեծահաց կոչունքէն ետք Լօրէն դուքսէն հրաման առինք երթալու։

Հետեւեալ օրը Վերափոխում էր։

Բիէր Ֆուբիէ կ՚ուզէր իր վիճակն երթալ, իսկ մենք Միրզուրէն տասը մղոն հեռի էինք. կորսնցնելու ժամանակ չկար։

Պ. Տէ Բիլիէ սուրբ ծերունին բերելու հոգն իր վրայ առած ըլլալով՝ նորէն տեղը տանելու հոգը նոյնպէս վրան կ՚առնուր։ Երկու ուժեղ ձիեր իր կառքը կը տանէին, ուր բացարձակապէս ուզեց որ մենք ալ մտնենք և նստինք։

Իր ծառաներուն մին ետևէն կը գար մեր ուղեկառքին հետ։



## Դ

Միրզուր բաւական զուարթ քաղաք մ՚երևցաւ մեզ։ Իր պատուարներուն ու բերդուն առնական կերպարան մ՚առնելու կը ջանար, բայց չէր յաջողեր։

Դիւրաւ կը գուշակէիք թէ այս ամառնը վախ չէր տար, և ասոր հմայքն էր իրերու կիրառութեան քան թէ զինուց գործածութեան։ Պատերազմական փողերին ձայնէն ոչ այնքան կ'որոտուէր այն որքան մեր մէջ շինուած երգիչներուն, կիթառներուն և վիններուն հեշտաւէտ եղանակներէն։

Իրօք հազիւ այս քաղաքին դուռներէն ներս կը մտնէիք և ահա մշտնջենաւոր նուագահանդէսի մը ներկայ կը գտնուէիք։

Մէն մի տուն իր եղանակը կը նուագէր, մէն մի պատուհան իր ձայնագիրը կը ղրկէր։ Բոլոր դատիկոններէն երաժշտութեան ուրախալի ձայներ խոյս կը տային, քիւերուն վերեւէն կ'ընկնէին և աշտարակիկներուն վարը կը սպրդէին։ Պատերը հնչիւն ունէին, և քաղաքն ամբողջ երաժշտային անբաւ գործի մ'էր լոկ, ուսկէ անընդհատ մեղեդիներ, ներդաշնակաւոր հառաչումներ կ'արտաբուրուէին։

Անկէ, և աչքառու կնիկի յատուկ բնազդութեամբ ուշադրեցի մանաւանդ այն աշխատութենէն որով կ'զբաղէին Միրգուրի կիները։

Երբ պտըտեցայ ըլլար օրը, մէն մի տան շեմին առջև խումբ խումբ գործուհիներ կային որք իրենց առջևը կեցող աթոռակի մը վրայ կռթնելով՝ անօթի մը գլխաձև և բարակամ մեծկակ բարձիկ մ'ունէին իրենց գիրկը։ Թելով ու յարդով աղէկ մը լեցուած և կանաչագոյն կտաւով ծածկուած այս բարձիկին վրայ՝ գլանին վրայ շիփ շիտակ կցուած նկարի մը պահանջումներուն համեմատ՝ երկայն ու բարակ ասեղներ շարուած էին. զորս գործուհին մէն մի մանրերկրորդին կը փոխէր, և որոնց բոլորտիքը աղխտախտակ նուրբ դերձաններ կը վարէր։

Միրգուրի մէջ իսկ խիստ չափաւոր գինով ծախուած շքեղ տանդելաններն այսպէս կը շինուէին։

Այս տանդելաններէն չափազանց քանակութեամբ գնեցի. Ետքէն բարեկամուհիներս, նա մանաւանդ Նինոն Տը Լանգլօ զիջան օգուտ քաղել անոնցմէ։

Միրգուր արժանանկար տեսք մ'ունէր այն բլուրներուն վերէն որք քաղաքին արևելեան կողմը կը բարձրանային։ Ամփիթէատրոնի

ձեռով կը տարածուէր այն գրեթէ քառորդ մղոնի մը չափ երկայնութիւն ունեցող վայրի մը վրայ, իր անունը լուալով պզտիկ գետակ մը մէջ որ ուռիներու ներքև կը քնէր և որուն անունը՝ կարծեմ՝ Լը Մառօն էր։ Գետակէն սկսած զանազան շէնքերն իրարու վրայ կը մազլցէին և խառն 'ի խուռն կ'ելնէին դէպ երկինք։ Սէն Պօլայինէ վանքն ու բերդը։ Կրնայիր ըսել թէ վարի քաղաքը՝ հերարձակ, անօթանհար՝ կ'ապստամբէր յայտնապէս և կ'ուզէր յարձակումով առնել վերի քաղաքին աշտարակներուն և պզտիկ զանգակատանց որք արհամարհական կերպով մ'անոր կը նայէին։

Միրզուր հռոմէական տիրապետութեան ժամանակ արդէն կար։

Այն ատեն Մէքքէ-ըլէնս կ'անուանէր զայն՝ յանուն Մերկիւրի (Հերմէս) շինուած իր տաճարին անունովը։ Մերկիւր վաճառականաց և գողերու աստուածն է։ Բայց դիւրին է ինձ կարծել թէ այս վերջին ախտաղտաց անձինքն չէին պատուեր զինքը։

Ինչպէս ըսի արդէն, քաղաքը նախ և առաջ պատերազմական տեղ մ'առնելու կը ձգտէր. բայց իր դիտաւորութեանց նպատակները շուտով կը դադրէին վերջանալէ երբ պատուարներուն բացերով ծածկուիլը, պարիսպներուն ատամանց հովանիին ներքև պահուիլը, և թշնամի խրամներուն խաղաղաւէտ պարտէզներու փոխուիլը կը տեսնէին։ Միրզուր երեք դուռ ունէր։ Մին՝ որ հիւսիսային կը նայէր և ուսկէ մենք մտեր էինք՝ Սուրբ-Նիկողոսի դուռ կ'անուանէր։ Այս դրան հանդիպակաց էր հարուստ մենաստան մ'որ ամէն քիչ մ'անդին տեղաւորուած էր դալարաւէտ բլրակի մը վրայ, ուսկէ քաղաքը, Լը Մառօն գետն և դաշտավայրը ամբողջապէս կ'երևային։

Այս մենաստանը Բուլէյի Բենետիքեան կրօնաւորներուն ժառանգութեանն էր, զոր կը կազմէին գերազնիւ տիկիններ։

Միրզուրի մէջ բնակած միջոցիս առիթ ունեցայ քանի մ'անգամ այցելութիւն ընելու անոնց, և շատ գոհ եղայ անոնց ինձ ցոյց տուած բարեսէր ընդունելութենէն, բոլորովին ընտիր և շնորհալի մեծագործութենէն։

որոնց մին կը բանէր մեծ մարդ մը կազմելու, այսինքն բարեկար-գելու տաղանդը և ճառելու զօրութիւնը ունէր։

Բիէր Գօռբէյին այս երկու յատկութիւնն անոր քրիստոնէա-կան եռանդէն գրգռուելով անհաւատալի արդիւնք կ'ունենար։

Այն ժամանակ յիսունը հինգ տարեկան էր ան։

Իր բարձր և վայելուչ հասակը տակաւին թեթևակի կը ծռուէր։ Նրբէք այդքան յանկուցիչ ու միանգամայն պատկառելի դէմք մը չտեսներ էի։

Ամեն կանոնաւոր կանոնիկաններուն պէս ան ալ թեզանաւոր շա-պիկին վրայէն կը հագնէր կշերական այն սև թիկնոցակը որուն վրայ իջնող իր սպիտակ մօրուքը կը ծփար։ Իր լայն հերատ ճակատը քաղցր հանդարտութիւն մը, խաղաղ պայծառութիւն մը ցոյց կը տար։

Կը տեսնուէր թէ Բիէր առաքինութեան օրի մ'իրիկունը կը գտնուէր։ Իր նայուածքն երկնային հրապոյր մ'ունէր. ամենէն քարասիրտը չէր կրնար դիմադրել անոր ժպիտին աւետարանական արտայայտութեան։

Անրի Տը Լօրէն՝ որ այս սուրբ առաքեալը անհամեմատաբար կը մեծարէր և անհամեմատ կերպով կը յարգէր՝ աղաչած էր զան որ Տօմբրըմի գայ իր և այս ամեն հաւաքուած բազմութեանց առջև քրիստոնեայ դիւցազնուհիին ջատագովութիւնը ընելու համար։

Բիէրին եռանդալի և անոյշ ձայնն 'ի պահանջել հարկի մե-տաղական և հնչողական բան մ'ունէր։ Բոլոր ունկնդիրներն ա-նոր ճառին և ոչ իսկ մէկ խօսքը կորուսին։ Կատարեալ վայել-չաշնորհութեամբ մը, հաղուադէպ դիւրութեամբ մը, սքանչելի յստակութեամբ մը կը խօսէր ան, և երբեմն իր ճարտասանու-թիւնը բարձր վսեմութեանց կը հասնէր, թէև ինք հարկաւոր չսեպէր որ և է կերպով զարդարել իր խօսքերը։ Իր սիրուն անոր խօսքերը դուրս կը թափէր սրտառուչ պարզութեամբ մը։

Դաշտերուն մէջ իր ոչխարներուն քովը նստող գիւղացի խեղճ աղջկան (Ժան Տ'Արգին) պատմութիւնը ըրաւ մեզ։

«Երկնուստ ձայն մը կը լսուի, և Ժան կ'իմանայ թէ Աս-տուած զինքը Փրանսան փրկելու կը սահմանէ։

«Նէ կը մեկնի, անծանօթ երկիրներէ կ'անցնի, բիւր վտանգներ առ ոչինչ կը դրէ, ուղղակի կը քալէ և կը յառաջանայ պաշտպան ճառագայթէ մ'առաջնորդուելով, և վերջապէս կը հասնի Թուրէնի գաւառը, ուր իր Թագաւորը կը գտնէ որ իր թագը և երկիրը կորուսած է։

«Երկնուստ եկած ըլլալը իմացնող և մեծաձայն աղաղակներով սուր մ'և զրահ մ'ուզող անտիպական հովուուհիին զարմանալի դիւցազներգութիւնն ահա այն ատեն կ'սկսի։

«Իսկոյն կը հագնի այն զրահը, և կ'առնու սուրը։

«Եւ ժան Տ'Արք ճակատամարտներու հրեշտակին առաջնորդութեամբը սրարշաւ կը մեկնի, թշնամի գունդերուն վրայ կը յարձակի արիաբար, ամբողջ բանակներու վրայէն կ'անցնի, Օրլէանի պատերուն տակ Անգլիացին կը ջարդէ, քաղաքը կը պաշարէ, Րէյմի վրայ կը քալէ, ճամբուն վրայ ետ կ'առնու թշնամիին ձեռքն ընկած բոլոր երկիրները, վերջին պատերազմի մը մէջ Թալպօթը յաղթահար կը ճզմէ և վերջապէս իր Թագաւորը օծել կը տայ։

«Մեռոնն երբ Կարոլոսի ճակատին վրայ կը վազէ, հովուուհին վար կը դնէ իր թուրը, իմացնելով թէ իր պաշտօնը լրացած է։

«Կ'ուզէ իր շէնը վերադառնալ, հովուական ցուպը նորէն առնել, դարձեալ իր ոչխարները արածել, իր Լօրէնի գեղափայլ երկինքը, դալարուէտ մարգերը և անտառներու շուքը... վերստին տեսնել։

«Սակայն, ափսո՜ս որ կեցուցին զինքը, ուզեցին որ դեռ պատերազմի երբ Աստուծոյ թևը քաշուած էր։

«Իսկոյն առիւծին կը յաջորդէ վախկոտ եղնը. մարտիկուհին (guerrière) աներևոյթ կ'ըլլայ, և կը մնայ տկար կին մը զոր Անգլիացիք կը բռնեն և որուն համար հրապարակը կը պատրաստեն»։

Ես խիստ համառօտապէս յիշեցի հօր Բիէրին այս ճառը։

Սակայն 'գիտելին է հասկնալ թէ մեծն պատրաստութիւն ըրաայն երբ ըսուեցաւ ճիշդ այն տեղն ուր դիւցազնուհին ծնած էր. այն խեղճ տնակին քովը ուր նէ կը բնակէր և որ երկու դարէ 'ի վեր երկիւղածութեամբ պահուած էր։

Աչքիդ առջեւը կը դային Ժան Տ'Արգին առաջին տարիները, իր բնական անմեղութեան օրերը, իր ոչխարներուն դէպ 'ի Ծաղկազարդ մարգերն առաջնորդելը կը տեսնէիր. զ՝ կը լսէիր հրեշտակային ձայնը որ անոր կը հրամայէր դաշտերը թողուլ և թուխ Ֆրանսան ազատելու համար։ Ճակատամարտերու աղմուկը, վիրաւորներուն աղաղակները հովին շշունջներուն, տնակին քաղցր օրհներգութիւններուն կը յաջորդէր, և քրիստոնեայ ատենաբանը ցոյց կը տար մեզ թէ Աստուած 'ի վերուստ կը նայէր այս սքանչան պատմութեան վերևը։

Երբ Բիէր Գուրիէ պարտաւորեցաւ նկարագրել մարտիրոսուհիին չարչարանքը, և մահուանը միջոցին իր համբերատարութիւնը, բազմութեան հեծկլտալը լսուեցաւ, և Էմմանուէլին խղճէ արտասուր մը պահելու համար գլուխը դարձունելը տեսայ։

— Նկա՞ր, Մարիո՛ն, ըսաւ, վտանգաւոր է այս քահանան. . . . կարծեմ թէ յաջողեցաւ զիս յուզելու։

Գուրիէ բեմէն կ'իջնէր, և կը պատրաստուէր պատարագի մատուցման հանդէսը կատարելու։ Բոլոր գիւղացիները խորանին մօտեցան, և այն ատեն կրցանք բազմութեան մէջէն հեռանալ։

Էմմանուէլին ըսի.

— Ո՛հ, բարեկամ, անշուշտ ճշմարիտ է այն կրօնքն որ այսպիսի ճարտասանութիւն մը կը ներշնչէ։

— Միամիտ ես եղեր, սիրելի՛դ իմ. եռանդն ու կրօնամոլութիւնը սուտերով կ'ապրին։

— Կ'աշխատիս այս մասին ինքզինքդ խաբել. լալդ տեսայ։

— Բա՛հ, ըսաւ, ջղային հետեւութիւն մ'էր այն։

Այն ատեն կը պտտուէինք Ժան Տ'Արգի հին բնակարանին քովը, ուր այն օր ամենուն թոյլ կը տրուէր ազատօրէն մտնել։ Քաշելով հետս առի և ներս մտայ. պարզ և անշուք խրճիթ մը տեսանք, որուն պատերուն վրայ վերնագրութիւններ կային. ասոնց ամենն ալ 'ի պատիւ հովուուհիին գրուած էին։

Ցոյց տրուեցան մեզ նորա կաշիի փայտէ անկողինը, երկաթեայ ահագին բևեռներով զարդարուած մորթապատ արկղ մը

որու մէջ կը դնէր իր գիւղացիի յատուկ հանդերձները, պղնձեայ պզտի շղթայէ մը կախուած դատարկ դդում մը զոր իր ուսին վերէն ետեւը կը նետէր երբ դաշտերը կ'երթար. փայտէ քանդակուած խաչելութիւն մ'որուն առջեւ առտու և իրիկուն նէ իր աղօթքը կ'ընէր, և վերջապէս հովուական ցուպն որ ոչխարները առաջնորդելու կը ծառայէր իրեն։

Հետաքրքիրները մեծ յարգանօք կը նայէին այս ամեն բաներուն։ Պատերուն վրայի զանազան վերնագրութիւնները կը կարդային, նոր վերնագրութիւններ կ'աւելցնէին, և ամենէն անուանիներն իրենց անունները կը նշանակէին իբր յիշատակ իրենց այցելութեան 'ի խրճիթն։

Էմմանուէլ ցուպին աջ կողմը յետագայ ոտանաւորը գրեց.

Չէ՛, Յովհաննա՛, քեզ ներշնչողն երկինք չէ.
Կը պնդեմ թէ ատենաբանն այս սուտ է։
Կը նուաղէր, դիւցազնուհիդ մեծանուն,
Արժէքդ՝ եթէ Տիրոջ գործին էիր լոկ։
Վեհ քաջութիւնդ անիրաւի կ'անարգէ
Ով որ յերկնուստ քեզի սեպէ ներշնչուած.
Փառքիդ համար այսօր պէտք է մի մերժում։
Չէ՛, Աստուծմէ պէտք չունի այն քաջ բազուկ
Զոր գերութեան ատելութիւն կը զինէր,
Անգլիացւոյն տալու համար խիստ պատիժ։

Այս ոտանաւորը մարդուս զայրոյթը գրգռող ամբարշտութիւն մ'ունէր, և պատրաստ էի յանդիմանելու Տէպարօն իր յամառութեան համար որով կրօնական յարգելի և սուրբ կարծիքներ ալ ոչինչ կը գրէր, երբ ներկայ գտնուող նշանաւոր անձանց մին անոր ուսին զարկաւ և ցած ձայնով մռմռաց.

— Պա՛րոն, կը համարձակի՞ք ստորագրել այդ տողերը։

— Ինչո՞ւ չէ, ըսաւ Էմմանուէլ։

Եւ անոնց տակը ՏԸ ՖԵՐԻԽՍԱԳ ԱՍՊԵՏ անունը գրեց։

— Քաջատոհմիկ էք, ըսաւ անծանօթը, և շատ ուրախ եմ ձեր քաջատոհմութիւնը իմանալուս։ Բայց կը կարծէք թէ այս գիւղերուն անտաշ բնակիչները մեծ շահ մ՚ունենան այդքան . . . . բանաստեղծական կերպով ձեւուած կարծիք մ՚ընդունելով։ Օտարական էք, պարոն, և չէք երեւակայեր բնաւ այն վտանգը որուն ձեզի կ՚ենթարկէ այս երկրին նուիրական աւանդութեանց դէմ ուղղակի յարձակում մը։

Այս կերպով պատճառաբանողը հեզահամբոյր և քաղցր դէմքով գրեթէ քառասնամեայ մարդ մ՚էր։

Անթերի քաղաքավարութեամբ արտաբերուող խօսքերը չէին կրնար թշնամանել Տէպարօն, որ կրկնեց.

— Կարեւորութիւն չեմ տար ամենեւին այս աւանդութիւններուն, և զանոնք դատապարտելու զիս պատրաստ կը տեսնէք քանի որ ձեզ անհաճոյ երեւալու դժբաղդութիւնը ունիմ։

Տէպարօ մատովը մի առ մի սրբեց բոլոր տողերը որք մատիտով գրուած էին։

— Շնորհակալ եմ, պարոն, ըսաւ անծանօթը։ Ձեր հագուստէն և կերպերէն կը դիտեմ որ Բարիզցի ազնուական մ՚էք։ Ատենօք ես ալ մեծ քաղքին մէջ կը բնակէի, և հոն ստէպ պատահեցայ այնպիսի անձերու որք միայն ձեւի համար կը դաւանէին արտամալի դրութիւններ զոր իրենց սիրտը կը մերժէր։

— Ո՛հ, ըսաւ Էմմանուէլ, ես այն տեսակ մարդոց կարգէն չեմ։

— Գուցէ։

— Չէ՛, յիրաւի չէ՛, բոլոր ժէզուիթներուն հրաւէր կը կարդամ որ դան հաւատքի բերեն զիս։

— Տէ՛, տէ՛, հաւատքի գալը դժուարին բան մը չէ, և ձեր սիրտը տակաւին ոչ այնքան քարացած է որքան կը ցուցնէք թէ է։ Պահ մ՚առաջ ձեզմէ տաս քայլ անդին էի, երբ ձեր քովը գտնուող կոշտ գիւղացիներուն մին ձեզ նախատինք մ՚ըրաւ։

— Ո՛հ, ականատես էիք այն արկածին։

— Այո՛։ Սուրբ քահանային մեղմ ընթացքը սաստիկ յուզեց ձեզի։ Ապա մտիկ ըրիք իրեն գլխաբաց, և անոր առաքինութեան վերջը ձեր աչքը թրջուած էր։

— Վերջապէս ի՞նչ ըսել կ՚ուզէք, պա՛րոն, հարցուց Տէպարօ։

— Կ՚ուզեմ ապացուցանել ձեզ թէ բարի էք, և ձեր կամքին հակառակ բարի էք։ Ցաւակապէս ձեր ետևէն եկայ որպէս զի ձեզի հրաւիրեմ՝ պատարագէն ետք ճաշելու մեր ատենաբանին հետ։ Պարտաւոր էք անշուշտ շնորհակալութիւն յայտնել անոր։ Եթէ ան չըլլար, սրով պիտի զարնէինք այն գիւղացին որմէ նախատինք կրեր էինք . . . ։ Աստուած գիտէ թէ այն ատեն ի՛նչ պիտի ըլլար մարդասպանութեան հետևանքը։ Կը յուսամ թէ տիկինն ալ կ՚ընդունի հրաւէրս։ Երբ կին մ՚այսքան վայելչաշնորհութիւններով զարդարուած է միանգամայն, արժանի է վեհապետ իշխանի մը սեղանին քով փողփողելու։

— Ի՛նչ, պարո՛ն, ըսի, այդ ճաշին ժամանակ Լօրէնի դուքսը պիտի տեսնենք։

— Անշո՛ւշտ, և ձեզի ներկայացնելու հոգը վրաս կ՚առնում։

— Յօժարակամ կ՚ընդունինք նա մանաւանդ որ կինս և ես նամակ մ՚ունինք Նորին Բարձրութեան համար, ըսաւ Էմմանուէլ։

— Ուրեմն կրկնակի երջանիկ եմ։ Պիտի ներկայացուիք մարդէ մը զոր իշխանը կը զիջանի քիչ մը յարգելու . . . ։ Անունն է Ֆրանսուա Տէ Բիլիէ, և կը բնակիմ . . . ։

— Միրգուրի՛ մէջ, գոչեցի։

— Այո՛, մռմռաց փոքր ինչ զարմանալով։ Միրգուր Լօրէնի ամուր քաղաքներուն մին է, ուր պիտի գաք անշուշտ, և ուր շատ ուրախ պիտի ըլլամ ձեզի հիւրընկալելու։

Էմմանուէլ ծռուեցաւ Պասօմբիէրին նամակը անոր տալու համար։

— Խա՛նչոր, շա՛տ զարմանալի բան է այս. տե՛ս ի՛նչ համակրութիւն, գոչեց Պ. Տէ Բիլիէ. կը գուշակէի թէ դուք հիւրերս էք, և ձեզի արդէն կը սիրէի, ասպե՛տ. ձեր անկրօնութեան հակառակ . . . կամ պատճառաւ, վասն զի կամ դարձի պիտի գաք, և կամ պատճառը պիտի ըսէք մեզ։ Նախ այսօրուանէ սկսեալ ձեզի ոտքը և ձեռքը կապած կը յանձնեմ մեր սուրբ առաքելոյն։

— Իրաւունք ունիք, պարոն, ըսի խոկալն, և խօսք կը տամ այս մասին ձեզ օգնելու:

— Ա՛հ, սիրելի՛դ իմ, նենգութիւն մ՚է առի, և դուն անկարող ես այդպիսի նենգութիւն մ՚ընելու, ըսաւ ինծ Էմմանուէլ.

— Պիտի տեսնե՛ս, պիտի տեսնե՛ս:

— Ապա ուրեմն իբր կեղծաւոր պիտի վարուիմ հանդիստ ըլլալու համար, շարայարեց խնդալով:

— Ի՞բր կեղծաւոր . . . զգուշացի՛ր, թշուառ, գոչեց Պ. Տէ Բիլիէ: Ամբարիշտ եղի՛ր, վիճի՛նք, կռուի՛նք, գրաւ դնենք թէ ով որմէն համոզուելով դարձի պիտի գայ . . . : Բայց տանս մէջ կեղծաւո՞ր մը. աւելի աղէկ կը համարէի սատանան տեսնել քան թէ կեղծաւոր մը: Այսպէս ահա որոշեցինք, ազատ է ընթացքդ . . . : Երթանք նայինք թէ ճաշը պատրաստ է:

Քծնաւորաբար թեւին մէկը ինծ տուաւ, միւսն ալ Տէպարօյին:

Արդէն շատ լաւ բարեկամներ էինք:

Պատարագը մատուցուած էր մինչդեռ մենք Պ. Տէ Բիլիէյին հետ կը տեսնուէինք: Հրապարակէն անցնելով տեսայ որ զինուորները վարժութիւններ և ռազմական խաղեր կ՚սկսէին որք մինչև իրիկուն պիտի տևէին:

Քիչ մ՚ետք Պ. Տէ Բիլիէ բազմոցին մօտերը կանգնուած վրանին ներքև տարաւ մեզի ուր պահ մ՚առաջ արդէն մտած էր Անրի դուքսն իր հետը գտնուող ազնուական անձանց հետ: Այս իշխանն ամենաշնորհալի կերպով պատուեց մեզի: Մեզմէ լուր ուզեց Պասօմբիէրին նկատմամբ զոր շատ կը սիրէր, երդում ըրաւ մեզի յամենայնի և ամենուն դէմ պաշտպանելու, և ըսաւ Պ. Տէ Բիլիէյին որ մեզի իր սալատը բերէ կարելի եղածին չափ շուտով:

Էմմանուէլ պատշաճութեան կիրթ ճաշակի պարտաւորութիւն սեպեց Բիէր Ֆուրիէին մօտիլը, և անոր քովն երթալով ինքն ալ իր մեծարանքը մատոյց այն փառաւոր ընկերութեան միջէն ուր սուրբ մարդն ուրիշներէն կը մեծարուէր արդէն:

Տէպարօ հրապարակին վրայ տեղի ունեցող դայթակղական իրողութեան նկատմամբ ուզեց կամաց մը ներումն խնդրել Բիէր Ֆուրիէէն, բայց ծերունին անոր բերանը գոցեց՝ ըսելով.

— Ա՛լ անցեալոյն վրայ չխօսինք, մրմռեակս, ապագային վրայ խօսինք։ Գ. Տէ Բիլլէյին հիւրն ես. Միրզուրի մէջ բնակած ատեն այցելութիւն կ'ընեմ իրեն, և սիրելի է իրեն փոխադարձաբար ինծ այցելութեան գալ. գիս իր տունը պիտի կրնաս տեսնել տասնց մեծ ցաւ մը զգալու. այս միջոցիս քեզմէ մայրդուն ցոյց տրուած քաղաքավարութիւնը նկատելով կը պարտաւորիմ հեռացնել թէ ատելութիւն պիտի չունենաս քահանային դէմ, և ատկէց 'ի զատ ժամանակ առ ժամանակ պիտի զիջանիս գալու եղբայրութիւնս դուռը զարնելու։

Էմմանուէլ եռանդապէս ըսաւ անոր թէ իրեն պատիւ և փառք մը կը համարէր այս առաջարկութիւնը։ Աղէկ չգիտեմ թէ անկե՞ղծ էր թէ ոչ իր այս խօսքը։

Վրանին ներքև տրուած մեծահաց կոչունքէն ետք Լօրէն դուքսէն հրաման առինք երթալու։

Հետևեալ օրը Վերափոխում էր։

Բիէր Գուրիէ կ'ուզէր իր վիճակն երթալ, իսկ մենք Միրզուրէն տասը մղոն հեռի էինք. կորսնցնելու ժամանակ չկար։

Գ. Տէ Բիլիէ սուրբ ծերունին բերելու հոգն իր վրայ առած ըլլալով, նորէն տեղը տանելու հոգը նոյնպէս վրան կ'առնուր։ Նախկին ուժեղ ձիեր իր կառքը կը տանէին, ուր բացարձակապէս ուզեց որ մենք ալ մտնենք և նստինք։

Իր ծառաներուն մին ետևէն կը գար մեր ուղեկառքին հետ։



Դ

Միրզուր բնական զուարթ քաղաք մ'երևցաւ մեզ. Իր պատուհաններէն ու դռներէն առնական կերպարան մ'առնելու կը ջանար, բայց չէր յաջողեր։

Դիւրաւ կը գուշակէինք թէ այս ամառանոցը փախ չէր տար․ և աւելի հմուտ էր իլերու կիրառութեան քան թէ զինուց զարդա-ծութեան։ Պատերազմական փողերին ձայնէն ոչ այնքան կ՚արգ-ուէր այն որքան մեր մէջ շինուած երգիծներուն, կիթառներուն և ջինջերուն հեշտալից եղանակներէն։

Իրօք հազիւ այս քաղաքին դուռներէն ներս կը մտնէիր և անհա-մշտնջենաւոր նուագահանդիսի մը ներկայ կը գտնուէիր։

Մէն մի տուն իր եղանակը կը նուագէր, մէն մի պատուհան իր ձայնագիրը կը ղրկէր։ Բոլոր դստիկոններէն երաժշտութեան ուրախալի ձայներ խոյս կը տային, քիւերուն վերևէն կ՚ընկնէին և աշտարակներուն վարը կը սպրդէին։ Պատերը հնչուն ունէին, և քաղաքն ամբողջ երաժշտային անքաւ գործի մ՚էր լոկ, ուսկէ անընդհատ մեղեդիներ, ներդաշնակաւոր հառաչումներ կ՚ար-տաքսուէին։

Կնիկի, և աչքառուէր կնիկի յատուկ բնազդումներս ողջունցան մա-նաւանդ այն աշխատութենէն որով կ՚զբաղէին Միրզուրի կիները։

Երբ գեղեցիկ ըլլար օդը, մէն մի տան շեմին առջև խումբ խումբ գործուհիներ կային որք իրենց առջևը կեցող աթոռակի մը վրայ կռթնելով՝ ատաղի մը գլխաձև և բաւական մեծկակ բար-ձիկ մ՚ունէին իրենց գիրկը։ Թեփով ու յարդով աղէկ մը լեց-ուած և կանաչագոյն կտաւով ծածկուած այս բարձիկին վրայ՝ գլանին վրայ շէփ շիտակ կցուած նկարի մը պահանջումներուն հա-մեմատ՝ երկայն ու բարակ ասեղներ շարուած էին, զորս գործու-հին մէն մի մանրերկրորդին կը փոխէր, և որոնց բոլորտիքը սպի-տակափայլ նուրբ դերձաններ կը վարէր։

Միրզուրի մէջ իսկ խիստ չափաւոր գինով ծախուած շքեղ տանդելաներն այսպէս կը շինուէին։

Այս տանդելաներէն չափազանց քանակութեամբ գնեցի․ նա-քէն բարեկամուհիներս, նա մանաւանդ Նինօն Տը Լանգլօ զիջան օգուտ քաղելու անոնցմէ։

Միրզուր արժանանկար տեսք մ՚ունէր այն բլուրներուն վերև որք քաղաքին արևելեան կողմը կը բարձրանային։ Ամֆիթեատրոնի

ձեւով կը տարածուէր այն գրեթէ քառորդ մղոնի մը չափ երկայնութիւն ունեցող վայրի մը վրայ, իր տուները լուսաւոր պզտիկ դետի մը մէջ որ ուռիներու ներքեւ կը քնէր եւ որուն անունը՝ կարծեմ՝ Լը Մասօն էր։ Գետէն սկսող զանազան շէնքերն իրարու վրայ կը մագլցէին եւ խառն 'ի խուռն կ'ելնէին դէպ եկեղեցին։ Տէ Գօսսըյին վանքն ու բերդը։ Կրնայիր ըսել թէ վարի քաղաքը՝ հերարձակ, ամօթահար՝ կ'ապաստանէր յայտնապէս եւ կ'ուզէր յարձակումով տիրել վերի քաղաքին աշտարակներուն եւ պզտի զանգակատանց որք արհամարհական հերպով մ'անոր կը նայէին։

Միրզուր հռոմէական տիրապետութեան ժամանակ արդէն կար։

Այն ատեն Մէրքէր–ըէնոն կ'անուանէր այն՝ յանուն Մերգուրի (Հերմէս) շինուած իր տաճարին անունովը։ Մերգիւր վաճառականաց եւ գողերու աստուածն է։ Բայց տիրելի է ինծ կարծել թէ այս վերջին ախտաղատի ամենեւին չէին պատուեր զինքը։

Ինչպէս ըսի արդէն, քաղաքը նախ եւ առաջ պատերազմական տեղը մ'ըլլալու կը ճանար. բայց իր դիտաւորութեանց նկատմամբ շատով կը դադրէր վրդովուելէ երբ պատուարներուն բազեղով ծածկուիլը, պարիսպներուն ատամանց հովանիին ներքեւ պահուիլը, եւ թշնամի խրամներուն խաղաղաւէտ պարտէզներու փոխուիլը կը տեսնէիր։ Միրզուր երեք դուռ ունէր։ Մին՝ որ հիւսիսին կը նայէր եւ ուսկէ մենք մտեր էինք՝ Սուրբ–Նիկողոսի դուռ կ'անուանէր։ Այս դրան հանդիպակայ էր հարուստ մենաստան մ'որ անկէ քիչ մ'անդին տեղաւորուած էր գալարուէտ բլրակի մը վրայ, ուսկէ քաղաքը, Լը Մասօն գետն ու դաշտավայրը ամբողջապէս կ'երեւային։

Այս մենաստանը Բուաէյի Բենետիքթեան կրօնուհիներուն ժողովարանն էր, զոր կը կազմէին գերազնիւ տիկիններ։

Միրզուրի մէջ բնակած միջոցիս առիթ ունեցայ քանի մ'անգամ այցելութիւն ընելու անոնց, եւ շատ գոհ եղայ անոնց ինծ ցոյց տուած պարեսէր ընդունելութենէն, քաղաքավարի ընտիր եւ շնորհալի մեծապատւութենէն։

Երկրորդ դուռը Սէն-Տիպիէյի դուռը կ'ըսուէր. վարի քաղաքէն եկողն այս դուռէն կը մտնէր, որ գետին վրայ իջնող շաժուն կամուրջ մ'ունէր։

Վերջապէս քաղաքին երրորդ դուռը դէպ 'ի հարաւ կը նայէր. և անունն էր Նօթրը-Տամի դուռը։ Անկից կէս մղոն չափ. առջին էր Մաթինդուր ըսուած վիճակն որուն ժողովրդապետն էր մեր հետը ճամբորդութիւն ընող արժանապատիւ քահանան։

Բիէր Փուրիէ ըսաւ չուզեց հաւանիլ որ կառքը մինչև իր երիցատունը տանի զինքը. սուրբ մարդը կը վախնար որ իր ծուխերը չգայթակղին այս փոխառիկ պերճանքէն։

Առջևով գնաց մինչև Մաթէնդուր, մեզի ձգելով այն սիրուն հիւրընկալին տունը, զոր Հելվեթացիներուն գնդապետը տուած էր մեզ։

Գ. Տէ Բիլիէ վերին քաղաքին մէջը կը բնակէր. իր տունը գրեթէ մօտ էր ահագին շէնքի մ'որ Դղեակն–Գայար անունը կ'առնուր։ Իրաւ այս մեծ շէնքը Լօրէնի դուքսերուն համար ալ ժամանակաւ օթևան մ'էր երբ առիթ կ'ունենային Մերգուրէն անցնելու։ Ցիրաւի չէին պարտաւորեր թողլ տալ որ արմաքաքերս այս անկարգ դէմն այսքան խոռխա անուն մ'առանու։

Պալատը, — քանի որ պէտք է այսպէս անուանել զայն. — կը բաղկանար խիստ ցած ու ճնշուած երկու շէնքէ, որոնց մէջ տեղէն փողոցը կ'անցնէր ամբարհաւանութեամբ, սակայն լօրէնեան իշխաններուն ճարտարապետը շատով միութեան խիստ բարեյաջող գիծ մը հնարեց, այսինքն տնակ մը կամուրջ կամ վրան դոց փող մը, զոր մէկ շէնքէն միւսին վրայ նետեց։

Երբ ժողովուրդն ինչ ինչ պահանջումներ կը յայտնէ, երկքիս հզօրներն ահա այսպէս վերէն ցայտելու միջոցը կը գտնեն։

Գ. Տէ Բիլիէյին տունը՝ որուն դուրսի կերպարանքը բաւական համեստ էր՝ բնակութեան և բարեկեցութեան մասին բազմաթիւ դիւրութիւններ կ'ընծայէր։ Հազիւ հազ նշմարեցի թէ Բարիզէն հեռու կը գտնուէինք։

Անոյշ է որ տան տէրը սաստիկ կը սիրուէր ոչ միայն իրեն

ծառայող անձերէն, այլ նաև քաղքին բոլոր բնակիչներէն։ Ասոնք անոր հաճելի ըլլալու համար՝ իր ամենափոքր փափաքները կանխաւ կատարելու կը փութային, և շատ կիներ՝ յարդուզարդի նկատմամբ կարօտութիւնս իմանալով իսկոյն միջազգեստներու և լանջակալներու կաղապարներ և գիպակներ բերին ինծի։

Քաղքին մէջէն իսկ յաջողակ դերձակուհիներ գտան ինծի համար, և ահա շուտով դադրեցայ ցուցնել բարեկեան հանդերձարանիս (garde-robe) վրայ։

Գեղեցկութիւնս՝ յարդուզարդի շնորհիւ ևս աւելի փողփողուն դառնալով՝ անհաւատալի աւիւն մը գրգռեց այս բարեսիրտ գաւառացիներուն մէջ։ Ամեն անգամ որ դուրս կ՚ելնէի, պատուհանները կը գային, ճամբուս վրայ զարմացման անկեղծ աղաղակներ կ՚արձակէին, և փաղաքուշ խօսքեր կ՚ընէին ինծի ուղղակի։ Քաղաքին քանի մը նորատի թիթեռները հրապոյրներուս առաջին քիչ մը շատ մօտելով իսկոյն իրենց թևերը կ՚այրէին և ոտքիս առջև կ՚ընկնէին։

Այն ատեն Էմմանուէլին կը ցուցնէի այս թիթեռները, որոնց հառաչալի և փետրաթափ (déplumé) կերպարանքը շատ կը խնդացնէր զինք։ Ան կը բանար սիրագիրները և ինծի կը կարդար բանաստեղծական աղուոր տողերը զոր այն պարոնները տատասօրէն կ՚ուղղէին ինծի։

Անախորժ չէր ինծի յաղթանակս Տէպարօյին նշմարել տալը, որ սէրս իրեն աւելի թանկագին և անձս աւելի սիրելի ընելու կը նպաստէր։

Գարնան մնացորդ մասը ձիարշաւներով և ճամբորդութիւններով անցաւ... ամենէն առաջ Տ'Արուէ դղեակին այցելութիւն ըրինք։

Գինգամպեռօին յարդի մայրը հոն մեզի ընդունեցաւ մեր նախահօրց այն անկեղծ և արժանապատիւ հիւրասիրութեամբ, որուն այսօր կը յաջորդեն ծայրայեղ շողոքորթութիւնն և զգացումներու կեղծ զեղումը։ Նէ շատ կը ճանչէր Բիլլէյի ընտանիքը, և ուզեց մեր հետը Նանսի գալ որպէս զի մեզի աւելի ապահովա-

—Միլիոնամի տուն երկու փորձերը ունեցանք. Հազուադէպ կատարելութիւն և վեհ ծիծաղաշարժութիւն ունեցող գործ մ'էր այն։

Տասը տարի ետք երբ Լուի ԺԳ Նանսիին տիրեց, Թագաւորն ուզեց պահանջել Ժագ Գալօյէն որ այս աշխարհակալութեան յիշատակը նկարով մը մշտնջենաւորէ. սակայն նկարիչէն յետադայ պահանջելի խօսքը առաւ իբր պատասխան.

— «Մատս բանող ձեռքս այս է ահա, կտրել տուէք զայն, Վեհափառ տէր»։

Նանսիէն Արուէ վերադարձանք, ուր պատուական մարդկուհին նորանոր քաղաքավարական ձեւերով և անհամեմատ շնորհքով մը պատուեց ու մեծարեց մեզի։

Իր գղեակը բերդ ու միանգամայն ամառանոց մ'էր։ Ապարանքը նալի և կոկիկ, տխուր և շնորհալի էր։ Աշտարակներուն և մարտկոցներուն Թնդանօթի յատուկ ծակերէն և խորշերէն Թնդանօթներուն ահագին բերանները կ'երևային. գիշերները շարժուն կամուրջը կը վերցուէր և երկաթեայ ատամներով զարդարուն հակաշուր (herse) կը ձգուէր որ դոցուի։ Սակայն այս պատերազմական ցոյցերուն քով գնդապետին մօրը սիրուն ժպիտը կար, նաև գրեթէ արքայական հիւրընկալութիւն մ'և շքեղ բնակարաններ զորս լոյսը ակնախտիղ պայծառութեամբ կ'ողողէր։

Անկից շրջակայ բոլոր գիւղերը կ'երևային։

Ճարտարապետական բաւական տարօրինակ այլանդակութեամբ մ'այս գղեակը տարուան օրերուն չափ պատուհան ունէր. այս պատճառաւ մոգական տեսարան մը կ'ընծայէին անոնք երբ գիշերուան լոյսերը պատուհանները կ'ոսկեզօծէին։ Այս ամեն պատուհանները դիւթական աչերու բազմութեան մը կը նմանէին, և ամբողջական շէնքը տափարդաշտերը դիտելու համար բարձրացած ահագին Արգոսի մը կերպարանը ունէր։

Իմմանուէլ և Տէ Բիլիէ ընդարձակ պարտէզներու մէջ ձի հեծած՝ եղջերու կ'որսային անբաւ զբօսումով։

Գեղեցիկ օր մ'որսորդներուն հետ երթալու յանդգնութիւնը ունեցայ՝ սակայն հեծելութեան քանի մը դաս առնելէն ետք. Եղ-

ջերմին մնացած միջոցին ամենէն առաջ ես հասայ, իրաւ է որ քանի անգամ վար գլտորելու և կտոր կտոր ըլլալու վտանգին-ենթարկուելէս ետք։

Մեր հիւրընկալներին առաջարկեցին մեզ Արուէի գիւղէն առ-հանդակի հետ մեկնիլ՝ Ռէնի ափանց վրայ անգամ մը ժամ գալու համար։

Երջանկաւոր և տրտմալի եղաւ մեր այս ճամբորդութիւնն որուն բոլոր ժամերը զուարճութեամբ մ'և զբօսանօք մը հատեցի։

Տեսայ այս լայն ու գեղեցիկ գետը որ արծիւներու բոյներու պէս իր ափանց ժայռերուն վրայ դարող աւատական բնակարաններուն միջէն կը հոսի ուժգնապէս. գացի տեսայ նաեւ Սթրազպուրկ ազատ քաղաքը իր կոթեայ մայր եկեղեցիին հետ որուն աշտարակն ամպերու մէջ կը ծրարուի. այս նորէն տեսանք Վոժի լեռներուն վերերը զոր մեր ճամբուն վրայ հարեանցի կերպով քններ էինք, և որոնց զմայլելի տեսքը և դիւթական գերքը կ'ուզէինք մի առ մի տեսնել։

Մարդս չտեսած է այնքան հրաշալի տեսարան մ'որքան կը կազմեն այս գեղեցիկ լեռները, որք մերթ ձեռք ձեռքի տուած համեստ կոյսերու պէս կարգաւ շարուած, և մերթ ցանուցիր ու թափառական են անտառաց շահապետէ մը ցրուած յաւերժահարսերու խումբի մը պէս։

Վոժի լեռները միշտ դալարաւէտ, միշտ զով, միշտ զուարթ են, և այս պչրանքներին երդում ըրած են երբէք անզարդ չըլլալու։ Խրախտաբար վեր կ'ելնեն իրենց բնական գեղը, առատահով ըլլալով թէ հաճելի պիտի ըլլան իրենց խնկաբոյր եղեւիններովը, ջրվէժովը որ իրենց կուշտերուն վրայ կ'երգէ, արեւովը որ առաւօտ և իրիկուն հաճութեամբ կը տեղացուրուի իրենց փաղփաղուն կատարներուն վրայ, և զեփիւռովը որ մեղմիկ կը գգուէ իրենց ծաղկաւէտ թաւուտը։

Այս զմայլելի վայրերը մէկ ծայրէն միւսը ժամ եկայ։

Կառքն արգիլուած էր. հետի կը պտտէինք, և լեռնականները մեզ առաջնորդութիւն կ'ընէին։

ապահովիչ չէին ամենևին. Հայրը սաստիկ բարկանալով մեր ա-պաստարանը գտնելու կը ջանար, և մենք Լօրէնի մէջ ամենէն ա-ղէկ պահուած էինք քան թէ այլուր։ Անկից 'ի վեր հոն այն-պիսի երջանիկ խաղաղութեամբ և անթերի անզգուշութեամբ կ'ապ-րէինք որ մեր վրանը բոլորովին հասատանելու ամենափոքր դժկա-մակութիւն չզգայինք թերևս. Գէթ Էմմանուէլ մեր հիւրընկա-լին, կը հաստատէր այս բանս, և Գ. Տէ Բիլլէ անոր խոս-տումները անկասկած սեպելու փութաց.

Երկու ամիսէն ետք սաստիկ զարմացանք՝ արքունի հրամա-տականներ ընդունելով որք Տը Փերիւսաց ատեանը Միրպուրի բեր-դին կառավարիչ կ'անուանէին։

Գրեթէ բոլորովին պատուոյն պաշտօն մ'է այս որուն ամսա-կանն ութ հազար ֆրանքի կը հասնէր։

Տէպարօ իր եկամուտը ծախս ընելու չէր յաջողեր արդէն. Իմ խնդրանօք քանի մ'անգամ գումարներ յանձնած էր Բիէր Փուրիէին. ուստի իր պաշտօնին ամսականը նախապէս այս քահա-նային յանձնեց որ աղքատներուն կը բաժնէր այս ամեն գումար-ները՝ բարեգործին անունը անոնց իմացնելու հոգ տանելով։

Այն տարին ձմեռը ծայրայեղապէս խիստ էր, և մենք երբեք բերդէն դուրս ելնէինք, մեր ձմեռուան վրայ միշտ կ'օրհնէինք այն թշուառներէն որոնց չքաւորութեան օգնութիւն ըրած էինք.

Էմմանուէլ մեղմովին յաջողած կ'երևար.

Իր հոգւոյն վրայ խիստ յայտնի ազդեցութիւն մ'ունէր արդէն այն առաքինական և քրիստոնէական մթնոլորտն որու մէջ կ'ան-ցունէինք մեր օրերը. Երբեմն կիրակի օրեր հետս եկեղեցի կը գար, և եթէ աղօթք չէր ըներ, գէթ գայթակղութիւն չէր տար որ և է անձի։ Գեղեցիկ օրերը նորէն երևցան։

Շաբաթն անգամ մը Մաթէնգուրի անշուք վիճակը կ'երթայինք Բիէրին այցելութիւն ընելու համար.

Սքանչելի և սրտառուչ բան մ'էր տեսնել այն ակնածական-ները որուն ապացոյցը շարունակ կ'ընդունէր Բիէր իր վիճակին ժողովուրդէն։

Տէպարօ կ՚երևար թէ սաստիկ կ՚ախորժի բարի քաղաքային խօսակցութենէն, և այս եկեղեցականին ալ ու խոհեմութեան տակաւին կրօնական անձնաւորը խնդիր մը չէր խառնած։ Կ՚զգուշանար Էմմանուէլին համոզումները վիրաւորելէ՝ գիտնալով թէ օրինակն աւելի ազդեցութեամբ կը քարոզէ քան թէ խօսքը, և կարծելով թէ կը պատրաստուի նպաստաւոր պարագայի մը սպասել, որպէս զի ինքնին ուզէ իրմէն աւետարանին սերմը այն անձը որ կ՚ուզէր դարձի բերել։

Վերջապէս Տէպարօ՝ որ կարծես ներքին սաստիկ կռիւ մը կը դիմանար՝ օր մ՚ըսաւ անոր.

— Հայր իմ, բազմիցս նշմարեցիր անշուշտ թէ խիստ քիչ քրիստոնեայ եմ, և չեմ կրնար հասկնալ թէ ինչպէս իբր բարեկամ կը վարուիս այն մարդուն հետ որ չընդունիր քու ջերմեռանդութեամբ պաշտպանած կրօնական վարդապետութեանց և ոչ մին։

— Յիսուս, պատասխանեց Փօլիէ, միշտ կը հրամայէ սիրել մեր եղբայրները, և բացառութիւն չդներ այս սիրային օրէնքին։

— Բայց անկարելի է ընդունիլ ձեր վարդապետութեանց և ոչ մին, գոչեց Տէպարօ։ Կը խոստովանիմ թէ կրօնական զգացումները վեհ արդիւնք կ՚արտադրեն, և ասոր մէկ երևելի օրինակն ես դուն։ Դժբաղդաբար, եթէ ուզենք իրերու սկզբնապատճառը փնտռել, բանաւորութիւնը սաստիկ կը բարկանայ և կը զայրանայ։

— Իրաւ է, տղաս. և ահա ասոր համար Քրիստոս բանաւորութիւնը հաւատքին լծին ներքև դրաւ։

— Քրիստոս, Քրիստոս... Ինչպէս կրնամ հաւատալ անոր քանի որ Աստուծոյ չեմ հաւատար։

— Ու ինչու չես հաւատար, տղաս, հարցուց Բիէր ծայրայեղ հեզութեամբ մը։

— Բնաւ պիտի չընդունիմ ինչ որ անըմբռնելի է ինծի համար։

Դաշտավայրերուն մէջ առեղն էինք։

Բիէր ազնուութիւն ունէր մեզի մեր ուղղը տանելու պզտի ա-

բաշխուած մ'որ գիւղին պարտէզներուն շուրջը կը դառնար և քիչ մ'եւս Հոլանտա կը մտնէր։

Նախ ամենքին պատասխան չտուաւ։

Սակայն ծռելով դէպ 'ի նորածիլ ցորենները, ընտրեց բան մ'որուն հասկը կը կազմուէր, ակօսէն քաշեց հանեց զանի և Էմմանուէլին ցոյց տուաւ.

— Ինչպէս կը տեսնես, տղաս, բնութիւնը չեղանակաւ հետ համանիշ չէ, և' եթէ չես ուզեր անօթի մնալ՝ ստիպուած ես ընդունիլ ինչ որ անըմբռնելի է քեզի համար։

— Այո՛, անշուշտ, պատասխանեց Տէգարթ. բայց հաւատացողաց անուրանալի վկայութիւնը ունիմ։

— Այլ ուր, տղաս, բանաւորութեան անուրանալի վկայութիւնը ունիս։ Փիլիսոփայական ճշմարտութիւններու, ինչպէս նաև ամեն գիտութեանց համար հաստատուն օրէնքներ տուող բանականութիւնը։ Հաւատքն ունեցող էակն կը հետևցնես ինչ որ կը պարտաւորի՝ էութիւն ունենալ. զԱստուած չես տեսներ, բայց անոր գործքին կրնաս մեկնել։ Մտիկ ըրէ. ասկէ տասնեւհինգ կամ տասնեւութ տարի առաջ մի և նոյն խօսքը կ'ուղղէի քու հասակդ ունեցող երիտասարդի մ'որ եկած էր ինծ նամակներ բերելու Ֆլեշէն, ուր ճիզուիթներուն մէջ տակաւին կը գտնուէին Բօնթ-Ա-Մուսոնի համալսարանի դասերուն հետևելով քանի մը փողեմի ընկերները։ Այս երիտասարդը Գերմանիա կ'երթար, և անունն էր Ռընէ Տէգարթ։

— Կեցի՛ր, ըսաւ Էմմանուէլ, զինուորական մը չէ՞ր այն երիտասարդը։

— Այո՛, տղաս։

— Այս ուրեմն անցեալ տարի զինքը Միտօրժին տանը տեսայ որ Շաթըլէի մէջ հարուստ խորհրդական է և որ իր պաշտօնը երկրաչափական յօժարութեանց կը զոհէ, և որպէս կը հաստատեն հարիւր հազար թալերը ծախս ըրաւ ակնոցի ապակիներ և այրողական հայելիներ շինելու համար։ Միտօրժ խրատ կու տար Տէգարթին որ զինուորականութենէ քաշուի և գիտութեան

պարապի. բայց եթէ յիշողութիւնս չսխալիր, այս երիտասարդն ալ անհաւատ մ'էր:

— Կը սխալուէր, այո, պատասխանեց Փօրիէ: Դատարկ ու մթին կ'երեւային իրեն այն փիլիսոփայական վարդապետութիւններն որք այն ատեն արժէք ունէին: Իր հետը շատ խօսակցութիւններ ունեցայ, որոնց մէջ անոր խորհրդածութեանց բարձրութիւնն և անկեղծութեանց նրբութիւնը զիս զարմացմամբ ու միանգամայն երկիւղով կը համակէին: Կը խորհէի այն վաստակներուն վրայ որք այսպիսի վսեմ մտքի մը կ'սպասէին. կ'ուզէի չթաղուիլ անհաւատութիւնը որ իրեն կուսակից ըլլէ զան, և կը ջանայի անոր տարակոյսները փարատել՝ աղաչելով Աստուծոյ որ օգնէ ազդեցութեանս: Տէգարթին հետ միասին դաշտերուն մէջէն մինչեւ այս աբահետին վրայ ժուռ կը գայինք: Նորածին արծուոյն յուզուիլը կը տեսնէի. դպրոցական խոչընդոտներէն կը գրգռուէր և կը խորտակէր զանոնք՝ թեւոյն անգամ մը զարնելով: Գիշեր մը Տէգարթ՝ Ճակատը դէպ 'ի գետինը ծռած երկար ատեն խորհրդածելէն ետք յանկարծ վեր ըրաւ գլուխը, զուարթ դէմքով ինծ նայեցաւ և արտասանեց յետագայ խօսքը որ՝ ըստ իս՝ լոյսին իբր ամենէն անդրանիկ Ճառագայթը կը փողփողի:

— «Կը խորհիմ, ուրեմն եմ... եմ, ուրեմն Աստուած է»:

Տէսպարօ անսահմանելի սարսուռ մ'ունեցաւ:

— Իրաւունք ունիս, մրմռաց: Ճշմարտութիւնը միայն կրնայ այդ պայծառութիւնը ունենալ:

Կը հասնէինք աղբիւրի մը քով, ուրկէ պզտի ձորի մը խորէն բղխիլը կը տեսնէինք. այս ձորը մատաղայ անտառէ մը կ'սկսէր և Ճամբուն կողմէն երկայնութեամբը կը տարածուէր:

Բիէր Ֆուրիէ բնաւ աւելի հեռի չէր տաներ մեզ. մեր կառքը յետոյ քայլ անդին մեզ կ'սպասէր. երթաք բարեաւ կ'ըսէր մեզ, հինաւուրց կնձնիի մը տակը կը նստէր, և իր աղօթքը կ'ընէր եղէգներու մէջէն հոսող աղբիւրին շշուկը լսելով:

Բարի քահանան Էմմանուէլին ձեռքը բռնեց:

— Ինչպէս կը տեսնես, տղաս, արդէն Ըրնէ Տէգարթին առար-

կութիւնը կ՚ընդունիմ։ Անոր պէս դուն ալ այն ընտիրի՞ աղջիկներուն մին ես որք չեն կրնար երկար ատեն անհատատ ըլլալ։ Քաղցր փիլիսոփայութիւնն աղզակի պէտք ՚ի կրծքի կը տանի. և քանի մը կ՚ըսէ քեզ թէ շուտով պիտի հասնաս։

Էմմանուէլ Մաթենգուրի սուրբ քահանային այս խօսքին տպաւորութեան ներքև մնաց։

Սոյն միջոցէն սկսելով Տէպարօ ինքն իրեն դէմ առերի ժրաթեամբ և ամէն սոսկալի կերպով կռուեցաւ։ Տէ Բիլէ՞ և ես կը վախնայինք՝ տեսնելով անոր բնաւորութեան փոփոխութիւնը և այն սգալի ախտութիւնը որով համակուած կ՚երևար ան։ Շատ անգամ ամբողջ շաբաթներ կ՚անցունէր մենաստանի մը մէջ փակուելով, աստուածաբանութեան գիրքեր քննելով, եկեղեցւոյ հայրապետաց երկերը կարդալով, մերթ կատաղի հերքումներ գրելով և մերթ հաւանելով որ քրիստոնէական բանահիւսութեան հեղեղներ զեղուն իր գրչէն։

Օր մ՚անոր հանդարտութեամբ, խաղաղաւէտ ձայնով և ժպտուն բերանով մեր քով նախնական խորհրդոց վրայ յարգանօք խօսիլը կը տեսնէինք. Հետևեալ օրը վայրենաշունչ աչքով, հեգնալի շուրթերով Քրիստոսին և անոր վարդապետութեան դէմ հայհոյելը կը տեսնէինք։

Կրնայիր կարծել թէ չարին թագաւորն ու սուրբ հաւատալեաց հրեշտակն իրարու հետ կը կռուէին անոր սիրտը գրաւելու համար։

Այս բանդագուշանաց միջոցներուն Բիէր Դիւբիէին կը դիմէինք։ Երբեմն՝ Էմմանուէլ գրգռուելով կը մերժէր զան և կռնակը կը դարձնէր անոր. բայց առաքելոյն համբերութիւնն անսպառելի էր։

Մեզի միայն բարեւ ընելով իր քաղցր ու մխիթարիչ ձայնը կը յաւելուր.

— Թո՛ղ աղջիկս, թո՛ղ որ շնորհքը գործէ. պիտի յաղթանակէ այն։

Ես իսկ տարօրինակ կռիւներու բռնուած էի. ոչ միայն հրա-

պարապէս այլ նաև գաղանի կերպով, աշխարհութեան դատաստանին առջև պիտի ամչնայի խոստովանելու. Տէպարոյին հետ միասնութեանս ապօրինաւորութիւնը, և միւս կողմէն չէի համարձակեր սորվելու զան որ խորանին առջև նուիրագործէ մեր միութիւնը։

Եթէ գուշակէր այն հետևութիւնը զոր կը յուսայի իր զաւակէն, անշուշտ կը զայրանար յոյսիս դէմ, և ամեն բան կը կորսուէր։

Կը շարունակէի ապրիլ ոճրագործութեան մէջ, այլ սակայն անկեղծապէս կրօնաւորի կերպարան ունէի, և այս բանս ճշմարիտ շարչարանք կ'ըլլար ինծի համար։ Այս բանի կեղծաւորութիւնը սաստիկ կը վշտացնէր զիս. շատ անգամ կը պատրաստուէի չափէն աւելի կեղծաւոր ըլլալ մինչև սրբապղծութիւն չինչնելու համար։ Օրինակի աղագաւ Զատկի երկու շաբաթը՝ առանձնանալու պատրուակով Րէգօլէթի մէկ վանքին մէջ կը փակուէի, որ քաղաքէն դուրս և Սուրբ—Նիկողոսի դուռէն քիչ մը հեռի կը գտնուէր։ Երբ վանքէն կ'ելնէի, ամեն մարդ կը կարծէր թէ զատկական պարտքս կատարած եմ։

Մեր կեանքը շատ տրտմալի դարձած էր։

Արդէն տասնութ ամիսէ 'ի վեր բերդին մէջ կը բնակէինք, որ խոնաւ և բուական տխուր բնակարան մ'էր։

Պատուհաններս կը նայէին անտառ մը մարգագետնի վրայ, ուր՝ տասնուչորս հոգիէ բաղկացող պահապանք յարեւ պառկելու և ընթրիքէն կամ տրօլ* խաղալու կատարեալ ազատութիւն ունէին։

Գերմանիայէն դեռ նոր եկած այս վերջին խաղը մեր հրացանակիր պահապանաց մէջ այնպիսի յաջողութիւն մ'ունէր որ ջըղերուս սաստիկ դրդիռ կը տար, և շատ անգամ կ'ստիպուէի աղաչելու Գ. կառավարիչը որ լռեցնէ իր զինուորաց քրքիջները։

* Տեսակ մը Իտալիոյ խաղ որ զինուորաց մէջ սովորական է, և որուն մէջ խաղցողը մէկէն վրայ չ'ուներնայ նշանակած քայլի հետը մ'որ տրօլ կ'անուանէ։
Ծ. Թ.

Անրի դուքը մեռած ըլլալով Լօրէնի պալատը սուգը կը մտնէր։

Տը Բիլիէ՝ անոր կտակակատարներուն մին ընտրուած ըլլալով Նանսիէն չէր կրնար հեռանալ մինչև ՚ի նոր կարգադրութիւն։ Իսկ Հելվէտիացւոց գնդապետին մայրն ալ մայրաքաղաքը վերջին անգամ մ'ալ տեսնել ուզած էր։ Ուստի կարծես լքեալ էինք մենք։

Բազմիցս փափաքեցայ խրատ տալու Տէպարօյին որ կամ Իտալիա, կամ Անգլիա փախինք։

Սակայն օրինաւոր ամուսնութեան ըլլալու յոյսը տակաւին զիս կեցընելու զօրութիւնը ունեցաւ։

Չըսենք թէ պարոն և տիկին Պրասէն արդէն երկար ատենէ ՚ի վեր եկեր էին մեր քովը։ Անոնք էին լոկ մեր ծառաները, սիրով և հաւատարմութեամբ կը ծառայէին մեզ։

Թերէզա իր բնաւորութիւնը չփոխած էր, առաջուան պէս շատ զուարթ կ'երևար։ Զանձրոյթի օրերս միայն անոր շաղակրատութեամբը կ'անցունէի ժամանակս։

Էմմանուէլ իր ծանր ուսմունքը կը շարունակէր։ Մշտանջենաւոր ջանադրութեանը պատճառաւ շատ քիչ քաղցրութեամբ կը վարուէր հետս։ Անտարբերութիւն ցոյց կը տար ինձ, բայց անոր փոխարէն Մաթէնդուրի քահանան կատարելապէս կ'ընդունէր այն ատեն, ընդունիլը մօտալուտ դարձի պատուական գուշակ մը երեցաւ ինձ։

Այն ժամանակ շրջակաները համաճարակ սոսկալի հիւանդութիւն մ'երևան ելաւ և մինչև քաղաքը մտաւ։

Այս հիւանդութենէն բռնուող բազմաթիւ անձինք քսանուչորս ժամուան մէջ կը մեռնէին։ Զանգակները մեռելոց յատուկ հնչիւնով կը զարնէին շարունակ, և կարելի չէր դուրս ելնել առանց դագաղի մը հանդիպելու։

Անհնարին է նկարագրել այն գերմարդկային անձնուիրութիւնը, գործունեայ եռանդը և անսահման բարեգթութիւնը զոր Բիէր Փուրիէ այս սոսկալի պարագաներուն մէջ ցոյց տուաւ. ժանտախտն ամենէն շատ աղքատներուն կը յարձակէր։

Էմմանուէլ քաղաքին ունեւոր անձանց օրինակ տուաւ, և մեծա-գումար ստակներ յանձնեց առաքելոյն։ Այս կերպով կարելի ե-ղաւ մահէ ազատել ամբողջ ընտանիքներ որք ամենափոքր օգնու-թիւն պիտի չունենային իրենց վիճակին մէջ։

Աղերսեր էի տարփածուս որ համաճարակ հիւանդութեան մին-չև աներևութանալը Միրզուրէն հեռի բնակինք։ Բայց ըսաւ ինձ թէ մեր մեկնիլն աղետալի տպաւորութիւն մը պիտի պատճառէր և ժողովրդեան երկիւղը պիտի կրկնապատկէր։

Քանի մ'օրէն ետք այս վեհ զգացումին զոհն եղաւ Տէպարօ։

Առտու մը հիւանդութեան առաջին յարձակումները զգաց, և իրիկուն յետին շունչը տալու վիճակին հասաւ։

Կենացս մէջ երբէք պիտի չմոռնամ այն տեսարանը որ ձմեռ-ուան աղօտ օրուան մը յետին ճառագայթներուն ժամանակ տեղի ունեցաւ բերդին վերի սենեակներուն մէկին մէջ։

Այս տեսարանը նախ երեք դերասան ունեցաւ. Էմմանուէլ, որ անկողնի մը վրայ երկնցած էր առանց խելքը գլուխն ունենալու և որուն աչքը տխուր և երեսը գունաթափ էր. իր աննսեհ սիրու-հին որ յուսահատութեամբ կը հեծկլտար. և Բիէր Գուրիէ ոտ-քի վրայ կեցած և ձեռքը խաչելութիւն մը բռնած, և հիւանդին նայուածքին մէջ իմացականութեան փայլակ մը դիտելու զբաղե-լով որպէս զի մահուան և Աստուծոյ վրայ խօսի անոր հետ։

Բժիշկը վճռական ճգնաժամ մը ծանուցած էր։

Էմմանուէլ կը պարտաւորէր ուշաբերել կամ զգալի կերպով քրտնաքում մ'ունենալու և կամ ջղաձգային յետին շարժումներով գրաւուելու համար։

Շուտով հիւանդին կուրծքէն քանի մը հառաչանք ելաւ. իր երեսը տենդային գոյնով մ'ոգևորեցաւ. Տէպարօ յամրաբար ե-լաւ նստաւ անկողնին վրայ. քահանային նայեցաւ ակնայեւ և սար-սռալի ձայնով մը մրմռաց.

— Իրա՞ւ է ուրեմն թէ պիտի մեռնիմ։

— Ո՛հ, ո՛չ, ո՛չ, գոչեցի հեծկլտանքս շարունակելով։

— Տիկին, պէտք է որ դուրս ելնէք, ըսաւ ինձ քահանան յուզուած ձայնով։

— Թո՛ղ զայն՝ ըսաւ Տէպօրօ, կը պարտաւորիմ ամեն բան լսել նէ . . . : Կ՚ուզես զիս երկնից հետ հաշտեցնել . . . բայց անկարելի բան է ատի՛ :

— Ինչո՞ւ, որդեակ իմ :

— Վասն զի շատ յանցաւոր եմ . . . . Հայհոյեցի Աստուծոյ դէմ, հայհոյեցի իր Քրիստոսին դէմ, հայհոյեցի Կոյս Մարիամին և սրբոց դէմ :

— Ապա ուրեմն պէտք է որ թողութիւնը հայհոյութեան յաջորդէ :

— Բա՛ւ է, բա՛ւ է, հոգիներու կորստեան նպաստեցի անարժան կերպով մը . անառակութեան համար քնեցի և գայթակղութեան համար արթնցայ : Այս դժբաղդ պատանուհին զոր ահա հոս կը տեսնես, հայր իմ, նահատակներուս մին է . . . : Աստուծոյ առջև ամուսնացած չենք . . . քեզի խաբեցի, ամեն մարդ խաբեցի . Տը Գերիւսագ ասպետը չէ՛ առջևդ գտնուողը, այլ Տէպարօն է, անհաւատն Տէպարօ, անաստուածն Տէպարօ : Կը կրկնեմ թէ ներումն չիք ինծի համար . . . :

— Որդիս, Տիրոջ ողորմութիւնն անհուն է . զեղջն ամեն ոճիրները կը ջնջէ :

— Զեղջը, այո՛ . . . բայց վախը, ո՛չ . . . և այս սոսկալի վայրկենիս մէջ զգացածս վախն է :

Անդամներուս մէջ սարսուռ մը կը վազէր :

— Ո՛հ, սակայն կը հաւատամ . . . ըսաւ, բայց շատ ուշ է :

— Չէ՛, որդեակս, չէ՛, կ՚երդնում թէ ուշ չէ՛ . . . վստահ եղի՛ր խօսքիս :

Տէպարօյի բիբերէն արտօսր մ՚ընկաւ և ձեռնամած մրմռաց .

«Քու վճիռներ շատ արդար են, Աստուած իմ .
Հաճոյք կ՚զգաս մեզ քաւիչ միշտ լինելով :
Արդարութեանըդ դէմ զրկանք կը լինի
Թէ չարութեանցս իմ ներես բարութեամբդ» :

— Ա՜հ, ըսաւ քահանան, ներումն ընդունիլդ կ՚ապահովեմ . . . : Աչերդ արտասուքով կը լեցուին, և արտասուքը զղջում է :

— Բա՛, թո՛ղ տուէք, սատանային չափ արժէք չունի ան։

— Եւ կը պնդեն թէ հիւա՞նդ է այս սիրելի բարեկամը։ Տեսնե՛նք սա երակին զարկը․․․ կրո՛ղ․ սոսկալի կերպով․․․ բանաստեղծական է։ Հոգ չէ․ տապնապը օգտակար եղաւ։ Քեզի համար երաշխաւո՛ր կ՚ըլլամ։

Դժուարին է նկարագրել Բիէր Ֆուրիէին և իմ շփոթումս, երբ այս հանդիսաւոր վայրկեանին մէջ սենեկին այսպէս լեցուիլը տեսանք։

Եկողներն էին նախ պզտի Գիյեէ բժիշկն որ Տէպարօյին երակին զարկը քննեց։

Եսեւս դառնալով Թէօֆիլը ճանչեցի․ և մինչդեռ տեսակ մը երկիւղով իր տգեղ երեսը կը նայէի, ցած ձայնով ականջիս ըսուած յետագայ խօսքը լսեցի․

— Մի՛շտ զմայլելի․․․։ Մասնաւորապէս քեզի համար ըրի ճամբորդութիւնս, Մարիօ՛ն։ Տեսնելով թէ ինձ անկարելի էր զարշելիիդ սառնակոյտի մը պէս հոս ընկնիլը արդիլել, ուզեցի ներկայութեամբս փոխարինութիւն մը բերել քեզ։ Անկից ՚ի զատ չէի կրնար աւելի երկար ատեն առանց քեզի տեսնելու կենալ․․․։ Զանձրոյթէն կը դիրնայի։

Ընթերցողն արդէն գուշակեց անշուշտ թէ Պասօմբիէրն էր այսպէս խօսողը։ Միւս երկուքին պէս իսկոյն գնաց Էմմանուէլին ձեռքը սեղմելու։

Տէպարօ նախ մոլորագին կերպով մ՚անոնց նայեցաւ հոգեպէս, և ետքը տագնապով նուաղեցաւ։

— Մի՛ վախնար, գեղանի՛ տիկին․․․ ոչինչ բան է նուաղիլը, ըսաւ Գիյեէ՝ ահարեկ աղաղակիս իբր պատասխան․ նորէն կը հաւատամ քեզ թէ հիւանդութիւնը կը դադրի վտանգաւոր ըլլալէ։ . . . . . . .

— Կը լսէ՞ք, պարո՛ն, ըսաւ Թէօֆիլ՝ Բիէր Ֆուրիէյին․ մարմնոյ բժշկի մը միայն պէտք ունինք․․․ հոգիին ալ ձեր ծառայութիւնը չպահանջեր։ Հա՛, հա՛, աշկերտս շատ աղէկ կարգի դնելու վրայ էիք․ բայց ահա ճիշդ ժամանակին հասայ ընկղմիլը ար-

գիլելու համար․․․։ Ծառայ եմ, պարոն․․․։ Վեղարը չենք սիրեր։

— Թշուառական, գոչեց Թէօֆիլին, ուսկէ՞ կ'առնուս այդպիսի յանդգնութիւն մը։

Այս սաստիկ յանդիմանութենէս զարհուրեցաւ, և թոթովելով պատասխանեց․

— Բայց, տիկին, կը թուի ինձ թէ կարծիքներս գիտէք արդէն։

— Գիտե՛մ որ խայտառա՛կ մ'ես․․․։ Տէպարօ պիտի որոշէ թէ ո՛վ պիտի պարտաւորի դուրս ելնել այս տունէն, դո՛ւն թէ ես։ Առ այժմ, կեցի՛ր, հա՛յր սուրբ, ըսի սրբակրօն քահանային․ Աստուած չպարտաւորիր քաշուիլ Սատանային առջև։

— Ա՛ղջիկս, պատասխանեց Բիէր, շատ աշխուժով կը պաշտպանես զիս։ Քրիստոսի ծառան նախատինքին համբերել կը սորվի իր աստուածային Տէրէն, թէև տկարին կարելի է թշնամանել զիս, պաշտօնիս պարտաւորութիւնը մինչև վերջը պիտի կատարեմ։

Տէպարօ դեռ նուաղած կը մնար։

Բիէր Գուրբէ անկողնոյն մօտեցաւ, իր աջ թևը հիւանդին ճակատին վերև վերցուց, և արտաբերեց այն երկնային խօսքերը որք մարդս իր մեղքէն կ'ազատեն և ներումի կ'արժանացնեն։

Քահանան այս պարտքը կատարելէն ետք դարձաւ դէպ այն աղջկան որ այնքան նախատական խօսքեր ըսած էր իրեն․

— Ո՛րդեակ, երկրիս և երկնից ամենէն նուիրական իրերուն անուամբը կ'աղերսեմ քեզի որ այս հոգին նորէն կորստեան մատնելու չաշխատիս․ ինքնին և անկեղծապէս Աստուծոյ հետ հաշտուեցաւ այն․․․։ Խօսք տո՛ւր ինձ թէ ստութեան ճամբաները նորէն մտնելու հրաւէր չպիտի կարդաս անոր։

— Հա՛, հա՛, բայց անշո՛ւշտ, կրնաս վստահ ըլլալ այդ մասին, գոչեց Թէօֆիլ՝ քահ քահ ձգելով։

Բիէր Գուրբէ ցաւագին կերպով ձեռները միացուց, և երկնից նայեցաւ․

— Տէ՛ր․ Տէ՛ր․ մրմռաց, պէտք Թաղո՛ւս որ գործքդ չնչուէ։

Քահանան դէպ 'ի դուռը կ՚ուղղէր։

Ծունկի վրայ եկայ իր օրհնութիւնը ուզելու համար․ աչքը լեցուած օրհնեց զիս, և ըսաւ․

— Խե՛ղճ կին, վաղը պիտի գամ գիտնալու համար թէ զղջը անկեղծակա՞ն է, և թէ կը պարտաւորէ՞մ խորանին արքայագործութեամբը օրինաւորել աղօթինաւոր միութիւն մը։

Բա՛րէ, Բրէք Գուրիէ իրաք եկաւ հեռանալու օրը, սակայն թող չտուեցաւ իրեն որ բերդը մտնէ։

Թէօֆիլ ինծի դէմ յաղթող հանդիսացաւ։

— Մարիօ՛ն, ըսաւ ինծ Տէպարօ, բարեկամներուս լաւագոյնը նախատեցիր, այլ սակայն գիտէիր թէ որքան ցաւ պիտի պատճառէր ինծ այդպիսի ընթացք մը։ Հիւանդութիւնը միայն և գործարաններուս ախպարացումը թելադրեցին ինծ երէկ գիշերուան սարսափելի խօսքերը․․․ սաստիկ կը ցաւիմ այն խօսքերը ըսած ըլլալուս, և կ՚ամչնամ։ Հիմակ իմաց տուեցաւ ինծ թէ հայրս մահուանս հիւանդութենէ մը բռնուած է․ ներկայութիւնս միայն կրնայ օգնել անոր իր բոյժը գտնելու։ Ինչպէս կը հաստատէ Գիյեէ, մինչև երեք օր կրնամ ճամբայ ելնել, և այս իրիկունէն իսկ հրաժարականս պիտի ղրկեմ Լօրէնի դուքսին։ Ցամբաքար ճամբորդելով պիտի երթամ Բարիզ։ Սակայն, սիրելի՛դ իմ, հետս դէպ 'ի մայրաքաղաքն ուղղուիլդ անկարելի է․․․։ Բացարձակապէս պէտք է որ իրարմէ զատուած ձևանանք, եթէ ոչ հօրս ժառանգութենէն զրկուելու վտանգին մէջը կ՚ըլլնկնիմ։ Միւս կողմէն այս քաղաքին մէջ առելի երկար ատեն բնակիլն անկարելի կը թուի ինծ, վասն զի մեր գաղտնիքը շուտով երևան պիտի ելնէ։ Ուստի այսօրուանէն իսկ պիտի մեկնիս և Իտալիա պիտի երթաս Ֆրանշ–Գօնթէէն, Հէլվէտիայէն և Լօմպարտիայ–Վենետիկյ Թագաւորութեան երկիրներէն անցնելով․ Ֆիօրենցայի մէջ ինծ պիտի սպասես, ուր անյապաղ պիտի գամ քեզի գտնելու երբ ազատութիւն ունենամ գալու․․․։ Հիմա, պագ զիս, Մարիօն․ Մոռցի՛ր այդ ամէն կրօնական նախատութիւնները և սնոտիական

ծիծաղելի նպատակները ։ Հաւատարիմ մնանք մեր ուրախալի սկըզ-
բանց , մեր ազատ տարփանաց ։

Շուարեր մնացեր էի ահաբեկ ։

Սրամտութիւնը կը խեղդէր զիս ։ Բերանս պատասխանելու բառ մը չգտաւ ամենեւին , և այս սոսկալի ու միանգամայն անակնկալ փոփոխութեան դէմ արտասուքով բողոքելը բաւական սեպեցի ։

— Գասօմբիէր , ըսաւ ինծ Էմմանուէլ , խօսք տուաւ ինծ քեզ ընկերանալու մինչև Ըռմիրմօն ուսկէ քեզի Վըրդիւնի ճամբան պիտի գնէ ։ Այս կերպով քիչ մը զարտուղած պիտի ըլլաս թէև , բայց գէթ ճամբորդութեան սկզբնաւորութեան համար սիրուն ընկերութիւն մը պիտի ունենաս ։

— Չեմ ուզեր այդ ընկերութիւնը , գոչեցի ․ ըսա իս Պ. Տը Գասօմբիէր Թէօֆիլին պէս արհամարհութեան արժանի է ։

— Եւ ինչո՞ւ համար , Մարիօ՛ն ։

— Մարդկային դատումէ վախ ունենալն՝ որ վատութիւններու վատութիւնն է հայր կեցուց զինքը երբ պատուական բարեկամդ իւր նախատինք կը թափէր այն սրբակրօն քահանային վրայ զոր դեռ քիչ մ'առաջ անկեղծապէս կը յարգէիր ։

Տէպարօ շփոթեցաւ ։

Տեսաւ որ սրամտութիւնս իրեն դէմ ալ կը յարձակէր , և զնդապետին անունը պատրուակի մը տեղ կը ծառայէր նոյն միջոցին ։

— Կարծես թէ իրմէ բոլորովին զատուիլ կ'ուզես ․ այս է միտքդ ։

Արտասուքս նորէն հոսեցաւ ։ Բա՛յց , պէտք էր որ լռէի և լայի ։

Տէպարօ իմացուց ինծ թէ մեր ծառաները հետս պիտի գան ։ Բաւական ցուրտ կերպով բարի ճամբորդութիւն մաղթեց ինծ ․ ապա մեկնելս գացի Թերէզային հետ ճամբու պատրաստութեանց զբաղելու համար ։

Գասօմբիէր ջանք ըրաւ զիս տեսնելու , բայց անողոքելի մնացի և դուռս բանալ չտուի ։

Վէօրին կառք կը մնէի ։

Մեկնելուս լուրը Միրգուրի մէջ տարածուած էր ։ Այն ատեն

գժբաղդներն՝ որոնց չքաւորութեան օգնութիւն ըրեր էինք՝ կառքիս բոլորտիքը կը լային և ինծի համար բարի ճամբորդութեան հազարումէկ մաղթանք կ՚ընէին ։

Խե՜ղճ պատուական մարդեր․ անշուշտ չիմացան իրենց բարեգործուհիին ճշմարիտ անունը ։ Կը փափաքիմ, որ այս գիրքն անոնց ձեռքը չանցնի բնաւ որպէս զի աշխարհիս վրայ գէթ գտնուի տեղ մ՚ուր յիշատակս գայթակղութեան և խայտառակութեան գաղափարներու չյարի ։

Թերէզան հետս կառքին մէջն էր ։ Իսկ Էրիկը մուշտակներով բոլորովին ծածկուած կը դարէր կառքին ետևի կողման բազմոցին վրայ ։

Ճամբուս վրայ Հելվետիացիներուն գնդապետին հանդիպելու վախովը չուզեցի անցնիլ ոչ Էբինալէն և ոչ Րըմիրըմօնէն ։ Անոր դէմ բարկութիւնս անհիմն էր բոլորովին․ բայց այն ատեն միտքիս տրամադրութիւնը պիտի չհամաձայնէր անոր մշտնջենական զուարթութեան հետ ։ Պասօմբիէր անշուշտ պիտի ծաղրէր ամուսնական յոյսերս , և ես այս մասին կատակելու յօժարութիւն չունէի տակաւին ։

Ուստի չուզելով անհամ և անշնորհ երևալ անոր , լաւագոյն կը սեպէի ամբաստանուիլ իբր քմածին կամքիս հետևող ։

Ուղղակի Պէնի (Բաղանեաց) պզտի քաղաքը հասայ , որ իր հանքային ջուրերովը երևելի է ։ Անկից քանի մը մղոն անդին անցնելով Ֆրանշ-Գօնթէյի մէջ գտնուեցայ ։

Ինչպէս որ կարելի եղաւ տեսնել , յաւիտենապէս տրտմութիւն տածող բնաւորութեան տէր չէի ։ Շուտով սպասուհիս զուարճացուց զիս իր ուրախալի հանճարաբանութիւններովը և այլանդակ գիտողութիւններովը զոր շարունակ կը նետէր մեր խօսակցութեանց մէջ ։

Քաղաք մը կ՚իջնէինք , և ահա Թերէզա իսկոյն կը պնդէր թէ տեղւոյն բոլոր արական ժողովուրդը միահամուռ կը սիրահարէր ինծի ։ Իր այս խօսքը կ՚ապացուցանէր անթիւ սիրագիրներ բերելով , որք կանաչ մետաքսով կնքուած էին․ երկդիմի՛ գոյն , որ բարձր ձայնով Յոյս , և կամաց ձայնով Իրութիւն կը նշանակէ ։

Վըզըւլի մէջ գրաւոր կերպով շքեղ առաջարկութիւններ ընդունեցայ անձնեայ ձիավաճառէ մ'որ երկու միլիոնի տէր կը կարծուէր։

Զգացման ծաղկաւէտ դաշտերուն մէջ հեռու արշաւելու անզուսպ փափաք կը յայտնէր ան։

Ծիփի մէջ՝ որ բաւական կարեւոր քերդաքաղաք մ'է եւ ուր քսան ու չորս ժամ մնացի կառքիս նորոգումներ ընել տալու պատճառաւ՝ Լըպըրէօն անունով անձ մ'որ զանձային գործակատար մ'էր՝ հետզհետէ երեք նամակ ղրկեց ինձ։

Պատասխան չընդունելուն համար յուսահատելով մեր պանդոկը մտաւ եւ ոտքս ընկաւ աղերսելով։

Շատ շնորհալի տղայ մ'էր այս Լըպըրէօնը։ Երդում կ'ընէր զիս իրեն կին ընելու։ Խնդալով պատասխանեցի թէ կը հաւանէի բայց երբ վաթսնամեայ հասակս մտնէի։ Երդում ըրաւ ինձ սպասելու, եւ ահա այն ատեն կարծեցի թէ քիչ մը խենդ էր ան։

Բայց երբ Պըզանսօն հասանք, դեռ ուրիշ իրողութիւններ տեղի ունեցան։

Անմիջապէս աշկերտներու երամ մ'ընկաւ ետեւս։ Անոնց յանդգնութիւնը վտանգաւոր կը դառնար։ Իսկոյն ճամբայ պիտի ելնէի նորէն եթէ հարկ եղած չըլլար անցագիրերս վաւերել տալ այնպիսի քաղաքի մը մէջ որ տակաւին Ֆրանսայինը չէր։

Այս խլնուածներուն շատը ձիով հետս եկան հետեւեալ օրը, եւ անոնց մէկ քանին մինչեւ Բօնթարլիէ գալու յանդգնութիւնը ունեցան։

Ըսել կ'ուզեմ թէ սիրագիրներն ահարկու կերպով մը կը տեղային։

Յիրաւի շատ զբաղում մ'էր անոնց ընթերցումը, ուստի որոշեցի ալ չկարդալ զանոնք մինչեւ 'ի նոր կարգադրութիւն։ Սակայն 'ի զուր անախորժ չէր ինձ չբացուած պահել քանի մը սիրագիրեր որպէս զի ետքէն Տէպարզյին տայի զանոնք եւ ցուցնէի իրեն թէ մինչեւ ուր աստիճան կը տանէի հաւատարմութիւնը եւ առաքինութիւնը։

Պզտի արկղիկի մը մէջ զգուշութեամբ պահեցի սիրատոմսակները։ Երբ Ժընէվ հասանք, արկղիկը գողցուեցաւ։

Թերեզային յիմարական գաղափարներուն մէջ այլանդակութեան մօտ բան մ'էր։ Կը կարծէր մէ թէ Լօրէնի սահմաններէն՝ ի վեր ուղեկառք մը մերինին ետեւէն կը գար։ Երբոք բաղդեցա յոյց տուաւ ինծի կառք մ'որ քառորդ մը մղոնի չափ հեռուէն և մեր ետեւէն կը գար, բայց ոչինչ կը հաստատէր թէ առջի որուն կառքը հետեւեալ օրուընէն ըլլար։ Վերջապէս ըսի սպասուհիիս թէ երազ կը տեսնէ և թէ ալ այս բանին խօսքը չընէ ինծ։

Տէպարօ իր ապաքինութեան և Բարիզի ուղեւորութեան հարկաւոր եղած ժամանակը հաշիւ ըրած ըլլալով որոշեր էր որ ինծ բարի Ճամբորդութիւն մաղթելէն ամիս մը չափ ետք, այսինքն Սարտենիոյ երկիրները հասած միջոցիս լուր առնամ իրմէն։

Մարտի 2ին Ժընէվ հասնելով, և նկատելով թէ 15ին Սաւթի մէջ միայն նամակ պիտի ընդունէի, որոշեցի ութ կամ տասն օր հանգչիլ սա աշխին քաղաքին մէջ Ալպեան լեռներուն կիրճերէն անցնելու որոշում ընելէս առաջ. ուրիշ պատճառ մ'ալ կար այսպէս վարուելու. այսինքն կ'ըսուէր թէ երկելի տեղակալեա մ'այն միջոցին Շամոնիի ձորին մէջ Ճամբորդները կողոպտելու զբաղած էր սաստիկ։

Թերեզա՝ խոհեմութիւն ընելու երթալով լճին եզերքուն վերայ պզտի տուն մը գտաւ որուն մէջ ամբողջ շաբաթ մ'անցուցի անհնարին նայելով անոր կապուտակ ջուրերուն, շրջակայ պարտէզի ծրից և Ալպեան լեռներուն հսկայաձեւ սարերուն, նա մանաւանդ Մոն-Պլանին, որուն հեռուստ հորիզոնին խորքէն բարձրանալը կը տեսնուէր։

Սիրահարները վերջապէս կ'որոշէին զիս հանգիստ թողուլ։

Երբ Ժընէվի մէջ էինք, միայն մէկ սիրահար ունի։ Այս գիրը ըսէն նետուեցաւ ինծ ճիշդ այն օրն որուն հետեւող օրը Ճամբայ պիտի ելնէինք Սօսթ երթալու համար. պատահեցաւ այս իրողութիւնը։

Օդին բարեխառնութիւնը բաւական կը մեղմուէր։ Երբեմն պատուհանս կը բանայի բնանկարներու գեղեցկութիւնը վայելելու հա-

մար ։ Դէս մը թարթափումով, կէս մ՚ալ մտախոհութեամբ թէօրպս կ՚առնէի, և քաղցրահնչիւն աղիքին վրայ մատներուս վազելուն կը հետևէի ։ Այն գիշեր թէօրպիս աղիքը քերելով կ՚երգէի մերթ լճին կոհակներուն և մերթ երկինքը վազող ամպերուն նայելով. զմայլումով կը լսէի որ արձագանքը ձայնիս ամեն ելևէջները և յստակ եղանակները կը կրկնէր. այս նուագերգութեանս միջացին յանկարծ թիերու թեթև խշշտոց մը լսեցի, և վերյիշեալ նա-ւակը պատուհանիս վրան գրուեցաւ. ձկնորսի հագուստ ունեցող անձ մը ։

Սակայն խիստ աղուորապէս բարևեց զիս մարդն և աներևոյթ եղաւ ։

Այս նոր տոմսակն ալ միւսներուն պէս արկղիկը նետուեցաւ ։ Եւ որովհետև կը տեսնէի որ աղէկ լեցուած էր այն, որոշեցի հետևեալ օրն այս սիրագիրներուն մէկ քանին կարդալ. Ճամբուն վրայ ձանձրոյթս փարատելու միջոց մ՚էր այս, նաև տեղ պատրաստել այն սիրագիրներուն որք դեռ կրնային գալ ինծի ։

Ընդհանրապէս կը կարծուէր թէ աւազակներուն խումբը Վոյի նահանգին զինուորներէն հալածուելով Սուայի կողմերն ապաւինելու գացած է ։

Ուստի այսուհետև ճամբաները վախ չկար. գէթ այսպէս հաւատացուցին ինծի ։

Ծովեզերէն ճամբայ ելայ առտու մ՚ալ շատ ցուրտ կար. հովը գիշերը փոխուած էր և Մօն-Պլան լեռէն կը փչէր ։

Մեր ուղեկառքը նախ լճին եզերքէն գնաց ։

Հիւսիսի թռչուններու հոյլ մը ջուրերուն մակերևոյթին վրայէն կը թռչէր. ծովային արագիլը ծանրութեամբ և լռութեամբ մենակ ժայռի մը կատարին իր երկայն թաթերուն վրայ կը կենար, մինչդեռ վայրենի սագերու երամ մ՚ամպերու մէջ իրենց բնական ազատութեան գիծը կ՚աւրէին և եղէգներու մէջ դադար մը կ՚առնէին ։

Ուղեկառքին դուռէն գլուխս դուրս հանեցի տեսնելու համար այս փետրաւոր ճամբորդները, որք գեղեցիկ օրերուն մերձաւորութեան ժամանակ իրենց հեռաւոր հայրենիքը կը դառնային ։

Բայց քամին սառնաշունչ էր, և խեղճն ներս քաշուեցաւ, պատուիրելով Կրասէնին որ կառապանին ժամադրութիւնը յղղէ և առաջնորդներուն առատաձեռնութեամբ վարձք տայ։

Այս հրամաններն տալէն ետք վարդագոյն սնդուսէ մաշկեակ մ'առի կռնակս, ձեռներս կակուղ գրպաններուն մէջ մխեցի և բարձերուն վրայ կծկուեցայ եղեամներէն բռնուած և զարմացած արտայայտ մը այս դէմքս ծռելով վխտաբար։

— Տէ՛ս նայիմ, Թերէ՛զա, նամակներուս մէկ քանին կարդա՛ ինծի։

Բայց Թերէզա չպատասխանեց։

Իր վրայ գիզուած անթիւ հանդերձեղէնաց ներքև քնացած էր ան, և ճակատին բոլորտիքը փաթոյթի ձևով շուկուած չգիտեմ ինչ գիպակի կտոր մը կար որ բաւական ծիծաղաշարժ կերպարանք մը կու տար իրեն. տեսնողը թերևս կարծէր թէ դատարական վիճակին անցնող ծերուկ մը, կամ Գէնդրոններուս փողոցէն ազատուած զարդավաճառ կին մ'է ան։ Սակայն Թերէզա անխռով կը քնանար, և մեղք սեպեցի զինքը արթնցնելը։

Բացի արկղիկը, և գիպուածին ձեռքիս տակը բերած առաջին թուղթը առի։ Պարզապէս և սովորական կերպով կնքուած համեստ պահարան մ'էր այս թուղթը, որուն մէջ բարակ և վայելուչ գիրով տողուած յետագայ խօսքը գտայ.

«Կը կարծես, գեղանիդ իմ, թէ Տէպարօ միշտ կը սիրէ քեզի»։

Նամակին թուականը Բոնթարլիէ-էն դրուած էր։

Այս վերջին քաղքին մէջ մէկն անշուշտ զիս ճանչած ըլլալով հաճելի բան մը համարած պիտի ըլլայ այս այլանդակ խօսքով հետաքրքրութիւնս գրգռելը։ Մի և նոյն գիրով ուրիշ տոմսակ մը նշմարեցի, և արագօրէն բացի։

Մի և նոյն լակոնական ոճով գրուած էր այս ալ.

«Չէ՛, սիրելիդ իմ, ա՛լ չսիրեր քեզի, և չսիրելուն պատճառը շուտ պիտի ըսեմ քեզ»։

Արկղիկը ծունկերուս վրայ պարպեցի, և տենդային յուզումով մ'երրորդ նամակ մը փնտռեցի, բայց չգտայ։

Ո՞վ կրնայ ըլլալ այս տարօրինակ նամակագիրը։ Այս տոմսակ-

ներուն մէկին Թուականը Բոնթարըլեէյին և միւսինն ալ Սէնթ-Գլօ-ւէն գրուած էր. Սէնթ-Գլօ առջինէն տասնութ մղոն հեռի քաղաք մ'էր, ուսկէ անցեր էինք Ժընէվ չհասած։

Ուրեմն ետեւէս կը գար նամակագիրը։ Մարդ մ'էր ան. կի՞ն մ'էր։

Ամենեւին բան մը չէի հասկնար այս արկածէն։

Յանկարծ Թեքէզային ակնարկած ուղեկառքը յիշեցի։ Իսկոյն վար ըսելով կառքին ապակիները, ծռեցայ մեր ետեւի ճամբուն վրան նայելու համար։

Իրօք կառք մը կը գար մերինին ետեւէն, և այս անգամ Թուեցաւ ինծի թէ եկողն էր ճիշդ այն կառքը զոր արդէն նշմարեր էի։ Բայց այն ատեն այս կառքն ալ մեզի հետ ամբողջ ութ օր կեցած էր Ժընէվի մէջ։ Մեր մեկնելու օրը և ժամը ճշդապէս գիտէին ուրեմն։

- Այս իրողութիւնը բաւական հանելուկի մը գործուածքը կ'առնուր։

- Որոշեցի սպասել որ խորհրդաւոր ուղեկառքը յարմար գտնէ իր տէրը մեզ ցոյց տալ, և արկղիկէն ուրիշ բազմաթիւ նամակներ առնելով բացի։

Անոնց մէջ շատ զուարճալիներ կային։

Մենախուցի դիւանագէտ մը կը ծանուցանէր թէ Մօնաքօյի իշխանին համար տարփուհի մը գտնելու պաշտօն ունի։

«Արդէն, կ'ըսէր ինծի այս դիւանագէտը, Իտալիա, Բրուսիա և Ֆրանսայի մէկ մասը ժուռ եկայ. այլ և ոչ մէկ տեղ քու աչերուդ պէս գեղեցիկ աչերու հանդիպեցայ։ Եթէ կ'ուզես պայմաններու վրայ խօսիլ, պատրաստ եմ հրամանացդ»։

Եւ ծէքսի մէջ իր ուր բնակիլը կ'իմացնէր։

Հելվետիոյ սահմանագլուխին վրայ կանգնուած քաղաքի մը մէջ ուրիշ խիստ պատուաւոր յաղթահար մ'ևս ունեցեր էի։

Ալեքսի Բեթրօզաւօք ստորագրող ռուս պօյար մը կը յայտնէր ինծի թէ հիւսիսի ձիւներն իր սիրտը սիրոյ վառարան մ'ըլլալու չէին արգիլեր։

— Վա՜ղը, թոթովեցի, կը հասկնամ . . . այսինքն այսօր է ։

— Անտուա՛ն իմ, բայց պէտք է ես դառնալ ։

Եւ իսկոյն կառքին դէպ 'ի դռնակը նետուելով՝ ուժգնապէս գոչեց .

— Ե՛ս դառնամ, տիկինը կը կարծէ՛ ես դառնալ . . . . Ցի-տուն լուինձի, եթէ մինչև մէկ ժամ Փրընէլ մտնենք ։

Բայց այն պահուն որ կառապանը կը պատրաստէր իր դար-ձնելու իր ձիերը, Հրամայական ձայն մը պատուիրեց իրեն որ կեցած տեղը մնայ, և քանի հրացան նշան առին զինքը ։



## Ե

Վայրկեան մ'ի վեր մեր կառքը լեռներուն կիրճերը մտած էր ։ Ճամբուն երկու կողմէ եղևիններու մթին անտառ մը կար, և հա-րիւր ոտքի չափ խորունկ ձորի մը մէջ կարկաչելով ընթացող ջրվէ-ժի մը ժխորն անլսելի կը թողուր մեր աղաղակները ։ Քաջասեաւ բարձր ձիու մը վրայ հեծած բարձրահասակ մարդ մը կառքին դռնակին մօտեցաւ և շատ ազնուութեամբ բարև տուաւ ինձ ։

Ճանչեցի այս ձիաւորը . Նաւակին կեղծ ձկնորսն էր, բայց հի-մակ շատ աւելի շքեղ հագուստ մ'ունէր ։

Մարկ Խւնթերըվալ ինքն էր, այն ահարկու աւազակը, զոր հել-վետիական նահանգներուն բոլոր ոստիկանութիւնն երկու տարիէ 'ի վեր կը հալածէր ընդունայն ։

Գորշագոյն թաղիք փեղոյր մը դրուած էր որուն եզերքուն ներ-քև իր սև մազերը կ'իջնէին խոպոպիքի ձևով ։ Արքայական ըսուած մօրուք մը, որ աճելով երկնցած էր, տանթելայէ վզնոցին վրայ

կ'ընկնէր ծայրանալով։ Ձեռները թաթաղած ունէին, և ապակեա-կան կօշիկները շատ ուշադրութեամբ ներկուած էին։

Եթէ իր մեթրիին վրայէն սամուրենի հաստկեկ վիչուրա (ան-տակ մը վերարկու) մ'առած չըլլար, և եթէ նաև երկձիգ ասպանձա-նակներ բանող կաշիէ դօտի մը չունենար, Խունթերվալ կրնար ա-ռաւելութեամբ Լուվրի պարահանդիսի մը ներկայ գանուիլ։

Երկու առաջակ իրենց գլխաւորին մէկ նշանին վրայ մեր կառ-քին պատուհանը վար բերին։ Ուրիշ չորս աւազակներ եւ մօտե-ցան տեսակ մը պատգարակով որ այծեամներու մորթերով շատ աղէկ զարդարուած էր։

Մարկ Խունթերվալ քաղաքավարութեամբ հրաւիրեց մեզի վար իջնելու։

— Կը տեսնէք որ ճշդապահ եմ ժամադրութեան մասին, ըսաւ ինձ, և շնորհակալ եմ ձեզմէ ինծի դէմ անվստահութիւն ցոյց չտալուդ համար։ Ձեր կառապանն է միայն այս զինական ցոյցին պատճառը. չէի ուզեր որ զիս ձեր վրայ պզանչանալէ զրկէ։

— Բայց վերջապէս ինչ կը պահանջէք, պարոն, հարցուցի վախէս բոլորովին դողալով։

— Աստուած չընէ որ ձեզմէ բան մը պահանջեմ, գեղանի՜ տի-կին։ Միայն կ'աղաչեմ ձեզի որ հաճիք կարճատև այցելութիւն մ'ընել ինծ իմ կալուածներուս մէջ։ Սակայն ձեզի հոն տանող ճամբայէն չկրնար անցնիլ կառքը, ուստի փոխադրութեան ուրիշ միջոց մը գանելու հոգ տարի։

Եւ ցոյց կը տար պատգարակը որ պատրաստ էր մեզի ընդու-նելու։

— Պարոն, ըսի քիչ մը սիրտ առնելով իր ընտիր քաղաքա-վարութենէն, աղաչանքդ զինուորաց հրացաններուն վրայ շատ լաւ կռթնած ըլլալով... չեմ համարձակիր մերժել....։

— Վար առէք հրացանները, գոչեց սարսափելի ձայնով մը, և աշխատինք հաստատութեամբ կոխելով իջնելու ձորին զառի-վայրէն։

Մարկ Խունթերվալ հազիւ վերջ կը տար այս խօսքին, և աչքս

մտրակի արագ շառաչիւն մը լսուեցաւ, որուն հետ կը լսուէր նաև եռակի արագութեամբ արշաւող ուժեղ կառաձիերու ոտնաձայնը։

Մեր ետևէն եկող խորհրդաւոր կառքը նետի մ'արագութեամբ կը հասնէր։

Ցանկարծ կանգ առաւ ուր որ տեղի ունէր մեր արկածը։

Կառքին մէջ գտնուող մարդն ոտքովն ուժգնակի զարնելով բացաւ իր կառքին դռնակը, ճամբուն վրայ ցատկեց, սուրը քաշեց, և սատանայի պէս աւազակներուն վրայ յարձակեցաւ՝ գոչելով.

— Մի՛ հաւանիր տարուելու, Մարիօ՛ն, պինդ կեցի՛ր. այս ամեն շուներուն պատիժը պիտի տամ....։ Մեռի՛ք, թշուառականներ, մեռի՛ք....։

Պասսոմբիէրն էր այս յարձակողը։

Թէև վայրկենէ մ'ի վեր վախով համակուած էի, բայց և այնպէս զարմացման աղաղակ մ'արձակեցի՝ չկրնալով համբերել։

— Այս մարդը կը ճանչէ՞ք, հարցուց Մարկ Խնթերվալ։

— Ա՛խ, թշուա՛ռը, գոչեցի, հիմա կտոր կտոր պիտի ըլլայ.... մինա՛կ է քսան հոգիի դէմ....։ Ազատեցէ՛ք զան, կ'աղերսեմ ձեզի.... ան իմ.... էրիկս է, Տը Ֆերիւսադ ասպետն է։

— Ուրեմն անոր կ'սպասէի՞ք, տիկի՛ն։

— Ո՛չ, պարոն, ո՛չ.... Ֆիօրենցա պիտի դար զիս գտնելու։

— Շրջապատեցէ՛ք յարձակողը, գոչեց Մարկ իր որոտալի ձայնովը, և զէնքը ձեռքէն առէք առանց վնաս տալու իրեն. պատասխանատու էք, եթէ ամենափոքր կերպով կեղեքուի ան։

Բայց Պասսոմբիէր առիւծի մ'ուժգնութեամբ կը զարնէր աւազակներուն։ Ասոնց երեքը ճամբուն վրայ պառկեցուց, և միւսներն անհնարին դժուարութիւն կրեցին անոր սուրին հարուածներէն ազատ մնալու համար։

Վերջապէս սուրն առնուեցաւ ձեռքէն։

— Շուտի՛կ մ'ես եղեր, պարոն, բազուկդ ուժեղ է սաստիկ, ըսաւ աւազակապետը։ Լաւագոյն զինուորներուս երեքն ահա շատ դէշ վիճակի մէջ են։ Քեզի ճանչելս շատ սուղի կը նստի ինձ, և տիկնոջ էրիկն ըլլալդ կը պարտաւորէ բարեբաղդութիւն մը համարել քեզ։

խօսք շուտով մէկ մնաց շրթներուս տակ:

Պասօմբիէր նշանս նշմարեց, և շատ բնական կերպով մ'առա-ջակն պատասխանեց.

— Պա՛րոն, քու արհեստդ բանող անձինք քիչ անգամ կ'ու-նենան այն ազնուութիւնը որով կը վարուիս անկեալ հետ: Սի-րելի է ինձ հաւատալ թէ կարելի եղածին չափ շուտ որոշես կինը և իմ փրկանքս: Զինուորներուդ մին մեր հետը զրկէ՛ մինչև ծը-նէվ. հոն շատ ճանչւորներ ունենալով կրնամ գտնել հարկաւոր եղած գումարը, և պատուոյս վրայ խօսք կը տամ թէ եկող զի-նուորն ողջ առողջ ետ պիտի դառնայ....:

— Այդ խնդիրը ետքը կը կարգադրենք, ըսաւ Խունթերվալ. առ այժմ մեկնինք:

— Բայց, պարո՛ն, գոչեց Պասօմբիէր:

— Բայց, ընդմիջեց աւազակապետը, մինչև հիմա քու նկա-մամբ վեհանձնութեան կամ կենցաղավարութեան դէմ ընթացք մ'ունեցա՞յ: Այս ծառան մեր ետևէն պիտի գայ, շարայարեց՝ Սրա-ւէնը իր մարդերուն ցոյց տալով: Իսկ կառքերը առ այժմ Բօշ-նուարի պատսպարանին ներքև դրէք, և եթէ կառապաններուն մին 'ուզէ խոյս տալ, սպաննեցէք զինքը:

Այս մեկնելու նշանը եղաւ:

Պատգարակը, որուն մէջն էի սպասուհիիս հետ և զոր չորս ուժեղ աւազակներ կը տանէին, առջև անցաւ և անտառին ամե-նէն մթին շաւիղը մտաւ: Ա՛լ չգիտէի թէ ինչ վախ կամ յոյս ունենալու կը պարտաւորէի:

Այս տարօրինակ ու միանգամայն անակնկալ պատահարները, այսինքն աւազակապետին տեսակը, յանձնառութեան ամարդութիւ-նը, Պասօմբիէրին յանկարծահաս ներկայութիւնը, մեզի պաշտ-պանելու մասին անոր քաջասրտութիւնը, ինքզինքս անոր կինը համարելու պարագաները, ծառերուն շշունը, ճամբուն վրայ պառ-կող աւազակներուն ցաւագին ձայները, Խունթերվալին մէկ կողմէն քաղաքավարութիւնն և միւս կողմէն իր տգեղ հրամանաց խստու-թիւնը գլխուս մէջ կը յաջորդէին իրարու ետևէն անհամար այլանդակ մղձաւանջներու պէս:

կութիւն չունիս ալ ։ Թագաւորը վեց ամիսէ ՚ի վեր մարեշալու-թեան գաւազանը տուաւ ինծի ։ Է՛հ, յիրաւի, եթէ տակաւին հեր-վնտռեցի պահանջներուն հրամանատարն ըլլայի ։ Ազատութիւն ալ-տի չունենայի մեծ ճամբաներուն վրայ եռևէջ գալու, շարաւիրող-գու, և յանկարծակի ձերբակալ ըլլալու ։ Շարունակեց բարձր ձայնով, այն աւազակէն որուն չափ քաղաքավար, ազնուն և պար-կեշտ աւազակ մը չտեսած եմ տակաւին ։

Գլխարկը հանեց և Խնթերվալին առջև խոնարհեցաւ ։

Աւազակապետը շնորհալի կերպով ընդունեցաւ անոր բարևը ։

Կը գուշակէի թէ Պասօմբիէր ճամբուն վրայ գոհացուցիչ բա-ցատրութիւններ ընդունած է ։ Շուարեր էի ։

Այս խօսակցութեան միջոցին պատգարակը կը քալէր միշտ ։

— Կը հասնինք, գոչեց խմբապետը . . . . ։ Է՛, ի՞նչ կ՚ըսէք, տիկին . . . բնակարանս ուրիշի մը բնակարանէն աւելի գէ՞շ է ։

Հրաշալի տեսարան մ՚երևցաւ մեր առջև ։

Կը գտնուէինք այրի մը մէջ, որուն ներքի որմերը Թափանցիկ երեսիկներ ունեցող անսակ մը կրանիթով ծածկուած էր . այս Թափանցիկ երեսիկները սիւնապէս կը կանգնէին, շթաքարի ձևով կ՚իջնէին, և արտաքակարգ քմահաճոյ նկարներու բազմութիւն մը կը կազմէին ։ Տեղ տեղ վառուած ջահերուն լոյսովը այս ադամանդեայ պատերուն և գմբեթի մը մէջ տեղի մասը կը փողփողէին ։ կրնայիր կարծել թէ այս գմբեթը բիւրեղեայ ահագին գունդէ մը կազմուած է ։

Իջեր էի պատգարակէն ։

Մարկ Խնթերվալ ձեռս առաւ զիս և տարաւ այրին ներսը, ուր Հնդկաստանի օթոցով մը ծածկուած բարձր բազմոց մը կար ։

Հոն Հելվետիայի կանանց յատուկ շատ անուշ հագուստ մը և թէօրպալս նշմարեցի ։

Գաղտնի հրամանի մը վրայ այս երաժշտական գործին մեր սպաս-քի արկղէն հանուած էր, և փղոսկրեայ թեթև գրքակալի մը վը-րայ կը կենար երգի մը ձայնագրուած եղանակը, զոր լսելեայ տանս պատուհանին քով երգած ըլլալս կը յիշէի ։

— Տիկին, ըսաւ խմբապետը, շառագոյն թաւշով ծածկուած և ոսկեթել ծոպեր ունեցող թիկնաթոռ մը տալով ինծի, ատենօք ճիշդ այս տեղը նստած էր երկնային արարած մը, հրեշտակ մ'որուն կ'ուզէի վերադարձնել հետս գալու համար ձգուած փառաւոր վիճակ մը։ Ինչպէս կրնաք հաւտալ, կը պահէի անորմէն իմ անարժան արհեստս։

Այս վերջին խօսքը արտաբերելու ատեն ձայնը մեղմեց որպէս զի խումբին մարդերը չլսեն զայն։

Ապա սաստկապէս յուզուած ձայնով մը շարունակեց.

— Բայց երկինք ընկերուհիէս, սիրաբոյր հրեշտակէս զրկեց զիս։ Մեռաւ նէ, ասկէ երկու տարի առաջ մեռաւ այս անմատչելի անտառներուն մէջ, ուր ամեն նայուածքէ կը պահէի զինքը։ Իր հայրը, որ Հէլվեթիոյ դաշնակար ժողովներուն նախագահն ու անգութ բռնակալն մ'էր, նահանգներէն տարագրեց զիս. չէր ներեր ինծի իր աղջիկը սիրելս և նախահայրերս հաւատքին հաւատարիմ մնալս։ Բոլոր գոյքս գրաւուեցաւ. անկայն փախչելով հետս տարի քաղցր և շնորհագեղ կանձ մը։ Խեղճ տարագրին դժբաղդութեան մասնակցիլ ուզեց Իրեն։ Երդում ըրի արքայական հարստութիւն մը տալու իրեն։ Կողոպտուեր էի, սակայն կարծեցի թէ ես ալ ուրիշները կողոպտելու իրաւունք ունիմ։ Բայց, երբոր մահուան շունչովը մարեցաւ. և ալ ոյժ չունիմ լքանելու այս տեղերը որոնք այնքան յիշատակներ կը բերեն միտքս։ Յափշտակութիւններս և բռնաբարութիւններս պաշտօնս կը շարունակեմ, միշտ սրտիս մէջն ունենալով ինծմէ յափշտակուած Իրենին պատկերը։ Ձեզի պէս, տիկին, Իրեն երկնային ձայն մը ունէր... և երևակայեցէք որքան զարմանալս երբ՝ միւս գիշեր դէպ 'ի Սուսայ մեկնած ըլլալուս սուտ լուրը տարածելու և ինչ ինչ վաճառական հալածումներէ ազատելու համար՝ Լօզանէն ծըր-մէզ եկայ՝ լճէն անցնելով, կարծեցի թէ Իրենին ձայնը և իր սիրական տաղերը կը լսեմ։ Մի և նոյն ձայնն քաղցր և յստակ հեշտնչուն էին։ Մօտեցայ ձեր պատուհանին... ո՛ հրաշալի. .. Իրենը կը գտնէի վերստին.... ահա ճիշդ իր հասակը, իր

դուք միայնակ գալով զիս չզարմացուցիք․ ձեզմէ կը յուսայի վեհ և ազնիւ վստահութեան այս ապացոյցը։

Չզգուշացայ ըսելու անոր թէ որքան քիչ արժանի էի իր այս մեծարանաց։

— Բայց, պարո՛ն, ի՞նչ է այն ծառայութիւնն որուն կ'երևայ թէ այդքան կարևորութիւն կը տաք․

Մարկ Ինթերվալ տրտմալի կերպարանով ինձ նայեցաւ հաղե-պէշ․ Իր բիբերն եզրը կաթիլ մ'արտասուք տեսայ։

— Իրենին ձայնը և դէմքը ունիք․ ըսաւ ինձ․ Եթէ հաւանէիք՝ հոն՝ այս այրին մէջ նորա զգեստը հագնելու և տաղը երգելու, պահ մ'երազներուս հրեշտակը քովս բերած կ'ըլլայիք․ պատրանքն անթերի կ'ըլլար, և վաղանց այլ հեշտաւէտ երանութիւն մը կը պարգևէիք ձեզ։

— Թող ձեր փափաքը կատարուի, ըսի քաղցրագոյն ժպիտովս։

Պատգարակիս դէմ յարձակումին և Յարին զառիվայրէն իջնելուս առթիւ կրած երկիւղալի վիշտերէս ետք՝ ախորժելի զարմանք կը տար ինձ այս ամենապարզ և անակնկալ վախճանը։

Ուստի զգայուն աւազակապետին փափաքը կատարելու պատրաստուեցայ անմիջապէս։

Մարկ Ինթերվալ զիս Թերէզայի հետ բազմոցին վրայ թողուց, և նշան մ'ըրաւ իր մարդերուն։

Երկու սամոյրեայ վարագոյրներ սահեցան վարագոյրի երկաթէ գաւազանի մը վրայ որ գմբեթին կցուած էր, և ինքզինքս տեսակ մը զատ սենեակի մէջ գտայ, ուր սպասուհիիս օգնութեամբն Իրենին բոլորն և հելվետիական հագուստին միւս ամեն վերաբերող զգեստները հագայ։

Հայլի մը հաւաստեց ինձ թէ այս հագուստը հրապոյրներուս չէր վնասեր, և չկրցայ հայլիին այս վկայութեան՝ չհաւատալ։

Վարագոյրները մեկուսեցան այս յարդուզարդս լմննալէն ետք։

Մարկ Ինթերվալ ծունկը կրկնեց՝ իբր թէ յերկնուստ էակի մ'իր քովը իջնելը տեսած ըլլար, և իր խումբը եռանդալի աղաղակներ արձակեց։

Ուրեմն իրաւ անթերի կերպով կը նմանէի խառաչէն վաղեմի Թագուհիին.

Թիկնաթոռին վրայ նստայ։

Թերէզա թէօրպս բերաւ, և կոկորդիս ամենէն շքեղ մէջց-ները գործածեցի սիրելի տաղերգութիւնը երգելու. Համար, որուն՝ ընթերցողացս սաստիկ բարեբաղդութեամբն՝ այսօր միայն առաջին տունը կը յիշեմ.

Վարդըն անձնատուր կ՚ըլլայ Զեփիւռին,
Քաղցր աղաւնին տուփող Հափալին,
Կոհակն ալ սաստիկ սիրով հառաչէ
Երբ նաւավարին թիերը շարժին։

Ուրեմն աղաւնին, կոհակն ու ծաղիկ
Սիրոյին դասեր կը տան ինծի միշտ.
Սակայն մայրըս իս կը յանդիմանէ
Երբ ես ալ կ՚ուզեմ սիրել ու սիրուիլ։

Երգին միւս տուները մի և նոյն ճաշակով և ոճով շինուած էին. բայց և այնպէս Մարկ Իւնթերվալ չկրնալով դիմանալ սաստիկ արտասուեց և դէպ ինձ նետուեցաւ երբ վերջ տուի երգին։

— Իրե՛ն, գոչեց, Իրե՛ն. վերստի՛ն գտայ քեզի . . . գտի՛ն ես . . . Հրեշտակներէն զատուեցար որպէս զի գաս մխիթարես թշուառութիւնս և երջանկացուցէս օրերս տաս ինծ . . . . Ո՛հ, Հեռս կե-ցի՛ր, ա՛լ չզատուի՛նք։

Ինձ այս խօսքերը ըսելով հանդերձ բանդագուշական եռանդ-ներով կը գրաւուէր և զիս իր գիրկը կը սեղմէր առաջանքի, յա-տուկ և շատ վտանգաւոր անխոհեմութեամբ մը։

— Պա՛րոն, ըսի ցած ձայնով, կարծեմ թէ պատրանքին չա-փը քիչ մը կ՚անցունես . . . կը պարտաւորէիր աւելի յարգել է-րիկիս ներկայութիւնը։

Ուտաղակապերը ձեռքը ճակատը տարաւ, և երազէ մ՚կ՚ելնելու պէս երեցաւ։

. . . . . . .

— Իրաւ է . . . . Ներեցէ՛ք ։ Հեշտութեամբ և երանութեամբ խենդ դարձուցիք զիս . . . ։ Բայց ուղղամտութեանս վստահելով եկայք. ձեզի պիտի չզղջացնեմ այդ վստահութեան վրայ ։

Գնաց և սեղանին վրայէն զոհարեղինայ շքեղ գզրոց մը բերելով աղաչեց զիս որ ընդունիմ զայն 'ի յիշատակ այս տեսութեան ։

Կը վարանէի այս պարգևը ընդունելու այնպիսի մարդու մը ձեռքէն որ մեծ ճամբաներու վրայ անցուդարձողները կը կողոպտէր ։ Խնթերքվալ դժկամակութիւնս դուշակեց, և աղերսալի կերպով մ'ըսաւ ինձ .

— Ո՛հ, կ'աղերսեմ, ընդունեցէ՛ք այս յիշատակը . . . որ մայրիս էր . . . . ։ Առաջուան հարստութեանս մէկ բեկորն է այն. որդէն ունէի առի երբ յաւալի պարագաներ և հայրենակցացս անիրաւութիւնը զիս ստիպեցին աւազակի արուեստով զբաղելու ։

Ա՛լ մերժելու ճար չկար ։

Գզրոցին մէջ հարիւր հազար Ֆրանքի չափ արժէք ունեցող ադամանդներ կային ։ Խնթերքվալ իշխանի մը յատուկ առատաձեռնութիւն ցոյց կը տար ։

Այս ամեն իրողութեանց ժամանակ Պասօմբիէր խոհեմութիւն ունեցած էր բոլորովին լռին դեր մ'ընդունիլը ։ Խմբապետն անորմէն շնորհակալ եղաւ կամակատարութիւնս արգիլած չըլլալուն համար, և մեզի հրաւիրեց փառաւոր նախընթրակի մ'որ կարծես հմայական ազդեցութեամբ մը պատրաստուած էր մեզի համար ։

Սիւսերն այս աւազակներէն աւելի արքայաբար հիւրասէր չէին կրնար ըլլալ ։

Խնթերքվալ կենցաղագէտ մարդու մը հանդստութեամբ ու ընտիր կերպով իր սեղանակիցները մեծարեց, և նոր մարեշալն իր սովորական զուարթութիւնը և եռանդը ունեցաւ ։

Բայց դիրուկ մասնիչն ինձ խաղ մը խաղաց զոր կը պարտաւորէի դուշակել ։

Տարօրինակ կերպով վարձատրեց իր կուրծքը աւազակներուն ստքեքէն ազատած ըլլալս ։

Նախընթրակին վերջին ատաղձակալեան մեր տղանցին բան մը փախուց, և ապա բարձր ձայնով ըսաւ՝ իմ կողմս դառնալով.

— Գեղանի տիկին, յուսամ թէ ձեր ուղեւորութիւնը մինչև վաղն ուշացնելու բարեշնորհութիւնը կ՚ունենաք։

— Ա՛հ, պարոն, պատասխանեցի, ատի բոլորովին անկարելի բան է։

— Ի՞նչ պատճառաւ, ըսաւ Պասօմբիէր լաւագոյն գաւթի մը արժանի հանարձակութեամբ։ Այս այրին մէջ խիստ նկարագեղ խորշ մը կայ որ հաստատուն կերպով կը գոցուի, և ուր անկողին մը կայ, զոր խմբապետը ազնուաբար կը հանձի մեզ տալու։ Անկից 'ի զատ մեր հիւրընկալին մերուն մարդասիրութիւնը պարտք կը դնէ մեր վրայ իր փափաքին չդիմադրելու։

Պասօմբիէր յաղթական կերպարանով կը ժպտէր, և խնդա-րեան ըսաւ ինձ.

— Ա՛լ տարակուսութիւն չունիք։

— Ներեցէք, պարոն։ Բարիզի սուրհանդակը վաղն Տօսթ կը հասնի, ուր պէտք է որ կարելի եղածին չափ շուտ երթամ, վասն զի կարևոր լուրեր պիտի բերէ ինձ սուրհանդակը, և էրիկս ինծի տալ կանխաւ ստիպելապէս գիտէ թէ որքան հետաքրքիր եմ այն լուրերուն նկատմամբ։

— Ուրեմն եթէ ձեր նամակները հոս բերել տալու միջոցը գտնեմ, կը մնաք հոս։

— Միթէ կարելի՞ բան է բերուիլը։

— Շատ կարելի, պատասխանեց Իւնիթերվալ՝ իր ժամացոյցը հանելով։

Նշան ըրաւ իր տեղակալներուն մէկին, որ շուտով վազեց եկաւ։

— Որ ատեններ որ կէսօր է, ըսաւ Մարկ. Ֆրանսայի թղթատարը քիչ մը ժամանակէ ետք անտառէն պիտի անցնի։ Հիմա անմերկիւղ մարդ առ, և քեզ յանձնել տուր տիկին Տը Գերմա-սայրին ուղղուած բոլոր նամակները . . . ։ Գնա՛։

— Բայց, ըսի Իւնիթերվալին, աղէկ չգիտեմ թէ խիղճս մինչև

— Երբէք չըսի, Մարիօն, թէ անառիկ բերդ մ'եմ։

— Լի՛րբ, գոչեցի, հովահարովս բաւական խստիւ զարնելով մատներուն։

Ցաւին փոխարէն համբոյր մ'առաւ ինծմէն։

— Ըսէ, սիրելիդ իմ, այո կամ ո՛չ, ըսէ. որոշուած է Փիլ-նարարքի մէջ դեր ունենալս։

— Բայց մինչև հիմա լմնցած առաջին արարք մը չկայ։

— Ներէ՛ . . . ։ Ճամբուդ վրայ պարտաւորեցայ երկու նամակ ընդունիլ որք շատ յայտնի և մեկին էին։ Եթէ յիշողութիւնս չխաբեր զիս, առաջինը կը պարունակէր յետագայ խօսքը.

«Կը կարծեմ թէ Տէպարօ տակաւին կը սիրէ քեզի»։

— Հա՛, հա՛, դո՛ւն էիր, պարոն, ինծի հանելուկներ ըսողը։

— Այո՛, սիրելիդ իմ։ Միրգուրէն մեկնելէդ օր մ'ետք փոխանակ Որմիրմօն երթալու և գեղանի կանոնիկոսուհիներուս այցելութիւն ընելու քու բռնած ճամբայէդ սկսայ ուղևորիլ և ետևէդ գալ։ Ինչ զերկուս առ ժամանակեայ կերպով քեզ յայտնելու և քեզ անանուն նամակ գրելու պատուական պատճառներ ունէի։ Իսկ երկրորդ նամակիս պարունակութիւնը հետևեալն էր.

«Ա՛լ քեզի չսիրեր ան, և շուտով պիտի ըսեմ թէ ինչ պատճառաւ չսիրեր»։

— Շատ աղէկ . . . ։ խօսէ՛ ուրեմն, մտիկ կ'ընեմ։

— Մարիօն, կը կարծեմ որ սատուգապէս սիրահար մը թոյլ տայ իր տարփուհիին միայնակ ճամբորդութիւն ընելու, և յօժարութեամբ սրտի ենթարկէ զան այն անխուսելի առիթանաց որոնց իր հրապոյրները կը պարտաւորին ծնունդ տալ հարիւր մղոն տեղ ուղևորութեան մը ժամանակ։

— Բայց եթէ բաժանումն անպատճառ հարկաւոր եղած է։

— Ահա ճիշդ այդ բանը ճշմարիտ չէ, Մարիօն։

— Շատ ուրախ կ'ըլլայի եթէ ատոր ապացոյցը ունենայի։

— Երկու խօսք պիտի բաւէ։ Առնենք ինչո՛ւ Բարիզէն մեկնեցար. վասն զի ախկին Տը Սէնթ-Էվրըմօն քեզի վրանը դնելու պատրաստականքը կ'ընէր։ Առնէք 'ի զատ Տէպարօյին ալ Պարօթիյէ բանտը կ'երևար հեռուստ. այնպէս չէ՞։

— Այո՛, գնդապետ։

— Մարեշալ ըսէ՛, խնդրեմ։

— Պարո՛ն, հին սովորութիւններու նկատմամբ ներողամիտ չես։

— Քու հին սովորութեանց մասին ներողամիտ պիտի ըլլամ, եթէ հաւանիս որ իմիններս վերստին ստանամ։

— Չէ՛, չէ՛ . . . Շարունակէ՛, մարեշալ, պիտի յիշեմ մարեշալութեանդ գաւազանը։

— Կրնամ այսպէս խօսիլ վարուիլ մարդու մը հետ որ քեզի պէս աւազակներուն տունը գերութեամբ կը տառապի։

— Գերութիւն, որուն երկարիլը կ'ուզես, պարոն։

— Կը խոստովանիմ թէ իրաւ է ուզելս։

— Աղէկ, շատ աղէկ, բարեհաճէ շարունակելու։

— Այո, շատ պատճառաբանենք և աղէկ պատճառաբանենք։ Այն ատեն կնքամայրդ իր սպառնալիքը գործադրելու ամեն հնարաւոր կարողութիւնները ունէր։ Տը Լիւյն դուքսն իշխանութեան հասած էր։ Կնքամայրդ անոր կնկան մտերիմ բարեկամուհին ըլլալով եթէ միայն նշան մ'ընէր, կրօնուհիներու լանջանակը կը հագնէիր, և Էմմանուէլ բանտը կը նետուէր։

— Շատ ճիշդ է ատի, մարեշալ։

— Բայց այսօր սիրելի կնքամայրդ ան և նոյն իշխանութիւնը չունի։ Տը Լիւյն դուքսը յարմար դատեց իր նախահարց քովը երթալը։

— Իրա՛ւ կ'ըսես․ այն խեղճ դքսուհին այրի՛ է։

— Այրի է առանց գանգատելու։ Ժամանակագրութիւնը կ'ըսէ թէ Գ. Տը Շըվրէօզ երկար ատենէ 'ի վեր պատրաստ էր աղուոր կերպով մը դքսուհին մխիթարել կարենալու։ Հիմակ ամուսնացան միասին։ Բայց հանդուցեալն ալ խեղճ մարդ մ'էր։ Թագաւորը միայն սաստիկ կը յարգէր զինք, չեմ զարմանար․ զօրքերը փոխադարձ համակրութիւն կ'ունենան։ Թագաւորը սպարապետ անուանեց Լիւյնը, և այս մեծ մարդն այս բարձր շնորհքին փոխարէն երախտագէտ ըլլալու և իր թշնամիները իր ռազմական արժանեաց մասին համոզելու համար ապացուցմամբ գնաց

Մոնթօպանի պատուարներուն տակը բոլորովին յաղթուելու համար։ Գերսէյի մէկ գիւղին մէջ մեռաւ, ոմանք կ'ըսեն թէ ծանր անկումէ մը, ոմանք ալ յետադարձ յաղթութենէ մը։ Ինչ և է, Րիշլիէօ անոր յաջորդեց . . . և Րիշլիէօ մայր-թագուհիին առ-ջև երեւումէդ շատ ախորժելի յիշատակ մը պահած է. Րիշլիէօ սաստիկ կը փափաքի իրեն անձամբ եւ ատ ալ քեզ հովանաւոր հովահարը։ Վերջապէս թերեւս ամենուն նկատմամբ և ամենուն դէմ պաշտպանէ քեզի . . . . Է՛, ինչ կ'ըսես, հանելու հետեւու-թիւնս կը տեսնես արդէն։

— Բայց Տէպարօ այդ ամէն բաները չէր գիտեր, մոռցուցի խռովութեամբս։

— Չէ՛, սիրելիդ, չէ՛ . . . . Ես իսկ բերեր էի անոր Սէն-Սօրլէնին մէկ նամակը, որուն մէջ շատ բացայայտ կերպով մեր պարագաները կային։

— Եւ ինչո՞ւ ուրեմն, պարոն, ամենեւին բան մը չըսիր այս բա-ներուն նկատմամբ։

— Երբ Միրգուր հասանք, Տէպարօ հոգեվարքի մէջ էր. առ-անի գրեթէ անօգուտ էր այս բաները մանրամասնէս իմացնել անոր։

— Բայց հետեւեալ օրը։

— Հետեւեալ օրը դուռդ գոց պահեցիր ինծի համար . . . , բա-ցից 'ի զատ պէտք է ամէն բան ըսել քեզ. Էմմանուէլ քեզ մը առաջ մասնաւորապէս պատուիրած էր ինծի որ լռութիւն պահեմ. Թէօֆիլ զինքը կը յորդորէր քեզի հետ յարաբերութիւնդ դադ-րեցնելու. առջի օրուան անբարյացակամին պատճառաւ Թէօֆիլ ան-հաշտ թշնամիդ եղած էր։

Սաստիկ յուզուեցայ, և անտառին մէկ եղեւնիին ստորոտը նստե-լու ստիպուեցայ։

Ինքնասիրութիւնս սաստիկ հարուած մը կը կրէր։ Դժուարին էր ինծի տարակուսիլ Դասօմբիէրին պատմած իրողութեանց վրայ։ Սոսկալի և միանգամայն յանցական կ'երեւար ինծի Էմմանուէլին ընթացքն, որ մեր ուխտին պէտք ըլլալու համար զիս իրեն եր-կու հարկէր մինչ հեռու, այսինքն Ֆլորենցա կը զրկէր։

— Օ՜հ, սիրելիս Մարիօն, ըսաւ մարեշալը, միթէ այր ու կածի արժանի բա՞ն մը պիտի սեպես այս իրողութիւնք։ Յիրաւի՛, չեմ հաւատար, վասն զի խելացի ըլլալդ քաջ գիտեմ....։ Քեզ ամէն բան անկեղծաբար ըսած ըլլալուս մի՛ զղջացներ զիս։

Ջանք ըրի քիչ մ՚ինքզինքս զսպելու։

— Այսպէս ուրեմն, Պարոն Տը Գասօմբիէր, մեր սիրային յարաբերութեանց վերջնական դադարումը պիտի իմացնեն ինձ այն լուրերն որոնց կ՚սպասեմ։

— Այդ մասին կասկած չունիմ, Մարիօն։

Մինչդեռ Գասօմբիէր կ՚աւարտէր այս խօսքը, Խանթերվալին մարդերուն մին եկաւ, և ոսկեզօծ արծաթէ ափսէի մը վրայ դրուած երկու նամակ տուաւ ինձ յարգանօք։

Երկրուն ձեռքով առի նամակները։

Մարդը մեկնեցաւ։

— Համբերատար եղիր, ըսաւ մարեշալը, սուտ դասպէս յուզուելու նախատինքը մի՛ ըներ ինձ....։ Ծառայից պէս մարդու մը սէրը փառատարածի կնոջ մը սէրէն աւելի պատուաւոր է, կարծեմ։ Իր երկանութիւնը ո՛չ ապաքէն կը պարտաւորի ամուսնական պատճառներու որք զիս ստիպեցին խոհեմութեամբ վարուելու. Հետևաբար իրաւունք ունիմ ես առնելու իր երանութիւնը։ Անկից՝ի՝ զատ մոռցէ՛ անգամ մը, Մարիօն, թէ Տէպարօդ անհաստատ անհամ մ՚է, հողմացոյց դրօշի մը պէս ամենափոքր հովէ մը կը դառնայ....։ Իր բնաւորութեան տկարութեամբն ու սկըզբանց անհաստատութեամբը խաղալիկ մ՚եղած է սա Թէօֆիլին ձեռքը, որ անամօթ որիկայ մ՚է և զոր իրաւամբ կ՚ատես ազնիւ զգացումներէդ դրդուելով....։ Օ՜հ, սիրելիդ իմ, օ՜հ, փարատէ՛ վիշտդ։ Տէպարօ քեզի կը զոհէ ստորին կարգի անառակի մը, քեզի՛ որ պաշտելի կին մ՚ես, քեզի՛ որ մինչև ըղունգներդ խելք ու միտք ունիս, քեզի՛ որուն հրապուրելի գեղեցկութիւնը թագաւորի՛ մ՚արժանի է....։ Անանկ մարդու մը համար ցաւիլն ամօթ մ՚է։

— Շնորհակալութիւն, մարեշալ, շնորհակալութիւն....։

Պէտք է շատ զեղջել գովեստներէդ.. բայց հոգ չէ.... այդ խօս-
քերը լաւ տպաւորութիւն կ'ընեն վրաս.... Նորէն կ'ըսեմ թէ
շնորհակալ եմ։

— Մարիօն, կը փափաքիս որ այդ նամակները բանալէդ ա-
ռաջ անոնց պարունակութիւնը քեզ իմացնեմ։

— Յօժարակամ, բարեկամ. վասն զի հետաքրքրական է ա-
ռաջարկութիւնդ։

— Նախ այդ նամակներուն պզտիկը Նէվ-Եօրքէնէն է։ Կար-
տինալին քու նկատմամբ բարի դիտաւորութիւններ ունենալը կ'ի-
մացնէ քեզ Նէվ-Եօրքէն։

— Կարտինալին, գոչեցի. զարմացմամբ։

— Բայց ինձ նայէ, գեղանիկդ իմ, աշխարհիս ծայրն անգամ
ըլլայիր, դարձեալ դէպքերուն նկատմամբ տեղեկութիւն առն-
ցած կ'ըլլայիր.... Այո՛, Բիշլիէօ կարտինալ է։ Մարի Տը
Մետիսի նորէն Լուվրի մէջ տեղաւորուելով խիստ անձամբ սաս-
տու անոր համար կարտինալութեան աստիճանը, և առաջին պաշ-
տօնեայ անուանել տուաւ զայն....։ Է՛, է՛, ի՞նչ կը խորհիս
այս Մարի Տը Մետիսիին նկատմամբ....։ Կատարելապէս հաշ-
տուեցան մայր ու տղայ, կարտինալն ու իր... բարեկամուհին։
Մարդ ծայթելու չափ կը խնդայ այս հաշտութեանց վրայ....
բայց անցնինք։ Կը հաստատեմ թէ այդ առաջին նամակը դրուք
Բիշլիէօի դրպանին է։ Կը բարեհաճի գրելու քեզ թէ մայրա-
քաղաքին մէջ մնալիդ ով որ և իցէ վտանգ չունի քեզի հա-
մար։ Կարդա՛, սիրելիդ իմ, և պիտի տեսնես։

Նամակին կնիքը խզեցի, և պարունակութիւնը քննեցի առա-
ջարկէս։ Պասօմբիէր իրաւունք ունէր։

— Շատ յաջողակ պաշտպան մ'ես, ըսի։

— Այնպէս չէ՞....։ Գանք երկրորդ նամակին. Տէպարոյին
գիրը կը ճանչես. բայց ի՞նչ կը գրէ քեզ այդ փոփոխամիտ սի-
րահարը. ահա ըսեմ, Մարիօն. նախ կ'սկսի ծանուցանել քեզ թէ
հօրը ժառանգութիւնը կ'առնայ։

— Ի՞նչ. ուրկէ՞ գիտես....։

— Մի՛ զարմանար. բարեսիրտ նախադասն արդէն դէպ 'ի հանդերձեալ աշխարհն ուղեւորած էր երբ ես Միրգուր եկայ Թէօֆիլին և Գիյլեէին հետ։ Այսպիսի լուր մը յանկարծապէս չտրուիր, մանաւանդ զաւակի մ'որուն յիսուն հազար ֆրանքի եկամուտ մը կը բերէ այն։ Անկից 'ի զատ Տէպարօ այն լուրը ընդունելու վիճակի մէջ չէր։

— Իրաւ է, մարեշալ։ Ե՞տքը։

— Ա՛հ, ետքը մեծ խնդիրը կը խառնէ, կամաց կամաց, խառնաշփոթ ու վեհերոտ խօսքերով. «Մէրը կ'անցնի . . . բարեկամութիւնը աւելի հաստատ հիմերու վրայ կը հանգչի»։ Այս կէտը քեզ զգացընելու կը ջանայ, և անկից անմիջապէս կը հեռեւի թէ Տէպարօն Թէօֆիլին հետ կապող բարեկամութիւնը ջնջելու համար սիրոյ վրայ յենուլդ յանցանք մ'էր . . . ։ «Մոռացումը համակրութեան արժանի այս անձին, այսինքն Թէօֆիլին կրած նախատանքներին հետքը բնաւ չջնջեր . . .»։ Երկար չըսեմ, Տէպարօ կ'առաջարկէ քեզ բարեկամաբար բաժնուիլ առանց արտասուքի, առանց ակռայ կրճտելու, հանգիստ բաժանում մը, շահ ու վնաս վճարելով հարիւր հազար ֆրանքի դաշնագրի մը համեմատ, որ այդ նամակին մէջ ներփակուած է . . . և ահա այս պատճառաւ այդքան հաստ է այդ նամակը։

— Սատա՛կ, գոչեցի. կը կարծէ ուրեմն թէ իր պժգալի ընթացքին ազդեցութիւնը ոսկի՞ միջոցով պիտի մեղմէ։ Շատ վատ կ'ըլլայի եթէ ամենափոքր բան մ'ընդունէի անորմէ։

— Ի՞նչ կը նշանակէ առի, Մարիօ՛ն. իրաւ գժբաղդութիւն մը կը համարիս այս իրողութիւնը, թէ ոչ զուարճալի կատակերգութիւն մը կը ներկայացնենք հոս, չըսե՛ս։ Այսպիսի պարագայի մը մէջ լաւագոյն ճաշակի համեմատ վարուած կ'ըլլաս խնդալով քան թէ լալով։

— Աղէկ, մարեշալ, ա՛լ ողբուկոծի չափազանցութիւններս մեկուսի պիտի թողում բոլորովին։

— Հիմակ աղջի՛կս ուրեմն։ Կը հարցնեմ քեզ թէ առաքինութեանդ բերդին վրայ ամենէն առաջ իր դրօշակը անկելու հաճոյքը

ունեցող անձն ինչո՛ւ համար այս անգին վայելումին փոխարէնը չվճարէ ։ Տէպարօ Ջիասդ կը պարտաւորի հատուցանել․ ինքնին կը ճանչէ այս պարտքը և կը կատարէ . . . պահէ՛ ուրեմն դաշնագիրը ։

— Լա՛ւ, կը պահեմ ։

— Հինգ հազար ֆրանք եկամուտի արժէք ունի այն․ այդքանով գժուար է ապրիլը, բայց վերջապէս կարելի է ապրիլ, և երբ Բարիզ վերադառնաս, բարեհաճէ՛ իջնելու խիստ սիրուն տուն մը դրան առջև որ Տէ Թուրնել փողոցին մէջն է ։ Մէքպուրէն հոգաբարձուիս գրեցի որ քեզի համար ծախու առնէ այն տունը իմ սակով ։

— Շատ աւելի հաճութեամբ կ'ընդունէի զայն, բարեկամ, եթէ թոյլ տայիր ինձ որ մերժէի միւս պարգևը ։

— Լռէ՛ . . . այդ նամակին պարունակութեան վերջին մասը ես գուշակեմ հիմա ։ Ցարաբերութիւն կարելու որոշում ընող ամէն սիրողներուն պէս Տէպարօ կ'երևակայէ թէ երկար ատեն յարահատութեամբ պիտի համակուիս․ ուստի յաջ և յանհեակ քանի մը թեթև մխիթարութեան խօսքեր կը ցանէ ։ Նաև կ'իմացնէ քեզ թէ Թէօֆիլին հետ ճամբայ ելած է երթալու համար երկիր մ'որուն անունը հանգոյց մ'է, որպէս զի իր սիրուն անձին ետևէն վազելու փափաք չունենաս ։ Հիմա, սիրելիդ իմ, կրնաս բանալ նամակը և ըսել թէ անոր պարունակութիւնը գիտնալս քեզ իմացնելով ամենափոքր սխալ մ'ունեցա՞յ արդեօք ։

Բացի նամակը յուզումի միացորդով մը ։

— Է՛, ի՛նչպէս է, հարցուց Պասօմբիէր ։

— Ի՛նչ պիտի ըլլայ․ եթէ կախարդ մը չես, անշուշտ դուն թելադրած ես այս նամակին խօսքերը ։

— Ճի՛շդ է, գոչեց մարեշալը ։

— Ի՛նչ․ կը համարձակիս խոստովանիլ թէ . . . ։

— Կը հաճիս, չա՛ր աղջիկ, չնայելու ինձ այդ բարկալի կերպարանքով որ բացատրութիւններս կը կանխէ անպատեհ կերպով ։ Հանած ազնուական հետևեալ օրը Թէօֆիլ բոլորովին քեզ

դէմ դարձուցած էր Էմմանուէլին միտքը։ Առողջ հրաման առաւ անյապաղ քեզի ճամբելու, և բոլոր պատճառաբանութեանց շնորհիւ միայն կրցայ ցոյց տալ հիւանդին թէ որքան անվայել էր այսպիսի ընթացք մը։ Բաւական դժուարութեամբ համոզեցի զինքը բռնելու այն ընթացքը զոր կը նշանակէի անոր։ Թէօֆիլ՝ տեսնելով թէ իր նպատակին կը հասնի՝ խրատներուս դէմ առարկութիւն չըրաւ։ Ուզեցի խնայել քեզի շատ զգալի հարուած մը և զայն առանց մեծ ցնցումի ընդունելու պատրաստել.... Յաջողեցայ, Մարիօն։

— Սուտ րսած կ՚ըլլայի եթէ ըսէի թէ յուսահատութեան մէջ եմ, պատասխանեցի։

— Եթէ աւազակներուն դէպքը չըլլար, զիս պիտի տեսնէիր միայն այն օրն ուր այս նամակները սովորական ճամբով քեզ պիտի հասնէին։ Բայց քանի որ խմբապետը Թղթատարի ծախսէն քեզի ազատելը յարմար դատեց, կը պարտաւորիս ճանչել իր բարութիւնը, ամենազեղանիդ իմ, կատարելով իր փափաքը, որ է քեզի մինչև վաղն իր իշխանութեան երկրին մէջ պահել։

— Ա՛հ... որեմն եթէ մերժեմ, մարեշալ, ծանր անքաղաքավարութեան յանցա՞նք մ՚ըրած պիտի ըլլամ, հարցուցի ժպտելով։

— Այո՛, անշո՛ւշտ, Մարիօն։ Կ՚աղաչեմ, դիտէ՛ որ չեմ զործածեր հրամայելու իրաւունքը... զոր դուն ինքդ տուիր ինծի զիս ամուսինդ կոչելով։

— Իրօք, ի՞նչ անխոհեմութիւն ըրի։

— Բայց, ո՛չ, շնորհալիդ իմ, քանի որ կ՚աղաչեմ միայն։

— Քու կողմէ վեհանձնութիւն մ՚է չհրամայելդ, և յիրաւի անշնորհ կերպով վարուած կ՚ըլլամ եթէ մեր սիրելի աւազակին փափաքը չկատարեմ։ Պիտի մնանք, մարեշալ։

Պասօմբիէրին երկնցուցի ձեռներուս մին, զոր շուրթերը հեշտութեամբ ճզմեցին, և միասին ճամբայ ելանք դէպ այրը դառնալու համար։

Երեկոյթը գեղեցիկ եղաւ։

Աւազակներէն ոմանք բարձր խոտերու մէջէն, ոմանք ժայռերուն խոռոչին մէջ կը կծկուէին, շատերն ալ արագօրէն եղեւիններուն վրայ մագլցելէն ետք մթին ոստերուն մէջ պահուած կը կենային:

Մարկ նորէն սուլեց:

Անոնցմէ ալ ելան անհետացան, ծառերէն իջան, և ոմանք որ ժայռի վրայ կեցեր էին ուշադիր աչքով, հրացան յունած, անոնք ալ պատրաստ էին հրացաննին կրակ տալու:

— Անէ՛ծք, ըսաւ Գասօմբիէր, այդպիսի շուտիկներով պէտք է մտրակներէ՛ն ըլլալ, խմբապետ:

Ձմեռնէլէ ընթրիք մը կ'սպասէր մեզ մոգական այրին մէջ ու բուն փառաւոր ճրագները բազմապատկուեր էին մեզի պատուելու համար:

Հետեւեալ օրը Մարկ Խնճերմալին մեզ բարև ըսաւ, և զինքը իրմէ սաստիկ սիրահարուած ձգեցի: Սակայն պատշաճութեանց կանոնէն ամենևին չշեղած էր, և իր սրտին ծայրայեղութիւնը տանուելեց տարբէն. ետք միայն իմացայ, երբ տարօրինակ ճակատագիրս երկրորդ անգամ այս պարկեշտ աւազակին ճամբուն վրան նետեց զիս: Գացին մեր երկու բերլինեան կառքերը բերելու:

Խնճերմալին հրամանաւ կառքերուն պահապան դրուած մարդիկ. մեր սպասքը տարին ճիշդ այն տեղը ուր առջի օրը ձերբակալ եղեր էինք:

Մեր կառապանները կը կարծէին թէ մեռած ենք: Ուստի մեծ եղաւ իրենց ուրախութիւնն երբ հրաման ընդունեցան ծրմէկ տանելու մեզ: Ալպեան լեռներն իրենց աւազակի որջերովը շատ հրապոյր չէին տար անոնց, և Ֆրանսան ինծի համար այսուհետև աւելի յանկուցիչ գոյութիւն մ'ունէր քան թէ Իտալիա:

Սակայն սահմանագլուխէն անմիջապէս չանցայ. մարեշալին հետ ուզեցի քանի մ'օր մնալ լճին քովի աղւոր տունին մէջ:

Տակուին Տէպարօյին վրայ կը մտածէի, սակայն իր վրայ ցաւելու համար էր մտածելս: Ներքին ձայն մը կ'ըսէր ինծի թէ աղետալի ազդեցութեան մը պիտի նահատակուէր ան:

Սրտիս՝ներքին խորշերը քննելով իսկոյն նշմարեցի որ անոր վրայ ունեցած սէրս երբէք շատ խորունկ արմատներ չունեցած էր։ Պարագաները դիպուածին օգնութեամբն այս աշխարհիս մէջ գրեթէ միշտ յաղթանակ կը տանին մտքի յափշտակութեան և սիրոյ դէմ. մարդերուն մէջ առաքինութիւնն ինչպէս և մոլութիւնը շատ դիւրաբեկ կապով մը կապուած է։ Կը յիշէի կեանքիս պատահարները որք արդէն այնքան շատ էին, անոնց պատճառները նորէն մտքիս առջև կը բերէի, և կը խորհէի թէ բաղդապաշտութիւնը խիստ պաշտպանելի դրութիւն մ՚է։

Բարի բնութիւնը ստէպ ուզած էր չարին յաղթել յիս։ Սակայն հեգնասէր սատանայ մը կարծես հաճոյք ըրած էր իրեն ջանադրութիւններուս դերեւումը։

Մօնմարթրի վանատան մէջ ըրած որոշումներս կրօնուհիներու ապստամբութեան և անոնց պժգալի հաճոյքին առջև աներեւոյթ եղեր էին։ Չուզեցի մնալ ապաստանարանի մը մէջ որ աչքիս առջև խայտառակութեան այսպիսի օրինակներ ունէի, և անկից ազատուելու համար Տէպարօյին գիրկը նետուեցայ։

Տեսնուեցաւ թէ որքան սրտով բռներ էի այս սէրս օրինաւոր և անարատ ընելու առիթը որ ներկայուած էր ինձ։ Երկինք ինձ օգնական կ՚երեւար, վերջին լոյս մ՚արդէն Էմմանուէլին ճակատը կը լուսաւորէր երբ յանկարծ դժոխքը խաւարին անդունդը գլորեց մեզ։

Ո՛վ որ Տէպարօյին զղջումին տեսարանին ժամանակ Թէօֆիլին խուժելը տեսնէր, ինծի հետ միթէ պիտի չաղաղակէր.

— Ճակատագի՜ր, ճակատագի՜ր։

Սակայն Նախախնամութիւն մը կայ. կը յարգեմ իր անփոփոխելի վճիռները. բայց պէտք է խոստովանիլ թէ առաքինի նպատակներուս և ապագայի ամենէն պատուաւոր յոյսերուս այսպէս ժայռերու դէմ յանկարծ փշրուիլը տեսնելով վհատութիւնը կը պարտաւորէր սիրտս գրաւել։

Այն ատեն նաւակս կը ձգէի որ այլանդակ հովերու կամքին համեմատ ծփայ ըստ դիպուածի։

— Ի՞նչ օգուտ ունի զեկը նորէն բռնելը, կ'ըսէի իւրովի. անողոքելի բաղդ մը նաւահանգիստէն հեռի կը քշէ զիս։ Ամուսնուհի և մայր ըսուած նուիրական տիտղոսներն ինծի համար չեղած են։

Յանցական էին այս պատճառաբանութիւնները։

Բայց, ափսոս, տակաւին որքան փոքրահաս էի, որքան խենդ, թեթև, գեղեցկութեամբս հպարտ լի և որքան կ'ախորժէի աշխարհիս գովեստներէն։ Յաւը միայն վաղանցուկ հետք մը կը թողուր յիս, հետք զոր ունայն զբօսանաց շունչ մը, չինծու երանութեան ճառագայթ մ'իսկոյն կը ջնջէր։ Կենաց ասպարէզին մէջ կը յառաջանայի առանց պաշտպանի և առանց առաջնորդի. ըստ դիպուածի բարի և յոռի շաւիղներուն կը հետևէի։ Երբ որ գէշութիւնը զուարթ երևոյթով կ'երևար ինձ, որ և է կերպով չէի զգուշանար անկէ, և ժպիտով մը կ'ընդունէի զայն։

Պասօմբիէր երկար ատենէ 'ի վեր դիտած էր փոփոխական բնութեանս այս հանգամանքը։

Անընդունելի առաջարկութիւններուն փափուկ, հանճարեղ, գոգցես պատուաւոր ձև մը տալ գիտէր։ Իր շողշողուն շատախօսութիւնը մոռցնել կը տար թէ այնպիսի խօսքեր լսելու համար պէտք էր մոլութեան հետ քով քովի քալել։

Էմմանուէլ խելք ունէր անշուշտ. բայց Պասօմբիէր աւելի խելանի էր, կամ լաւ ևս է ըսել՝ անոր խելքը աւելի նուրբ, աւելի կոկիկ, աւելի յղկուն էր։ Էմմանուէլ Տէպարօ անողորկ ազամանդն էր. իսկ մարքիզը կարուած գոհար մ'որ սքանչելի ցոլումներ, փողփողուն երեսիկներ ունի։ Տէպարօ քաղաքաւորի (bourgeois) իսկ Պասօմբիէր պալատականի խելք ունէր։

Մարքիզը սրտին փափկութիւնը վիրաւորող խնդիրներ չէր խօսներ բնաւ։ Անկեղծ, ուղղամիտ կ'երևար, և ուրիշներուն կրօնական կարծիքը կը յարգէր, թէև ինքն ոչ այնքան կրօնասէր ըլլար։

Անհաստատութիւնը գրօշակի մը պէս պարզող երևելի անհաստատաձներուն ընթացքը շատ անհամ և անվայել կ'երևար իրեն։

օրէն սկսելով՝ որ Մարգըրիտը և մանաւանդ Վիլարսօն քեզի պաշտպան եղան ։

— Ի՜նչ . . . պզտիկ տղաքիկալը զիս պաշտպանեց ։

— Անշուշտ . մայրը շատ անախորժ կերպով մը շփոթած էր հանդէպը ։ Մարգըրիտ երկար ատեն ոխ պահեց նորա դէմ ։ Գանք Վիլարսօյին . աս ալ կ՚ուզէր բռնադատել կամուհին որ ըսէ թէ ուր թագուցած է քեզի ։ Պուրկօնեի պանդոկին մէջ սեղի ունեցող մեր արկածէն և պզտի առնին ընթրիքէն ՚ի վեր անճարակը սկսաւ անոր ետեւ բարձրաձայն ըսել թէ քեզի միշտ գեղեցիկ . . . միշտ զմայլելի տեսած է , և այլն ։ Կամուհին իր հին սիրահարը ամբաստանեց ըսելով թէ՝ գեղեցկութեանդ գերի եղած է ան ։ Ուր տարուբերած ըլլալը իմացաւ նէ , և իսկոյն Շամբանեը ղրկեց այն կատաղի նամակը որ մեր երկարատեւ բաժանման պատճառ եղաւ ։ Հարուածն ապարդիւն մնալով տիկին Տըլօրմ ՚նա գնաց ձեռնունայն . առկայն կամուհին բնաւ չպիտի ներէ մարգիզին . Վիլարսօ տիկին Տը Սէնթ–Էվրըմօնին հետ այս պատճառաւ աքսորուելէն ՚ի վեր անօրինակ հաստատամտութիւն մը ցոյց կը տայ իր հին և պատուական կողակցին ։

— Ի՜նչ , գոչեցի , Պ. Տը Վիլարսօ կի՞ն մ՚ունէր ։

— Բոլորովին օրինաւոր կին մը , այո , Մարիօն ։ Քսան տարեկանի չափ տղայ զաւակ մ՚ անգամ ունի , որ առաջին կարգի կայտառ ճնապաշտ մ՚է ։

— Զարմանալի՜ բան . այդ բաները չգիտէի , և կնքամայրս . . . ։ Որու փոխանցելու է , մարեշալ ։

— Եւ ոչ ումեք , սիրելիդ իմ ։

— Զիս Բօզըրուային հետ կարգուելու բռնադատե՛լ ուզեց . . . ինչ անվայել բան . . . . ։ Ի՞նչ եղաւ այդ խոլանդացի ասպետը ։

— Կռուարար եղաւ ։

— Ո՛հ , մարեշալ , մի՛ զրպարտեր ։

— Չէ՛ , յիրաւի չե՛մ զրպարտեր . իր յոյսերուն կործանման պատճառաւ ասպետը շքեղապէս կռուասէր մը դարձաւ ։ Ա՛լ կատակ չըներ , և կ՚ուզէ ամէն բան սրէ անցունել . . . . Անցեալ

ձև մ՚ընելով, կրնայի քեզի Լօրէն տանիլ, ուր գիտէի կրնայիր Հրապուրիչ Մարիօնը տեսնել»։ Ուզեց ետևէս վազել, բայց ա-րագօրէն խոյս տուի առանց ուշ դնելու իր կցկտուր խօսքերուն կէսին զորս ետևէս ինծ կը նետէր։

— Մարկիզո՛ւհի, շա՛տ քաղաքավար ես . . . բայց ինչ և է, լուրերդ զուարճալի են։ Միայն թէ ուրիշ մանր մունր պարագաներ ալ պատմելով լաւ կը կենաս քու գործերուդ և շարժումներուդ նկատմամբ։ Այդ հաւատարմութիւնը օրինակ մ՚ըլլալու արժանի է, բայց գոհ կ՚ըլլայի եթէ աւելի չերկարէիր զան։

— Ցէ՛ր Աստուած. պատմութիւնս երկայն չէ, Մարիօ՛ն. պա-տերազմեցայ, և քաջասրտութիւնս մարեշալութեան գաւազանին արժանի սեպուեցաւ։

— Բայց ո՞ւր պատերազմեցար։

— Քիչ մ՚համբերէք, սիրելի՛դ իմ։ Այս վերջին տարիներս կալվինեան պարոնները գործ տուին մեզ։ Անընդհատ ապստամ-բելու կատղութիւնը ունին, և ըստ իս ամենէն ճշմարտախօս ա-ռածներուն մէկն սա է. «Բողոքական մը պէտս յամառ»։ Դէպ 'ի Լօրէն խոյս տալէդ ժամանակ մ՚ետք Հարաւային գաւառները վտանգաւոր շարժում մը ցոյց տուին։ Պէառն ամբողջ ոտք ե-լաւ։ Վտանգը բոլորովին մեծ եղաւ երբ մայր-Թագուհին ալ Գլուայէն փախաւ։ Ինչպէս գիտես, Րիշլիէօ նորա հետ միասին աքսորուեցաւ, բայց մայր-Թագուհիին հետ մշտնջենապէս տառա-պիլն ապրելէ շուտով ձանձրացաւ, և Մարի Տը Մետիսիին ապե-րախտ պաշտպանեալն ատենադիր մը ղրկեց որքանկը և Բարիզ վերադառնալու շնորհը խնդրեց։ Սակայն Լուի ԺԳ քաղցրահամ սիրտակը պաղած ըլլալը և վաղեմի սպարապետութեան դրուած պայմանները անշուշտ մոռցած ըլլալով շատ դէշ կերպով ընդունե-ցաւ եպիսկոպոսին խնդիրը, և ասոր պատասխան տրուեցաւ թէ իր Լիւսօնի կղերը իր ներկայութիւնը կը պահանջէ։

— Անիրաւութիւն մը չէր այդպէս պատասխան տրուիլը, ըսի Պասօմբիէրին։ Ցիրուի ցաւալի են այս պալատական եպիսկոպոս-ները, և պէտք չէ որ հօտերնին առանց հովիւի մնան այսպէս։

բաղմի տախտակամածներուն վրայ կը կանգնուէին, և կրցածնիս չափ ջանք ըրի այս բարեգուշակ նշանը գրգռելու։ Ժամանակաւ իմ սիրելի և արժանապատիւ տիրոջս, այսինքն Անրիին քով պատերազմեր էի, և կռիւին ամեն վտանգաւոր միջոցին անոր փառաւոր դաշնակիցին կը հետևէի. իր յիշատակը պատուելու լաւագոյն միջոցն էր իր տղան իրեն արժանի զաւակ մ'ընել։ Այն գաղափարը յանդգնութիւն տուաւ ինծ։ Թագաւորը խորանին մէջ ետևէն կը գայի. զինուորի համարձակութեամբ կը խօսէի հետը. Թագուհիին այսինքն իր կնկան անունը կը տայի, իր կնկան որ այնչափ ծաղկահասակ և գեղանի էր և որու հետ անտարբերութեամբ կը վարուէր Լուի ԺԳ. « — Վեհափառ տէր, համարձակեցայ ըսելու օր մը, Ֆրանսան ժառանգորդ մը կ'ուզէ ձեզմէ, և ձեր պարտքն է գոհ ընել Ֆրանսան»։

— Իրաւ, մարքիզուհի, ըրաւ մեծ յանդգնութիւն էր... երբ մանաւանդ գիտէիր անշուշտ թէ ինչ տարօրինակ համբաւ ելած է Լուի ԺԳի վրայօք։

— Անշո՛ւշտ, անշո՛ւշտ... Թագաւորի մ'իր իշխանութեան ժամանակ քանի մը ժամ զօրութիւն չունենալը հազուադէպ բան մ'է։ Պատերազմը լմնալէն ետք Համբայ ելանք մայրաքաղաքն երթալու համար, և մեր Բարիզ վերադառնալը Ճշմարիտ յաղթանակ մ'եղաւ։ Նոյեմբերին 7 էր. արևը հազիւ կը ծագէր. Երբ քաղաքին դուռները հասանք, Թագաւորը կառքէն իջաւ, և զուարթութեամբ երիվարի մը վրայ նստեցաւ։ Իսկոյն իր օրինակին հետևեցանք, ես և յիսունի չափ ազնուականք։ Այսպէս մեր ձիերը խթանելով արշաւանքի վազեցինք փողոցներէն որք ամայի էին տակաւին։ Չորս սուրհանդակապետ մեր առջևէն կ'երթային փողերու ձայներով։ Այս ուրախագին փողերգութիւններէն, ձիերուն արշաւէն, տարօրինակ աղմուկներէն բնակիչներն արթնցան և պատուհաններն երևցան։ Թագաւորը նշմարուեցաւ։ Մեր յաղթութեանց լուրն առջէն լսուած էր, ուստի եռանդագին աղաղակներ բարձրացին մէկ երբ կ'անցնէինք։ Քաղաքացիները խռնուած մեր ետևէն կը վազէին. մինչև Լուվրը եկան մեզի հետ.

ղուակը, այսինքն Պաշտնակցութեան այն Թագաւորը, որուն յիշատակը միշտ կը պաշտուի բարիզցիներէն։ Անոր մահը մայրաքաղաքին մէջ լուեցաւ, և կարծուեցաւ թէ Սէն-Պարթելեմիին իրքաւանելի կոտորածները նորէն կը բերէր։ Խաժամուժ ամբոխը կալվինեաններուն վրան յարձակեցաւ անտարակոյս դուքսին մահուան վրէժը լուծելու համար։ Կալվինեան աղանդաւորները բազմութեան առաջնեցին Շարանթօնի ճամբուն վրան ուր շինուած է անոնց տաճարը։ Շատերը ջարդուեցան, և խռովարարները տաճարը կրակի տուին։ Հետևեալ օրը նորէն խռովութիւն եղաւ, և Սէն-Մարսօյի թաղին մէջ ուրիշ կոտորածներ ալ տեղի ունեցան։ Կալվինեաններուն ուզեցին դիմադրել, քաղաքին զանազան կողմերէն կրակ ելաւ, և վտանգի զանգակն ամեն եկեղեցիներէն զարկաւ։

— Սո՛ւրբ Աստուած, գոչեցի․ Լորէնի մէջ չգիտէինք այդ խռովութիւններուն և ոչ մին։

— Աւելի զարմանք չտար ինծի, Մարիօ՛ն։ Արդէն բոլ քեզ թէ աշխարհիս հակառակ կողմը կը բնակիս։ Ասկից ՚ի զատ մեր խեղճ Լորէնցիներն իրենց մասնաւոր գործերովը բաւական զբաղած ըլլալով, ոչ այնքան հոգ կ՚ընեն Ֆրանսայի գործերը։ Սակայն Տէ-պարօ Թէօֆիլէն նամակներ կ՚առնուր․ այս նամակներուն մէջ ինչ ինչ մանր պարագաներ չկայի՞ն այն խռովութեանց նկատմամբ զոր քեզ պատմեցի։

— Չգիտեմ․․․․ Էմմանուէլ ինծի ցոյց չէր տար ամենևին իր յարգելի բարեկամին նամակները։

— Թերևս ցոյց չտալու յատուկ պատճառներ ունէր․․․․։ Բայց կարծեմ թէ քիչ մը առաջուան կը դառնամ պատմութիւններուս։ Եւ որովհետև ինծի երբեք պատահած չէ տաղտուկ պատճառել որ և է անձի, սաստիկ կը ցաւէի, ներելէդ իմ, եթէ նախ քեզ ձանձրոյթ տայի։

— Մարեշա՛լ, մարեշա՛լ, կը նայիմ որ զուարթ կը մնաս։

— Ոչ, յիրաւի կ՚ըսեմ, չէ։

— Ներէ ինծի ուրեմն։ Այս միջոցիս շահախնդիր համեստութիւն մը ցոյց կը տաս․․․․։

— Ո՛հ, մհ, չեմ ճանչեր այդ հանդարտութիւնը։

— Երանելայէ՛ պզտիկ հանգստութիւն մը, ատերկուտեմացէս խորապարզ հանգստութիւն մ՚որ չնչին փառասիրութեան լուսազօծ կարթերուն երկուքը կամ երեքը իր զգեստին կապելէն ետք ծածուկ կերպով մը խոհականութեան մէջ կ՚ապրի և վերջապէս ամենէն գեղեցիկ շողոքորթութիւնները կ՚որսայ միշտ։

— Ա՛յ չարաճճիս, գոչեց Պասօմբիեր։

— Այսպէս քիչ մ՚առաջնուան խօսքը հարկաւորապէս իմին հետապնդող պատասխանը պիտի առնուր. «Ամենեւին, մարեշալ, ձանձրոյթ չես տար ինծի, և զմայլելի պատմիչ մ՚ես»։

Պասօմբիեր թիթին թօղուց, և եկաւ գլխս պարպաւ չգիտեմ քանի անգամ. այլ հաշիւ չէի բռներ իր հետը։

— Արդ, կրկնեց Պասօմբիեր, մայրաքաղաքին ամեն տեսակ անկարգութեանց ասպարէզ մ՚ըլլալու պատրաստ էր, երբ խորհրդարանին պարոնները վճիռ մը տուին քաղաքականներու օրինաց պաշտպանութեան ներքեւ գնելու համար։ Այս խռովեմ մէջոցին ընտանի պատերազմը արգիլեց։ Լուի ԺԳ այն ատեն Բարիզի մէջ չէր. Կասքօնի մէջ կը պատերազմէր, և Բօյանի պաշարման միջոցին մարեշալութեան գաւազանս կ՚ընդունէի։ Այս պատերազմին մէջ թագաւորը շատ անգամ խրամներուն հողաբլուրին վրան ելաւ, և մինչդեռ գնդակներն իր գլխուն վերեւը կը սուլէին, ոչ վախ և ոչ զարմանք կը ցուցնէր ան։ Որքան կ՚աշխատիմ քննելու այս բնաւորութիւնը, այնքան նուազ արժանայարգ կ՚երեւայ ինծի այն։ Լուի ԺԳի բնաւորութիւնը վսեմութեան և փոքրոգութեան բաղադրութիւն մ՚է։ Այս թագաւորը մեծ թագաւոր մը կոչելու հարկաւոր հանգամանաց մէկ քանիները միայն ունի։ Եթէ արիութիւն չունենար, Անրի Չորրորդին տղան չէր ըլլար. սակայն՝ շիտակը ըսելով՝ ըստ իս՝ միայն քաջասրտութիւնն է իր ունեցած յատկութիւնը. ոչ վեհանձնութիւն ոչ ալ բարերարութիւն ունի Լուի ԺԳ։ Արդարութեան զգացումը չափանց է իր սրտին մէջ և մինչև 'ի բարբարոսութիւն կ՚երթայ։ Այս բարբարոսութեան մէկ աղէտալի օրինակը տեսանք Կասքօնի մէջ։ Զա-

վեց ողորմելի նեկրըբլեօ քաղաքին բնակիչներուն, որոնց ամենքն ալ մորթուեցան կամ կախուեցան։

— Ի՛նչ սոսկում։

— Տասներկու գժբաղդներ փրկանք կը խոստանային։ Մեծ դատաւորը չհաւանեցաւ ողորմելու, և հաճելի բան մը սեպեց զանոնք իրենց պարտէզներուն ծառերէն կախելը։ Կոյսերը, ամուսնուհիները կամ մայրերը, վերջապէս բոլոր կիները զինուորաց շուայտութեան մատնուեցան, և թագաւորին մաքրաբարոյութիւնն այս մասին ամենևին առարկութիւն մը չըրաւ։

— Սոսկալի՜ է արդ, մարեշա՛լ։ Իցի՛ւ թէ Դըլֆինն՝* որուն ծննդեան կ'սպասենք՝ իր հօրմէն քիչ մը նուազ մաքրաբարոյ և քիչ մ'աւելի արդարասէր ըլլար։

— Աւա՜ղ, Մարիօն, այս ժամուս՝ ուր կը խօսիմ՝ ա՛լ ոչ դըլֆին կայ, ոչ ալ դըլֆին ունենալու յոյս . . . ։ Ցանցանքը տիկին Տը Շըվրէօզինն է։

— Զարմա՛նք, և ինչո՞ւ համար։

— Պատճառը շատ պարզ է։ Մարին, այսինքն տիկին Տը Շըվրէօզը Լուվրի մէջ ճանչցիր, գիտես թէ ինչպէս խենդ մ'է ան։ Ան Տ'Օթրիշ, պզտի թագուհին ևս խենդ է անոր պէս. մտերիմ բարեկամուհիներ են անոնք, և երբեմն անհաւատալի տղայութիւններ կ'ընեն։ Այսպէս գիշեր մ'երբ պահուըտուքի խաղը կ'խաղային սրահներուն մէջ, տիկին Տը Շըվրէօզ գետինը ձգեց թագուհին։ Ծանր եղաւ անկումը, և ինն օր ետք Ֆրանսան դահաժառանգ չունէր։ Հիմա կը մնայ գիտնալ թէ այս աղէտքը կրնա՞յ դարմանուիլ երբէք։ Իմ մասիս կը յայտնեմ թէ շատ անօգուտ փորձեր ըրի Լուի ԺԳ-ը համոզելու համար։ Այսպիսի մարդու մը դէմ հետզհետէ երկու անգամ չստացուիր այն յաջողութիւնը զոր ստացեր էի անգամ մը։

Պասսոմփիէր հառաչեց. իսկ ես քահ քահ մը ձգեցի։

* Dauphin, բառ առ բառ դըլֆին կը թարգմանուի. այս տիտղոսն բառը որ հին թագաժառանգ արքայորդի կը նշանակէ։

— Այո՛, տիկնա՛, ըսաւ Մարէշալը. բայց ինծի ծիծաղաշարժ չերեւար խնդիրը։ Տե՛ս թէ ի՛նչ բանէ կախում ունին Ֆրանսայի ճակատագիրները։ Երկու անգամ կնիկ պահուըտուք կը խաղան Լուվրի պալատին մէկ սենեակին մէջ. անոնց մին կը քայթէ, կ'ընկնի, և հայրենեանց բոլոր յոյսերը կը գերեւին։ Արդէն ինչ ինչ փառասիրութիւններ կը զրդուին. կ'ըսուի թէ Թագաւորը զաւակ պիտի չունենայ. մայր-Թագուհին Գաստօնը կ'ուզէ կարգել. . . այս ամէն բաները նորէն գործերը պիտի խառնաշփոթեն . . . ։ Կրօ՛նը տանի տիկին Տը Շըվրէօզն ալ, պահուըտուքի խաղն ալ։

Մարէշալին թին բարկութեամբ կը զարնէր լճին ալեաց։

Ես միշտ կը խնդայի. վասն զի յիրաւի անոր գժգոհութիւնն այլանդակ հանգամանք մ'ունէր, թէև իր գաղափարն ստուգիւ խիստ իրաւացի էին։

Ապագան իրաւունք տուաւ Պասոմբիէրին։

Հոս տեղն է խօսելու տարաձայնութեան մը վրայ որուն ինչ ինչ անձեր ուզեցին հաստատութիւն տալ։

Եթէ ընթերցողը կը կարծէ թէ այս Խոստովանանքը թեթեւութեան կնիք մը կը կրէ, և հետեւաբար կասկածելի կը գտնայ պատմութեան տեսութեամբ նկատուելով, կը սխալի. ամենէն ըզգօնաբարոյ մարդերը շատ անգամ երեւելի ստախօսներ են։

Չէ՞ թէ մէկ այլ հազար անգամ լսեցի անանց ըսելը թէ Ան Տ'Օթրիշ Թագուհին քիչ մ'առաջ յիշուած դէպքէն ետք զաւակ մը ծնաւ, որ կրնար շատ աղէկ ապրիլ. այս զաւակը զգուշութեամբ վերցուեցաւ և Լուվրէն դուրս տարուելով պահուեցաւ։ Թագուհիին թշնամիները միայն կրցան այսպիսի անհարկութիւն մը ընել։ Այսպէս անոնք կը ջանային կարծել տալ հասարակութեան թէ Թագուհին յանցական հնարք մ'ի գործ դրած է։

Սակայն վիժումի իրողութեան գաղտնի պահուելուն միակ նպատակն էր Լուի ԺԳ-ը այս մասին հոգ և հնհնուք ընելէ ազատ պահել, և ահա այս պատճառաւ հինգամսեայ սաղմը Սէն գետին կողմի պարտիզին մէջ թմբիի մը տակը գաղտնապէս թաղուեցաւ։

Այս իրողութիւնը տիկին Տը Շըվրէօզէն լսած եմ։

Այնուհետեւ նէ զիջաւ անկեղծ բարեկամութիւն մը պահելու ինձ։

Անկից 'ի զատ՝ տասներկու տարիէն ետք ճանչցի այն կիներուն մին որք այն ատեն Ան Տ'Օթրիշին կը ծառայէին։ Թագուհին օր՛մ'իր քմահաճութեան միջոցին պաշտօնէն հանած էր այն կինը զոր ճանչցի։ Իրաւ է որ ճշմարտութեան զօրութիւնն եթէ սանձած չըլլար այս կնկան ոխակալութիւնը, կրնայի իր տիրուհիին՚ անունը արատել կրցող ամեն բան ըսել տալ այն կնկան, բայց տակայն ասի գիծ մը չշեղեցաւ այն առաջին մանրամասն պատագամներէն զոր տիկին Տը Շըվրէօզ յայտնած էր ինձ։

Թերեւս պախարակուիմ այս շեղումիս պատճառաւ, բայց կը թողում որ գրիչս վազէ առանց նեղութեան և առանց ջանադրութեան։

Անկից 'ի զատ այժմէն քիչ մը պատանեկան հասակէս անդին անցնելուս շատ գոհ եմ. ընթերցողը զիս ուրիշ տեսութեամբ մը նկատելու պէտի սովորի տակաւ առ տակաւ. և դէթ ահաբեկ աղաղակ մը պիտի չարձակէ ինձ եթէ օրին մէկն երեսիս վրայ խորշոմներ նշմարէ։

Ասի ալ քմածին հաճոյք և պչրանք է։ Կիներն անուղղելի են։

Օ՛ն, եա եկո՛ւր, գեղեցի՛կ պատանութիւնս. յափշտակութեան և հեշտութեան բոլոր գեղեցի՛կ օրերս, ե՛ա եկէք։

Ծընէվի լճին կապուտայլեղ ջուրերուն վրայ սահող թեթեւ նաւակի մը մէջն եմ՝ ձեռքս սիրապէս Պասօմբիէրին թեւին վրայ դրած։ Մարեշալն ալ պահուըստքի խաղին վրայ չխորհիր, և ինձ կը նայի տրփօրէն։ Կոհակը մեղմ մեղմիկ կ'օրէ, հովը մազերուս մէջ կը խաղայ, և արեւը մարը մտնելու միջոցին իր ոսկեփայլ ճառագայթները կ'արձակէ մեզ։

Մեր ամենէն զմայլելի և վերջին շրջագայութիւնն եղաւ այս։

Հետեւեալ օրը Ծընէվէն մեկնեցանք Բարիզ վերադառնալու համար. մարեշալը չէր կրնար աւելի երկար ատեն բացակայ գտնուիլ արքունիքէն, իսկ ես ալ երջանիկ էի աքսորիս վերջ առնուլը տեսնելով։ Ուստի թող երեւակայեն թէ որքան գոհունակութեամբ տեսայ մայրաքաղաքը, ուր Սէն-Մարսօյի արուարձանէն մտայ. այս արուարձանը շքեղ երեւցաւ ինձ։

# Է

Պասօմբիէրին հոգաբարձուն հաւատարմապէս կատարած էր իր տիրոջ հրամանները Տէ Թուրնել փողոցին մէջ ինծի համար խիստ վայելչաշէն պզտի տուն մը գնելով որ գաւիթի և պարտէզի մէջ շինուած էր։

Այս տան մէջ փողոցին աղմուկը չէր լսուեր։

Գաւառական տուներուն պէս հանդարտութիւն ու միանգամայն բարիզեան բնակարաններուն պէս ամեն հաճոյական հանգամանք կար այս տունին մէջ, և երկու քայլի չափ հեռի էի Արքայական Հրապարակէն ուր արքունեաց և քաղաքին ամենէն փառաւոր անձերը կը հաւաքուէին ման գալու համար։

Մարեշալն ուզեց ինքն անձամբ զիս տեղաւորել իմ նոր մենատանս (retraite) մէջ։ Մանր մունր խնամք կը տանէր ինծի. իր քաղցր վարմունքն և ոչ իսկ վայրկեան մը փոխուեցաւ։

Պէտք է ըսել թէ զինքը քիչ մ'աւելի բարեկամութեամբ քան թէ սիրով կը սիրէի. վասն զի կ'սկսէր հասակաւոր մարդ մ'ըլլալ ան։ Իր մօրուքին և մազերուն մէջ յանկարծ նշմարեր էի քանի մ'անգոյն թելեր և ինչ ինչ մատնառու փունջեր որք այս սիրելի տարփածուին քառսուն տարեկանէն աւելի ըլլալը կը ծանուցանէին։

Բայց իր միտքը դեռ շատ կայտառ էր և բոլորովին երիտասարդական աստիկութեամբ մը կը հանճարաբանէր։

Իր տարիքին վրայօք սխալիլը ներելի էր։

Երբ մայրաքաղաքը հասանք, Պասօմբիէր յայտնապէս որոշեց մեր փոխադարձ կացութիւնը, կերպով մը կարգադրելով իմէ պահանջած սիրոյ աստիճանը։

— Սիրելի օրիորդս, ըսաւ, քեզմէն քսաներեք տարի աւելի մեծ եմ. մազերս կ'ալևորին, և եթէ մինչև հիմա բարեհաճ

Ճնցար չնշմարել այս ալեկոծումը, ինձ կը պատկանի քեզ նշմարել տալ։ Ինչպէս երկար տենէ 'ի վեր գիտես, Մարիօն, քեզի շղթայելու նպատակ չունեցայ երբէք։ Քու հասակիդ մէջ ազատութիւնն այնքան թանկագին գանձ մ'է որ չեմ կրնար քեզմէ յափշտակել զայն։ Անկից 'ի զատ ազատութենէդ քեզի չզրկելը պատուականագոյնս կը գայ հաշուիս։ Սիրոյ խնկաւէտ դաշտերուն միջէն բաղդախնդրութեամբ երբ ժուռ գաս, Ճամբու մ'անկիւնը թերեւս ուրախութեամբ պիտի հանդիպիս ծեր բարեկամիդ, և ապահով եմ թէ պիտի չմերժես իրեն մրտենիի ոստ մ'և համբոյր մը։

— Մարեշալ, ըսի, քեզի պէս երկու մարդ չկայ աշխարհիս մէջ։

— Կը կարծե՞ս, Մարիօն. շնորհակալ եմ երկնից եթէ տասը կը պարտաւորիմ երանութիւնս։ Այնպէս դու ինքզինքդ բացարձակ տիրուհին ես։ Թող որ գայ բաղդը։ Թէև կին է բաղդը, բայց չքամահեր երկու գեղեցիկ աչեր և քաղցր ժպիտ մը. շուտով պիտի տեսնես բաղդին դուռդ զարնելը։ Կարեւոր բան է չթողուլ թշնամիներդ որ նորէն շարշարեն քեզի. Ռիշլիէօյին պաշտպանութիւնն անհրաժեշտ է քեզի համար. Նայէ որ շուտով ստանաս այս պաշտպանութիւնը։ Հարկաւորութիւն չկայ քեզ պատուիրելու, սիրելիդ իմ, թէ ակրութեան պաշտօնէին հետ կը պարտաւորիս պչրամտրաբար ու միանգամայն խոհեմաբար վարուիլ։ Ընդհանուր կանոն է ոչ ինչ շնորհել այն անձերուն որոնցմէ կ'ուզես ամէն բան ստանալ։ Պարտաւորութեանցս և պաշտօնութեանց ներածին չափ ստէպ պիտի գամ քեզ այցելութիւն ընելու։ Մեր գաղտնիքները մերն են. ուրիշներուն չյայտնենք ամենեին։ Գաղտնիքը դիւանագիտական յատկութեանցս մին է, և մարդս չկրնար ջնջելու այն բանը որու էութիւնն անծանօթ է իրեն։ Գեղեցիկ եղիր, նախանձագրգիռ եղիր, երջանիկ եղի՛ր. և յիշէ՛, Մարիօ՛ն, սա խօսքս. այն օրն որ հաճելի պիտի ըլլայ քեզ մ'ալ տեսնել զիս բարեկամ մ'և ոչ թէ սիրող մը, այլակերպութիւնն խաղաղ տեղի պիտի ունենայ։

Պագաւ ձեռքս և աներևոյթ եղաւ։

Տունս վերէն վար շուռ եկայ, և վերջին ճաշակի համեմատ կահուած սրահներ ու սենեակներ գտայ։

Պարտէզս շատ ընդարձակ չէր. բայց պատուհանէս պուլվառին մեծ ծառերը կը տեսնէի, նաև Մենիլմօնթանի և Պելվիլի գալարագարդ բլուրները, որոնց վրայ սպիտակ տուներ ցանուցիր կ'երևային՝ քմահաճ այծերու երամի մը պէս։

Թուեցաւ ինձ թէ Կրասէն և իր կինը բաւական էին ինձ ծառայելու համար։

Թերեզա շատ բանիբուն էր, և էրիկը բոլորովին զօրելի ամուսնական բարեմասնութեամբ մ'անոր կը հնազանդէր։

Տեպարօ իր նամակին մէջ արտօնութիւն տուած էր ինձ պահելու այս երկու ծառաները, որոնց ինծի համար ունեցած անձնուիրութիւնն երբէք չպակսեցաւ։

Դուռս պահպանելու համար դռնապան մ'անհրաժեշտ ըլլալով, Թերեզա մասնաւորապէս խօսք տուաւ հայրը համոզելու որ դռնապանութիւն ընէ ինձ. և ահա Պիւլման՝ որ իր գերմանական սիրելի հեղերդ խօսուածքը չուղղած էր՝ իսկոյն տիկին Տը Սէնթ–Էվրըմօնի ապարանքը թողուց և եկաւ տունս տեղաւորեցաւ։

Այսպէս Բարիզի մէջ էի միայնակ և ազատ, չափաւոր հարստութիւն մ'և առջևս ապագան ունենալով։

Առջի երկու օրերը տանս ներքին կարգադրութեան յատկացան. երրորդ օրը քիչ մը զարդարուեցայ՝ դուրս ելնելու և Արքայական հրապարակին վրայ ման գալու համար։ Գրեր էի Բիշլիեօյի քարտուղարին թէ հոն կրնար հանդիպիլ ինձ։

Երբ պատրաստ էի դուրս ելնելու, Կրասէն երեցաւ կառավարի հագուստով, և հանդիսաւորապէս ըսաւ ինձ.

— Տիկնոջ կառքը պատրաստ է։

— Ո՞ւր է խելքդ, Կրասէն. կառք չունիմ ես։

— Ներեցէք, տիկին, կառքը քիչ մ'առաջ հասաւ։ Խիստ աղուոր կառք մ'է այն։ Իսկ ձիերն աշխէտ–թուխ գոյն ունին և շատ հեզընթաց են։ Տիկնոջ տունը կը գտնուիմ հազարարձա-

թեան յատկութեամբ. բայց հպարտութիւն չունիմ, և ձիերը պիտի կառավարեմ բաւական է որ կրկին ամսական ընդունիմ։

— Երիկդ մի՞թէ խեցած է, հարցուցի Թերէզային։

— Ո՛չ, տիկին. պատասխանեց սպասուհին՝ պատուհանին մօտելով. ասկէց կրնաք կառքը և ձիերը տեսնել։

Իսկոյն գացի աչքովս տեսնելու և հաւտալու համար։

Իրաւ էր ինձ լսուածը։

— Ա՛հ, շարայարեց Կրասէն, մոռցեր էի տիկնոջ տալ սա գիրը զոր կառապանը յանձնեց ինձ . . . . Թերևս կառուձիին համար է այն։

Սկըռուած պզտի պահարան մ՚երկնցուց Կրասէն։ Մարեշալին ամսակններուն ձևը ճանչեցի։

Գասօմբիէր իր սովորական լակոնականութեամբը յետագայ տողը գրած էր ինձ.

«Մարիօն, Խարիթեան քոյրերը չեն կրնար հետի երթալ»։

Այրթ ճաշակ կար այս անակնկալ պարգևատրութեան մէջ։ Գասօմբիէրին այս ազնիւ ուշադրութիւնը, հաճոյքը բարեպատեհութեամբ կրկնապատկելու այս սիրուն կերպը շնորհապարտ ըրաւ զիս։

Ցիրուի աւելի ճշմարիտ սէր և ընտիր ազնուութիւն մը կըրնայի գտնել։ Քանի տարի աւելի կամ պակաս ոչինչ է այս մարդուն նկատմամբ որ այսպէս մտքի ու միանգամայն սրտի գեղեցիկ յատկութիւններ ունի։

Գասօմբիէր թող լսէր ինչ զոր կ՚ուզէր. յայտնի է թէ շատ սէր ունէր վրաս։

Իմ կողմէ ճշմարիտ աղերախտութիւն մ՚եղած կ՚ըլլար եթէ իր վերջին խօսքին վրայ ինքզինքս անորմէն աղատ համարէի, հետեւաբար ես իմ հետ շատ գեղեցիկ որոշումներ ըրի։ Այս որոշումներս բաւական երկար ատեն կատարեցի։ Եթէ բնութիւնը զիս ոչ այնքան սաստիկ դիւրաբեկ ստեղծած ըլլար, այն որոշումներս աւելի երկար պիտի տևէին։

— Ինծ կ'երևայ, ըսաւ դռնապանն իր աղաւաղեալ բարբառո-վը, թէ կառքը շատ աղէկ կը յարմարի տիկնոջ:

— Իրաւ կ'ըսես, Գիւլման: Շողոքորթ մ'ես:

— Տիկինը կը հաճի՞ պզտի շնորհք մ'ընելու ինձ:

— Յօժարակամ: Ի՞նչ է խնդիրդ:

— Կատարելապէս հոգ պիտի տանիմ տիկնոջ գինիին մառա-նին . . . :

— Հա՛, հա՛, շատ աղէկ, սիրելիս. բայց կրկին ամսական չեմ տար:

— Լա՛ւ, ես կրկին ամսականի աչք չունիմ բնաւ:

— Կը հաւատամ, Գիւլման:

Կառապանն հրաման առած էր՝ զիս Արքայական հրապարակը տա-նելէն առաջ քիչ մը պուլվարին վրայ ժուռ ածելու, երբ Թուր-նելի փողոցէն դառնալու միջոցին Րիշլիէօյին քարատաղարը նշմա-րեցի:

Սէն-Մօրլէն դէպ 'ի մեր ժամադրութեան տեղը կ'ուղղէր:

Ապակին արագօրէն իջեցուցի:

Իջեցնելու ատեն եղած ձայնը Սէն-Մօրլէնին գլուխը դէպ իմ կողմս դարձուց: Ճանչցաւ զիս, եկաւ կառքին դուռը բացաւ, և ներս մտնելով գոչեց.

— Լուվրի պալատը:

— Բայց, պարոն . . . :

— Բայց և ոչ իսկ վայրկեան մը կրնանք կորսնել, սիրելի՜ բա-րեկամուհի:

— Ի՞նչ. միթէ վտանգ մը կայ ինծի դէմ:

— Անշուշտ: Կ'ուզեն քեզի դէմ երևան հանել բանտարկու-թեան հին հրամանագիր մը, որուն ատենօք գրեթէ նահատակ եղար Սէն-Վիգթօր թաղին մէջ:

— Կարելի՞ է այդ բանը:

— Յիրաւի շատ այլանդակ գաղափար մ'է տիկին Տը Սէնթ-Էվ·ըմոնին դռնապանը առևանգելը: Վերադարձդ կոմսուհիին ի-մացնելու լաւագոյն միջոց մը գտնելը դժուարին է:

— Աստուա՛ծ իմ. . . բայց ու՞ր կը տանիս զիս ։

— Պաշտօնէին տունը ։

— Այդպիսի բան մը յայտնելէ՞ն ետք․ այս հագուստով ։

— Անշուշտ. այդ հագուստով աւելի՛ զմայլելի ես ։ Ծ՛ն, մի՛ այդպէս դողար ։ Մենք չենք այն անձերու կարգէն որք ծրարը գրուածին պէս գնել կ'ուզեն, շարայարեց Սէն-Մօրլէն հեղնական ձայնով մը ։ Եւ Նորին Բարձրութիւնն* այնքան կիրթ ճաշակի տէր է որ քեզի պէս աստղի մը խառնարանած փողանի մը մէջ մտնելուն չկրնար հաւանիլ ։ Մի՛ վախնար ։ կոմսուհին անիբաւ պիտի սեպուի ։ Պառաւ կիներուն ներելի է խղճահարութիւն և չարաբաստութիւն ունենալ. . . ։ Իսկ մենք, սիրելի՛ գեղանի, ամէն տեսակ թողութիւններ ունինք սիրոյ քաղցր մեղաց համար ։

— Քիչ մը սիրտ կը տաս ինծի, ըսի ժպտելով. բայց Եկեղեցին ինչ կարծիք ունի այս բանիս վրայ ։

— Եկեղեցին շատ քիչ անգամ կը յանդիմանէ կարտինալ—պաշտօնեայ մը, և յօժարակամ կը հաւանի որ ուզածին չափ ազատօրէն վարուի ան ։ Վատիկանի շանթերն ինչո՞ւ զարնեն որոնց որ կը զարկնեն զանոնք ։ Աղէկ մտածէ եկուր, Մարիօն, ինծի կը թուի թէ ոչ այնքան տրտում ես որքան մտալոյզ ։ Տէպարօ կը կատղէր եթէ քեզի ա՛լ աւելի պաշտելի և խելամիտ տեսնէր ։

— Ի՞նչ կը նշանակէ ատի . . . բարեկամի, թերևս միտք ունէր յուսահատութեան մէջ թողուլ զիս ։

— Բայց անշուշտ, Մարիօն ։

— Վա՜յ պարծուկ ։ վա՜յ. ամենևին չէի յուսահատեր. հաճէ իմացնելու իրեն այս ըսածս ։

— Ասի ըսելու աւելի դիւրին է քան թէ ընել ։ Չգիտենք թէ ինչ եղաւ Տէպարօ ։ Ոմանք կը կարծեն թէ Լոնտրայի մէջն է ան. ոմանք ալ կ'ըսեն թէ Ամերիկա գացած է ։

— Իր Թէօֆիլէն հետ ։

— Միշտ ։

* Son Eminence.

— Ուրեմն Իշխանուհին շատ կը սիրէ այդ մարդը։

— Մոսկովի կերպով։

— Ահա այդ կէտը չեմ կրնար ըմբռնել։

— Եւ ոչ խեղ ես։ Քեզի պէս հրեշտակ մը զոհել այդ գար-շելի անձին որ զինքը անասնականութեամբ, խաղամոլութեամբ, ամեն հնարաւոր խայտառակութեանց գոցը կը մղէ . . . ։ Ինչպէս պայքարը բան է այս մասին . . . ։ Կանուխ կայք դարձողներուն իրենց պատիժը խնչեցին կը զանեն երբ իրենց աչքը կը գոցեն և սնդուսնդը կ'ընկ-նին . . . ։ Ա՛խ, Մարիօն, շնոր, շատ անգամ քու վրայ մտա-ծեցի։

— Իրա՞ւ կ'ըսես, պարոն։

— Զարմանալ մի՛ ձևացներ։ Չկրցար մոռնալ թէ վաճառա-կանուհին գաւառացի անտարբերական և կայսեր պատանեհիին արդէն մո-ռացած է զիս։

— Ո՛հ, մէկը կ'երևակայեմ թէ ծանր չէր, այնպէս չէ՞։

— Ընդ հակառակն շատ ծանր էր։ Հակառակորդին անդթու-թեամբ կը վարուի խնծի դէմ։ Կը սիրեմ քեզի, այլ սակայն կ'ե-րևայ թէ ուրիշներուն քեզի համար ունեցած սիրոյն մասին անոնց խորհրդակիցն ըլլալու պիտի պարտաւորիմ մշտնջենապէս։

— Աղէկ չեմ ըմբռներ միտքդ, պարոն։

— Վասն զի չես ուզեր ըմբռնել։ Տէպարոյին խորհրդակիցն էի . . . ։

— Ե՞տքը։

— Այսօր ալ կարտինալին խորհրդակիցը պիտի ըլլամ։

— Հիմակ ալ աւելի չեմ հասկնար ինչ ըսել ուզերդ։

— Ա՛խ, Աստուած վկայ, յօժարութիւն չունիս հասկնալու։ Կը կարծե՞ս որ քեզ նամակ գրէի կարտինալին պաշտպանութեան ներքև զանուիլդ հաստատելով, եթէ ինքն անձամբ բանադրած չըլլար զիս գրելու։ Ռիշլիէօ անլուր կամք և անսասելի հաստա-տութիւն ունեցող մարդ մ'է։ Երդում ըրաւ վերստին տեսնելու իր խուցին մէջ երևցող սիրուն արարածը . . . այո, երդում ը-րաւ։ Երբ մայր Թագուհիին հետ տեսութիւն կ'ընէր իր խուցին

— Ի՞նչ. կարտինալը կը համարձակի՞...։

— Ամենայն խօսք... ամէն բանի կը համարձակի։ Կը վախնամ երբ միտքս կը բերեմ ողոքարանութեանց և սիրալիրներու այն անլուր բազմութիւնը որոնց անգթաբար կը դատապարտէ զոհերը, վասն զի, գիտես գիտնաս, Մարիօն, թէ Նորին Բարձրութեան ամենաքաղաքական բանահաստներն եմ, և եթէ մէկը ըստ մէկը բանաշխատական քանի մը պզտիկ գրուածներ ընդունիմ, որոնց վախի կրնաս սոսկալ թէ Հեղինակն ես եմ։ Վերջինքիս տիկիններըը կարդ ըստ կարգէ մեսոյիս աքատադրութիւնները ընդունած են, և անոնց ընթերցումէն զնեմ կարծեր թէ շատ ղղալի կերպով յուզուած ըլլան։ Անոն կողմէն յաղթուած ըլլալով կարտինալը, յոյս ունի այսօր փառաւոր յաղթանակ մը տանելու որպէս զի իր պարտութեանց նախատինքը սրբէ։

Լուվրին կը մօտէինք։

— Շնորհակալ եմ, պարոն, տուած ծանրագին տեղեկութիւններուդ համար, ըսի Սէն-Մօրիէնին, և այդ տեղեկութիւններէն օգուտ քաղելու կերպով պիտի վարուիմ։

— Երդում կ'ընես անգութ ըլլալու, Մարիօն։

— Կ'երդնում։

— Մտածէ՛ որ ես ինքս կարտինալին սենեակը կը տանիմ քեզի։ Ինծի համար մեծ նուաստութիւն մ'եղած կ'ըլլայ, եթէ նոր պարտութեան մը չենթարկուի ան։

— Այո, պարոն, հանգիստ եղի՛ր. կուտամ դեր խաղցնել պիտի չտամ քեզ ամենևին։

— Չարաճճի՛ս... հոգ չէ, ծաղրէ՛ զիս որքան որ կը հաճիս, բաւական է որ Նորին Բարձրութիւնը յաղթուի։

— Խե՛ղճ Բարձրութիւն։ Կը նայիմ որ ստուգիւ իրեն մտերիմ ըլլած է այնպիսի անձեր որք անխորժելի կերպով կը հատատեն իր համբաւը։

— Սիրելի՛դ իմ Մարիօն, եթէ Պ. Տը Րիշըլիէօ իբր կրօնաւոր իր պարտուց շաւղէն չխոտորէր, եթէ իր տիրապետութեան ակըը նուազ, ինքնամոլութիւնն և խորամանկութիւնն ոչ այնքան

ատամիկ ըլլային, որ հարիւրը նուազ կանգնեցին կ'ըլլար, և նա ալ չէ՞ր բնազդաբար կեղծաւոր փորձերու դէմ քեզի զգուշ կե-ցնելու ։

Կառքը կանգ կ'առնու ։

Արտաքէն դռնակը բացին ։

Ցէ Թուրնէլ փողոցէն Սէնթ-Անթուան փողոցը · Օթէլ-Տը-Վիլը և քարափներէն հասած էր ան ։ Լուվրի պալատը կը մեր-նէինք Սէն գետի կողմէն ; և հարաւային դռնակէն ։

Րիշըլիէօյին քարտուղարն աղաչեց որ քովս վար առնում ; և զիս անցուց պզտի և մթին փողերէ որոնց մէջ մթութ ըստ մթութ մնայն մօրուսաւոր Հելվետացի մը կը հանդիպէինք, որ Պիւլմիսին գերմանական արտասանութեամբը հրամանատարը կը հարցնէր մեզ, և կամ վայելչապէս ողորմն պեխով հրացանակիր մ'որ դաղղիա-կան արտասանութեան մասին աւելի զգուշութեամբ կը խօսէր մեր հետ ։

Հինգ րոպէի չափ քալելէն ետք Սէն-Մօրլէն կանգ առաւ քանդակուած փայտակերտի մը քով ։

Դուռի որ և է երևոյթ մը չէր նշմարուեր ; ուստի կը պատ-րաստուէի հարցնելու իրեն թէ պատերը վար առնելու համար աստուածաշնչային փողփողը ունէր, երբ փայտակերտին մէջ պա-հուած կոճակ մը հրելը, և փայտակերտին իմ առջև մեկուսիլը տեսայ ։ Առաջնորդս շարժումով մը հրաւիրեց ծակէն անցնելու՝ ինքը դուրս մնալով ։

Փայտակերտն իսկոյն գոցուեցաւ նորէն ։

Մինակ էի Նորին Բարձրութեան, Տը Րիշըլիէօ կարդինալին հետ ։

Պաշտօնեան դիր կը գրէր սեղանի մը վրայ, ուր բացուած տե-ղագրական քարտէսներ, բաց նամակներ, ծածկագրութիւններով ուռեցած թղթակալներ և Պետութեան կնիքովը դրոշմուած մա-գաղաթներ կային խառն 'ի խուռն ։

Նախ ուշադրութիւն չըրաւ ինծ ։

Ներածումս տարօրինակ հանգամանքէն արդէն բաւական յոյժ

ղուած ըլլալով՝ գրեթէ վախցայ զիս այս խուցին մէջ, այս մարդուն առջևը անմնելով որ իր գիրը կը շարունակէր, և որուն չէի համարձակեր ներկայութիւնս նշմարել տալու։

Վերջապէս զիջաւ վեր ընելու գլուխը, և լռելեայն ինծ թիկնաթոռ մը ցոյց տուաւ որ շմինէային քովն էր։

Գացի այս թիկնաթոռին վրայ նստայ, աշխատելով փարատելու վեհերոտութեան տպաւորութիւնը որ զիս գրաւեր էր։

Թէև ապրիլ ամսոյն մէջն էինք, և թէև եղանակը կ'սկսէր բաւական մեղմ ըլլալ, բայց և այնպէս կրակարանին պղնձեայ ահագին գունդեր ունեցող երկաթներուն վրայ քանի մը փայտ կը վառէր չթրտուքով։

Գիտեցի թէ կը գտնուէի Ճիշդ այն խուցին մէջ ուր ատենօք Էմմանուէլին և Սէն–Մօրլէնին հետ պահուած էի։

Խուցին ներսն աջակին մատենադարան մը կար։ Պատերը Պերկամի գրեթէ սևագոյն թաղթերով ծածկուած էր, և տամակեայ ծանր վարագոյրներէն աղօտ կիսալոյս մը միայն կ'անցնէր, կրակարանին երերուն ցոլումներուն հետ կը միանար, և այս սենեկին սոսկալի երևոյթ մը կը տար։

Լուի Երեքտասաներորդին ձիաւոր մէկ մեծ պատկերը կախուած էր Ճիշդ այն սեղանին գլխացի կողմն ուր Րիշըլիէօ կը գրէր, և կարծես թէ կենդանութիւն կ'առնուր խուցին այս ցնորական նշոյլներէն։ Թագաւորին դէմքն ու զարդն անթերի էր, բանուած մեծ օձիքին և գօտիին հետ որ զրահին վրայ նետուած էր։ Ձիին զաւակին ետևը սպասաւոր մը ծփին փետուրներով զարդարուն սաղաւարտը բռնած էր։

Սենեկին մէկն ալ անկիւնը հանգստեան անկողին մը կար։

Աչերս այս մխուր սենեկին տալորելով, հոն հոս քանի մ'աշխարհային նկարներ նշմարեցի, որք թէև անպատկառ չէին, բայց սակայն քիչ մ'անյարմար երևցան ինծ Եկեղեցիին մէկ իշխանին աշխատութեան սենեկին մէջ։

Բայց բան մ'աւելի զարմանալի երևցաւ ինծ. այսինքն քովս, շմինէային միւս անկիւնը նուաղոյն թաւշէ շքեղ կողով մը, տե-

սայ որուն մէջ սպիտակ աղուոր կատու մը հինգ ձագ կը դիեցնէր։

Պարտիզպանը յանկարծ դադրեցաւ գրելէ, և բաւական բիրտ ձայնով ըսաւ ինծի.

— Անունդ Տըլօ՞րմ է։

— Այո՛, տէր իմ։

— Քանի՞ տարեկան ես։

— Քսաներկու։

— Հը՛մ, աղուոր ես, օրիո՛րդ, թերևս հոգիդ փրկութենէ զրկելու չափ աղուոր ես։

Իր թիկնաթոռը չիմինէային մօտեցուց, զոյգ մ՚ունելիք առաւ, կրակարանին երկաթներուն վրան դրաւ գունագեղ շղուականներու մէջ զետեղուած ոտները, և սկսաւ կրակը խառնել մտախոհ կերպարանով։

Ժամանակ ունեցայ զինքը հանգստութեամբ քննելու։

Իր դէմքը խստութեան դրոշմ մ՚ունէր որ առջի բերան նայողին ուշադրութիւնը կը գրաւէր։ Սակայն դիմական գիծերը կանոնաւորապէս գեղեցիկ էին։ Քիթը կոր, աչերը մեծ ու վառվռուն և շրթերը վարդագոյն ու փոքր ինչ ցցուած էին։ Ծայրաւոր մօրուքն և ականջին վերևէն ու ղդակին մէն մի կողմէն վեր ձգուած մազերը այլանդակ կերպարան մը կը տային անոր։ Ոլորկուած օձիք մ՚ունէր որ անոր կարմիր պարեգօտին վրայ իջած էր հարթ ձևով, և որուն ներքև Սէնթ-Էսպրիի մեծ ժապաւէնը խաչին հետ կը նշմարուէր։

Վայրկեան մը լուռ կենալէն ետք Րիշլիէօ ունելիքը վար դրաւ և դէպ իմ կողմս դարձաւ։

— Օրիո՛րդ, սաստիկ դժկոհութիւն տուեր ես տիկին Տը Սէնթ-Էվրըմօնին, ըսաւ նախ։

Իր ձայնն ոչ այնքան բիրտ էր հիմա։ Կարծեցի իսկ գուշակել թէ իր շրթերը ժպտելու դիտաւորութիւն ունէին։

— Բայց է, ըսի՛ կարտինալին ձայնին և շրթերուն այս բարեօրական փանաքի փոփոխութենէն համարձակութիւն առնելով, տիկին Տը Սէնթ-Էվրըմօն շատ խստիւ վարուեցաւ անփորձ խեղճ

աղջկան մը դէմ . . . ։ Իմաստուն խրատներ աւելի ապահովապէս ուղղէին զիս գուցէ քան թէ խստութիւնը ։

— Կ'ըսուի թէ անօրինակ պչրասիրութիւն մ'ունէիր, իրա՞ւ է ։

— Կը խոստովանիմ, պատասխանեցի՝ միամտաբար վար ընելով աչերս. բայց քիչ մը տարիքս և սեռս էր այն պչրասիրութեան պատճառը ։

Րիշլիէօ ուղղակի ինծ նայեցաւ անթարթափ ։ Ամօթահար պզտի կերպարան մը կ'առնէի որ անշուշտ բարեպատեհ էր ։

Երբ կարմրելս զիս յոտից ցգլուխ լաւ մը քննեց, նորէն առաւ ունելիքը, և վերստին խարոյկները չարչարեց, մրմռալով.

— Սիրուն է նէ ։

Լռեցի մեկուսի ըսուած այս ողբալի խօսքը, և շարունակեցի առանց սպասելու որ ինծ հարց ու փորձ ընէ .

— Կոմսուհին զիս կը մեղադրէ ըսելով թէ ուզեցի կարգուիլ իր տղուն հետ ։ Այս բանը պէտք չէ որ իբր ոճիր մը նկատուի, վասն զի մոլորումէն ազատելու համար ամուսնութիւնը կը պահանջէի ։

— Ա՛հ, ըրաւ Րիշլիէօ, պատմէ՛ ինծ այդ իրողութիւնը ։

Ձեռքը թաւշեայ կողովին մէջը մխեց, և հեռահեռէ հինգ պզտի կատուները դուրս հանեց ։ Ասոնց մայրն իր սրունքովը կը շփուէր՝ իր սովորական քռռ—քռռ ձայնը հանելով ։

Իրողութիւնը բնաբանէն սկսելով պատմեցի՝ որպէս զի Մարի Տը Մեռսիէին և դաշոյնին արկածին վրայօք խօսելու առիթը ունենամ ։ Երբ պատմութեանս այս պարագային հասայ, Րիշլիէօ տարօրինակ կերպով մ'ինծ նայեցաւ ։

— Ըսէ՛ ինծ նայիմ, օրիո՛րդ, ի՞նչ խորհեցար թագուհիին այդ բարկութեան վրայ ։

Հարցումը շատ կը շփոթէր զիս ։

— Բայց . . . թոթովեցի ։

— Համարձակ խօսէ՛ ։

— Տէ՛ր Աստուած . . . խիստ քիչ խորհելու աղետալի սովորութիւնը ունիմ, Սրբազան տէր . . . և այն պարագային մէջ ամենեւին բան մը չխորհեցայ ։

— Ցիրաւի, Ճարտար պատասխան մ՚է ատի, ըսաւ կարտինալը ժպտելով. խելք ունիս, օրիո՛րդ։

— Ձեր Բարձրութիւնը զիս կ՚ստիպէ խելք ունենալու։

— Պատասխանդ աւելի կը հաստատէ խելացի ըլլալդ։

Իր թիկնաթոռը իմինիս մօտեցուց։

— Կը պարտաւորիմ ըսել քեզ, շարունակեց, թէ մեր այսօրուան տեսութեան փոքր ինչ պատճառն է այն արկածն որուն ակամայ ականատես եղար։ Փափաք ունեցայ միշտ ճանչելու այն պատանուհին որ ինծի համար իր կեանքը վտանգի մէջ դրաւ. . . ։ Սէն-Մօրլէն հարկաւ այս կէտը իմացուց քեզ։ Սակայն իրեն իր կողմէն մեկնութիւն մը չաւելցո՛ւց, կամ չհամարձակեցաւ այս կամ այն ենթադրութիւնն ընելու այն այցելութեան նպատակը զոր քեզմէ կ՚ուզէի։

— Ո՛չ, տէր իմ։

Այս սուտը կէս մը միամտաբար և կէս մ՚ալ զարմացման ձևով նետեցի, և իր հետևանքն եղաւ անմիջապէս համոզել բանակիցս։

Ռիշլիէօ յայտնի գոհունակութեան կերպով մը շարունակեց.

— Սէն-Մօրլէնին բոլորովին վստահ եմ, և այս վստահութիւնս չարաչար գործածելու զինքը անկարող կը կարծեմ։

Ասի ըսելէն ետք պզտի կատուները պարեգօտին մէջէն հանեց և վրաս դրաւ։

— Քիչ մը զգուէ՛ սիրելիներս, ըսաւ։

Մայրն իր ձագերուն այս տեղափոխութիւնը տեսաւ, կարծես վրդովեցաւ և վերջապէս ինքն ալ ծունկերուս վրայ ցատկեց։

Քիչ կը սիրէի այս մեքենայութիւնը, և այս կերպով կատուներ սիրելու հրաւիրուիլս ամենևին ախորժելի չէր ինծ։

Նոյն միջոցին Նորին Բարձրութիւնն ոտք ելաւ և գնաց իր մատենատունին մէկ խորշէն բան մ՚առաւ և ինծ բերաւ։

Բերածը հովահարս էր։

— Օրիո՛րդ, պատմութիւնդ յիշեցուց ինծ թէ կը պարտաւորէի բան մը վերադարձնել քեզ։ Իբր թանկագին իր մը պահեցի ասի՝ քեզ տալու առիթին սպասելով։

Րիշլիէօ հովահարը ինծ երկնցուց։

Ձեռքը թեթեւակի սեղմեց իմինս․ ապա նորէն նստելով և իր թիկնաթոռը աւելի մօտեցնելով սկսաւ կատուները ընտանեբար գգուել նոյն իսկ ծունկերուս վրայ։

Ինքզինքս պաշտպանողական վիճակի մէջ դնելու ժամն եկած էր։

— Աղուոր կենդանիներ, այնպէս չէ՞, կ՚ըսէր ինծ կարտինալը։ Ինչպէս շնորհալի են։ Ինչպիսի կակղութեամբ և դիւրութեամբ կը շարժին։ Մանրանկար վագրեր են ասոնք։

Րիշլիէօ միթէ պարզապէս կատուի ցեղին համար ունենալ ձեւացուցած իր զարմանալի տրփին տեղի կը տար, և կամ միթէ պատրուակ մ՚էր այս իմ հետ մնալու համար ընտանութեան ճամբայ մ՚որ կրնար շատ հեռուի տանիլ զիս։

Կ՚երեւակայեմ թէ այս երկու պատճառն ալ կար։

Սաստիկ նեղութիւն կ՚զգայի րօպայիս վրայ խառն ՚ի խուռն խլրտող այս թաթերէն և ձեռներէն։ Կ՚զգայի թէ կատուներուն ամենէն վտանգաւորն էր ան որուն վրայ Սէն–Մօրլէն խօսած էր հետս։ Եթէ գրգռէի զինքը այն միջոցին ուր իր թաթերովը կը գգուէր զիս, եղքէն անոր ճիրանը զգալու մեծ վտանգին կ՚ենթարկուէի։

Այս պարագայիս մէջ նեղութենէ ազատելու լաւագոյն միջոցը սեպեցի սաստիկ աղաղակ մ՚արձակել և նուաղիլ ձեւացնել։

— Ա՜հ, խե՜ղճ որդեակ, գոչեց կարտինալը, վիրաւորեցի՞ն քեզի . . . . ։ Կորի՛ք, մատնիչնե՛ր։

Րիշլիէօ մայրը արտաքսեց, ձագերը կողովին մէջը նետեց, և սկսաւ պարտ սեպել իրեն լանջակալիս վերի մասին կոճակները քակել, կարծելով թէ շնչառութիւնը վերահաստատելու և զիս նուաղումէս սթափելու ամենէն պարզ միջոցն այս էր։

Բայց Եկեղեցիին մէկ իշխանը սենեկի սպասաւորի մը դերը կատարելու չէի ուզեր պարտաւորել։

Աչքերս բացի նուաղուն ձեւով մը, և տկար ձայնով մը մրմրացի․

— Բան մը չէ, տէր իմ . . . ամենեւին վէրք չտուին ինծ կատուները . . . . ։ Միայն թէ չէի համարձակեր ձեզ ըսել կատու-

ներուն դէմ ունեցած ատելութիւնս զոր չեմ կրնար զսպել....
վասն զի մանկութեան հասակէս 'ի վեր ունիմ զայն։

— Իրա՛ւ կ'ըսես.... շատ զարմանալի բան է ասիկա....։ Օ՛ն, հանգչէ՛։

Քիչ մ'ալ սուս կեցի. ձեռի հանգիստ աղէն քիչ մը շնչեցի։

— Ա՛հ, շատ սուրբ աղէկ ես, տէր իմ, և ճիշտ կ'ուզեմ պատմութիւնս շարունակել։

— Չէ՛, անօգուտ է շարունակելդ, ծայրէ 'ի ծայր գիտեմ զայն։ Պա՛հ, մ'աւաղ դիտմամբ քեզ պատմել տալ իմ այն խրատութիւնը. այս կերպով կ'ուզէի որ ժամանակ ունենանք հանգիստ ըլլալու միասին....։ Փա՛ռք Աստուծոյ, ահա հանգիստ ենք։

— Ի՞նչ. Ձեր Բարձրութիւնը գիտէք....։

— Լաւ գիտեմ մատուռին չինծու անմաքրութիւնը.... այո՛, այո՛, Սէն-Տօրլէն այդ անձին պարագաները մի առ մի պատմեց ինձ, և ներգացած եմ այնպէս Տը Սէնթ-Էվրըմօնին դէմ քանի որ անգթութեամբ ցաւցուց այդ թաւշեմնան, վարդագոյն թարմանալ այտերն աղուոր մորուքը, մինչդեռ աւելի քաղցր փափկանքի արժանի էր ան։

Ռիշլիէօ յայտնապէս ողորմածութեան ու հաճութիւններուն մէջ կ'ըմպէր։

Իր նայուածքին ունէր յանդգնութիւն մը զոր խօսքերը սակայն չէին համարձակեր առնուլ։

— Ա՛հ, տէր իմ, ըսի կարմրելու ջանալով և ճշմարիտ զղջման մը կերպարան մ'առնելով, այդ ունայն սատանալութեանց գովեստը մի ընէք. բա՛յց, բնութիւնը մեզի աւելի ապահովցուցած կերպարան մատնելու համար է որ այդ սատանալութիւնները կը տայ մեզ՝ որ տկար կիներ ենք։

Հետաքրքրին նայուածք մը յառեց իմ վրաս և կարծես թէ ուզեց մինչև հոգիիս խորքն իջնել։ Շատ համարձակութեամբ առակցի այս տեսակ մէկ բարոյական խուզարկութեան, և իմ դղրդուն կերպարանս առանց բնաւ այլայլելու, շարունակեցի.

— Ցանցանքիս և անցեալ աղջկութեանս պատշաճարանքը բա-

լռութեան կանոնաւոր ընթացքով մը կ'երթայ. Նպատակը կայանայ. ահա այս պատճառաւ վստահութեամբ Ձեզ եկայ, տէր իմ Սրբազան. Զիս թերեւս անարժան չպիտի համարիք ձեր հզօր պաշտպանութեան, և պիտի արգիլէք անկէն Տը Սէնթ-Էվրըմոնը հալածելու. խեղճ պզտիկ աղջիկ մ'որ ձեր ոտքն ընկած երդում կ'ընէ անձնափառ գայթակղութեան առիթ չտալու իր կենաց մէջ։

Այսպէս ըսելէն ետք ձեռնամած ծունկի վրայ եկայ իր առջև ճակատս վար ընելով, իբր թէ իր օրհնութիւնը ուզէի։

Այն, Դորին Բարձրութիւնը, կարդինալ Րիշըլիէօն ինծի հետ խիստ փափուկ խնդիրներ խառնելէ արգիլելու համար այս վարպետութիւնը բանեցուցի, և այս կերպով վարուելուս համար ալ որ զիս մեղադրէ, իրաւունք չունի. Սրբազանութիւնը միայն իրեն յատուկ զէնքովը յաղթուելու կը հաւնի։

Այս պարագային մէջ կրօնաւորին շնորհիւը միայն կրնայի ազատիլ մարդէն։

Րիշըլիէօ զիս իր առջև ծունկի վրայ եկած տեսնելով ունքը պտտեց ահարկու կերպով մը, կզակս վեր բռնեց իր չորացեալ ձեռքովը, և մինչև բիբիս տակը ծռելով՝ ըսաւ ինծի.

— Յուսամ թէ կատակերգութիւն մը կը ներկայես, այնպէս չէ՞։

— Ո՛հ, տէր իմ Սրբազան, կրնամ կարծել....։

— Օրիորդ, այդ հրաշալի դարձիդ հեղինակն անշուշտ Յէսուիտ մ'է, որուն քրիստոնէական զգացումները կը ճանչնամ, այնպէս չէ՞։

— Ձեր Բարձրութիւնը իրաւունք ունի զիս նախատելու... վասն զի ճանչցաւ ան անառակութիւններս և կը տարակուսի զղջման վրայ։

— Լռէ՛. ոտք ելիր, գոչեց՝ ասքը կռնակը դարձնելով։

Կ'սկսէի վախնալ թէ գուցէ խաբէութիւնս ձախող ելք մը պիտի ունենայ։ Կարտինալը բարկութեան շարժումով մ'իր թիկնաթոռը մեկուսի հրած էր, և հիմա յաջ և յահեակ ման կը գար և մեկուսի խորին աղաղակներ կը հանէր։ . . . .

Վերջապէս քովս եկաւ, ձեռքս բռնեց, և ինծ աղաղակ մը հանել տալու չափ ճզմելէն ետք սոսկալի ձայնով մ'ըսաւ.

— Եթէ զիս կը խաբես, վա՜յ քեզ ։

Տժգոյն էր ան. աչքէն տխուր հուր մը կ'արձակուէր ։

— Ա՜յ, ըսի մեղմիկ, ահա կատու-վագրը գրգռեցի ։

Արդ՝ ուրիշ դեր մը խաղալու փորձն ալ անկարելի կը դառնար, և կը պարտաւորէի մինչև վերջը շարունակել.

— Տէր իմ, ձեզի՛ կ'աղաչեմ, մրմռացի երերուն ձայնով մը, անկարող եմ այդպիսի խաբէութիւն մ'ընելու, և զիս շատ ապաւամ կը տեսնէք քանի որ այսպէս ձեր բարկութեան արժանի եղայ ճիշդ այն պատճառներով որոնցմէ ձեր բարեսիրութիւնը կրնար հեռանալ ։

— Բայց վերջապէս, օրիորդ, գոչեց կարտինալը, ո՞վ համարձակեցաւ քեզի դարձի բերելու ։

Հարցումս այլանդակ երևցաւ ինծի ։

Ամենամեծ դժուարութիւններ կրեցի խնդուքս զսպելու համար ։ Վերջապէս յաջողեցայ զսպելու և կարտինալին նայեցայ բնական զարմացման կերպով մը ։

Ռիշլիէօյին բարկութիւնն իջաւ ։

.. Ինքն իսկ ըհամբերելով խնդաց այս տարօրինակ հարցումին վրայ, որ իր յոյսերուն գերևումին առթիւ բերնէն փախած էր ։

— Խօսքերուս ես որքան որ կարևորութիւն կը տամ, նոյնքան տուր դուն ալ և ոչ աւելի, ըսաւ ինծ՝ ետ դալով և իր թիկնաթոռին վրայ նստելով ։ Կը յուսայի ես ինքս քեզի դարձի բերելու փառքը ունենալ . . . և գործը կատարուած գտնելով չկրցայ դժգոհութեան պզտի շարժում մը զսպել . . . ։ Բարեհաճէ՛ ներելու ինծ այս մասին ։

— Ձեր Բարձրութիւնը զիս բոլորովին ամօթահար կը թողու ։

— Հիմա, ըսաւ Ռիշլիէօ, ըսէ՛ ինծ թէ ո՛վ քեզի ուղիղ ճամբան վերածեց ։

— Լօրէնի մէջ արժանապատիւ քահանայ մը, տէր իմ ։

— Անունը ։

— Բիէր Ֆուրիէ ։

— Այո՛, կը ճանչեմ այդ անունը...։ Գաբուչինեան՝ Հայր Յովսէփ՝ ճիշդ անցեալ օր ինծի կը խօսէր այդ տեսակ մ՚առաքելոյն վրայ որ կ՚ըսուի թէ շատ բարիք կ՚ընէ Լօրէնի մէջ։ Խոստ կը տար ինծի Բարիզ բերելու զան. բայց արդէն Վէնսան Տը Բօլը ունինք. արդ յոռի դրութիւն մ՚է մեր բոլորտիքն այնքան տարբեր ժողովելը։ Գալատականները, որք ննջաւոր և չարատիրա ցեղ մ՚են, վտանգաւոր բաղդատութիւններ ընելու կը համարձակին։ Վերջապէս, սիրելի աղջիկս, այս ամէն մանր պարագաները ինծի կը յայտնեն առանց վարանումի և այնպիսի անկեղծ կերպով մ՚որուն ներքև հաճութեամբ կը հաստատեմ թէ ոչ խարեբայութիւն և ոչ մատնութիւն կայ։ Բարիզ վերադառնալէդ ՚ի վեր խոստովանահայր մ՚ընտրեցի՞ր քեզ։

— Տակաւին ոչ, ըսի, աղէկ չգիտնալով թէ ուր պիտի տանէր այս նոր կիրճը ուր կը մտնէր խօսակցութիւնը։

— Աւելի՛ աղէկ, պատասխանեց կարտինալը, հոգիդ կառավարելու պաշտօնը վրաս կ՚առնում։

— Ի՛նչ. Ձեր Բարձրութիւնը կը զիջանի....։

— Այո՛, բոլորովին մասնաւոր կերպով մը համակրութիւն ունիմ քու վրայ, և բնաւ չպիտի հաւանիմ որ ուրիշ մը հաստատէ քեզի այդ գովելի որոշումներուն մէջ։ Ինծի միայն կը վերաբերի յարատևութեան ճամբուն վրայ քեզ առաջնորդելու հոգը։

Ծուղակի մը մէջ գայթիլս կ՚զգայի։

Այս ծուղակէն դուրս ելնելս դիւրին բան չէր, և կ՚օքանչանայի այն սատանաութեան վրայ որով կարտինալը դժուարութեան առաջքը կ՚առնուր, կարծելով թէ այսպէս աղ իր նպատակներուն պիտի հասնի՝ թէև անշուշտ քիչ մ՚աւելի երկայնապէս բայց ապահովապէս։ Այն օրէն սկսեալ հասկցայ թէ Րիշլիէօ անշուշտ դիւանագիտական բարձր յատկութիւններ ունէր իրօք։

Սակայն այս ծուղակէն խոյս տալու համար արտաքոյ յետին ջանադրութիւն մ՚ընել։

— Ա՛խ, մրմռացի, չե՛մ կրնար երախտագիտութիւնս յայտնել, հա՛յր սուրբ... այդպիսի մեծ համակրութիւն մը զիս խղճիս

տուֆն կը վերակենդնէ . . . . ։ Այո՛, աշխարհիս հրապուրանաց դէմ կռուելու քաջասրտութիւնը պէտք ունենամ որպէս զի ես քան զևս արժանի հանդիսանամ ձեր յարգանաց ։ Իսկ խղճիս վարչութեան մասին գալով՝ յիրաւի չեմ պարտաւորիր հաւանիլ որ այսպիսի ծանրութիւն մը յանձն առնուք ։ Ձեր ժամանակը շատ սուղ է, հայր սուրբ . . . Գրանտան և Թագաւորը զայն ամբողջապէս կը պահանջեն ։

— Պարտաւորութիւնս կը ճանչեմ, Մարիօն, պատասխանեց կարտինալը . Երբ նոր պարտաւորութիւն մ՚ալ կ՚առնում վրաս, պէտք կրնամ կատարել զայն ։

Այս խօսքերը արտաբերեց այնպիսի ձայնով որ մէկ պատասխան չէր ընդունէր . ապա նորէն ձեռքս բռնեց, և իր ձեռներուվը գգուելու ձեւով մեղմիկ հարուածեց ։

— Անկից ՚ի զատ, սիրելի աղջիկս, շարայարեց յանկարծ կատարեալ ընտանութեամբ խօսելով, բարեկամական սիրոյ պէտք ունիմ ։ Զորս կողմս թշնամիներ պատած են . . . . որք յիրաւի կենացս շատ դժբաղդ կը դարձնէին եթէ միւս կողմէն ինչ ինչ ներքին գոհունակութիւններ չունենայի ։ Կ՚ուզեմ որ իմ սիրտս . . . քրիստոնէաբար, անմեղութեամբ . եղբայր մը սիրելու պէտս ։

— Բայց, Սրբազան . . . .

— Ո՛հ, մերժում չեմ ընդունիր . առաջ է պաշտպանութեանս և բարութեանցս փոխարժէքը ։ Ամիսն երկու անգամ կանոնաւորապէս պէտք գաս զիս տեսնելու . . . մեծ բան մը պահանջած չեմ ըլլար . . . սիրտդ ինձ պէտք բանաս, փրկաւէտ խրատներ պէտք առնուս քեզ, և միասին պէտք խօսակցինք իբր երկու լաւ բարեկամներ ։ Համոզիս եղիր . եկեղեցական եմ, և աստուածաբանական սուրբ ճշմարտութեանց վրայ կռթնելով կրնամ ըսել թէ մարդու և կնկան մէջ մտերմութիւնը մինչև ծայր կրնայ հասնիլ առանց Աստուծոյ դէմ մեղանչելու ։ Այսպէս, Մարիօն, ներելի է ինձ քեզի գեղանի գանձը և սքանչանալ ՚ի քեզ Աստուծոյն ձեռքէն եղած հրաշակերտին վրայ ։

— Ձեր Բարձրութիւնը, ըսի՛ աչքերս վար ընկելով, կրօնք պէտք

է աղէկ. տրված ըլլայ այս բաները, և որովհետև կը փափաքիք անձամբ առաջնորդել զիս, ալ ինձ կը մնայ միայն խոնարհու-թեամբ և վստահութեամբ յանձնուիլ ձեր առաջնորդութեան կա-ռավարութեան։

— Բա՛հ, պատասխանեցիր . . . ։ Սիրելի՛ աղջիկ, ինչ պաշ-տելիք աղջիկ, և սա Տէպարօ յիրաւի բաւական անմեղութիւն ձգած է ներա վրայ։ Այո՛, Մարիօն, վստահութիւն ունեցի՛ր. մեր բարեկամութիւնը քաղցր զգուանաց արտօնութիւն պիտի տայ. ա-ռանց խղճահարութեան պիտի զգուեմ քեզի, դուն ալ նոյնպէս պիտի հաճնիս զգուելու։ Անմեղ փափաքը մեղք մը չէ այնքան քըն-քուշ և ազնուակ ձեռք մը շոյելը։ Կրնամ նոյնպէս շրթերս մօտեցնել այդ գեղեցիկ ճակատին որ այնքան անարատ լոյսով մը կը փողփողի . . . ։ Հաւանէ՛, աղջիկս, քոյրի համբոյր մը տուած պիտի ըլլաս միայն։

Այո՛, կ՚երդնում թէ յանդգնեցաւ պագնելու զիս։

Յանկարծ ահարեկ աղաղակ մը հանեցի։

Կարտինալին աթոռին ետևէն տարօրինակ երևում մը նշմարեր էի, գունաթեկ երես մը, հերատ գանկ մը, մօրուսաւոր կզակ մը և գրեթէ ճակատին վերևը բացուած մեծ աչեր, որք ինձ կը նա-յէին շուարումով։

Արագօրէն ոտք ելայ, և քովս կրակարանին առջևը քնացած մայր կատուին պոչը ճզմեցի։

Կատուն ցաւէն արթննալով սկսաւ վազվզել և սատանայպէս մլաւել։



Ը

— Հա՛, ինչ բան ունիս, ապուշներու՛ն ապուշը, զարկ կաղ-

տինալը, արհամարհանօք անգամ մը նորեկին նայելով որ զար-հուրանացս պատճառն էր։

Հայր Ցովսէփ, կամ գորշագոյն բարձրութիւնը, վասն զի այսպէս կ'անուանէր այն նշանաւոր անձն որ ազատօրէն պաշտօնէից խուցը կը մտնէր, յարգանօք խոնարհեցաւ, և պատասխանեց.

— Տէ՛ր իմ, դեռ երէկ արտօնութիւն չտուի՞ք ինծի ձեր քովը գալու երբ ծանր գործ մը պատահի։

— Անշո՛ւշտ, անշուշտ, պատասխանեց կարտինալը։

Գնաց հանգստեան անկողիններուն մէկին վրայէն վերադրուած կտաւն առաւ և գիրքն առնելով նորէն բերաւ ամենապատուելի կարեկցութեան նշաններ ցոյց տալով անոր։

— Բայց, շարայարեց Րիշլիէօ, ժամանակդ շա՛տ դէշ կ'ընտրես... օրիորդը Գարուշինեաններ տեսնելու սովորութիւն չունի։ Իրեն այնպիսի վախ մը պատճառեցիր, որուն անախորժ հետեւանքը կրողն եղաւ կատուիս պոչը։

— Չէի կրնար կանխատեսել... մրմռաց Հայր Ցովսէփ։

— Մարդս միշտ կանխատես է....։ Քեզի պագնելու տեսա՞ն, Մարիօն։

Կարտինալին այս կոշտ հարցման վրայ այնտեղուս կաս կարմիր ըլլալը զգացի, և պատասխանեցի բոլորովին ամօթահար.

— Այո՛, Սրբազան Հայր։

— Իրա՛ւ, մեր տունն էիր դուն, ըսաւ Գարուշինեանին....։ Եթէ էիր, ահա կ'իմացնեմ քեզ թէ օրիորդն իմ ազգականուհիներուս մին է, մանկուհի մ'որուն ծնիլը տեսած եմ....։ Իր և իմ մէջ գգուանքը ներելի է....։ Ցամօթ լիցի որ չար խորհի։

— Ո՛հ, ըսաւ Հայր Ցովսէփ, որուն շուրթերուն անհաստատ-բար ժպտիլը կերպիւ մը կրցայ նշմարել, Աստուած չընէ որ են-թադրեմ թէ....։

— Լռէ՛....։ Ըսէ՛ նայիմ, ի՞նչ է այն ծանր գործն որուն համար եկար։

— Պ. Տը Նիզ կարտինալն ապտակ մը տուաւ Պ. Տը Նըվէր դուքսին։

— Կօնդակին պատճէն մը, գոչեց Ռիշլիէօ։

— Այո, տէր իմ, ճշմարիտ պատճէն մը, որ Արդարութեան Պալատին ժողովին մէջ յիսունէն աւելի ականատեսներու՝ առջև տրուեցաւ. կարտինալն այս առաւ. Թիկնոցով և մեծ կօշիկներ-ով հոն եկաւ իր հակառակորդ կողմին այս նախատինքը ընելու համար։ Արդէն կը գուշակէք թէ այս պատճէին առիթն է այն դատն որ իրենց մէջ տեղի ունեցած է Գլունիյի աբբայարանէն կախում ունեցող աւագաւոր մենաստանին նկատմամբ։

— Ապահո՞վ ես այդ մանր պարագաներուն մասին։

— Գ. Տը Նըվէրի ազնուականներուն մին ձեր նախասենեակին մէջն է։ Եկած է յանուն իր տիրոջ աղերսելու ձերդ որ նախատինքին վրէժը զէնքով լուծելու հրաման ընդունինք Թագաւորէն։ Ահա այս պատճառաւ պարտ սեպեցի ինձ անմիջապէս հոս գալ։

— Մենամարտութիւն մը, անկարելի բան է. կարտինալները չեն զարնուիր։

— Սակայն ուրիշներուն կը զարնեն, տէր իմ, ըսաւ գորշա-գոյն բարձրութիւնը, որ շատ գոհ էր այս բառախաղէն։

— Այո. Նըվէր հատուցում մը պահանջելու իրաւունք ունի . . . Կ'ուզէի որ Լօրէնին այս ամեն անիծեալ անպիտանները կրա-ղին երթային։

— Համարձակի՞մ արդեօք կարծիք մը յայտնելու, ըսաւ Գա-պուչինեանը։

— Խօսէ՛։

— Նախայարձակը այս գիշերէն իսկ Պաստիլ կը ղրկէի։

— Այո, իրաւ է . . . արդէն ես ալ ատոր վրայ կը խորհէի . . . Մենամարտութիւնը արգիլելու ամենէն պարզ միջոցն այս է, և ես իմ վրայ կ'առնում հաստատել Կոնդակին թէ այս հա-տուցումը կը պարտաւորի բաւական ըլլալ իրեն։ Ա՛հ, կարտի-նա՛լ, կարտինա՛լ դու, պիտի առնէ՞ս Պաստիլլին համը, կ'երդ-նում թէ պիտի առնես . . . Այս գործին զբաղինք։

Ռիշլիէօ սեղանին առջևը նստաւ, և մօտենալու նշան ըրաւ ինձ։

— Երթաս բարև . . . շուտ տեսնուինք նորէն, Մարիօն, ըսաւ

Գորշագոյն Բարձրութիւնն այս հրամանէն շատ ողոքուած չերեւցաւ։ Ռիշլիէօ իբր ծառայի մը հետ կը խօսէր անոր։

Սակայն Հայր Ցոզէփ համբերատարութեամբ հնազանդեցաւ, հրեց այն կոճակը, որուն միջոցով կը բացուէր գաղտնի դռնակը, և շատ դժգոհ կերպարանով մը զիս առաջնորդեց նեղ ու նուրբ անցքերուն մէջէն։

— Կրնաք աւելի հեռու չերթալ, հայր սուրբ, ըսի, կարծելով թէ հաճելի պիտի ըլլամ իրեն իր աշխատանքին մէջ մնալէն զինքը ազատելով. դիւրապէս պիտի անցնիմ այս շրջանաւոր փողերէն ուսկէ արդէն անցուդարձ ըրած եմ։

— Հը՛մ, մրմռաց ան, կարտինալին առհմուհին ըլլալովդ հանդերձ զինքը դրեթէ չես ճանչեր։

— Ի՞նչ ըսել կ'ուզէք։

— Երբեք ոչ ոք անպատիժ կը հակառակի անոր հրամանաց մէկ մասին։

— Ուրեմն շա՛տ սոսկալի է ան։

— Այո։

— Կ'ըսուի թէ յարքունիս ընդհանրապէս սիրուած չէ Պ. Տը Ռիշլիէօ. իրա՛ւ է։

Հայր Ցոզէփ դաժան նայուածք մ'արձակեց իմ վրայ, չպատասխանեց հարցումիս, և վեր ըրաւ իր հանդերձին քուղթան որու ներքև յանկարծ աներևոյթ եղաւ իր մօրուսաւոր երեսը։ Բայց երբ փողերուն ծայրը հասանք, խիստ զարմացայ անոր քուղթան իր ուսին վրայ նետելը, ծանրապէս ճիշդ երեսս նայելը և կատարեալ հանդիսաւորութեամբ մը յետագայ խօսքը ըսելը աւելնելով.

— Օրիո՛րդ, կարտինալը սուրբ եկեղեցական մ'և Տէրութեան մեծ պաշտօնեայ մ'է։

Ապա կռնակը ինձ դարձնելով աներևոյթ եղաւ։

— Շնորհակալ եմ տուած տեղեկութեանդ համար, հա՛յր սուրբ, պոչեցի ետևէն։

Եւ կառքիս մտեցայ Գապուչինեանին մաքիավելլական լռութեան վրայ շատ խնդալով.

Րիշըլիէօ իր պաշտօնէութեան մէջ երկար ժամանակ իր քովը ունեցաւ այս տարօրինակ անձը, և նոյնէն Հայր Ժոզէֆին ազդեցութիւնն ոչնչացան աներեւցաւ որ պալատականներն և Լուի ԺԳ ինքն անգամ առանց աժգունելու չէին նայեր անոր ։

Գորշագոյն Բարձրութիւնը գրեթէ կարմիր Բարձրութեան չափ սարսափ կ'ազդէր ։

Այս կնգուղաւոր և արեխաւոր փառասէրը խոստովանահայրներ միջոցաւ աւելի գնաց, և իր բաղդին հիմը դրաւ Անթուանէթ Տ'Օրլէանին խիղճը վարելով ։ Շարլը Տը Գօնտիին այս արքեւորէ կինը՝ Գարաւչիննանին թելադրութեանց տակ տալով Մարի Տը Գօնզէլիէյին պէս Բենեդիկտոսուհիներու վանքին մէջ ուզեց վերանորոգութիւ մը փորձը ընել, և այս կրօնուհիներուն անունը Գողգոթայի աղջիկներ անունին փոխեց ։

Հայր Ժոզէֆ՝ Անրի Դ.ի իշխանութեան ժամանակ զինուորական եղած էր իր ընտանեկան անունով որ էր Լըկլեր Տիւ Թրամպլէյ ։

Թէև աստուածային կնգուղի փոխած էր, իր բոլոր կեանքը մէջ ինչ ինչ ռազմական գաղափարներ պահեց, որք պալատականները խնդացնելու ծառայեցին, ինչպէս Րիշըլիէօ ևս շատ անգամ զանոնք խնդացուց սիրային յաղթութիւններ ընելու պահանջատութիւններովը ։

Բայց այս երկու կրօնաւորներն իրենց արիւնարբու արարքներովը շատ սուղի նստեցուցին այն կատակերգութիւնը զոր կը տային ։

Տը Նըվէր դուքսը, Շարլը Տը Գօնզագ, մինչ այն ատեն որ Տը Գիզ կարտինալէն ապտակ մը կերած էր նոր, Հայր Ժոզէֆին մեծ բարեկամութիւն ցոյց տուած էր ։ Համաձայնելու և իրենց խօսքը մէկ ընելու արժանի էին, վասն զի աշխարհիս երկու այլանդակագոյն միտքերն էին անոնք ։

Անշուշտ երկուքն ալ կրթուելով Սերվանտէսին Տօն Գիշօթ տը լը Մանշ անուն գրքին ընթերցումէն, որ Մատրիտի մէջ հրատարակուած և նոր պաղղիերէնի թարգմանուած էր ։ Հին ասպետութիւնը իր բոլոր շքեղութեամբը վերահաստատելու և Արքայ

թագաւորը իր Բողոզնի–Ծերմանին անտրկիւղ ընկերներուն հետ յարուցանելու այլանդակ խորհուրդը երկնային օրին մէկը:

Ետքը խաչակրութեան մը պիտի կանչէին նոր ասպետները և Երուսաղէմը փրկելու պիտի տանէին զանոնք:

Ըրլէր Եւրոպայի բոլոր դահլիճներուն մէջ մեքենայութիւններ նիւթեց. Գաբուչինեանը Պետրոս Անապատականի դեր խաղաց, ամեն տեսակ թափառականութեանց հետեւեցաւ, յաջ և յահեակ վազեց, Ֆրանսայէն Սպանիա և Սպանիայէն Հռոմ գնաց, քարոզեց, գրեց, շանթեր արձակեց լատիներէն և ֆրանսերէն լեզուներով, ոտանաւոր և արձակ, և իր զառանցումին մէջ կատարեալ քերթուած մը շինելու տարօրինակ մտցուց ինքզինքը. այս քերթուածին անունն էր Թիւրքիադ (Թուրքիական) որու մէջ բոլոր ցամաքային Եւրոպան Տաճիկները կոտորելու գրգռեց:

Ուրբանոս Ը. բաղձ այնքան մեծ արժէք տուաւ այս երկին, որ անմիջապէս Էնէականէն վեր դասեց զայն: Վեր դասելը շատ պատիւ ըրաւ Մաֆէոս Պարպերինիին գրական հմտութեանց:

Բայց ամեն բանիբուն անձինք արհամարհութիւն ցոյց տուին այն երկին նկատմամբ:

Սակայն քանի որ աշխարհիս ամենէն մեծ տղայամտութիւնները նորընծայ հետեւորդներ կը գտնեն, քանի մը մեծամեծ մարդիկ կոնգակին օրինակին հետեւելով խաչակիր եղան, և Գաբուչինեան կրօնաւորը յաջողեցաւ եօթը նաւ կազմ ու պատրաստ ընելու որոնցմով կ'ուզէր, կ'ըսէր ան, Պօլիս երթալով Սուլթանը բռնել և շղթայակապ բերել Արքայական մայդանին վրայ Բարիզեցիներուն ցոյց տալու համար:

Խաչակրութեան վախճանն եղաւ անբան քիչիլ մ'և Տն Քիշօթին Ֆրանսայի մէջ ընդհանուր ընթերցումը:

Այս ծանծաղամտութենէն փառասէր Գաբուչինեանը միայն օգուտ մը քաղեց:

Ռիշլիէօ զան Ադֆենծանի մէջ տեսաւ, գուշակեց թէ ամենուրեք անուն հանելու համար հանած էր այս ամեն աղմուկը, արքունեաց հետ իր հաշտութեան մասին իբր միջնորդ գործածեց զան,

և այս կնգուղին ներքև քաղաքականութեան անբաւ տաղանդ մը դի-տեց։

Կարտինալն այն օրէն սկսելով Հայր Յովսէփը իր քովն առաւ։

Երբ պաշտօնեայ եղաւ Րիշլիէօ, պալատին մէջ կը ծածկէր Գապուչինեանը, այսու ամենայնիւ հետը կը խորհրդակցէր և ամէ-նէն ծանր պաշտօնները կը յանձնէր անոր։

Գէշ կը վարուէր Հայր Յովսէփին հետ, վասն զի չէր ուզեր թողուլ որ շատ իշխանութիւն առնու ան։

Վանականն իր կեանքը կարտինալութեան աստիճանը մտածե-լով անցուց, զոր Րիշլիէօ կը խոստանար անոր, միանգամայն գրե-լով 'ի Հռոմ որպէս զի արգելու Պապը իր խնդիրը նպաստաւո-րապէս ընդունելու։ Հայր Յովսէփին իրական արժէքը և բարձր յաջողակութիւնը ճանչնալով կը վախնար որ ան օրին մէկին իր տեղը չանցնի ատակութեամբ. ուստի իր ինքնամոլութեամբը զան խոնարհ և ծառայական վիճակի մը մէջ պահելու հոգ տարաւ։

Իրաց շատ անգամ ըսած եղաւ թէ ծառան դիւանագիտութեան մէջ տիրոջմէն աւելի տաղանդ ունէր։

Րիշլիէօյին անհրաժեշտ մարդն էր այս Հայր Յովսէփը։

Գապուչինեան կրօնաւորը Րիշլիէօյին կ'օգնէր պահելու բռնա-ւորութեան այն անողոքելի հանգամանքը, որով շարունակ դէպ առ-ջև ուղղակի կը քալէր, այն ժամանակ իսկ ուր իր ճամբան վեր-ջը հասնելու համար պէտք եղաւ ոտքը արեան մէջ դնել։

Կարտինալը գրեթէ միշտ Եւրոպայի վեհապետներուն կը ղրկէր զան։ Լըքլէր Տիւ Թրամպլէյ սաստիկ համարձակութեամբ մը կը խօսէր անոնց հետ։ Չէր ճանչեր ոչ խոչընդոտները, ոչ յոգնու-թիւնը. յանդուգն և անողոքելի էր ան։

Օր մը դէպ 'ի Գերմանիա գաղտնի արշաւան մ'ընելու հրա-ման տուաւ պաշտօնատարի մը։

Սա առաջին հրամանները անշուշտ բաւական բացայայտ չե-րևելով չուզեց ճամբայ ելնել առանց աւելի մեկին տեղեկութիւն-ներ ուզելու։ Եկաւ Հայր Յովսէփին և տեսաւ որ պատարագ կը մատուցանէ ան։

— Բայց, հայր սուրբ, ըսաւ դէպ անոր ականջը ծռելով, ինչ ընելու է եթէ այս մարդիկ պաշտպանողական դերը մ'առնուն։

«— Թող ամենքն ալ սպաննուին» պատասխանեց կրօնաւորը։

Եւ իր պատարագը շարունակեց։

Բոլոր արքունիքն այս մարդուն կը վերագրէր իր ուրոյն մեծագործութեանց արժէքը և անգթութեանց անամօթութիւնը։

Լուի ԺԳ-ին ստուերը կարտինալն էր, ասոր ալ ստուերը Հայր Ժօզէֆն էր։

Րիշլիէօ ինքն իսկ կերպիւ իւիք հաստատեց այս կարծիքը երբ Հայր Ժօզէֆին մահուանը ժամանակ գոչեց.

«— Աջ թևս կորուսի»։

Լըգլէր Տիւ Թրամպլէյ 1638ին Րիւէյլի դղեկին մէջ մեռաւ, և իրեն համար դառնապէս ցաւ զգաց պաշտօնեան որ իր զօրութեան ամենէն գործունեայ գործիքին խորտակիլը տեսաւ։

Առանց անիրաւութիւն ըրած ըլլալու կրնանք պնդել թէ այս երկու մարդերը հաւասարապէս անգութ էին։ Եթէ Հայր Ժօզէֆին աւելի տաղանդ ունէր, Րիշլիէօ նուազ անգութ բնաւորութեան մը տէրը չէր։ Երբ իր ամենէն հրէշային և ամենէն վատ անգթութիւնը 'ի գործ դրաւ, երբ խեղճ Սէն-Մարսը սպաննեց, իր Գաբուչինեանին խրատները չունէր։

Սակայն այս էջերուն վրայ սուտ ծաւալելու և զանոնք արտատուքովս գրելու ժամանակը չեկաւ դեռ։

Մտքէս չէր անցներ թէ Ճակատագիրը զիս պիտի հանէր այն մարդուն առջև, որ օր մ'իմ ամենէն բուռն յուսահատութեանս պատճառը պիտի ըլլար։ Րիշլիէօ ինծի համար տակաւին անծանօթ հրէշը չէր. բայց արդէն այն կեղծաւորն էր որ իր կիրքը կրօնաւորի վերարկուին ներքև կը պատսպարէր, այն բռնաւորն որ ամենևին պատասխան չէր ընդունէր, նաև երբ ազնուութեան և խղճի հակառակ բաներ կը հրամայէր։

Ն'երևակայէ՞, կ'ըսէի իւրովի, թէ իր շահուն համար լրտեսութիւն պիտի ընեմ։ Որքան շատ դժուար և շատ վատ կը հա-

Կարտինալին հրամանին նայելով Սէն-Սօրլէնը եւ մեռնելու կը պատրաստուէի։ Բայց ի՞նչ կ'ըսեմ. ըստ խղճմտանքի պէտք էր որ ինքզինքս ալ մեռնէի։

Ցիրաւի պաշտօնէին այս պահանջումը խելօթենէն աւելի բան մ'էր... Ճիշդը և բացէ 'ի բաց խօսելով ապշութիւն մ'էր այս։

Չորեքշաբթի և շաբաթ օրերը հիւր ընդունելու որոշում ընելով աղաչեցի Սէն-Սօրլէնը որ մեր բոլոր հին ծանօթները բերէ։ Պատույն վրայ խօսք տուաւ բերելու և բռնեց խօսքը։ Նախ և առաջ տիկին Տը Սէնթ-Էվրըմօնին բոլոր հաւատարիմները յափշտակեցի. հարկ եղաւ իրեն շաբաթն երկու անգամ զանոնք ինծի փոխ տալու համակերպիլ։

Այս պատճառաւ կը կատղէր նէ։

Թող տուի որ Վօժըլա տանս մէջ քերականութեան վրայօք առանձին տեսակ խօսքերով խատորի առանց նեղութեան, որ Մէյնար շատ ազնիւ տաղերգութիւններ կարդայ ինծի դէշ կերպով, և ծեր Տիւ Սէնթ-Էսբրի ապրեստս ալ որ և է խօսք չառարկէ։

Ակմբանոցս կը լեցուէր։ Ամենաք Սէն-Վիգթօր թաղին պզտի տան հերկերը կը վազէին կը գային իրենց մեծարանքը ինծի մատուցանելու համար։

Վիլարսօ՝ կոմսուհիին հետ ամուսնացած ըլլալով ամենէն սաէպ եկողներուն մին էր. իր սիրելի սանուհին կ'անուանէր զիս, և ես ալ սիրելի կնքահայրս կ'ըսէի անոր։ Աղաչեցի Վիլարսօն որ մեզ բերէ իր տղան, որուն խօսքը ըրած էր ինծի մարեշալը։ Վախցա որ այս երիտասարդն ինծի սիրահարի գուցէ. մերժելու պատճառ մ'էր այս, և չէի կրնար Պ. Տը Վիլարսօն պախարակել իր խոհեմութեան միջոցներուն նկատմամբ։

Սակայն իր տղան՝ որուն կ'արգիլուէր ակմբանոցս՝ գնաց ուրիշ տեղ թռչելու, և քիչ մը ժամանակէ ետք Նինօնին սիրահարեցաւ։

Չգիտեմ թէ ուր է տարբերութիւնը։

Շըվրի նախագահը, Գամպուզարին այս տարօրինակ պաշտօնեան ալ ուրիշներուն պէս փութաց տունս յաճախելու։ Բօզզըրամյէն

եալք անյոյս հալածականներուս ամենէն կատաղին եղաւ Ըրվըի։ Աղաչեցի որ տեղեկութիւն տայ ինձ վաղեմի նշանածիս վրայօք։ Իմացուց ինձ թէ Գամիւզար Հաշտեկալութեան տաճարին մէջ վարդացած նուիրակ էր միշտ և թէ Լիզէթին հետ կարգուած էր։

— Տէ՛ր Աստուած, գոչեցի, տես թէ ինչ եղաւ թշուառին վերջը։

Բայց Ըրվըի այս այլանդակ ամուսնութեան վրայ մանրամասն տեղեկութիւններ չունէր որ ինձ հաղորդէր։

Մալերպ և իր սիրական աշկերտն երբեմն կը զիջանէին Տէ Թուրինել փողոցին ճամբան բռնելու, և նահապետին ներկայութիւնն այն տանտուան բոլոր գրագէտները տունս բերաւ։

Հետաքրքրական ժողովածոյ մը կը կազմէին անոնք։

Վօղըլէն Տէզ Իվըթօ խիստ ուրախ դէմք մ'ունէր միշտ։

Ակմբանոցս լեցնելու հոգը վրան առնողն ուրիշ նշանաւոր անձ մ'ալ բերաւ որ աւելի տարօրինակ էր և զոր առջի անգամ մուրացիկ մը կարծեցի։

Ծիծաղաշարժ, ահարկու և տխմար երես մ'ունէր ան։

Գրեթէ անկարելի էր անոր նայիլ առանց շնչասպառ խնդալու։

— Ա՛հ, բարեկամ, ըսի Սէն-Սօրլէնին ականջէն երբ ինձ ներկայեց այս անհատը, Իվըթօն բերելդ ոչ այնքան հոգ է, վասն զի ծաղրելի է ան, բայց ասի....։

— Մաքուր չէ, կը խոստովանիմ, բայց եպերելի կ'ըլլայի, սիրելիդ իմ, եթէ հանճարն աղտոտ ըլլալու իրաւունքը չունենար։

Ապա խիստ բարձր ձայնով ըսաւ.

— Պարոնին անունն է Շաբըլէն։ Առաջին կարգի բանաստեղծ մ'է ան։ Կարտինալը՝ շատ կը յարգէ զան, և Նորին Բարձրութեան իրաւացի կարծիքը կ'ընդունիմ ես ալ։ Պարոնն երկու տարիէ 'ի վեր դիւցազնական ահագին քերթուած մը շինելու կ'զբաղի, որ յոյս ունիմ թէ մինչև քսան կամ երեսուն տարի պիտի լմննայ։ Քերթուածին անունն է Լա Բիւսէլ (Կոյսն) որ հեղինակին անունը պիտի անմահացնէ։

Զանք ըրի չխնդալու, և հաւատացի Շաբըլէնին թէ բանի

եկած է ինք։ Չիս բարևեց մինչև գետինը ծռելով, և գեղեցիկ աչերուս վրայ շողոքորթութիւն մ'ըրաւ որուն անհամութիւնը նշանաւոր էր։

Այս բանահիւսը Թիկնոց մ'ունէր որ՝ չարասէրներուն խօսքին նայելով Տրովադայի առման ժամանակ կտրուած էր։ Այս Թիկնոցին կտաւը աղաւնիի պարանոցի գոյն և ասուեղէն կանաչ աստառ մ'ունէր. զարդարուած էր նաև խել մը պղտի ժապաւէններով, որոնց նախնական գոյնը Ճարպեայ հրկէն խաւ մը ներքև պահուած ըլլալով չէր կրնար գուշակուիլ ամենէն յաջողակ կախարդէ մը։

Մեր մարդուն սև մազուսէ պիտակաւոր գրպանն իր քրոջ մէկ հին ներքնակին կտաւովը շինուած էր. Շաբըլէն ներս հեռ Լա Կրանտ—Թրուանտրի փողոցը վերնայարկի մը մէջ կը բնակէր։ Եթէ տամներկուքի չափ եղի բիծեր և Ճերմակ գերձանով կարուած երեք պատառուածներ 'ի բաց առնուին, այս գրպանը Շաբըլէնի հագուստին ամենէն անստգտանելի մասը կը կազմէր։ Չիտեմ թէ ուսկէ խօսք գտնելու է բացատրելու համար իր սոսկալի կերպով լայնուած կօշիկները, ոլորաձև, գալարուն և անոր փրունքին երկու ծուռ սիւներու կերպարանք տուող գուլպաները, գլխարկը. . . գլխարկ մ'է այն . . . իր կեղծամը . . . ։

Հոս կանգ կ'առնեմ։ Բոլոր նկարագրական քաջասրտութիւնս կը հեռանայ իմմէն։

Իմմէն աւելի յանդուգն անձ մը Թերևս օր մը պիտի նկարագրէ Շաբըլէնը, և անշուշտ մեր վերջին քեռորդիները պիտի չզգանչացնէ։

Այն ժամանակ Շաբըլէն կրնար տը առաւելն քսանութ տարեկան ըլլալ. բայց իր տգեղ և ծերական դէմքը տեսնողը քառասնամեայ կը կարծէր զան։ Իր ձայնին հնչիւնը գիզուն սանի մը հնչիւնին կը նմանէր։ Բերնէն կը պակսէին տասնեօթ ակռայ, զոր՝ ինչպէս կ'ըսուէր՝ քաշել տուած էր, վասն զի վարազի կնճիթի ձևով շրթներէն դուրս խոյս կը տային անոնք։ Վերջապէս անոր նկարագրութիւնը կատարեալ ընելու համար կ'ըսեմ թէ

աչերը պղտոր, կլոր և գեղջին, քիթը պալարուտ (bourgeonné) և ականջներն երկայն էին։

Շարըլէնին անձին ազնուութիւնը և իր հագուստին անկարգութիւնը եթէ 'ի բաց առնում, պէտք է ըսել թէ բաւական լաւ բնութեան տէր մարդ մ'էր ան։ Կատակի կը համբերէր առանց շատ բարկանալու։ Համեստութեամբ կը խոստովանէինք թէ առանց տաղանդի, բայց երկիւղած գրագէտ մ'է ան։

Իր ուղղամտութիւնը մանաւանդ առած մ'եղած էր։

Երբ Ռիշըլիէօ ածական մը կապեց անոր, Շարըլէն Նորին Բարձրութեան ընդհանուր վճարիչ Պուարօպէյին ալ մ'եւս ղրկեց, զոր իր ածականին մէջ անուղի գտած էր։

Բայց կը սխալի ով որ Իվեթօներուն և Շարըլէններուն վրայ կը գտնէ միւս գրագէտները որք ակումբանոցս կը յաճախէին։ Շատ սիրուն և շատ նշանաւոր գրագէտներ ունէի։

Վօաթիւր ակումբանոցիս զուարճութիւններուն և ոչ մէկէն զուրս կը մնար։

Միջա հասակ, մազերը գանգրաձև յօրինուած, խնկաբոյր իւղերով օծուած, գոհարեղէններով և ժանեակներով ծածկուած կատարեալ տղայ մ'էր ան։ Իրեն համար կ'ըսուէր թէ հրեշտակի մը պէս խելամիտ, կապիկի մը պէս չարաճճի, Հերքիուլի մը պէս սիրահար, և Լանսքընէյի մը պէս խաղամոլ է։

Վօաթիւր Պալզագը և Բաթրիւն բերաւ ինծ։

Պալզագ այն ատեններն նորաձև գրագէտն էր։

Իր առաջին Նամականիին ձեռքէ ձեռք կը յափշտակուէր և գաղղիական լեզուին վայելչութեան և յստակութեան այնպիսի զարկ մը կը տար, զոր արձակ գրուած որ և է երկ մինչև այն ատեն չունեցած էր։ Իր պաշտօնակիցներն անոր արժանեաց մասին նախանձոտութիւն ցոյց կու տային, և ցաւելով տեսայ որ Մալէրպ անգամ անոր նկատմամբ ցոյց չտուաւ այն արդարութիւնը զոր պահանջելու իրաւունք ունէր Պալզագ։

Ամեն ատենագրաց տաղանդաւոր մարդերուն պէս Պալզագ [illegible]

մաթիւ բամբասողներ ունեցաւ։ Վանականները բոլորովին հակառակեցուց իրեն դէմ միայն մէկ խօսքով, այսինքն անոնց նկարագիրը ընելով. «Անոնք աշխարհիս մէջն են ինչ որ են մուկերը փեթակի մը մէջ»։

Իսկ Բաթրիւ բոլորովին անտիական փաստաբան մ'էր, որ իր բանագիտութեան երկրորդ աստիճանը ամենէն առաջ առած էր և տակաւին չէր գիտեր թէ գրագիտութեան զլալի փաստաբանութիւնը արտաքսելով թէ փաստաբանութեան՝ գրագիտութիւնը արտաքսելով։

Անձեղի մը պէս կը շաղակրատէր. ուստի յորդորեցի զինքը որ փաստաբան ըլլայ։

Ուրիշ շատ անձեր՝ որոնց արժէքն ընդհանրապէս ճանչուած էր թէ՛ քաղքին և թէ արքունեաց մէջ՝ պատիւ կը սեպէին հրաւէրներս ընդունիլը։

Ամենագեղարթ երեկոյթներ ունեցայ ուր երիտասարդներ և ծերեր մէկ մէկէն աւելի եռանդապէս կը տաքնային, ուր մէն մի խօսք փայլակի մը պէս կը շողար, ուր խօսքերը յառաջապահներու կռուի մը մէջ անզգացող գնտակներուն արագութեամբն իրարու դէմ կը նետուէին։ Սլաք մը կ'արձակուէր քեզ ու երգիծաբանութեամբ մը կը պատասխանէիր սլաքին։ Հանճարեղ խօսքերու անզաւակար հուր մը, խելամտութեան մրրիկ մը, մտական փոթորիկ մ'էին ակմբանոցիս գիշերուան խօսակցութիւնները։

Լեզուի հարուածներէ բաղկացող այս ճակատամարտներուն մէջ Սէն-Սօրլէն քաջութիւն ցոյց կը տար։

Պասօմբիէր երբէք չէր յաղթուէր։

Երբեմն զինադուլ մը կ'որոշուէր, և մեր խօսակցութիւններն աւելի մեղմ և աւելի խաղաղական կը դառնային։

Բաղան [illegible] մ'երախայրիքը կը տար մեզ։ Ծերունին Ց'իւրֆէ՝ իր Աստրէ անուն վիպասանութենէն քանի մ'էջ կը կարդար, և Լինեօնին հովիւներուն քաղցր զբօսանքը կը նկարագրէր։ Անոր դպրոցին վերաբերող ուրիշ քանի մ'անդէորդական վիպագիրներ ևս իրենց կարգը ունէին, և տաւարածական ալ և

այլ երգերուն վերջը չկար. շուշաններու և մարգերու վրայ կը քայլէինք, մեղրային առուակներու մէջ կը լողայինք։

Վերջապէս այնքան անուն տուաւ ակումբանոյս որ աւելին Տը Րամպույեէ վրդովեցաւ, և ներա հռչակաւոր կապոյտ սենեակը սառ-դալէս մախեցաւ որ չնմանի Տէ Թուրնել փողոցին ակումբանոցէն։





## Թ.

Բերկրալի և՝ կը պարտաւորիմ ըսել թէ՝ նաև պատուաւոր կեանք մ'ունեցայ տասնութ ամիսուան մէջ որք մայրաքաղաքը վե-րադառնալէս 'ի վեր անցեր էին։ Պասօմբիէրին հետ տարփանքս անթափանցելի վարագոյրով մը կը ծածկուէր. ուրիշ ամէն սի-րանուէր մեծարանք կը մերժէի այնպիսի բարբարոսութեամբ որ ընդհանուրին յարգն ու համարումը կը հրաւիրէր իմ վրայ։

Բայց և այնպէս Սէն-Մօրլէն կը համարձակէր յոյսով սա-ծուելու. խեղճ քարտուղարին յայտնի կերպով նիհարիլը կը տես-նէի։

Բան մը միայն զինքը կը մխիթարէր խստութեանս դէմ. այսինքն գիտէր թէ կարտինալը առասպելական ճամբաներէ կը քալեցնէի։

Րիշլիէօ կանոնաւորապէս կ'ընդունէր որոշուած այցելութիւն-ները։

Քաջասրտութիւն ունէի տանելու զգուանաց որք ըստ իր կար-ծեաց անմեղ էին. բայց եթէ պաշտօնեան շատ սիրազգած ըլ-լար, եթէ եղբօրը բարեկամութեան մը սահմանէն անցնէր, վեր-ջապէս եթէ կարտինալը միտքը դնէր մոռնալ թէ հոգւոյս լու-սաւոր առաջնորդն է և թէ իր միակ պարտքն է անընդհատ քրիս-

տանէական վարդապետութիւնները յիշեցնել ինծ, պարզամտու-թեամբ զարմանալ կը ձեւացնէի, ամօթխածութեամբ աչքս վար կ'ընէի, և կրօնաւորը բացարձակապէս կ'ստիպէի կամ կրօնական սահմաններուն մէջ մնալու և կամ դիմակը լրբութեամբ վար առնելու:

Մինչև այն ատեն չհամարձակած էր յայտնապէս խոստովանե-լու իր սէրը:

Իսկ գալով այն լռութեան օրէնքին, որուն Նորին Բար-ձրութիւնը կը կարծէր թէ հնազանդեցուցած է զիս, կ'ըսեմ թէ մի և նոյն յանդգնութեամբ կը դերբէէր այն օրէնքը:

Մարեշալն և Սէն-Սօրլէն այս մասին իրենց բոլոր զօրու-թեամբը կ'օգնէին: Սրահիս մէջ ինքզինքս կարտինալին անուղ-ղելի կուսակիցը կը ցուցնէի. պաշտօնէին ամեն գործոց նկատ-մամբ անլուր կերպերով կ'սքանչանայի, անասելի աւիւն մը ցոյց կը տայի: Այցելուներուս մէջէն որոնք որ կասկածելի էին իբր ներհակ կարծիք ունեցող, անփոփոխ կերպով իմ ամենէն անոյշ նայուածքս և ամենէն աւելի նախանձագրգիռ ժպիտներս կ'ընդու-նէին, կեղծաւորներուն արձագանքս կ'ըլլային, Րիշլիէօն կը գովէին ինծի հաճելի ըլլալու համար, և ապա կ'երթային ուրիշ տեղ հա-տուցում գտնելու այն անամօթ գովեստից փոխարէն, զոր տա-լու կը բռնադատէի այն պարոնները:

Ամենայն դիւրութեամբ դժուարութենէ կ'ազատէի մաքիավելլու-թեան մ'այս հնարքով. շատ ներելի էր ինծի այս սատանութիւնը. և ներելի չէ ըսողն իրաւունք չունի:

Ամեն անգամ մ'որ այցելութիւն կ'ընէի կարտինալին, հրա-շալի տեղեկագրութիւն մը կը տայի, անփուշ վարդեր կը բերէի անոր. քթին ներքև աներկիւղաբար կը վառէի այն կեղծ խունկը զոր այնքան յաջողակութեամբ կը ժողովէի:

Իրաւ է որ պաշտօնեան ասկից անկից քանի մը կասկած ու-նեցաւ: Բռնական արդարասիրութիւն ցոյց կը տար ինքն իր նկատ-մամբ, և չէր կրնար հաւատալ թէ ստուգապէս այնքան շքեղ գո-վեստներ կը տրուի իրեն: Նախ Սէն-Սօրլէնը հարցափորձեց,

— Գողութիւն չեմ ըներ, տէր իմ։

— Ի՞նչ կ'ընես ուրեմն։

— Մտիկ կ'ընեմ։

— Վա՜յ, վա՜յ։

— Այո, Նորին Բարձրութեան, կարտինալին գաղտնի ոստիկանութեան մարդերուն մէկն եմ։

Եւ մեր առջև մագաղաթ մը բացաւ զոր ապշումով ճանչցանք։

— Է՛, Մարիոն, ըսաւ ինծի Պասոմբիէր, ոչ դուն և ոչ ես կը կարծէինք թէ կարտինալին ականջները մինչև հոս դալու չափ երկայն են....։ Հրաման չե՞ս տար ինծի պատուհանէն դուրս նետել այս աւանակը և իր արտօնագիրը։

— Թող տո՛ւր այդ մարդը, պատասխանեցի, արկածին օգտակար կողմը տեսնելով. մեզ ոչ այնքան հոգ է անոր լրտեսութիւնը։ Մտիկ կ'ընէր մեր խօսքերը. լա՛ւ.....։ Ուրեմն անտաւ անշուշտ թէ Պ. Տը Բիշլիէօ տանս մէջ շատ բարեկամներ և կուսակիցներ ունի։

— Իրաւ է, տիկին։ Ըսի միշտ հայր Յովսէփին թէ....։

— Լռէ՛, դոչեց Պասոմբիէր։ Ո՞րքան ժամանակէ 'ի վեր մեզի կը լրտեսես։

— Ամիսէ մ'ի վեր, տէր իմ։

— Ամե՞ն օր։

— Ո՛չ. կը գայի միայն այն գիշերներն՝ ուր տիկինը հիւրեր ունէր։

— Եւ ինչպէս չիմնէյին կը հասնէիր։

— Գիշերուան մութը սիրելու ժամանակ տուներու յարկերէն կը դայի։ Մօտակայ տան մէկ վերնայարկին մէջ կը բնակիմ։

— Հոս լսածներէդ 'ի զատ բան մը բնաւ չիմացուցի՞ր քեզի ղրկողին։

— Ո՛չ, տէր իմ, ես պարկեշտ մարդ մ'եմ։

Ընդաւ քահ քահ մ'արձակեցինք. և անզգամը ծառաներէն արտաքսուեցաւ. յանկայէս պատուէր տրուեցաւ իրեն որ այսուհետև այսպիսի պարկեշտ գործերէ զգոյշ կենայ եթէ կ'ուզէ որ իր կողերն անվնաս մնան։

Հետեւեալ օրը վազեցի կարտինալին գացի որ արդէն գիտէր իրողութիւնը։

Ինչպէս դիւրին է երեւակայել, ամենամեծ դժուարութիւններ կրեց զիս հանդարտելու համար։ Իր անվստահութիւնը երեւոյն ատեն շատ խիստ խօսքերով, գոչեցի, լացի, ջղաձգային շատ վտանգաւոր տագնապ մ'անգամ ունեցայ։

Աղէ չէրը գործ տեսաւ։

Նորին Բարձրութիւնն՝ ինչպէս ատենօք՝ նոյնպէս և հիմակ ուզեց լանջակալիս քանի մը կոճակները քակել, սակայն անոր այս համակրութեան ցոյցը անպատկառ խօսքով մը մերժեցի. Ջղերուս յուզուած վիճակը կ'արդարացնէր այս ընթացքս։

Վերջապէս բարեսիրաբար հաճեցայ մեղմելու։

Զիջայ կարեւորութիւն տալու այն ողորմելի պատճառներուն զոր կարտինալն առջեւ կը բերէր իր վարմունքը բացատրելու համար. խիստ անկատակ կերպով յայտնեցի անոր որ եթէ դարձեալ կասկածի նշոյլ մը տեսնեմ, բոլոր անձնուիրութիւնս ատելութեան պիտի փոխուի. թէ անոր բարկութիւնը առ ոչինչ գրելու կարող կին մ'էի, թէ բոլոր բարեկամներս իմ կողմս պիտի բռնեն և մեծ աղմուկ պիտի հանեն եթէ զիս բանտարկել ուզելու ցոյց մ'ընէր միայն։

Երկար չընեմ, սրամտութեան շքեղ եռանդներ ունեցայ։ Այս գերին մէջ շատ յաջողակ էի, և կարտինալը մինչև ոտքս խոնարհեցուցի։ Անընդհատ մեղմութեամբ վարուեցաւ հետս. իր ճիրաններուն ամենափոքր ծայրը չզգացի։

Ո՛րքան կը շնորհաւորէի ինքզինքս խոհեմութեանս վրայ. ի՜նչպիսի գեղեցիկ որոշում մը կ'ընէի մարտավարութեանս մէջ հաստատ մնալու. ինչպէս այս երեւելի խարեբային հետ խաբէութեամբ վարուելու հարկը կ'զգայի։ Րիշլիէօ զիս պաշտելով, շողոքորթելով, ինձ ստակ տալովը հանդերձ լրտեսներ կը ղրկէր մինչև ննջարանիս մէջը։

Սակայն այն օրէն սկսելով և շատ աղէկ յաջողած կեղծաւորութեանս շնորհիւ անոր իմ նկատմամբ համոզումներուն կատարելապէս հաստատուած ըլլալը նշմարեցի։

Րիշլիէօ իմ առաքինի և քրիստոնէավայել դիմադրութեանս Հաւատաց. բարեկամութեանս, անդրդուելի անձնուիրութեանս Հաւատաց: Զիս գովեց անգամ այն կերպին նկատմամբ որով իր Հրամանները չկատարեր էի իրեն աւելի աղէկ ծառայելու Համար. ըսաւ թէ բարձր կին մը միայն կրնար այսքան յաջողակութեամբ և պատուաշնչութեամբ վարուիլ, սոսկալի գերէ մ'ազատիլ, և թշնամիները բարեկամներու փոխել՝ մասնաւորութեամբ մը. շաղտոտուելու Համար:

Կարտինալին այսպէս պատմածները լսելով երկու բան Հասկցայ. առաջին. թէ Հոգւոյ ազնուութիւնները կը գուշակէր, և ամենևին կարեւորութիւն չէր տար անոնց, քանի որ ատենօք անարգութեամբ Հրամայած էր ինձ որ Հնազանդիմ դժկամակութեամբս Հանդերձ. երկրորդ, թէ իր լրտեսները շատ աղէկ կը լսէին, և աւելի աղէկ կը տեղեկացնէին զինքը:

Երբ տունս վերադարձայ, դարբին մը բերել տուի, և Հրամայեցի որ յարկերուն վրայ Հաստատուն վանդակներ գնէ բոլոր ծխահաններուն:

— Բարեբաղդութիւն ունեցանք, ըսաւ ինձ մարեշալը:

— Այո՛, անշուշտ, պատասխանեցի: Եթէ լրտեսը շաբաթն երկու անգամէն աւելի մտիկ ըրած ըլլար մեր խօսակցութիւնները, իր տիրոջ նկատմամբ միշտ ողբալի խօսքեր լսած չէր ըլլար:

— Մանաւանդ թէ ուրիշ բան իմացած կ'ըլլար, Մարիօն:

— Աղէկ ըսիր.... Ա՛Հ, ի՞նչ ապուշ մարդ է եղեր:

— Գնա՛, կախուէ՛, Րիշլիէօ, ըսաւ Պասօմբիէր. իրողութեան ամենէն աղւոր մասը չգիտես:

— Վա՛յ քեզ, Սրբազա՛ն:

— Կրողը տանի վերարկուները:

— Ցիրաւի, խելք միտք չունիս եղեր, Հա՛յրդ սուրբ, գոչեցի ահագին քրքիջներով: Ի՞նչ. կին մ'այսպէս քեզի խաբէ՛. վեղարիդ ներքև մի՞ գուցէ ապուշի մը գլուխը պահուած ըլլայ: Եթէ չեմ սխալիր, կարծեմ թէ սէրը կը կուրէ քեզի.... Հա՛, Հա՛, իրաւ կ'ըսեմ թէ այս պարագան ինծի Համար շատ զուար-

նալն է․ քիչ մը միամիտ մը առ գնելով խաղցի, կը խաղամ և յոյս ունիմ թէ տակաւին շատ ժամանակ պիտի խաղամ։ Խաղերս պիտի իմանան առաջուայ դարերը․ այդքանը կը բաւէ փառքս կազմելու։

Բասօմբիէր այս յիմարական մեծաբանութեանս միջոցին եկաւ համբոյր մ'առաւ իզմէն։

Մարէշալն իրիկունն ետք կը պատրաստուէր Լուվրը երթալ նոր դեսպանութեան մը նկատմամբ որմէ կը ջանար խայս առնել 'ի շնորհս իր սիրոյն զոր ունէր ինծի համար։

Շատ շնորհակալ էի Բասօմբիէրին որքանեայ շնորհներն այսպէս ինձ զոհելուն համար, և հաղուադէպ արիութեամբ մը կը կռուէի պչրասիրութեան դէմ որ եռ քան զեռ բնաւորութեանս կը յարէր։ Յուփաղներուս և ոչ մին խրախուսիչ պատասխան չէր ընդունէր ամենքին։

Վուաթիւր, որ միւսներէն աւելի սիրուն էր, ամենուն պէս մերժուեցաւ։

Դեռահասակ, գեղանձն, զմայլելի յատկութիւններով բոլորովին զարդարուն ըլլալով այն ժամանակուան ամենէն երևելի ակմբարանները կ'ընդունէին զիս։

Ռամպույէէ ապարանն իր գրագիտաց արհեստագիտին գլուխը կը դնէր Վուաթիւրը․ հանճարիմաց կատակաբանութեան, ազնիւ հեզնութեան, համեստ պարսաւաբանութեան դիւցազն էր ան։

Վուաթիւր՝ որ առոյգ և պչրասէր էր և զոր մարդիկ կը խնդրէին ու կիները կը պաշտէին՝ սատակապէս ինքնասիրութիւնս պիտի զարմացնէր եթէ սիրային իշխանութեանս ներքև գերէի զինքը։

Իզմէն կախում ունէր այս իրողութիւնը։

Առաջին անգամ ակումբանոցս երևալով սկսաւ յարձակիլ, և պաշտպանողական բոլոր միջոցներս 'ի գործ դրի այս ճարտար և ժպիրհ կնորսին դէմ։

Ասկից 'ի զատ իրեն խաղ մը խաղացի զոր դժուարաւ ներեց ինձ։

Վուաթիւր տասնի չափ գեղուհիներու կանոնաւորապէս սիրա-

հար էր, և բնութեամբը բաւական անձնազոհ ըլլալով իր այս սիրահարութիւնը գաղտնի չէր պահեր։

Գիտէի թէ Վուաթիւր տիկին Տէ Լօժին ետեւն ինկած էր. վառվռուն և զուարթ մտքի տէր, և փոքր ինչ գրիչ բռնելու անգամ սովոր. այս տղուր կինը ակմբանոցս յաճախելու պարտաւորեցի։

Այս բանս սաստիկ շփոթութիւն տուաւ կնապաշտ երիտասարդին։

Դժուարին էր իրեն քով քծնիլ այս տիկնոջ աչքին առջև, ինչպէս նաև չէր կրնար վայելչապէս նորա նկատմամբ եռանդոտ երեւալ, քանի որ քանի անգամներ առեղի յայտնած էր ինձ թէ իր սրտին բացարձակ տիրուհին էի։ Ակայն և այնպէս յաջողեցաւ մեզ բաշխելու իր կնապաշտական մեծարանքը այնպիսի կերպով որ ոչ ես և ոչ տիկին Տէ Լօժ չկրցանք դայթակղիլ այս բաշխումէն։

Գործուեցայ այս խաղէն։

Վուաթիւրէն պաշտուած ուրիշ երկու կին ևս կը ճանչէի։

Առաջինն էր այն զմայլելի Ժիւլի Տ'Անժէն, զոր այն ատենուան բանաստեղծներն այնքան կ'ողոքէին, կը շոյէին և կ'երգէին։ Ժիւլի Տ'Անժէն այն ատեն բոլորովին ծաղկահասակ և գեղանի էր։

Դժբաղդաբար չէի կրնար յուսալ թէ Տը Րամպույեէ ազնիւ մարքիզուհին սիրտ զիջանէր աղջիկը բերելու։

Ուստի անգամ բանաստեղծիս երկրորդ աստուածուհին միայն տանս բերել տալու յաջողեցայ. Նորա անունն էր Մադլէն Տը Սկիւտէրի, քոյր գաղղիական պահակի մ'որ սաստիկ անձնազով էր և ինքզինքը գրագիտական անբաւ արժէքի տէր կը կարծէր։ Մադլէն բաւական խելացի ըլլալով իր շնորհիւն եղբօրը՝ Ժէօրժին՝ ծիծաղելի հանգամանքը կը ներուէր։

Գիշեր մ'օրիորդ Սկիւտէրի և իր եղբայրը տունս եկան այն պահուն ուր Վուաթիւր տիկին Տէ Լօժին և իմ մէջ սիրային հաւասարակշռութեան պահանջելիք կը գործէր։

Եսոր վրայ մեր բանահիւսը պարտաւորեցաւ քծնասիրութեան

այլ երգերուն վերջը չկար . շուշաններու և վարդերու վրայ կը քալէինք , մեղրային առուակներու մէջ կը լողայինք ։

Վերջապէս այնքան անուն առաւ ակմբանոցս որ տիկին Տը Րամպույեէ վրդովեցաւ , և նորա հռչակաւոր կապոյտ սենեակը ստու- գապէս վախցաւ որ չնսեմի Տէ Թուրնէլ փողոցին ակմբանոցէն ։



# Թ

Բերկրալի է՝ կը պարտաւորիմ ըսել թէ՝ նաև պատուաւոր կեանք մ՚ունեցայ տասնութ ամիսուան մէջ որք մայրաքաղաքը վերադառնալէս 'ի վեր անցեր էին ։ Պասոմբիէրին հետ տարփանքս անթափանցելի վարագոյրով մը կը ծածկուէր . ուրիշ ամեն սիրանուէր մեծարանք կը մերժէի այնպիսի բարբարոսութեամբ որ ընդհանուրին յարգն ու համարումը կը հրաւիրէր իմ վրայ ։

Բայց և այնպէս Սէն-Սօրլէն կը համարձակէր յոյսով սա- ծուելու . խեղճ քարտուղարին յայտնի կերպով նիհարիլը կը մատնէր ։

Բան մը միայն զինքը կը մխիթարէր խստութեանս դէմ . այսինքն գիտէր թէ կարտինալը առասպելական ճամբաներէ կը քալեցնէի ։

Րիշլիէօ կանոնաւորապէս կ՚ընդունէր որոշուած այցելութիւն- ները ։

Քաջասրտութիւն ունէի ամենուն գգուանաց որք ըստ իր կար- ծեաց անմեղ էին . բայց եթէ պաշտօնեան շատ սիրազգած ըլ- լար , եթէ եղբօրը բարեկամութեան մը սահմանէն անցնէր , վեր- ջապէս եթէ կարտինալը միտքը դնէր մոռնալ թէ հոգւոյս լու- սաւոր առաջնորդն է և թէ իր միակ պարտքն է անընդհատ քրիս-

տանէական վարդապետութիւնները յիշեցնել ինծ, պարզամտութեամբ զարմանալ կը ձեւացնէի, ամօթխածութեամբ աչքս վար կ'ընէի, և կրօնաւորը բացարձակապէս կ'ստիպէի կամ կրօնական սահմաններուն մէջ մնալու և կամ դիմակը լրբութեամբ վար առնելու։

Մինչև այն ատեն չհամարձակած էր յայտնապէս խոստովանելու իր սէրը։

Իսկ գալով այն լրտեսութեան օրէնքին, որուն Նորին Բարձրութիւնը կը կարծէր թէ հնազանդեցուցած է զիս, կ'ըսեմ թէ ես և նոյն յանդգնութեամբ կը դերևէի այն օրէնքը։

Մարեշալին և Սէն-Սօրլէն այս մասին իրենց բոլոր զօրութեամբը կ'օգնէին։ Սրահիս մէջ ինքզինքս կարտինալին անուղղելի կուսակիցը կը ցուցնէի. պաշտօնէին ամեն գործոց նկատմամբ անլուր կերպերով կ'սքանչանայի, անասելի ախոն մը ցոյց կը տայի։ Այցելուներուս մէջէն անոնք որ կասկածելի էին իբր ներհակ կարծիք ունեցող, անփոփոխ կերպով իմ ամենէն անոյշ նայուածքս և ամենէն աւելի նախանձագրգիռ ժպիտներս կ'ընդունէին, կեղծաւորներն արձագանքս կ'ըլլային, Րիշլիէօն կը գովէին ինծ հաճելի ըլլալու համար, և ապա կ'երթային ուրիշ տեղ հատուցում գտնելու այն անամօթ գովեստից փոխարէն, զոր տալու կը բռնադատէի այն պարոնները։

Ամենայն դիւրութեամբ դժուարութենէ կ'ազատէի մաքիավելլութեան մ'այս հնարքով. շատ ներելի էր ինծ այս սատանութիւնը. և ներելի չէ բողոքն իրաւունք չունի։

Ամեն անգամ մ'որ այցելութիւն կ'ընէի կարտինալին, հրաշալի տեղեկագրութիւն մը կը տայի, անփուշ վարդեր կը բերէի անոր. քթին ներքև աներկիւղաբար կը վառէի այն կեղծ խունկը զոր այնքան յաջողակութեամբ կը ժողովէի։

Իրաւ է որ պաշտօնեան ասկից անկից քանի մը կասկած ունեցաւ։ Բռնական արդարասիրութիւն ցոյց կը տար ինքն իր նկատմամբ, և չէր կրնար հաւատալ թէ ստուգապէս այնքան շքեղ գովեստներ կը տրուի իրեն։ Նախ Սէն-Սօրլէնը հարցուփորձեց,

և այս կողմէն խօսքերուս և ոչ մէկ վանկը սուտ ելաւ․ ապա իր բարեկամս Պուարօպէ աբբասը մեր կեղտոտ բանտատեղիին ե-տևն արձակեց։

Շարըլէն իր կեղծանուն վրայ երդում ըրաւ ուղղափառութեամբ թէ ակմբանոցիս բոլոր հիւրերը կարտինալեան էին։

Րիշլիէօ բաւական չհամարեց այս վկայութիւնները։

Իր լրտեսապետին ետևէն լրտես մը դրաւ։

Հազար վեց հարիւր քառասունհինգ տարւոյն մայիս ամսուան տասնևիններորդ օրն էր այն օրն ուր յետագայ իրողութիւնը տեղի ունեցաւ․ տակաւին կը յիշեմ այս թուականը։ Գիշերուան ժամը ութուկէսին ժամանակ կարկուտի հետ խառն առատ փոթորիկ մ՚ելաւ։ Բարիզի ինչ ինչ փողոցներուն մէջ մինչև վեց բթամատի մեծութեամբ կարկուտներ կային։

Օդն՝ որ ցորեկը սաստիկ տաք էր՝ յանկարծ պաղեցաւ։

Հրաւիրեալներուս ամէնը ցրտահար կը դողային։ Թերէզա դուշակերով հրամանս՝ վառած փայտեր բերաւ մեզ, և սրահին կրակարանը նետեց երկու կամ երեք պզտիկ խուրձերու հետ։

Անոնք դեռ չէին վառեր, և ահա շիմինէային մէջ հող մ՚և տարօրինակ ձայն մը լսեցինք։

Մեր վախը կը գուշակէք։

Ամենէն յանդուգներն իրենց գլուխը շիմինէային դրան ծնօտին տակը տարին, և մարդ մը տեսան որ յարկերէն խոյս տալու համար արտաքօրէն վեր ելնելու ջանք կ՚ընէր։ Մեզմէ իւրաքանչիւր ոք սկսաւ ամեն աստիճանի ձայներով «գող կայ» գոչել։ Փախստականն այս աղաղակներէն զարհուրելով, և մուխէն խեղդուելով բոլոր մարմնովը վար գլտորուեցաւ և կրակարանին մէջն ինկաւ։

— Ո՞վ ես դուն, գոչեց Պասոմբիէր՝ իր սուրը անոր կոկորդին տակը դնելով։

— Բարէ, տէր իմ, խնայէ՛ ընտանեաց տէր խեղճ հայրի մը ․․․ կինս և զաւակներս սնելու համար ուրիշ արհեստ չունիմ։

— Ի՞նչ․ արուեստ կ՚անուանես գողութիւնը։

— Գողութիւն չեմ ըներ, տէր իմ։

— Ի՞նչ կ՚ընես ուրեմն։

— Մտիկ կ՚ընեմ։

— Վա՜յ, վա՜յ։

— Այո՛, Նորին Բարձրութեան, կարտինալին գաղտնի ոստիկանութեան մարդերուն մէկն եմ։

Եւ մեր առջև մագաղաթ մը բացաւ զոր պժգումով մերժեցինք։

— Է՛, Մարիոն, ըսաւ ինծի Պասսոմբիէր, ոչ դուն և ոչ ես կը կարծէինք թէ կարտինալին ականջները մինչև հոս գալու չափ երկայն են..... Հրաման չե՞ս տար ինծի պատուհանէն դուրս նետել այս աւանակը և իր արտօնագիրը։

— Թող տո՛ւր այդ մարդը, պատասխանեցի, արկածին օգտակար կողմը տեսնելով. մեզ ոչ այնքան հոգ է անոր լրտեսութիւնը։ Մտիկ կ՚ընէր մեր խօսքերը. լա՜ւ..... Ուրեմն տեսաւ անշուշտ թէ Պ. Տը Րիշլիէօ տանս մէջ շատ բարեկամներ և կուսակիցներ ունի։

— Իրաւ է, տիկին։ Ըսի միշտ հայր Ժոզէ՛ֆին թէ.....

— Լռէ՛, գոչեց Պասսոմբիէր։ Ո՞րքան ժամանակէ ՚ի վեր մեզի կը լրտեսես։

— Ամիսէ մ՚ի վեր, տէր իմ։

— Ամե՞ն օր։

— Ո՛չ. կը գայի միայն այն գիշերներն ուր տիկինը հիւրեր ունէր։

— Եւ ինչպէս չմինէային կը հասնէիր։

— Գիշերուան մութը տիրելու ժամանակ տուներու յարկերէն կը գայի։ Մօտակայ տան մէկ վերնայարկին մէջ կը բնակիմ։

— Հոս լսածներէդ ՚ի զատ բան մը ըսաւ չիմացուցի՞ր քեզի ղրկողին։

— Ո՛չ, տէր իմ, ես պարկեշտ մարդ մ՚եմ։

Անբաւ քահ քահ մ՚արձակեցինք, և անզգամը ծառաներէն արտաքսուեցաւ. յանկարծ պատուէր տրուեցաւ իրեն որ այսուհետև այսպիսի պարկեշտ գործերէ զգոյշ կենայ եթէ կ՚ուզէ որ իր կողերն անվնաս մնան։

Հետեւեալ օրը վազեցի կարտինալին գացի որ արդէն գիտէր իրողութիւնը։

Ինչպէս դիւրին է երեւակայել, ամենամեծ դժուարութիւններ կրեց զիս հանդարտելու համար։ Իր անվստահութիւնը երեսին տուի շատ խիստ խօսքերով, գոչեցի, լացի, ջղաձգային շատ վտանգաւոր տագնապ մ՚ունեցայ։

Աղէ՛ շէշը գործ տեսաւ։

Նորին Բարձրութիւնն՝ ինչպէս ատենօք՝ նոյնպէս և հիմակ ուզեց լանջակալէս քանի մը կոճակները քակել, սակայն անոր այս համակրութեան ցոյցը անպատկառ խօսքով մը մերժեցի. Ջղերուս յուզուած վիճակը կ՚արդարացնէր այս ընթացքս։

Վերջապէս բարեսիրաբար հաճեցայ մտիկելու։

Զիջայ կարեւորութիւն տալու այն ողորմելի պատճառներուն զոր կարտինալն առջև կը բերէր իր վարմունքը բացատրելու համար. խիստ անկատակ կերպով յայտնեցի անոր որ եթէ դարձեալ կասկածի նշոյլ մը տեսնեմ, բոլոր անձնուիրութիւնս ատելութեան պիտի փոխուի. թէ անոր բարկութիւնը առ ոչինչ գրելու կարող կին մ՚էի, թէ բոլոր բարեկամներս իմ կողմս պիտի բռնեն և մեծ աղմուկ պիտի հանեն եթէ զիս բանտարկել ուզելու ցոյց մ՚ընէր միայն։

Երկար չընեմ, սրամտութեան շքեղ եռանդներ ունեցայ։ Այս դերին մէջ շատ յաջողակ էի, և կարտինալը մինչև ոտքս խոնարհեցուցի։ Անընդհատ մեղմութեամբ վարուեցաւ հետս. իր ճիրաններուն ամենափոքր ծայրը չզգացի։

Ո՛րքան կը շնորհաւորէի ինքզինքս խոհեմութեանս վրայ. ինչպիսի գեղեցիկ որոշում մը կ՚ընէի մաքիավելութեանս մէջ հաստատ մնալու. ինչպէս այս երեւելի խաբեբային հետ խաբէութեամբ վարուելու հաճոյքը կ՚զգայի։ Րիշլիէօ զիս պաշտելով, շողոքորթելով, ինձ ստակ տալովը հանդերձ լրտեսնե՛ր կը ղրկէր մինչև չմինէյայիս մէջը։

Սակայն այն օրէն սկսելով և շատ աղէկ յաջողած կեղծաւորութեանս շնորհիւ, անոր իմ նկատմամբ համոզումներուն կատարելապէս հաստատուած ըլլալը նշմարեցի։

Ռիշըլիէօ իմ տուայինի և քրիստոնէավայել դիմադրութեան հաստատ. բարեկամութեան, անդրդուելի անձնուիրութեան հաստատ։ Զիս գովեց անգամ այն կերպին նկատմամբ, որով իր հրամանները չկատարեր էի իրեն աւելի աղէկ ծառայելու համար. ըսաւ թէ բարձր կին մը միայն կրնար այսքան յաջողակութեամբ և պատշաճութեամբ վարուիլ, սոսկալի դերէ մ'ազատիլ, և թշնամիները բարեկամներու փոխել՝ մատնութեամբ մը չաղտոտուելու համար։

Կարտինալին այսպէս պատմուածքը լսելով երկու բան հասկցայ. առաջին. թէ հոգւոյ ազնուութիւնները կը պաշտէր, և ամենևին կարևորութիւն չէր տար անոնց, քանի որ անենօք ամբողջութեամբ հրամայած էր ինծի որ հնազանդիմ դժկամակութեամբս հանդերձ. երկրորդ, թէ իր լրտեսները շատ աղէկ կը լսէին, և աւելի աղէկ կը տեղեկացնէին զինքը։

Երբ տունս վերադարձայ, դարբին մը բերել տուի, և հրամայեցի որ յարկերուն վրայ հաստատուն վանդակներ դնէ բոլոր ծխահաններուն։

— Բարեբաղդութիւն ունեցանք, ըսաւ ինծի մարեշալը։

— Այո՛, անշուշտ, պատասխանեցի։ Եթէ լրտեսը շաբաթն երկու անգամէն աւելի մօտիկ ըրած ըլլար մեր խօսակցութիւնները,. իր տիրոջ նկատմամբ միշտ ողոքալի խօսքեր լսած չէր ըլլար։

— Մանաւանդ թէ ուրիշ բան իմացած կ'ըլլար, Մարիօ՛ն։

— Աղէ՛կ ըսիր. . . . Ա՛հ, ի՛նչ ապուշ մարդ է եղեր։

— Գնա՛, կախուէ՛, Ռիշըլիէօ՛, ըսաւ Պասօմբիէր. իրողութեան ամենէն աղուոր մասը չգիտես։

— Վա՛յ քեզ, Սրբազա՛ն։

— Կրա՛կը տանի վեղարաւորները։

— Ցիրա՛ւ, խելք միտք չունիս եղեր, հա՛յրդ սուրբ, գոչեցի ահագին քրքիջներով։ Ի՛նչ. կին մ'այսպէս քեզի խաբէ՛. վեղարիդ ներքև մի՞ գուցէ ապուշի մը գլուխը պահուած ըլլայ։ Եթէ չեմ սխալիր, կարծեմ թէ սէրը կը կուրէ քեզի. . . . . Հո՛, հա՛, իրաւ կ'ըսեմ թէ այս պարագան ինծի համար շատ զուարճա-

հար էր, և բնութեամբը բաւական անձնագով ըլլալով իր այս սիրահարութիւնք գաղտնի չէր պահեր։

Գիտէի թէ Վուաթիւր տիկին Տէ Լօժին ետեւն ինկած էր. վառվռուն և զուարթ մարդ մըն էր, և փոքր ինչ գրիչ բռնելու անգամ սովորող այս աղուոր կինը ակմբանոցս յաճախելու պարտաւորեցի։

Այս բանս սաստիկ շփոթութիւն տուաւ կնապաշտ երիտասարդին։

Դժուարին էր իրեն քովս գտնուիլ այս տիկնոջ աչքին առջև, ինչպէս նաև չէր կրնար վայելչապէս նորա նկատմամբ եռանդոտ երևալ քանի որ քանի անգամներ առեղի յայտնած էր ինձ թէ իր սրտին բացարձակ տիրուհին էի։ Ասիկայ և այնպէս յաջողեցաւ մեզ բաշխելու. իր կնապաշտական մեծարանքը այնպիսի կերպով որ ոչ ես և ոչ տիկին Տէ Լօժ չկրցանք դայթակղիլ այս բաշխումէն։

Գրգռուեցայ այս խաղէն։

Վուաթիւրէն պաշտուած ուրիշ երկու կին ևս կը ճանչէի։

Առաջինն էր այն զմայլելի Ժիւլի Տ'Անժէն, զոր այն ատենուան բանահիւսներն այնքան կ'ողոքէին, կը շոյէին և կ'երգէին։ Ժիւլի Տ'Անժէն այն ատեն բոլորովին ծաղկահասակ և գեղանի էր։

Դժբաղդաբար չէի կրնար յուսալ թէ Տը Րամպույէէ ազնիւ մարքիզուհին պիտի զիջանէր աղջիկը բերելու։

Ուստի անգամ բանաստեղծիս երկրորդ աստուածուհին միայն տանս բերել տալու յաջողեցայ. նորա անունն էր Մատըլէն Տը Սկիւտէրի, քոյր գաղղիական պահակի մ'որ սաստիկ անձնագով էր և ինքզինքը գրագիտական անբաւ արժէքի տէր կը կարծէր։ Մատըլէն բաւական խելացի ըլլալով իր շնորհիւն եղբօրը՝ Ժէօրժին՝ ծիծաղելի հանգամանքը կը ներուէր։

Գիշեր մ'օրիորդ Սգիւտէրի և իր եղբայրը տունս եկան այն պահուն ուր Վուաթիւր տիկին Տէ Լօժին և իմ մէջ սիրային հաւասարակշռութեան պահպանելիք կը գործէր։

Ասոր վրայ մեր բանահիւսը պարտաւորեցաւ քննասիրութեան

տուեր էր՝ կառքին պատուհանդանը ծածկապէս վար բրաւ, և ա-պա նոյնպէս վեր բրաւ։ Իր փեսան ձիերը մտրակեց. ու շուտով մեկնեցանք։

— Ա՛հ, ըսաւ Վուաթիւր յանկարծ, վերջապէս բռնեցի քե-զի, դքսուհին։

— Ի՞նչ կը նշանակէ այդ խօսքը, պարոն։

— Գարշելի ծաղրանքներ լարեցիր ինծի. արդ ահա դարձն այդ ծաղրանքին ընկեր։

— Ի՛նչ. ծաղրանքին ընկայ... ուրեմն Րամպույեէյի ապարանը չե՞նք երթար։

— Անշուշտ... բայց իմ ծաղրանքս ալ ճիշդ հոն է։

— Շա՛տ աղէկ, ըսի՝ քիչ մը հոգի առնելով, վասն զի անոր ալ ջի խօսքը վրդովում կը տար ինծի։ Հիմա շատ ուրախ կ'ըլլայի եթէ իմանայի գանգատներուդ պատճառները. իրըճիւ ամենևքին յառագնայեր զիս։

— Հա՛, հա՛... տիկին Տէ Լօմը տունդ չհրաւիրեցի՞ր, գիտ-նալով թէ կը սիրաբանեմ հետը։

— Այո՛, պարոն։

— Ո՞չ ապաքէն մի և նոյն պատճառաւ Մադըլէն Տը Սգիւ-տէրին ալ հրաւիրեցիր։

— Անշուշտ... ո՞ւր է ոճիրս...։ Ընդ հակառակն կը պար-տաւորէիք շնորհակալութիւն յայտնել ինծի։

— Ատով ինքզինքդ խաբէ՛. այդ երկդիմի կերպարանքովդ յան-ցանքդ կը սաստկանայ։ Այն տիկինները քեզ զրահ կ'ընէիր, որ-պէս զի արգիլես զիս անոնց առջև սիրոյդ ծածկելու սիրոյս ան-դերովը։

— Իրա՛ւ կ'ըսես, քծինքովդ զիս ալ որսալու պահանջատու-թիւնը ունէի՞ր իրաւ, զիս որ երրորդն եմ։

— Չորեքտասաներո՛րդը, եթէ կը հաճիս. ըսաւ Վուաթիւր՝ շքեղ ծանրութեամբ մը։ Այո՛, սիրելիդ իմ, այս ժամուս՝ որ կը խօսիմ հետդ՝ տասնուչորս շնորհագեղ կիներ կը պաշտեմ, և աւելի աղէկ ունիմ մեռնիլ քան թէ անոնց մէկին հրաժեշտ տալ

. . . . նա մխիթարանք քեզ, որ ամենէն սիրունն ու աղուորն ես։

— Պարո՛ն, այնպիսի պատճառաբանութիւն մը կ'ընես զոր Ցանկոյ Մուլդանը միայն կրնայ հասկնալ։

— Ո՛հ, գոչեց Վուաթիւր, խելամտութեամբ դժուարութենէ ազատելու յոյս մ'ունենար։ Այն օրէն 'ի վեր՝ ուր խաբէութեամբ ինձ զգոյշ կենալու ջանք ըրիր, ես ալ օգտայ խաբէութեան դիմել։ Ազատ ես տունդ հրաւիրելու զով որ հաճելի է քեզ. բայց Ռամպույեէյի ապարանը ոչ զոք պիտի հրաւիրես։ Ոչ տիկին Տէ Լօժ և ոչ օրիորդ Տը Սքիւտէրի դեռ արտօնութիւն չունին նուիրական վայրը մտնելու . . . ։ Այս վայրկեանէն սկսեալ մըլ զրահ չունիս։

— Ներէ. սիրտդ իրենց մէջ բանտող տաճարներէդ աստուածուհիներուն յիշատակը ունիմ։

— Զիս կը վշտացնես, Մարիօն . . . ։ Ի՞նչ. կրնամ բանաւորութեան այդպիսի սկարութիւն մ'ունենալ. կրնամ նախանձոտ ըլլալ . . . ։ Չէ՛, ես չեմ կրնար հաւատալ նախանձոտութեանդ. . . . ։ Գեղեցկութիւնը օրինաւորապէս և հաւասարապէս կը պաշտեմ իբր աստուածս. ամեն տաճարները կը մտնեմ. անոր ամեն խորաններուն առջև խունկ կը վառեմ։ Միայն թէ քանի մը կուռքերուն միայնին զատուիլը չեմ ուզեր տեսնել. կարելի եղածին չափ կը զատեմ զանոնք։

— Որքա՜ն անճարակութիւն մ'է զիս տանելդ այն տաճարն ուր օրիորդ Ժիւլի Տ'Անժէնը կը խնկարկես։

— Ա՛հ, իմացա՞ր . . . ։

— Այո՛, պարոն։ Կատարելապէս հանդարտ եմ. և ներա առջև պիտի չհամարձակիս մեծարանքովդ զիս հալածելու։

— Ո՛րքան կը սխալիս, Մարիօն, ո՛րքան կը սխալիս . . . . ։ Ժիւլի մանկուհի մը, անմեղ հրեշտակ մ'է որ տակաւին սիրոյ մասին բան մը չհասկնար ամենևին . . . . ։ Այո՛, իմ տասնուչորս դիցուհիներուս մին է նէ. այո՛, բայց ներա հետ տակաւին նոր կ'սկսի սէրս, և իր սիրտը հեռանկար երկայն ճամբերի մը ծայրը կը տեսնեմ։ Դիւլին պիտի ըլլայ ինձ սրտիս յարձակիլ Ժիւ-

տելու տեղի ունեցաւ։ Իրա՛ւ է որ զիս հալածեց նէ, բայց արժանի էի հալածուելու, և արգիլուած էր ինձ ամենափոքր իրաւունք ունենալ պահանջելու որ ներէ ինձ։ Առանց արգիլելու ջանալու կրնար զիս թողուլ որ ընտանեացս պատիւը անպատուութեամբ արատեմ։

Զիս ատելու հարիւր պատճառ ունի նէ. իսկ ես զինքը ատել չյարգելու և ոչ մէկ պատճառ ունիմ. վասն զի որքան ժամանակ որ իրեն արժանի մնայի, նէ բարեբարուհիս և երկրորդ մայրս եղաւ։

Այսպէս վրայ արտասուք մը սահեցաւ յամրաբար։

Վուաթիւր ձեռքը ինձ տուաւ որ կառքէն իջնեմ. տեսաւ այն արտօսրը և զարմացաւ։

— Պարո՛ն, հոն շատ յիշատակներ ունիմ, մրմռացի՝ կոմսուհիին տունը ցոյց տալով իրեն։

— Կ'երեւայ թէ ախորժելի չեն այդ յիշատակները, Մարիո՛ն։

— Ափսո՛ս, պատասխանեցի, անոնց շատը խղճի տագնապներ են։





Այն ատեն նոր սկսած էր շքեղութեամբ փառաւորուիլ այն երեւելի ժողովարանն որ ազդեցութիւն ունեցաւ տասնեօթ դարուն առաջին կէսին վրայ. Մեծանուն կաճառին (cénacle) վճիռներն ճաշակը կոկելու և բարքը ուղղելու համար արդէն օրէնքի ոյժ ունէին։

Շարլը Տ'Անժէն Տը Րամպույեէ մարքիզն իր յիշատակեալ հատակին կը մտնէր։

Քաղցր և շնորհալար դէմքով. յոյր ու կարճ մարդ մ՚էր ան որ յօժարակամ կը խնդար և ատելութեան ծնունդ չէր տար ամե-նեքին, թէև բազմաթիւ դժգոհութիւններ կրած ըլլար յաղթանակներէ.

Թէև կռուասէր չէր, բայց և այնպէս Գոնտիններուն, Պէլ-կարտներուն, Գիզերուն և Շըվրէօզներուն դժուարութեանց խառնուած գտնուեցաւ.

Ամենուրեք իբր ուղղամէտ ասպետ վարուեցաւ.

Բայց իր մեծագոյն վիշտերը թագաւորէն եկաւ, որուն հաւա-նութեան հակառակ հանդերձատան կարգապետութեան պաշտօնը առաւ. Լուի ԺԳ. ծաղրելի դաւեր կը նիւթէր մարդերուն, և անոր նկատմամբ շատ անհաճոյ խեռութիւններ ցոյց կը տար. Այս դպրոցական աշակերտի յատուկ խաղերն այնքան սաստիկ կրկնուեցան որ Պ. Տը Ռամպույէ իր պաշտօնը վաճառեց, և իր տունն ե-կաւ փափկեալին յոռի վարմունքը հոն մոռնալու համար.

Նորէն իր տան մէջ գտաւ իր կինը և աղջիկը, երկու շնոր-հալի արարածներ, որոնցմէ զմայլելի կերպով և սրբօրէն կը սիրուէր.

Ժիւլի Տ՚Անժէն տասնեօթ տարեկան էր.

Մայրն երեսունը չորս տարեկան էր. բայց արդէն հասակաւոր ըլլալով հանդերձ իր գեղն ու շնորհքը ոչ նուազ սքանչելի էին. Թերևս դժուարութիւն ունենայի փթթած ծաղիկը նորափթիթէն զանազանելու.

Տիկին Տը Ռամպույէ՝ որ Գաթերին Տը Վիվօնի աղջիկն էր՝ Իտալացի ընտանիքէ մը ծագում առած ըլլալը երևան կը հանէր իր դիմական ձևին (galbe) անարատութեամբն և այն ազնուութեան ու վսեմութեան հովով որ երեսին վրայ յայտնապէս կ՚երևար. Մազերը սև և աչքը վառվռուն ու բարեկազմ էին. ակռաներն երկերկու վարդի տերևներու մէջ տեղաւորուած ընտիր մարգրիտ-ներու կը նմանէին, և սաք ու ոսկեգոյն ցոլումներ ունեցող իր թխագոյն կաշին Նաբոլիացի կնկան մը նախանձը կրնար գրգռել.

Իր մտքին հրապոյրներն անձին հրապոյրներէն դերազանց էին.

Առանց իմաստակութեան՝ գիտուն, առանց պչրասիրութեան՝

ծիրուն, առանց չարամտութեան նրբամիտ՝ առանց հպարտութեան առաքինի, առանց նենգութեան յաջողակ կին մ'և անտարակոյս իր դարուն լաւագոյն և ընտրելագոյն անձն էր տիկին Տը Ռամպույեէ: Միրայի՞ն, որ և՛է կնճիռներու մէջ նորա անունը չարուեցաւ: Ազնիւ բարեսրտութիւն մը, փափկութիւն մը կը գործածէր նէ. իր ամենէն մեծ փափաքն էր իր հիւրերը երջանիկ ու գոհ ընդունիլ և ետ ղրկել:

Հետևաբար իր ապարանքին սրահները միշտ լի մնացին:

Մարգիզուհին ստուգիւ շողամարարներու բազմութենէ մը շրջապատուած թագուհի մ'էր:

Սակայն հազարումէկ պաշտելի յատկութեանցը քով՝ քանի մը պզտի պակասութիւններ կ'երևային. այսինքն նախ անակնկալ բաներ ընելու մոլութիւնը. ամեն զոհողութիւն յանձն կ'առնուր քեզ հաճթայթելու համար ինչ որ նէ յանկարծական զարմանք կ'անուանէր. մարգիզուհին կը սիրէր սաստիկ զարմանք տալը, և երբեմն կ'առպէր ամբողջ կարի յոգնութիւն պատճառող պաշտչագամ մը վառնելու:

Տիկին Տը Ռամպույեէ շատ անոյշ ձայն մ'ունէր, և խօսքերը չնորհալի դիւրազարձութեամբ մը խոյս կը տային իր շրթերէն. սակայն քաղաքավարութեան ձևերը չարաչար կը գործածէր, և շողոքորթութեան անուշահոտութիւններովը մարդս արբշիռ կը դարձնէր: Եօթ կամ ութ խօսք կը հնչէիր, և ապա գլուխի ցաւ կ'զգայիր:

Մարգիզուհիին պակասութեանց մին ևս էր կանխատրոպապէս նուաղիլ ամեն անգամ որ կրակ կը նշմարէր. բացարձակապէս կը սոսկար հուրէն, և ջերմութիւնը ձուլածոյ աչաղին ծխահաններով կը տաքնար: Իր տհաճութեանց մին էին գիշերուան զանակները. երբեմն անոր հաճելի ըլլալու համար մշտնջենական հարբուխի մը վտանգին ենթարկուեցաւ:

Վերջապէս տիկին Տը Ռամպույեէյին հինգերորդ և ամենէն աններելի պակասութիւնն էր նպաստաւորապէս ընդունիլ Շաբըլէնը և անոր բանաստեղծական երկերը:

Պալզաք, Տ'Իւրֆէ, Բալթրիւ, Սէն-Սօրլէն. Վօժըլա ապարանին մտերիմներն էին։ Հոն կը նշմարուէին երևելի Տէզ Արնօ ընտանեաց բազմաթիւ անդամները, նա մանաւանդ Արնօ Պօրպէլ, զոր ետքէն շատ ճանչցայ։ Վալանթէն Գօնրար՝ որ Թագաւորին ներքին քարտուղարն և գրագիտութեան բարեկամ էր՝ տիկին Տը Րամպույէլէն պաշտօն առած էր Բարիզի մէջ գտնուող բոլոր արժանաւոր գրագէտները իր տունը բերելու։

Այս գրագէտներուն հետ կը գային կը միանային արքունեաց ամենէն երևելի մարդերը։

Կարտինալն ինքն իսկ պատիւ կը սեպէր մարքիզուհիին ապարանն ընդունուիլը, վասն զի ինչ ինչ պահանջոտութիւններ ունէր որք արդէն զինքը կը գրգռէին ողոքելու այն տանենտանն բոլոր գրագէտները, մանաւանդ այն գրագէտները, որոնց տաղանդը կասկած չէր տար իրեն։ Իր Պուարօպէն հետը կը բերէր։

Այս մարդուն վախն ու ծաղրական կերպարանքը բացարձակապէս տհաճ երևցաւ ինծի։ Սակայն կը խոստովանէինք թէ շատ խելացի էր ան և հանճարեղ խօսքեր ըսելու ախորժելի կերպ մը ունէր։

Սովորաբար տիկին Տը Րամպույէլի ակմբանոցը յաճախող երևելի անձերու բազմութեան մէջ կը պարտաւորիմ յիշել գեղուկ մարեշալը. (սակայն այն օրէն 'ի վեր՝ ուր Հելվեթիայէն վերադարձեր էինք՝ Պասոմբիէր կարծեմ այցելութիւններ կ'ընէր մարքիզուհիին). Տը Գօնտէ իշխանը, զոր Պասթիյլն ու Վէնսէնի բերդն երեք տարի պահեր էին. Տը Մօնմօրէնսի դուքսը, Անրի Դ-ին այն ազնիւ սանը, որ ետքէն կառափնատին վրայ մեռաւ. Տը Շըվրէօզ, Տը Գիզ, Տ'Էկիյյոն, Տը Պրիսագ, Տը Կիզ ասպետը, Անիպալ Տ'Էսթրէ, Սուրտի արքեպիսկոպոսը. Անրի Տը Թալէյրան, Տը Շալէ կոմսը, որ այն ատեն իր սիրովը կը հալածէր մեր գեղեցիկ Մարի Տը Շըվրէօզը, և վերջապէս անտիպական պատանի մ՛որ նայուածքովը օրիորդ Ժիւլի Տ'Անժէնը կը լափէր։ Այս պատանին էր Շարլը Տը Սէնթ-Մօր՝ Տը Մօնթօզիէ դուքսը։

Սիրոյ և հաւատարմութեան օրինակին եղաւ ան, և քսան տարիէն աւելի հառաչեց իր գեղանկինին տիրելէն առաջ։

Բայց Ռամպույեէյի ապարանին երես առած երիտասարդը, Մարգիզուհիին Պենժամէնը, ամենէն աւելի գգուանք և ժպիտներ վայելողն էր դեռահասակ Տը Մարսիլեաք իշխանը, որ ետքէն երեւելի Ֆրանսուա Տը Լա Ռոշֆուքօն եղաւ։

Շատ քիչ անգամ տեսած եմ ասկից աւելի համակրական և մտախոհ դէմք մը։

Մեծ ու կապոյտ աչեր ունէր մեղկութեամբ լի։ Անոր վարդագոյն շուրթերուն վերեւ թեթև սեւ մը կը բուսնէր, և այն ատենէն սկսեալ կ՚ուզէր պեխի անունը առնուլ։ Տը Մարսիլեաք իշխանը քիչ, բայց միշտ չափով կը խօսէր։

Իր հանճարեղ պզտի ձայնը մարդուս սիրտը թունդ հանելու չափ ելեւէջներ կը գտնէր։ Վեհերոտ կ՚երեւար, և բնաւ չէր կարծուեր թէ օրին մէկն այս խարտեաշահեր սիրուն գլխէն պիտի արտադրուէր Լէ Մաքսիմ անուն գիրքն որ յանդգնութեամբ և նորանշան խօսքերով լի երկ մ՚է։

Այս մեծանուն և փառաւոր անձերէն ետք ապարանին խենդերը կը գային։

Խենդ կ՚անուանէին այն ամեն անձերն որոնց ծաղրելի գործերը պատուաւոր ընկերութիւնը կը զուարճացնէին։

Ամենէն առաջ կը գար Նէօֆժերմէն բանաստեղծը, այլանդակ և անհամ բանահիւս մ՚որ գրեթէ վաթսուն տարեկան էր։ Պապաչուն (chevrotant) ձայնով մը կը կարդար այն ցաւագին եղերերգութիւնները զոր իր ընտանեկան դժբաղդութիւնները կը ներշնչէին իրեն։ Խեղճ ծերուկն անախական պատանուհիի մը հետ կարգուած էր, և նէ ամեն առտու իր պաճուճանաց նայելով իրավի կը գոչէր.

«Պէ՞տք է որ ծերունի մը սպայնէ այս . . . այտերը»։

Վօժըլա խեներուն կարգը դասուած էր։ Այս պատիւը ունենալուն պատճառն էր իր քերականական շաղակրատութիւններն և իր անհամ կարծիքները զոր անողոքաբար կը տար իր յստակախօսի յատուկ խրատներուն հետ։

գրաւին բոցը, և Րիշլիէօյին համար քանի մը բանահիւսական գործեր շարադրեց, որոնց մին է Պէնէտիքթինէյի մեկնութիւնը, որուն փոխարէն Կըրասի* եպիսկոպոսութիւնը ընդունեցաւ ։

Րիշլիէօ այս եպիսկոպոսութիւնը Կօտօյին տուաւ, յայտնապէս բառախաղը** ընելու համար ։

Երբ կարտինալը ուզէր խելք ունենալ, սովորաբար ութ օր առաջ կը պատրաստուէր ունենալու ։

Խենթերուն ցուցակին վերջ տալու համար պէտք յիշեմ նաև Տիւպուա անուն Գարտուշինեանը ։ Բայց անցորդ եւ մ՚էր ան ։ Նախ զգեստ զարդարող եղած էր, և ապա՝ կնիկը մեռնելէն ետք՝ յառաջատարաբար Գարտուշինեան եղաւ ։ Այսպիսի ընթացք մը սովորական չէ ։ Ահա անկից ետք Տիւպուա ամենուն յարգն ու համարումը ունեցաւ ։

Ժամանակ առ ժամանակ թոյլ կը տրուէր անոր մարդկութեան տունը գալ և ողորմութիւն հաւքել ։ Ու սովորաբար Րիշլիէօյի նախորդին (Հայր Ժօզէֆին) ուխտին և մեծապատիւին կը վերաբերէր ։ երբեմն զանց չէր ըներ լաւ ուզելու Հայր Ժօզէֆին վրայ, և ասի շատ ծիծաղաշարժ տեսարաններու առիթ կ՚ըլլար ։

Բայց այս տեսակ միջնարարքները ծանր խոստակցութիւններէ և հանճարեղութեամբ, զուարթութեամբ, ազնուութեամբ և կենցաղագիտութեամբ լի վիճաբանութիւններէ ետք տեղի կ՚ունենային միայն ։ Տիկին Տը Րամպույեէ խուերը կը գրգռէր երբ ակումբը ծանր խնդիրներով յոգնելէն ետք հանգչելու պէտք կ՚ունենար ։ կարգի կը հրաւիրէր զանոնք եթէ անպատեհաբար այլութիւն մը ընելու համարձակէին ։

Այն ժամանակ Րամպույէյի ապարանն ընդունող նշանաւոր կանանց մէջէն նախ գեղանի տիկին Տը Շըվրէօզը պիտի յիշեմ ։

* Գիտելու է թէ կրասը ֆրանսերէնի մէջ նաև շնորհք կը նշանակէ ։

** Կրասի եպիսկոպոսութիւնը կ՚ըսէ Բենետիքթինէյին նաև Շնորհքի եպիսկոպոսութիւն եւէ Կրասը, որ յատուկ անուն է, Շնորհք Բենետիքթինէ ։

Ծ. Թ.

Թագուհիին սրահներէն տիկին Տը Շըվրէօզ խոյս կը տար ամեն անգամ որ վայելչութիւնը կը ներէր խոյս տալու. առավ ըսել չեմ ուզեր թէ քիչ սէր ունէր Ան Տ'Օթրիշին վրայ. բայց ուրիշ շատ կանանց պէս տիկին Տը Շըվրէօզ հետաքրքիր էր տեսնելու այն ընկերութիւնները որք պատրաստ էին նսեմելու Լուվրի ընկերութիւնները. ասոնց մէջ համարձակութիւն չկար խնդալու Լուի ԺԳ-ին առջև՝ որ միշտ տխուր երես մ'էր, և Րիշըլիէօյին առջև որ միշտ աղետալի երես մ'էր։

Տը Լիւյն սպարապետին վաղեմի կինէն՝ ետք՝ հետզհետէ նուազ գեղեցկութեան կարգաւ կը գային հետեւեալները. այսինքն օրիորդ Տ'Արգընէյ որ Րէյմի Սուրբ-Ստեփաննոսին աբբատուհին էր. Տը Մօր կոմսուհին, կատարեալ այլանդակ մ'որ ջահերով միայն ճամբորդութիւն կ'ընէր, և օրիորդ Արշալոյս Տը Պուրպօն, որուն համար Վուաթիւր կ'ըսէր.

«Կը փափաքիմ որ այն Արշալոյսին յաջորդեն բազմաթիւ գեղեցիկ տիւներ, ամենքն ալ անամպ, ամենքն ալ նորա երեսին և խելքին պէս յստակ և պայծառ»։

Այս գեղեցկութեան սանդուղէն իջնելը շարունակելով կը հանդիպէիր օրիորդ Տը Մօնմօրէնսիյին, որուն համար Անրի Դ բազմաթիւ հառաչանք հանած էր. Նէ չէր պահեր այս իրողութիւնը. բայց շուտով կը շարայարէր թէ իրողութիւնը Թագաւորին մահուանէն քիչ օր առաջ տեղի ունեցած էր, և ճիշդ այն միջոցին ալ ինքն իր չորեքտասաներորդ տարին կը լրացնէր։

Կը կարծուէր թէ օրիորդ Տը Մօնմօրէնսին խիստ մտերմաբար կը տեսնուի առաջին պաշտօնէին հետ։ Նէ այս կարծիքը առիւծաբար կը մերժէր, և պաշտօնէին դէմ շատ դէշ կը խօսէր որպէս զի անհաւատները համոզէ։

Օրիորդ Տը Մօնմօրէնսիէն ետք կը գային օրիորդ Տը Սէնթ-Իօն իր շատ աղուոր աչքերովն ու անշնորհ ակռաներովը, և օրիորդ Տը Սէնըլթէր շատ աղուոր ակռաներովն և անշնորհ աչքերովը։

Տը Սապլէ մարքիզուհին, պատուական կին մը, գեղեցկութեան սանդուղին ճիշդ առաջին բազրոտին վրայ կը գտնուէր, բայց իր այս

տգեղութենէն չէր արգիլուեր արփագին սիրելու Տը Մօնմօրէնսի դուքսը։

Բայց դուքսն իբր ժանտախտէ խոյս կը տար մարգիզուհիէն։

Երկրորդ բազրոտին վրայ կը գարէր անտիական Տը Բանա Պարոնուհին. երրորդին վրայ պառաւ Շարլօթ Տէզ-Իւրսէն. չորրորդին և վերջինին վրայ տիկին Տը Գարինեան։

Տիկին Տը Գարինեան ամենէն տգեղն ու չարասիրտն էր։

Այս հեգնութիւններով կը հալածէր նէ խեղճ Վօժըլասը։ Այս քերականը տիկնոջ զաւակներուն դաստիարակութեան պաշտօնը վրան առնլու ախմարութիւնը չունեցած էր։ Արդ աշակերտներուն մին 'ի ծնէ խուլ և համր էր, և միւսն ալ կակազող. հետևաբար քերականին ամենէն բացորոշ սահմանումները չէին յաջողեր ամենափոքր վանկ մ'արտաբերել տալու Դաւիթին այս երկու կուոց։

Տիկին Տը Ռամպույեէյի ակմբանոցին նշանաւոր անձերն ահա ասոնք էին այն միջոցին ուր Վուաթիւրին առաջնորդութեամբը հռչակաւոր բնակարանէն ներս կը մանէի, բնակարան որ՝ դարուս ամենէն ճիշդ անձնաւորութիւնն էր, եթէ սակայն կրնամ այս կերպով խօսիլ։

Ապարանին արտաքին կողմը չունի որ և իցէ բան մ'որով զանազանի իր շրջակաները պտնուող միւս շէնքերէն. ապարանին դուրսի կողմը կարմրանման ճակատ մ'է որ նայուածքի առջև բաւական աննշան է։ Կառնադուռը սակայն շթաքարերէ շինուածի նմանութիւն ունենալով նշանաւոր դրոշմ մը կը կրէ. Դ., դրան մէն մի կողմէն հռոմէական ձևով ծածկուած [illegible] ահագին արձան մը կայ որ մէկ ձեռքովն իր քողին մէկ ծայրը կը վերցնէ, և միւսովն անդաստակին դուռը ցոյց կը տայ։

Այս հիւրասէր յարկաժահարանոյ վերևը պառկած առիւծներ կան որք պերդաստանին զինանշանի վահանը կը բռնեն իրենց ճիրաններով։

Բայց երբ ներս կը մտնես, ամեն բան վեհաշուք կը դառնայ։

Տիկին Տը Ռամպույեէ՝ որուն ճարտարապետութեան մասին պի-

տութիւնը յանդգնաբար կը յարձակի հին սովորութեան տղայամտութեանց՝ ուզեց ինքն անձամբ հսկել իր տպարանքին զարդարումին վերաբերող աշխատութեանց։ Անդաստակն երկու կողմէ կարգաւ շարուած տօրիկեան սիւներու վրայ կը կոթնի։ Տանիքէն քիւերուն տակի ծիրերէն շքեղ որմանկարներ կը նետուին եւ զմրէթին բոլորտիքը կ՚ընթանան։ Հոն կը տեսնես Կանիմէտը զոր արծիւ մ՚իր ճօճուն թռիչքովը կ՚առնու կը տանի. Հոս կ՚երեւան սատիւրներ (satyre) որք խաղող կը ժողովեն եւ կը քամեն գինեհար կուփիտօնիկներու բազմութեան մը բաժակներուն մէջ։ Ուրիշ տեղ տրիատներ այսինքն անտառային նիմփեր գետի մ՚եղէգներուն ներքեւ կը նիրհեն. բազմաթիւ անտառային շահապետներ իրենց պագշոտ ժպիտով, եղջերաւոր ճակատով կը գան եւ անզգուշաբար կը մեկուսեն այս եղէգները։

Գետնայարկը կը գտնուին ընդունելութեան գաւիթներ որ կը մտնես իրարու յաջորդող խուցերէ, սրահներէ եւ նախասենեակներէ որք մեծ սրահը կամ ակումբանոցը կը տանին։

Այս սրահը զարդարելու համար մարգիզուհին մինչեւ այն ատեն չլսուած շռայլութեան մ՚ամեն միջոցներուն դիմեց։ Պատերը մանիշակագոյն թաւիշով ծածկուած են, զոր ոսկեհուռ ծնօտներ կը շրջանակեն. եւ Րիւյէն՝ զոր Մարի Տը Մետիսի Անվերէն բերել տուած էր Լիւքսանպուրի պալատը զարդարելու համար՝ զիջաւ իր մեծահռչակ վրձինները նաեւ տիկին Տը Րամպույեէյին ծառայեցնելու։

Րիւյէն՝ Ամփիթրիտին Պխիլթոնէն առեւանգիլը նկարեց ձեղունին վրայ։

Ներէյի աղջկան ծովերու թագուհին հզօր ձեռաց մէջ յուզուիլը կը տեսնուի։ Կոհակը կը շարժի, ծովային երիվարները կը քաշեն կը տանին փառաւոր կառքը, որուն ետեւէն փողահար տրիտոններ կ՚երթան իբր շքախումբ, եւ դիցուհիին ընկերուհիները գլփինի մը կանաչանման զաւակին վրայ նստած ետ կը դառնան լալով։

Ականթի ոսկեզօծ լայն տերեւներէ բաղկացող ծնօտներ մեծանուն վարպետին այս շքեղ նկարը կը շրջապատեն։

Պահերն ալ զարդարանաց պէս մեծաշուք են․, և հոն հոս Թիկնաթոռներուն առջև բաց կը կենան ցանցապէս հիւսուած Թեթև գրքակալներ որք ընթերցողներուն ձեռագիրները բանալու սահմանուած են ։

Մարմարեայ բարձր չմինէային վրայ կծկուած երկու սփինքսներ կճեայ սափոր մը կը բռնեն ։ Անոնց վերևը կայ պատկեր մ'որ անշուշտ հոն դրուած է պալատական պահանջումներու հնազանդելու և վկայելու համար թէ մարքիզուհին ժողովներն իշխանութեան դէմ ապստամբական և սպառնական բան մը չունին ամնեւին ։

Այս պատկերին մէջ կը ներկայանայ Համբաւն և Լուի ԺԴ-ը կը Թագադրէ Աթենասի և Արդարութեան առջև որք՝ պէտք է ըսել թէ՝ խիստ գոհ կ'երևան այս Թագադրութենէն ։

Պարտէզներուն վրայ նայող երկու ամենամեծ պատուհաններ սենեկին բոլոր բարձրութեամբը կը բացուին, որով կը տեսնուին ձախ կողմէն տիկին Տը Սէնթ-Էվրըմօնին տան մէկ Թևը, աջ կողմէն Շըվրէօզի ապարանքը, և հանդիպակաց կողմէն ալ Քէնզ-Վէնը, որուն սևաթոյր պատերը մասամբ խիտ կը պահուին կանաչ նշդարիններէ և Թմբիներու հովանիքէն ։

Մեծ սրահէն երբ ուրիշ երկու և նուազ ընդարձակ սրահներ կը բացուին կամ կը գոցուին հիւրերուն բազմութեան համեմատ, և անկից երբ վերջապէս կը մտնես ներքին տապանակը, այն չքնաղ սենեակը զոր ժամանակին բոլոր բանահիւսները հռչակեցին ։

Վուաթիւրին առաջնորդութեամբն ահա այս չքնաղ սենեակը մտայ՝ անբաւ բազմութենէ մը գրաւուած երեք սրահներէ անցնելէս ետք ։

Վուաթիւր մետաքսեայ պաստառէ դուռը գոցեց հետաքրքիրներու քթին, որք նուիրական վայրը գաղտնի ակնարկ մը նետելու կը ջանային ։

Սիրտս ուժգնակի կը բաբախէր ։ Յիրաւի շատ յուզուած էի, տեսնելով թէ ինծի պէս անշուք անձ մը պատկառելի տապանակին առջևը կը գտնուի ։

Նախ ոչինչ նշմարեցի։

Ամպ մ'աչքերս վարագուրեց. պատրաստ էի տեսակ մը թալ-կացում ունենալու երբ քնքոյշ պզտի ձեռքէ մը յանկարծ քա-շուիլս զգացի։ Երկու այտերս պաղին, զիս նստեցուցին, ամպն աներևոյթ եղաւ, և տիկին Տը Շըվրէօզը տեսայ, որ շուրթերուն վրայ մատ մը դրած ինձ կը պատուիրէր լուռ կենալ։

Ներկայ գտնուող ականաւոր անձանց մին նոր սկսած էր բան մը կարդալ։

Շնորհումս հանդարտեցայ։ Շրթներուս մօտեցուցի բարեսիրտ դքսուհիին այն ձեռքը, որ իմինս կը բռնէր տակաւին, և աչքս վեր ընելով արժանապատուութեան և ծանրութեան հով մ'ունե-ցող տիկին մը տեսայ որ հովահարովը ինձ բարև կը տար։

Բարեւողն էր մարկիզուհին։

Պատրաստուեցայ ոտք ելնելու որպէս զի իր ազնիւ ձեւին պա-տասխանը տամ. բայց նէ նշան ըրաւ տեղս կենալու, շնորհալի կերպով ժպտեցաւ ինձ, և նայուածքը նորէն կարդացողին վրան դարձուց։

Վուաթիւր գացած էր աթոռ մ'առնելու Ժիւլի Տ'Անժէնին քովէն, որ մօրը մօտ նստած էր։

Ա՛լ ոչ ոք ուշադրութիւն ըրաւ ինձ։ Քննեցի տապանակը։ Ի-րաւունք ունէին կապոյտ սենեակ անուանելու այս սենեակը։ Երկնա-գոյն ներկով ներկուած ձեղունն ոսկեղէն ցանուցիր աստղեր ու-նէր, որք ջահերուն լոյսովը կը փողփողէին և ոչ այնքան գէշ կը նմանէին երկնից գմբէթին վրայ երեցող իրենց քոյրերուն։ Պատերուն օթոցները կապոյտ թաւշէ էին, ինչպէս նաև անտրատ ննջեկին վարագոյրները։

Այս սենեկին մէջ ամեն բան հանդարտաւէտ երանութիւն մը, դիւրատար առաքինութիւն մը, յաւիտենական և անամպ խաղա-ղութիւն մը կը շնչէր։

Ննջեկին ներսի կողմը, սպիտակափայլ մարմարին վերևը մար-գրիտուհիին ոսկի մետայլոնէ շրջանակուած պատկերը կը տեսնուէր։ Անկողինը տեսակ մը ծովային կոնքի ձեւը ունէր և կորնթարդ տա

նորա վրայ կը կոթնէր։ Հիմնոսի արձան մ'և Վայելչութեան արձան մ'այս շնորհալի ննջարանին եզրին քով ծռուած կը կենային և անոր գմբէթի ձևով վերցուած վարագոյրները կը բռնէին։

Տիկին Տը Ռամպույէ Հռոմէն բերել տուած էր այս անկողինին օրինակը, առաջին անգամ փոխելով այն հովանոցաւոր անկողինները, որք ծաղրաշարժ փետուրներով բեռնաւորուած են և որք՝ եթէ գոցուին՝ գերեզմաններու կը նմանին։

Գաղղիացի պատկերահան մ'որ՝ այն ատեն Իտալիա կը բնակէր՝ իր վրան առած էր ղրկել այս անկողինը՝ անոր հետ ղրկելով նաև Սէն-Ժան 'ի Բողոնէէն մի որ անկողնոյն և պատին մէջ տեղի անջրպետը գրուած էր։ Միայն թէ երկու ծերունիները օրուան կերպովը հայուեցուցած էր, և այսպէս հագուեցնելն այժմեայ նորաձևութիւնները ամենահին ժամանակի մը նորաձևութեանց փոխել է։

Սիրահար ալևորները Վիլարսօյին և Ռօղգրուային կը նմանէին։

Եթէ 'ի բաց առնունք ժամանակագրութեան այս վրիպանքը, պատկերն արժանիք ունէր, և Ռիւպան անոր գովեստը տուած էր։ Այս Սէն-Ժանին հեղինակը Բուսէն կ'անուանի։ Բուսէն Ճիշդ այն անձն է անշուշտ, որուն տաղանդն այնքան հրաշալի կերպով զարգացաւ և որ այսօր Թագաւորին պատկերահանն է։

Անկողնին փողիկին* միջևը, որ լայն և դիւր էր և ուր դիւրաւ կրնայիր շրջաբերիլ աւելի փոքր չորս պատկեր ևս կը տեսնէիր, զոր նոր շինած էր ապագային մէջ առջև երթալու շատ յոյս ունեցող անտիական պատանի մը։

Հետևաբար մարգիզուհին իր մասնաւոր պաշտպանութեամբը կը պատուէր զան։ Հազիւ տասնուվեց տարեկան էր այս պատանին և անունն էր Բիէր Միյնեար։

Այս չորս պատկերներն առաջին նայուածքին վրձինի մեծ ան-

* Ruelle բառը փողիկ կը նշանակէ, որ անկողնին և պատին միջև տեղը եղած վայրն է։ Ծ. Թ.

փորձութիւն մ'երևան կը հանէին։ Սակայն յօրինումի մեծ վայելչութիւն մ'և երփններկի կատարեալ կենդանութիւն մը կ'ընծայէին։ Պատկերները Չորս Եղանակները կը ներկայէին. Թէև բաւական սովորական էր այս առարկան, բայց իր ներքև զմայլելի այլաբանութիւն մը կը վարագուրուէր։

Նախ վեհերոտ կոյս մը կը տեսնէիր որ Սէրէն բռնուած շքեղ կողովէ մը շուշաններ և վարդեր կ'առնուր։ Պզտի չաստուածը ծածկապէս պատանուհիին կը նայէր և կարծես թէ կ'ուզէր ըսել.

«Յուսա՛»։

Երկրորդ պատկերին մէջ կոյս մը կար որ կին եղած էր։ Մեծ կաղնիներու շուքին ներքև ժուռ կը գար և նամակ մը կարդալով կը ժպտէր։ Սէրը նորա արևարգելը կը բռնէր, առջևը զուարթութեամբ կ'ոստոստէր, և կիտովին կը դառնար, նայուածքովը ըսելով.

«Երջանի՛կ եղի՛ր»։

Երրորդ պատկերին մէջ կնկան ճակատը սքօղուած էր։ Սէրը յուզուած կերպարանով անոր կը նայէր հոգեպիշ, բաժակի մը մէջ խաղող կը քամէր և կ'ըսէր.

«Մոռցի՛ր»։

Վերջապէս չորրորդ պատկերն ոտքի վրայ կեցող կին մը ցոյց կը տար, որուն երեսը բոլորովին սքօղուած էր և որ մեծ կրակի մ'առջև կը տաքնար։ Սէրը տակաւին անոր քով էր, բայց թևերն ևս ցրտահար կը սրսփար, գլուխը տրտմապէս կը ծռէր... և ալ բան մը չէր ըսեր ամենևին։

Վուաթիւր երգիծակի խրատ կը տար Բլէր Մինյեարին. Նորաոճ ճարտարապետը բանահիւսին գաղափարները կը պատկերէր ամենակատարեալ բարեբաղդութեամբ։

Այն գիշեր կաճառը տասներկու հոգիէ կը բաղկանար։

Կիներն էին. մարգիզուհին, իր աղջիկը՝ Ժիւլի, տիկին Տը Շըվրէօզ, Տը Սէնթ-Էթիէն աբբաուհին և ես։

Գանք մարդոց. ամենէն առաջ աչքիս երևցաւ Շաբըլէն, որ ննջեկին ոսկեզօծ վանդակապատին նուէն իր քրոջ ներքնակը և իր

կեղծամին անկարայրելի մազակները պահելու կը ջանար։ Խենդ տղան արեւադարձային թռչուններու փառաւոր խումբի մը մէջը գտնուելու քանդակուած քոփի մը կերպարանքը ունէր։ Անոր քովն էին Տը Գոնտէ իշխանը, Պ. Տը Մոնմորէնսի, Պ. Տը Թալեյրան և անտիպական Տը Մարսիլեագ իշխանն որուն աչերուն մտախոհութեամբ իմ վրայ յառած ըլլալը գաղտնապէս նշմարեցի։

Արդէն ըսի թէ Վուաթիւր ծիւլի Տ'Անժէնիյին քովը տեղաւորուած էր։

Գէթ առերեւութապէս շատ դժբաղդ չէր երեւար այն պայմաններէն որոնց ներքեւած էր զինքն իր պարտութիւնը։

Երկաթասանդերուղ անձն էր Գոնրար, որ ամենուն ուշադրութեան մէջնը կը կարդար չէ թէ քերթուած մը կամ վիպասանութեան գլուխ մը, այլ յարգաւզարգի՝ սովորութեանց և բարեձեւութեանց (bienséance) տեսակ մ'Օրէնսգէք, որ վերնատան կողմէն հաստատուած կարծիքներուն վրայ ձեւաւորուած էր։

Այն գիշերն տպարանին մէջ հաւքուող բազմութեան պէտք հաղորդուէր այս Օրէնսգէքը։

Տ'Անժէն սրահներուն մէջ ժողոված էր հոն հաւքուող հիւրերը ընդունելու և ճաշարելու համար, և իր կինն ալ քանի մը ժամերիններ հետը առնելով ուզած էր վերջին անգամ մ'ալ տեսնել Օրինագիրը, և ապա հրապարակային ընթերցմամբ մ'օրէնքի ոյժ տալ անոր։

Հարցուցի իւրօվի թէ Շարըլէն ինչ մաս ունեցած էր այս օրինաց հաւաքածոյին մէջ, և ինչ նկատմամբ սիրելի պարոնը կրնար ծառայել գեղեցիկ ձեռքու տարածումին և պաճուճանաց։ Ու որովհետեւ անկարելի եղաւ ինձ գոհացուցիչ պատասխան մը գտնել այս հարցումիս, Օրինագրին քանի մը հանդիսաւոր վճիռներուն ուշ դրի անոնցմէ օգուտ քաղելու համար։

Ականջիս ամենէն առաջ հասնող վճիռը սաստիկ կարմրուք մը ծառայեց այտերուս վրայ։

Ցետագայ կերպով գրուած էր այս վճիռը.

«Ազնուատոհմ կիները միայն իրաւունք ունին թաւշեայ, սրնգուսեայ (ատլաս) և տամասկեայ զգեստ հագնելու»։

Գաղտնապէս բոլորտիքս նայեցայ, վասն զի ծնդուսեայ ամենաշքեղ բօպա մը հագեր էի։ Բայց ոչ ոք չփորձեց նշմարել ձեւացուց։ Կոմսուհին մէկ միջոցով շատ նուաստութիւններէ ազատած էր զիս, թոյլ տալով հաւատալու թէ անունս Օրիորդ Տը Լ'Օրմ է։ Նէ չէր համարձակեր անշուշտ իրեն սխալիլը իմացնելու այն անձանց զոր առեննօք այս սխալման մէջ կը թողուր, և ամենուն առջև ազնուականութեան տիտղոսներ յափշտակելս կը շարունակէի։

Վալանթէն Գօնրար իր ընթերցումը շարունակեց.

«Իսկ հասարակ կիներն օրինաւորապէս ճանֆէս և մետաքսեայ ուրիշ պզտի կերպասներ միայն կրնան հագնիլ»։

Օրինաւորապէս բառը շքեղ երեւցաւ ինծ։

«Ամենաճիշդ բարեձևութիւնը կը պահանջէ, շարունակեց ընթերցողը, որ մարդ մ'իր գլխարկին գոյնը իր բաճկոնակին գոյնին, և իր կեղծամին գոյնը իր կօշիկներուն գոյնին յարմարցնէ»։

Հեգնութեան թեթև ժպիտ մը տարածուեցաւ ամենուն շրթերուն վրայ, և ազնուական Արխոսբաղդսին աչերը Շարըլէնի կողմը դարձան։

— Հանդարտ կեցէ՛ք, հանդա՛րտ, ըսաւ տիկին Տը Րամպույէ, գիտէք որ բանաստեղծս անուղղելի է.....։ Ազատութիւններ տուած եմ անոր։

Ի՛ր բանաստեղծը. մարգիզուհին ի՛ր բանաստեղծը կ'անուանէր Շարըլէնը։

«Իսկ կիները, կրկնեց Գօնրար այս կարճառօտ դէպքէն ետք, կը պարտաւորին ադամանդեղինաց հանգոյցները տանդելներու, և հովահարին մեծութիւնը բօպային լայնութեան յարմարցնել։ Տիկին մ'իր անկողնոյն փողիկին մէջ կրնայ հիւր ընդունիլ և թոյլ տալ իր մտերիմներուն որ հոն նախաճաշեն, նախընթրիք ընեն, կարդան և կատակերգութիւն անգամ ներկայացնեն։ Նէ միւս տիկինները ընդունելու ատեն կը համբուրէ, և սեղանը նստած ժամանակէն 'ի զատ կը պարտաւորի միշտ ձեռնոց գրուիլ։

«Մարդ մ՚իր աջ ձեռքին ձեռնոցը կը հանէ և բարև տալու համար երբ կը ծռուի, աջ ձեռքը մինչև գետինը կը տանի։ Քաղաքավարութիւնը կ՚ուզէ որ իր գլխարկը հանէ ամայի սրահէ մ՚անցնելու ժամանակ անգամ։ Եթէ սրահին մէջ մարդ կայ, պէտք է գլուխը բաց ներս մտնել...»։

— Աղէ՜կ միտքս եկաւ, ըսաւ մարգիզուհին՝ ընթերցումը ընդհատելով, սա գիշերուան սոսկալի խոյրերուն նկատմամբ յօդուած մը չինեցիք։

— Բայց, տիկին, ըսաւ Գօնրար, անկարելի է արգիլել խոյրերը։

— Եւ ինչո՞ւ համար, պարոն։

— Վասն զի ամեն մարդ խոյր կը գործածէ։

— Կրնայիք լաւագոյն պատճառ մը տալ ինձ. այդ պատասխանը ձեր ճշդապահանջ տրամաբանութեան և սովորական դատողութեան համեմատ չէ։

— Թոյլ տուէք, ազնիւ տիկին, որ պարզ դիտողութիւն մը ընեմ ձեզ, ըսաւ Տը Գօնտէ իշխանը խոնարհելով։

— Խօսեցէք, վսեմափայլ տէր։

— Օրէնք մը կը շինուի որպէս զի ժողովուրդը հնազանդի անոր։ Լաւագոյն է չշինել օրէնքը, եթէ միայն անհնազանդներ պիտի գտնէ այն. արդ յիշեալ յօդուածը շատ անհնազանդներ պիտի ունենայ։

— Ամենէն առաջ ձեզի՞ թերևս։

— Ո՛հ, մարգիզուհի, զիս կամ սուտ մ՚ըսելու և կամ անքաղաքավար գտնուելու երկսայրաբանութեան մէջ կը դնէք... ասի վեհանձնութիւն չէ։

— Այս խնդրոյն վրայ ձեր կարծիքն ի՞նչ է, պարո՛ն դուքս, հարցուց տիկին Տը Ռամպույեէ Մօնմօրէնսիին։

— Տիկին, գիշերուան խոյրը շատ դիւր կ՚երևայ ինձ։

— Բայց ատի յայտնի ապստամբութի՜ւն մ՚է, գոչեց պզտի թագուհին։ Պէտք է հնազանդեցնել ապստամբները, մարգիզուհի, պէ՛տք է հնազանդեցնել... չյանձնենք մեր պէնքը։

— Բայց, սիրելիս, ըսաւ Մօնմօրէնսի դերանի կրօնաւորին, որ անոր առաջնորդին էր, ինձ կը թուի թէ կը պարտաւորիս խաղաղութիւն քարոզել և չէ թէ երկպառակութիւն։ Անկից 'ի զատ այս խնդիրը քեզի համար ոչ այնքան կարևորութիւն ունի, և գոնէ... վիճակիդ նայելով, շատ անտարբեր ես այս մասին։

— Այս կը հաստատէ, բարեկամ, թէ խղճմտանք չեմ, պատասխանեց կրօնաւորն շնորհալի աշխուժով մը։

Ծափ զարնեցաւ այս պատասխանին վրայ։

— Սիրելիդ իմ, ըսաւ դուքսն իր ազգականին՝ շնորհալի բարև մը տալով, վա՛յ անոնց որք խելքի պատերազմ կը հրատարակեն քեզի դէմ, վասն զի միշտ կը յաղթուին։

— Խնդիրին վերադառնանք եթէ կը հաճիք, կրկնեց մարգիզուհին, և քիչ մ'ալ Գ. Տը Թալէյրանին կարծիքը հարցնենք։

— Համեցէք նախ և առաջ տիկնանց կարծիքը ուզելու, սովորութիւն ունիմ անոնց կարծիքը ընդունելու, ըսաւ Շալէ՝ տիկին Տը Շըվրէօզը ցոյց տալով։

Տիկին Տը Շըվրէօզ խոնարհութիւն մ'ընելով,

— Ներեցէք, ըսաւ, ես կարծիք չեմ յայտներ։

— Իրաւունք չունիք չյայտնելու, գոչեց արտասուհին. պէտք է յայտնել թէ գիշերուան խոյրին թե՞րն էք թէ դէմ։

— Լա՛ւ, ըսեմ ուրեմն. երբ կը հանդչիմ մարդու մը քով որ իմ.... էրիկս է, յօժարակամ անտարբեր կը մնամ անոր հագուստին նկատմամբ։

— Աղէկ չէք ըներ։ Կը ցաւիմ ձեր այդպէս խօսիլը լսելով, ըսաւ տիկին Տը Բամպույեէ անկատակ կերպով։ Մարդու մը համար միշտ գձնդակ բան մ'է ծաղրելի երևալն այն կնկան աչքէ զոր կը սիրէ, և ես դարձեալ կը պնդեմ թէ գիշերուան խոյրն այլանդակ գլխանոց մ'է։ Բայց քանի որ այս պարոններուն դէմ կ'երևայ այն, քանի որ կը դիմադրեն, ա՛լ չխօսինք այս բանիս վրայ.... Խոյրը պահելն արդէն մեծ պատիժ մ'է անոնց։

Մարգիզուհին նշան ըրաւ Գօնրարին որ իր ընթերցումը շարունակէ։ Շատ մը յօդուածներու վրայ առք վիճաբանութիւն-

ներ եղան, բայց այս մխիթարանութեանց ձեր կատարելապէս անձնիւ և վայելուչ էր միշտ։

Երբ Օրինագիրն ընդհանուրին հաւանութիւնը կրեց, տիկին Տը Րամպույեէ ելաւ իր աթոռէն, և եկաւ ճակատս պագաւ սիրապէս։

— Ներեցէք ինձ, սիրելի աղջիկս, ըսաւ։ Կարծեցիք թէ ամենէն առաջ ես ոտան կոխեցի այն օրինաց մին որք կարդացուեցան պահ մ՚առաջ, այնպէս չէ՞․ բայց այսպէս վարուելուս հրաման կը տայ ինձ ուրիշ օրէնք մ՚որ հոս կ՚արգիլէ մէջի ընդհատելու մխիթարանութիւնները և ընթերցումները։

Աշխուժով յայտնեցի մարգիզուհիին թէ որքան պարծանք կը համարէի ինձ իրմէն ընդունուիլս և վերնատունը մտած ըլլալու բարձր պատիւը։

— Կը պարտաւորիս իրմէն ալ շնորհակալ ըլլալ, ըսաւ տիկին Տը Շըվրէօզ կէս ձայնով․ կնքամայրդ այս տեղերը շատ գէշ հնչած էր անունդ։ Երբ Վուաթիւր խօսքդ ըրաւ, բարձրաձայն աղաղակներ արձակեցին առաքինութեան այն ամեն վիշապներն որք կը վխտան այս ապարանքին մէջ։ Այն ատեն պատշաճ սեպեցի միջամտելս, և խոհեմութեանդ երաշխաւոր եղայ։

Ապա բոլորովին ցած ձայնով շարունակեց տիկին Տը Շըվրէօզ․

— Հարկ եղաւ քանի մը մանր սուտերու դիմել․ յուսամ թէ կը ներես դիմելս, այնպէս չէ՞։

Պաս կարմիր դարձայ։

— Հոգ մի՛ ըներ, ըսաւ ինձ զուարթօրէն, հոգ մի՛ ըներ․ այդքան անօթահար մի՛ երևար։ Ներողամտութեան համար ամեն տեսակ պատճառներ ունիմ։

Տիկին Տը Րամպույեէ դարձած էր դէպ այն կապուտաչն երիտասարդին կողմը, որ այնքան ինձ նայած էր Օրինագրին ընթերցման միջոցին։

— Այս ասպետը* ձեզ կը տամ փոխանակ Վուաթիւրին, վասն

* Cavalier բառը ասպետ կը թարգմանենք՝ որ մարդ կը նշանակէ։ Օրինակի աղագաւ պարահանդէսի մը մէջ ասպետ կ՚ըսուին մարդերը, և տիկին (dame) կինները։ Ծ. Թ.

ջի պահ մը կ'առնում պարոն բանաստեղծները և պիտի պատուիրեմ անոնց որ քանի մը բանահիւսական երկեր չինեն յանկարծական խաղէ մը որ մտածուած է :

— Այս յանկարծական խաղին մէջ դեր մը պիտի խաղաք, պարոնի աղջիկս. Մարսիլեայ պիտի բացատրէ ձեզ խնդիրը . . . , խորհրդապահ եղէք :

Անրի Տը Թուլէյրան ձեռքը դքսուհիին կը տար. Մօնմօրէնսի իր առհմուհիին ձեռքը կ'առնուր, և Ժիւլի Տ'Անժէն Տը Գօնտէ իշխանին թևը կը մտնէր :

Սրբավայրէն ելանք նորէն սրահներն երթալու համար, մարգիզուհիին հետ այս շքեղ բնակարանին մէջ թողլով Շարբլէնը, Գօնրարը և ներածողս Վուաթիւրը :

Բազմութիւնը յուզման մէջ էր :

Մարդիկ կը խռնէին երևելի անձի մը քով որ նոր եկած էր և որուն առջև տան տէրը խիստ ակնածական ձևեր և շնորհակալութիւններ կը յայտնէր անընդհատ :

Անգլիոյ դեսպան Պըքինկամն էր այս անձը :

Հազիւ հինգ կամ վեց օրէն 'ի վեր եկած էր ան խօսակցելու համար իր տիրոջ՝ Կարոլոս Ա.ին Անրիէթ Տը Ֆրանսի հետ ամուսնութեան համար. ամենուրեք ողջունելի մեծարանք և ընդունելութիւն կը գտնէր ազնուական լորտը, և ամենէն առաջ Րամպուլէյի ապարանը կ'ընդունէր անոր այցելութիւնը : Պըքինկամ խիստ մեծ, խիստ աղէկ հագուած, խիստ գեղանձն և խիստ ծանծաղամիտ երևցաւ ինծ :

Անցնելով անգամ մը պարզապէս նայեցայ անոր, վասն զի ազնիւ Մարսիլեայ իշխանը՝ որ 'ի սկզբան բոլորովին կարմրած և ամչկոտ էր՝ աստիճանաբար իր վեհերոտ կերպերը թող տուած էր, և շատ աշխուժով կը պատմէր ինծ թէ տիկին Տը Րամպուլէյի յանկարծական խաղին մէջ ինք Պարիսի դերը պիտի խաղար, ես ալ Աստղիկին դերը :

Տեսակ մը ձգողական ուժ դէպ այս երիտասարդը կը տանէր զիս. իր անոյշ ձայնն իբր զմայլելի երաժշտութիւն մը կը հնչէր

ականջիս: Քաղցրալոյն ժպիտներովս արբշիռ կը դարձնէի իր սիրտը, և կախարդապէս ամենէն սիրազրգիռ նայուածներս կ'արձակէի անոր: Մարսիլեայ շուտով բռնկեցաւ վառեցաւ յոտից ցգլուխ, և այնպիսի վրդովալի կերպով որ պատրաստուեցայ մարելու հրդեհը:

Հասկցուցի իրեն թէ իր յուզումը բազմութեան աչքին կը տեսնուէր, թէ անպատեհ էր ընտրուած վայրկեանը, և որովհետև Արքայական հրապարակն էր իր տունը, խօսք տուի կառքովս հոն տանելու զինքը:

Այս խոստումիս վրայ Մարսիլեայ նորէն գրգռուեցաւ արփորէն, և տեսայ որ պատրաստ էր ան ոտքս ընկնելու որահին բազմութեան առջև:

Յանկարծ մէկն ականջիս ըսաւ.

— Մարիօն, ահա բան մ'որուն չեմ կրնար համբերել. . . . վասն զի անձնասիրութիւնս կը վիրաւորէ . . . վրէժս պիտի լուծեմ:

Ապա բարձր ձայնով յետագայ խօսքն ըսաւ.

— Զգուշացիք, Պարոն Տը Մարսիլեայ, օրիորդ Տըլօրմին հրապոյրներն անհաւատարիմ կ'ընեն ձեզի մարգիզուհիին պաշտպանութեան տակ գտնուող նորաբոյս պատանուհիին . . . գիտէք անշուշտ որու ակնարկելս, այսինքն խարտեաշահեր գեղուհիին որ Թուրէնէն նոր եկաւ, և որուն . . . ինչպէս ըսիք ինձ՝ մոլեգնաբար սիրահարած էք: Կը հաւաստեն ինձ թէ քիչ մը հիւանդ է նէ այս գիշեր, և կը տեսնեմ որ այս տկարութիւնը շատ վնաս կը պատճառէ իրեն ձեր յիշատակին մէջ:

Այս խօսքերը արտաբերողն էր Վուաթիւր:

Վուաթիւր սրահները վերադառնալով մեր խօսակցութենէն մէկ քանի բան լսած էր յանկարծապէս:

Այս նենգալի սլաքը մեզ արձակելէն ետք աճապարումով մը աներևոյթ եղաւ:

— Պարոն, ըսի Մարսիլեագին զայրացած ձայնով մը, սիրելի է ինձ հաւատալ թէ պիտի բացատրես ինձ այդ սիրային գաղտնիքը, այնպէս չէ՞:

— Ո՛հ, գոչեց, կ'երդնո՛ւմ թէ....։

— Լռէ՛, ըսի խիստ կամաց և գրեթէ երկիւղով։

Վասն զի Պասօմբիէռը կը նշմարէի։ Մեկուսի և սրահին բարձր պատուհաններուն մէկին խորշը նստած էր ան։

Արդէն քանի անգամ պարտաւորեր էինք անոր առջեւէն անցնելու։ Թերևս իմքն ալ լսած էր մեր անխոհեմ խօսակցութիւնը, և դառնապէս ինքզինքս կը մեղադրէի յիմարական ընթացքիս համար։

Սակայն մարեշալը քովս եկաւ բնական կերպարանով մը։

Աչքը զուարթ էր իր սովորութեան համեմատ, և դէմքն իր բարեսրտութեան դրոշմէն ոչինչ կորուսած էր։ Միայն թէ՝ երբ խօսք ուղղեց ինձ՝ կարծեցի նշմարել թէ իր բերանը տեսակ մը ջղային կարկամութեամբ կը յուզուէր։

— Քեզ հոս հանդիպելու հաճոյքը չէի յուսար ունենալ, ըսաւ Պասօմբիէր՝ զոյգ մատերուս ծայրը շուրթերուն տանելով։ Պրքինկամ, դեռ քիչ մ'առաջ, երբ Լուվրէն ելեր էինք, աղաչեց զիս որ հոս ներկայացնեմ զինքը, և կը պատրաստուէի առնել զայն։ Մարիօն, արագօրէն քեզ միւս բարեաւ մ'ըսելու համար, վասն զի չեմ կրնար ազատիլ դեսպանութենէս։ Կարտինալը՝ տեսնելով թէ իր հրամանէն խոյս տալու տրամադիր եմ՝ ունքը պղըտորեց. արդ աւելի աղէկ ունիմ գլխուս վերևը Նաբօլիին երկինքը ունենալ քան թէ Պաստիլի գմբէթները։ Վաղը կը մեկնիմ, սիրելիդ իմ....։ Իցի՛ւ թէ բացակայութեանս ժամանակ ամեն տեսակ ուրախութիւններ և երանութիւններ վայելէիր։

Իր ձայնը յուզումէն կ'երերար։

Թեւը մատոյ ուժգնապէս, և նշան ըրի անտակական ասպետիս որ ինձ սպասէ պատուհանին տակը։

— Մարեշա՛լ, ըսի Պասօմբիէրին, վաղը չես մեկնիր, չեմ կրնար հաւատալ մեկնելուդ։

— Այդ Տը Մարսիլեագ իշխանը շատ գեղեցիկ տղայ մ'է, պատասխանեց ինձ՝ իբր թէ չլսած ըլլար խօսքերս։ Կը պարտաւորիս հպարտանալ այդպիսի յաղթանակի մը վրայ։

— Բայց, բարեկամ․ ․ ․ ։

— Բայց քեզի չեմ մեղադրեր ամենևին․ ․ ․ ։ Անկեղծ եղի՛ր, Մարիօն. կը սիրե՞ս իշխանը։

— Ի՞նչպէս կրնաս այդպիսի խօսք մ՚ուղղել ինձ։ Հազիւ ժամ մ՚ի վեր է այդ երիտասարդը ճանչելս։

— Օ՜ն, մի՛ խռովիր․ ․ ․ ։ Բռնակալ մ՚եմ. սիրտդ մասնաւոր կերպով սահմանադրելու դիտաւորութիւն յայտնեցի՞ քեզ երբէք․ ․ ․ ․ ։ Ազատ ես, կատարելապէս ազատ։

— Ո՛հ, մարեշա՛լ։

— Յիշէ՛ մեր պայմանները․ ․ ․ ․ ։ Լաւագոյն բարեկամդ կը մնամ։ Ինձ հաւատարիմ մնացիր որքան որ չէի յուսար թէ կը մնաս։

— Այդ խօսքն ինծի համար կարի մեծ նուաստութիւն մ՚է, պարոն։

— Ո՛հ, ճշմարի՛տ կ՚ըսեմ թէ քեզ ամենափոքր ցաւ պատճառելու դիտաւորութիւն չունիմ բնաւ։ Կարելի է թէ յուզուած եմ․ ․ ․ սակայն յիշատակդ միշտ սիրելի պիտի ըլլայ ինձ։ Մնանք ուղիղ խոստումի մը սահմանին մէջ, խոստում որուն ոչ դուն և ոչ ես կարող ենք հակառակ վարուելու։ Կը կրկնեմ քեզ ինչ որ արդէն ըսած եմ. «Գեղանի եղի՛ր, նախանձելի եղի՛ր, երջանիկ եղի՛ր։ Եւ եթէ ճամբուդ այս կամ այն անկիւնը հին բարեկամիդ հանդիպիս, մի՛ մերժեր անոր մտերմիկ ոստ․ մ՚և համբոյր մը․ ․ ․ »։

Արտօսր մ՚արտևանունքս թրջեց։

— Ուրեմն իրա՞ւ․ ․ ․ կը մեկնիս, մարեշա՛լ։

— Կը մեկնիմ, պատասխանեց ինձ։

Եւ որովհետև պատուհանին մօտեցեր էինք, Պասոմպիէր շարայարեց.

— Իտալիայէն երբ վերադառնամ, ամենէն առաջ քեզ այցելութեան պիտի գամ։

— Բայց ե՞րբ պիտի վերադառնաս։

— Ե՛րբ բարեհաճի կարտինալը․ ․ ․ և Աստուած, Մարիօ՛ն։

Ծանրապէս բարևեց զիս և աներևոյթ եղաւ։

Պասօմբիէրին մեկնելէն ետք ինքզինքս զսպելու համար բաւուն ջանադրութեան մը պէտք ունեցայ որպէս զի բոլոր այս բազմութեան առջև հեծկլտանք մը չթողում։

Ինքզինքս զզուելի կը գտնէի։

Միտքս եկաւ խօսքը յանդիմանել Տը Մարսիլեաք իշխանը որ ամենևին բան մը չէր նշմարեր և կ'ուզէր վերստին սկսիլ մեր խօսակցութիւնը զոր կիսկատար թողեր էինք։

Բայց իր բարեբաղդութեամբը տիկին Տը Ռամպույեէ և տիկին Տը Շըվրէօզ՝ Վալանթէն Գօնրարի և Անրի Տը Թալէյրանի հետ գալով մեզ մօտ տեղ մը նստան։

— Բոլորովին ամբողջ ենք, ըսաւ մարգրիզուհին Օրինակերը կարդացողին. լռութիւն պահանջէ և տուր մեր պատգամները։

Վալանթէն պատրաստուեցաւ հնազանդելու։

Շարլը Տ'Անժէն խօսակցողները լռելու հրաւիրեց ազնուաբար, և իւրաքանչիւր ոք թիկնաթոռներուն և բազմոցներուն (banquette) վրայ տեղաւորուեցաւ։

Իսկոյն ամենախորին լռութիւն մը տիրեց ակումբանոցին մէջ։

Մինչդեռ ընթերցումին կէսը լմննալու վրայ էր, տիկին Տը Ռամպույեէ չորս տարեկան շատ աղուոր մանուկ մը տեսաւ որ սրահին մէկ ծայրէն միւսը կը վազվզէր ու կ'ոստոստէր՝ ունկնդիրներուն ուշադրութիւնը ստէպ ցրելու պատճառ ըլլալով։

— Վերջ պիտի տաս, պզտիկ շուտիկ, ըսաւ մարգրիզուհին ցած ձայնով, զան իր ծունկերուն վրայ քաշելով։ Կը նայիմ որ փոխուեր ես, դուն որ սովորաբար կը սիրես կարդալ լսելը։

— Այո՛, պատասխանեց տղան. բայց երբ կարդացուածը բանաստեղծութիւն կամ կատակերգութիւն է... բայց այսօրուանը ձանձրալի է։

— Կը նայի՞ք սա շուտիկին, ըսաւ մարգրիզուհին։

Պատանին դէպ ինձ դարձուց իր չարամտութեամբ լի երեսը։

— Իրաւ չէ՞, տիկին, շարայարեց՝ հաւանութիւնս ուզելով։

Չկրցայ ժպիտս զսպել, և ծռեցայ գգուելու համար անոր մազերուն թխագոյն և մետաքսանման խոպոպիքը։

— Պաստառագործիս տղան է ան, ըսաւ ինծ մարկիզուհին ա-կանջիս։ Երբ հայրը կը գայ կահ կարասին նորոգելու կամ փո-խելու համար, երբեմն հետը կը բերէ զան, և ամբողջ գիշեր-ներ հոս կը պահենք տղան։ Իր յանդուգն հանճարեղութիւն-ներովը ու կանխահաս խելամտութեամբը կը զուարճացնէ մեզի։

Պատանին՝ աչերը դէպ 'ի սրահին դուռն ուղղած ըլլալով՝ յան-կարծ ձեռները իրարու զարկաւ ուրախութեամբ և գոչեց.

— Խե՛նդ Տիւպուան. խենդ Տիւպուա՛ն է։

— Լռէ՛....։ Ո՛հ, պզտիկ շունիկ, ըսաւ մարկիզուհին.

Ամէն կողմէ կը խնդային ներկայ գտնուողները։

Հարկ եղաւ ուրիշ առենի թողուլ ընթերցումին վերջը։

Գարուշինեանը դուռէն ներս մտած էր և ծանրապէս կ'սկսէր ողորմութիւն հայցել առանց ինքզինքը գէշարած ցոյց տալու այն մակդիրէն զոր պատանին անոր անունին կցած էր։

Ծառայ մը կ'անցնէր. մարգիզուհին ըսաւ անոր.

— Բօբըլէն սպասաւորներուն սենեակը կը գտնուի։ Տա՛ր. յանձնէ՛ իրեն այս պզտիկը....։ Խելօք չկեցաւ և ծեծ մ'ուտե-լու արժանի է։

— Ո՛հ, ըսաւ պատանին, իր պզտի ձեռները միացնելով, կը հաւանիմ ծեծ ուտելու, տիկի՛ն... բայց թոյլ տուր որ խենդը տեսնեմ։

Մարսիլեաք, Տը Շըվըէօզ դքսուհին և ես քարեխօսութիւն ը-րինք յանցաւորին համար։

Իր թողութիւնը ստացաւ, ծունկերուս վրան ելաւ, և համբու-րեց զիս ըսելով թէ գեղանի եմ։

Ապա սկսաւ հետաքքրքրութեամբ Գարուշինեանին նայիլ։

Տիւպուա ներկայ գտնուողներուն կաշիէ քսակ մը կ'երկնցնէր որուն մէջ ոսկի դրամներ կ'անձրևէին։ Շուտով մեր քսակը հա-գաւ և մեր նուէրը ընդունեցաւ։

Ողորմութիւնն առատ հաւաքուած էր։

Կրօնաւորն իր տոպրակին մէջը դրաւ քսակը. և մարգիզուհին ըսաւ.

— Ինծ նայեցէք . . . ամենևին լուր մը պիտի չտա՞ք ինծ մեր պատուական Հայր Ժոզէֆին վրայօք։

— Բայց, պատասխանեց ժպտելով տիկին Տը Ռամպույէ, շատ աղէկ է, և ամեն տեսակ խառնութիւններէ ինքզինքը կ'ազատէ։

— Խե՛ղճ մարդը, ըսաւ Տիւպուա՝ սուտ բարեպաշտի յատուկ ցաւակցութիւն ձևացնելով։

— Կը զարմանա՛մ խելքիդ, շարայարեց Շալէ. գիտե՞ս որ յարգ ու վարկ ունի ան։ Արքունեաց ամենէն մեծամեծներն անոր այցելութիւն ընելու հոգ կը տանին։

Տիւպուա թևերը կուրծքին վրայ առաւ խաչաձև, դէպ երկինք վերցուց աչքը, և իր սրտին խորերէն մրմռաց.

— Խե՛ղճ մարդը։

— Ուրիշ բան մ'ալ կայ, ըսաւ նաև տիկին Տը Շըվրէօզ. Ճամբորդութեան ժամանակ Հայր Ժոզէֆ լաւ պատգարակի մը մէջ նստած կ'ուղևորի։

— Խե՛ղճ մարդը։

— Նորին Բարձրութիւնը՝ Ռիշլիէօ՝ իր սեղանին լաւագոյն բաները միշտ կը ղրկէ անոր։

— Խե՛ղճ մարդը, խե՛ղճ մարդը։

Եւ Տիւպուա արգահատութեան ճշմարիտ արտօսր մը կը սրբէր։

Ընկերութիւնը շատ կը զուարճանար. բայց համարձակութիւն չկար շատ բարձր ձայնով կատակելու, վասն զի կը վախնային բարեսիրտ հայրը վիրաւորելու։

Միայն պզտիկ Բօզըլէնը սկսաւ երկրորդ անգամ ծափ զարնել և գոչել՝ արտօսրը գալու չափ խնդալով.

— Հա՛, այո՛, խե՛ղճ մարդը . . . ա՛խ, ո՛րքան ցաւակցութեան արժանի է . . . . Ա՛հ, ասի ընթերցումէն շատ աւելի զուարճալի է . . . . Ո՛հ, խե՛ղճ մարդը, խե՛ղճ մարդը։

Քսան կամ քսանըհինգ տարի ետք մարդկութիւնն պատատա-[illegible]րծին ազան չմոռցած էր այս հետաւոր յիշատակը, և Տիւպուային պատմութիւնը Թալըմանին ամենէն աղւոր անեկդոտներուն մին կը ներշնչէր անոր։

ՎԵՐՋ ԵՐԿՐՈՐԴ ՀԱՏՈՐՈՑ

ԷՕԺԷՆ ՏԸ ՄԻՐԳՈՒՐ

# ՄԱՐԻՕՆ ՏԸԼՕՐՄԻ

# ԽՈՍՏՈՎԱՆԱՆՔԸ

ԿԱՄ

## ՊԱՏՄԱԿԱՆ ՏԱՐՓԱՆՔ

ԹԱՐԳՄԱՆԵՑ

ԳՐ. ՉԻԼԻՆԿԻՐԵԱՆ

236

ՀԱՏՈՐ ԵՐՐՈՐԴ



Զմիւռնիա

ՏԷՐ ԵՒ ՀՐԱՏԱՐԱԿԻՉ

ՏԻԳՐԱՆ ՅԱՐՈՒԹԻՒՆ ՏԷՏԷԵԱՆ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՏԷՏԷԵԱՆ

1877

# ՄԱՐԻՕՆ ՏԸԼՕՐՄԻ

# ԽՈՍՏՈՎԱՆԱՆՔԸ



## ԺԱ

ՊԱՍՕՄՊԻԷՐԻՆ հետ ունեցած խօսակցութեանս թէեւ այսպիսի զբօսանքներ յաճախորդներ էին, բայց չփարատուած էր այն ցաւալի տպաւորութիւնն որուն պատճառն էր յանկարծ ինձ իմացընելը թէ կը մեռնի։ Կը վախնայի որ անոր առերեւոյթ փիլիսոփայութեան ներքեւ ճշմարիտ վիշտ մը պահուած ըլլայ, եւ ինքզինքը սպաննել չէր ուզեր։

Հետեւաբար ես ալ Մարքիլեադին տուած խօսքս։ Այն գիշեր չընկերացաւ ինձ։ Ուզեցի միայն ըլլալ սպառնալի խորհրդածութիւններովս զբաղելու համար։

Գիշերին անցաւ, եւ յուզմունքը, կրնայի ըսել խել թէ խղճի տագնապը թոյլ չտուաւ ինձ աչքս գոցելու մինչեւ առտու, եւ հետեւեալ օրը շուտով Թերէզան նամակի մը հետ Պասօմպիէրին տունը ղրկեցի։

Մարեշալին արեւն ծագումէն առաջ մեռած էր։

Յուսահատեցայ, լացի, ինքզինքս մեղադրեցի այն անձին յանդիմանութիւններով, որոնց արժանի էր ապերախտութիւնս, եւ ամբողջ շաբաթ մ՚ոչ զոք ընդունեցի։

Բայց վեց ամիս շարունակ չէի կրնար բոլոր աշխարհի դէմ սրդողած երևալ։ Այսպէս վարուիլս յանցանքիս դարման եղած չէր ըլլար։

Անկից 'ի զատ մարմնշալը թերևս ոչ այնքան յուսահատ է որքան կ'երևակայեմ։ Միշտ ամենաթեթև կերպով նկատեց զգացումը. ինչու՞ ենթադրեմ թէ կը ցաւի ան մինչդեռ մտքէն չանցնի թերևս ցաւիլը։ Իր բերնէն ամենափոքր դառն խօսքի մ'ելնելը լսեցի՞. անհաւատարմութիւնս երեսիս տուա՞ւ. ո՛չ։ Ինքն իսկ շատ աղէկ կը հասկնար թէ թարմութիւնս չեմ կրնար յաւիտենապէս իրեն զոհել։ Իրարմէ բաժնուեցանք առանց գժտութեան, նորէն պիտի տեսնուինք առանց ոխի և ուրախութեամբ։ Ո՞ւր են յուսահատութեանս և արտասուքիս պատճառները։

Այս աղուոր տրամաբանութեան եզրակացութիւնները հանելով իսկոյն դուռս Տը Մարսիլեաց իշխանին բացի։

Գլխի խելը մտնելու սպառնալիք կ'ընէր ինծ։

Չէի ուզեր քնալ որ իր մահուան պատճառ ինքզինքս համարելու և մեղադրելու պարտաւոր ըլլայի, և զան ծունկերուս առջևն առանց քաղցրութեան տեսայ։

— Բայց աղէկ միտքս եկաւ, ըսի Մարսիլեացին՝ իր ամենէն սիրուն խօսքը ընդմիջելով, ո՞վ է այն Թուրէնցի աղջիկն որուն խօսքը կ'ըլլար մարգրիտհիին տունը։

Թեթևակի շփոթած երևցաւ ինծ Մարսիլեաց։

— Ըսիր Վ... թէ նորա սիրահարն եղած ես 'ի սկզբան։

— Իրաւ է, ինծի կարծէի թէ սիրահար եմ, պատասխանեց։

— Պատասխանիդ փոխարէն կը շնորհաւորեմ քեզի։

— Կը կարծէք... քեզի մտմտելէս առաջ, օրիորդ. «Միայն մէկ տեսակ սէր կայ, բայց հազարումէկ զանազան պատճէններ ունի այն»։

Մաքսիմի (maximes) հեղինակն ինծի հետ կ'ակտէր իր երկին շարադրութիւնը։

— Յիրաւի, ահա խօսք մ'որ խորունկ ու միանգամայն ճշմարիտ է, ըսի։ Այսպէս ուրեմն այն աղջկան համար ունեցած զգացումդ սիրոյ մէկ պատճէ՞նն էր։

— Այո՛, օրիորդ ։

— Եւ բնագիրը ինծ պիտի տաս ։

— Անշուշտ ։

— Ո՞վ կը հաւատայ տալդ ։

— Կորովամտութեանդ մասին շատ լաւ գաղափար ունիմ, պատասխանեց բաւական շուտով, հետեւաբար չեմ կրնար հաւատալ թէ պիտի նմանիս երբեք սիրոյս մասին ։

— Շնորհակալութիւն ։ Ծածարանքդ կ՚ողոքէ զիս ։ Սակայն կը կարծես թէ ես փորձառութիւն մ՚ունիմ, զոր սակայն չունիմ տակաւին, և շնորհակալ պիտի ըլլամ եթէ լուսաւորութեանդ քիչ մ՚օգնես ինծ ։ Սահմանէ՛ ճշմարիտ սէրը ։

— Դժուարին է սահմանելը ․ ․ ․ «Ամեն մարդ կը խօսի այդ սիրոյ վրայ, բայց քիչ մարդ տեսած է զայն» ։

— Ուրեմն էութիւն չունի՛ ։

— Ներէ՛, քանի որ ես կ՚զգամ այդ սէրը ։

— Ուրեմն կրնաս սահմանել զայն ։

— Սէրը շատ քիչ անգամ հանդարտ և անխռով է, հետեւաբար ինքնին չկրնար սահմանուիլ ։ Սակայն կ՚երեւայ ինծ թէ սէրը «Հոգւոյն մէջ իշխելու անբաւ կիրք մ՚է․ մտքին մէջ համակրական անդիմադրելի հրապոյր մ՚է, և մարմնոյն մէջ՝ շատ գաղտնիքէ ետք՝ սիրածդ վայելելու փափուկ և թաքուն փափաք մ՚է» ։

Այսպէս կը խօսէր ան իր հանճարեղ պզտի ձայնովը և իր աչերուն մինչև ճերմկուցը կարմրելով ․

Պաշտելի էր սիրոյ տուած սահմանը ։

— Ա՛խ, պարոն, դրաւ կը գտնեմ թէ այս առոր բաները արդէն Թուրինոյի սիրուհիիդ լսիր, այնպէս չէ՞ ։

— Չէ՛, լսա ։

— Զգուշացի՛ր, սուտ մի՛ խօսիր ։

— Կեանքիս մէջ երբեք չխօսած եմ հետը ։

— Կարելի՞ է ․

— Կրնաս իրեն իսկ հարցնել, եթէ յարմար կը դատես ․ դրացուհիդ է նէ ։

— Դրացուհի՛ս . . . անունն ի՞նչ է։

— Օրիորդ Տը Լանգլօ։

Հազիւ ըսած էր այս խօսքը, և ահա արձագանգէ մը կրկնուեցաւ այն։

— Օրիորդ Տը Լանգլօ եկաւ, ըսաւ Թերեզան՝ դրան շեմին վերայ երևալով։

Իշխանը ոժգունեցաւ, և սպասուհին նայեցաւ զարմանօք։ Անշուշտ կարծեց նէ թէ աղէկ չըսած եմ, վասն զի կրկնեց.

— Ն՛իմացնեմ ձեզ, տիկին, թէ ձեր մէկ դրացուհին, օրիորդ Տը Լանգլօ եկած է. Գ. Վուաթիւրին հետն է, և կը հարցընէ թէ կը հաճի՞ք զինքը ընդունելու։

Մարաքիլեազը քննելով հոխահարօս շարժեցի անտակ մը զայրումով, առանց գիտնալու թէ կը զայրանամ։

— Թող հրամմեն, ըսի, և տեսնենք թէ գիտուածն է միայն այս այցելութիւնը մեզ բերողը։

Պահ մ'ետք նուշի պէս ձեղքուած մեծ աչերով, սիրուն ձակատով, պզտիկ շարաշուք բերանով, նրբամէջ հասակով, քնքուշ թեւերով և անհամեմատելի ոտներով խիստ հաճելի քումայթ օրիորդ մ'երևցաւ։ Իր խոյրը զարդարուած էր անխարափի ծաղիկներով, զոր ոսկեղէն շրջան մը կը բռնէր։ Մարտադոյն լօդիկ մ'ունէր լանջակալի հետ, և ժապաւէններով զարդարուն ողիսակ մէջազգեստ մը։ Վզին բոլորտիքը, թեզանիքին և լանջակալին եզերը նրբահիւս տանտելաներով յարդարուած էին, և կարմիր թելուկներով կապուած շապիկը ներս բազուկները կը ծածկէր։

Անկէց 'ի զատ յարդագոյն ձեռնոցներ, զմրուխտաշար մանեակ մը, փղոսկրեայ գեղընտիր հովահար մ'և ոսկեթել չուխայէ մուճակներ ունէր։

Վուաթիւրէն առաջնորդուելով մտեցաւ ինծ՝ աչերը վար ըրած, և վեհերոտութեամբ մրմռաց.

— Տիկին, հոս եկանք Տը Ռամպույեէ մարգրիտուհիին կողմէն, որուն բարեհաճեցաք ձեր աջակցութիւնը խոստանալ յանկարծական խաղի մը մէջ, զոր այսօր իսկ կը պատրաստէ իր բարեկամութիւ հրաւիրեալներուն։

— Իրօք, ըսաւ Վուաթիւր, և իմ մասիս շատ ուրախ եմ հոս անձնելուս Գ. Տը Մօրսիլեագը, որուն տունն ալ պիտի երթայի։ Երեք օրէն 'ի վեր ապարանքին մերկանալը շատ զուարճանք կը պատճառէ։

— Տէ՛ր Աստուած, ըսաւ Իշխանը, որուն երեսը խարոյկի մը պէս բոց կը հանէր, միւս գիշեր գլխու ցաւ մը մտաւ որ տակաւին կը տևէ։

— Կը նշմարուի այդ գլխու ցաւը, ըսաւ Վուաթիւր՝ հեղնական ժպիտով։

Բայց ես խելքս գլուխս կը պահէի։

Բարեձևութեանց համբաւաւոր Օրինագրին մէկ յօդուածը յիշելով խորամանկ պզտիկ աղջիկը համբուրեցի. բայց յիրաւի կ'ըսեմ թէ Յուդայի համբոյր մ'էր առածս։

— Ստուգիւ, ըսի, դժուարին էր ինձ խոստումս մոռնալ։ Գ. Տը Մօրսիլեագ հիմակ եկաւ, ան ալ կը յիշեցնէր խոստումս․ ․ ․։ Այսօր առաջին անգամ երկու սիրուն այցելութիւններ ընդունելս պատիւ մ'է ինձ։ Բարի եկաք, մանաւանդ դուք, օրիորդ․ ․ ․ ․։ Սպասուհիս ըսաւ ինձ պահ մ'առաջ թէ դրացի ենք․ ․ ․։ Իրօք անհնար այդ պատիւը։

— Ո՛հ, ըսաւ նէ, բոլոր պատիւն ինծի համար է։ Անկից ութ օր առաջ տիկին Տը Ռամպույեէյին նստարին ձեռքովս մօտակայ անդրուանքը տաղաւար մը ծախու առի շատ աղուոր պարտէզներու հետ. և խիստ երջանիկ կ'ըլլայի, տիկին, եթէ բարեհաճէիք օր մը ձեր ներկայութեամբը զարդ տալու անոնց։

Այս փչին բառը, որով սպասաւորներս հրաման ունէին խօսք ուղղելու ինձ, խիստ բնականապար կը կրկնուէր այն անձերէն որք առաջին անգամ կը տեսնուէին հետս. բայց այս պզտիկ աղջկան բերնէն ելնելով վիրաւորեց զիս։

Ուստի անմիջապէս պաղ կերպարան մ'առի որ նորա շքադրութեան հետ համեմատութիւն չունէր գրեթէ։

Դրան խորամանկը նորէն վար ըրաւ աչերը։ Կրնար կարմրիլ նէ. բան մ'էր կարմրիլը։

Ծանրապէս բարեւեց զիս և աներեւոյթ եղաւ։

Պասօմբիէրին մեկնելէն ետք ինքզինքս զսպելու համար բաւական ջանադրութեան մը պէտք ունեցայ որպէս զի բոլոր այս բազմութեան առջև հեծկլտանք մը չթողում։

Ինքզինքս զզուելի կը գտնէի։

Միտքս եկաւ խաբել յանդիմանել Տը Մարսիլեագ իշխանը որ ամենեւին բան մը չէր նշմարեր և կ'ուզէր վերստին սկսիլ մեր խօսակցութիւնը զոր կիսկատար թողեր էինք։

Բայց իր բարեբաղդութեամբը տիկին Տը Ռամպույեէ և տիկին Տը Շըվրէօզ՝ Վալանթէն Գօնրարի և Անրի Տը Թալէյրանի հետ գալով մեզ մօտ տեղ մը նստան։

— Բոլորովին ամբողջ ենք, ըսաւ մարգիզուհին Օրինակելը կարդացողին. լռութիւն պահանջէ և տո՛ւր մեր պատգամները։

Վալանթէն պատրաստուեցաւ հնազանդելու։

Շարլը Տ'Անժէն խօսակցողները լռելու հրաւիրեց ազնուաբար, և իւրաքանչիւր ոք թիկնաթոռներուն և բազմոցներուն (banquette) վրայ տեղաւորուեցաւ։

Իսկոյն ամենախոր լռութիւն մը տիրեց ակմբանոցին մէջ։

Մինչդեռ ընթերցումին կէսը լմննալու վրայ էր, տիկին Տը Ռամպույեէ չորս տարեկան շատ աղուոր մանուկ մը տեսաւ որ սրահին մէկ ծայրէն միւսը կը վազվզէր ու կ'ոստոստէր՝ ունկնդիրներուն ուշադրութիւնը ստէպ ցրելու պատճառ ըլլալով։

— Վերջ պիտի տամ, պզտիկ շուտիկ, ըսաւ մարգիզուհին ցած ձայնով, զայն իր ծունկերուն վրայ քաշելով։ Կը նայիմ որ փոխուեր ես, դուն որ սովորաբար կը սիրես կարդալ լսելը։

— Այո՛, պատասխանեց տղան, բայց երբ կարդացուածը բանաստեղծութիւն կամ կատակերգութիւն է... բայց այսօրուանը ձանձրալի է։

— Կը նայի՞ք սա շուտիկին, ըսաւ մարգիզուհին։

Պատանին դէպ ինձ դարձուց իր չարամտութեամբ լի երեսը։

— Իրաւ չէ՞, տիկին, շարայարեց՝ հաւանութիւնս ուզելով։

Չկրցայ ժպիտս զսպել, և ծռեցայ գգուելու համար անոր մազերուն թխագոյն և մետաքսանման խոպոպիքը։

— Պաստառագործիս տղան է ան, ըսաւ ինձ մարկիզուհին ա-կանջիս։ Երբ հայրը կը գայ կահ կարասին նորոգելու կամ փո-խելու համար, երբեմն հետը կը բերէ զան, և ամբողջ գիշեր-ներ հոս կը պահենք տղան։ Իր յանդուգն հանճարեղութիւն-ներովը ու կանխահաս խելացութեամբը կը զուարճացնէ մեզի։

Պատանին՝ աչերը դէպ 'ի սրահին դուռն ուղղած ըլլալով՝ յան-կարծ ձեռները իրարու զարկաւ ուրախութեամբ և գոչեց.

— Խե՛նդ Տիւպուան, խենդ Տիւպուան է։

— Լռէ՛....։ Ո՛հ, պզտիկ շունիկ, ըսաւ մարկիզուհին։

Ամէն կողմէ կը խնդային ներկայ գտնուողները։

Հարկ եղաւ ուրիշ առենի թողուլ ընթերցումին վերջը։

Գարբուշինեանը դուռէն ներս մտած էր և ծանրապէս կ'սկսէր ողորմութիւն հաւքել առանց ինքզինքը գէշցած ցոյց տալու այն մանկդիրքէն զոր պատանին անոր անունին կցած էր։

Ծառայ մը կ'անցնէր. մարգիզուհին ըսաւ անոր.

— Բօբըլէն սպասաւորներուն սենեակը հը տանուի։ Տա՛ր ու յանձնէ՛ իրեն այս պզտիկը....։ Խելօք չկեցաւ և ծեծ մ'ուտե-լու արժանի է։

— Ո՛հ, ըսաւ պատանին, իր պզտի ձեռները միացնելով, կը հաւանիմ ծեծ ուտելու, տիկի՛ն... բայց թող տուր որ խենդը տեսնեմ։

Մարսիլեագ, Տը Շըվըրէօզ դքսուհին և ես քարեխօսութիւն ը-րինք յանցաւորին համար։

Իր թողութիւնը ստացաւ, ծունկերուս վրան ելաւ, և համբու-րեց զիս ըսելով թէ գեղանի եմ։

Ապա սկսաւ հետաքրքրութեամբ Գարբուշինեանին նայիլ։

Տիւպուա ներկայ գտնուողներուն կաշիէ քսակ մը կ'երկնցնէր որուն մէջ ոսկի դրամներ կ'անձրևէին։ Շուտով մեր քսակը Ճա-թաւ և մեր նուէրը ընդունեցաւ։

Ողորմութիւնն առատ հաւաքուած էր։

Կրօնաւորն իր տոպրակին մէջը դրաւ քսակը, և մարգիզուհին ըսաւ.

— Ինծ նայեցէք . . . ամենէն լաւ մը պիտի չտամ ինծ մեր պատուական Հայր Ժօզէֆին վրայօք։

— Բայց, պատասխանեց ժպտելով տիկին Տը Ռամպույէ, շատ աղէկ է, և ամեն տեսակ խոստովանութիւններէ ինքզինքը կ'ազատէ։

— Խո՛ղճ մարդը, ըսաւ Տիւպուա՝ սուտ բարեպաշտի յատուկ ցաւակցութիւն ձևացնելով։

— Կը զարմանամ խելքիդ, շարունակեց Շալէ. գիտե՞ս որ յարգ ու վարկ ունի ան։ Արքունեաց ամենէն մեծամեծներուն անոր այցելութիւն ընելու հոգ կը տանին։

Տիւպուա թևերը կուրծքին վրայ առաւ խաչաձև, դէպ երկինք վերցուց աչքը, և իր սրտին խորերէն մրմռաց.

— Խո՛ղճ մարդը։

— Ուրիշ բան մ'ալ կայ, ըսաւ նաև տիկին Տը Շըվրէօզ. Ճամբորդութեան ժամանակ Հայր Ժօզէֆ լաւ պատգարակի մը մէջ նստած կ'ուղևորի։

— Խո՛ղճ մարդը։

— Նորին Բարձրութիւնը՝ Րիշլիէօ՝ իր սեղանին լաւագոյն բաները միշտ կը ղրկէ անոր։

— Խո՛ղճ մարդը, խո՛ղճ մարդը։

Եւ Տիւպուա արգահատութեան ճշմարիտ արտօսր մը կը սրբէր։ Ընկերութիւնը շատ կը զուարճանար. բայց համարձակութիւն չկար շատ բարձր ձայնով կատակելու, վասն զի կը վախնային բարեսիրտ հայրը վիրաւորելու։

Միայն պզտի Բօղըլէնը սկսաւ երկրորդ անգամ ծափ զարնել և գոչել՝ արտասուքը գալու չափ խնդալով.

— Հա՛, այո՛, խո՛ղճ մարդը . . . մի՛թ, ո՛րքան ցաւակցութեան արժանի է . . . . Ա՛հ, ասի ընթերցածէն շատ աւելի զուարճալի է . . . . Ո՛հ, խո՛ղճ մարդը, խո՛ղճ մարդը։

Քանի կամ քսանըհինգ տարի ետք մարդկութիւնին պատմա-[illegible]րծին տողին չմոռցած էր այս հեռաւոր յիշատակը, և Տիւպուային պատմութիւնը Բօղըլէնին ամենէն աղուոր առասպելներէն մին կը ներշնչէր անոր։

ՎԵՐՋ ԵՐԿՐՈՐԴ ՀԱՏՈՐՈՅ

ԷՕԺԷՆ ՏԸ ՄԻՐՔՕՒՐ

# ՄԱՐԻՕՆ ՏԸԼՕՐՄԻ ԽՈՍՏՈՎԱՆԱՆՔԸ

ԿԱՄ

## ՊԱՏՄԱԿԱՆ ՏԱՐՓԱՆՔ

ԹԱՐԳՄԱՆԵՑ

Գ. Ր. ՉԻԼԻՆԿԻՐԵԱՆ

236

ՀԱՏՈՐ ԵՐՐՈՐԴ



Զմիւռնիա

ՏԷՐ ԵՒ ՀՐԱՏԱՐԱԿԻՉ

ՏԻԳՐԱՆ ՅԱՐՈՒԹԻՒՆ ՏԷՏԷԵԱՆ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՏԷՏԷԵԱՆ

1877

# ՄԱՐԻՕՆ ՏԸԼՕՐՄԻ

# ԽՈՍՏՈՎԱՆԱՆՔԸ



## ԺԱ.

ՊԱՍՕՄՊԻԷՐԻՆ հետ ունեցած խօսակցութեանս թէև այսպիսի զբօսանքներ յաճախորդներ էին, բայց չփարատուած էր այն ցաւալի տպաւորութիւնն որուն պատճառն էր յանկարծ ինծի իմացնելը թէ կը մեկնի ։ Կը վախնայի որ անոր ատերութեան փիլիսոփայութեան ներքև ճշմարիտ վիշտ մը պահուած չըլլայ, և ինքզինքս անմեղ չէի սեպեր ։

Հետևաբար ետ առի Մարսիլեադին տուած խօսքս ։ Այն գիշեր չմեկնեցաւ ինծի ։ Ուզեցի մինակ ըլլալ տրտմալի խորհրդածութիւններուս զբաղելու համար ։

Գիշերն անցաւ, և յուզմունքը, կրնայի ըսել խոկ թէ խղճի տագնապը թոյլ չտուաւ ինծի աչքս գոցելու մինչև առաւօտ, և հետևեալ օրը շուտով Թերէզան նամակի մը հետ Պասսոմպիէրին տունը ղրկեցի ։

Մարեշալն արևին ծագումէն առաջ մեկնած էր ։

Ցաւահարեցայ, լացի, ինքզինքս մեղադրեցի այն ամեն յանդիմանութիւններով որոնց արժանի էր ապերախտութիւնս, և ամբողջ շաբաթ մ'ոչ զոք ընդունեցի ։

Բայց մեզ ամէն շարունակ չէի կրնար բոլոր աշխարհէն դէմ սրդողած երևալ։ Այսպէս վարուիլս յանցանքիս դարման եղած չէր ըլլար։

Անկից 'ի զատ մարտնչելը թերևս ոչ այնքան յուսահատ է որքան կ'երևակայեմ։ Միշտ անձնաթեթև կերպով նկատեց զգացումը. ինչու ենթադրեմ թէ կը ցաւի ան մինչդեռ մտքէն չանցնի թերևս ցաւիլը։ Իր բերնէն ամենափոքր դառն խօսքի մ'ելնելը լսեցի. անհաւատարմութիւնս երեսիս տուաւ. ո՛չ։ Ինքն իսկ շատ աղէկ կը հասկնար թէ թարմութիւնս չեմ կրնար յաւիտենապէս իրեն զոհել։ Իրարմէ բաժնուեցանք առանց զժտութեան, նորէն պիտի տեսնուինք առանց ոխի և ուրախութեամբ։ Ո՞ւր են յուսահատութեանս և արտասուքիս պատճառները։

Այս աղուոր տրամաբանութեան եզրակացութիւնները հանելով իսկոյն դուռս Տը Մարսիլեաց իշխանին բացի։

Պզտի խևը մեռնելու սպառնալիք կ'ընէր ինձ։

Չէի ուզեր բնաւ որ իր մահուան պատճառ ինքզինքս համարելու և մեղադրելու պարտաւոր ըլլայի, և զան ծունկերուս առջին առանց բարկութեան նետայ։

— Բայց աղէկ միտքս եկաւ, ըսի Մարսիլեացին՝ իր ամենէն սիրուէտ խօսքը ընդմիջելով, ո՞վ է այն Թուրենցի աղջիկն որուն խօսքը կ'ըլլար մարգիզուհիին առունը։

Թեթևակի շփոթած երեցաւ ինձ Մարսիլեաց։

— Ըսի՞ր Պ. Ունաթիւրին թէ նորա սիրահարն եղած ես, պատրաստ։

— Իրաւ է, եթէ կարծէիր թէ սիրահար եմ, պատասխանեց։

— Պատասխանիդ փոխարէն կը շնորհաւորեմ քեզի։

— Կը կարծէի... քեզի անմանեղէս ուրաց, օրիորդ. «Միայն մէկ անուան տէր կայ, բայց հաւատարմէկ զանազան պատճէններ ունի այն»։

Մաքսիմի (maximes) հեղինակն ինծի հետ կ'սկսէր իր երկիր շարադրութիւնը։

— Ցիրութ, ահա խօսք մ'որ խորունկ ու միանգամայն ճշմարիտ է, ըսի։ Այսպէս արեամն այն աղջկան համար անձկած զգացումը սիրոյ մէկ պատճէնն էր։

— Այո, օրիորդ։

— Ես բնագիրը քեզ պիտի տամ։

— Անշուշտ։

— Ո՞վ կը հաւատայ տալդ։

— Կորովամտութեանդ մասին շատ լաւ գաղափար ունիմ, պատասխանեց բաւական շուտով, հետեւաբար չեմ կրնար հաւատալ թէ պիտի մնայիս երբէք տիրոջս մասին։

— Շնորհակալութիւն։ մեծարանքդ կ'ողոքէ զիս։ Սակայն կը կարծես թէ ես փորձառութիւն մ'ունիմ, զոր սակայն չունիմ տակաւին, և շնորհակալ պիտի ըլլամ եթէ լուսաւորութեամբդ քիչ մ'օգնես ինծի։ Սահմանէ՛ ճշմարիտ սէրը։

— Դժուարին է սահմանելը… «Ամեն մարդ կը խօսի այդ ոգւոյ վրայ, բայց քիչ մարդ տեսած է զայն»։

— Ուրեմն էութիւն չունի՛։

— Ներէ՛, քանի որ ես կ'զգամ այդ սէրը։

— Ուրեմն կրնաս սահմանել զայն։

— Սէրը շատ քիչ անգամ հանդարտ և անխռով է. հետեւաբար ինքնին չկրնար սահմանուիլ։ Սակայն կ'երեւայ ինծի թէ սէրը «Հոգւոյն մէջ իշխելու անբաւ կիրք մ'է. մտքին մէջ համակրութեան անդիմադրելի հրապոյր մ'է, և մարմնոյն մէջ՝ շատ գաղտնիքէ ետք՝ սիրածդ վայելելու փափուկ և թաքուն փափաք մ'է»։

Այսպէս կը խօսէր ան իր համեմարեալ պզտի ձայնովը և իր աչերուն մինչև ճերմակուցը կարմրելով։

Պաշտելի էր սիրոյ տուած սահմանը։

— Ա՛խ, պարոն, գրաւ կը դնեմ թէ այդ աղուոր բաները արդէն Թուրենյի սիրուհիիդ ըսիր, այնպէս չէ՞։

— Չէ՛, ըսաւ։

— Զգուշացի՛ր, սուտ մի՛ խօսիր։

— Կեանքիս մէջ երբէք չխօսած եմ հետը։

— Կարելի՞ է։

— Արնաս իրեն իսկ հարցնել, եթէ յարմար կը դատես. դրացուհիդ է նէ։

— Իրօք, ըսաւ Վ՛ուաթիւր, և իմ մասիս շատ ուրախ եմ հոս անձանելուս Գ. Տը Մարսիլեաքը, որուն տունն ալ պիտի երթայի։ Երեք օրէն 'ի վեր աղջկանց վերնակը շատ զարմանք կը պատճառէ։

— Տէ՛ր Աստուած, ըսաւ Իշխանը, որուն երեսը խարոյկի մը պէս բոց կը հանէր, միւս գիշեր գլուխս ցաւ մը մտաւ որ տակաւին կը տևէ։

— Կը նշմարուի այդ գլխու ցաւը, ըսաւ Վ.ուաթիւր՝ հեղնական ժպիտով։

Բայց ես խելքս գլուխս կը պահէի։

Բարեձևութեանց համբաւաւոր Օրինագրին մէջ յոգնածը յիշելով խորամանկ պզտիկ աղջիկը համբուրեցի. բայց յիրաւի կ'ըսեմ թէ Յուդայի համբոյր մ'էր առածս։

— Ստուգիւ, ըսի, դժուարին էր ինծ խոստումս մոռնալ։ Գ. Տը Մարսիլեաք հիմակ եկաւ, ան ալ կը յիշեցնէր խոստումս...։ Այսօր առաջին անգամ երկու սիրուն այցելութիւններ ընդունելս պատիւ մ'է ինծ։ Բարի եկաք, մանաւանդ դուք, օրիորդ....։ Սպասուհիս ըսաւ ինծ պահ մ'առաջ թէ դրացի ենք...։ Իրօք ունիմ այդ պատիւը։

— Ո՛հ, ըսաւ նէ, բոլոր պատիւն ինծի համար է։ Անկից ութ օր առաջ տիկին Տը Ռամպույէյին նոտարին ձեռքովը մօտակայ անդրուանքը տաղաւար մը ծախու առի շատ աղւոր պարտէզներու հետ. և խիստ երջանիկ կ'ըլլայի, տիկին, եթէ բարեհաճէիք օր մը ձեր ներկայութեամբը զարդ տալու անոնց։

Այս տիկին բառը, որով սպասաւորներս հրաման ունէին խօսք ուղղելու ինծ, խիստ բնականաբար կը կրկնուէր այն անձերէն որք առաջին անգամ կը տեսնուէին հետս. բայց այս պզտիկ աղջկան բերնէն ելնելով վիրաւորեց զիս։

Ուստի անմիջապէս պաղ կերպարան մ'առի որ ներքս շքեղութեան հետ համեմատութիւն չունէր գրեթէ։

Պզտիկ խորամանկը նորէն վար ըրաւ աչերը։ Կրնար կարմրիլ նէ. բան մ'էր կարմրիլը։

— Մարդկութենէն առանձնարանին մէջ Տը Մարսիլեագ իշխանին հանդիպեցայ, շարունակեց խարտեաշահեր պատանին, և յայտ ունէի թէ այսօր Հանճարիս առարկան ։ Կ՚զգամ թէ ինձ չէր պատկաներ անոր գիրկը նետուիլ . . . վասն զի այդպիսի ընթացքի մը յայտնապէս ներհակ էր գեղահասակ աղջկան յատուկ ամօթխածութիւնս ։

— Օրիորդ, ըսի ձայնով մը զոր կը ջանայի հանդարտ հանելու, տարօրինակ խօսքեր կ՚ըսես մեզ ։

— Ա՛հ, Տէ՛ր Աստուած, բայց պարզ են խօսքերս, գեղանի՛ դրացուհիս, պատասխանեց նէ անհաւատալի համարձակութեամբ մը ։

Իր նայուածքին մէջ այնքան հեզնութիւն և ժպիտին մէջ այնքան չարութիւն կար որ մեծ յօժարութեամբ կ՚ուզէի քանի մ՚ապտակ տալ այս աղջկան . բայց տունիս մէջն էի . կը պարտաւորէի անթերի քաղաքավարութեան սահմանին մէջ մնալ ։

Մարսիլեագ ուզեց խօսիլ ։ Կ՚երեւար թէ աղէկ չէր հասկնար այս ջրդիկին խօսքերուն միտքը ։

— Ներէ՛, ըսաւ, բայց սխալ մը կայ . . . ապահով եմ այս մասին ։

— Ո՛չ, պարոն, գոչեց Նինօն Տը Լանգլօ, հովահարով անոր մատներուն վրայ զարնելով ։ Հոս բարեկամներու առջև գաղտնի մտածողով կապուած ենք . հոս աշխարհէս պախարակուելու վախ չունիմ, և միտքս բոլորովին քեզ ըսելու պէտք ունիմ ։ Ինչո՞ւ այնքան կը քննէիր զիս մարդկութենէն տան մէջ . ինչո՞ւ նայուածքդ անձէս չէր հեռանար բնաւ . վասն զի ոչ միայն աղուոր կը գտնէիր զիս . . . չէ՛, պարոն, չէ՛, այլ նաև դէմքիս ինչ ինչ խառնաշփոթ յիշատակներ, անորոշ պատկեր մը, անհնարինցեալ տեսիլ մը միտքդ կը բերէին, տեսիլ, որ տասնօք ամիսներ ետքը կը գար Թուրէնի դաշտերուն մէջ, Լօշի բերդին պատուարներուն վրայ, որուն Թիզանօթի սեւաթոյր ծակերէն մեր մանկային քամայթ գլուխները դուրս կը հանէինք . . . ։ Կը յիշես, Ֆրանսուա . . . . Բայց եկո՛ւր . . . շո՛ւտ եկուր . . . ։ Մի՞թէ սիրոյդ յիշողութիւն չունի ։

Մարսիլեայ իբր սիրաբորբոք մ'աղաղակելով դէպ 'ի Նինոն նետուեցաւ ։

— Նինօ՛ն, պզտիկ Նինօ՛նս, գոչեց ։

— Ո՛հ, այո՛, պարո՛ն, պզտիկ Նինոնդ զոր եօթը տարիէ 'ի վեր չտեսար . . . և որ մեծցաւ, և որ գեղանի եղաւ, և որ միշտ կը սիրէ քեզի ։

Ի խորոց սրտէ վիրաւորուիլս զգացի ։

Երիտասարդը գիրկն առած կ'ողջագուրէր Նինոն Տը Լանգլօ և զմայլումով անոր կը նայէր հոգեպէս ․ նայուածքը նորա բիբէն մինչև խորը կը մտէր, այտերը համբոյրներով կը լափէր, կը ժպտէր, կը լար, նորէն կը նայէր անոր և կը գոչէր ․

— Դո՛ւն ես, իրաւ դո՛ւն ես ։

Բարկութիւնս ալ սահման չունեցաւ ։

Մարսիլեացին և Նինոնին իմ տանս մէջ և իմ առջև իրարու ըրած մէն մի զգուանքը պաշտյնի վէրք մ'էր ինքնասիրութեանս համար ։ Բոլոր այս տեսարանը զիս սաստկապէս նուաստելու համար մտածուած և պատրաստուած էր ․ Մօտակայ տունէն անշուշտ պաղտնապէս գիտուած էր իշխանը, և այս կամ այն պատրուակը բռնուած էր մեր առանձին տեսութեան ժամանակ տունս գալու համար ․

Ուղղակի պզտի խարտեշահեր աղջկան վրան զայն հրաբորբոք աչերով, փրփրալի շրթերով․ կոշտաբար Մարսիլեացէն զատեցի զինքը, և գոչեցի ․

— Հիմա գո՛ւրս պիտի ելնես, օրիո՛րդ, հիմակ անմիջապէս դո՛ւրս պիտի ելնես ։

Նէ իր կեղծաւոր մեծ աչերը դէպ ինձ դարձուց, և զարմանալ ձևացնելով ըսաւ ․

— Յիսո՛ւս Քրիստոս, ի՞նչ ունիք, տիկի՛ն ։

Բարկութիւնս շատ առաւելութիւն կը տար անոր ։ Աւելի հանդարտ ձայնով այլ հեգնութեամբ մը զոր կը ջանայի արհամարհ ընելու ․

— Դրացի՛դ իմ, այս աշխարհիս մէջ զգուշութեան և բարե-

ձեւութեան ինչ ինչ տխրութիւններ կան, որք կ'երեւայ թէ մտքէդ անգամ չեն անցնիր....: Տունդ շատ մօտ է, և հոն շատ աւելի համարձակութեամբ կրնաս սիրուէս եռանդներուդ մեկնութեամբը զբաղիլ:

— Ի՛նչպիսի կերպով կ'ըսէք ինծի ասի: Տիկին, չէմ կը շա-կեր թէ ինչ բանի մէջ կրցայ վիրաւորել ձեզի... եթէ սակայն ....: Բայց, իրաք, ինչո՞ւ համար հոս էիր, պարոն, շարայա-րեց նէ՝ ուժգնապէս դէպ 'ի Մարսիլեաք դառնալով:

Վեր ըրի գլուխս, և դեռահասակ իշխանը տեսայ որ աչքովը ու ձեռքովը նշան կ'ընէր անոր լռելու:

— Ո՛հ, աւելի անզգոյշ եղիր, ըսի Մարսիլեաքին դառնութեամբ. հարկաւ պատուական պատճառներ ունիս դանես խօսքդ ետ առնելու համար, պարոն...: Այն զգածումը, որուն նկատմամբ զիս կ'ամբաստանէիր քիչ մ'առաջ, անշուշտ սիրոյ բազմաթիւ պատճառներուն մին էր, և օրիորդը միայն ունի բնազդը:

— Ըսաւ քեզ թէ կը սիրէ՞ քեզի, գոչեց Նինոն:

— Այո՛, ըսաւ:

— Լա՛ւ. բայց սխալեցա՛ւ, տիկին: Առ աւելն քմահաճութիւն մ'էր ունեցածը, և այսօրուան իսկ ինծ կը տայ իր օրտին վրայ ունեցած հին իրաւունքներս: Նորէն իր սիրուն Նինոնը, իր սիրուն կինը կ'ըլլամ, ինչպէս կ'ըսէր ինծ ատեն մը....: Եթէ չէք հաւատար, նայեցէ՛ք. Մարսիլեաքին լռութիւնն և իր ամօթահար կերպարանը խօսքերուս ճշմարտութիւնը կը հաստատեն...: Մարսիլեաք սուտի չպիտի հանէ ըսածներս:

— Լի՛րբ, գոչեցի:

— Մարիօն, ըսաւ Վատաթիւր, գէթ քանի մը ձև ունեցի՛ր. ..տանդ մէջ ենք, սիրելիդ իմ:

Մեղկաբար թիկնաթոռի մը մէջ կ'երկննար, և մեկուսի կը խնդար այն աղուոր տեսարանին վրայ զոր ինծ կը հայթայթէր:

— Իրաւ է, ըսաւ Նինոն: Ի՞նչ հարկ թշնամանքի դիմելու: Շատ դիւրին է մեզ համաձայնելու և բարեկամ մնալու:

— Երթէ՛ք, օրիորդ, երթէ՛ք:

— Ո՛հ, չպիտի բռնաբարեմ ձեզի.... Բայց վերջապէս կը պարտաւորիք թոյլ տալ ինծի որ արդարացնեմ պարագաներս ընթացքս։ Շատ պզտիկ էի երբ մայրիկիս խնամքէն զրկուեցայ. և մեծցայ պառաւ մօրաքեռ մը քովը որ էր Տը Մօնթէկիւ պարոնուհին։ Նէ տակաւին Լօշի գիւղին մէջ կը բնակի։ Փրանսուա Տը Լա Րօշֆուքօ՝, Տը Մարսիլեագ իշխանն՝ որ հոս ներկայ է՝ Լա Փլեշի մէջ ճիզվիթներուն ուսումնարանը իր ուսումները կ'ընէր. և իր մայրն՝ որ պարոնուհիին մտերիմ բարեկամուհին էր՝ ամէն տարի զան հետը կը բերէր մեր հետ երկու ամիս հանգիստ ընելու համար. միասին՝ իբր երկու խաղընկեր՝ անտառներու շուքին մէջ, Թուրէնի զուարթ ձորերուն մէջեր կը վազվզէինք։ Այն տեղերը Նինօն Տը Մօնթէկիւ անունը կը տրուէր ինծի, և ահա այս կէտը ձեզ կը բացատրէ թէ օրիորդ Տը Լանգլօ անունը, որ բուն ընտանեկան անունս է, ինչու առաջին անգամ իշխանին յիշատակները չզրգռեց։ Տասնուհինգ տարեկան հասակիս մէջ հօրս տունը վերադարձայ, բայց շուտով զիս անձիս ազատ տէր թողուց։ Հայրական հարստութիւնը կը վայելէի, և Բարիզ եկայ մանկութեան խաղերուս ընկերին հանդիպելու յոյսով։ Ինչպէս գիտէք արդէն, Տը Րամպույեէ մարքիզուհիին տունը գացի։ Պ. Տը Մարսիլեագ չճանչցաւ զիս. բայց իր վրայ տպաւորութիւն մ'ընելու ուրախութիւնը ունեցայ։ Ան սիրեց զիս.... Իր խորհրդակիցներուն մէն հոս է իմ կողմէ վկայութիւն տալու համար....։

— Ճիշդ է ըսածը, ըսաւ Վօլթիւր, իր թիկնաթոռին մէջ օրօրուելով։

— Երևակայեցէք, տիկին, թէ որքան երջանիկ էի. Զիս չճանչչեր, կ'ըսէի իւրովի, բայց սակայն գէթ ինծի կը մտի։ Ի՞նչ պիտի ըլլայ ուրեմն երբ իմանայ թէ իր սիրած Նինօնն եմ, իր Լօշի գիւղին ամենասիրեցեալն եմ։ Կը փափաքէի որ ժամ առաջ գայ այն վայրկեանն ուր պիտի իմացնէի անոր ամէն ըլլալս։ Բայց դուք եկաք, տիկին, և ձեր հրապուրելի գեղեցկութիւնը, որուն զօրութիւնը միշտ զովելու հաճոյքը պիտի ունենամ, որպէս ամէն

նէն քաղցր սէրը իղձ յափշտակելու սպառնալիքը կ'ընէ ։ Իրա-զութիւնը լսեցի . ծառաներս իշխանին բոլոր ընթացքը կը գիտեն։ Տը Մարսիլեագ տունդ պնչարեց , նախ քիչ մը դիմադրեցիք , և վերջապէս համաձայնեցաք զինքը ընդունելու ։ Աստր վրայ վրդովե-ցայ , վախցայ . . . ։ Երկնային աչերդ պատրաստ են յաղթանակս հափափելու , և անմնայն անձապարումով վազեցի եկայ զայն քեզմէ-նա տանելու համար . . . ։ Իրաւունք չունիմ ։ Ինծի դէմ սա պա-հերը անիրաւութիւն մ'է , և դուք անկարող էք այդպիսի անիրա-ւութիւն մ'ընելու ։

— Գրգիռ մ'է սա , գոչեցի . լսէ , կ'ընդունիմ զրրպագ ։

Խելքս գլուխս չէր անմնին . իշխանին մօտեցայ և ըսի .

— Պարոն , դեռ պահ մ'առաջ սէրդ յայտնեցիր ինծ ։ Կը համամ թէ անկեղծ է սէրդ , և արտօնութիւն կը տամ քեզ հիմակ անմիջապէս յայտնել թէ զով կ'ընտրես , օրիորդը թէ զիս

— Դժուարին է պարագան , ըսաւ Վուաթիւր ։ Ըստ իս լա-ւագոյն կ'ըլլայ մէկ կամ երկու շաբաթ թողուլ իշխանին որպէս զի խորհի ։

— Կարծիքդ հարցնող եղա՞ւ , պատասխանեցի բանաստեղծին արհամարհանօք նայելով յատից ցգլուխ ։

Ապա դէպ 'ի Մարսիլեագ դառնալով ըսի .

— Կ'ուզեմ որ հիմակ անմիջապէս որոշումդ տաս ։

— Կը լսե՞ս , Ֆրանսուա , ըսաւ Նինոն . պէտք է որոշում մը ընել . այս է տիկնոջ հրամանը . . . միթէ այդքան դժուարին է որոշելդ . . . ։ Օ՛ն , թո՛ղ իս սիրողն ետևէս գայ ։

Պչրուհին (la coquette) յաղթական ժպիտ մը կ'ուղղէր և իր ձեռնոցաւոր թևը անոր կը տար ։

Կը խոստովանիմ թէ Տը Մարսիլեագ մանրերկրորդ մը չվա-րանեցաւ ։

Նինոն յաղթանակաւ աչքիս առջևը դրսևելով տարաւ զան , բոլորովին հեգնալի նայուածք մը նետելով ինծ ։

— Կը խոստանանք գաղտնի պահել այս իրողութիւնը , բայց նորէն չընես այսպիսի բան մը , ըսաւ նէ ։

Այս ըսելէն ետք դուռը գոցեց, և նախասենեկին մէջ ձգուած ահագին քահ քահ մը լսեցի։

Թուեցաւ ինծի թէ ցաւէս ու բարկութենէս պիտի խենթենամ։ Վուաթիւր եա իր Թիկնաթոռին վրայ կը խնդար։

Կատղութեամբ դէպ անոր կողմը դարձայ։

— Կրած նախատինքս զըզուելէդ ետք հոս կենալդ մե՛ծ անխոհեմութիւն է, գոչեցի։

— Հանդարտէ՛, ըսաւ, ի՛նչ Հարկ բարկանալու....։ Քեզի Համար խայտառակութիւն չկայ այս իրողութեան մէջ, բայց ինծի Համար շատ կար, ըրելուդ իմ, քանի որ այս անմօրուս պզտիկին իզմէ վեր դասուիլը տեսայ. անմօրուս մ'որուն արժանիքն է իր Թարմագեղ այտերն, և խելքն է լռութիւնը։ Ճաշակ չունիս եղեր. գոնեցի աղջկան յատուկ կերակուր մ'է ան....։ Պէտք է խոստովանիլ նաև թէ պզտիկ աղջիկը բաւական ճարպիկ է, և երբէք չէի կարծեր թէ Թուրէնի մէջ....։ Շուտի՛կ. այդ օրի-որդ Տը Լանգլօ շատ Հեռու պիտի երթայ....։ Բայց այս ամէն բաները պիտի մոռնանք, եթէ կը զիջանիս ինծի Հաւատալու։ Աղա-խուՀիդ կը խոստանայ լուռ կենալ, և ես ալ պիտի չտարաձայ-նեմ այս դէպքը. ուրեմն Հանդարտէ՛, և ուղղուինք դէպ 'ի Սէն-Թոմա-Տիւ-Լուվրը փողոցն ուր մարգիզուՀին մեզ կ'սպասէ.. ..։ Գիտես, Մարիո՛ն, թէ ինչու Համար կ'սպասէ. Աստղկան Հագուստով զմայլելի պիտի ըլլաս։

Վուաթիւր երկար ժամանակ կրնար այս կերպով խօսիլ, վասն զի ես աթոռի մը վրան ընկեր էի՝ կատղութենէս կիսովին խեղ-դուած։

Իր անխռով անտարբերութեանը անթերի կ'ըլլար Թշնամանքը։

— Կ'արտաքսե՛մ քեզի, գոչեցի վերջապէս, կ'արտաքսեմ քեզի, լսեցի՛ր, պարոն.... և մարգիզուՀիդ.... ալ չեմ ուզեր տեսնել....։ Զիս այդ տունը տարած ըլլալդ կը բաւէ զքեզ ա-տելի դարձնելու ինծի։

Եւ՝ առանց Թոյլ տալու անոր որ պատասխան տայ՝ գացի պառ-կելու խուցս մտայ և դուռը գոցեցի։

Հոն հեծկլտանքս դուրս ելաւ, մինչև գիշեր արտասուք թափեցի։

Երբ քիչ մ'աւելի ազատ եղան խորհրդածութիւններս, ինքնին ըսի թէ այս ամէն իրողութիւններէն երկնից մէկ պատիժն էր, կամ դէթ ազդարարութիւն մը զոր ինձ կը տար որպէս զի երեւակայեմ թէ որքան խորունկ էր այն վիհն ուր ընկնելու վրայ էի։

Խիղճս հարցուփորձ ըրի, սաստկապէս ինքզինքս քննեցի, և իրօք վախցայ անբարոյականութեան այն լպրծուն զառիվայրէն որուն վրայ կը նետէ՛ին զիս բնաւորութեանս անհաստատութիւնը, անուղղելի պչրասիրութիւնս, հպարտութիւնն որուն աղբիւրն աղէտալի գեղեցկութիւնս էր, և՝ կը խոստովանիմ թէ՝ քիչ մ'ալ իրերու զօրութիւնը։

Խղճի փրկաւէտ տագնապ մը գրաւեց զիս։

Խիստ անկեղծաբար որոշեցի հեռանալ անդունդէն և յանցանքներուս քաւութիւնը գտնել՝ այնուհետև համեստ և անարատ կեանք մը վարելով։

Դժուարին է ինձ նկարագրել այն երջանկաւէտ հանդարտութիւնը և խաղաղաւէտ զուարթութիւնը որք այս որոշումիս յաջորդեցին։ Հոգիս զուարթ էր, սիրտս բերկրութեամբ կը բաբխէր։ Կը ներէի օրիորդ Տը Լանկլըզին և Վուաթիւրին. շնորհակալ պիտի ըլլայի անոնցմէ եթէ ներկայ ըլլային։

Ակումբանոցս ըստ սովորութեան բացուեցաւ։

Ծանր եղայ առանց սեթևեթի, և սիրուն՝ արժանապատուութեամբ։

Ոչ ոք ակնարկութիւն մ'ըրաւ ինձ նոր դէպքիս նկատմամբ. չգիտէին զայն, կամ չգիտնալ կը ձևացնէին։ Որոնք որ խոստացեր էին գաղտնի պահել իրողութիւնը, կը բռնէ՞ին իրենց խոստումը. տեղի ունեցայ հաւատալու թէ կը բռնէին, և ստուգապէս շնորհակալ եղայ անոնցմէ։

Մարգիզուհիին նկատմամբ յայտնապէս ըրած անքաղաքավարութենէս ինքզինքս արդարացնելու ջանացի, և անակնկալ ուղևորութեան անմիջաս սուտ մը գրիցի անոր։

Ընկուսական տիկինը հաճեցաւ պատասխան գրելու ինձ։ Միրա-

լէր գտայ իր նամակը ։ Ծաղրելի արկածս՝ ստուգապէս տարածայնուած չէր ։

Ասկից 'ի զատ յանկարծական խաղն առանց ինծի տեղի ունեցած էր ։

Այս խաղն էր արքայական շքեղութիւն ունեցող տաղաւար մը որ երեք շաբաթէ 'ի վեր շինուած էր բոլորովին գաղղիական կերպով ։ Որոնք որ մարգիզուհիին հարկաւոր եղեր էին կամ խաղին անձանց պաշտօնը կատարելու, կամ շարադրելու համար նորա պատրաստուած կրկնակի աստուածաշնչական տեսարանին խօսքերը, իրենք ևս ամենեքին չգիտէին այս շինութեան ինչ բանի սահմանուիլը ։

Բանուորները գիշերայն կ'աշխատէին հաստ վրանի մը տակ, և արշալոյսի ժամանակ պարտէզներուն պատերէն անցնելով կը մեկնէին ։

Հասաւ յանկարծակիան խաղին մեծ օրը, և այն օրը միանգամայն օրիորդ Տը Րամպույեէյի անուան օրն էր ։

Ապարանն ըստ սովորութեան երեկոյի հրաւիրեալներով լեցուեցաւ ։

- Երեկոյեան ժամն իննին ժամանակ օրքափայրին ամենէն մօտ և յետին սրահին մէջ քաղցր երաժշտութիւն մը լսուեցաւ, որ աներևոյթ նուագածուներէ 'ի գործ կը դրուէր ։

Յանկարծ օթոցներուն մեկուսիլը տեսնուեցաւ. պատը կէս մը բացուելու պէս եղաւ, և լոյսերով փողփողուն տաղաւարը նշմարուեցաւ ։

Ժիւլի Տ'Անժէն՝ յաւերժահարսի հագուստով՝ ծաղկաշէն գահի մը վրայ բազմած երևցաւ ։

Իր ոտներուն քովն էին երեք գիցուհիները, այսինքն Հերա, Աթենաս և Աստղիկ, զորս կը ներկայացնէին օրիորդ Տը Մօնմօրէնսի, Տը Սէնթ-Էթիէն աբբաուհին և Նինոն Տը Լանգլօ, որ տեղս բռնելու իբր ամենէն արժանաւորն ընտրուած էր ։

Մարսիլեաց հովիւ Պարիսին կերպարանը մտած՝ ժամանակ մը վարանեցաւ. Ոլիմպոսի երեք աղջկանց մին ընտրելու մասին, և վերջապէս դարձաւ դէպ 'ի Ժիւլի Տ'Անժէն ոսկի խնձորը տուաւ ։

տօմսաւոր ճառով մ'ապացուցանելով անոր թէ ինք՝ ծիւլի Տ'Անժէն առանձին՝ մեծութիւնը, իմաստութիւնը և գեղեցկութիւնը ունէր միանգամայն։

Հմայական բան մ'և բանաստեղծական աւիւն մ'էր այս։

Տաղաւարն երեք հաւկթաձև պատուհաններ ունէր, որոնց առաջինը Քէնղ-Վէնի բարձրաբերձ թմբիներուն, երկրորդն ամպարանին ծառկոցին և երրորդը Պ. Տը Շըվրէօզի նշխարիէ հովանոցներուն վրայ կը նայէր։

Ակմբանոյէն իսկ կարելի էր այս օդային աւուր սահմանն ելնել հոյակապ սանդուղէ մ'որուն մէն մի բազրիքին վրայ մրտեղներու կամ ծաղկաւէտ նարինջենիներու արկղ՝ մը կար։

Ցեղույն բոլոր մուսաներն իրենց վինին ազնիւքը հնչեցուցին, և տաղաւարը Զէրֆէյի օրէնով՝ անուանեցաւ։ Վասն զի Շաբըլէն բանաստեղծական գրուածքի մը մէջ, զոր չեմ ուզեր հոս օրինակել, կը պնդէր թէ «Անժէնի թագուհին Զէրֆէ այս օթեակը շինած էր Ալբենիսը հոն գնելու և տարիները փթաէն ազատ պահելու համար»։

Ծերն Տ'Իւրֆէ այս հանդիսին ներկայ էր. ան պատմեց ինձ այս ամեն մանր պարագաները։

Անկից 'ի զատ իմացայ նաև թէ հովիւ Պարիսն իր գրպանին մէջ երկրորդ խնձոր մ'ունենալով յաջողեցաւ գաղտնապէս օրիորդ Տը Լանգլօյին տալու, ըսելով.

— Կը վերահաստատեմ Պատմութեան ճշմարտութիւնը։

Աստղիկն առոր պատասխանեց խիստ հանճարեղապէս.

— Առասպելին ճշմարտութիւնը, ըսել կ'ուզէք, պարոն։

Այս բաներուն միտ կը դնէի անխռով և առանց ամենափոքր նախանձ զգալու. Մարսիլեայէն հետ ունեցած ծածուկ սիրոյս մէջ սիրտս չլանուած էր։ Իշխանն անշուշտ հաճելի էր ինձ, բայց պարզ քմահաճութիւն մ'էր այս, և ահա՛ այս պատճառաւ խիստ շուտ բոյժ գտայ։ Ոսոխուհիիս յաղթութեան մասին նորէն ապահովելիս վայրկեան մը չկղոգեց որոշումներուս հաստատութիւնը. Ապագային վերաբերում առաքինական նպատակներուս բար-

ձանցը վրայէն անկարգութեան և խենդութեան ջնջուած երազներուն կը նայէի հոգեպէս։

Կարտինալին սովորական այցելութեանս օրն եկաւ, և Լուվրը գացի։

Այս անգամ Նորին Բարձրութեան՝ կարտինալին հետ ոչ խորամանկութեամբ վարուելու և ոչ կեղծաւորութեամբ խօսելու պէտք ունեցայ զինքը ստիպելու համար որ յարգանօք շարժի անձիս նկատմամբ։ Ամբողջապէս լսեց կարծիքս զոր ուղղակի յայտնեցի անոր։

Աղերսեցի զինքը որ այն բոպէէն սկսեալ հրաժարի թեթև ծառայութիւններէս, և յայտնեցի թէ Բարիզի մէջ բնակիլս ինծի համար վտանգաւոր ըլլալով հաստատապէս որոշեր էի ընտանեացս գոգը քաշուիլ և ծնիլս տեսնող խեղճ տան մէջ մնացորդ կեանքս պարկեշտութեամբ և սրբութեամբ անցունել։

Կարտինալը հակառակեցաւ այս նպատակին, այլանդակ համարեց զայն, և պարտաւորեցայ սաստիկ փոթորիկ մը կրել։

Րիշլիէօ բարկացաւ։ Նախորդ պզտի վէճերուն մէջ իր ցոյց տուած ճիրանն այս անգամ աւելի երկայն և սուր երևցաւ. բայց քաջասրտութեամբ և այնպիսի բարոյական ոյժով մը կռուեցայ որ կարծեմ շատ զարմանք տուաւ անոր։

Այն ատեն անուշութիւն գործածեց և ջանք ըրաւ տրտունջով արգահատանքս գրգռել։

Իր կործանումին կատաղաբար աշխատող թշնամիներուն վրայ խօսեցաւ. ըսաւ թէ թոյլ է Լուի ԺԳ., որուն օրէ օր իր թշնամիները կրնային իր շնորհազրկութիւնը (disgrâce) ստորագրել տալ. Թէ երիտասարդ փառասէր մը, այսինքն Տը Շալէ կոմս արքայական հանդերձարանի առաջին տեսչութեան պաշտօնը Շարլը Տ'Անժէնէն գնած ըլլալով Ան Տ'Օթրիշին և տիկին Տը Շըվրէօզին հետ խօսքը մէկ ըրած է թագաւորը իրեն այսինքն Րիշլիէօյին դէմ գրգռելու համար։ Թէ Մարի Տը Մետիսին իր նկատմամբ նորէն չարասիրտ և դրուժան մը դարձած է. Թէ մայր-թագուհին ապաստամբութեան խրատներ կը տայ Կասթօնին։ Թէ այս ա-

մին թշնամութեանց, ձանձրոյթներու և չարանիւթ մեքենայութեանց պատճառաւ հիւանդացած է և կը տառապի, և թէ զինքը մխիթարութիւններէս և բարեկամութենէս զրկելու համար ընտրուած ժամը շատ գէշ ընտրուած էր։

Վերջապէս իր բոլոր զօրութեամբը սկսաւ հեծել՝ սովորականէն աւելի սիրապէս զիս փայփայելով և պագնելով։

Կարտինալին այս ընթացքին անմիջական հետևանքն եղաւ անտանելի ըլլալս։

— Շատ աղէկ կը տեսնեմ, տէր իմ, թէ Փարիզի մէջ մնալով ձեզի դէմ ինքզինքս պաշտպանելու պիտի հարկադրուիմ. ոչ վայելուչ և ոչ պատշաճ կ'երևայ ինձ քահանայի մը, կարտինալի մը, օրինակով քարոզելու սախուղ մարդու մ'ինծի պէս փոքրահասակ բարեկամուհի մ'ունենալը։

Րիշլիէօ սաստիկ աժգունեցաւ, և Ճիրանը կրնար դուրս ելնել, վասն զի շատ յայտնի և մեկին կերպով կը խօսէի։

Կը փափաքէի մէկ անգամով վերջ տալ և ցուցնել անոր թէ նորանոր սպառնալիքներ չէին կրնար վախ տալ ինձ. ուստի ըսի որ զիս վանքի մը մէջ բանտարկէ և իրական ծառայութիւն մ'ընէ ինձ, տկարութեանս պահանջումը կանխաւ ինք կատարելով, զիս ստիպելով այն տեսակ առանձնակեցութեան որ ամէն առանձնակեցութենէ աւելի նպաստաւոր է փրկութեան։

Արժանապատուութեամբ և հաստատութեամբ խօսելու ձևս կարծես հասկցուց անոր թէ պիտի չյաջողէր ընթացքի նոր նպատակներս փոփոխելու։

Այդ համոզումի այս հոլս անգամ կեղծիք մ'էր։

Րիշլիէօ իր ամենէն վտանգաւոր շրջանները տակուն կուխներէն կ'առնուր։

— Լաւ, թող այնպէս ըլլայ, ըսաւ. ՚ի նախքի կը պատճառաբանեմ հետդ, Մարիօն....։ Քմահաճութիւն մը բերաւ քեզի, ուրիշ մը նորէն պիտի բերէ....։ Իրաւախո՜հ ըլլանք, քանի որ պէ՛տք է ըլլալ։ Կը թողում որ մեկնիս, բայց պայմանաւ մ'որ է ամէն տարի անգամ մը Փարիզ ուղևորէլդ։ Վեց շաբաթ

մայրաքաղաքը պիտի մնար, և այս վեց շաբաթուան մէջ ինծ այնքան այցելութիւն պիտի ընես որքան պահանջելու իրաւունք ունիմ մեր առջի դաշանց համեմատ։ Սակայն, աղջիկս, շատ անիրաւ ես քեզի համար ունեցած սիրոյս մաքրութեան վրայ կասկածելովդ։

Այս խօսքերուն և ոչ մէկ բառին հաւատացի, և կը պատրաստուէի մնաք բարևի ակնածական ձև ընելու. սակայն Րիշլիէօ զանազան պատրուակներով զիս կեցուց։

Պալատի մը յատակագծերը ցոյց տուաւ ինծ. այս պալատը նոր շինել պիտի տար ինք Սէնթ-Օնորէ փողոցին տան տեղին վրայ, որ Թիւիլըրիի և Լուվրի միջեւն էր։

— Կ'ուզեմ արքայական բնակարան մ'ունենալ, Մարիօն, ըսաւ ինծ. ամեն օր զօրութիւնս կ'աւելնայ, և Լուի ԺԳ գործի մ'է ձեռքիս մէջ... պիտի կրնամ ստիպել զինքը հլու ըլլալու։ Այո, այս դժուարին գործին մէջ պիտի կարծանիմ, կամ պիտի խորտակուին որոնք որ քայլերուս առջև քարընդոտ կ'ըլլան։

— Տէ՛ր իմ, բարեսիրտ եղէք, գթած եղէք... այդ է ամենէն անհաշտ թշնամիները շահելու միջոցը։

Րիշլիէօ ինծ նայեցաւ։

Աչքն անարգու և ժպիտն անագորոյն էր։

— Գթութիւնը, ըսաւ, ապուշներուն առաքինութիւնն է։ Այս խօսքն ոչ այնքան քրիստոնէավայել կ'երևայ քեզ, սիրելիդ իմ, այնպէս չէ՞... Սակայն գիտնաս որ առաջին պաշտօնեան եկեղեցականը կը ջնջէ յիս. աշխարհավարութիւնն Աւետարանը կը լռեցնէ հոգւոյս և համոզումներուս առջև։ Օր մը, և հեռու չէ այն օրը, տապարի հարուածներ պիտի լսես և արեան հոսքը պիտի տեսնես... բայց այս մասին պիտի պարտաւորիս մարդկութիւնը ամբաստանել և ոչ թէ զիս։ Յիշէ՛ որ գլուխ մը շատ փանաքի բան մ'է երբ կշիռը կը նետուի ազգերու ճակատագրին հետ։

— Ա՛հ, տէր իմ, սոսկում կը տաք ինծ։

— Յիշէ՛ այս խօսքս, կ'ըսեմ քեզ, և զիս մի ամբաստաներ,

եթէ երբեք ճամբուդ վրայ սեւերով ծածկուած կառափնարանի մը հանդիպիս ։ Կ'ուզեմ մեծ և զօրաւոր ընել Ֆրանսան. Ֆրանսան պիտի զարնէ երբ զարնելու ժամը գայ ։

— Բայց արիւնը ձեր վրայ պիտի ժայթքի , գոչեցի ։

Նորէն ունեցաւ իր սոսկալի ժպիտը ։

— Հոգս է , Մարիոն . արդէն կարմիրներ հագած եմ . բիծերը չպիտի նշմարուին ։ Թողունք այս խօսքը , որ կը սրտմէ քեզի , աղջիկս ։ Այսպէս կը խօսիմ քեզ , վասն զի բարեկամութեանդ կարեւորութիւն կու տամ ։ Ինչ և ըլլան պարագաները , շատ աճապարումով մի դատեր զիս . Նաև եթէ կարելի է , մեկուսի թող պաշտօնեան և իր գործողութիւնները . . . միայն եղբայրը և իր սէրը տես ։

Գլխս դէպ իր կուրծքը քաշելով սեղմեց ։

Պժգումի շարժում մը դժուարաւ զսպեցի ։

Երբ Լուվրէն դուրս և այս մարդէն հեռու գտնուեցայ , թուեցաւ ինծի թէ դժոխային շղթայի մը յետին օղակը կը կտրէի ։

— Բարիք վերադառնամ , գոչեցի իւրովի . ո՛հ , ո՛չ , ո՛չ . . . կը սխալիս այդպիսի յոյս մ'ունենալով , բարձրապատիւ տէր ։ Պատճառաբանութիւններդ կը զայրացնեն զիս . Սատանային ժպիտն անշուշտ քուկինինդ կը նմանի ։ Քեզ խօսք տալ և չկատարելը բարի գործ մ'է ։ Ե՛թէ այնքան երկիւղ չտայիր ինծի , մնաս բարեւի տեղ արհամարհութեամբ և ատելութեամբ լի խօսքեր պիտի ձգէի քեզ ։

Այսպէս անոր բռնաւորութեան դէմ կռուած ըլլալս մեծ քաջութիւն կը համարէի ինծի , և քիչ յոյս ունէի այնքան շուտ ստանալու իրմէն հաւանութիւն մ'առանց որոյ պիտի չհամարձակէի մայրաքաղաքէն հեռանալու ։

Կրնայի՞ կարծել թէ խաբեբան՝ բացակայութեանս պատճառաւ կրելու վշտին վրայ ցաւելով հանդերձ՝ ինքնին երդում կ'ընէր մեկնիլս արգիլելու ։

Տունս մտնելով նօտարս բերել տուի , և Տէ Թուրնել փողոցին տունս վաճառելու բացարձակ իշխանութիւն տուի անոր ։ Հաւ-

տասն կերպով միտքս դրեր էի ծննդեան երկիրս քաշուիլ և հարըստութեանս մասնակցիլ առաջարկել ծնողացս։

— Ո՛հ, այո, կ՚ըսէի իւրովի, ինծի համար ամէնէն սրբանուէր յոյսե՛ր կան։ Քանի մը տարուան խոհեմութիւն մը յանցանքս մոռցնել կը տայ։ Թերևս պարկեշտ մարդ մը պիտի զիջանի նայուածք մը նետելու իմ վրայ. ամեն բան պիտի ըսեմ անոր. խոստովանանքս պիտի ընդունի իբր Աստուծոյ եղած խոստովանանք մը։ Անկից ետք եթէ յարգեմ այն մարդուն անունը, եթէ առաքինի և սրբակեաց ամուսնուհի մը, արժանապատիւ և բարի մայր մ՚եմ, ոչ իրաւունք և ոչ կամք պիտի ունենայ յանդիմանութիւններ ընելու ինծի, և անիծապարտ անցեալի մը յիշատակը անգամ պիտի մոռնամ։

Դառնալը վերադառնալու որոշումս անդրդուելի էր։ Կը թուէր ինծի թէ արդէն ընտանեացս գոգը կը գտնուիմ։

Երևակայութեամբ հայրական անշուք տան կրակին քովը կը նստէի։ Պզտի սենեակս ինծի համար կը բացուէր. շրջակայ պարտէզներուն խնկաբոյր օդը կը շնչէի, և գիշերները ննջիկիս սպիտակ վարագոյրներուն ներքև աղօթք ըրած միջոցիս կը քնէի։

Բարեսիրտ նուիրակը «սիրելի աղջիկս» կ՚ըսէր ինծի տակաւին. Եկեղեցին երթալու համար պառաւ մայրս թևս կ՚առնէր։

Տան բոլոր բարեկեցութեան հեղինակը կ՚ըլլայի։ Ժագըլինը, Ուրսիւլը, Ժէօրժէթը և Սիւզօնը նպաստաւորապէս կը կարգէի, եթէ տակաւին արամբի չէին արդէն, և գործով մը կը տեղաւորէի հանած վարած եղբայրներս ալ որք ատենօք հոգիս բերանս բերեր էին խնդալով, ոռնալով, սաստելով, աղմուկ հանելով և մանաւանդ պատռելով իրենց անդրավարտիկը, որուն յաւիտենական շտկողն էի։

Կը խնդայի այս յիշատակներով ու միանգամայն քաղցր և երանաւէտ արտասուք կը թափէի։

Բայց այս գեղեցիկ երազին մէջէն աղետալի գաղափար մը սպրդեցաւ։ Յիշեցի մօրս անաշառութիւնը, և տրտմալի անձկութիւններով համակուեցայ։

Ցանցառնացայ և ոչ միս պահուեցաւ անորմէն ։ Գիտէ անպատուութիւնս․ նախատինքն իր ճակատին վրայ ժայթքեցաւ ։ Ի՞նչպէս պիտի ընդունի զիս․ յանցաւոր աղջիկն ինչ ընդունելութիւն յատալու կը պարտաւորի ։

Քունէս սառնահար քրտինք հոսեցաւ ։

Անկարելի էր մայրիս աչքին առջեն երեւալ առանց շատ ժամանակ առաջ զինքը այս ընդունելութեան պատրաստելու ։ Եթէ զիս իր առջև ծնրադրած տեսնէ , սրտմտութեամբ նա կը մղէ․ յիսնամեայ առաքինութեանց պատուանդանի մը վրայ կը կանգնի զիս անիծելու համար ։

Արդարութեան և պատւոյ գաղափարները կատարելապէս անզգայ ըլլալու չափ կրող կին մ՚էր մայրս ։

Հօրս տկարութիւնն և շատ մեծ բարեսիրութիւնն ևս առաւել զօրացուցեր էին մօրս այս բնաւորութիւնը․ և այս բանիս գլխաւոր պատճառն էր երկուքի համար հոգւոյ ոյժ և բարոյական զօրութիւն ունենալու բազմիցս հարկադրուած ըլլալը ։

Այսպէս ուրեմն բոլոր յոյսերս կը ջնջուէին և շունչէ մը կը տապալէին ։

Եթէ հօրս գրեմ, նամակս ցուցնելու անգամ և 'ի նպաստ իմ խօսելու պիտի համարձակի՞ ։ Այնքան տարիներէ 'ի վեր ծերութիւնն անշուշտ ևս քան զևս տկարացուցած է զան․ վիշտերն արդեօք անոր կեանքը մաշած չե՞ն ։

Բա՛բէ , բա՛բէ , անմի՛տ աղջիկ․ ծնողացդ քովէն երթալու խօսք կ՚ընես , բայց չգիտես թէ վիշտն ու ամօթն անոնց գերեզմանը փորած են թէ ոչ ։

Այս գաղափարը սոսկալի եղաւ ինձ ։

Ես ինքնին Շալօնին ճամբան բռնելու չհամարձակելովս թեան չեցի անմիջապէս մէկը հոն ղրկել ընտանեացս վրայօք ի բերելու , և հօրս ու մօրս գիտաւորութիւնները հասկնա թէ սակայն երկինք կաթողին սիրոյս պահած էր զանոն . . . վասն

Բայց որո՞ւն յանձնէի այս փափուկ պաշտօնը․ որո՞ւն ձեռնադ հետաւորէի յայտնել ամեն վրդովմունքս , ամեն սարսափ ինչու կ՚այանցանքներս և այն գինը զոր ներումին կը տայի․ երդուեալ մարդ

Թերեզա ներս մտաւ ։

Արտասուքս պահեցի անորմէն ։

Տեսնելով թէ յաջ և յահեակ խուզարկութիւն կ՚ընէ առանց պատճառի, պատրաստ էի հրամայելու իրեն որ դուրս ելնէ՝ երբ յանկարծ ըսաւ ինձ նէ .

— Տիկին, երբէք պիտի չգուշակէք թէ այս միջոցիս հայրս որուն հետ Պուրկօնեի գինիի շիշ մը կը պարպէ ։

— Որուն հետ կ՚ուզէ թող պարպէ, հոգս չէ ։

— Իրաւունք ունիք . . . ։ Մանաւանդ այնքան երկար ատենէ ՚ի վեր չտեսած էք զինքը որ . . . ։

— Զո՞վ ։

— Սակայն եթէ ընտանեկան ցաւեր ունի, քիչ մ՚ալ մենք ենք պատճառը ։ Առաջուան պէս տգեղ և գինով է, բայց վերջա-պէս . . . ։

— Գամիւզա՞րն է, գոչեցի ։ Այո՛, ան է, այնպէս չէ՞ . . . . Թո՛ղ վեր գայ . Թո՛ղ հիմակ անմիջապէս վեր գայ ։

— Ապահով էի այդ մասին, տիկին, վասն զի այնքան բարե-սիրտ էք որ . . . ։

— Շո՛ւտ ըրէ, վազէ՛ ։

— Հիմա կը բերեմ ։

Եւ երկու վայրկեան ետք Հաշուեկալութեան ատենին նախկին սենեակս կը մտնէր ։

ել
ըէի
բերեր
և մանք
սենեակս
կը խմ
բանալէս



ԺԲ

Բայց այս . . . ժողովուրդին յետին դասուն վերաբերող մարդերուն
յաւ ։ Յիշեցի . . . ակ ոսկի նման հինուփուած զգեստ մը հագած էր . . .
բով համակ . . .

րուն մէկ քանի ծակերն անոր շապիկ չհագած ըլլալը կը ցուցը-նէին։ Իր մազերը կորսնցուցեր էին իրենց փայլուն գոյնը. ալ ճեր-մըկեր էին. կարելի էր զինքը շնորհաւորել այս մասին՝ եթէ սոյն կերպարանափոխութիւնը դժբաղդութեան և տառապանաց յայտնի հետևանքը չըլլար։

— Տէ՛ր ողորմեա, ինչ եկաւ գլուխդ, խեղճ Յովսէփս.

Ձեռքս իրեն երկնցուցի բարեկամաբար։ Յովսէփ ծունկի վրայ եկաւ զայն շուրթերուն տանելու համար։

— Ա՛խ, տիկին... ո՛չ, Մարիոն, կը հաւանիմ նորէն ե-րես նայելու։

— Կարելի՞ բան է ինծմէն երբէք տարակուսիլդ, ըսի՝ ոտք ել-նելու և աթոռի մը վրայ նստելու հարկադրելով զինքը։ Դժբաղ-դութեան մէջ ինկած բարեկամ մը չճանչնալու չափ քարսիրտ մը կը կարծես զիս։

— Քեզմէ ողորմութիւն ուզելու չեկայ, մրմնջեց խոժոռելով։ Գիտեմ այս առտու ինձ հանդիպեցար և զիս ստիպեցիր ճանչ-նալու։

Դամիւզար փոփոխակի կը կարմրէր և կը աժգունէր, իբր թէ առաջարկութիւններս իր դժբաղդութեան հպարտութիւնը վիրա-ւորած ըլլային։

Առաջին անգամը չէր՝ որ տեսակ մ'արժանապատուութիւն կը նշմարէի այս անկատար բնութեան մէջ։

— Յովսէփ, գէշ է, խիստ գէշ է այդ խօսքդ. դժուարա-պիտի մոռնամ զայն։ Սկսար ընդունելութեանս վրայ տարակու-սիլ, և հիմա բառ մը... ողորմութիւն բառը արտասանելով զիս կը վիրաւորես։ Քեզմէն ինձ եղած ծառայութիւն մ'ողորմութեան անունը կ'առնու՞։

— Ո՛հ, մի՛ սրդողիր, Մարիոն։

— Այո՛, պարոն, կը սրդողիմ, և շա՜տ կը սրդողիմ... վասն զի վերջապէս ապահով եմ թէ անձնական անկարողութենէդ հե-տեւած չէ այս վիճակը՝ ուր կը գտնուիս... ուրեմն ինչո՞ւ կ'ա-մըչնաս այդ պատճառաւ։ Խմելը կը սիրես; բայց կարգաւոր մարդ

— Մի՛թէ զիս կորսուելուդ ցաւն եղաւ, հարցուցի ժպտելով՝ Լիզէթին հետ կարգուելուդ պատճառը։

— Ոչ, պատասխանեց հառաչանօք մը. պատճառը Շաթըլէի մէջ բանտարկուիլս է....։ Անարժան ծուղակի մը մէջն ընկայ։

— Ի՞նչպէս եղաւ այդ բանը։

— Ի՜նչ. Մարիօն, կ՚ուզես որ պատմեմ քեզ....։

— Այո՛ պաղատիմ որ պատմես։ Ուրկէ՞ դարման մը պիտի գտանեմ, եթէ հիւանդութիւնը չեմ գիտեր։

— Ա՛լ դարման չկայ։

— Պիտի տեսնենք. դու այժմ պատմէ՛։

— Պատմեմ ուրեմն, ըսաւ նոր հառաչանօք մը. գործը Սէն-Վիկթոր Թաղէն փախած օրէս սկիզբ առաւ։

— Այո՛, գիտեմ....։ Զինուորները կարծեցին թէ դուն և Լիզէթ տուն ունէք։ Սակայն դիւրին էր անոնց սխալիլը հաստատել։ Անկից 'ի զատ քրոջս՝ ծաղրելիներին՝ նշանածն էիր. Չեմ հասկնար թէ ինչ ատելի շղթայում մը կրցաւ քեզի բանտարկել.... կամ թէ Լիզէթ քեզ առաջարկութիւններ ըրաւ, վասն զի դիւրին է գուշակել ըրած ըլլալը։

— Բա՛րէ, այո՛, գոչեց Ցավլէֆ, և ապուշի մը պէս խոստովանեցայ ներքին առաջարկութիւններին. Երբ Շաթըլէ հասանք, նէ պատասխանեց մեզի հարցափորձելու պաշտօնը ունեցող դատաւորին։ Նախ յայտնեց թէ ես Լըրիկն եմ, խիստ պատուաւոր մարդ մ՚որ գէշ մտօքը Հաշտենկալութեան ատեանին նուիրակ կարգուած էր, և երդում ըրաւ կախել տալու այն զինուորները որք մեզի պէս երկու անձերը ձերբակալ ընելու չափ անմիտ էին։ Կարծելով թէ ազնկութեան համար այսպէս կը շարժի նէ, չուզեցի սուտ հանել իր խօսքերը։ Անկից 'ի զատ դատաւորն անկեղծութիւն ցոյց կը տայ մեզ. կարծեցեալ կողակիցս շատ պատկառելի կ՚երեւար իրեն։ Աղաչեց մեզի որ քանի մը ժամ համբերենք մեր ինքնութիւնը հաստատելու կարող վկաներուն մինչև գալը։ Ուստի մինչև անոնց գալուստը սպասելու համար ես և Լիզէթ շատ վայե-

կամ խիստ չէ ։ Լիզէթ շարունակեց գլուխս պարզնել, թէև միւս կողմէն կեղծաւորաբար խրատ կը տար ինծ ծաղրելիներն տրուած խոստումս չուտելու. Լիզէթ ինծ նայելու կերպ մ'ունէր որ գլխուս պտոյտ կը պատճառէր։ Վերջապէս յաջողած էր զիս իր ուզածը քննելու հարկադրել, երբ յանկարծ դուռը բացուեցաւ և մայրս ներս մտաւ։

— Մա՛յրս։

— Այո՛, տիկին Տըլօրմ անձամբ, զոր Տը Սէնթ-Էվրըմօն կամաւորին բերած էր..... Երևակայէ՛ տեսարանը։ Դաստուորն՝ զանձն խորհրդածութիւններէ ետք՝ ամենապարզ բան մը ըսած էր մօրս. դրկել կիրակօրդ առնը և առաջնել զինքը որ Շա՛թըրէ գայ քննելու համար թէ մե՞նք ենք ճիշդ այն անձերը որոնց ձեռնարկութիւնը կը խնդրէր։ Կոմսուհին մեզի տեսնելով կատղեցաւ։ Մայրս իր յանդիմանութիւնները ըրաւ ինծ. չէր ներեր Լիզէթին ոտքն ընկած ըլլալս մինչդեռ ծաղրելին նշանուհիս էր։ Անկից 'ի վեր բուռական պատճառով զիս կ'ամբաստանէին ճշմարիտ յանցաւորներուն փախուստին իբր պատճառը։

Որերը մեզի համար յոռի դարձուածք կ'առնէին։ Կը դողայի, կը թոթովէի. դաստուորն ունքը կը պրստէր՝ պնդելով թէ ծաղրած ենք դաստուորական իշխանութիւնը. իսկ կոմսուհիին և տիկին Տըլօրմին խօսքերն անոր բարեսիրութիւնը վերադարձնելու տեսակէն չէին։ Վերջապէս յայտնեց մեզ դաստուորը թէ զնդանը պիտի մնանէինք մինչև այն օրն ուր պիտի հաճէինք ըսել թէ ու՛ր ապաստանած էիք դուն և Տէպարօ։

Կնքամայրդ դաստուորը շնորհաւորեց իր այս որոշումին համար։

Բայց Լիզէթին խելքը գլուխը կը մնար։

Ամենէ մարդէ աւելի բարձրացուց ձայնը, գոչեց, պատմեց թէ ինչե՞ր անցեր էին Սէն-Վիլթօր թաղին պզտի տան մէջ, 'ի բաց թողլով սակայն քեզի խոյս տալու խրատելս. հարցուց Լիզէթ թէ ի՞նչ իրաւունքով մեզի հետ աւելի գէշ կը վարուէին քան թէ Գ. Տը Շըվլիին և Պասօմբիէրին հետ։ Ասոնք, կ'ըսէր նէ, պէտք է որ հիմա կանչուին իբր վկայ։ Նորէն իր Անրի Դ.ին աղ-

չինն ըլլալը յայտնեց. տիկին Տը Գոնթի իշխանուհին, տիկին Տը Լիւինի վրայ խօսեցաւ, և վերջապէս ըսաւ.

«— Ե՛ս ծաղրեցի զաստուածական իշխանութիւնը... չէ՛, իրաւ չէ՛ ասի։ Նշանածին և էրիկին մէջ եղած անջրպետն անմիջապէս կ'անհետի պսակի արարողութեամբ մը։ Արդ Գ. Ցովսէփ Գամիւզար Հաշուեկալութեան ատենին վարդապետաց նախագահը, նշանուած է.... Եթէ տարակուսող կայ այս մասին, թող հիմա քահանայ մը բերէ մեզ»

«— Ցիրուկ, պարոն, ըսաւ կոմսուհին զաստոսրքն, կ'աղերսեմ ձեզի որ բանտին քահանային ձեռօք հոս խնկ կատարել տալ այս հետաքրքրական հարսնիքը։ Եթէ անանկ այս բանը, գոհ ըլլալս կը յայտնեմ»։

— Այնքան շատ յուզուած էի որ չէի կրնար ըմբռնել այս խօսքին բուն նշանակութիւնը, շարայարեց Գամիւզար, և իրաղութիւնը տիկին Տը Սէնթ–Էվրըմօնին ուզածին պէս անցք ունեցաւ։

— Ի՛նչ... հոն... ժողովի ժամանակ ձեզի պսակեցի՞ն.

— Ծողովի ժամանակ, Մարիօն։

— Սոսկալի է ասի։

— Այո, սոսկալի է, այնպէս չէ՞... կենդանայրդ կատարելապէս անղեակ էր Լուվրի մատուռին մէջ անցք ունեցող դէպքի մը....

— Աղէ՛կ, աղէ՛կ, բարեկամ, գիտեմ դէպքը, և կրնաս շարունակել զայն։ Բայց ապա ըսէ՛, շարայարեցի, Շաթըլէյին մէջ անցք ունեցող այդ հարսնիքէն 'ի վեր բոլորովին ալբուած ես մօրս հետ։

— Ո՛չ, պատասխանեց Ցովսէփ։ Անգամ մը Շալօն գացի փանաքի գոյքս պատրաստ դրամի փոխելու համար, զոր եւքը կը պատրաստուէի անդունդի մը մէջը նետել։ Տիկին Տըլօրմը տեսայ, և ամենէն առաջ տիկին Տըլօրմ ակնարկութիւն մ'ըրաւ ինծ Լուվրի մատուռին կեղծ ամուսնութեան, որուն ամենևին չուզեցի հաւատալ։ Մայրդ զգուշացաւ պնդելէ։ Ծաղըլէն աղէկ էրիկ մը գտած ըլլալով, ինծի դէմ ոխ չպահուեցաւ։

— Գոհ եմ զայդ լսելուս, Յովսէփ . . . պատճառը շատով դիւրին իմանալ։ Բայց Շաթըլէյէն ելնելէդ ետք ինչ պատահեցաւ։

— Լիզէթ զիս Տը Լորմըր-Սէզ փողոցը տարաւ, և առջի անգամ այնքան սաստանութեամբ վարուեցաւ որ բոլորովին վստահ ըրաւ զիս։ Ոչինչ կը տեսնէի, ոչինչ կը լսէի. կոյր և խուլ էի։ Երկու տարիէն աւելի երջանիկ ըլլալու ապշութիւնը ունեցայ։ Սակայն պաշտօնիս ամսականը չէր բաւեր տանս մէջ վարուած հեշտանքին ծախուց։ Պալատական սիրեր կը գային, մանաւանդ Տը Լիւսըը դերկոմսին անունով մէկը . . . ։

— Ա՛հ, մա՛յր Աստուած, գոչեցի։

— Այո, տանս կը փլէի, և վարձատրութիւնս էր անպատուութիւնը, շարունակեց Յովսէփ դառն ժպիտով մը։ Կ՛աղաչեմ, մի՛ սոսկաք զիս անպատուութեանս մանր պարագաները պատմելու։ Գիտէք բաւեմ քեզ միայն թէ օր մը բոլորովին ձեռքս էր կնքամայրեդ վրէժ առնելու։ Վրէժս լուծելու համար կը բաւէր հրել դանակը զոր իր աղէն կոկորդին վրայ բռնած էի։

— Մարգրիտին։

— Այս դանակը խօթելու իրաւունքը ունէի . . . սակայն թերութիւնը չէր պատժուեր . . . կը համոզուէր անշուշտ ինչ ըսել ուզելս . . . ։ Այլ սակայն քաջասրտութիւն չունեցայ։ Անկից 'ի վեր սրբունը անպատուութիւնս սրբած կ'ըլլա՛ր։ Թո՛ղ Աստուած պատժէ վատազգիները, ըսի խռովի և խոյս տալի։ Երբ անգամ մը կայն ընկած աչքէս, համկցայ դրացիներուն փսփսուքը և կիսկատակ ակնարկութիւնները։ Դիւրին էր ինծ տեսնել թէ ինչ կը նշանակէր պաշտօնակիցներուս հեգնալի ժպիտը։ Երկար ժամանակէ 'ի վեր անպատուութիւնս հրապարակին ելած էր . . . . ես միայն բան մը չգիտէի։ Մեկնեցայ Տը Լորմըր-Սէզ փողոցէն, ալ Հաշտեկալութեան տանանը չերևցայ նորէն, անտես անդամ հանեցի վրայէս, և բեռնակիր եղայ հոն՝ մօտերս՝ Սէնթ-Անթուան արուարձանին մէջ ուր Պիւլման այս առտու զիս ճանչեց։

Բուռն յուզումով մը զիս համակեցին այս վերջին խօսքերը

զոր Ցովլէֆ արտասանել ձայնով և սրտառուչ պարզութեամբ մը արտասանեց ։

Կ'սքանչանայի այս մարդուն վրայ՝ որ ալ չկարմրելու համար առանձնական և թշուառ կեանքի մը կը դատապարտէր ինքզինք ։

Իսկոյն ոտք ելնելով և անոր քովը երթալով ,

— Ցովլէ՛ֆ , բարեկամս Ցովլէֆս , պէտք է ներել ինծ այն ամէն ցաւերը զոր ատենօք քեզ պատճառեցի ։ Եթէ անխոհեմ պատանեկութիւնս աւելի ալէկ Խանչցած ըլլար սիրտդ , այսօր պար- կեշտ մարդու մը կինն եղած կ'ըլլայի . . . ։

— Ա՛խ , Մարիօն ։

— Հեռացած չէի ըլլար այն տեղերէն ուր ծնիլս տեսայ . աշ- խարհս զիս հրապուրած չէր ըլլար իր խաբուսիկ երանութեան- ներովը ու շինովի հեշտութիւններովը . . . ։ Թէ՛ դուն և թէ ես աւելի երջանիկ կ'ըլլայինք ։

Ցովլէֆ սիրտս յօշելու չափ կը հեծկլտար ։ Ես ալ կ'արտա- սուէի ։

— Ցովլէ՛ֆ , առաջի Աստուծոյ կը խոստովանիմ թէ ամէն դժբաղդութիւններուդ պատճառն ես եմ , և դառնապէս կը զղջամ ։ Ինչո՞ւ բերի քեզի այս քաղաքը , որուն մէջ ամէն մոլութիւններն և ամէն խայտառակութիւնները կը ժողովին ։ Անգամ մը դուրս ե- լար անկէ և վերստին եկար մարդու մը բանսարկութեանց շնոր- հիւ , այնպիսի մարդու մ'որուն գործերն և խօսքերս այն ատեն համերաշխապէս կապուած էին . . . . ։ Այո , թշուառութեանդ պատճառն եղայ . այսօր իրաւունք չունիս մերժելու ծառայութիւն- ներս . ուրիշ բան է , եթէ նաև մերժես ինծ ներել ։ Բայց , Ցովլ- էֆ , կը յուսամ թէ այդպէս պիտի չվարուիս . . . ։ Օ՛ն , ե- թէ կը ներես ինծ , համբուրէ՛ զիս ։

Թևերս բացի անոր ։ Եկաւ նետուեցաւ գիրկս , և իր հեծկլտա- նաց միջոցին ըսաւ .

— Մարիօ՛ն , քու պատճառաւ դժբաղդ ըլլալս . . . երջանիկ ըլլալ է ։

Միշտ սիրած էր զիս . միշտ սիրած ըլլալը կը համկնայի այն միջոցին ուր բարեմիրս ՝ և սիրելի կ'երևայի ։

Յովսէփ Գամիւզար իր կենացը մէջ առաջին անգամ համբոյր մը կ'առնուր իզմէն։

Իր տգեղ երեսն իր արտասուքին ներքև կը փողփողէր. և բնական երախտագիտութեամբ և յետին գոհունակութեամբ գեղեցկացած կ'երևար ինծ։

Այս համբոյրն իր ամեն վիշտը մոռցուց։

Խե՛ղճ տղայ. ո՛րքան խստիւ և ո՛րքան անիրաւութեամբ վարուեր էի հետը։

Թերէզան եկաւ հագ մը զգեստով, որուն մէջ ա՛լ ոչ դեղին գլխանոց, ոչ կարմիր բաճկոնակ, ոչ սևանման գուլպայ, ոչ ալ կառուցաւոր մուճակներ կային։

Հրաման ըրի որ երկրորդ դստիկոնին մէջ պզտի սենեակ մը բացուի Յովսէփին համար։

— Բա՛րեկամ, ըսի, գնա՛ զգեստներդ փոխէ՛ և ապա եկո՛ւր իմանալու թէ ի՛նչ կը յուսամ քեզմէ։

Շատ պատշաճ կերպով հագուելէն ետք շուտով ետ դարձաւ։

Անշուշտ չէի կրնար պնդել թէ գեղեցիկ մարդ մ'էր ան։ Իր դէմքն և հասակն անստգտանելի չէին. բայց անշուշտ շատ վաստըկած էր իր մազերուն գոյնին փոխումէն, և առ այժմ երկու մարդ կը ճանչէի, այսինքն Թէօֆիլը և Շարըլէնը, որք Յովսէփէն աւելի տգեղ էին։

Թերէզան ևս այնքան կատարելապէս այս կարծիքը ունէր որ Յովսէփին այս փոփոխութեան մասին եռանդ անգամ ցոյց տուաւ յայտնելով որ եթէ երկրորդ անգամ էրիկ մ'ընտրելու պարտաւորուէր, պիտի չդեգևէր Գամիւզարը Էմմանուէլին վաղեմի հողաբարձուէն վեր դասելու։

Դուրս հանեցի այս խենթը, որուն խօսքերը յարմարութիւն չունէին պարագային ծանրութեան հետ։

— Կը կարծե՞ս, ըսի Յովսէփին, թէ մեր տարիքին մէջ անկարելի ըլլայ նորէն սկսիլ մեր կեանքը, եթէ դժբաղդ կամ յանցաւոր դատուի այն։

— Բա՛րէ, Մարիոն, ի՛նչպէս ըսելու է։

— Կանխաւ մի՛ վհատիր, և նախ քու տեսութեան կէտակէտ նկատելով պատճառաբանենք. Ենթադրէ՛ թէ այսօր քեզ ես կը տրուի հօրեղբօրդ քսանհինգ հազար Փրանք ժառանգութիւնը. Շալօն կը վերադառնաս, ծերունի հօրս կը յաջորդես պաշտօնի մը մէջ որ՝ նա մանաւանդ հիմա՝ ապարդիւն յոգնութիւններ կը պատճառէ անոր. վաղեմի բարեկամներդ, տաքուկ կրակին անկիւնը, հանդարտաւէտ խօսակցութիւնները նորէն կը գտնես. Մէկ խօսքով ըսեմ, վերստին կ՚սկսիս այն գաւառական քաղցր կեանքը որ մտքին հանդարտութիւնը և սրտին հանգիստը կը տայ.

— Ո՛հ, մրմրաց Յովսէփ, երա՛զ մ՚է ատի.

— Ո՛չ, բարեկամ, վասն զի վաղն իսկ Շալօն պիտի վերադառնաս քսանհինգ հազար Փրանքիդ հետ.

Գամիւզար հասկցաւ թէ դիտաւորութիւն ունէի ես ինքս տալ իրեն այս գումարը. Ուստի յուզմանը սաստկութենէն տժգունեցաւ.

— Շնորհակալ եմ ըլլար իղձէն, Յովսէփ, ըսի. Աշխատէ՛ ընդ հակառակն փարատելու աղետալի մտածում մը, ջնջելու սոսկալի երկիւղ մ՚որ կը գրաւէ զիս. Գոյքդ պատրաստ դրամի փոխելու նպատակաւ ըրած այն ճամբորդութենէդ ՚ի վեր շատ տարիներ անցան, այնպէս չէ՞.... Եթէ այն ատենէն ՚ի վեր մայրս, հայրս... ո՛հ, խորհի՛լ թէ ինձ բիւր անէծք կարդալով մեռան.

— Վստահ եղի՛ր, ըսաւ Գամիւզար, ապահով եմ թէ դեռ կ՚ապրին անոնք.

— Փա՛ռք քեզ, Աստուած իմ, փա՛ռք քեզ, գոչեցի՝ անպատում ուրախութեան աւիւնով մը ձեռներս միացնելով. Բայց ինչպէս կրնաս այդ երջանկաւէտ վստահութիւնը տալ ինձ.

— Այս վստահութիւնը կը տամ քեզ. տալս բաւական է, պատասխանեց քիչ մը շփոթութեամբ. Հարցումներ մի՛ ըներ ինձ... Անձ մը կայ որ մերձաւոր է քեզ և որ հին յանցանաց վրայ քօղի գատելու կը յամառի. արդ թո՛յլ տուր ինձ որ այդ անձին հասկցնեմ իր սխալիլը.

— Մերձաւորներէս մարդ մը կայ հո՛ս ուրեմն.

— Գուցէ։

— Եղբայրներուս մի՛ն։

— Այդ անձին անունը պիտի լսեմ քեզ երբ գերընտիր յատկութիւններդ, սրտիդ բարութիւնը պիտի ճանչէ....։

— Նաև զիղջս... Հասկցո՛ւր իրեն մանաւանդ զղջալս....։ Ուրեմն ընդհանուր արհամարհանաց արժանի եղած եմ, ո՛ Աստուած իմ....։ Ինձ նայէ, Յովսէփ, կ'ուզեմ հիմա վճռական փորձի մ'ենթարկուիլ և՝ ըստ քեզ՝ տեսնել թէ ինչ կը պարտաւորիմ յուսալ ուրիշներէն։ Սակայն յաւիտենական փրկութեանդ վրայ պէտք է երդում ընել թէ անկեղծաբար, ուղղամտաբար, առանց դարձուածքի պիտի պատասխանես ինձ, և թէ սիրտս յօշելու հարկադրիս անգամ, նախապատիւ պիտի սեպեմ յօշիլ քան թէ ստութեան դիմել։

— Վախ կը տաս ինձ, մրմռաց խռովելով։

— Կ'երդնո՞ւս, ըսէ։

— Կ'երդնո՛ւմ։

— Ուրեմն մտիկ ըրէ....։ Շալօն կ'երթաս, մայս կը տեսնես, և կարելի է որ անողոքելի չգտնես զինքը։ Դատս պաշտպանելդ կը լսէ ան, զղջումս կը հաւատայ, սիրտը կը յուզուի... և այն ատեն ինձ կը գրես որ կրնամ Շալօն վերադառնալ ամենայն վստահութեամբ։ Ասոր վրայ մայրաքաղաքէն կը մեկնիմ, երանութեամբ, հոգեբոյր բերկրութեամբ կը մեկնիմ։ Կը գամ քեզի կը գտնեմ այն տեղն որ քու և իմ հայրենիքն է, ծնողացս ոտքը կ'ընկնիմ։ Արտասուքս կը տեսնեն, զղջումս կ'ընդունին, թողութիւնս ամբողջապէս կ'ստանամ, և առաջուան կեանքովս նորէն կ'սկսիմ ապրիլ այն ժամէն, ուր վաճառանատը մտանք մեկնելու համար....։ Այն ժամէն մինչև հիմակ անցած գացածը սոսկալի յարավէպ մ'է, խայտառակ էջ մ'է զոր կը պատռեմ։ Առաջուան գաւառաբնակ պարզ աղջիկը կը դառնամ վերստին, չորս կողմս անարատ և բարի օրինակներ կը տամ։ Եթէ մէկը՝ աղետալի անցեալի մը տեղեակ ըլլալով՝ ճամբուս վրայ նախատական խօսք նետէ ինձ, մեղաւոր Մագթաղինէին պէս ճակատս

վար կը ծռեմ և արտասուքով միայն կը պատասխանեմ նետուած խօսքին ։ Տարի մը, երկու տարի կ'անցնի ։ Մէն մի օրս բարեգործութիւններով կը նշանաւորի, հարստութիւնս աղքատներունն է ։ Հայրական յարկին ներքև համեստաբար կ'ապրիմ ։ Մայրիս և քոյրերուս պէս բարեպաշտ կ'ըլլամ, որ և է յանդիմանութիւն չկրնար հասնիլ ինձ, և զղջումիս անկեղծութիւնը տարակոյսէ ազատ կ'ըլլայ բոլորովին ։ Արդ . . . ահա հոս երդում ընել կը տամ քեզ, Յովսէփ, որ անկեղծ և ուղղամէտ ըլլաս ։ Ենթադրէ թէ Նախախնամութիւնը այրի թողու քեզի . . . ։

— Ո՛ Աստուած իմ, գոչեց, կը պարտաւորիմ հասկնալ միտքդ, Մարիօն ։

— Ենթադրէ թէ կը մոռնամ, ձեռքս քեզ երկնցնելով և ըսելով.

«Յովսէ՛փ, տակաւին իմ կուզե՞ս կինդ ըլլալու համար» ։

— Դո՛ւն, կի՛նս . . . ։ Ո՛հ, երկնից երանութիւնը կ'ըլլար այդ բանը . . . ։ Լռէ՛, Մարիօն, լռէ՛ . ինչո՞ւ ինձ ընդնշմարել տաս ճակատագիր մ'որ բնաւ իմս պիտի չըլլայ . . . ։ Արի՛ւնս կը թափէի այսպիսի ճակատագիր մ'ունենալու համար ։

— Զղջացի՛ր, բարեկամս . . . խիղճդ է այդ պատասխանը տուողը . թէ ոչ մի՞ գուցէ սիրտդ կը խաբուի ։

Գամիւզար քանի մը մանրերկրորդ ինձ նայեցաւ, ձեռքը կուրծքին վրայ դրաւ անոր բաբախումները զսպելու համար, և յուզուած ու հանդիսաւոր ձայնով մ'ըսաւ ինձ .

— Յանուն հանգուցեալ մօրս կ'երդնում քեզ թէ բարեկրութեամբ, երախտագիտութեամբ, հպարտութեամբ քեզի կին կ'ընէի ինձ, եթէ ամուսնական ամօթալի կապերէս կարենայի ազատիլ ։

— Սակայն, Յովսէփ, ի՞նչ պատասխան կը տայիր այն անձերուն որք ընթացքս իմացած պիտի ըլլան և որք՝ քաւութենէս չակնածելով պիտի կարծեն թէ իրաւունք ունին արհամարհութեան ներքև ճզմելու զիս ։

— Ինչ պատասխան որ Քրիստոս տաճարին մէջ տուաւ . քեզի ·

տկար արարած մը պաշտպանելով, Մարիոն։ Այդ միւս փարիզեցիներուն պիտի ըսեմ. «Ձեզմէ ո՛վ որ մեղք չունի, թո՛ղ առաջին քարը նետէ անոր»։ Եւ պիտի շարայարեմ. «Գացէ՛ք փնտռեցէ՛ք այն ամէն կիները որք իրենց ցուրտ առաքինութիւնը ամէնուն առջև ցոյց կը տան. գտէք անոնց մէջ աւելի վեհ հոգի մը, աւելի վսեմ սիրտ մը, աւելի սրտառուչ ազնուութիւն մը, աւելի անարատ զգայնութիւն մը...»։

— Յովսէ՛փ...։ Ո՛հ, ճշմարիտ են այդ ամէն բաները զոր ինծ կ'ըսես։

— Կը տարակուսիս, Մարիո՛ն.....։ Հիմակուան կերպարանովդ, որով կ'երևաս ինծ, բոլոր աշխարհքիս յարգանաց արժանի ես։ Սակայն ա՛լ չխօսինք այդ քիչ մ'առաջուան գեղեցիկ երազին վրայ. մարդս անպատիժ չխաղար այսպիսի յոյսերու հետ։ Հասկցայ թէ ինչ կ'ուզէիր ինծմէն, և ահա կը մերժիմ Շալօն երթալու համար։ Սակայն, ճիշդը խօսիմ քեզ, կարծեմ թէ տիկին Տըլօրմ դիմադրութիւն պիտի ընէ։ Խոհեմութեամբ կը վարուիս նախ զիս ղրկելով որ անոր տրամադրութիւնը դիտեմ։

— Ուրեմն մայրի մը սիրտը քուկինիդ չափ ներողամիտ պիտի չըլլայ ինծ։

— Կոմսուհին, կնքամայրդ, իր բարեսիրութիւնը ընտանեացդ միւս բոլոր անդամներուն վրայ տարածեց, բայց պայմանաւ մ'որ է ընդ միշտ հայրական տունէն դուրս մնալդ։ Անգթաբար վրէժ առնող կին մ'է ան....։ Եթէ Աստուած մարդերուն պէս անողոք ըլլար, ի՞նչ կ'ըլլար մեր վիճակը։

Յանկարծական որոշում մ'ըրի անմիջապէս, և Գամիւզարին ըսի.

— Վաղը, բարեկամ, վաղը պիտի երթամ տիկին Տը Սէնթ-Էվրըմօնը տեսնելու։

— Կարելի՞ է տեսնելդ. պիտի ունենա՞ս այդ քաջարութիւնը։

— Այո՛, պիտի ունենամ։

— Այն ատեն ամէն բան կ'երաշխաւորեմ, եթէ կնքամայրդ հոն գտնուած միջոցին նպաստաւոր նամակ մը գրէ....։ Բայց

շատ չտածենք այդ յոյսը, և որ և է անձէ մ'օգնութիւն յուսալու չպարտաւորող անձերու պէս գործելու աշխատինք: Սակայն քանի որ կոմսուհիին այցելութիւն մը տալու որոշումը կ'ընես, ա՛լ չեմ պարտաւորիր քեզմէ պահելու, Մարիոն... անոր տան մէջ պիտի գտնես Էօսթաշ եղբայրդ: Ապարանին մէջ կը բնակի ան երբ Լուվրի մէջ պահպանութիւն ընելու պարտաւոր չէ:

— Էօսթա՛շը, գոչեցի. ամենէն աւելի սիրածս, պզտիկ քումյթիկ Էօսթա՛շս, որուն այնքան անգամ ծունկերուս վրայ ցատկըտել տուած եմ....: Ո՛հ, ի՞նչպիսի հեշտութեամբ պիտի համբուրեմ զինքը:

Յովսէփին տրամապէս գլուխը օրելը տեսայ, և սառնահար ձեռքի մը սրտիս ուրախութեան սարսուռները կեցնելը զգացի:

— Եղբայրս զիս կ'արհամարհէ՞... կ'ատէ՞... այո՛, կը հասկընամ... «Աստուա՛ծ իմ, Աստուա՛ծ իմ... բայց հոգ չէ. պիտի երթամ տիկին Տը Սէնթ-Էվրըմոնին տունը...: Բայց Էօսթա՛շը, ե՞րբ տեսար Էօսթաշը:

— Երէկ... Նախախնամութեան շնորհիւն էր կարծես իրեն հանդիպելս: Սէնթ-Անթուան արուարձանին մէջ քալէս երկու զինուոր կ'անցնէին: Անոնց մէկին միւսը Տըլօրմ անունով կանչելը լսեցի, ետես դարձայ և ճանչցայ Էօսթաշը, որ պահապան զօրաց յիսնապետի հագուստ և շատ բարեձև կերպարան ունէր: Իր տեսքը սիրտս թունտ հանեց: Առջի շարժումս եղաւ անմիջապէս կեցնել զան: Չճանչեց զիս և կարծեց թէ Մարսելին եմ, այսինքն Շալօնի մայր եկեղեցիին ծեր զանգահարը, որ ասկից տարի մ'առաջ քաղաքէն մեկնեցաւ Սէն-Ժերվէյի մէջ լուսարար ըլլալու համար: Սխալիլը չիմացուցի անոր: Էօսթաշ հպարտ չէ. զինուորը մը մնաց և հեռու արինկեց: Անոր շնորհիւը քիչ մ'առաջ կրցայ քեզի հաւաստել թէ ծնողքդ կենդանի են: Տիկին Տը Սէնթ-Էվրըմոն քոյրերդ չուզեց: Նախ եղբայրդ՝ Ֆրանսուան՝ Բարիզ կանչեց և զան դնել տուաւ զօրագունդի մը մէջ, որուն երիտասարդ հրամանատարը, ինչպէս ըսի քեզ արդէն, մեզ մնաց պիտի մեռցնէի: Բայց Ֆրանսուան պատերազմական ըն-

ւորութիւն չունենալուն համար, կամաւ Հին Գօնթենայլօյի մէջ հար-
կածողովի պաշտօն ստանձնել տուաւ անոր, և պահապան զօրաց
գունդին մէջ անոր ունեցած պաշտօնը միւս եղբօրը տուաւ։

— Ո՛հ, մրմռացի,՝ վշտաբեկ վհատութեամբ, այս կինը քարէ
սիրտ ունի. ինչո՞ւ ինձ ոսկերիմ թշնամի ըրի զինքը։

— Քու վրայօք Էօսթաշին հարևանցի կերպով քանի մը խօսք
ըսելու փորձ ըրի, շարայարեց Գամիւզար. բայց խստիւ հրա-
մայեց ինձ լռել։ Այս է ահա իրերու վիճակը։ Դժուարութիւն-
ներն որքան աւելի ըլլան, այնքան աւելի վստահ եղիր, խնդրեմ,
անձնուիրութեանս և... ներէ՛ ըսելուս, նաև քու վրայ ունեցած
սիրոյս վրայ...։ Օ՛ն, արիութի՛ւն, մի՛ յուսահատիր։

Ցովսէփ բուռն արտմութիւնս կը տեսնէր։

Ուզեցի որ անմիջապէս ուղևորութեան պատրաստութիւնները
տեսնէ, և Նօտարիս տունը մարդ ղրկեցի խոստացուած քսանուհինգ
հազար ֆրանքը բերելու համար։

— Աստուա՛ծ տայ յաջողէիր ջանադրութիւններովդ, բարե-
սիրտ Ցովսէփս...։ Բայց եթէ ոչինչ ստանաս, Շալօնի մէջ
անզօրութեամբ ապրէ՛ այս գումարով...։ Երջանիկ եղի՛ր, և՝
եթէ կարելի է՝ մոռցի՛ր զիս։

Դարձեալ լացինք միասին։

Այս սուրհանդակի երիվարները հասան, և Գամիւզար մեկնե-
ցաւ։

Զինքը տանող ուղեկառքը Տէ Թուրնել փողոցին ծայրը չէր
հասած տակաւին երբ ոստիկանութեան վեց լրտեսներ սուրհան-
դակին Ճամբան արգիլեցին և կառքին մէջ նստող անձը քննելէն
ետք միայն թոյլ տուին որ իր Ճամբան շարունակէ։

Լրտեսներուն մին խումբէն զատուեցաւ և եկաւ դռնապանիս
մօտեցաւ, որ կառնադուռին ներքև կեցած էր դիտելու համար։

— Օրիորդ Տըլօրմին ծառանե՞րէն ես.

— Այո՛, պատասխանեց Պիւլման։

— Սիրելի է ինձ հաւտալ թէ կախուելու ամենևին յօժարու-
թիւն չունիս, այնպէս չէ՞, բարեկամ։

— Կախուելո՛ւ, և ի՛նչ պատճառաւ, սատանայի՛ն զաւակը։

— Հանգիստ եղի՛ր. պիտի չկախուիս, եթէ հոգ տանիս միշտ իմաց տալու երբոր տիրուհիդ ուզէ Բարիզէն մեկնիլ։ Մեզմէ մէկին միշտ այս տունին շրջակաները թափառիլը պիտի տեսնես։ Քսանուհինգ լուիձի. եթէ խօսիս, և չուանը, եթէ ամենեւին բան մը չըսես....։ Գիշեր բարի։

Մինչդեռ լրտեսը կ'երթար, Պիւլման գլուխը կը քերէր և կ'աշխատէր հասկնալու այս տարօրինակ արդարադատութեան միտքը։

Չգտնելով հանելուկին նշանակութիւնը, եկաւ պատմեց ինծի իր անհանգստութիւնները. բայց որովհետև Պիւլման դուռս պահելու պաշտօնին հետ նաև գինիի մառանիս կը հսկէր... և շատ անգամ մառանապետութեան պաշտօնին իբր վարձք գինի կը խմէր, կարծեցի թէ հիմակ ալ խմած է, և զինքը իր պաշտօնութեան հետ արտաքսեցի։

— Բայց ե՞թէ կախուիմ։

— Կախուէ՛, բարեկամ, և հանգիստ թո՛ղ զիս։

Այն օրուան բոլոր յուզումները հիւանդ ըրեր էին զիս։ Վհատութեան և յոյսին մէջ տեղի ունեցող կռիւէս սաստիկ յոգնած էի։

Երբ գիշեր եղաւ, տենդէ բռնուած պառկեցայ։

Ուղեղէս այլանդակ բանդագուշանք անցան։ Երկար ատեն սպասեցի որ քունս գայ, և երբ ծանր քուն մ'աչերս գոցեց, երազի մէջ տիկին Տը Սէնթ-Էվրըմոնը տեսայ որ սոսկալի նայուածներ կ'արձակէր ինծի։

Պատմեմ այս երազը.

Յանկարծ կոմուհին ձեռքս բռնեց, անկողինէս դուրս քաշեց, և զիս ստիպեց իր ետևէն երթալու անծանօթ տեղերէ անցնելով։

Պահ մ'ետք հետը ցից արահետէ մը վեր ելայ մագլցելով։

Հասանք մեծ պատի մ'առջև. այս պատին կատարը կրօնուհի մը նշմարեցի որ մետաքսեայ ելարան մը նետեց ինծի։

— Վեր ելի՛ր, ըսաւ կոմուհին։

Պարտաւորեցայ հնազանդիլ։

Երբ ելարանին մինչև կէսը հասայ, գլուխս վեր ըրի և տեսայ որ պատուհանին վերևը կեցողն ալ կրօնուհին չէր այլ կնքամայրս, որուն երեսն ևս քան զևս սոսկալի երևցաւ։ Տիկին Տը Սէնթ–Էվրըմօն ելարանը բռնող չուանը կտրեց։ Ընկայ այն բարձրութենէն ուր ելեր էի, և անդունդէ յանդունդ գլտորուեցայ լեռան մէն մի ժայռին արիւնաթաթաւ մսի կտոր մը ձգելով։

Վերջապէս այս աՀռելի անկումիս մէջ մէկը զիս կեցուց։ Վէրքերուս վրայ տաքրասամ թափուեցաւ, փափկաշարդ անկողնի մը վրայ երկնցայ, և կնքամայրիս ձայնէն տարբեր ձայն մը, մեղմովին յուզուած ձայն մը սիրաբույր խօսք ըսաւ ինձ։

— Փախի՜նք, փախի՜նք, ըսի Էմմանուէլին։

Երկար ժամանակ, ծաղկաւէտ դալարավայրներու վրայ շատ երկար ժամանակ միասին վազեցինք։ Ոտքս քարընդոտի մը հանդիպեցաւ, և երեսն 'ի վայր գետինն ընկայ։

Երբ ոտք ելայ, դիակի մը զարնուած ըլլալս նշմարեցի։

— Կորի՛ր, ըսաւ ինձ Տէպարօ, թո՛ղ որ Հայրս թաղեմ։

Սակայն դիակը կանգնեցաւ, իր պատանքը նետեց, և աՀա Մարկ Խնթերվալը ճանչցի, որ արագօրէն կը քշէր կը տանէր զիս։

Վազելու ժամանակ զիս տապալեց խորունկ լճի մը մէջ, ուր լողացի և ուր յուշկապարիկի մը պէս զուարթօրէն խաղացի։

Երկու նաւակներ զիս Հալածեցին. մէկին մէջ կը գտնուէր Պասօմբիէր, միւսին մէջն ալ կարմիր մարդ մը։*

Մարեշալն տանէս Հասաւ և ծռուեցաւ զիս Համբուրելու Համար։ Պասօմբիէրը քովս քաշեցի, ապա լողացինք և փոփոխակի ընկղմեցանք կարմիր մարդէն ազատուելու Համար, որ զիս Հալածելու կը յամառէր։

Պահ մ'ետք Պասօմբիէրը թողուցի, և ձեռքս երկնցուցի ուրիշ լողորդի մ'որ երևցաւ ինձ. . . . Բայց ճշմարիտ յուշկապարիկ

* Կարտինալները կարմիր պատմուճան Հագնելու սովորութիւն ունենալով, Մարիօն Տըլօրմ «կարմիր մարդ» ըսելով Հոս կարտինալ Ռիշըլիէօն կ'ակնարկէ։ Ծ. Թ.

մը նետուեցաւ մեր մէջ, և սիրտս ոսկեղէն երկայն ասեղ մը մխեց։

Փախեցայ՝ ետեւս՝ կոհակներուն մէջ արիւնալի գոյն մը ձգելով, և յուշկապարիկն ետեւէս եկաւ հեգնալի քրքիջներով։ Գաւօմբրէր, ապա կարմիր մարդը, ապա Խունթերմալ, ապա Էմմանուէլը, ապա դիակը յուշկապարիկին քրքիջներուն արձագանքը տուին։

Այս ամէն ուրուականները լճին վրայ սահեցան և ինծ հասնելու սպառնալիքը ըրին։

Վերջապէս հասայ լճեզրը։

Առջեւս կը գտնուէր վանքին բարձր պատերն և ատամանց կցուած մետաքսեայ ելարանը։

Արագօրէն վեր ելայ, յետին բազրոտը հասնելով նորէն անգութ կնքամօրս հետ գտնուեցայ դէմ առ դէմ։ Ոտքովը զիս հրեց, վերստին լիճը նետեց, և ուրուականները նորէն աղմկալի քրքիջներ արձակեցին։



## ԺԳ

Արթնցայ այս ահալի երազէն, կոկորդս կը հեւար, ճակատս քրտինքով ողողուած էր։

Բժիշկ մը, զոր Թերէզա կանչել տուած էր, կարծելով ուղեղային տենդի մ'ախտանշանները ճանչել, խիստ ազդու կերպով խնամ տարաւ ինձ հիւանդութիւնը իր սկիզբէն կտրելով։

Յաջողեցաւ։

Բայց ապաքինութիւնը կը պարտաւորէր բաւական երկար ատեն։

Տասնուհինգ օրէն ետք միայն կարելի եղաւ ինծի կոմսուհիին ընելու այցելութեանս վրայ խորհիլ։ Միտքս աւելորդապաշտ չէր ամենեւին։ Երազ մը չէր կարող այս ընթացքս արգիլելու, որ կրնար մէկ անգամով ապագայիս հանգստութիւնը ապահովել։

Այս պարագային մէջ պերճանքն ու պչրանքը շատ անտեղի եղած կ'ըլլային. ուստի անշուք յարդուզարդով և պատգարակով դուրս ելայ, և տիկին Տը Սէնթ–Էվրըմօնին դրան առջեն իջայ։

Յատկապէս կիրակի առտու մ'ընտրեր էի այցելութեանս համար, վասն զի գիտէի թէ կնքամայրս իր ծառաները ժամը տասէն մինչև տասնումէկ եկեղեցի կը ղրկէր, և այն ատեն գրեթէ մինակ կը մնար իր ապարանին մէջ։

Գիլման հաստատ կերպով ըսած էր ինծի թէ վաղեմի սովորութիւնները դեռ կային։

Իրաւ Գիլմանին յաջորդն եկեղեցի գացած էր։ Դռնապանը չզգուշացած էր. կրցայ ներս մտնել և դռնապանին օթեակը սպրդիլ թեթեւակի։ Պառաւ կին մը կը պահէր օթեակը՝ դռնապանին բացակայութեան ժամանակ. զիս չնշմարեց նէ։ Մեծ սանդուղէն վեր ելայ առանց մէկու մը հանդիպելու։ Փողերը մտնելով և նախասենեակներէն անցնելով հասայ այն դստիկոնն ուր էր կնքամօրս սովորաբար բնակած սենեակը։

Մինչև հոն քաջասրտութիւն ունեցեր էի։

Ամեն յիշատակներս միտքս հաւքելով, Յովսէփէն յայտնուած նորանոր մանր պարագաներով և այս տասնուհինգ օրուան տառապանացս ժամանակ ըրած խորհրդածութիւններովս համոզուած էի թէ կոմսուհիին այցելութիւն մ'ընելով միայն կրնայի շփոթէն ազատիլ և թէ ազատուած էի եթէ յաջողէի մեղմելու տիկին Տը Սէնթ–Էվրըմօնը, ուստի հրամայեցի որ վախս լռէ, անհնարին զարհուրանքս զսպեցի։

Մտածելով թէ կը պարտաւորէի միայնակ գտնուելու այն անձին հետ, որուն ճակատագրիս վրայ ազդեցութիւնն այնքան մեծ եղած էր, առաջին անգամ պատերազմին մէջ գտնուող զինուորին պէս ըրի. աչքս գոցեցի, ականջներս ցնցեցի և ըրի.

«Ցաւա՜լ» ։

Բայց երբ այս շինովի անկրկիւղութիւնը զիս կնքամայրիս տունը տարաւ, երբ վերստին տեսայ աղնուական բնակարանը, ուր ատենօք այնքան սրտառուչ և հիւրասիրական վեհանձնութեամբ ընդունուեր էի. երբ մօտեցայ այն դրան, որուն բացուիլը բաւ էր ինքզինքս գտնելու համար տիկին Տը Սէնթ-Էվրըմօնին առջև, այն կնկան առջև, որուն անձնուիրութեան տեղ ապերախտութեան, բարերարութեան դէմ թշնամանք ըրեր էի, երակներուս մէջէն սարսափահար սարսուռի մը վազելը զգացի։

Աներևոյթ եղաւ բոլոր յոյսս. ընթացքս անհեդեդ և ներումն անկարելի երևցան ինձ.

Պաղ քրտինք մը ճակտս թրջեց, սրունքս ծռուեցան, և ծանր բեռի մը պէս երկու ծունկի վրայ ինկայ անձկութեամբ լի հառաչ մ'արձակելով։

Գրեթէ իսկոյն կնքամօրս ձայնը լսեցի, որ սպասուհիի մը կ'ըսէր.

— Նայէ՛, դուրսը մա՛րդ կայ։

Սաստկապէս ելայ կանգնեցայ խոյս տալու համար. բայց դուռը բացուեցաւ. կոմսուհին նշմարեցի և նորէն ծունկի վրայ ինկայ՝ երեսս ձեռներուս մէջ, և տապարին հարուածին սպասող մահապարտի մը դիրքով, հարուած որ մարդերու արդարութեան յետին առարկութիւնն է։

Տիկին Տը Սէնթ-Էվրըմօն՝ իր սենեկին շեմին վրայ ծնրադրած կին մը տեսնելով, ելաւ աթոռէն որուն վրայ նստած էր, քովս եկաւ, երկու ձեռներս բռնելով երեսէս մեկուսեց, և երկար ատեն ինձ նայեցաւ առանց ճանչելու։

Վերջապէս նահանջեց ան, իբր թէ օձի մը վրայ կոխած ըլլար։

— Դո՛ւն, գոչեց, դո՛ւն։

Վայրկեան մը լռութեամբ անցաւ։ Շնչերակներուս շառաչ-զարկերը կը լսուէր։

Կոմսուհին իր սպասուհին դուրս հանեց, որ գնաց բնակարա-

նաց ներսեսին անհրեւոյթ եղաւ։ Երբ մինակ մնացինք, զիս վերցուց անմռունչ, ներս քաշեց, դուռը գոցեց, շարժումով Թիկնաթոռ մը ցոյց տուաւ որ իր Թիկնաթոռին դէմն էր, ապա ըսաւ ձայնով մը զոր կը ջանար մեղմելու։

— Բայց չեմ զարմանար, վասն զի կ'սպասէի քեզ, օրիորդ։

— Սպասմա՞յր իմ։

— Ո՛հ, նստած կեցիր.... այլ ծունկի վրայ մի՛ դար, և հետօ ամենքին մի՛ առնուր այն վշտալի մեծ հովերը որք կ'երենում քեզ թէ բոլորովին անօգուտ են։ Ամենօք կատակերգութեան գերասանուհի մ'ըլլալու համար գեղեցիկ տրամադրութիւններ ունէիր, և անշուշտ զանոնք կատարելագործելու միջոցը գտար, այնպէս չէ՞։

— Ցանո՛ւն Աստուծոյ, այդ ցուրտ հեղնութեամբ մի՛ ճզմէք զիս....։ Զղջումիս անկեղծութիւնը ուրանալը, հոգեւոյր զգացմանցս զեղումը սառնահարելն այնպիսի անգթութիւն մ'է որուն պատասխանատու կ'ըլլաք առաջի Աստուծոյ։

— Շատ աղէկ կը խօսիս, օրիորդ։ Դժբաղդաբար խօսքերդ լսելու համար անկեղծութեան յատկացնելու շատ պարապ ժամանակ չունիմ։ Խնդրեմ, պարզ ու կարճ կերպով խօսէ, այցելութեանդ նպատակը բացատրելով։

Ահաբեկ աչերս վեր ընելով տիկին Տը Մէնթ-Էվրըմօնին յարեցի։

Գունատ էր ան. իր շուրթերը սառնութիւն մ'ունէին որ Թագուն բարկութիւն մը կը պահէր։

— Տիկին, եկայ զինքս յայտնելու համար....։ Ձեզի դէմ յանցանքներս, ապերախտութիւնս, ձեր բարութիւններու փոխարէն մատուցածս կը խոստովանիմ....։ Կ'աղերսեմ ձեզի, մի՛ վանէք զիս։

— Քեզի վանե՞մ... անշուշտ ո՛չ։ Կարծեմ ըսի արդէն, օրիորդ, թէ կ'սպասէի քեզ։ Այո՛, Շամբանեէն նամակներ եկան ինծ երկու օրէն 'ի վեր։ Թէպէտ իմացար նամակ ընդունիլս, և եթէ չեմ սխալիր՝ հետաքրքիր ես անոնց պարունակութիւնը լսե-

լու . . . շատ բնական բան ։ Իմաց կը տրուի ինծի թէ քու կողմէ զրկուած միջնորդ մ'ընտանեացդ համար շատ պատուաւոր առաջարկութիւններ ընելու պաշտօն ունի ։ Կ'ըսուի թէ բոլորովին պատրաստ ես ծնողացդ տունը վերադառնալու և անոնց մաս տալու խիստ ազնուաբար ստացուած հարստութենէ մը ։ Կը շնորհաւորեմ քեզի այդ որոշումիդ համար , վասն զի սրտիդ լաւութիւնը կը հաստատուի անով ։ Բայց մ՛ըղք որ այս զուարթաբնակ մարդիկ ծաղրելի գաղափարներ ունին , և շատ բաներու մէջ . . . յետամնաց կ'երևան ։ Կը մերժեն անոնք , օրիորդ , ցաւելով կ'իմացնեմ քեզ անոնց մերժումը ։

— Ո՛չ , թո՛ղ միայն ընդունին զիս ։ Գոյքս աղքատաց պիտի բաշխեմ , հայրական բնակարանին նուաստ աղախինը պիտի ըլլամ ։

— Կ'ըսեն թէ . . . տե՛ս ինչ ողորմելի պատճառ . . . կ'ըսեն թէ ինչ ինչ գայթակղութիւններ գաւառին մէջ տարաձայնուեր են . կ'ըսեն թէ . . . և այս ըսուածն ալ յիրաւի արհամարհութեան արժանի է , կ'ըսեն թէ արդէն պարտաւորած են շատ ամչնալու ։ Իրենց խօսքին նայելով ներկայութիւնդ անոնց ամօթահարութիւնը պիտի սաստկացնէ և պիտի գրգռէ խօսքեր որք կ'ըսկսին մոռցուիլ ։

Ի նանիր ինքզինքս զսպելու կը ջանայի . անկարելի եղաւ ինծ ա՛լ տանիլ այս հանդարտօրէն նախատական և սաստկապէս արհամարհական կերպին ։

— Այսպէս ուրեմն , տիկին , ըսի անոր , ընտանեացս որոշումը կը հաւանի՞ք ։

— Ունիմ այդ տկարութիւնը , այո՛ , օրիորդ . և այս առատ պատասխանեցի մօրդ , յորդորելով զինքը հաստատ մնալու այն որոշումին մէջ զոր ընելու պարտաւորիլը յարմար դատեց ան ։

— Ասի խայտառակութի՛ւն է ; գոչեցի ոտք ելնելով և դէպ'ի կոմսուհին քայլ մ'առնելով ։

— Կ'ուզե՞ս , հարցուց ինծի , գիտնալ այն պատճառները որք այսպէս վարուիլս թելադրեցին ինծի . եթէ կ'ուզես , քու վարմունք

յօրջորջելու համար պահէ խայ–տա–ռա–կու–թի–ւն բառը, զոր գործածեցիր հիմա։ Զիջայ քեզի ընդունելու.... սակայն ընդունելէս չհետևէիր թէ ստիպուած եմ լսելու աղաղակներ, որք կրկնակի նախատական կը դառնան շուրթերէդ անցնելով։ Լրբութիւնները դէշ կերպով կը նկատուին այս տան մէջ, և սովորութիւն ունիմ ծառաներուս ձեռքով դուրս նետելու այն անձերը որք լրբութեամբ կը խօսին։

— Տիկի՛ն....։

— Է՛հ, Տէ՛ր Աստուած, աղատ ես, օրիորդ, ինձ մօտիկ չընելու և անմիջապէս հեռանալու։

Նորէն աթոռիս վրան ընկայ։

— Բացատրութիւն մ'ունենալը նախամեծար կ'ընարես....։ Հաս աղէկ....։ Ատի գլխս կ'ստիպէ յիշատակներուս սկիզբէն խօսելու։ Ծննդեանդ հետևեալ օրն մկրտութեան աւազանին վրայ բռնեցի քեզի։ Օժիտ մը ձգուեցաւ իզմէն որորանիդ մէջ....։ Ինչպէս կը տեսնես, կնքամայրի պարտուցս մէկ մասը կանխիկ կը կատարէի։ Երբ երիտասարդուհի մ'եղար, սրտիս դիմեցիր, և սիրտս քեզի ընդունեց։

— Իրաւ է, տիկին...։ ո՛հ, իրա՛ւ է, դոչեցի հեծկլտանքով. բարեսիրտ և վեհանձն եղաք. մայրի մը գիրկն աւելի կաթոգին սէր չէի կրնար գտնել։

Տիկին Տը Սէնթ–Էվրըմօն ցուրտ կերպով մը խօսքս ընդմիջելով, շարունակեց.

— Հոս զգայնութիւն ցոյց տալ չեմ ուզեր, օրիորդ....։ Բոլորովին անօգուտ է այն ճշմարիտ կամ կեղծ արտասուքը զոր կը թափես։ Հաղիւ վեց շաբաթէ 'ի վեր տունիս մէջ կը բնակէիր, և ահա ամենածանր թշնամանքով վարձատրեցիր բարեգործութիւններս։ Իզմէն ընդունուած մուրացիկ աղջիկ մը բռնութեամբ ընտանեացս մէջ մտնել ու հարստութիւնս և անունս յափշտակել կ'ուզէր....։ Լռէ՛։ Պատանութիւնդ չքմեղութեան պատճառ մը չէր ամենևին....։ Մարգրիտին բերնէն առնուած վկայութիւնները հասկցուցին ինձ թէ որքան նենգութիւն ունէիր։ Սակայն

աներկայթ խաղաղութեան ներքև սիրոյ համբոյրի մը. կը պահանջէր տաժանելին։ Կը պարտաւորէի մանրէն սկսելով քեզի երբ գայր Թանկելի փոխուած լսեցի։ Յաւտահաւ հայր մ'եկաւ բառ ինձ թէ իր զաւակը կորսուած էր... քեզմէ՛ն կորսուած էր։ Տէպարօ նախապահը վշտամահ մեռաւ, օրիորդ.... Հիմա կը հակընսամ խաղաղութեանց պատճառը. կը հասկնամ արհամարհութեան պատճառը։

— Թողութիւն շնորհէ՛, կնքամայր իմ, թողութի՛ւն։

— Նորէն կ'ըսեմ, թող արտասուքդ, և այդ գղջերգայի ձեռքէն եա կեցի՛ր։ Սիրտս մարած է. կը պարտաւորիմ ըսել թէ զիս անզգայ ընելու քիչ չնպաստեցիր դուն ալ։ Այս տունիս մէջ մեկ նետեց խռովութիւնը և պառակտումը։ Բարեկամ մը մեռած էր ինձ... երսու՛ն տարուան բարեկամ մը... և զինքը սա... քաշեցիր. չվախցաւ կողմդ բռնելու, և անմիջապէս մեր յարաբերութիւնը դադրեցուցի։ Այն ակումբներուն մէջ, ուր կը յաճախես, օրիորդ, կարելի է որ ինչ ինչ նենգալի ակնարկութիւններ փոփոխացին քեզ զիս Պ. Վիլարոզինի հետ կապող բարեկամութեան մասին։ Կը պարտաւորիս հասկնալ թէ այս մասին կարծիքներուդ կարևորութիւն չեմ տար....։ Իգմէն յարգուող անձերուն միայն իրենց այս մասին ախալիկը կ'իմացնեմ։

— Ո՛հ, անգութ էք, տիկին... անգո՛ւթ և չարասիրտ։

— Չարասի՛րտ... ներելի էր ինձ չարասիրտ ըլլալ այն անձանց դէմ որք կեանքս թունաւորեցին... քեզի դէմ որ ամենէն առաջ ինձ ճանչել տուիր վիշտը... բայց ես արդար եմ միայն....։ Կ'ըսես թէ կը զղջա՛ս. դժուար է հաւատալ։ Ամօթ տակը զայրոյթ կամ քմահաճութիւն կայ....։ Վերջապէս ենթադրեմ թէ ճշմարիտ է զիղջդ....։ Չհամձիս ըսելու ինձ թէ ուսկէ՞ կ'առնուս անպատիւ աղջկան մ'աշխարհիս աչքև վերականգնելը։ Ծնողք կրնա՞ն ընդունիլ իրենց մօտը այն գաղտնապարտութենէն որ յանցաւորը կը պատժէ։ Երբ կին մը կը կրէ այն արատը, զոր դու ընդունած ես, օրիորդ, այդ կինը ճակատը կ'արօղէ և սպառնալով կ'ապաշխարէ։ Տեղդ քոյրերուդ մէջն է.

հայրական տունը չկրնար պատսպարել քեզի ։ Վտանգն է պատսպարանդ . . . . Մուսքըլէնչըրին մէկ խցիկը միայն կրնայ բացուիլ քեզի համար . . . և կարծեմ թէ Պ. Տը Րիշըլիէօյին կարծիքն այս է ։

— Կարտինալին կարծիքը . . . ինչ ըսել կ'ուզէք, գոչեցի անձկով և զարհուրանքով բոլորովին մոլորած ։

— Մայրդ արդէն որոշած էր չընդունիլ առաջարկութիւններդ, երբ թեմին եպիսկոպոսն անոր իմաց տուաւ թէ Բարիզէն մեկնելդ արգիլելու համար միջոցներ 'ի գործ դրուած են ։ Եթէ պատահէր այս միջոցները դիւրանալ, խրատ կը տրուէր ընտանեացդ որ հակառակի Շալոնի մէջ առանձնապէս բնակելու նպատակներուդ ։ Եպիսկոպոսին կողմէն բանուած այսպիսի տարօրինակ ընթացքի մը պատճառն անշուշտ պաշտօնէին մէկ գաղտնի ծանուցումն է . . . ։ Կարտինալը, կ'ըսուի, փրկութեանդ շատ հոգ կը տանի՝ օրիորդ ։

— Ո՛ Աստուած իմ, Աստուած իմ, գոչեցի՝ յուսահատութեամբ ճակատս զարնելով ։

Այն ատեն ամեն բան կը հասկնայի ։

Միտքս եկան լրտեսներն որք Պիւլիանը մախցնել ուզեր էին ։ Յիշեցի նաև այցելութիւն մը զոր նոտարս հիւանդութեանս առաջին օրերն ինծի ըրած էր և որու միջոցին շփոթելով և թոթովելով լաւ մարդը յաջողած էր զօրութեամբ հասկցնելու ինծի թէ խորհրդաւոր հրաման մը զինքը կ'արգիլէր տունս ծախելու ։

Յայտնապէս Րիշըլիէօյին ձեռքը կ'առաջնորդէր այս պատահմանութեանց ։

Վշտին և անկարողութեան ներքև ճզմուած էի ։

— Անօգուտ է երկարել այս տեսութիւնը, շարունակեց կոմսուհին, ոտք ելնելով և անարգու կերպարանով մը դուռը ցուցնելով ։

Այս նոր նախատինքին վրայ արիւնս և բարկութիւնս երեսս ելաւ ։

— Ձէ, աղէկ, պիտի չերթամ տուրս ։ Քեզ ըսելու բան մը կը մնայ ինծի . . . ։ Զիս այսպէս վռնտելով անարժան գործ մը

ըրիր. յուսահատութեան փոխեցիր զովելի զգացումներ որք ինձ գէպ 'ի քեզ առաջնորդեր էին։ Կարելի է որ զիս արհամարհելու իրաւունք ունենաս . . . հոգս անգամ չէ, քանի որ քեզի ատելու իրաւունքը կը տաս ինձ . . . ։ Ո՛հ, կանչէ ծառաներդ, անոնց առջեւը պիտի խօսիմ . . . ։ Եկեր էի՝ յանդգնօրէն այլ զգուշալով զթութիւնդ հայցելու համար, և բի՛ր արհամարհանք թափեցիր վրաս ։ Անպաշտպան էի ոտքիդ առջև, և հանձեցար վատօրէն նախատել զիս . . . ։ Այո՛, տիկին, այդ ընթացք վատ է, կը լսե՞ս, վատ է, և այդ վատութենէն ես կ'ամչնայի, ես որ ազնուական տիկին մը չեմ և զինանշան չունիմ ամենևին։

Յանդգնութենէս ափ 'ի բերան մնաց շուարելով, և առանց ժամանակ տալու իրեն որ խօսք մ'արտաբերէ, շարունակեցի.

— Եղբայրս Էօսթաշ՝ հոս է, տիկին . . . պիտի տեսնեմ զինքը եթէ նաև դուն չուզես, եթէ նաև աշխարհ համայն չուզէ տեսնելը։

— Ինչո՞ւ չէ, կրկնեց կոմսուհին, քիչ մ'իր զարմացումէն սթափելով, երբէք, օրիորդ, քեզի ընտանեացդ անդամներէն զատելու կամք կամ իշխանութիւն չունեցայ։ Մօրդ որոշումն առանց իմ կամքի եղաւ։ Կը հաւնիմ այս որոշումը . . . վասն զի այսպէս կը պահանջեն անձնական համոզումներս . . . և ասկից 'ի զատ քեզ ծառայելու և հաճելի ըլլալու համար կարօտեալներէն պարկութեան ենթարկուելու շատ քիչ յօժարութիւն ունիմ։ Կ'երևակայեմ թէ ահա խօսքի հանդարտ և բարեձև դարձուածներ են ասոնք . . . մը զիս պիտի չամբաստանես ըսելով թէ աստիճանիս և տոհմիս անարժան խօսքեր կը խօսիմ։ Շնորհակալ եմ կոշտաբար զիս կարգի հրաւիրելուդ համար . . . ։ Երբ դաս մը օգտակար է, պէտք է ոչ այնքան նկատել որմէ առնելը որքան այն օգուտը որ կրնայ քաղուիլ այն դասէն։

— Լաւ, տիկին . . . հարկ չկայ այդ ցուրտ հեգնութեանդ։ Սիրտդ մարած է, ըսիր։ Լա՛ւ, բայց իմ սիրտս մարած չէ, կոմսուհի . . . և փառք կը համարիմ ինձ մեռած սիրտ չունենալս . . . և՝ գիտե՞ս որ՝ քեզի պէս արժանապատիւ և առաքինի մարմարեայ արձանէ մը քիչ մ'աւելի կը յարգեմ ինքզինքս։

— Լի՛րք։

— Տէ՛ր, տիկի՛ն, աՀ՛, գրգռէ՛ք բարկութիւնդ, սանձը քակէ՛. . . ։ Զանանկ՛ս որ արիւնն երակներուս մէջ եռեւեփ կ'ելնէ . . . ։ Երջանիկ կ'ըլլայի գայթակղութենէ մը, Հազա՛ր Հոգիի առջև կ'ուզէի բարձրաձայն ըսել թէ ինչ կարծիք ունիմ քու վրայ։

Դէպ 'ի կոմսուհին վազեր էի, և նրա թևը կը ցնցէի ուժգնակի։ Ա՛լ ինքզինքիս տէրը չէի։

— Տէ՛ր Աստուած, զա՛րկ ինձ, օրիորդ. ինքզինքս չպիտի պաշտպանեմ, կը Հաւատամ քեզ թէ չպիտի պաշտպանեմ եթէ ոչ ուրիշ բանի գէթ այս Թանկագին կէտին ալ սիրելի պատմութեանդ վրայ բարդելու Համար։

Պահ մը թուեցաւ ինձ թէ խև կը դառնամ այս մշտնջենական Հեգնութեան և նայուածքին, ժպիտին ու ձայնին այս անընդՀատ նախատանաց պատճառաւ։

— Եղբա՛յրդ կ'ուզես, շարայարեց կոմսուհին. իրաք վերնայարկը աղքատ սենեկի մը մէջ կը բնակի։ Շատ արժանիք ունեցող, բանիբուն, խոՀեմ, պատւոյ կէտին շատ դիւրազգրգիռ երիտասարդ մ'է . . . ։ Սատանիկ պիտի ողջուի, օրիորդ, զինքը տեսնելու փոյթէք։

Տիկին Տը Սէնթ-Էվրըմոն մօտակայ սենեկի մը մէջ անցած սպասուՀին կանչեց։

— Էօսթաշին սենեակն ելի՛ր, ըսաւ, և աղաչէ՛ որ վար իջնէ։

Վայրկենէ մ'ետք գեղեցիկ երիտասարդ մը ներս մտաւ. պաՀապան զօրաց յատուկ կապոյտ ներքնազգեստ Հագած էր ան։

Վրան վազեցի բոլորովին սարսռելով և թևերուս մէջն առի զինքը՝ գոչելով.

— Եղբա՛յր իմ, եղբա՛յր իմ, տա՛ր զիս ասկից . . . մեռնիլ կը զգամ. . . ։ Ո՛Հ, դուն պիտի չվանես զիս, դուն, Էօսթաշս . . . դո՛ւն զոր այնքան կը սիրէի . . . ։ Այո՛, Մարիոնն եմ. . . ես քոյրս եմ, այո՛ . . . ես որ մանկութիւնդ խնամեցի . . . Էօսթաշ, աչերդ մի՛ դարձներ . . . չկրցան զիս ատել սորվեցնել քեզ։

Ու ծունկի վրայ կը Հեծկլտայի սիրտ յօշելու չափ։

Ժօսլթաշ վերցուց գլխս։

Տեսայ որ յուզուած էր ան. բայց կոմսուհիին մէկ նայուածքն անոր երեսը փոխեց։ Արտօսր մը կը փողփողէր իր բիբին եզրին վրայ. յանկարծ չորցաւ այս արտօսրը։

— Ժօսլթա՛շ . . . բարեկամս, եղբա՛յրս . . . գթութի՛ւն։

— Ո՛վ ես, պատասխանեց ինձ, ամենևին բան մը չեմ հասկնար խօսքերէդ։

— Լռէ՛, լռէ՛։

— Այո՛, իրաւ է . . . քոյր մ'ունէի որ բաւ ծանուցք կը կրէր. քոյր մը զոր կը սիրէի . . . ։ Մեռաւ ան։

— Չէ՛, չէ՛. ես եմ, կ'ըսեմ քեզ։

— Մեռաւ մեր յիշատակութեան մէջ . . . ։ Եթէ դուն այն քոյրն ես զոր մայրս անիծեց, չեմ ուզեր ճանչել քեզի . . . չեմ ճանչեր քեզի։

Քաշուեցաւ ազատեցաւ այն ճղաձգային փարումէս որով կը ջանայի կեցնելու զինքը։ Դէպ 'ի կոմսուհին դարձաւ. իր գիւղաշունչ հեգնութեան ծիծաղը ունէր միշտ։

Աչերուս առջևէն ամպ մ'անցաւ. սրտիս շարժումը կանգ առաւ. գետինն ընկնելու մօտ էի. բայց Ժօսլթաշ անկլածս արգիլեց և թիկնաթոռի մը վրայ դրաւ գլխս։ Բոլորովին նուաղեր էի։

Տիկին Տը Սէնթ-Էվրըմօն եղբայրս տանելու պատեհ առիթ մը սեպեց այս նուաղումս։

Երբ սթափեցայ և ուշաբերեցայ, տեսայ որ սպասուհիին խնամոցը ձգուեր էի։

Երերալով, վհատելով ոտք ելայ. սիրտս յօշուած և հոգիս դառնութեամբ ողողուած էր. ես հրեցի թևը զոր սպասուհին կ'երկնցնէր զիս բռնելու համար, և մեկնեցայ ազնուականի տունէն ուր ներում գտնելու եկեր էի և ուր լոկ նախատինք գտեր էի։

Պատգարակս փողոցը կըսպասէր։

— Լուվրի պալատը, գոչեցի զիս տանողներուն։

Տասը վայրկեան ետք կարտինալին բնակարանին մէջն էի։ Իր պահապանները կը ճանչէին զիս. հրաման տրուած էր որ ինծ թող տրուի անարգել անցնելու։

Մարդ մը գլուխը վեր ըրաւ միջնորմին խորհրդաւոր դրան մե-կուսելով։ համած շրթներին վրայ. բայց գլուխը վեր ընողը Բի-շլիէօն չէր, այլ իր քարտուղարը։

— Ո՞ւր է տէրը, ըսի Սէն-Սօրլէնին։

— Ի՞նչ. դո՞ւն ես, Մարիօն։

— Պատասխանէ՛, ո՞ւր է ան... կ՚ուզեմ հիմակ իսկ խօսիլ հետը։

— Անկարելի է։ Կարտինալն իր Գլէօրիի ամառանոցը գնաց ....։ Բոլորովին յուսահատ ես, սիրելի օրիորդ... ուրեմն գի-տե՞ս թէ ինչեր կ՚անցնին... կ՚ուզէին նորէն Բարձրութիւնը մեռցնել... կատարելապէ՛ս կանոնաւոր դաւադրութիւն մը։ Ութ ազնուականներ՝ Կասթօնը իրենց առաջնորդ ունենալով՝ Գլէօրի պիտի երթային որսի զբօսանք ընելու պատրուակով, այլ իրապէս դաշոյն մխելու համար։ Ճալէ, հանդերձարանին մեծ տեսուչն այս դէպքին մէջ վտանգուած է։

Սէն-Սօրլէնին մտիկ կ՚ընէի գրեթէ առանց հասկնալու ըսած-ները։

— Գլէօրի, մտմտացի, իր ամառանոցը... ո՞ւր է ամառա-նոցը։

— Ֆօնթէնպլօյի կողմը ....։ Բայց ո՛րքան գունատ ես, Մա-րիօն։ Մտքէս չէր անցներ թէ այդքան սաստիկ համակրութիւն ունիս կարտինալին վրայ։ Այս գիշեր պիտի գայ... հանգիստ եղիր... սպաննութիւնը արգիլելու համար ամեն միջոցներն ՚ի գործ դրուած են։

— Աւելի՛ գէշ, գոչեցի։

— Լռէ՛ ....։ Խենդ ես... երեսին նայելով կը սխալիմ այցելութեանդ պատճառին նկատմամբ։

— Րիշլիէօ երկդիմութեան հրէշ մ՚է. եկայ իր երեսին ըսե-լու ասի։

— Վա՛յ ինծի... բայց չլսե՞ս, սիրելիդ իմ. պատերը մեկի կը դիտեն գաղտնի։ Շատ անհանգիստ եմ խոստովանութիւններդ լսելովս ....։ Կ՚ուզե՞ս շրջան մ՚առնուլ Արքայական հրապարա-կին վրայ։

— Չէ՛, պարոն, չէ՛... պիտի պատասխանեմ քանի որ պիտի գայ։

— Աստուա՜ծ վկայ, Մարիօն, խելքդ գլուխդ չէ.... Եկո՛ւր, ցած ձայնով խօսինք. և՝ եթէ դուն քեզի համար վախ չունիս ամենևին, գէթ խորհէ՛ որ կրնաս զիս վտանգել։ Ի՞նչ, երկար կու գի ընելու կարտինալին հետ... այսօր... երբ ան մահահրաւէր թակարդէ մը կ'ազատի, և երբ միայն մէկ փափաք, միայն մէկ խորհուրդ ունի, այսինքն դաւադրութեան ամեն կողմը քննել և գտնել անոր ծակերը որոնցմէ մեղսակից մը կրնայ փախչիլ։ Ո՞ւր է քու սովորական ճարտարամտութիւնդ. Նորին Բարձրութիւնը քեզի ուղղակի Ապաշխարուհիներու վանքը կամ Պասթիյլ կը ղրկէ, ենթադրելով անգամ թէ հազար անգամ իրաւունք ունենաս յանդիմանութեանցդ մէջ։ Խօսք հասկցի՛ր, եկո՛ւր ուրիշ տեղ վիճինք այդ բանին վրայ, և նուազ վտանգաւոր տեղ մը ընտրենք.... Կառքդ վարն է։

— Ո՛չ, ըսի։

— Ուրեմն այդ հասարակ կնիկի համառութով և հեռացի՛ր եկար։ Խելքդ գլուխդ չէ, յայտնի բան է.... Պիտի կրնամ արգիլել քեզի տխմարութիւն մ'ընելէ։

Զիս քշեց տարաւ առանց մեծ դժուարութեան։

Սատանիկ զայրոյթս հակառակ անոր պատճառաբանութեանց ճշդութիւնը կը զգայի, և կը սկսէի հասկնալ թէ ինծի համար շատ բարեբաղդութիւն մ'էր կարտինալին չհանդիպած ըլլալս։

Պատգարակիս մէջ քովս նստաւ Սէն-Մօրլէն։ Լուվրէն մինչև Տէ Թուրնել փողոցն երթալս լալով և հեծկլտալով պատմեցի անոր ամեն խորհուրդներս։

Երբ տունս հասայ, տակաւին դառնութեամբ կը լայի։

Երկար ատեն անբարբառ կեցաւ Սէն-Մօրլէն՝ թողլով որ անցնի այս վիշտը, և զիս քաջ ճանչելուն շնորհիւ գիտնալով թէ այս պարագային մէջ ինչ թելեր պէտք էր թնդացնել։

— Մարիօ՛ն, ըսաւ, կը ներես ինծի որ անկեղծութեամբ խօսիմ... լա՛ւ, այս ամեն բաները խելքի մաքի դէմ են։ Նենգութենէն 'ի զատ ինչ կը յուսայիր երբէք կարտինալէն։ Անոր

ընտանութիւնը ճշդապէս չնկարագրեցի՞ քեզ։ Եւ արդարեւ արժանապատիւ տէրս կը կարծես այնպէս ինչպէս որ եղած է միշտ, այսինքն հաստատուն իր նենգալի եւ խարերայ բնութեան. կը սրամտիս, բանութենէն խրատ կ'առնես, եւ կը վազես առ ոչինչ համարելու մարդ մ'որ մէկ շունչով կրնայ չիք ընել քեզի . . . ։ Խենդութիւն է սա, խեղճ Մարիոն, պարզապէս խենդութիւն է . . . ։ Անկից 'ի վեր ունէ՞ս տուր այդ գլխուդ գեղեցիկ խորհուրդները։ Կ'ուզէի ճանչել այն ջերմեռանդ անձը որուն մեղքերդ խոստովանեցար, եւ միայն գրաւ այդ խել մը ծաղրելի նախապաշարմունքները եւ այլանդակ որոշումները։ Արո՞ղը տանէր զիս, եթէ այդ անձը յիմարանոցը չղրկէի ցկեանս հո՛ն մնալու պայմանաւ . . . ։ Ուրիշ բան է, եթէ՝ առանց ուրիշին օգնութեան եւ միայն խելքդ քեզ փչեց այդ բանը. սա ալ շատ կարելի բան է . . . ։ Քիմածին հաճոյքը ամեն տեսակներն աղւոր կնկան մ'ուղեղին մէջ կը դառնուին։

Պատասխան չտուի քարտուղարին։

Բայց նշմարեց այս խօսքերուն ազդեցութիւնը, վասն զի մի եւ նոյն թեթեւութեան ձեւով մը կրկնեց.

— Զղջամ, եւ ինչո՞ւ համար, եթէ կը հաճիս, Մարիոն։ Իրաւ կ'ըսեմ թէ անհասատալի առասպել մը կը դառնայ այդ բանը։ Տէ՛, ըսէ նայիմ, ինչո՞ւ համար կը զղջաս, վասն զի գեղեցիկ ես. վասն զի ուրիշ կանանց նախանձը կը շարժես, որոնց մէջն է նաեւ Տը Սէնթ—Էվրըմօն դքսուհին, որ Եգիպտոսի հին մամիայի եւ հեռաքրքրական հնութեան վկայակը կը մնայ։ Վայրկեան մը փոխ առէր այդ կնկան սեւ աչերդ, եւ այդ երկնային մազերդ, եւ այդ այտերուդ վարդերը, եւ ժպիտիդ հրապոյրը, եւ այդ սալիտակ ձեռքը, եւ այդ քնքուշ ոտներդ, եւ այդ ոլիմպիական հասակդ, եւ ահա պիտի տեսնես որ անվերջանալի ներբողմնութիւն ցոյց պիտի տայ ան . . . ։ Է՛հ, սիրելիդ իմ, եթէ ամեն մարդկային տկարութեանց հաշիւը բռնես, շատ գործ պիտի ունենաս, եւ դարձեալ վիշտերուդ ծայրը չե՛ս հասած . . . ։ Խաչոր հեռաքրքրական է պառաւութիւնը, եւ խնդուկս կը բե-

տեսիս՝ պաշտօնեայն պէտք պատժես իր ծաղրելի պահանջումներուն համար, իր մօրուքին առջև մեր ամենէն շքեղ և փառաւոր ազնուականաց սիրանուէր մեծարանքը ընդունելով։ Պէտք չհամարձակի քեզի հալածելու, վասն զի այսպէս դուն ալ քու արքունիքդ, պալատականներդ ունեցած պիտի ըլլաս, և քեզ ծառայող բոլոր ասպետներդ պատրաստ պիտի ըլլան անոր դէմ վազելու եթէ մոռնայ թէ կրնաս իր հետ իբր իշխանութիւն ընդ իշխանութեան վարուիլ։

— Այո՛, գոչեցի, վրէժս լուծելու միակ միջոցն ատ է։

— Վաղուանէն, այսօրուանէն իսկ, Մարիոն, ծայրայեղ կեանք մը վարել կ՚սկսէի, եթէ տեղդ ըլլայի։ Հարստութիւնս քուկդ է. իբր քուդ ինչ կ՚ուզես ըրէ։ Միայն թէ կարտինալին պատճառաւ կրցածիս չափ պիտի պահուիմ պալատականներուդ խումբին մէջ տեղը... շատ երջանիկ ըլլալով եթէ թագուհիին երբեմնակի զիջանի անոնց մէջ զիս փնտռելու և ինծ ժպիտ մ՚ուղղելու։

Սէն-Մորլէն ծունկիս առջև ծռած կ՚ըսէր այս խօսքերը։

— Ա՛խ, բարեկամս ինչո՞ւ այդպիսի գաղափարներու վերածես զիս։ Կը կարծես թէ նորէն երջանիկ պիտի ընես զիս։

— Այո՛, Մարիոն... երանութիւնն եթէ սիրոյ մէջ չէ բոլորովին, վրիժառութեան մէջն է ամբողջապէս... և պատժուողը միայն կարտինալը պիտի չըլլայ։

— Իրա՛ւ ըսիր, բարեկամ, իրա՛ւ ըսիր։

— Մի՛ ներեր ընաւ այն անառական պչրուհիին, որ յանդգնեցաւ հոս իսկ գալու, աչքունքով խաղալու և քեզ ընելու այն ամենածանր նախատինքը, որմէ կրնայ տրամջալ զգայուն կին մը։

— Նինոն Տը Լանգլօ.... : Թո՛ղ սարսափի։

— Իր բոլոր սիրողները գրաւէ՛, փառակարգիդ (char) լծէ զանոնք։

— Բոլո՛րն ալ։

— Հապա մինչև Տը Սէնթ-Էվրըմոն, հապա այդ գրեթէ վաթսունամեայ սիբ՚ղլան... որ կարծեց յծէ մեղայի բերաւ քեզի և

վանքին դատապարտեց, պէ՛տք է որ փառաւորուիմ, պաշտուիմ, տեսնեմ, ամենուն բերնէն խելացութեանս և գեղեցկութեանս գովեստը լսեմ. պէտք է որ յաջողութիւններէս շփոթի շլմորի. պէտք է որ սատանիկ բարկանայ քեզի համար եղած պատիւներէն, կատղի՛ և սառկի՛ զայրոյթէն։

Թերեզան կանչեցի։

— Ցարդուզարդս, պաճուճանքնե՛րս, ծաղիկնե՛րս... ըսէ որ չքեղ ճաշ մը պատրաստուի. Արքայական հրապարակին վրայ բարեկամներ պիտի գտնեմ... պիտի հրաւիրեմ, այո՛, բոլո՛րն ալ պիտի հրաւիրեմ...։ Օ՜ն, Սէն-Մօրիէն, հրաման տուր որ տունս բերուին Էբբըրնէյի շիշերը. կ՚ուզեմ այդ փրփրուն և ուրախառիթ գինիին համը առնուլ...։ Այսուհետև բոլոր օրերս սնոտիամոլութեանց օրեր պիտի ըլլան...։ Ա՛հ, կամուհի՛, կոմսուհի՛, կանգնի՛ր հակառակ, մօրս կամքին հակառակ, եղբօրս կամքին հակառակ գեղեցիկ պիտի ըլլամ, յաղթող պիտի ըլլամ, և պիտի ըլլամ նաև...։ Չէ, երջանիկ պիտի չըլլամ։

Սիրողական արտօսր մ՚ընկաւ աչքէս։



# ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ



## Ա.

Այն ժամանակ Փարիզ Թէոփրաստ Րընօտօ անունով բժիշկ մը ունէր որ միւս բժիշկներուն և դեղավաճառներուն յուսահատութիւն կը տար։ Իր դրութեամբը կրնայիր անկէլ արեւելեան կակժիրակը (օրինեմէքի), խաւարծիլը (րէվէնտ), ամէն հնարաւոր դեղերը և ոչծացուցչելիքներն անգամ, որ հրաշալի և բոլորովին նոր գիւտ էր։

Տօղթօրը նշմարած էր թէ բարոյականը ֆիզիքականին վրայ ազդեցութիւն ունի։

Համոզուած էր թէ ամենէն ծանր հիւանդութիւնը կը պարտաւորէր ընկճիլ մտքի զուարթութենէն, և թէ հոգւոյն բարեկեցութիւնը մարմնոյն բարեկեցութիւնը կը բերէր շուտով։

Այս սկիզբներն իր առողջարար դրութեան հիմն եղան։ Այս դրութիւնը նախ գործադրելու համար սկսաւ ամէն կողմէ զուարճալի լուրերը, զայթակղելի մանր վէպերը, ոմանց հանճարաբանութիւնները և ոմանց միամտութիւնները ժողովել։ Ամեն առտու առջի օրուան դէպքերու պէտք ժամանակագրութիւն մ'ունէր, զոր ինք կը զարդարէր, կը կարգադրէր, կ'ընդարձակէր և իր հիւանդներուն կը պատմէր անոնց երակը քննելով և լեզուն դուրս հանել տալով հանդերձ։

Թէոփրաստ կծու և չարամիտ էր. ամենէն պարզ բաներուն այլանդակ և ծիծաղաշարժ դարձուած մը կը տար։ Իր հիւանդներն անոր խօսքերը լսելով իրենց ցաւերը կը մոռնային։

Քահքահով մը կ՚առողջէր հիւանդները։

Այս դարմանն անբաւ հռչակ մ՚առաւ։

Ցօղթօրն իր արհեստակիցներուն բոլոր յաճախորդները գրաւեց, և ալ անկարելի եղաւ իրեն ամեն հիւանդներուն հասնիլ։ Բայց որովհետև հնարագիւտ հանճար ունէր, ամեն մարդ գոհ ընելու և յոգնութիւն տուող երթևեկութիւններէ ինքզինքը ազատելու միջոցը գտաւ։ Հիւանդներն իր խուցին մէջէն դարմանեց, և հիւանդները կ՚առողջանային միշտ։

Արդ Թէոփրաստ յետևեալ կերպով տրամաբանած էր.

«— Այս մարդիկ խնդալէ կը ճայթին, երբ իրենց հետը կը խօսիմ...։ Թղթակցութեամբ չեմ կրնար ճայթելու չափ խնդացընել զանոնք»։

Եւ ահա ասոր վրայ մեր մարդը սկսաւ ղրկել իր մանր պատմութիւնները և պահարանի մէջ դնելով իր յաճախորդներուն տուները ղրկել։

Կարդացուած դարմանը խօսուած դարմանին արդիւնքը կ՚ունենար։

Իրաւի հրաշք մ՚էր այս բանը։

Երբ հետաքրքրական էին Թէոփրաստի պատմութիւնները, հինգ կամ վեց օր տևել կը տար անոնց, այսինքն ամենը մէկ չէր պատմեր և հիւանդին հետաքրքրութիւնը կը գրգռէր։

Հիւանդները պատմութեան շարունակութիւնը չճանչցած մեռնելէ կըզգուշանային։

Միւս բժիշկներն ուզեցին իրենց արհեստակցին օրինակին հետևիլ. բայց անոր խելքը չունէին, հիւանդները մռիկ կ՚ընէին, կը յօրանջէին և կը մեռնէին։

Ռընօտօ գրելէ ձանձրացաւ, ուստի տպեց իր պատմութիւնները։

Տպումէն հետևեցաւ արդիւն մը զոր անկարելի է նկարագրել։

Տենդ չունեցողներն անգամ դեղը առնալ կ՚ուզէին։ Առատ առթերնալով կ՚ընդունէին իրենց պզտի թերթը որ կսկծալի կատակներով, ազդու չարամտութիւններով և աղուոր գայթակղութիւններով լի էր։ Կարդալով կը խնդային, քրքիջներ կ՚արձակէին, և մինչև գիշեր ուղիղ դատողութիւն կը ստանային։

Բոլոր Բարիզ կարծես հմայապէս աղէկ կ'երթար։

Շատ վեհերոտ անձեր կը կարծէին թէ պէտք էր անմիջական միջոցներ ձեռք առնուլ մարդկային սեռի աճումին ընդդիմութիւն ընելու համար։ Թէոփրաստին գլուխին շնորհիւ մահերը կը նուազէին. անհրաժեշտ է, կ'ըսէին այն անձերը, այս նուազումին համեմատութեամբ ծնունդներու թիւը նուազել, որպէս զի Փրանսայի բնակիչները չափէն աւելի չշատնան։

Սակայն հարկ եղաւ այս ծայրայեղ միջոցին դիմելու։

Բժշկին թերթն այս աշխարհի լաւագոյն բաներուն վիճակը ունեցաւ. ուրիշին մասնակցութեամբն եւ խառնուրդովը խանգարուեցաւ այն։

Թէոփրաստ չկրցաւ դիմադրել յաջողութենէ հեռացող գլխուն. փառասիրութիւնն անոր ուղեղէն սկսաւ երթեւեկել։ Շատ մարդիկ, որք անոր կծու խանդը չունէին ամենեւին, յօդուածներ ղրկեցին եւ սակ վճարեցին անոր որպէս զի տպուին։ Թէոփրաստ իր թերթը ընդարձակեց, արքունեաց շաղակրատութիւնները ընդունեցաւ, եւ շատ պատիւ սեպեց իրեն ընդունիլ քանի մը յօդուածներ զոր Լուի ԺԴ ինքն անձամբ շարադրելով զիջաւ ղրկելու անոր։

Այն օրէն սկսելով ձանձրոյթը սպրդեցաւ թերթին մէջ։

Քաղաքականութիւնը պատասխանատուութիւնը տապալեց, չարակրութիւնը հանճարամտութեան յաջորդեց. հիւանդները կը յօրանջէին, այլ չէին առողջանար, եւ բացարձակապէս կը մնէին ինչպէս գտուէին առաջ։

Սակայն հիմա բժիշկներն եւ դեղավաճառներն աւելի աղէկ կ'երթային։

Թէոփրաստին լրագիրը Պօլէն Տը Գրանս անուանեցաւ, ամեն համեստութիւն մոռցաւ, կարօտինալը եւ ործացուցիչ գինին գովելու աստիճան նուաստացաւ։

Կը հասնիմ կենացս մէկ կերպարանին որուն նկարագրութիւնը շատ դժուարին է։ Գրիչս կանգ կ'առնու, եւ կը վախնամ թէ յանձնասիրութեան եւ թէ ընթերցողին փափկութեան համար։ Հա

յանցանքներս մեղմելու ալ քաջասրտութիւն չեմ զգար․ բայց նաև չեմ ուզեր ոչ ծածկել զանոնք և ոչ ալ ստախօսութեան դիմել ։

Քանի որ խոստովանանքս կը գրեմ, անթերի պիտի ըլլայ այն ։

Արդ եկաւ առիթն ուրիշին թողլու որ իմ տեղս խօսի այս խոստովանութեան գրքիս քանի մ՚երեսներուն մէջ, և ես լռելու հրաման կ՚ուզեմ ։

Րընօտոյին թերթը Կազէթ Տը Ֆրանս փառաւոր անունը կրելէ առաջ Րէվէյլ-Մաթէն (Զարթուցիչ-ժամացոյց) կ՚անուանէր ։

Ուստի Րէվէյլ-Մաթէնը պիտի տայ արդ բազմաթիւ մանր պարագաներ, որոնց ճշդութիւնը խոստովանելու կը պարտաւորիմ, բա՛րբէ ։

Մեռնելէս ետք այս յիշատակութիւններս տպել ուզող գրավաճառին այժմէն հրաման կը տամ պատռելու այլաբանութեան վարագոյրը, որով լրագրապետը խոհեմութեամբ կը ծածկէր իր յօդուածները, նաև ամբողջապէս տառագրելու այն անունները որք բնագրին մէջ չինծու կերպով կամ սկզբնատառերով նշանակուած են ։

Բարիզ, սեպտեմբեր 19

«Մե՛ծ լուր ։ Խարիթեանց քոյրերուն անդրանիկը դիտաւորութիւն ունի, ըսեր էինք, դառնան երթալու և ապաշխարելու․ բայց չգնա՛ց ։

Օրիորդ Տըլօրմ երէկ իրիկուն Արքայական հրապարակին վրայ շքեղաբար ժուռ կը դար ։

Երեսուն կամ քառասուն չափ ոսկեթել թիթեռներ անոր հրապոյրներուն բոլորտիքը կը թևարկէին ։

Լռութի՛ւն, և զգուշանանք որ կարտինալը չլսէ ։

Բանահիւս մը կայ որ յարձակումով տիրելու կը պատրաստուի ։

Տիրե՞ց․ չտիրե՞ց․․․ գացէք որ տեսնէք ։

Գեղուհին՝ երբ մութը կը տիրէ՝ ժուռ կը գայ շքեղ կառքով մ՚որուն վեցը ճերմակ ձի լծուած է, և որուն բոլորտիքը քսան ջահակիր և ձիաւոր սպասաւորներ կան ։

Այս կառքին Սէն-Թոմա-Տիւ-Լուվրը փողոցէն անցնիլը տեսանք ։

Ամէն մարդ պատուհանը կ՚ելնէր ։

Տը Սէնթ-Էվրըմօն կոմսուհին ևս պատուհանն ելաւ, և օրիորդ Տըլօրմ իր կնքամայրը բարևեց արհամարհական և պաշտպանական պզտի կերպով մը ։

Ազնուական կինը կատղած էր ։

— Իրաւո՛ւնք ունէր կատղելու ։

Բայց ո՞վ վճարեց կառքին ստակը ։

Պ. Ցէմարէ Տը Սէն-Սօրլէնին հօզաքարձուն կը պնդէ թէ իր տէրը չէ վճարողը ։

Աւելի աղէկ չէ՞ր ըլլար որ պատասխանելու համար հարցուելու սպասէր . . . ։

Կան ծառաներ որք անըմբռնելի կերպով անճարա՛կ են ։»

23 Սեպտեմբեր

«Կա՛մ քանսատեղծը չափրեց, և կամ շատ շուտ զրկուեցաւ տիրապետութենէն ։ Տէ Թուրնել փողոցին. մէջ շատ ուշ Տը Մարսիյլեաք անտիական իշխանը տեսնող կայ . չարախօսները կը պնդեն թէ օրիորդ Տը Լանկլօյին տունէն չէր ելներ ։»

8 Հոկտեմբեր

«Ա՛խ, այս անգամ եռանդն անզո՛ւսպ է . մեր ականջները կը գոնչե՛ն . . . ։ Ի՞նչ կ՚ըսէք Մարիօնին վրայ ։ Մարիօնը տեսա՞ք ։ Մարիօնին տունը կ՚ընդունուի՞ք ։

Անկարելի է քայլ մ՚առնուլ առանց հարցումներ լսելու ։

Իւրաքանչիւր ոք Մարիօնին վրայ կը խօսի, բոլոր Բարիզ Մարիօնին տունը կ՚երթայ ։

— Ինծ նայէ՛ . . . ։

— Ի՞նչ կայ ։

— Գիտե՞ս Էմըրին որ թագաւորին արծաթեղէնաց գանձապետն է ։

— Է՛, ետքը։

— Ներա համար կը անհանգստանայ։

— Որո՞ւն համար։

— Մարիոնին համար։

— Իրա՞ւ կ'ըսես։

— Իր անունին օրն Էմըրի երսուն հազար թալերի արժողութեամբ զարդ մը տուաւ Մարիոնին։

— Ծանտամխա։

— Գանձը պիտի վճարէ այս ամէն ստակները։

— Կը կարծես։

— Անշո՛ւշտ....։ Բայց ուրիշ բան մ'ալ կայ։

— Ի՞նչ։

— Տը Պըքինկամ դուքսին Մարիոնին տունը մտնելը տեսայ։

— Հրա՞շք մ'է ատի միթէ։ Ամէն մարդ կը մտնէ հոն։

— Իրա՛ւ ըսիր։»

15 Նոյեմբեր

«Միլօրտն անօրինակ սիրապաշտութիւն մը ցոյց կը տայ Տը Թուրնէլ փողոցին աստուածուհիին, բայց նէ խստիւ կը վարուի անոր դէմ, վասն զի դիտէ թէ Պըքինկամ Լուվրի մէկ մեծանուն տիկինը կը սիրէ տրփօրէն։ Այդ մեծանուն տիկնոջ անունը։ . . : Լռութիւն....։ Գուշակէ՛, եթէ կրնաս, բայց մի՛ ըսեր այդ անունը։ Թէ ոչ Շաթըլէի բանտին համը կ'առնուս՝ եթէ ռամիկ ես, Պաստիյլ կը մտնես, եթէ ազնուական ես։»

17 Նոյեմբեր

«Պըքինկամ կը պնդէ թէ սուտ են այս ամէն տարաձայնութիւնները, և օրիորդ Տըլօրմ կ'սկսի հաւատալ Պըքինկամին։»

20 Նոյեմբեր

«Արծաթեղինաց գանձապետը տեղէն մեկնեցաւ։ Նորէն պիտի գայ հոն... երբ Միլօրտը Մանշի նեղուցէն անցնի։

Երէկ ազնուական Անգլիացին Տը Պուրկօնեը թատրոնն եկած էր և Մարիոնին օթեկին մէջ կը նստէր փառաւորապէս։

Աստուածուհին հնութիւններէն և ճարտարաշէն իրերէն կ՚ախորժի ։

Միլօրտն անոր մէկ սրահը միջնադարեան տեսակ մը պահարանաձև կահերով, կօթեայ թիկնաթոռներով և թանկագին սրբատուփերով զարդարեց ։

Մարիօն իր լանջակալը չքնաղապէս նկարուն քարով մը կը կոճկէ . կ՚ըսուի թէ Ալեքսի Գոմնէնին կինը կը գործածէր այս քարը ։

Սիրապաշտ դեսպանը վաթսուներկու հազար ֆրանքի գներ է այս նկարուն քարը ։

Զայն Մարիօնին ղրկեց յետագայ տողերով.

Քանի որ քեզ հաճելի են, դիցուհիս,
Բիւզանդական հինօրեայ ձեւն՝ իր ամեն
Խորհրդական նշաններով, փոշոտուած
Սուրբ տուփերով, պզրոցներով հնաձև,
Գիտնաս որ . . . չեմ համարձակիր ըսելու . . .
Բայց թէ աշխարհ իմըս ըլլար համօրէն,
Քու աթոռին—կայսրուհեան բիւր անգամ զայն
Տուողն արդեօք ես կ՚ըլլայի առաջին ։

Այս տողերն երկու բան կը հաստատեն . նախ թէ Պրքինկամ բաւական կը յաջողի տաղաչափելու . երկրորդ թէ սակաւին երջանիկ չէ ։ Մէկը կ՚առաջարկէ մեզ վրան դրուելու թէ միլօրտը պիտի երջանկանայ . անտարակոյս արգիլուած է դրան գրուիլը ։»

23 Նոյեմբեր

«Այս առտու միլօրտը փնտռուեցաւ իր ապարանքին մէջ, Լուվրին մէջ, Թագուհիին ճիշդ պատուհաններուն տակն արեւելեան պարտիզին նշդարմիներու հովանոյներուն ներքև, վերջապէս այն ամեն տեղերն ուր սովորաբար կը գտնուի ան ։ Սակայն և ոչ տեղ մը գտնուեցաւ . . . ։ Ո՞ւր էր ուրեմն ։

Մարիոն միայն անհանգստութիւն չունէր .»

10 Նոյեմբեր

«Բայց ահա գործին հետաքրքրական կէտը .

Լորտ Պըքինկամ սուտ կը խօսէր՝ երբ կը հաստատէր թէ սրտին մէջ ուրիշ տարփ մը չունի ։ Սիրաբանեց և քծնեցաւ օրիորդ Տըլօրմին հետ . վասն զի այս գեղանիին դէմքը շատ նմանութիւն ունի այն մեծանուն և ազնուական տիկնոջ հետ , որուն անունը չտալով շատ աղէկ վարուած կ՚ըլլաք , եթէ կը գուշակէք ով ըլլալը ։

Մարիոն անմիջապէս նշմարեց այս կէտը ։

Տը Պըքինկամ դուքսը կ՚աղաչէր օրիորդը որ հագնի այն մեծանուն և ազնուական տիկնոջ պէս և պատրանքը կարելի եղածին չափ կատարեալ ընելու կերպով հագուի ։ Պէտք էր ձեւերն, գնացքին , խօսուածքին և մինչև իսկ գիշերուան խոյրին , վերջապէս նորա ամեն բանին նմանութիւնը ունենալ ։

Այս առաջարկութիւնը նուաստութիւն մ՚էր օրիորդ Տըլօրմին համար ։

Սրտմտեցաւ նէ . աններելի թուեցաւ իրեն իր գեղեցկութեան դէմ եղած այս թշնամանքը ։ Ուրիշ կնիկի մը տեղը կը ծառայէր . Պըքինկամին սիրուէս խանդն ու եռանդը բացակայ գեղեցկութեան մը կ՚ուղղուէին ։

Միլօրտին անմիջապէս ճամբայ տրուեցաւ ։ Յայտնուեցաւ իրեն թէ նէ ուրիշ նմանութեան պատկերը ներկայացնելու համար չեղած է ։

Յիրաւի՛ այս Անգլիացիք տարօրինակ գաղափարներ ունին ։

Իրաւութիւնը տարաձայնեցաւ ։ Մարիոն՝ բարկութեանը մէջ տանիքներուն վրայ գոչեց , և ըսած խօսքերը բերնէ բերան անցնելով հասան մինչև Լուվրը ։ Լուի ԺԳ կ՚ուզէ օրիորդը տեսնել ։ Հրաման տրուեցաւ որ օրիորդ Տըլօրմ մանկլաւիկի հագուստով ծպտի և թագաւորին ներկայանայ այն միջոցին ուր Նորին Վեհափառութիւնը պառկելու կը պատրաստուի ։

Այս ներկայութեան մանր պարագաները պիտի ստանաք . համբերութիւն ։»

13 Նոյեմբեր

«Լուվրի պալատին ժամահարը տասնումէկ կը զարնէ ։ Լուի ԺԳ՝ սենեկի պատմուճան հագած՝ կը քարէ այն ամեն աւագանին որք եկած են արքայական ընկողմանումի առաջին պատրաստութեանց ներկայ գտնուելու, և նու իրակը գուռը բանալով յետադայ սովորական խօսքը կ՚ըսէ․

«Շնուա, պարոններ, քաշուեցէք։»

Բազմութիւնը կը հեռանայ։

Կը մնան միայն ազնուական սպասաւորներն որք առտու իրաւունք ունին արքային սենեակը մտնելու։

Սենեկապան մը թագաւորը կը սանտրէ ։ Պաշտօնաւորներն արծաթեայ պնակի մը վրայ դրուած գիշերուան խոյր և թաշկինակներ կը բերեն․ ապա մեծ սենեկապանն ալ կը գայ ոսկեզօծ արծաթէ երկու սկաւառակով որոնց մէջ տեղը սեղանի ղենջակ մը կայ միայն մէկ ծայրէն թրջուած։

Թագաւորն երեսը կը լուայ, կը սրբուի, հրամաններ կը տայ անկողինէն ելնելու ժամուան համար, և ամեն մարդու ճամբայ կը տայ, Պելկարտէն և առաջին սենեկապանէն ՚ի զատ։

— Է՛, ինչ պիտի ընես․, կ՚ըսէ Լուի ԺԳ մեծ պխռաալետին ցած ձայնով։

— Մանկլաւիկը ձեր հրամանին կ՚սպասէ, վեհափառ տէր։

— Գնա՛ դու ինքդ բեր զան։

— Կը հնազանդիմ, կը պատասխանէ Պելկարտ՝ խոնարհելով։

Եւ խուցի մը դուռէն դուրս կ՚ելնէ, երկու նախասենեակէ կ՚անցնի, և կը մտնէ գաղտնի փող մը․ հոն մէկ ժամէ ՚ի վեր սպփալով ժուռ կը գայ գեղեցիկ երիտասարդ մը, զոր մեծ ախոռապետը կը կարծէ թէ կ՚տաքցնէ անոր երկու այտերը համբուրելով․․․։

Վասն զի այս գեղեցիկ երիտասարդը գեղանի աղջիկ մ՚է, Մարիօնն է․

— Եկո՛ւր․․․ թագաւորին պառկելու խուցն աւելի տաք է։

— Բարեբաղդութիւն մ՚է ատի․ բայց թագաւորն ինձ ինչ ըսելիք ունի։

— Մանաւանդ այսպիսի ժամուան մը մէջ, շարայարեց Գել-կարտ։ Ցիրաւի, ատի շատ զարմանալի է։ Զգայարանացս վկա-յութեանը վրայ անգամ կը տարակուսիմ, և կը հարցնեմ իրա-ւի թէ կէս գիշերին մօտ Սրբակեացն Լուիի սենեակն իրաւ կը տանիմ իր հպատակուհիներուն ամենէն պաշտելին։ Ահա այս պատճառաւ հարկաւորութիւն ունիմ քեզի պագնելու, Մարիոն, որպէս զի համոզուիմ թէ երազ չեմ տեսներ։

— Վերջ տուր խօսքիդ, պարոն։

— Չէ՛, սուտ զիս . . . սովորութիւններէս շատ դուրս արհես-տի մը զբաղելու կ'ստիպուիմ. ուրեմն ձեռքս փոխարէնը ընդու-նիլս արդարութիւն է . . . ։ Հանդարտ եղէք, Թագաւորն ոչինչ պիտի տեսնէ։

— Բայց անկեղծապէս ըսէ՛, պարոն Տը Գելկարտ, կը կար-ծե՞ս թէ Թագաւորը կարող է . . . ։

— Աղէկ չգիտեմ. ոմանք այո՛ կ'ըսեն, ոմանք ո՛չ կ'ըսեն . . . Ճիշդը թերեւս շուն պիտի գիտնայ։

Գելկարտ օրիորդ Տըլօրմը Լուի ԺԳ-ին պառկելու խուցը ներ-կայեց . . . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . . . . .

Ասկից աւելի երկար չպիտի գրենք այս առտու, վասն զի մեր թերթին մէջ տեղ չկայ։»

14 Նոյեմբեր

«Սենեկապանը՝ սովորութեանը համեմատ դուրս ելաւ՝ սենեկին մէկ անկիւնը սանդաձև ճրագը վառելէն և անկողնին վարագոյր-ները իջեցնելէն ետք, ուր պահ մ'առաջ մտած էր Թագաւորը։

— Դո՛ւն ես, մռմռաց Լուի ԺԳ, Գելկարտին ներս մտնելը լսելով։

— Այո՛, վեհափառ տէր։

— Բերի՞ր այն անձը։

— Ահա հոս է, ըսաւ մեծ ախոռապետը սպասելիկ խոնարհա-կան ձև մ'ընելով և դուրս ելնելու համար դէպ 'ի դուռն ուղ-ղուելով։

Վարագոյրներուն մին կամաց մը բացուեցաւ։

— Չէ՛, չէ՛ . . . կեցի՛ր, և աթոռ մը տո՛ւր այս . . . պարոնին . . . ։ Ներկայութիւնդ աւելորդ չէ։

Վարագոյրը նորէն գոցուեցաւ։

Օրիորդ Տըլորմ խիստ ազնիւ կերպով մը դէմքը ծռեց քիչ մը. այս դէմքի ծռութեան մէջ քիչ մը դժգոհութիւն և շատ անարգանք կար։ Իսկ Պելկարս ոչ այնքան զուարթ երեցաւ՝ տեսնելով թէ ինչ դարձուած կ'առնէին իրերը. տուաւ աթոռը և ուրիշ մ'ալ առջև բերաւ իրեն համար։

— Պարոն, ըսաւ Լուի ԺԳ, կին մը, զոր կը ճանչես, Անգլիոյ դեսպանը ընդունեցաւ իր տունը։

Շինծու մանկլաւիկը դէմքին ծռութիւնը շարունակեց և պատասխան չտուաւ։

— Նորին Վեհափառութիւնը կը զիջանի հարցում ընելու քեզ, ըսաւ անոր Պելկարտ՝ ժպտելով։

— Ա՛հ . . . շնորհակալ իմ որ հարցուիլս կ'իմացնես ինձ, պատասխանեց գեղանին շատ զայրացած կերպով մը։ Սակայն բաւական հարկաւոր է Թագաւորին գիտնալը թէ . . . ։

— Ո՞վ ես . . . ։ Հարկ չկայ, պարոն։ Հաճէ՛ ուղղակի և պարզապէս պատասխանելու. օրիորդ Տըլորմը կը ճանչե՞ս։

— Ես ինքս եմ, վեհափառ տէր։

— Չգիտեմ և չեմ ուզեր գիտնալ թէ դուն ինքդ ես։ Պելկարս հրաման ընդունեցաւ ինձ բերելու մանկլաւիկ մ'որ՝ ապահով եմ թէ՝ շատ կարող է տալու ինձ այն տեղեկութիւնները որոնցմէ պէտք ունիմ. . . ։ Կը հարցնեմ այդ մանկլաւիկին և կ'աղաչեմ որ պատասխան տայ ինձ։

— Բայց, ըսաւ Մարիոն, զայրումէն կարմրելով, ոչինչ կը հաստատէ ինձ թէ Թագաւորին մտիկ ընելու պարտիք ունիմ։ Եթէ զիջանէր իր երեսը ցոյց տալու ինձ . . . ։

Վարագոյրներու շարժում մ'եղաւ. բայց այս շարժումին հետեւանքն եղաւ վարագոյրները բոլորովին մօտեցնել իրարու։

— Պելկա՛րս, երդում ըրէ պարոնին թէ Թագաւորին առջեւ կը գտնուի։

— Կ'երդնո՛ւմ հոգւոյս, Աւետարանին, Նախահարցս անուան վրայ։

Եւ երդումը լմնալէն ետք մեծ ախոռապետը իր շուրթը խածաւ քահ քահ մը չձգելու համար։

— Աղէկ, ըսաւ Լուի ԺԳ։

Թագաւորը թեւը վարագոյրներէն դուրս ըրաւ, և իր արքայական ձեռքին մօտ բազմոցի մը վրան զարկաւ։

— Անօթի՞ ես, պարոն, հարցուց մանկլաւիկին . . . .

. . . . . . . . . . . . . . . . . .

Սակայն մեր թերթին փոքրածաւալութիւնը կըստիպէ մեզի ուրիշ օրուան մը թողուլ այս հետաքրքրական և խիստ ճշմարիտ պատմութեան շարունակութիւնը։ Կրնայինք ըսել թէ ուսկէ իմացանք այս պատմութիւնը, եթէ սովորութիւն ունենայինք որ և է անձ մը վտանգի ենթարկելու։ Բայց իմացնողն ոչ թագաւորը, ոչ մեծ ախոռապետն և ոչ Մարիօնն է։

— Ուրեմն սատանան է իմացնողը, գոչեն թերևս մեր ընթերցողները։

Գուցէ. ատի մեր գիտնալու բանն է։»

16 Նոյեմբեր

«Յովազի չորս ահագին ճիրաններէ բռնուած բազմոցին վրայ՝ տակաւին վառող սանդաձև ճրագին լոյսէն՝ կը տեսնուէին պաղ հաւ մը, շիշ մը Սպանիոյ գինի, ամեն տեսակ բարակ և համեղ ծամոցներ, վերջապէս ինչ որ սովորաբար կը կազմէ գիշերային ընթրիքը, որ ամեն գիշեր թագաւորին անկողնին քով կը պատրաստուի։ Ընդարձակ անօթ մը հոն բոլորովին բաց կը կենայ, և մէջը կան բաժակներ, պատառաքաղներ, դանակներ և ոսկեղէն պնակներ։

— Կտոր մը կե՛ր, ըսաւ Լուի ԺԳ մանկլաւիկին։ Պելկարտ ընկերութիւն պիտի ընէ քեզ։

Այսպիսի տեղ մ'ընթրելը միջակ պատիւ մը չէր, և օրիորդ Տըլօրմ ընդունեցաւ։ Մեծ ախոռապետն ընդարձակ անօթէն երկու բաժակ առաւ, սպանիական գինիով լեցուց, մին ինքն առաւ, միւսը Մարիօնին տուաւ, ըսելով.

— Խմե՛նք Թագաւորին կենացը, պարոն։

— Յօժարակամ, պատասխանեց Նէ։ Առնաբար պիտի ընդունիմ առաջարկութիւնդ... վասն զի կը տեսնեմ որ հոս անպատճառ պէտք է հրաժեշտ տալ սեռիս։

Պելկարտ ներա ծունկը հրեց։

Երգիծաբանութիւնը հաճարեղ բայց յայտնի կերպով անամօթ էր. սակայն վարագոյրներուն ետեւը չհասկցուած էր այն։

— Պարոն, ըսաւ Լուի ԺԳ, ուրեմն իրաւ է թէ այդ օրիորդ Տըլօրմն իր առանձնական սենեակն ընդունած է Տը Պըքինկամ դուքսը։

— Շատ ճիշդ է, վեհափառ տէր, պատասխանեց մանկլաւիկը՝ գեղեցիկ ակռաներովը հաւի զիստ մը կրծելով։

— Ա՛հ, շա՛տ աղէկ....։ Հիմա գժտած չե՞ն։

— Մինչ 'ի մահ գժտած։

— Եւ ի՞նչ պատճառաւ, պարոն։

— Դուքսը զեղչէկ մ'է, անհնարին յոյսեր ունի։

— Յոյսեր... ապահով գիտե՞ս ունենալը։

— Խիստ ապահով, ըսաւ մանկլաւիկը։

Պըքինկամին տհաճելի ըլլալու առիթէն դժգոհ չէր մանկլաւիկը, և [illegible] պլպլացող գինիով լի բաժակը մէկ ումպով պարպեց։ Մեծ ախոռապետն անոր բաժակը նորէն լեցուց մինչև բերանը։

— Օրիորդ Տըլօրմ պատմած է, կ'ըսուի, թէ դուքսը կ'աղաչէր զինքը նարնջեգոյն թաւշէ բօպա մը հագնելու, իրաւ է։

— Այո, վեհափառ տէր։

— Անգլիական կիտուածով զարդարուն լանջակալե՞ մը հետ։

— Անգլիական կիտուածով։

— Անկից 'ի զատ դուքսը չէ՞ր աղաչեր որ նէ ցորեկները սուտակաշէն սանար մը դնէ մազերուն մէջ։

— Ճիշդ են այդ ամեն մանր պարագաները։

— Եւ... գիշերներն ո՞չ ապաքէն դուքսն ինքն անձամբ ներա գլուխին բոլորտիքը մալինեան տանդելայով զարդարուն քօղ մը կը կապէր։

— Ահա սաստիկ բարկութեանս գլխաւոր պատճառն ալ աս է, գոչեց մանկլաւիկն իր կատարեալ բաժակը Պելկարտին երկնցընելով։

Վարագոյրները շարժեցան։

Վայրկեանի մը չափ լռութիւն եղաւ։ Պելկարտ կ'սկսէր սաստիկ զարմանալ. մանկլաւիկը կը խմէր։

— Օրիորդ Տըլօրմ ուսկէ՞ իմացաւ թէ ուրիշ... անձ մը սովորաբար այդպիսի գլխադիրով մը կը պառկի։

Թագաւորին ձայնը յուզուած էր։

Պելկարտ մատ մը դրաւ իր շուրթներուն վրայ մանկլաւիկը ախմար խօսք մ'ընելէ արգիլելու համար. բայց ան չ՚ շմարեց այս նշանը կամ բանի տեղ չդրաւ։

— Տէր Աստուած, ըսաւ, շատ պարզ բան մ'է ատի։ Միլօրտն երազելու ատեն բարձրաձայն կը խօսի, և իր քունին անխորհրդապահութիւնը... վերջապէս այս մասին չեմ խաբեր ձեզի, վեհափառ տէր։ Պալատին չքաղիր կիներուն մին անոր մանր պարագաներ իմացուց որք հարկաւոր էին այն հպուստ ճշդութեան զոր ինձ կրել տուաւ։ Երբ անցաւ բարկութեան առաջին վայրկեանը, այս բանը շատ ծիծաղելի երեցաւ ինծի, և լսել ուզողին կը պատմեմ... Հա՜, հա՜, մինչև մեռնիլս պիտի խնդամ այս բանիս վրայ։

Վարագոյրները յանկարծ բացուեցան սաստիկ կերպով մը, և Լուի ԺԳ ելած նստած երեցաւ. աչքը բարկալի էր, և երեսը սրտմտութեան դրոշմը կը կրէր։

— Պօ՛րտօ, գոչեց թագաւորը, կրնաս մեր կողմէն ըսել այդ Տըլօրմ անուն աղջկան թէ անխոհեմ և խեւ մ'է։

— Ինչո՞ւ համար, մռմռաց մանկլաւիկը։

— Ըսէ իրեն որ քունին մէջ ըսուած խօսքի մը վրայ այսպիսի պատմութիւններ չեն տարածայներ։

— Բայց, վեհափառ տէր....

— Ըսէ նաև թէ կը հրամայենք իրեն որ Շաթըլէի բանտը երթայ....

— Թողութիւն։

— Ուր նէ պիտի սպասէ մինչև որ կարտինալն իր վճռակէն վրայ որոշում մ'ընէ։ Համամիտ է ան հետս . . . ։ Ինքն անձամբ կ'ուզէ խստիւ պատժել յանցաւոր աղջիկը և օրինակ մը տալ, որպէս զի պոռնիկները սորվին յարգել ինչ ինչ անուններ և իրենց լեզուն սանձեն։

— Կարտինա՛լը . . . կարտինալն ինձ ակնարկելով այդպէս խօսեցաւ։

— Այո՛, տղան . . . ։ Հոգ տա՛ր, Պեկկարտ, որ այդ աղջիկը չկրնայ փախչիլ . . . ։ Տուած տեղեկութիւններուդ համար շնորհակալ եմ, գեղեցիկ մանկլաւիկ։ Պատժելէ առաջ կ'ուզէի ապահով ըլլալ զայթակղութեան մասին։ Ա՛լ չեմ կեցներ քեզի . . . գիշեր բարի։

Եւ վարագոյրները յանկարծ գոցուեցան վերստին։

Բայց մանկլաւիկը վարագոյրները բանալու և արքայական ձեռքը բռնելով շուրթերուն տանելու յանդգնութիւնը ունեցաւ . . .

. . . . . . . . . . . . . . . . . . .

Այսօր տող մ'աւելի գրելն անկարելի է։

Երէկ մեր ընթերցողներէն ոմանք պատմութեան շարունակութիւնը գիտնալ ուզելով եկան մեր տան մէջ մեզի թախանձելու . . . անոնց հետաքրքրութիւնը կ'ողոքէ մեզի, բայց աշխատութիւնները կը նեղեն։ Հիմա մեր դրան քով խիստ պատուէր կայ ներս մտնել ուզողները արգիլելու համար։»

17 Նոյեմբեր

«Լուի ԺԴ թէև ուզեց քաշել ձեռքը, բայց մանկլաւիկը բաւ-միջս յանդգնօք պագաւ և ըսաւ.

— Կ'աղերսեմ Ձեր Վեհափառութիւնը որ մտիկ ընէ ինձ։

— Թո՛ղ զիս։

— Շնորհք ըրէք, համբերեցէք հաւանելու . . . ։

— Դուրս ելի՛ր, կ'ըսեմ քեզ, տղան։

— Ձէ, պիտի չելնեմ, գոչեց մանկլաւիկը գլուխը աղաչաւորական պղտի շարժումով մը վեր ընելով, պիտի չելնեմ. Ես-

գաւառը զիջաւ զիս ընդունելու, իր հիւրն եմ, և . . . տակաւին ընթրիքս չմոռցուցի։

Ասի ըսելով նորէն նստաւ բազմոցին քով, նոր բաժակ մը հանեց ամանէն, և ժպտելով գինիով լեցուց։

— Թագաւորին կենացը խմենք, Պարոն Տը Պելկարտ . . . ։ Լաւ լու նշան մը ըներ ինծի . . . ըսել կ'ուզեմ շատ ճիշդ և շատ երախտալի է։ Նորին Վեհափառութեան կողմէն զիս աղաչեցիր որ մանկլաւիկի հագուստով Լուվրը գամ . . . ահա եկայ։ Հիմա թագաւորը զիս իր սեղանին ընդունելէն ետք քանի մը ժամ զրկել կ'ուզէ . . . ։ Ո՛հ, բայց ես չեմ երթար. կը կենամ և . . . կ'ընթրեմ մինչև որ այս բանտարկութեան սպառնալիքը կատարելապէս և հանդիսաւորապէս ետ առնուի։

Լուի ԺԳ. մանկլաւիկին կը նայէր շուարումով։

— Տիկին, մեծամայ, ասի այնպիսի յանդգնութիւն մ'է . . . ։

— Որուն համար Ձեր Վեհափառութենէ խիստ անկեղծապէս ներումն կը խնդրեմ. բայց տարբեր կերպով վարուիլս անկարելի է ինծի։ Բանտ երթամ . . . ։ Շնորհակալութիւն։ Թերևս ոչինչ արժանիքիմ քանակին, բայց անընդունելի պայմաններով, և դեռ շատ պզտիկ ըլլալով այժմէն մշտնջենական բանտարկութեան մը չեմ կրնար համակերպիլ։ Ասկից 'ի զատ ձեր կեղծաւոր կարդինալին խաբեբայութեանց օգնելու պիտի հաւանի՞ք, Վեհափառ՛ը։

— Ո՛հ, Աստուած վկայ, բնաւ անունը տալիր։

— Ի՞նչ ըսել կ'ուզես, պարոն, հարցուց Լուի ԺԳ հետաքըրքիր յօժարութեան շարժումով մը։

Այս շարժումը մանկլաւիկին կորովամտութենէն անտես չմնաց։

— Ըսել կ'ուզեմ թէ . . . ։ Բայց նախ ձեր արքայական խօսքը կ'ուզեմ բանտ չերթալուս նկատմամբ։

— Խօսքս կը տամ, պարոն։

— Ու եթէ ամեն ըսելիքս կարտինալին իմացնէք, ինչպէս սովորութիւն ունիք իմացնելու, կ'ըսուի, ո՞ւր կը մնայ ազատութեան երախտագիտութիւնս։

— Չէ՛, չէ՛ . . . կարտինալն ոչինչ պիտի իմանայ, կ'երդնում, ըսաւ Թագաւորը։

Ա՛լ մաքէն չէր անցներ իր վարագոյրները գոցել, և իր անհամբերութիւնը անգամ չէր պահեր։

— Խօսէ՛, Մարիօն, խօսէ՛, ի՞նչ կը վախնաս, ըսաւ Պեւլկարտ ձեռները շփշփելով. Թագաւորը պիտի լնգա՛յ։

Եւ մեր առնազգեստ աղջիկն անլուր, այլանդակ և ամոյոյց-ներով կատարելապէս հաստատուած պատմութիւն մը սկսաւ. պատմութիւն զոր չենք կրնար հրատարակել երկարութեանը պատճառաւ, և որուն միջոցին Լուի ԺԳ իր սաւաններուն անկողնին մէջ կը գլտորուէր կատարեալ խենդի պէս խնդալով, և հեծեծալ աղաղակներուն պէս աղաղակներ արձակելով.

« — Վա՜յ անամօթ ծերուկ, վա՜յ։

« — Վա՜յ կեղծաւոր։

« — Կարելի՞ բան է։

« — Մաքէս չէ՛ր անցներ ատի։

« — Ի՛նչ. իրա՛ւ է, ուզեց որ . . . ։

« — Բարի՛ն պիտի դրեմ ատի։»

Իսկ Պեւլկարտ քահ քահներ կը ձգէր, և մեր կնային մանկլաւիկն իր պատմութիւնը կը շարունակէր խիստ ուրախառիթ կերպով մը զարդարելով. Թագաւորն ալ գինի կ'ուզէր անորմէն և իր անկողնէն կը տրինկէր իր գեղանի պատմիչին հետ։

Ա՛լ պարոն չէր ըսեր անոր։

Պահ մ'ետք սկսաւ պարզապէս Մարիօն անուանել մանկլաւիկը, ապա ընտանի ձեռով խօսեցաւ հետը. ետքը ներա մէկ ձեռքը բռնելով իր ձեռքին մէջ պահեց, ինքն իսկ պատմեց Մարիօնին Թէ կարտինալը տիկին Տը Շըվրէօզին, տիկին Տիւ Ֆարժիին, օրիորդ Տը Մօնմօրէնսիին և արքունեաց ուրիշ բազմաթիւ տիկնանց սիրահարն էր. և վերջապէս ըսաւ.

— Գիտեմ որ շատ սիրուն ես, Մարիօն. և այդ դժոխապարտ Րիշըլիէօն . . . ։ Սատուկին բանա պիտի չիրթա՜ս . . . ։

Ապա Լուի ԺԳ դէպ 'ի Պեւլկարտ դառնալով, շարայարեց.

— Թո՛ղ մեզի, Հէ՛ն բարեկամս, թո՛ղ մեզի։

Ա՛ն այս ատեն իր աչքը վեր ըրաւ ծիծաղաշարժ զարմացմամբ, և դէպ 'ի նախասենեակին ուղղուեցաւ։

— Լա՛ւ, ըսաւ մտապէս, այս բառերուն կողմն եմ։

Օրիորդ Տըլօրմ կարծեց թէ սխալուած է վեհերոտութեամբ մը ընելու աչերը և կիսաձայն մռմռալու.

— Վեհափառ տէր... ա՛հ, վեհափառ տէր, չգիտեմ թէ արդեօք կը պարտաւորիմ հասկնալ....։

Սակայն Մարիոն կեցաւ, և Պեյկարտ աներևոյթ եղաւ։

— Երբէք չէիր գուշակեր, ինչ որ պիտի իմացնեմ քեզ, խեղճ Մարիոնս, ըսաւ Թագաւորը։

— Ներեցէ՛ք, վեհափառ տէր, գրեթէ կը գուշակեմ, պատասխանեց Մարիոն սիրազգրգիռ պչրանքով։

— Կը գուշակե՞ս... լա՛ւ. զարմանալի չէ՞ սա։

— Բայց ո՛չ... հակառակը պիտի զարմացնէր զիս սաստիկ։

— Բա՛։

— Անշուշտ։ Միշտ համոզուած էի թէ զըպարտութիւն կ'ըլլար ձեզի դէմ, վեհափառ տէր։

— Ի՞նչպէս։

— Այո՛, ես ինքնին կ'ըսէի. Ահա շատ չարախօս լեզուներ. ... Ներելի՞ է ենթադրել.... Բայց այս չարախօսութեանց և ոչ մէկ բառին կը հաւատայի։

— Ուրեմն ինչ կ'ըսէիր ինձ։

— Զըսի ձեզ բան մ'որ ձեզի հարկադրէր կարծելու թէ այդ կարծիքը կ'ընդունէի։

— Կը հաւատէիր զիս թէ հակառակը շատ աւելի պիտի զարմացնէր քեզի.

— Այո՛, զարմանալ կ'ըսեմ սա։

— Բայց ինձ նայէ. ինչ բանի վրայ կը խօսինք։

— Ի՞նչ բանի վրայ կը խօսի՞ք։

— Այո՛։

— Ձեր Մ. Հաւատարմութիւնն իմին աղէկ գիտէ.

— Բայց, այո՛, խա՛չոր ապահով եմ այս մասին։ Կը հասկընաս թէ ինչու չուզեցի Պելկարտին առջև....։ Թերևս ուզէր գրգռել զիս....։ Կը ճանչեմ ինչ մարդ ըլլալը. զիս կը պախարակէր այնքան յանդգնութեան համբերելուս համար։ Գիտնա՛, սիրելիդ իմ, որ կարտինալն երևելի քաղաքագէտ մ'է, իր ծառայութեանց պէտք ունիմ... ասկից 'ի զատ խիստ վտանգաւոր չեմ համարիր զինքը։ Քանի որ չյաջողեցաւ Տը Շըվրէօզ դքսուհիին և քու քով, Մարիօն, ա՛լ աւելի պիտի չյաջողի այն անձին քով, այնպէս չէ՞։

— Իմ ալ կարծիքս այդպէս է, պատասխանեց օրիորդ Տըլօրմ թագաւորին յայտնած գաղտնիքին անկարևորութիւնը իրեն մեծ նշանակութիւն մը սեպելով։ Բայց հիմա կրնանք Պ. Տը Պելկարտը ներս կանչել, վասն զի՝ կ'երևակայեմ թէ ձեր ինձ բոլոր ըսելիքն ասի է... այնպէս չէ՞։

— Այդպէ՛ս տակաւին....։ Երևակայէ՛ անգամ մը, որ կարտինալը կը սրտմտէր մանաւանդ այն գիշերային խոյրէն։

— Իրա՛ւ։

— Նախանձելու երկու պատճառ ունէր....։ Հա՛, հա՛։

— Այո՛, շա՛տ խնդալու բան։

— Եւ եթէ կարենար գիտնալ թէ հոս քովս ես....։

Թագաւորը բոլորովին իր անկողնին քովը քաշեց Մարիօնը։ Օրիորդ Տըլօրմ սարսռեցաւ և ամօթխածութեան շարժում մը ըրաւ։

— Ո՛հ, հանգիստ եղի՛ր, աղջիկս, ամենևին վախ մի՛ ունենար։

— Համոզուած եմ թէ վախնալու բան մը չկայ, վեհափառ տէր։

Թագաւորն օրիորդ Տըլօրմին ձեռքը թողուց, գլուխը բարձին վրայ դրաւ նորէն, և յօրանջելով կրկնեց.

— Գեղանի ես... այո՛, անշուշտ... բայց Աստուա՛ծ չընէ որ քեզի խրախուսեմ... խառնակնոց կեանքիդ մէջ յարատևելու....։ Եթէ կ'ուզես հաւատալ ինձ, Մարիօն, պիտի..., ապաշխարես։

— Պ. Տը. Րիշլիէօ կը հակառակի ապաշխարելու, վեհափառ տէր։

— Հա՛. ուրեմն խնդիրը կը փոխուի... կ'ուզէի նաև՝ քու շահուդ համար... լորտին պատմութեան նկատմամբ...։ Ա՛լ մի՛ պատմեր այդ լորտին խնդիրը... վասն զի կարտինալը կը սրդողի այդ պատճառաւ։

— Ի՛նչ մեծ դժբաղդութիւն։

— Բայց ճի՛շդ է... քեզի համար դժբաղդութիւն մ'է...։ Քանի որ Պեւլկարտ մահիկ չըներ ա՛լ... կրնամ... ըսել քեզ... Րիշլիէօյին տէրը չեմ միշտ։ Ստուգիւ կը վախնամ որ թերևս... բանտը պիտի երթաս... դարձեալ...։

Լուի ԺԳ. գրեթէ մէն մի բառը յօրանջելով կը խօսէր։

— Բայց, վեհափառ տէր, խօսք տուիք ինձ, գոչեց օրիորդն ահաբեկ։

— Ո՛հ, խօսքս... կարտինալը... ի՛նչ ընեմ, արդէն քո 'ի գլուխ նորա... գիշե՛ր բարի։

— Բայց վերջապէս Ձեր Վեհափառութիւնը խոստացաւ ինձ...։

Օրիորդ Տըլօրմ չաւարտեց խօսքը, և սաստիկ շմորեցաւ։ Թագաւորը կը խորդար։»

19 Նոյեմբեր

«Քանի որ Բարիզի մէջ լոկ Տէ Թուրնել փողոցին հռչակաւոր գեղանիին վրայ կը խօսուի, բռնադատուած ենք բոլոր Բարիզցւոց պէս ընելու։

Երէկ գիշեր նէ իր պաշտողները ժողովեց. ամէնն երսուննինը հոգի էին։

— Պարոններ, ըսաւ անոնց, կարտինալը կռիւ կը բանայ ինծի դէմ։ Պատրաստ էք զիս պաշտպանելու. թէ ոչ մայրաքաղաքէն կը մեկնիմ։

Ամէնքը խօսք տուին նորա համար կռուելու պաշտօնէին դէմ։ Սակայն ամենէն եռանդոտներն եղան որոնք որ տակաւին յոյս ունեցողի գիրքին մէջն էին նորա քով։

Օրիորդը ճշմարտապէս ուղեկից պահապաններէ շրջապատուած դուրս կ'ելնէ։

Այս ռազմագրգիռ ցոյցերը շատ ծիծաղելի կ'երեւան մեզ։

Կարտինալն այսօր Մարիոնը մտքէն չանցուներ. իր միակ զբաղումն է Շալէն հսկել։»

1 Դեկտեմբեր

«Մենամարտութիւնները կը բազմապատկին։ Ցիրաւի պէտք էր խիստ հրովարտակ մը հանել՝ այս աղետալի կատղութեան վերջ տալու համար, որ Ֆրանսան իր լաւագոյն ազնուականներէն կը զրկէ։ Ահա, կ'ըսուի, տասներորդ սուրի վէրքը, զոր Պուժվիլի տէր՝ Ֆրանսուա Տը Մոնմօրէնսի կը բաշխէ որոնց որ իր աստուածուհիին սիրտը իրմէն կորզելու կը մրցին։

Շիտակը, եթէ կ'ուզէ Մարիոնին բոլոր սիրողները մեռցնել, Ֆրանսայի մէջ մարդ պիտի չմնայ։»

15 Դեկտեմբեր

«Անցեալ գիշեր սառնաշունչ ցուրտ մ'ըրած ժամանակ Տը Լա Ֆերթէ դուքսը՝ Անրի Տը Սէնըթէր՝ ման կը գար պուլվարին այն մասին վրայ որ օրիորդ Տըլօրմին պարտիզին կից էր։

Տը Կեպրիան կոմսը վրայ հասաւ։

— Ի՞նչ կ'ընես հոդ, ըսաւ Սէնըթէրին։

— Կը տեսնես որ ժուռ կը գամ։

— Պատասխան չէ ատի։

— Կրնամ ուրիշ պատասխան տալ քեզ, եթէ կ'ախորժիս. կ'սպասեմ որ այս պարտէզին դուռը բացուի ինծի։

— Ի՞նչ. Մարիոնին հետ ժամադրութիւն մ'ունիս։

— Երեք օրէն 'ի վեր։

— Եւ ես այս առաւօտէն 'ի վեր։

— Կէ՞ս գիշերուան համար։

— Կէս գիշերուան համար։

— Պիտի չմնե՛ս։

— Պիտի մնե՛մ։

— Պիտի տեսնե՛նք։

— Լաւ . . . քաշէ՛ աղէկն տուր ։

Սուրերն իրարու խառնուեցան, և երկու վայրկեան ետք Լա Ֆերթէ ձիւնին վրայ տապալեցաւ արիւնաթաթաւ ։

Եւ որովհետև դուռը տակաւին չէր բացուեր, Կեպրիան ոտքովը զարնելով անգամ մը բացաւ զայն. Սէնլթէրը գիրկը առաւ, և այս բեռին հետ տունին տիրուհիին սենեակը վազեց ։

Բայց հոն իր տիրուհին Գէօպիւս Տ՚Ալպէրին հետ առանձնական վառվռուն խօսակցութեան մը մէջ գտաւ ։

Կոմսն ալ չզսպեց իր կատղութիւնը ։ Երկու սուրեր նորէն սկսան շարժիլ և ընդհարիլ Մարիոնին սենեկին մէջն իսկ, և Կեպրիան ևս վիրաւոր ընկաւ ։

Այս աղետից պատճառն էր գեղանի օրիորդին մէկ անզգամութիւնը. Իրաւ Մարիոն կամօքն ժամադիր եղած էր՝ Սէնլթէրը մոռնալով, և՝ իր ակումբը ցրուելէն ետք՝ Գէօպիւսը պահած էր՝ առանց յիշելու Կեպրիանին խօսք տուած ըլլալը ։

Ինչ և է, այս պարոններուն վէրքը ծանր չեն, և սիրողներու այս երրորդութիւնը վերջապէս պիտի համաձայնի ։»

24 դեկտեմբեր

«Մենամարտներու դէմ մեր խնդրած հրովարտակն ելաւ ։ Պոթվիլ փախած է. Մարիոն անոր բացակայութիւնը չնշմարեր ։»

2 յունուար

«Օրիորդ Տըլօրմին փառաւոր կաղանդչէքները հետևեալներն են.

Առաջին. Ութը Չինաստանի բիւրեղեայ մեծ անօթներ, որոնց մէն մին հինգ հազար ֆրանք կ՚արժէ և զոր Էմըրի տուաւ ։ Էմըրի ամեն բան ներեց, կը ներէ և պիտի ներէ ։ Այս մարդը կարելի եղածին չափ աւետարանական է ։ Հաստատ կերպով կ՚ըսուի սակայն թէ ներողամիտ ըլլալու զօրաւոր պատճառներ ունի, և ժամանակագիրք կ՚ըսեն թէ օրիորդ Տը Լանգլօ հաւասար արժողութեամբ պարգև մ՚ընդունած է ։ Այս սիրելի գանձապետը կ՚ուրանայ իրողութիւնը, և Մարիոն անմեղ կը կարծէ զան . . . յանցաւոր չկարծենք Էմըրին ։

Երկրորդ . Թանկագին փայլքին ունեցող առանձին մարգրիտներու մանեակ մը, զոր Նափոլիի թագաւորին քովը կեցող մեր դեսպանն Խռալիրայէն զրկած է ։ Ո՞ւր է այս ընծային նշանակութիւնը . անցեալին յիշատակ մ'է այն . ապագային համար առհաւատչեայ մ'է . չգիտենք ։ Սակայն իրաւ է որ տասը հազար թալեր կ'արժէ ընծան ։

Երրորդ . Երկու բաց-դեղձան երիվար, որոնց կարտինալին ախոռներուն մէջ սնանուած ըլլալը հանդատ կերպով մեզ ըսող կայ ։ Մեր բարեկամաց մէկ ձիավաճառը տասը հազար Ֆրանք կ'որոշէ անոնց արժողութիւնը ։ Ուրեմն ալ Շաթըլէի բանտին խօսքը չկայ . ահա՛ ուրիշ աւետարանական ներում մ'ալ . կան մարդիկ որք իրենց յոյսերուն նկատմամբ աներկիւղ են ։

Չորրորդ . Բուստերով դրուագուած արկղիկ մ'անգլիական լերթներով լի, նաև թիկնաթոռ մ'որուն վրայ Միշել Բալէօլօի կնիքը նուաստ է, կ'ըսուի ։ Դըքինկամ կը մանուի այս պարգևէն, և այս անգամ ներողը Մարիոնն է ։ Նէ չուզեր ուրիշներէն եա՞ ծնալ ներողամտութեան մասին . . . պատուական աղջիկ ։ Արդէն իսկ . թիկնաթոռն և անգլիական կերպասներն երեք հազար օթենգեան լիրայի արժէք ունին ։ Կարանք օր մը հաշուել ի՛ր հանճարամտութեան ապացոյց մ'է ։

Հինգերորդ . Ընտանի գոհարներով զարդարուն երկու ապարանջան, որոնց մէն մին եօթը հազար հինգ հարիւր Ֆրանքի առնուած է . ընդ ամէնը տասնուհինգ հազար Ֆրանք ։ Քարտուղարը ուրբէն ու եղի վեհանձն եղաւ, հեռաւորաբար լաւագոյն ընդունելութիւն կը գտնէ ։ Նէ՞թէ կարտինալը գիտնայր ։

Վեցերորդ . Վարդաձև ադամանդներով և շառագոյն սուտակներով զարդարուն «բըրէնոտօր»* մ'որուն արժէքն է տասներկու հազար թալեռ . և զոր Դէօմիւս-Կեպրիան-Սէնթըմէր երրորդութիւնը վճարած է ։

* Մարգարտաշէն [illegible] Ծ. Թ.

Այս պարոնները միասնաբար (en commun) կը առնեն և նոյնպէս կ՚ընդունին ։

Եօթներորդ․ Թանչերգարդ պատգարակ մ՚որուն ներսն արծաթապատ է․ նաև վանդակ և պատաղաններ որք քանդակուած և ոսկեզօծ են ։ Հաշուեկալութեան առնելին նախագահին այս պարգևին փոխարժէքն է եօթը հազար ֆրանք և յոյսը ՝ իրաւ թիւնն աւելի թէ նուազ կ՚արժէ ։ Եւ այժմ ահա երկու հարիւր քսան երեք հազար ֆրանքի գումար մը զոր այս ամեն Ռեբելիէ անձերն այսօրուան Արքասիային անձին քովն դրին ։

Անկէ ետք կը գան ստորին կարգի սիրականներուն պարգևները ։

Մեծն նախագահն օրիորդ Տըլօրմին տունը ղրկեց երեք կարաս ալրալաղ և հինգ հաւ, զոր Մանի մէկ դատավարէն առած էր ։

Իսկ Բօմբօն Տը Պելիէվրը նախագահն իր Պուրկօնեի լաւագոյն այգիներուն բերքէն չորս մար գինի տուաւ, և գինիին ղրկուած օրուան իրիկունն իսկ Մարիոնին սեղանին վրայ գինովցաւ ։ Դուրս ելնելով անդաստանին սիներուն բարև կը տար գինեհարը ։

Պուլիօն ՝ որ անձնեայ և ծանրամարմին սեղանաւոր մ՚է, նոյնպէս կոչունքին հրաւիրուած ըլլալով հետը բերած էր ծառայ մ՚որ մրգեղենաց միջոցին ոսկիներով լի սկուտեղ մը բերաւ աստուածուհիին առջևը ։ Մարիօն այս տեսակ հրապարակային ընծայ մը նախատինք սեպեց իրեն, գաւիթը իջեցուց իր ծառաները, պատուհանը բացաւ, և ոսկիները ինչպէս նաև սկուտեղը անոնց նետեց ։

Բայց սառնպէս պարգևներուն ամենէն այլանդակն եղաւ ուրիշ սեղանաւորի մը տուածը․ այս մարդը Պուլիօնին պէս ծանրամարմին և անխելք, և սակայն անորմէ շատ աւելի կծծի էր ։

Անունն է Հոսէ, և ուղղոյն ամեն օր ժամը երեքէն մինչև չորս կրնայ Արքայական հրապարակին վրայ տեսնել զան ալեւոր կենդուրու երամ մը շրջապատուած, որք յանդիման կ՚ամբաստանեն, կը տանջեն զինքը, և ցեցերջանիկներու պէս կը զարմանան անոր ծիծաղաշարժ կնոջքէն և անձին պատասխաններէն ։ Հոսէ

քիր ճակտին վերեւն անկեցած մեծ աչերը յոյզ և յաճախ կը դարձունէ սեւթեւթով, իր չորս կողմն սանձող այն կիներէն որուն ուշադրութիւն ընելը չգիտէ. աջ կողմը կը պառկայ, ձախ կողմը կը պառնայ, կը շնչէ, կը մռնչէ և Գասթիյլի ցուլի մը կը նմանի որ փառաւոր ցլամարտ ձիաւորներու խումբ մ'անհամբերաս կ'ըսէ.

Հուսէ կաղանդչէք չըերած էր.

Բոլոր սեղանակիցներն այս դայթակղութեան դէմ գոչեցին. Հուսէ չտալով ազատ մը կարծածը անոնց առջև՝ իսկոյն պալատին գոհարավաճառը բերել տուաւ.

Լօբէզ՝ որ գոհարավաճառն է՝ եկաւ երկու գործակալ, թանկագին ադամանդներու և ամեն տեսակ գոհարեղինաց Հշմարիտ բեռ մը բերելով.

Գիտենք որ Լօբէզ Հրեայ է, սովորաբար իր ուզած գնոյն կէսը տալ պէտք է.

Գոհարները Մարիոնին առջև բացաւ շարեց.

Հուսէ տեսնելով թէ ցեղուհին անոնց բոլորին ալ աչքերն ըլլալու փափաք ունի՝ նախ ջանք ըրաւ ինքզինքը զսպելու, և շատ ցէշ չյաջողեցաւ. Անմնացած ձայնով գոհարավաճառին կը հարցնէր միայն թէ ինչ գին ունին այն ամեն գոհարները, որոնց օրիորդ Տըլօրմին աղուոր մատներն անցնիլը կը տեսնէր. Լօբէզ երսուն հազար, քառասուն հազար, յիսուն հազար Ֆրանք կը պատասխանէր, և իսկոյն Թշուառ սեղանաւորն ալ չկրնալով դիմանալ, սկսաւ սաստկապէս դէշ խօսիլ Հրէային և իր գոհարներուն դէմ.

Վերջապէս Մարիօն որ մինչև այն ատեն զուարճացած էր Հուսէին անձկութեամբը՝ ադամանդները Լօբէզին գործակալներուն ետ տուաւ, և իր առջևը դրաւ գեղեցիկ կերպով շինուած փղոսկրեայ Քրիստոս մը.

Սեղանաւորը Հայր առաւ.

Բայց բոլոր սեղանակիցները քննադատեցին այս ընտրութիւնը.

— Թող որ խօսին անոնք, գոչեց Հուսէ. Մի՛ . նշմարած եմ, օրիորդ, թէ կրօնական պաշտպաններ ունիս, և ատոր համար շատ անհերքելապար կը շնորհաւորեմ քեզի.

— Ուրեմն, պարոն, թող կը տաս որ պահեմ այս գեղեցիկ Քրիստոսը, հարցուց Մարիոն։

— Կ'աղաչեմ, պահէ, գեղանի օրիորդ... կ'աղերսեմ... տառապեալ ուրախ եմ քանի որ կրնամ հաճելի ըլլալ քեզ, ըսաւ սեղանաւորը. ուրախանալով և կարծելով թէ տասնուհինգ թալերու ընծայով մը կը գնէ...։ Ըսէ նայիմ, Լօրէզ, քանի՞ է Քրիստոսին գինը։

— Տասնուվեց հազար ութը հարիւր ֆրանք, պատասխանեց հրէան։

— Ի՜նչ. չե՞ս ամչնար, դահի՛ճ։

— Ճիշդ գինն է։

— Հոգի՛ս պիտի առնես, աւազա՜կ։

— Փոլ մը մար չպիտի տամ։

— Ա՜խ, ե՛թէ ազատութիւն ունենայի թիարանը ղրկելու քեզի...։

— Ճիոթթօ* մ'է սա, պարոն, կը հասկնաս, ճշմարիտ Ճիոթ-թօ մը, ըսաւ Լօրէզ որ կատարելապէս սովորած էր թշնամանքի։

— Չարագո՛րծ։

— Հարցո՛ւր կարտինալին թէ անկից ութ օր առաջ տասը հազար թալերու չլինեցի՞ իրեն ճիշդ այս Քրիստոսը։ Մեծապէս սխալեցայ սովորութիւններս փոխելովս։

— Գո՛ղ...։

— Լռութի՛ւն, ըսաւ դիցուհին, կարճ կապեցէք, կռիւ չեմ ուզեր, սո՛ւ. տուք Քրիստոսը։

— Չէ՛, չէ՛, մնմւաց սեղանաւորն ամօթահար, պահէ՛ զայն... Բայց, ըսէ՛, միթէ ծաղրելի բան մը չէ տեսնել թէ այս հրէաներն այնքան սուղ կը ծախեն պատճէն մը... մինչդեռ այնքան աժան ծախեցին բնագիրը։

. Այս խօսքին վրայ ամենքը կեցցէ՜ պոռացին։

* Ճիոթթօ կամ Անճիոլեթթօ նշանաւոր պատկերահան, քանդակագործ և ճարտարապետ մ'է որ 1276ին ծնաւ և մեռաւ 1334ին։ Ծ. Թ.

Ըհարին տեղանա որն այսպիսի համաձայնութիւն մ՚ընելուն բոլորովին զարմացած՝ վճարեց Քրիստոսին գինը, բայց երդում ըրաւ ալ չընկնելու այսպիսի կափուլ մը:

Արդ վերոյիշեալ տողերէն և գաղանի մնացած պարգևներէն կը հետևի թէ օրիորդ Տըլօրմ երեք հարիւր հազար ֆրանքի կաղանդչէք ունեցաւ:

Սակայն սրինգէն եկածը թմբուկին կ՚երթայ:»* . . . .

. . . . . . . . . . . . . . . . . . . .

Հոս նորէն կ՚սկսիմ ես ինքս խօսիլ:

Այս յօդուածները, զոր վերստին կարդալէ աղէկ զգուշացայ՝ կենացս պատմութեան մէջ անոնց տեղ մը պահելովս համդերձ՝ ամենամեծ յուսահատութեանս պատճառ կ՚ըլլային երբոր կը հրատարակուէին:

Պատուական բարեկամներ սրտառուչ կանոնաւորութեամբ մը հոգ կը տանէին զանոնք ինձ տալու:

Կաղանդչէքիս վերաբերող թերթին հրատարակութենէն օր մը ետք գացի Թէոփրաստ Ռընօտօն տեսայ, և առաջարկեցի անոր որ ինքն ըլլայ վերոյիշեալ թմբուկը:

Ընդունեցաւ:

Պարկեշտ մարդը բարեհաճեցաւ խօսք տալու ինձ թէ իր լրագրին մէջ ալ իմ վրայ բան մը պիտի չգրէ, և իր լռութեան իբր փոխարէն զիջաւ քսակս քան հազար թալերի չափ թեթեւցաւ:

Ուզի՛. թէ ապագայ խմբագիրներու ազնուութեան և անկողմնապահութեան այս ազնիւ օրինակին հետևէին:

* Այս վերջին փողը հոս փանքերէն Հայաստան կելէն հուլյա կիտէր խօս-քին [illegible]: Ր. Թ.

## Բ

Ասկից 'ի զատ Թէոփրաստ իր լրագիրը ինծ յղէ ղրկելու շնոր-հալի ազնուութիւնը ունեցաւ։ Եւ որովհետեւ ալ անոր մէջ իմ խօսքս չկար, ամեն առտու արթննալէս ետք կը կարդայի զայն։

Օր մը հետեւեալ պարբերութիւնը կարդացի այս թերթին մէջ. «Դաւադրութիւն մ'եւս։ Կարտինալն ամեն բան երեւան հանեց. տիկին Տը Շըվրէօզ Պլուա աքսորուեցաւ, եւ հանգերձա-րանի մեծ տեսուչը փախաւ։ Շատ զուարճալի նամակներու ծրար մը գրաւուեցաւ, կ'ըսուի.... Բայց լռենք եւ խնայենք էրիկին ականջներուն. իցիւ թէ սիրելի մարդը կոյր ու խուլ դառնար։»

Յայտնի էր թէ նամակները կը վերաբերէին Շալէին եւ այն խեղճ դքսուհիին որ այնքան սէր եւ բարեկամութիւն ցոյց կը տար ինծ։ Չէի կրնար աքսորէն ազատել զինքը. սակայն դէթ կ'ուզէի երկրորդ անգամ սակարկութիւն ընել այս անխիղճ խմբագրին հետ որ այսպէս կը յանդգնէր վտանգի ենթարկել դքսուհին։ Հինգ հազար ֆրանք ուզեց տիկին Տը Շըվրէօզին վրայ լռու-թիւն պահելու համար։

Շատ ծանր էր այս։

Թէոփրաստի մանր վէպերուն շատը վերաբերութիւն ունէր հայր Անտրէ անուն տեսակ մը կուշտ ու ծիծաղաշարժ քարոզչի մը, որ կիրակի օրեր կարգ ըստ կարգէ մայրաքաղաքին զանազան թաղական եկեղեցիներուն մէջ քարոզ կը տար, եւ որուն երբե-մնակի ծիծաղելի միամտութիւնները՝ շատ անգամ անհեթեթ էին։ Իր մէկ քարոզն ամբողջ շաբաթ մը խնդալու նիւթ կ'ըլլար։

Արքեպիսկոպոսը բնաւ ճարտասանութեան այս նոր տեսակը ու-զեց դադրեցնել եկեղեցական արգելումով։

Սակայն այս անօրէնութեան դէմ բողոքեց Տէ-Օկիւսթէն վանքն որուն կը վերաբերէր քարոզիչը։ Ըսուեցաւ թէ պալա-

առակախօսները զուարճացնող մը և նոյն քարոզները ժողովրդային գիտուն մարդիկը դարձի կը բերէին, և իրաւ էր այս բանը։

Ուստի թոյլ տրուեցաւ Հայր Անարէին որ իր ուզած կերպովը քարոզ տայ։ Պարզամտութիւնները վերստին սկսան։

Առաւօտ մը Մաղթաղինէի անկարգ վարմունքին վրայ կը քարոզէր.

«— Ա՛խ, տղեկներ, գոչեց Հայր Անարէ, ձեզմէ քանիներ՛ն անոր կը նմանին։»

Եւ՝ ունկնդիրներուն մէջէն մէկը ցոյց տալու ձեռք ընելով.

«— Ահա, հոն, վարը կը տեսնեմ մին որ բոլորովին նորա նմանութիւնը ունի. բայց քանի որ նէ անուղղայ կը մնայ, կ՚ուզեմ նշանակել զինքը և Թաշկինակս նորա գլուխը նետել։»

Առաւ Թաշկինակը, և ահա բոլոր կիները ծռուեցան։

«— Լա՛ւ, լսա. կը կարծէի թէ մէկ Մաղթաղինէ կայ, և ահա հարիւրէ՛ն աւելի կը տեսնեմ։»

Գանք ճարտասանական նմանութեանց. Հայր Անարէ երբ իր բնմաստութեանց մէջ այս նմանութիւնները գործածէր, խիստ պարզանակ ձեւով մը կը գործածէր։

«— Կիները, կ՚ըսէր ան, մեծ ճամբու մը տանձենիներուն կը նմանին. անցորդներն անոնց տանձերուն կը փափաքին. ոմանք պտուղը կը քաղեն, ոմանք ծառը կը կոտրեն. կան իսկ այնպիսիներ որք վրան կ՚ելնեն և բոլոր սատանաներուն պէս կը ցնցեն տանձենիները։»

Մեծ պահքի օր մը կը ջանար ապացուցանելու թէ ծոմապահութիւնը մարմնոյ առողջութեան նպաստաւոր է։

«— Ծոմապահութենէ չէք տկարնար, տղեկներ... վասն զի անով կը դեղնի՞ք, կը նիհարնաք, կ՚ըսէք, այնպէս չէ՞։ Նայեցէք, ահա նայեցէք, լսա, թեզանիքը վեր ընելով և ջղուտ ու մսեղ հաստ բազուկ մը ցոյց տալով, ամէն օր ծոմ կը պահեմ. և ահա անդամներուս ամէնէն պզտիկն այս է։»

Ծաղրէր վերապահութիւնները, և անգամ մը սրամտութեամբ կ՚ըսէր.

Կրնար երևակայուիլ թէ այս միջոցին ինչ ազդեցութիւն ըրաւ վրաս։

Տէպարոյին անուան իր արժանապատիւ բարեկամին անունին հետ միասին այսպէս քրիստոնեայ ունկնդիրներու բազմութեան մ'առջև նետուիլը լսելով, յանկարծ սարսուռ մ'ունեցայ և դէպ 'ի քարոզիչը դարձայ։

Հայր Անտրէ զարմանքս տեսաւ, և առանց նեղութեան խօսքը ինձ շրջեց.

— Է՛, է՛. դուք որ ինձ կը նայիք, տիկին, մի՞ դուցէ ճանչէք զանոնք։ Ձեզի չէ՛ի շնորհաւորեր այդպիսի ճանչւորութեան մը համար։

Վար ըրի քօղս կարմրուքս պահելու համար։

« — Օ՛ն, խոստովանեցէ՛ք, կը ճանչէ՞ք զանոնք։»

« — Ատոր վրայ օր մը կը խօսակցինք . . . խոստովանանքի ժամանակ, ըսաւ Թերէզա, որ ոտք ելաւ և խոնարհութեամբ բարև տուաւ Հայր Անտրէին։

« — Եթէ համր է տիրուհիդ, քու լեզուդ ալ պի՛նդ երկայն է, աղջիկ։

« — Բայց աչա կը տեսնէք երկայն ըլլալը, ըսաւ Թերէզա. միայն թէ հաճեցէ՛ք խօսակցութիւնը ուրիշ առենի թողուլ և ամենուն աչքը մեր վրայ չհրաւիրել այդպէս։

« — Շատախօսը դա՛ս կը տայ ինձ, կարծեմ . . . ։ Հոգ չէ. ես ալ ուրիշներուն կը տամ սաէպ . . . ամեն մէկն իր կարգին։ Ուրեմն կ'ըսէի ձեզ, սիրելի եղբայրներս, թէ այս Թէօֆիլն ստուգիւ կախաղանի արժանի է, և իր բարեկամը՝ Պարոն Վալէ Ցէպարօ սատանան գերազանցող մ'է. ասոնք երկու անաստուածներ, ամբարիշտներ. երկու անուղղայ սրիկաներ են։ Թէօֆիլ Ցէպարոյին տունը փլեց. բայց բոլորովին փլեց, մօրէ մերկիկ մնալու չափ անանկացուց։ Արդ գիտէ՞ք թէ կատակի ալ աղւէս ինչ միջոց հնարեց թոյլ չտալու համար իր բարեկամին որ լեզուն բերանէն դուրս կախէ և մէկ շապիկով մնացած ըլլալը յայտնէ։ Մէկին դէմ հարիւր, մէկին դէմ հազար դրաւ կը

գնեմ... եթէ կը գուշակէք... բայց չէք գուշակեր, այնպէս չէ՞... ամենեւին չգիտէք թէ ինչ է այս միջոցը։ Ըսեմ ուրեմն. այս Թէօփիլը, այս երկիցս ստահակը, այս անամօթ սրիկան Բարիզի մէջ ժանտախտը տարածեց...։ Հա՛, հա՛, կը վախնա՞ք. հնհնո՞ւք կը տայ ձեզ այս բանը։ Հանդարտեցէք, ամենասիրելի եղբայրներս, կրնաք զգոյշ կենալ ժանտախտէն. պէտք բանալին միայն որոնք որ պիտի ուզեն բռնուիլ այդ ժանտախտէն։ Ձեզ թուական պէտք ըլլայ հեռանալ գրավաճառներուն կրպակէն, ուր կը գտնուի այն հրէշածին գիրքը, այն սարսափը, այն ճշմարիտ ժանտախտը, զոր այս շուն Թէօփիլը նոր տպագրեց։»

Հայր Անտրէ գրպանէն հատոր մը հանեց, և ունկնդիրներուն առջև շարժեց.

«Այս է ահա այն խայտառակ երկը, անաստուածութեամբ և անկրօնութեամբ լի այն գիրքն որ մոլութեան և անառակութեան կը գրգռէ ընթերցողը. վերջապէս այն գիրքն որ սուրբերը քննադատելու, Կոյս Մարիամը ծաղրելու և կրօնաւորներուն դէմ զրպարտելու կը յանդգնի՜...։ Վերնագիրն է Բառնաս Երգիծաբանական։ Երեք հինգնոց, վեց քսաննոց և ութ տասնոց տուփ գնելու համար, և մէն մի երեսին ընթերցումին այնքան սրամտեցայ որ պայթելուս մազ մնաց։ Անիծեա՜լ ըլլաս, Թէօփի՛լ, անիծեա՜լ ըլլայ այն դժոխային միտքն որ ստանաւորը քեզ թելադրեց. անիծեա՜լ ըլլայ այն ձեռքն որ գրեց այս գիրքը. վա՜յ գրավաճառին որ հրատարակեց, վա՜յ անոնց որք կարդացին կամ պիտի կարդան այդ ստանաւորները. վա՜յ անոնց որ քեզի կը ճանչեն կամ ճանչեցին...։ Յաւանակ մ'ես, ջորի մ'ես, կով մ'ես։ Ի՞նչ կ'ըսեմ, կո՞վ. կովի մը միսն աղէկ կը խաշուի, աղէկ կը խորովի... բայց քու կեդ, աւազակ... բայց քու կեդ, ապիրատ, միայն շամփուրի կը ծառայէ...։ Այսպէս պիտի շամփրուիս խիստ մօտերս... այո՛, շամփո՛ւրը պիտի անցնիս, և լցի՛ւ թէ Տէպարօդ ալ հետդ ըլլար։ Հոս գրքիդ դէմ կ'որոտամ. ուրիշները զայն դատարանին առջև ամբաստանելու վրայ են։ Առաջին նախագահն և տէրութեան ընդհանուր փաստաբանը յուսամ թէ

պիտի փութան Բարիզը այդ ժանտախտէն ազատելու։ Թեթեւամիտ պարոններս, կրօնաւորները կը ծաղրէք, հա՞. լաւ, հիմակ ալ կրօնաւորները ձեզի պիտի ծաղրեն, և պիտի տեսնենք թէ ինչ աղուոր երես պիտի ունենաք Գրէվի հրապարակին վրայ գլխատուելու ժամանակ։»

Հայր Անտրէ այս կերպով ժամէ մ'աւելի ճառաբանեց, բայց իր ատենաբանութենէն բաւական կտորներ նշանակեցի հոս գաղափար մը տալու համար այն տպաւորութեան վրայ զոր կրեցի անոր այսպէս խօսիլը լսելով։

Սարսափով համակուած էի։

Երեք տարիէն աւելի էր որ Տէպարօյին վրայ խօսուիլը չլսեր էի, և յանկարծ՝ տարակուսիլ չկարենալու կերպով՝ կ'իմանայի թէ այս ապիրատ Թէօֆիլն՝ որուն ազդեցութեան դէմ 'ի նանիր պաշտպաներ էի առաջին սէրս՝ բոլորովին կործանած էր Եմմանուէլը և զան օրինաց վրիժառութեան կ'ենթարկէր։

Այն ժամանակ օրէնքն անգթաբար կը պատժէր Եկեղեցիին և իր վարդապետութեանց դէմ յարձակողները։

Արդ՝ հայր Անտրէին բուն ճառէն հասկցեր էի թէ Երգիծաբանական Բառնասը դեռ նոր հրատարակուած էր։ Հետեւաբար հեղինակին դէմ դատավարութիւնն անշուշտ սկսած էր տակաւին։

Կրնայի Տէպարօյին իմաց տալ և ազատել զինքը մեղսակցութեան ամբաստանութեան մը վտանգէն։

Հայր Անտրէին բեմէն մինչև իջնելը չհամարձակեցայ դուրս ելնելու. կարող էր նորէն ինձ շրջելու իր խօսքը։ Միայն աղաչեցի Թեբրէզան որ կերպով մը դուրս ելնէ առանց քարոզը շփոթելու, և երթայ էրիկին ըսէ որ կառքս տաճարին դրան առջեւը բերէ։

Հետի եկեր էինք եկեղեցին։

Սպասուհիս շատ յաջողակութեամբ ունկնդիրներուն մէջէն սպրդելով անցաւ, և այս դասալքութիւնը վանականէն չնշմարուեցաւ։ Այն միջոցին սա կ'աշխատէր անիծից և հայհոյութեանց բոլոր բառարանը յիշելու որպէս զի Թէօֆիլին և իր գրքին վըրայ թափէ զանոնք։

Հայր Անտրէ քարոզը սկսած կերպովը վերջացուց, բոլոր ու-ժովը դողելով.

« — Թէօֆիլ և Տէպարօ. Տէպարօ և Թէօֆիլ, աւազակներ, սրիկաներ, կախուելու արժանի չարագործներ են։»

Ապա բեմէն իջաւ, և ժամէն մեկնելու փութացի։

Բայց հազիւ դուրս ելեր էի, և ահա բոլորովին շնչասպառ ժամկոչ մ'ետևէս վազեց և ծանոյց ինձ թէ քարոզիչը կը փա-փաքէր զիս տեսնել։

— Ո՞ւր, հարցուցի։

— Սրբատան մէջ, պատասխանեց ժամկոչը։

— Անհանգիստ ըլլալը կիներուն չպատկանիր. ըսէ տէր հայ-րին որ ինք գայ, եթէ սիրտը կ'ուզէ. հոս կառքիս մէջ կ'սպա-սեմ իրեն։

Կրասէն հինգ վայրկենէ 'ի վեր ժամին դուռին առջևն էր։

Կառքին պատուհանը վար ըրաւ։ Հրամայեցի որ բաց թո-ղու դռնակը, և Երևէլ ատենաբանին սպասեցի։

Շուտով Հայր Անտրէ մեծ դրան քովը երևցաւ։

— Շնորհաւորութիւններս ընդունելո՞ւ կը գաս, պարոն։

— Ո՛հ, չէ՛, տիկի՛ն Մագթաղինէ. կ'ուզեմ ըսել միայն թէ կը ճանչեմ քեզի։ Ունկնդիրներուն մէն քովս եկաւ երբ բեմէն իջայ, և անունդ տուաւ ինձ։

— Իրա՞ւ։

— Այո՛, այո՛... Մարիոն Տըլօրմն ես։ Տէպարօ առաջին սի-րողդ եղաւ. ահա այս պատճառաւ սարսուռըդ տեսայ քիչ մ'ա-ռաջ...։ Հա՛, իրաւ կ'ըսեմ թէ բաղդ ունիս։

— Ինչո՞ւ համար, պարոն։

— Եթէ աւելի կանուխ ճանչցած ըլլայի քեզի, բոլոր ունկն-դիրներուն առջև քեզի կ'ամչցնէի։

— Քեզի համար շատ հանճարեղութիւն մ'եղած կ'ըլլար ատի։

— Ո՛հ, ես հանճարեղ ըլլալ չեմ ուզեր։

— Զուզելդ կը նշմարուի։

— Այնպէս չէ՛....։ Ըսէ՛ նայիմ, Տէպարօյէն ետքը մինչև հիմա քանի՞ սիրող ունեցար... քանի՞ չափ։

— Չհամբեցի, տէր հայր։

— Կը յորդորեմ քեզի որ ծուխս ըլլաս, թէ ոչ դժոխոց ամենէն խորունկ յատակը պիտի երթաս։

— Կարելի՞ է։

— Պիտի գեհենապարտուիս առանց ողորմութեան.... Հիմակ ո՛ւր կ'երթաս այդպէս։

— Շատ հետաքրքիր ես։

— Պիտի աղաչէի որ թողուս զիս կառքդ մտնելու, տրամալի մեղուհիս, որպէս զի քեզի մեղայի բերելու ձեռնարկութիւնս սկսիմ։

— Ո՛րքան ժիր ես, տէր հայր։

— Կը հաւանիս։

— Չէ՛, չէ՛, այս առտու չէ.... Այս շաբթու օր մը կամ երբոր ուզես Տէ Թուրնել փողոցն եկուր. վանքիդ համար յիսունի չափ լուիձի պիտի տամ, բայց շնորհքի մը փոխարէն, զոր ինձ ընելդ կ'աղաչեմ։

— Ի՞նչ շնորհք։

— Այսուհետեւ Ճարտասանական Ճառերուդ մէջ Տէպարօյին մի՛ դպնար։ Այն Թէօֆիլն է միայն յանցաւորը։ Շամփուրն անցունել տո՛ւր զան, կը հաւանիմ. բայց միայն զինքը շամփուրին տո՛ւր։

— Տէպարօն աղատե՞լ կ'ուզես, գոչեց. մինչես կ'անցնէր ատի, եւ շիտակը ըսելով ես ալ ատոր վրայ կ'ուզէի խօսիլ հետդ։

— Փրկութիւնը արգիլելու պիտի չաշխատիս։

— Ամենեւի՛ն, գեղանիդ իմ.... Քարոզներուս միշտ վստահիլն իրաւունք չէ։ Շատ անգամ բառծիս հակառակը կ'ընեմ... երբ մեղք չկայ, կը լռեմ. Ծաւա միայքով մի՛ առներ այս խօսքս Արգ. խոստ կը տամ քեզ որ անփոյթ չմնաս։ Երկու անբրկիւղ ճիզվիթներ, հայր Կօբաս եւ հայր Վաւաղէն, յանցաւորները փնտռելու ելած են։

— Ա՛խ, Աստուած իմ, Աստուած իմ.... Բայց ո՞ւր կը գըտնուի Տէպարօ։

— Տը Լա Հարբ փողոցը, Ամիօ գրավաճառին կրպակին մէջ. Հոն կը բնակի Թէօփիլին հետ։

— Ի՞նչ. գիտե՞ս ուրեմն անոնց մնատունը։

— Այո՛։ Գիրքը հրատարակուած միջոցին իսկ կրնայի զանոնք մատնել և դատաստանական իշխանութեան ճիրաններուն յանձնել. սակայն ժխոր հանելը բաւ կը համարիմ. այդ ապիրատներուն մահը չեմ ուզեր, թո՛ղ դարձի գան և ապրին, ուրիշ բան չեմ ուզեր։

— Ա՛հ, տէր հայր, արժանապատիւ մարդ մ'և սրբակրօն քահանայ մ'ես։ Այս իրիկուն, ժամն ութին եկո՛ւր։ Եթէ յաջողիմ, քեզ երեք հազար թալեր կը խոստանամ Տէ Կրանդ-Օկիւսթէնի մատուռը նորոգելու համար, որ փլուելու վիճակի մէջ է, կ'ըսեն, իրա՛ւ է։

— Երե՛ք հազար թալեր, գոչեց հայր Անտրէ, աշխարհիս մէջ չկայ տեղ մ'ուր մերժուի այդ գումարը։ Շուտ գնա՛, և՝ եթէ ինձ մտիկ կ'ընես՝ ազատէ՛ նոյնպէս սա անպիտան Թէօփիլը։ Ինչո՞ւ Պերլզեպիւթին հոգի մը տանք յօժարութեամբ սրտի։ Այս սատանան ագան կամ անագան պիտի առնու անոր հոգին, եթէ չսրբանայ այն։

— Իրաւունք ունիս, ըսի, կրցածս ընելու պիտի աշխատիմ. . . ։ Այս իրիկո՛ւն ուրեմն։

— Ա՛յս իրիկուն ուրեմն, խե՛ղճ կոյսդ իմ յիմար . . . բայց թերևս շատ պիտի ներուի քեզ, վասն զի սոսկալի կերպով սէր զգացիր։

— Աստուա՛ծ լսէ ձայնդ, տէր հայր։

— Հանգիստ եղի՛ր, Աստուած բարի մարդ մ'է, և ուշ կամ կանուխ անոր հետ գործերդ պիտի կարգադրեմ։

Հայր Անտրէ նորէն եկեղեցին մտաւ։

Կ'սքանչանայի զարմանալի պարագաներու այս համադիպութեան վրայ, պարագանե՛ր, որոնց, բա՛րէ, այն օրն իսկ ուրիշ շատ արկածներ պիտի յաջորդէին։

Տասնութ ամիսէն ետք միայն կրցայ այլանդակ քարոզիչս տեսնել և երեք հազար թալերը համրել իրեն։

Կրասէն հրամաններս առաւ, ձիերը մորակեց, և սալայատակներէն կայծ հանելու չափ վազցուց ձիերը մինչև Տօֆին փողոցն ուր կը բնակէր Նոտարս։

Ասոր անունը Փրուասար էր, և զինքը դուրս ելնելու պատրաստ գտայ։

— Անտուկդ դարձի՛ր, բարեկամ, հարիւր հազար ֆրանք կ'ուզեմ հիմա։

Փրուասար նիհար, գունատ, անշուք և իր յաճախորդներուն շահույն անձնուէր պզտի մարդ մ'էր։

— Ո՞ր հովը փչեց տանիկ մեծկակ գումար մ'ուզելդ, մնմնաց։

— Իմ գիտնալու բանս է աս։

— Վստահութիւնդ իզմէն կը վերցնե՞ս։

— Ամենևի՛ն, Փրուասար։

— Շա՛տ աղէկ... Ուրեմն գոյքիդ վարչութեան պաշտօնը կը պահե՞մ։

— Այո՛, սիրելիդ իմ, և միշտ պիտի պահես։

— Գիտե՞ս թէ որքան ստակդ պիտի մնայ, եթէ առնուս այդ քսած գումարդ։

— Չէ՛։

— Քսան հազար ֆրանքդ պիտի մնայ միայն։

— Քանի որ այդպէս է, ամենը տա՛ր։ Թէօֆիլ երբէք չպիտի հաւանի առանց ստակի փախելու. իսկ այն ստակը զոր միւս կողմէն հայր Անդրէին խոստացայ.... Շուտ ըրէ՛, վայրկեան մ'անգամ չեմ կրնար կորսնել։

— Անարժաժ. բոլորովի՛ն անարժաժ պիտի մնաս, գոչեց պզտի մարդն՝ ոտքը գետինը զարնելով։

— Բա՛հ. ատի այլանդակ բան է։

— Շատ այլանդակ... բայց կրօ՛ղը տանի զիս, եթէ փուլ մը տամ քեզ....։ Ի՛նչ. չե՞ս ամչնար. ո՞ր Ըրնօտօյին, ո՞ր աղտոտ խմբագրին բերանը գոցել կ'ուզես դարձեալ ստակով։

— Փրուասա՛ր, բարեկամ, գիտողութիւններդ անախորժ են ինծ։

— Կարելի է, բայց չպիտի հաւանիմ, և շահերդ քու կամքիդ հակառակ իսկ պիտի պաշտպանեմ։

— Ֆրուասա՛ր, բարեկամ, Տէ Թուրնէլ փողոցին մէջ հարիւր հազար թալերէն աւելի արժողութեամբ ադամանդներ ունիմ․․․։

— Է՛, ետքը։

— Հիմա կ'երթամ կ'առնեմ այն ադամանդները և կը տամ այն գումարին տեղ զոր կը մերժես։

— Իրա՞ւ կ'ըսես։

— Եւ այս կերպով երկու հարիւր հազար ֆրանք միայն կրել պիտի տաս ինծ, Ֆրուասար։

— Բայց այդ ընթացքով ութ օրուան մէջ մոխիրի՛ վրայ պիտի նստիս։

— Նորէն կ'ըսեմ, բա՛ց սնտուկդ, ա՛ռ գումարը, վրադ պահէ՛ և տանէ՛ս եկո՛ւր։ Եթէ չգովես այդ գումարը ինչ բանի գործածել ուզելս, ազատ պիտի ըլլաս հետդ ետ բերելու։

— Կ'երդնո՞ւս։

— Կ'երդնում։

Ֆրուասար հառաչելով իր արկղը բացաւ, գումարը հանեց մէջէն և հետս վար իջաւ։

— Տը Լա Հարբ փողո՛ցը, կըսաէն։

Երեք վայրկենի մէջ հոն հասանք և իջանք փոքրիկ անշուք կրպակի մը դրան առջև, ուր ամեն տեսակ հին գիրքեր 'ի ցոյց դրուած էին։

— Ամիօ գրավաճառն ո՞վ է, հարցուցի։

— Ես եմ, ըսաւ երկայնահասակ չոր մարդ մ'որուն արմուկին հազիւ կը հասնէր Ֆրուասար։

Մինչև դուռը յառաջեց գրավաճառը, կարծես մեզ թոյլ չտալու համար որ կրպակէն աւելի ներս մտնենք։

— Ո՛, ո՛, վարպետ, ըսի, կը սխալիս եթէ մեզի ստախօսութեան մարդեր կը կարծես. Եկեղեցականական Բարձոսին օրինակները գնելու չեկանք։

Եւ կամաց մը շարայարեցի․

— Պ. Վալէ Ցէպարոյին սենեակը տար մեզի։

Աչքիս մէջը նայեցաւ և կարծես ուրիշ բանի սպասեց։

— Ատի՞ է ձեր ինձ բոլոր ըսելիքը, հարցուց գրավաճառը։

— Այո՛, չհասկցա՞ր ինչ ըսելս։

— Ո՛չ, տիկին։

— Է՛, է՛, գաղտնապահութիւնը մէկ կողմ դիր . . . ։ Անշուշտ հրամանախօս մը կայ, զոր չգիտեմ . . . հոգ չէ . . . ։ Ըսէ՛ հիւ-րիդ որ Մարիօն հիմակ իսկ իր հետը խօսիլ կ'ուզէ։

— Որո՞ւ հետ խօսիլ։

— Ցէպարոյին հետ։

— Այդ անունը անծանօթ է ինձ։

— Դժուարաւ կը հաւատամ անծանօթ ըլլալուն, քանի որ հայր Անտրէ դեռ քիչ մ'առաջ ըսաւ ինձ թէ Թէօֆիլ և Ցէպարօ հոս կը բնակին։

— Հայր Անտրէ՞ն, մռմռաց գրավաճառը։

Եւ աթոռակի մը վրան ինկաւ ահարեկ դողալով։

— Հանգիստ եղի՛ր, ըսի բարեկամներ ենք։

— Հայր Անտրէ՞ն . . . ուրեմն մեռայ։

— Ո՛չ, վարպետ, ատի ա՛լ խելքի մտքի դէմ է . . . ։ Կրնաս մեզի ներս առնուլ, և Ցէպարօ շնորհակալ պիտի ըլլայ քեզմէ։

Առանց պատասխանելու յանկարծ ոտք ելաւ գրավաճառը, կրպակին դուռը փակեց, գոցեց, երկու անգամ բանալին դարձնելով կղպեց, և գրպանը դրաւ բանալին։

— Ի՛նչ կ'ուզէ թող ըլլայ, հոգս չէ՛, գոչեց. կեանքս վտանգի մէջ է . . . ։ Եթէ այս մասին բռնադատուիմ, ամէն բան աչքս կ'առնում և չեմ նահանջեր։ Այո՛, Թէօֆիլ և Ցէպարօ տունս են։ Բոլորը տալու պատրաստութիւնը ըրի. անոնց մեղսակիցն եմ . . . բայց կ'երդնում թէ լրտեսները կենդանի պիտի չելլեն տանէս։

Ֆրուասար ժպտեցաւ։

Ես ալ իմ մասիս քիչ հանգիստ էի։

Ամիօ աթոռակը բռնեց, և անով ձեղունին մարդակներուն ե-

րեք անգամ զարկաւ առանց բարձրանալու։ Գրեթէ անմիջապէս կրպակին ծայրը պատին միջեւը շինուած սանդուղէ մը կնկան մը իջնելը տեսանք։

— Բո՛զ, հոս եկո՛ւր, գոչեց գրավաճառը։

— Ի՞նչ կայ, սիրելիդ իմ, հարցուց խեղճ կինն որուն նահատակի կերպարանքը տեսնողին գութը կը շարժէր։

— Խոստովանանքի՞ գացիր, շո՛ւն։

— Չէ՛, բարեկամ։

— Ի՞նչպէս կը համարձակիս սուտ խօսելու, ըսաւ ոտնալով եւ աթոռակը թշուառ կնկան մինչեւ ճակատին բարձրութեամբը վեր ընելով։

Առջեւ նետուեցայ թեւը բռնելու համար։

— Պարոն, ըսի սրտմտութեամբ լի ձայնով մը, կը հրամայեմ քեզ որ զիս Պ. Տէպարօյին տանիս, որուն առջեւ պէտք է տալ ամեն տեսակ բացատրութիւն։

— Է՛, Տէպարօդ բոկո՛տն մ'է։ Ա՛լ փուլ մ'անգամ չունի...։ Թէօֆիլին միայն կը հնազանդիմ։

— Միայն անոր հնազանդիլդ քաղաքավարութենէդ եւ շնորհալի ընթացքէդ կը հասկցուի։

Կատաղի դէմքով ինձ նայեցաւ։

— Աղէկ, աղէ՛կ... հիմա պիտի գիտնանք թէ ինչ փնտռելու եկար հոս։ Առ այժմ հայր Անսըլէ քեզի ղրկեց, եւ այս բոզը միայն կրցաւ մեր գաղտնիքը անոր յայտնել...։ Պիտի խոստովանիս, ըսաւ վերստին ներա գանկը ջախջախելու սպառնալիքը ընելով։

— Մեռցո՛ւր զիս, եթէ կը հաճիս, ըսաւ տարամաբեկ կինը՝ ծունկի վրայ գալով, բայց քեզի եւ մեր զաւակները ազատելու համար գործեցի... եթէ հայր Անսըլէ կը ղրկէ մեզ տիկինը, նէ անշուշտ դիտաւորութիւն ունի մեր փրկութեան զբաղելու։

— Իրաւ է, տուր կը հաւատեմ քեզ, ըսի գրավաճառին։

— Որո՞ւն պիտի կլլեցնես ատի. սոսկալի՛ քահանայ մ'որ առաւօտէ՛ն մինչեւ իրիկուն մեզի դէմ քարոզելու կ'զբաղի։

— Իր մեծաւորներն այսպէս կը հրամայեն իրեն, բարեկամ։

— Ինչ և է, յայտնի է թէ պատուէրիս հակառակ վարուեցար... խոստովանեա՛նք եղար։

— Ո՛չ...։ Հայր Անտրէ ինքն անձամբ եկաւ։ Բացակայ էիր։ Ճանչեց Թէօֆիլը երբ սա Պ. Տը Լա Րօշֆիւյօնին տունէն ետ կը դառնար...։

— Լմնցո՛ւր։

«— Այս մարդուն մեր տան մէջ գտնուիլը ձեզի վտանգի տակ կը թողու, և ուղղակի միջամտութիւն մը կը հաստատէ, ըսաւ Հայր Անտրէ։ Սակայն ամեն ջանք ՚ի գործ պիտի դնեմ ձեզի այդ վտանգէն ազատելու համար։»

— Է՛, պարոն, ըսի գրավաճառին, համոզուեցա՞ր հիմա։

— Չէ՛, կրօնաւորներուն միհանձնութեան չեմ կրնար հաւատալ։

Եւ կռուփը իր կնկան կզակին տակը դնելով.

— Եթէ գործը գէշի դառնայ, նայէ՛ ինչ պիտի ընեմ քեզի, ըսաւ։

Եւ նշան ըրաւ մեզ իր ետևէն երթալու, դէպ ՚ի կրպակին ներսն ուղղուեցաւ, և ձեռքը գիրքերով բեռնաւորուած դարակներուն տակը խօթեց։ Մատենատան մէկ տախտակին մէկուսիլը տեսանք. ոչ ոք կրնար կարծել թէ այս տախտակին ետևը դուռ մը կար։

— Մտէ՛ք, ըսաւ մեզ։

Կը գտնուէինք նեղ անցքի մը մէջ որ խոնաւ և խաւարամած էր։ Այս փողին ծայրն երկրորդ դուռ մը կար, զոր բացաւ Աքիօ և գլուխը ներս դրաւ՝ միանգամայն թոյլ չտալով մեզ որ շեմէն անցնինք։

— Տէպարօ հո՞դ է։

— Կրողի՛ն գնա՛... ինչո՞ւ եկար ընդմիջեցիր մեզի, ըսաւ կոշտ ձայն մը։

Այս ձայնին Թէօֆիլինը ըլլալը ճանչցի։

— Բռնադատուեցայ գալու, ըսաւ գրավաճառը։

— Անէ՛ծք. արդեօք ոստիկանութեան մէկ քանի լրտեսը մեր հետքը երևան հանեց։

Այս անգամ Տէպարոյին ձայնը ճանչեցի ։

— Չէ՞, կին մ՚է եկողը ։

Ամբոն կոշտաբար հրեցի և ներս մտայ ։

— Այո՛ , կին մ՚է . . . կի՛ն մ՚որ կ՚ուզէ իրեն դէմ բռնած ընթացքիդ վրէժը առնուլ . . . բայց սակայն սիրուած ապերախտէ մը վրէժ առնելու կերպով ։

— Մարիո՛ն . կարելի՞ բան է , գոչեց Տէպարօ ,, ելնելով սեղանէն որու վրայ գիր կը գրէր ։

Վազեց զիս համբուրելու համար . բայց կանգ առաւ ամօթահար , և չհամարձակեցաւ պագնել ։

— Օ՛, օ՛, պարոն , վեհերո՛տ եղեր ես . . . ։ Տէ՛ , պագ . . . ահա այտերս . . . ։ Վրէժխնդիրն է այս ։

— Պատուական աղջիկ . . . ինչ . իրաւ դուն իմը՞ ես . . չեմ երազեր . . . ։ Այո՛ , մեծ անիրաւութիւններ ըրինք քեզի դէմ . բայց Աստուած մեզի սաստիկ պատժեց մեր այս անիրաւութեանց համար , խեղճ Մարիոնս ։

— Աստուա՛ծ , շատ սպասիր կ՚ընես Աստուծոյ , ըսաւ Թէոֆիլ . այնպէս չէ՞ , տիկին . . . ։ Կը ճանչէք կարծիքներս . . . մի և նոյնն են միշտ . . . ։ Բարի եկաք այս խրճիթն ուր թշուառութիւնն և օրինաց խստութիւնը մեզի կ՚աքսորեն ։ Կը համարձակիմ հաւատալ թէ մեր հին ոխակալութենէն բան մը չպահեցիր ամենևին , այնպէս չէ՞ ։ Մինչդեռ մենք չքաւորութեան մէջ կը տապլտկինք հիքաբար , դու , ըսուեցաւ ինձ , փարթամութեան մէջ կը լողաս . . . քիչ մ՚ինձ կը պարտաւորիս այդ փարթամութիւնը ։

— Այո՛ , պարոն , ըսի , և իմ յատուկ դիտաւորութիւնս է երախտագիտութիւնս յայտնել քեզ ։

— Մի՛շտ հեգնասէր . . . ։ Հոգ չէ , եթէ դրամ կը բերես մեզ , շատ պատեհ ժամանակին կը բերես ։

— Ճիշդ է , դրամ բերի , պարոն , և ահա նօտարս ։ Իր միջնորդութեամբը պիտի կրնանք համաձայնիլ ։

— Ո՛հ , ըսաւ Էմմանուէլ Թէոֆիլէն՝ յանդիմանական ձայնով մը , չե՞ս ամչնար ։

— Հանդարտ թո՛ղ զիս . . . Հրեշտակ մ'է այս կինը . . . . . Հաճէ՛ նստելու, շարայարեց՝ հին թիկնաթոռ մը տալով ինձ։

Ըմմանուէլին ձեռքը սեղմեցի, և շատ ցած ձայնով մռմռացի.

— Խե՛ղճ բարեկամ, ամե՛ն բան կանխատեսեր էի։

— Իրաւ է, պատասխանեց։

Եւ իր բիբէն արտօսրի մը տահիլը տեսայ։

— Կասկածներուդ անիրաւ ըլլալը հիմա կը հասկնա՞ս, ըսի՝ խօսքս Ամիցյին ուղղելով։ Թո՛ղ մեզի և ա՛լ մի՛ չարչարեր կնիկդ։

Գրավաճառը դուրս ելաւ կորագլուխ։

Նշան ըրի Ֆրուասարին որ աթոռ մ'առնու և նստի սեղանին քովը։

Կը գտնուէինք տնակ մը գետնի մառանի մէջ, որ գրեթէ փողին պէս խոնաւ էր։ Պատուհանի երկաթ չէր տեսնուեր, և սենեակը լոյս կ'առնուր երկու պղնձեայ ճրագէ, որոնց մին սեղանին վրայ դրուած և միւսն ալ մթին պատէ մը կախուած էր։

— Բարեկամ, ըսի Տէպարոյին, պատմէ՛ ինձ ինչ որ տեղի ունեցաւ այն օրէն 'ի վեր ուր Լօրէնի մէջ զատուեցանք։

— Պատմելու քաջասրտութիւնը չունիմ, պատասխանեց հառաչանքով։

— Լաւ, ե՛ս պիտի ունենամ այդ քաջասրտութիւնը, ըսաւ Թէօֆիլ։ Անգլիա, Ալմանիա և Իտալիա գացինք ման եկանք. տեսանք մեծն Հռովմը, գեղեցիկն Վենետիկը, հեշտասէրն Կոստանդնուպօլիսը։ Հռոմի մէջ պապին և իր վարդապետութեան վրայ խիծ ու բիծ գրինք, և պապը Վատիկանի բարձունքէն բանադրանքի շանթերը արձակեց մեզի դէմ։ Պարզամիտ մարդը կը կարծէր թէ մեզի պիտի մեռցնէ իր ռմբալի փամփուշտներովը . . . ։ Այն ատենէն 'ի վեր քաջողջապէս կ'ապրիմ սակայն.

— Քեզի համար շատ գոհ կ'ընէ զիս քաջողջութիւնդ, պարոն.

— Վենետիկի մէջ. . . .

— Ո՛հ, մեր պարագաները պատմելու հարկը չեմ թողուր քեզ։

— Պատճառը. կարճ պիտի խօսիմ։ Մանաւանդ որ, շարայա-

րեց հեգնական ձայնով մը, Տէպարօ կարող չէ պատմելու ։ Աչերը քու աչերէդ չեն զատուիր. յիշատակն անոր սրտին բախում կը տայ, և շատ բնական է այդ բանը . . . առաջուանէն շատ աւելի զմայլելի կը գտնէ քեզի ։ Գէթ զէնքը վերստին մի յափշտակեր ինձմէ . . . վագրի մը պէս նախանձոտ եմ ։

— Պարոն, խօսելու թեթև կերպդ յարմարութիւն չունի զիս հոս բերող պատճառին հետ ։

— Իրաւ է, ըսաւ Տէպարօ Թէօֆիլին. լռէ՛ . . . ։ Բաւ ան- պէ՛ իմանալդ, Մարիոն, թէ բոլոր ժառանգութիւնս խաղին և յիմարութեան վիհը նետեցի ։

— Բա՛, պիտի վերադարձնեմ քեզ ժառանգութիւնդ. նորէն գանձերու մէջ պիտի լողանք, և գրաւ կը դնեմ թէ Բուրնուէն քան հազար օրինակ պիտի ծախուի ։

— Այո՛, պարոն, եթէ սակայն Խորհրդարանը Կրէվի հրապարակին վրայ չայրէ գիրքը և հեղինակը ։

— Ինչպէս այրուեցաւ իմ մեծ-հօրեղբայրս իր Հաստատէն Ճանփա-ախոփն անուն գիրքովը, ըսաւ Էմմանուէլ դառնապէս ։

— Շիտակը, աղուո՛ր գուշակութիւն կ'ընես մեզի դէմ, բարեկամ, ըսաւ Թէօֆիլ ։

— Խոստովանէ՛, ըսի Թէօֆիլին, որ աղետալի հետևութիւններէ վախ ունիս . . . և կը պահուիս, այնպէս չէ՞ ։

— Անշուշտ. բանտէն կը վախնամ. սակայն տասնեօթերորդ դարու մէջ հրատներ չեն վառուիր ա՛լ ։ Ասկից 'ի զատ Էմմանուէլ ամենևին վտանգի մէջ չէ. միայն ես ստորագրեցի մեր երկուքին շինած մէկ գիրքը ։

— Բայց գիտեմ թէ բարեկամդ է Տէպարօ. միշտ անբաժանելի տեսնուած էք. մէկին դէմ բացուած դատը նաև միւսին դէմ պիտի ըլլայ ։

— Չէ՞ր ըսէիր, տիկին, թէ ոսկի կը բերես, հարցուց Թէօֆիլ լրջութեամբ մ'որմէ կարմրեցաւ Տէպարօ ։

— Պատրաստ եմ քեզ ոսկի տալու, պարոն, եթէ կ'ուզես փախչիլ ։

— Էմմանուէլի՞ն հետ։

— Չէ․ մինակ։

— Կը հասկնամ միտքդ․ ․ ․ ։ Շնորհակալութիւն․ կը մերժեմ։

— Բայց երդո՞ւմ ըրած ես կործանելու զինքը, գոչեցի, չկրնալով ինքզինքս աւելի զսպել։

— Այդ խօսքերն ամենեւին ազդեցութիւն չունին, տիկին, և՛ ինչպէս ըսի արդէն՝ վտանգաւոր երկի մը բոլոր պատասխանատուութիւնը կ՚ընդունիմ։ Կը կարծէի թէ Տէպարօյին քեզի համար առենօք ցոյց տուած առատաձեռնութիւնը յիշեցիր և այսօր եկար փոխադարձ առատաձեռնութեամբ մը վարուելու․ ․ ․ ։ Եթէ սխալեր եմ, կը ցաւիմ․ ․ ․ բայց պէտք է աղէկ որոշել հոս մեր միասնական կացութիւնը։ Ես եմ ձեր սիրային յարաբերութեանց կտրուելուն միակ պատճառը․ ․ ․ կ՚երեւակայեմ թէ լսեցիր այս բանը, այնպէս չէ՞․ մարեշալն այս մասին ամեն տեսակ բացատրութիւններ պիտի տար քեզ, վասն զի իր շահը կը պահանջէր որ տար։

Բարկութեան շարժում մ՚ըրի։

— Արդ, շարայարեց Թէօֆիլ, Էմմանուէլ և ես չզատուեցանք ամենեւին այն օրէն 'ի վեր ուր գործերը այնքան դիւանագիտաբար (diplomatiquement) և վայելչապէս կարգադրեցի։ Մահը միայն կրնայ բաժնել մեզի։ Աւելի բացը ըսեմ․ ․ ․ ։ Ձախորժեցար այն թեթև կերպէս որով նախ խօսեցայ հետդ, և զիս կը բռնադատես ծանր և անկատակ ըլլալու․ լաւ․ կործանեցի Տէպարօն, որպէս զի այսուհետև ես ըլլամ միայն իր ապաւէնը։ Տէպարօ գիտէ այս բանը և կը ներէ ինձ։

— Ահա շատ տարօրինակ բարեկամութիւն մը, ըսի։

— Ազատ ես, տիկին, ամեն բան ենթադրելու, բաց 'ի մեր բաժանման հնարաւորութենէն։

— Իրաւ է, ըսաւ Էմմանուէլ շտապաւ, խօսքին վերջ տանք։

Էմմանուէլին նայեցայ․ իր շրթները կը ժպտէին և կը սարսուէին։ Աչքը դարձուց, իբր թէ վախնար իմինիս հանդիպելու։ Թէօֆիլ կը ժպտէր ժպիտով մ՚որմէն սիրտս սարսուռով դողալ զգաց։

— Ո՛Հ, մոռցայ, խայտառակութեան այս աստիճանին իջնե՛լ, կարելի՞ բան է, Աստուած իմ։

— Բացատրէ՛ միայն, տիկին . . . բարեկամներու մէջ ամէն խնդիրներու վրայ կը խօսուի։ Օ՛ն, անկեղծ եղիր . այս միջոցին կասկած մ՚ունիս . . . ստուգութեան փոխէ՛ այդ կասկածը։ Դէթ այդ կերպով ամէն յարաբերութիւն բոլորովին պիտի դադրի , և ուրախութեամբ կը դրգռեմ այդ դադարումը։

Տէպարօ ուղղ ելաւ հրացայտ աչքով։

Զեռքը զէնքը մը տեսայ։

— Եթէ խօսք մ՚եւս ըսես , մեռած ես , դոչեց։

— Անէ՛ծք . գործին աղետաւոր կերպարան կը տաս , սիրելիդ իմ , և կը մոռնաս որ կրնամ ինքզինքս պաշտպանել , շարայարելով դաշոյն մը հանելով որ Էմմանուէլի դաշունին յար և նման էր։ Բայց երդումով հաստատուած դաշինքին համեմատ մեր դաշոյններ կը պարտաւորին երդմնազանցի մը միայն զարնել։ Երդմնազանց եմ . ո՛չ . . . ուրեմն պատեանը դարձուր դաշոյնդ . . . ։ Գիտնաս , գեղանի տիկին , որ մենք փոխադարձապէս պզտի թուղթ մը ստորագրեցինք , որով ես զինքը և ան զիս դաշունելու իրաւունք ունինք։ Եթէ Տէպարօ զիս թողու , կը մոռցնեմ զինքը . եթէ ընկերութենէն դասալիք խոյս տամ , դանակը կուրծքս կը մխէ ան . . . բարեկամաբար հաստատուած դաշնադրութիւն մ՚է այս . . . ։ Բայց այդքանը բաւ է այս մասին . պէտք է վերջ տանք այս խնդիրին։ Հիմա կը պարտաւորիս զիս առանց Էմմանուէլին փախցնելու նպատակիդ հրաժեշտ տալ . . . ։ Ի՞նչ կ՚որոշես։

Դէ՛պ ՚ի Ֆրուասար դարձայ։

Շլմորումով այս տեսարանին կը նայէր ան , և Էմմանուէլը ցոյց տալով ըսի երերուն ձայնով մը .

— Այս պարոնն առենօք հարիւր հազար ֆրանք պարգեւեց ինձ։

Ֆրուասար՝ առանց ամենևին պատասխան մը տալու՝ սանկնեբը դրպանէն հանեց և սեղանին վրայ շարեց։

— Մարիօ՛ն, Մարիօ՛ն... ուրեմն շա՛տ կ'արհամարհես զիս, մռմռաց Տէպարօ մշտագի՛ն։

— Ոչ զոք արհամարհելու իրաւունք ունիմ։ Հաս գալով հաստատ դիտաւորութիւն ունէի աղաչելու քեզի որ ետ առնես գումար մը զոր տուեր էիր ինծի հարստութեանդ ժամանակ... և բարեկամիդ խօսքերն այս որոշումս հաստատեցին։

— Շա՛տ գեղեցիկ ընթացք, ըսաւ Թէօփիլ. խղճմիտ և պատուական կնկան մը պէս վարուիլն այսպէս կ'ըլլայ ահա։

— Երբե՛ք, գոչեց Տէպարօ. պիտի չընդունիմ երբե՛ք.

— Ի՛նչ. ներէ՛, բարեկամ, ներէ՛... իրաւունք չունիս զիս թշուառութեան մէջ ձգելու. խե՞նդ ես, ի՞նչ ես. մարդս ինքնասիրութեան զգացումը այդքան դժնդակ ծայրայեղութեանց չտանիր, և ահա գումար մ'որ մեզի պիտի ազատէ խորհրդարանին նախագահին ճիրանէն...։ Մարիօ՛ն, իրաւ կ'ըսեմ որ հրեշտակի՛ մը պէս վարուիլ գիտես։

Թէօփիլ տոմսերը գրպանեց։

Դուրս ելնելով ըսի Տէպարօյին որ կ'ամչնար և երեսը կը պահէր ինծմէ.

— Էմմանուէ՛լ, խե՛ղճ Էմմանուէլ, մինչև ո՞ւր ընկեր ես։

Փրուսար քաշեց տարաւ զիս։

Երկու օր ետք խորհրդարանին մէկ վճիռը մահուան դատապարտեց Երֆինճ-բանոյեան Բարնաբին հեղինակը։ Սակայն Թէօփի՛լ կծիկը դրած էր հարիւր հազար ֆրանքին և այն անձին հետ, որուն անունը ա՛լ չեմ համարձակիր տալու։

Իցի՛ւ թէ մի և նոյն պատուհասին մէջ չմիացնէ՛ր մեզի աստուածային վրէժն որ ամենուն յանցանքը կը կշռէ։

# Գ.

կէսօրին քառորդ կ'ուզէր երբ տունս մտայ։

Թերէզա վազելով դիմաւորեց զիս։

— Յանո՛ւն Աստուծոյ, ըսաւ, շո՛ւտ ըրէք։ Երկու ժամէն 'ի վեր ձեզ կ'սպասէ և կը յուսահատի սևեր հագուած, ամօթոյն և վշտահարեալ կին մը։

— Անո՞ւնը։

— Չուզեց ըսել։ Սակայն կարծեմ թէ ճանչեցի զինքը, ժամանակաւ կեցամօրդ տունը տեսած ըլլալուս համար։

Աղաս բացաւ այն սենեակին դուռը ուր կ'սպասէր այցելուհին։

Սզաւոր, կիսովին պզօղուն անձ մը տեսայ, որ վազեց, բերանս դոցեց՝ զարմացման աղաղակս արգիլելու համար, և ցած ձայնով մը շտապաւ ըսաւ ինձ.

— Դուրս հանէ՛ սպասուհիդ։

Նշան մ'ըրի Թերէզային որ հեռացաւ։

— Դո՛ւն, տիկին դքսուհի... դո՛ւն Բարիզի մէջ ըլլաս... և տունս գաս։

— Մարիո՛ն, սիրելի Մարիոնս, կորուսած եմ եթէ օգնութեան չհասնիս ինձ։ Պլուայէն եկայ յատկապէս քեզի տեսնելու համար....։ Ո՛հ, կը պաղատիմ, ազատէ՛ զիս սա վատաբարոյ մարդասպան ծուղակներէն։ Նամակներ ունի ան, և երբեք յանձնելու պատրանքը կ'ընէ... նամակներ... վերջապէս Շալէին նամակները... կը հասկնա՞ս միթէ։

Թիկնաթոռի մը վրան ընկաւ նէ, երեսը ծածկեց և սաստկապէս արտասուեց։

Ինչպէս արդէն գուշակուեցաւ, տիկինն Տը Շըվրէօզին առջին էր։

Դքսուհին հասարակ կնիկի պարզ բոպա մը հագած և [illegible]

կանանց յատուկ վարանկալի մը ներքև իր շքեղ մազերը պահած էր. վիշտն իր գեղեցիկ աչերուն կարմրութ տուած էր։

— Տիկին, ի՞նչ կը պատրաստուորիմ ընել. պատրաստ եմ քեզի համար անձս նուիրելու։

— Պէտք է երթալ և նամակները հաճութեամբը կամ բռնի առնուլ քովէն.... Պէ՛տք է, ըսաւ դքսուհին. գլուխը վեր ընելով և արտասուքը սրբելով։ Մահի բրէ... աքսորէս փախայ։ Պլուայի մէջ հիւանդ կը կարծուիմ, և հաւատարիմ ծառաներ բացակայութիւնս գաղտնի պահելու հոգ կը տանին. Բարիզի մէջ մինակ եմ ծեր Մօրիսին հետ որ սանտուխս էրիկն է.... Անշուշտ տեսած ես զինքը երբ Լուվրը կը գայիր ինծ այցելութիւն ընելու համար։ Ի նամակը ջանք ըրի թագուհին տանելու։ Այն ձախորդ գործէն 'ի վեր ան ոչ զոք կը թողու ներսս քովս երթալու։ Իսկ Մարի Տը Մէտիսի երբեմն անոր դէմ, երբեմն ալ թերն է. այս կնկան վրայ չեմ կրնար վստահիլ։ Ուկեց 'ի զուր մայրթագուհին ոչինչ կրնայ սատանալ։ Ուստի վերջին յոյսս քու վրայ դրի. ապահով եմ թէ նախախնամութիւնս պիտի ըլլաս, բարեսիրտ Մարիոնս.... Աղէկ գիտես որ միշտ սիրած եմ քեզի. շարունակ դատդ պաշտպանեցի.... Այժ, զիս այս մատնիչին թակարդներէն պիտի ազատես։

Դքսուհին խիստ կաթոգին սիրով կը զգուէր զիս, ձեռներս, ճակատս, մազերս կը պագնէր։

Սիրտս բոլորովին թունա եղած էր։

— Ո՛հ, ամէն բան գիտեմ, հանգիստ եղէք, ըսաւ. Սէն-Մօրլէն շատ անգամ խնդացուց զիս. կը ծաղրես կարդինալը, կը քամահրես. քիթէն պիտի բռնես, և զինքը ուղղակի Սէն գետը պիտի տանիս, երբոր սիրտդ ուզէ տանիլ.... Ուստի ահա անոր համար քեզ դիմեցի, Մարիոն։ Քիչ մ'առաջ յուսահատ էի. քեզի տեսայ, մխիթարուեցայ... վասն զի նամակներս պիտի առնուս անորմէն, պիտի առնես, վասն զի կը սիրեմ քեզի, վասն զի յանցաւոր և դժբաղդ խեղճ կին մ'եմ. վասն զի դուն ներողամիտ ես սիրային յանցանաց համար.... ա՛ Աստուած իմ,

նաւորդին առջև : Կասթօն չամչնար իր թողութիւնը գնելու . . . : Սակայն քեզ պիտի չհամարձակիմ ամեն բան ըսելու, և կ'արտի-նալը յոյսը վրան դրած է . . . անկալի չէ՞ այս բանը . . . : Ըսէ՛ նայիմ, ինչպէս պիտի ընես :

Դերասանուհին ձեռներս կը սեղմէր և ինծի կը նայէր անձկութեամբ :

— Հաստատ կերպով ըսուած է ինծ թէ Ռիշլիէօ սէր յայտնեց քեզ՝ իրա՞ւ է, հարցուցի :

— Այո՛, պատասխանեց :

— Շատ, քանի մը մանր պարագաներ իմացուր ինծ :

— Կեցէ՛ք . . . անցեալ տարի էր . . . Մարի Տը Մէտիսիին խաղին ժամանակ : Ռիշլիէօ գաղտնի կերպով երեք հեղ ինծի տուաւ ինձ :

— Ի՞նչը :

— Օր մը . . . իրմէն չգիտեմ ինչ թեթև շնորհք մ'ուզելու պարտաւորեր էի . . . . : Ռիշլիէօ՝ կարծելով թէ կարմիր պատմուճանովը պիտի չկրնայ զիս որսալ, ինծ ունկնդիր ըլլալու համար մուկի պէս գորշագոյն սնդուսէ բաճկոնակ մը հագաւ որ ոսկեթել զարդերով կը փողփողէր : Կանաչ թաւիշէ վարտիք մը, տանթելայէ օձիք, փետրաւոր փեղոյր և կօշիկ ունէր : Այս հագուստով առջևս անոր ծունկի վրայ գալը տեսնելով քահ քահ մ'արձակեցի, և փախայ երթալու և ամեն բան թագուհիին պատմելու համար :

— Սքանչելի է, շատ յոյս ունիմ :

— Աստուած հետդ ըլլայ . . . : Բայց պէտք է անմիջապէս գործել, Մարիօն . . . : Վաղն արքունիքը ճամբայ պիտի ելնէ Պերպինեանը երթալու համար, ուր Կասթօնին և Մօնթրանսիէին հարսնիքը պիտի ըլլայ . . . ուրիշ խայտառակութիւն մ'ալ այս է : Շալէ նամակի բառերուն մէջ գրուած է . . . : Կառաւարութիւնը քով պիտի պահեն :

— Ա՛խ, տիկին, մտքէդ հանէ՛ այդ անմտալի նախազգացումը :

— Նամակներս, նամակներս, և ամեն բան կ'աղաչեմ :

— Կը մեկնիմ :

— Պա՜ղ գիս․․․ սիրելի բարեկամուհի, պատուական տիկին․ ․․ զգուշացի՛ր անոր խարէութիւններէն․․․ Անհամբերութեամբ պիտի սպասեմ․․․ Յաւիտենական երախտագիտութիւնս ընդունէ։

Գիրկէն բռնի զատուեցայ և պարտիզիս պալլվարին վրայ բացուող պզտի դրան բանալին տալու դացի։ Այս բանալին անհրաժեշտ կը դառնար այն նպատակին որուն վրայ կը խորհէի։

Նրաւէն կառքիս ձիերը քակելու հրաման տուած չըլլալով, դաւթին մէջ զիս տանելու բոլորովին պատրաստ գտայ կառքս։

Բայց պատմութեանս այս կէտին մէջ դէպքերն այնքան արագութեամբ իրարու կը յաջորդեն որ մինչև հիմա շատ մանր պարագաներ են թողուցի, որոնցմէ սակայն ընթերցողին տեղեկութիւն ունենալը կարևոր է։

Բա՛րէ, պէտք է ներել ինձ, եթէ պատմութեանս մէջ անկարգութեան հոտ կայ։

Ա՛լ հանդարտութեամբ չեմ գրեր։

Կեանքիս այն մրրկալի օրերը աչքիս առջևը բերելով զգայութիւններս կը խռովին, Ճակատս բոլորովին կը կարմրի, և այս Ցէշ-փէր-Լէ-Ննւէրը կը պատռէի, եթէ ժամանակ առ ժամանակ տղմին վերևը ծաղիկ մը, յանցանացս մէջ բարի գործ մը չգտնէի այն աղտոտ Ճամբուն վրայ ուսկէ կ'երթայի այն ատեն։

Թերևս կը խաբուիմ․ բայց կարծեմ թէ այս բանը զիս նուազ ատելի կ'ընէ։

Ամենէն յանցական անկարգութիւններուս պատճառ կարգինալն էր։ Փոխանակ զղջումս զովելու և խրախուսելու անարժան մեքենայութիւններ 'ի գործ դրած էր բարի վարուց բոլոր նպատակներս դերևելու և զիս վերստին գլտորելու համար այն անդունդն ուսկէ կ'ուզէի ելնել։

Կը յուսար օգուտ քաղել այն ողբալի հարկէն որու կ'ենթարկէր զիս։

Երբ իր յոյսն ապարդիւն մնաց և երբ տեսաւ թէ ուրիշներուն համար աշխատած էր, ծայրայեղ միջոցներու դիմելու ձեռնեց․ և եթէ յաջողէր զիս Շաթըլէի մէջ բանտարկելու, յայտնի է թէ ընկճումէ մ'ետք պիտի կրնայի ազատիլ բանտէն։

Սակայն այն յանդգնութիւնը, որուն ապացոյցը տուի. բարձր և ազնուական աւագանիէ բաղկացեալ ուղեկից պաշտպաններ ընտրելով ինձ, կարծես անոր ահարկութեան դրութիւնը փոխեց, կամ թերևս զգուշութիւններով վարուեցաւ հետս, վասն զի այն ատեն ինքն իրեն համար դողալու կը պատրաստուէր։

Լուի Ժ-Գ-ին ըրած տարօրինակ այցելութենէս քանի մ'օր ետք Րիշըլիէօ իր սենեկապանը՝ Տէ Պուրնէն ինծի ղրկեց այն գումարներուն մնացորդովը, որք սովորաբար կը տրուէին ինծի տնական ծախուցս համար։

Զիթենիին ոստն էր այս։

Անոր բարկութեան վերջ առած ըլլալուն ապահով եղայ։ Սակայն անգամ մ'իսկ չգացի զինքը տեսնելու, և անդթաբար խստութիւն ցոյց տուի իրեն։

Զիս ողոքելու համար պարգևեց ինծի այն շքեղ երիվարները, որոնց վրայ Թէոփրաստ խօսեցած էր իր անզգամ թերթին մէջ։

Այսպիսի շնորհալի մեծարանք մ'արգահատանքս չշարժեց ամենևին։

Անշուշտ ինծի դէմ իր թշնամութիւնները վերստին կ'սկսէր. եթէ Շալէի դաւադրութիւնն անոր անհանդստութիւնը սաստիկապէս չգրգռէր և հետևաբար զինքը չարգիլէր զբաղելու այնպիսի գործերու որք ոչ այնքան կարևոր և ծանր էին։

Ընթերցողներս շատ անորոշ գաղափար մը կրնան ունենալ Շալէի դաւադրութեան նկատմամբ, եթէ բաւական համարին այն խօսքերը որք Սէն-Ցօրլէնին բերնէն փախեր էին այն օրն ուր կարտինալին խուցն արշաւեր էի. այս դաւադրութիւնը շատ յաջողութեամբ կազմուած էր, և կարտինալն անոր ամեն գաղտնի հանգամանքը չիմացած էր։

Պաշտօնէին զօրութիւնն ամեն օր կ'աւելնար, որով ընդհանուրին ատելութեան առարկան կը դառնար։

Բոլոր պալատականները բարձրաձայն կը գանգատէին. Կասթօն միւսներէն աւելի կը գոչէր. կ'ամբաստանէր Րիշըլիէօն ըսելով թէ շնորհաց աղբիւրը կը գոցէր իր առջև և զինքը կը զրկէր իր եղբօր՝ թագաւորին՝ սէրէն։

« — Ուրախութիւն պիտի ունենամ միայն օրն ուր այս կրօ-նաւորը պիտի մեռնի, կ՚ըսէր Կասթօն :»

Եւ ասոր վրայ ութն անխորհուրդ երիտասարդներ Ֆօնթէն-պըլօյէն քիչ մ՚անդին շինուած ամառանոցը մէջ կարտինալը սպաննելու խորհուրդը կազմեցին :

Կասթօն անոնց այս խորհուրդը քննեց եւ հաւնեցաւ :

Հաւանեցաւ իր պաշտօնատարները կարտինալին ամառանոցը ղրկելու որպէս զի Րիշըլիէօ իրեն սպասէ միասին ճաշելու համար ․ Իշխանին մարդերը հրամանախօսը պիտի գիտնային․ եւ երբ հասնէին Կասթօն ու իր ազնուականները, կռիւ պիտի հանէին կարտինալին ծառաներուն հետ, եւ ամէն միջոցներ ՚ի գործ դրուեր էին որպէս զի այս կռուէն հետեւող շփոթութեան շնորհիւ կատարուի սպաննութիւնը :

Անրի Տը Թալէյրան Տը Շալէ կոմսը, որ արքայական հանդերձարանին մեծ-տնտեսն է եւ որ դեռ նոր Պարատասին եւ Սէն-Սիմոնին տեղ թագաւորին աչքը մտած եւ սիրուած էր, յատկապէս խօսք տուաւ Կասթօնին ամենէն առաջ իրեն ղրկելու կարտինալը : Սակայն իսկոյն վախնալով իր խոստումէն վարանիլ զղջաց եւ դաւադրութեան գաղտնիքը Տը Վալանսէ ասպետին յայտնեց եւ գործելէն առաջ անոր խրատները ուզեց :

Ասպետը փութաց պաշտօնէին իմացնելու այս գաղտնիքը եւ ազդ-ընելու անոր թէ կեանքը վտանգի մէջ է :

Րիշըլիէօ նախ չհաւտաց դաւադիրներուն այնքան յանդգնութեան

Բայց յանկարծ տեսնելով Կասթօնին պաշտօնատարներուն իր ամառանոցը գալը եւ իշխանին կողմէն միասին ճաշելու եւ զուար-ճանալու լուր բերելը, դադրեցաւ տարակուսելէ, կառքը մտաւ, վազեց գնաց Ֆօնթէնպլօ․ մինչեւ թագաւորին եղբօրը սենեակը մտաւ եւ զան իր մեղսակիցներուն հետ գտաւ :

Իշխանը պառկած էր :

Կարտինալին նայեցաւ սաստիկ յուզումով, եւ ամէն ապստամ-բները սարսռեցան :

— Վեհափառ տէր, ըսաւ Րիշըլիէօ, այս գիշեր ամառանոցս

երթալու և զբօսանք ընելու նպատակ ունիք․ ինծի համար առի անբաւ պատիւ մ'է որուն արժէքը կը ճանչնամ որքան որ կը պարտաւորիմ ճանչնալ, և աղաչեմ ձեզ թողուլ տունը որպէս զի ձեր զբօսանաց մէջ նեղութիւն չտամ ձեզ։

Նոյն միջոցին իշխանին սենեկապանը ներս մտաւ, մարմնոյ վրայէն հագուելու ճերմկեղէն բերաւ ոսկեզօծ արծաթէ ափսէի մը վրայ դրուած։

— Հաւանեցէք թոյլ տալու ինձ որ շապիկը տամ, վսեմափայլ տէր, ըսաւ կարտինալը։

Առաւ շապիկը, Կաստօնին տուաւ որ շլմորումէն համր դարձած էր, խորունկ ակնածութեամբ մեծ բարևի ձև մ'ըրաւ, և դուրս ելաւ՝ դաւաղիրներուն ըսելով․

— Կը մաղթեմ որ շատ զուարճանաք, պարոններ։

Ռիշլիէօյին այս ընթացքը խիստ յաջող հաշուած մ'եղաւ։

Եթէ շանթն իշխանին և իր բարեկամաց վրայ շառաչելով խորտակուէր, անոնք աւելի ողորմելի վիճակի մէջ գտնուած չէին ըլլար։ Կարտինալը բոլոր դաւը կը գիտէր, և կը յաղթանակէր։

Արդ այս իրողութիւնը սեպտեմբերի ամսին մէջ անցք ունեցաւ։

Անրի Տը Թալէյրան ապերախտին մատնութենէն սրտմտելով կեղծեց և պաշտօնէին մօտիկ անդամ ձևացուց։ Կարտինալը քաղաքական ապացոյց չունենալով կեղծ ու պատիր ներումներ և զղջումի անորոշ խոստումներ ընդունելու բռնադատուեցաւ։

Սակայն Անրի Տը Թալէյրան Տը Շալէ կոմսն երիտասարդութեան բոլոր փոփոխամտութիւնը և օրոյ ամեն անխոհեմութիւնը ունէր։

Ուստի ապստամբութեան ուրիշ նպատակի մ'առաջնորդն եղաւ. այս անգամուան ապստամբութեան նպատակն էր չէ թէ արիւն թափել, այլ թագաւորութիւնը հիմն 'ի վեր տապալել։ Ապահով ըլլալով թէ հաճելի պիտի ըլլայ թագուհիին, Կաստօնին և մանաւանդ գեղանի Մարի Տը Շըվրէօզին, հանդերձարանի մեծ — տեսուչն իր նոր դաւը նիւթեց։

Հոս կը պարտաւորիմ ըսել թէ միայն կարծիք են լսածներս, և չեմ համարձակիր երաշխաւորել այն մանր պարագաները, որք քիչ մը վար պիտի պատմուին։ Տիկին Տը Շըվրէօզ իր ամենէն գաղտնի խոստովանութեանց ժամանակ մութ կերպով մը խօսեցած է ինձ այս բաներուն վրայ. ուստի չեմ համարձակիր բացարձակ ստուգութեամբ մը տեղեկագրել զանոնք։

Կ'ըսուէր թէ դաւադիրներուն նպատակն էր Հելվետիայի պահակները և պահապան զօրքը վաստկիլ, մի և նոյն օրը կարտինալը և թագաւորը ձերբակալել. Լուի ԺԳ-ին ամուսնական կարողութիւն չունենալը հրատարակել, Կասթօնը Ան Տ'Օթրիշին և դահին հետ կարգել, և Րիշըլիէօյին համար Պասթիյլին ամենէն խորին զնդանը պատրաստել։

Իսկ թագաւորին համար վանքի մը մէջ խցիկ մը կը սահմանուէր, իբր անոր ճաշակներուն և սովորութեանց վայելող միակ մենատուն։

Այս մեքենայութիւնն առաջուանին պէս ՚ի դերև ելաւ Շալէին մէկ մտերիմին մատնութեամբը. Լուվինեի կ'անուանէր այս մարդը, որ Գանտալին տարփուհին որսած ըլլալով և չուզելով զան հատայել Գանտալին, զօրաւոր գերդաստանի մը հալածանքէն ազատուելու միակ միջոց սեպեց Րիշըլիէօյին պաշտպանութեանն ապաւինիլ, զոր գնեց Անրի Տը Թալէյրանին ստոյգ կամ անհիմն նպատակները յայտնելով։

Ամենասին պատճառով մը հիմն ՚ի վեր տապալեցան դաւաճանութեան այս ամեն պատրաստութիւններն որք ութ ամսուան մէջ կրցեր էին կազմուիլ։

Շալէ փախաւ, և տիկին Տը Շըվրէօզ աքսորուեցաւ։ Իրենց նամակները գրաւուեցան։

Անրի Տը Թալէյրանին դքսուհիին հետ և դքսուհիին Ան Տ'Օթրիշին հետ ունեցած թղթակցութեանց մէջ գտնուեցան եթէ ոչ դաւադրութեան անուրանալի ապացոյցներ, գէթ ատելութեան և չարակամութեան ակնարկութիւններ թագաւորին անձին դէմ, և հեգնութիւններ գեղեցիկ սեռին դէմ անոր ունեցած պաղութեան, [illegible] նկատմամբ։

Ասոնցմէ շատ աւելի պզտի իրողութիւններ Րիշլիէօյին պէս մարդու մը բաւական էին մահապարտութիւն հետեւցնող ամբաստանութեան մը հիմը կազմելու։

Կարտինալն իսկոյն պահանջեց Լուի ԺԳ-էն որ իր սիրականը թողու, և թագաւորը զան յանձնելու փութալով, Րիշլիէօ մարդեր ղրկեց Շալէն բռնելու համար։ Թշուառն ընդունայն երեւակայեց թէ ապաւէն մը պիտի գտնէ Տը Վանտօմ դուքսին քովը, որ Պրըթանիի կառավարիչն և իր մեղսակիցներուն մին էր. ոչինչ կրցաւ զինքը իր ճակատագրէն ազատել։

Նանթիի բերդին մէկ զնդանը նետուեցաւ ան։

Նոյն ժամանակ Րիշլիէօ Ան Տ'Օթրիշը Լուվրի մէջ բանտարկուած կը պահէր, և թագաւորին եղբօր ներելու համար յատուկ պայման մը կը դնէր, որ էր օրիորդ Տը Մօնբանսիէին հետ ամուսնանալը, ամուսնութիւն, զոր Կասթօն մինչև այն ատեն մերժած էր միշտ։

Շատ մարդերու համար այս ամուսնութիւնն կարտինալին գաղանի յոյսերու նմէկ ապացոյցն էր։

Տկար իշխանը վախ ունեցաւ։ Հնազանդեցաւ և իր բոլոր մեղսակիցները կարտինալին բարկութեան նշաւակ թողուց։

Սակայն Կասթօնին իր ծաղրելի կենացը մէջ այս տեսակ վատութիւն մ'ընելն առաջին անգամը չէր։

Ամուսնութիւնը Նանթի մէջ պիտի կատարուէր. Րիշլիէօյին կողմէն անգթութեան նրբութիւն մ'էր այս։ Շալէին դատը նայելու և վճռելու համար իր կազմած յանձնաժողովին վստահ ըլլալով՝ կ'ուզէր որ Կասթօն իր հարսանեկան անկողինէն կարենար լսել դահիճին տապարին զարնելը։

Սակայն Շալէին ծնողքն և բարեկամներն անոր դէմ յառաջ բերուած ապացոյցներուն անբաւականութիւնը գիտնալով չէին կարծեր թէ պաշտօնեան պարզ կարծիքներու վրայ կոթնելով գլուխ մը կտրել տալու չափ յանդուգն ըլլայ։

Իրերն այս վիճակին մէջն էին ահա երբ՝ տիկին Տը Շըվրէօզ՝ գաղտնապէս Պլուայէն գալով միջնորդութեանս դիմելու խոր-

հուրդը ունեցայ. որպէս զի ազատի այն անպատուութենէն զոր իրեն կ'սպառնար կարտինալը։

Տիկին Տը Շըվրէօզին ծառայութիւն ընելու փափաքս թոյլ չտուած էր ինձ առջի անգամ նկատելու ձեռնարկութեան բոլոր դժուարութիւնները։

Տէ Թուռնէլ փողոցէն Լուվրը երթալու ատեն եռանդս յանկարծ մեղմեցաւ և չյաջողելու վախն առջև աներևոյթ եղաւ։ Իրաւ է որ գաղտնի փոքր դռնէն անցնելով կրնայի պաշտօնէին խուցը մտնել, բայց զինքը միայն պիտի գտնէի․ նախ և առաջ երկարատև բացակայութեանս համար ներումներ խնդրելու, հակառակ ամբաստանութիւններ և յանդիմանութիւններ լսելու համար շատ ժամանակ գործածելու պիտի չպարտաւորէի։

Ամէն բան կորսուած է եթէ կարտինալը ծուղակը նշմարէ։

Կարտինալը ծուղակը տանելու համար հարկ պիտի ըլլար որ երկար շրջաններ ընել տայի անոր, և որովհետև հետևեալ օրը կը մեկնէր Նանթ երթալու համար, զինքը յուզող մտատանջութեանց մէջէն ինծի տալու բաւական վայրկեաններ պիտի ունենար․ ժպիտներս պիտի յաջողէի՞ն անոր ձեռքէն վար նետելու զէնք մը, զոր կը պատրաստուէր այնքան սոսկալի կերպով մ'իր թշնամիին դէմ դարձնելու։

Խորհրդածութեանցս այս կէտին հասեր էի ահա երբ կառքս Լուվրի պզտի դրան քով կանգ առաւ։

Կառքէս երբ պատրաստ էի իջնելու, Ռամպուլեէյի ընկերներէն մին, Թովմաս Դամբանելը, քաղցրութեան հռչակաւոր առաքեալը նշմարեցի յանկարծ։ Երկար ժամանակէ 'ի վեր կասկած ունէի թէ ան իր կարծեցեալ զգաստութեան և ոչ իսկ մէկ բառին կը հաւատայ և թէ կարտինալին աւելորդապաշտական հաւատքէն օգուտ կը քաղէր իր ուխտին համար։

Լուսաւոր գաղափար մ'անցաւ միտքէս։

Կանչեցի բարեսիրտ Տօմինիկեանը։ Կառքիս մօտեցաւ շատ ողջոյններով։

Աղուամիկը երբեմն տունս բերած էր զայն ակմբանոցին առա-

ջին երեկոյթներուն ժամանակ ։ Բաւական հին ճանչուորներ էինք , և զինքը վերապատուելի հայր խոստովանող անունով կը մկրտէի ։

Օր մը ձեռքիս գիծերը միայն քննելէն ետք մարգարէաբար ինչ ինչ բաներ ըսած ըլլալով , որք ամենքն ալ չկատարուեցան , ես քան զևս համոզուեցայ թէ անոր մոգական տաղանդը սուտ էր ։ Բարեմիտ կրօնաւորը ստուգապէս մարգարէանալու համար իրեն ծանօթ պատրաստութիւններու պէտք ունէր ։

Գամբանել ևս միջնորմին թաքուն դուռ մ'ունենալը գիտէր ։ Ան ալ Րիշլիէօյին սենեակը կ'երթար ։

— Շատ աղէկ , ըսի մտապէս . վերապատուելին աստղերուն հաշիւին պզտի սուտ մ'ես պիտի աւելցնեմ ։

Լանջակալիս ներքև պահուած սնդուսեայ թղթակալի մը մէջ քսան հազար ֆրանքի արժէթուղթ ունէի . Փրուասարին առտու իր արկղէն հանած գումարին մնացորդն էր այս , և այն ատեն իմ բոլոր գանձային հարստութիւնս այս էր միայն ։

Դիւրին էր ինձ նոյն միջոցին իսկ ստակ վճարել և գնել այն ծառայութիւնը , զոր աստղագիտէն կը յուսայի ։

— Ո՞ւր կը վազես այդպէս , հարցուցի ։

— Կարտինալը Թագաւորին ապագային գուշակութիւնը կ'ուզէ , պատասխանեց , և շուտով կ'երթամ . . .

— Նորին Բարձրութեան սենեակը որպէս զի պատգամներդ տաս ։ Միասին պիտի մտնենք հոն . . . ։ Անոր այցելութիւն ընելու պատրաստ կը տեսնես զիս . . . ։ Բայց կը դժգոհի՞ս միասին գալէս . Ներկայութիւնս գուշակութիւնդ կը նեղէ՞ ։

— Քիչ մը , օրիորդ , և եթէ հաւանէիք միայն կէս ժամէ չափ ուշացնելու այդ այցելութիւնը . . .

— Կը հաւանիմ . . . պայմանաւ մը ։ Հիմա կառքս պիտի մտնես, հետս մինչև Բօն-Նէօֆ պիտի գաս և առանց խօսքս ընդմիջելու այո կամ ոչ պիտի պատասխանես ինձ ։ Եթէ այո ըսես ինձ , վանքիդ մատակարարին համար հինգ հարիւր թալերի փոխանակագիր մը կը տամ քեզ . եթէ ոչ ըսես , հետդ կարտինալին խուցը կը գամ ։

Կառքին պատուանդանէն վեր ելաւ ուժգնակի։

Տասը րոպէէն ետք նորէն Լուվրի դրան առջեւն էինք. Թով-մաս Գամբանել իջնէն առաջ Րիշլիէօյին քովը գնաց՝ գրպանին մէջն ունենալով հինգ հարիւր թալերի բոլորովին կանոնաւոր փո-խանակագիրը։

Այս կրօնաւորը խիստ պայծառ իմացականութիւն մ՚ունէր, և Ռամպույեէի ապարանքը զան խնէլուն կարգը դասելովը խելքի մտքի դէմ կը վարուէր։

Կրասէն կէս ժամի չափ Սէնի ափանց վրայ զիս ժուռ ածեց։ Կէս ժամն երբ անցաւ, կառքէն իջայ, ձեռնարկութեանս յաջո-ղութեան վրայ աւելի վստահ։

Լուվրի պզտի դուռէն մտայ, հաստատ քայլով փողերէն ան-ցայ, և շքեղ համարձակութեամբ մը փայտակերտին կռնակը հրեցի։

Կարտինալը տակաւին աստղագէտին հետն էր։

Երեւալս տեսնելով զարմացման ոստում մ՚ունեցաւ և գոչեց.

— Հրա՛շք է, հրա՛շք։

Ամաչելու հով մ՚առի որ յայտնապէս հաճելի եղաւ պաշտո-նէին, վասն զի դիմաւորեց զիս, ձեռքէս բռնեց և բարեսիրաբար ըսաւ.

— Օ՛ն, օրիորդ, մի՛ այդպէս դողար... ինծի դէմ յանցա-ւոր ես անշուշտ, և ընթացքդ չհամապատասխանեց այն բարեսի-րութեանս որուն ապացոյցը կը տայի քեզ...։ Բայց ամեն մե-ղաւորի ողորմիլ պէտք է....։ Նստիր, աղջիկս, նստիր։

Թիկնաթոռ մը տուաւ ինծ և Տօմինիկեանին ըսաւ.

— Կ՚սքանչանամ քու վրայ։

Գամբանել խոնարհեցաւ։

— Աչերդ վեր ըրէ՛, Մարիոն, շարայարեց կարտինալը որ մի՛ և նոյն ժամանակ աստղագէտը ցոյց կը տար ինծ. Ճանչւորներու մէջ կը գտնուիս։

— Իրօք, մումուայի վերերոտութեամբ, ինծ կը թուի թէ... այո՛, վերապատուելի հայր կախարդն է ան։

Գամբաննել նորէն խոնարհեցաւ ։

— Չէ՛, կատարդ չէ՛ . . . ըսաւ կարտինալը խնդալով . գիտութիւն մը, ճշմարիտ գիտութիւն մ'ունի ան, և հաստատ միտք ունիմ օր մ'ուսանելու զայն ։ Պէտք է, Մարիօն, տարօրինակ, անլուր, հրաշալի բան մը յայտնել քեզ ։

— Ականջս ձեզի է, տէր իմ ։

— Հայր Թովմասը չտեսնելդ տարիի մը մօտ չէ՞ ։

— Տարի մը . . . այո՛ . . . գրեթէ ։

— Առի կը պատշաճի բանի մը զոր հիմա կը հաստատէր ինծ . . . . ։ Եւ երբ վերջին անգամ զինքը տեսար, երկնեց աստղերուն մին չընտրեցի՞ր, Մարիօն ։

— Ո՛հ, կատակ մ'էր այն . աստղերուն չեմ հաւատար ։

— Չե՞ս հաւատար, յիմարամիտ աղջիկ . . . ։ Հա՛, հա՛ . . . ։ Հիմա պիտի տեսնենք թէ անհաւատ կը մնա՞ս ։ Ի՞նչ էր այն աստղին անունը, աղջիկս ։

— Անունը . . . մոռցայ, պատասխանեցի ։

— Բայց վերջապէս ո՞ւր գրուած էր աստղը ։

— Մեծ արջին պոչին քովը, տէր իմ ։

— Ճիշդ է . Գամբաննել հիմակ այդպէս ըսաւ ինծ ։ Արդ, գիտնաս, Մարիօն, թէ երբ աստղագէտ մը մեզի կ'աղաչէ որ աստղ մ'ընտրենք . . . անըմբռնելի և նախախնամական ձգողութեամբ մը միշտ մեր նայուածքը կ'ուղղուի ճիշդ դէպ այն աստղն որ մեր ճակատագիրները կը կարգադրէ . վերոյիշեալ հրաշալի գիտութեան ճանչուած սկզբանց մին է այս, սիրելիդ իմ ։ Այն աստղը մեզի կը զրգռէ, կը հմայէ, կը շլացնէ, և զայն մեր կամքին հակառակ կ'ընտրենք ։

— Տարօրինա՛կ բան մ'է ատի, տէր իմ ։ Ցիրաւի պէտք է որ ձեր բերանին պէս բերան մ'այսպիսի բաներ անկասկած կերպով հաստատէ . . . թէ ոչ չեմ կրնար մտիկ ընել առանց խնդալու ։

— Սպասէ՛, օրիորդ, սպասէ՛, և փոխանակ խնդալու հիմա զարհուրանքով պիտի դրաւուիս ։ Այս դիտէր ինչ պատահեցաւ, գիտե՞ս ։

— Չէ՛, չգիտեմ։

— Լա՛ւ, ըսեմ ուրեմն. աստղդ իմինիս մօտեցաւ։

— Տէ՛ր Աստուած, գոչեցի, սոսկալի բան մը կայ արդեօք այս մօտաւորութեան մէջ։

— Ահա կը տեսնես, Մարիոն, կը տեսնես որ երկիւղը կը գրաւէ քեզի։

— Վասն զի առաջ այնպիսի համոզումի ձեւով մը կ'ըսէք ինծի, տէր իմ...

— Ա՛խ, նախ ես ալ քեզի պէս էի, օրիորդ, անհաւատ կ'երեւայի... բայց հայր Թոմմաս աստղերուն գրաւիչ ճշմարտութեամբ մը խօսիլ կը տայ. եթէ անոր յայտնած բաներն ուղղակի Աստուծոյ կողմէն յայտնուէին ինծի, անկից աւելի չէի հաւտար։ Երեւակայէ՛ անգամ մը. մայր-թագուհիին աստղագէտը, Տիւվալ... որ ապուշ մը, խաբեբայի մը պէս յանդուգն, բայց աւանակի մը պէս տխէտ է, երէկ մարգարէաբար Մարի Տը Մէտիսիին ըսաւ թէ Լուի ԺԳ կը պարտաւորէր մեռնիլ։ Վայրկեան մը դողացի... այո, պատուո՛յս վրայ կ'երդնում...։ Գիտես, Մարիոն, թէ գահին թշնամիներն ինչ ցաւալի պատահարներու կ'ենթարկեն զիս։ Կասթօնը խաբեցին, որ անոնց խրատներուն հետեւելով չէր ուզեր հաւանիլ ամուսնութեան մ'որ... հարկաւոր է։ Զինքը համոզելու համար որ հաւանի այս ամուսնութեան՝ պարտաւորեցայ խիստ ազդու պատճառաբանութեանց դիմել, եւ եթէ երբէք թագաւորին մահն անոր տայ արքայական թագը... կը հասկնաս անշուշտ թէ որքան քիչ քաջալերական էր սպարաղան։

— Իրօք, տէր իմ։

— Փութացի Գամբանելը կանչելու, եւ՝ Տիւվալին մարգարէութեան նկատմամբ իրեն առանց ամենեւին բան մ'իմացնելու՝ հրամայեցի որ յետին զգուշութեամբ Նորին Վեհափառութեան կեանքին գուշակութիւնը ընէ... վասն զի երկու տեսակ գուշակութեան վրայ, Մարիոն, մին գուշակութիւն ծննդեան, միւսը գուշակութիւն...

— Շնորհք ըրէ՛ք, տէ՛ր իմ, ներեցէ՛ք ընդմիջելս . . . բայց կը մոռնաք մեր աստղերուն մեկնումը։

— Հետաքրքի՛ր աղջիկ, ըսաւ։ Ահա մեր հաւատքին դարձար որդէն։ Հանդիստ եղի՛ր. թագաւորին ապագայի գուշակութեան վրայ կը խօսիմ՝ կարգը աւելի աղէկ մերինին բերելու համար. . . այս ամեն բաներն իրարու հետ շղթայական կապակցութիւն ունին։ Աստղագիտաց մարգարէութիւնը մայր-թագուհիին աստղագէտինը բոլորովին սուտ հանեց, և այսուհետեւ յանցաւորները չեն պարտաւորիր ոչ գթութիւն, ոչ ներումն յուսալու։ Անոնց ջանադրութեանց հակառակ իշխանութիւնը ձեռքս պիտի պահեմ. . . վասն զի թագաւորը պիտի ապրի, ապահով եմ սորբելուն. աստղերուն ներկային վրայ յայտնածն ապագային վրայ իրենց կանխասացութեանց ճշմարտութիւնը կը հաստատէ ինծի, և աստղերուն ներկային վրայ յայտնածը քեզ կը վերաբերի, գեղանի աղջիկ։

— Ի՞նձ։

— Ճիշդ քեզ։

— Եւ ի՞նչ կ'ըսեն աստղերը, տէ՛ր իմ։

Կարտինալն ինծի նայելով ուղղակի, պատասխանեց.

— Կ'ըսեն թէ զիս կը սիրես, Մարիոն։

— Թէ կը սիրե՛մ ձեզի . . . ո՛հ, անկարելի՛ բան . . . աստղերն այդ բանը չեն ըսեր . . . չեմ կրնար հաւատալ։

Վեհերոտութեամբ արտեւանունքս վար ըրի և աշխատեցայ կարմրելու։

— Տե՛ս . . . իր շփոթութիւնն ու յուզումը կը մատնեն զինքը, ըսաւ Ռիշլիէօ, դէպ աստղագէտը դառնալով։

— Իրաք, պատասխանեց Գամբանել. Ներկայութիւնս, դուցէ . . .

— Չէ՛, չէ՛, կեցի՛ր, հայր վերապատուելի, ըսաւ կարտինալը. Համարումդ թանկագին է ինծի համար, և օրիորդ Տըլօրմ ինքն իսկ պիտի ըսէ քեզ թէ որքան մաքուր և սուրբ էր այն սէրը զոր իր վրայ ունէի։ Տո՛ւր ինծի համար այդ վկայութիւնը,

աղջիկս, շարունակեց այն փաղաքուշ ձևով զոր գիտէր առնել՝ կեղծաւորութեան ցիւնը սկսելով։ Խղճավարդ մինչ զգօնութեան և երկիւղածութեան խրատներ տուաւ քեզ, այնպէս չէ՞։

— Կը խոստովանիմ թէ իրաւ է, պատասխանեցի՝ Թաշկինակս աչերուս տանելով իբր թէ հոսելու պատրաստ արտասուքս կեցնել ուզէի։

— Բայց այն ատեն, խեղճ աղջիկս, շարունակեց Նորին Բարձրութիւնը, պէտք էր ազդ առնել ինձ երբ այդ աղետալի տրփին առաջին անգամ սկսաւ գրաւել քեզի... իմաստուն և հայրական յորդորներով կը ջանայի սիրտդ հանդարտելու. Կը հասկնայիր թէ կրօնաւորութեան վիճակս... պարտաւորութիւններս... վերջապէս սէր ըսուած այդ հիւանդութենէն քեզի հիմնովին կ'առողջացնէի։ Փոխանակ այդպէս վարուելու, դու քեզի դէմ կը զայրանաս, ծնողացդ տունը վերադառնալու որոշում կ'ընես. կերպիւ մը կը դաս հեռու կուիւ հանելու, և բիւր անհիմն պատճառներ կը տաս ինձ, ճշմարիտ պատճառը պահելով... այո, ճշմարիտը, Մարիոն, այսինքն նախանձդ։

— Սո՛ւրբ Աստուած. ուսկէ՞ կրցաք գիտնալ...

— Աստղե՛րը, մի՛շտ աստղերն են խօսողները։

— Ո՛հ, հիմա խելքս գլխէս կը թռի։

— Քեզ չըսի՞, սիրելիդ իմ, թէ ամօթահար պիտի մնաս։ Կարծեցիր թէ Թագուհին և տիկին Տը Շըվրէօզ...։ Այո՛, այո՛, մի՛ ուրանար. աստղադէտս հիմա պիտի հաստատէ քեզ այս ըսածս... արդ քրիստոնէական սկզբունքս այդքան մոռնալու զիս ընդունակ կարծելդ շատ դէշ է։ Զրպարտիչներուն խօսքին հաւատացիր, թոյլ տուիր որ երևակայութիւնդ յամենայնի և ամենուրեք չեղի, ուզեցիր սատանիկ մշտացնել զիս և պառծել՝ փրկաւէտ խրատներս առ ոտն կոխելով...։ Մոլորեցար, խեղճ կորուսեալդ գառնուկ, վտանգաւոր արահետներու մէջ, ուր յափշտակիչ գայլերը մնացորդ անմեղութիւնդ և անարատութիւնդ ոչնչացուցին լափեցին. և ինչպիսի գայլեր, Աստուած իմ. մի՛ ապուշ սեղանաւոր մը, միւսը...

— Մեղքցէ՛ք ինծ, կ'աղերսեմ։

— Միւսը լիրբ ծանծաղամիտ մը.... ։ Քսան անգամ մազ մնաց որ Փրանսայի արքունիքէն պիտի արտաքսէի զինքը։

— Տէ՛ր իմ... գոչեցի՝ երեսս գոցելով, այլ ախորժապէս զարմանալով այն ճշգրտութենէն, որով բարեսիրտ աստղագէտը պատուէրներուս հետեւած էր։

Նոյն միջոցին ամենայն յօժարութեամբ երկրորդ փոխանակագիր մը կ'պարգեւէի, եթէ կարենայի։

— Օ՛ն, մի այդպէս վշտանար, մի՛, ըսաւ Րիշլիէօ։ Անտուանկ որդիին պէս եա կը գաս ինծ, և հոգւոյս վրայ կ'երդնում թէ մաքէս չէր անցներ այդ վերադարձդ։ Մարիոն, չես ահարեկիր՝ մտածելով թէ Թովմաս Գամբանել գուշակեց ճիշդ այն ժամը ուր աներեւակ պիտի մնէիր։

— Կարելի՞ բան է ասի, մռմռացի՝ կեղծ ահարեկութեամբ Տօմինիքեանին նայելով։

— Տէ՛ր Աստուած, ասի ամենադիւրին բան մ'էր, պատասխանեց աստղագէտը հանդարտօրէն։

— Ի՞նչպէս, հարցուցի։

— Երէկ, օրիորդ, աստղդ Նորին Բարձրութեան աստղին կը մօտէր։ Այսօր կէսօրէն ետք ճիշդ ժամը մէկին երկու աստղերը համադիպում ունէին, և հարկաւ նոյն ժամին պիտի մնէիր։

Դէպ 'ի կարտինալը դարձայ և ըսի.

— Շատ աղէկ, տէր իմ...։ Բայց արդեօք քիչ մը նենգութիւն չկա՞յ այս ամեն խրոխտութեանց մէջ։

— Ի՞նչ կը լսեմ, գոչեց աստղագէտը։

— Ներէ՛ ինծ, վերապատուելի հայր... գուշակութեանցդ յաջողութիւնը կը պարտաւորի քիչ մը զարմանք տալ ինծ...։ միշտ այդպէս քաջ չյաջողած ես։

— Շատ աղէկ կը հասկնամ ինչ ըսել ուզելդ, գեղանի օրիորդ, և ահա այս պատճառաւ կ'աղաչեմ Նորին Բարձրութիւնը որ դատաւոր ըլլայ մեզ այն քիչ մ'անվայել վիճաբանութեան մէջ զոր կը գրգռես։

— Մի՛ սրդողիր, վերապատուելի Հայր։

— Կ'ուզեմ փարատել կասկածները, որք քմահաճութեամբ Նորին Բարձրութեան մտքին մէջ ցանուեցան։

— Ի՞նչ... ես կասկածի մը ստուե՛րը անգամ չունիմ։ Միթէ իմն է յանցանքը, սիրելիդ իմ Թովմաս, եթէ օրիորդ Տըլօրմ տիրոջս սէս անհաւատ է։ Հանդարտ եղի՛ր և թող որ ու-զածը ըսէ նէ։

— Ոչ՛, գոչեց Ցօմինիկեանը, երբէք չեմ ներեր որ գիտու-թեանս դէմ յարձակում ըլլայ. որքան չարախօսներու հանդիպի այն, նոյնքան և աւելի ջանք կ'ընեմ իր բոլոր պայծառութեամբը շողացնելու զայն։ Երբուներաց երեւելի անձերու բաղդը նայելու զբաղած եմ, և գիտեմ թէ ինչ ազդեցութեան կը հնազանդին անոնք։ Արդ երէկ, տէ՛ր իմ, Թագաւորին աստղացանը գուշակելէս ետք նայուածքս դէպ ՚ի ձեր աստղն ուղղեցի, որուն երկինքէն վրայ ըրած բոլոր ճանապարհորդութեանց հետեւելու հրաման տուիք ինձ։ Տեսայ որ անոր մօտեցաւ օրիորդ Տըլօրմին աստղը, որ վեց ամիսէ ՚ի վեր (թուականները ճշդապէս կը նշանակեմ) շատ յայտնի կերպով ձերինէն կը հեռանար։ Կը հեռանար միանգամայն Կոյսին համաստեղութենէն, հալածուելով երկու մոլորակներէ որք Թագուհիին և տիկին Տը Շըվրէօզին մոլորակներն էին։ Արդ երկրիս պատահարները բացատրելու համար երկնային յեղաշըր-ջումները դիտելով հասկցայ թէ օրիորդ Տըլօրմ ձեզմէ խոյս կը տար, կը հեռանար նոյնպէս առաքինութենէն որուն ներկայացու-ցիչն է Կոյսը։

— Մտիկ ըրէ՛, Մարիոն... հրաշալի՛ է այս, ըսաւ կար-տինալը։

Վսեմ կը գտնէի Գամբանելը։ Այս կրօնաւորն առաջին կար-գի կատակերգու դերասան մը կրնար ըլլալ։

Երկնուստ ներշնչուածի մը ձայնով կրկնեց.

— Ձեզմէ խոյս տալու առերևոյթ պատճառն երկու մոլորակ-ներն էին. ուրեմն, տէ՛ր իմ, օրիորդ Տըլօրմ ձեզմէ կը հեռա-նար, վասն զի կ'ենթադրէր թէ թագուն կերպով թագուհիին և

տիկին Տը Տըվրէօզը կը սիրէք։ Հիմակ աղէկ ուշադրութիւն ըրէք ինծի։ Փախստական աստղն Երկուորեակ աստեղատան բարձանցը վրայ զօդիակոսին մէջ կանկ առաւ որ արծաթեղինաց սեղանաւորին և Անգլիոյ դեսպանին միւս երկու աստղերէն հեռի չէ։ Արդ Կոյսին հեռաւորութիւնը և Երկու թուոյն հոն իրարու հանդիպիլը նկատելով յայտնապէս կ'իմանանք թէ օրիորդ Տըլօրմ երկու տարփածու ունէր, և թէ այս երկու տարփածուներն էին Էմըրի և ազնուական լորտը։

— Առջինը կը ներեմ քեզ, սիրելի աղջիկս, ըսաւ Րիշլիէօ, բայց երկրորդը . . .

— Ա՛խ, շնորհք ըրէք, տէր իմ . . . վերապատուելիին բացատրութիւններէն բաւական ամօթահար եմ։

Րիշլիէօ ձեռքը երկնցուց, զոր կեղծաւոր կերպով մը պագի։

Իր զէնքովը կը կռուէր միշտ իրեն դէմ։

Դամբաննել շարայարեց.

— Բայց, օրիորդ, աստղդ Երկուորեակ աստեղատան բարձանց վրայ այսպէս կանկ առնելէն ետք Նորին Բարձրութեան աստղին և Կոյս համաստեղութեան կողմն ուղղուիլ սկսաւ. ուսկէ՝ կարծեմ բաւական տրամաբանօրէն՝ հետևցուցի թէ ուրիշ տարփանք չունեցար և թէ յանցանացդ վրայ կը զղջաս։ Երկար չըսեմ, համադիպումին ժամը և քու այցելութեան ժամը կանխաւ ըսի . . . ։ Հիմա կը մնայ ինծի հարցնել քեզ, օրիորդ, թէ այս բանիս մէջ նենգութիւն մը կա՞յ։

— Կը խնդրեմ, մոռցի՛ր տխմարութիւնս, ըսի աղաչանքի ձայնով։

— Վիրաւորուած ինքնասիրութիւնը դժուարաւ կը մոռնայ, պատասխանեց խիստ պաղ կերպով մը։ Գոնէ այն գուշակութեանց որք ատենօք եղան և չկատարուեցան, կ'ըսէք. առի թող այնքան զարմանալի չերևայ քեզ։ Միշտ ծաղրելով կը պատասխանեմ այն անձանց որ գիտութեանս վրայ տարակուսելու չափ խենթ են. և երկու ծաղրողներուն ամենէն խելանին է ով որ իր խօսքին անկատակ ըլլալը կը հաւտացնէ միւսին . . . ։ Ծառայ եմ տէրութեանդ, գեղանի օրիորդ։

Մնաք բարև ըսաւ պաշտօնէին և աշխարհակալի մը վեհափառութեամբ դուրս ելաւ։

Խղճի մտօք կը յայտնեմ թէ Րիշլիէօէն աւելի խելացին անգամ այս տեսարանէն կը խաբուէր անշուշտ։



# Դ

Ինքնասիրութեան բոլոր թելերը կը շարժէին յիս։ Մեծ խաբերան խաբելու անբաւ փափաք մը կը գրգռուէր, և տիկին Տը Շըվրէօզի ծառայութիւն ընելու խորհուրդն այն ատեն մտքիս մէջ երկրորդական տեղ կը բռնէր։ Անշուշտ բարեկամութիւնն և անձնուիրութիւնը թելադրեր էին ինձ որոշումս. սակայն այս որոշումը գործադրելու ոյժը կ՚ընդունէի այն ատելութենէն զոր պաշտօնեան կը ներշնչէր ինձ, և ուրախութիւն մ՚էր ինձ խաբել այս մարդը, որ ոչ ազնուութիւն և ոչ սիրտ ունէր։

Մայր-թագուհիին հետ առանձին խօսակցութեանը մէջ անոր ապերախտութեան և ինքնամոլութեան աւելի դեր մը խաղալը առաջին անգամ տեսեր էի արդէն։

Այն օրէն իսկ սկսեր էին իմ նկատմամբ անոր սիրահարական տարօրինակ յանձնապաստանութիւնները։ Անձիս հաճոյական հանգամանքէն հրապուրուելով՝ առանց որ և է քաղաքավարական ձևի սիրտս իրեն ընտրած էր, և կը կարծէր թէ պիտի ստանայ զայն թանկագին գանձի մը պէս պահուած հովահարիս փոխարէն։

Սէն-Սօրլէն անոր մեքենայութեանց դէմ ինձ զգուշութիւն տալու հոգը կրնար չունենալ։

Յանցանքներս այնքան անկեղծութեամբ խոստովանած եմ որ

ոչ ոք զիս պիտի ամբաստանէ ըսելով թէ կ՚ուզեմ բնաւորութիւնս շողոքորթել. ուստի հոս կը յայտնեմ թէ կրօնաւորի մը սէրը հրէշային և անկարելի բան մը կ՚երևար ինձ։

Սէրն ազնիւ, բարձր զգացում մ՚է, որով երկու հոգիներ դէպ ՚ի հիացման սահմանները կը սլանան։ Կին մը կրնայ չյարգել այն մարդը որուն շնորհապարտ է. բայց դարձեալ պէտք է որ ինքզինքը խաբէ ան և մարդուն բացակայ յատկութեանց տեղ պատրանքը դնէ։

Արդ կրօնաւորի մը հետ պատրանքը ներելի չէ։

Եթէ աշխարհական մարդը մեզ կը գայ, ճակատը վեր բռնելով կը քալէ, իր աչքը կը փողփողի, բերանը կը ժպտի. կը յարձակի մեր վրայ համարձակ և յայտնի կերպով, յանդգնութեամբ և անկեղծութեամբ կը սիրէ մեզի։

Բայց կրօնաւորն այսպէս չվարուիր։

Կեղծաւորութեան ամենէն մթին վերարկուին ներքև կը պահուի, և ծածուկ սիրոյ մը մէջ կը յառաջանայ գաղտնաբար և անվստահութեամբ. կ՚ուզէ մարդերէն պահուիլ. Աստուծմէն անգամ պահուիլ կարենալ կ՚ուզէ։ Բարձր խոտերու մէջ սողացող օձին պէս յամրաբար կը մօտի, հազարումէկ շրջան կ՚ընէ և կը ջանայ յանկարծ վրադ յարձակելու որպէս զի իր մահաբոյր օղակները անդամներուդ բոլորտիքը գալարէ։ Գուշակելով իր ներշնչած պժգումը, քովդ կը գայ ստութիւն ՚ի շրթունս և երդմնազանցութիւն ՚ի սիրտ։ Իր սրբապղծութենէ թելադրուած խօսքերն եռանդը կը սառնահարեն, վստահութիւնը կը մեռցնեն, և կարծեմ թէ Սատանան անգամ՝ եթէ կին ըլլար՝ պիտի չուզէր կրօնաւորի սիրային խոստովանութիւնները լսել։

Կ՚ըսեմ այս ամեն բաները, վասն զի թշնամիներս զիս ամբաստանեցին ըսելով թէ կարտինալը սիրեցի. ոճիրի մը դէմ պաշտպանելու պէս ինքզինքս կը պաշտպանեմ այս ամբաստանութեան դէմ։

Բաւական իրական յանցանաց համար ինքզինքս մեղադրելու պատրաստ եմ. ինչո՞ւ համար երևակայական յանցանք ալ վերա-

դրեմ ինծ։ Բայց իր եկեղեցականութեան պատճառաւ անոր սխրախնդիր առաջարկութիւններու մերժողն ես չեղայ միայն։ Ի բաց թողլով Թագուհին, Տը Շըվրէօզ դքսուհին, տիկին Տիւ Ֆարժին, տիկին Տը Շօլնը, Մարի Տը Կօնզակ իշխանուհին և ուրիշ շատ կիներ որոնց քով բազմաթիւ անյաջողութիւններ ունեցաւ, պիտի յիշեմ Նինօնը, որ անշուշտ պիտի չամբաստանուի երբ չափազանց խղճահարութիւն ընող մը։

Տէ Պուրնէ իր տիրոջ կողմէն Նինօնին յիսուն հազար թալեր պարգևելու եկած ըլլալով, յետագայ պատասխանը ընդունեցաւ անորմէն.

«— Ա՛խ, ըսաւ, աղաչէ՛ կարտինալը որ հանգիստ թողու զիս. հոգւոյս փրկութեան նկատմամբ արդէն շատ վախ ունիմ, և չեմ ուզեր ստուգապէս գեհեննապարտիլ։»

Արդ ես Նինօնէն աւելի անձնական գանգատներ ունէի Րիշըլիէօյին դէմ։

Մեր առաջին տեսութենէն սկսելով զիս լրտեսութիւն ընելու բռնադատած չէ՞ր։ Կարելի՞ էր ներել անոր իր խաւարին մեքենայութիւնները զոր 'ի գործ դրաւ Բարիզէն մեկնիլս և ընտանեացս հետ հաշտուիլս արգիլելու համար։ Գայթակղութեանց պատճառ կը սեպէի զինքը. իրեն դէմ ոխ ունէի այն ամեն ատելութեամբ զոր չէի համարձակեր երևան հանելու, այն ամեն զգուշաւոր ընթացքովս զոր ստիպուած էի բռնելու անոր նկատմամբ։

Ինծ պիտի հարցուի թէ ինչե՞ր ըսի Գամբանելլին կառքիս մէջ։ Ժամանակս շատ կարճ էր, ուստի յետագայ խիստ պարզ խօսքերը ըսի։

— Կարտինալը կը խաբես, հայր իմ, ըսի խնդալով։

— Կը կարծե՞ս, պատասխանեց։

— Ապահով եմ... ես ալ կը խաբեմ զինքը. համաձայնինք արդ։

Ու թղթակալէս փոխանակագիրը հանելով ձեռքը տուի։

Շողոքորթութեան այս ընթացքէս։

Բացատրեցի անոր թէ աստղերուն ինչ ըսել տալ կ'ուզէի։

— Ամեն ըսածներս աղէկ միտքդ պիտի պահես ; հարցուցի ։

— Ո՛հ, գոչեց, առանց արդէն զոյ դլուցած բաներս են, և Թամպոյլեէի ապարանքին մէջ ատոնց վրայ երկար ժամանակ խօսակցութիւն եղած է ։ Խօսքը մեր մէջ, կրնամ՝ խոստովանիլ խոկ թէ մարդիզուհին զիս խրատեց պաշտօնեան կթելու ։

— Իրա՞ւ ։

— Ասոր վրայ մեր մենաստանին վանահայրին կարծիքը առի ։ « Եթէ դուն չընես, ըսաւ ինձ, ուրիշ մը, թերևս աւելի տղէս մը պիտի ընէ. արդ Եկեղեցիին ստակը պէտք է որ Եկեղեցին վերադառնայ ։ »

— Այդ վանահայրը շատ խելանի մարդ մ՚է եղեր ։

— Այնպէս չէ՞, օրիորդ ։

Գամբանել կառքէն վար կ՚իջնէր ։

— Կէս ժամի չափ ետք եկուր, մտի՛ր, ըսաւ ինձ, և անհաւատ ձևացի՛ր . . . այդպէս շատ խորագիտութիւն ըրած կ՚ըլլանք . . . ։ Նորին Բարձրութիւնը պիտի չկասկածի թէ խօսքը մէկ ըրած ենք ։

Ընթերցողն արդէն դիտէ մնացորդը ։

Հիմա խնդիրն այս շքեղ խաբէութիւնը շարունակելու վրայ էր ։ Բոլոր դիտաւորութիւններս այս նկատմամբ կազմուած էին ։

Կարտինալն անշուշտ նամակները դուրս չհանած է . թերևս իր սենեկին մէջ, իր դրասեղանին վրան են . հարկաւ պիտի բռնադատեմ զինքը ինձ ցոյց տալու այն գիրերը ։ Կ՚երդնում թէ տիկին Տը Շըվրէօզ պիտի ստանայ զանոնք, եթէ նաև պարտաւորիմ վրիժառութեանց ամենասոսկալին հրաւիրել իմ վրայ ։

Սակայն՝ եթէ կարելի է՝ պիտի ջանամ Րիշլիէօն ինծմէ վրէժ լուծելու գոհունակութենէն ալ զրկել . աղամանդներուս հետ խոյս պիտի տամ և պիտի կրնամ իր կատղութենէն ազատ պահել ինքզինքս ։

Արդ, ինչպէս ըսի, Գամբանել իր դաշնակութիւնը անդրանիկ կերպով յայտնելէն ետք դուրս ելած էր, և բոլորովին զուարթ կը ձևանայի վերջին հեղնութենէն, որով առողջական համարձակած էր զիս ծաղրելու ։

— Հա՛, հա՛, յաղթուեցա՛ր, կատարելապէ՛ս յաղթուեցար, խեղճ Մարիոնս, գոչեց կարտինալը։

— Այո՛, տէր իմ... կը դողամ՝ մտածելով թէ փցուն ընթացքովս վտանգաւոր թշնամի մը վաստկեցայ։

— Ինչո՛ւ այնպէս տարակուսեցար յայտնի իրողութեան մը վրայ։ Բայց հանգիստ եղի՛ր, սիրելի գեղանի. կախարդութենէ վախնալու բան մը չունիս ամենեին, և Գամբանել ալ կախարդ մը չէ։

— Ա՛խ, աւելի՛ աղէկ, գոչեցի։

— Ինչպէս կրցար տեսնել, իր գիտութիւնը հայեցողական է, բոլորովին կրաւորական է, եթէ սակայն կրնամ այս կերպով խօսիլ։ Գամբանել կը գուշակէ և չշարժիր։ Աստղերը պատահարները ցոյց կ՚տան անոր. բայց խեղճ մարդը շատ պիտի շփոթուէր եթէ պէտք ըլլար պատճառ մը նշանակել այն պատահարներուն և անոնց ծնունդ տուող անձանց դիտաւորութիւնը նշմարել։ Արդ ես հոգ կը տանիմ զինքը շփոթելու երբ աստղերը չափէն աւելի անխորհուրդ ըլլան, և յաջողակութեամբ խաբեցի զինքը քու վրայ ունեցած սիրոյս տեսակին նկատմամբ։ Ի՞նչ. իս կը սիրե՞ս ուրեմն... թշնամիի մը մահուան լուրն ոչ այնքան ուրախութիւն կը տար ինծ որքան այդ լուրը։

— Տէր իմ...

— Տէ՛, կ՚երևակայեմ թէ ալ բարեպաշտի կերպարան պիտի չառնուս, այնպէս չէ՞։

Թիկնաթոռիս մօտեցաւ և նորէն սկսաւ պչրիլ ու քծնիլ, բայց առաջուանէն աւելի համարձակութեամբ և յաղթողի կերպարանով, մ՚որ տարօրէն պիտի զուարճացնէր զիս եթէ պարագան ծանր չըլլար։

— Կ՚աղաչեմ, տէր իմ, խնայեցէ՛ք ինծ։

— Ի՞նչ կը նշանակէ ատի...։ Զիս կը սիրես, և կարծեմ թէ բաւական զիջում ունեցայ, բաւական համբերութեամբ տարի քմահաճութեանցդ...։ Երանութիւնս ա՛լ մի՛ հեռացներ։

Ձեռքս շուրթերուն մօտեցուց։

Հանդիսաւոր կերպով մ՚ոտք ելայ և ըսի.

— Ձեր Բարձրութիւնը պիտի հաճի յիշելու թէ մինչև այսօր գաղտնի պահեցի իրմէն տռփի մ՚որ... կրկնակի եղեռնական է։ Աստղերը զիս մատնեցին անշուշտ. սակայն սրտիս դէմ կռուելու որոշումս անդրդուելի կը մնայ։

— Բայց քանի որ ատանկ է, ինչո՞ւ եկար ուրեմն, գոչեց Րիշլիէօ որուն դողահար արտևանունքին տակ կիսովին վարագուրուած աչքը բարկութեան սկզբնաւորութիւն մը կը ծանուցանէր։

— Բայց, տէ՛ր իմ, եկայ ձեր նկատմամբ տուած խոստումներս կատարելու համար։ Ամէն ամիս հարիւր ոսկի կը ղրկէք ինծի, և ձեր ամէն բարութեանց վրայ նաև զոյգ մը շատ գեղեցիկ երիվար աւելցուցիք...

— Իրաւ է... դեռ շնորհակալ չեղար ինծի, օրիորդ։

— Չէ. բայց եթէ կը հաճիք թոյլ տալ ինծի որ այսօր շնորհակալ ըլլամ...

— Քիչ մ՚ուշ է։

— Հաւանեցէք ինծի ներելու եթէ այցելութիւններս աւելի յաճախ չեն։ Այսուհետև միայն ծանր պարագաներու համար պիտի գամ և երբ մանաւանդ ձեր շահերը կամ թագաւորութեան շահերն ինծի վտանգի մէջ երևան։ Տկարութենէս շատ կը վախնամ և յուսամ թէ պիտի հասկնաք այս զգուշութիւնները, որոնց միակ նպատակն է մեր երկուքին խղճի տագնապէ ազատ մնալը։

— Յիրա՛ւ, գոչեց կարտինալը, այս թշուառական աղջիկը խելքս գլուխէս պիտի առնու....։ Տկարութի՜ւնդ... խղճի տագնա՜պ... այդպիսի բան մը չտեսնուած է բնաւ։ Բայց այդպէս ոտքի վրայ մի՛ մնար, եկուր նստի՛ր....։ Կիներն անիմանալի հանելուկներ են....։ Ի՞նչ է ուրեմն, օրիորդ, այն ծանր գործն որ քեզի հոս կը բերէ։ Պիտի խօսի՛ս, վերջապէս։

— Տէր իմ... զիս կը վախցնէք։

— Հանդիստ եղի՛ր, ա՛լ մի՛ դողար, ըսաւ՝ նորէն ձեռքս բռնելով, բարկացած չեմ։ Դուն ալ այնպիսի այլանդակութեամբ մը....։ Միայն ինծ կը պատահին այսպիսի բաներ....։ Ուրեմն

ինձ իմացնելիք բա՞ն մ'ունիս, աղջիկս: Կը պախարակէիր Շալէին դէմ խօսիլ վարուելուս համար, այնպէս չէ՞. գժգոհութիւնն և չարախօսութիւնն երևան կ'ելնեն, . . հոգս չէ՛:

— Ձեր Բարձրութեան ատոր վրայ խօսելու համար չեկեր էի:

— Ա՛հ, թշնամիներուս մէկ ուրիշ անգթութիւնը լսեցիր արդեօք:

— Ինչպէս խոստացած կը համարիմ իմացնելու ձեզ թէ լորտ Պըքինկամ . . .

— Պըքինկամ. չեմ ուզեր որ այդ մարդուն անունը տաս իմ առջև . . . . Պըքինկամ, խեղկատակ մը. իր դեսպանական անբռնաբարելիութիւնը պատեհ առիթ կը սեպէր բոլոր արքունեաց առջև զիս առ ոչինչ դնելու: Այդ ապուշ սիրամոլը կը համարձակէր յուսալու թէ թագուհին . . . : Բայց դուն ալ, Մարիոն, դուն ալ մեղսակից եղար:

— Ներեցէք . . . այդ կէտը չգիտէի, տէր իմ, խնդրեմ որ հաւտաք:

— Լաւ թէ՛ն. քիչ մնաց որ այն ատեն սիրտի պատռէի քեզի . . . բանը կը խղճի թագաւորին որ օրինակ մ'ընէ: Եւ հիմակ անգամ երբ կը խորհիմ թէ այդ ատելի Անգլիացին . . . բայց այդ խնդիրը հիմա սիրտի լուծենք . . . : Է՛, խօսէ՛ ուրեմն, այդ մատնիչը խօսքս ըրաւ քու հետ:

— Մանաւանդ երբ կը մեկնէր:

— Ի՞նչ ըսաւ:

— Այնպիսի բաներ, զոր կրնամ ձեզ ըսել, վասն զի ատղանիս բոլորովին հաւաքուած երեսունէն աւելի անձանց առջև գոչելով կը խօսէր:

— Բայց արդէն մէկ շաբաթէ 'ի վեր Փրանսայէն մեկնած է ան. ինչու՞ դեռ այսօր եկար լուր տալու ինձ:

— Վասն զի Պըքինկամ խօսք տուած էր ինձ նամակ գրելու, և իր նամակին ինձ պիտի իմացնէր ձեզի դէմ պատրաստուած վրիժառութեան նախատակներուն մանրամասն պարագաները: Բայց տեսնելով թէ տակաւին չեկաւ այսպիսի նամակ մը, ինձ պարտք սեպեցի ալ չուշացնել այս մասին ձեզ տեղեկութիւններ տալու:

— Կ՚ըսեն թէ երասուն հոգի ներկայ էին, և մինչև այսօր այդ անիծեալ լօրտին սպառնալիքը ինչպէս չլսեցի։

— Առի երկու քան կը հաստատէ, տէր իմ. նախ՝ թէ մեծ պաշտօնեայ մը քիչ բարեկամ ունի. երկրորդ... թէ բոլոր չմինէայի ծխահաններուս վանդակապատեր դնել տուի։

— Աղէ՛կ, աղէ՛կ, խրողութիւնը պատմէ՛...։ Անգլիացին ինչ ըսաւ սեղանակիցներուդ առջև։

— Համարձակապէս ամբաստանեց ձեզի իբր իր ոսոխը, ըսելով՝ թէ իր կնորսական նպատակներուն առջև արգելք կը հանէիք չէ թէ վասն զի Թագաւորը կը սիրէք, այլ վասն զի ձեր անձնական շահը կը պաշտպանէք։ Դուք իսկ, ըսաւ անհաստատ կերպով, յանցական յոյսեր կը տածէք։

— Սո՛ւտ է, բոլորովի՛ն սուտ է ատի...։ Գըքինկամ խաբեբայ և նենգաւոր մ՚է, մռմռաց Րիշլիէօ, որուն երեսին վրայ կապարի գոյն մը ծաւալեցաւ։ Բարեբաղդաբար Թագաւորին մտքին մէջ հաւատք չեն գտներ ամենևին այդ զրպարտութիւններ...
...։ Վե՞րջը, Մարիոն։

— Գըքինկամ ձեզի դէմ բարկացաւ, ամեն տեսակ սպառնալիք ընելով, տէր իմ. «Եթէ կարտինալը Լուի ԺԳ֊ին վրան կ՚իշխէ, ես ալ Շարլ Աին վրայ կ՚իշխեմ...։ Շուտով պիտի տեսնուի թէ հեռաւ թշնամաբար վարուողն ինչ կը շահի...։ Թո՛ղ Րիշլիէօ ուզէ միայն Րօշէլը նուաճելու...։» Ահա ասոնք են ճիշդ իր խօսքերը։

— Ապստամբներուն օգնելու համար նաւատորմիղ մը ղրկելու դիտաւորութիւնը ունի՞ արդեօք։

— Չգիտեմ։ Ահա այդ կէտը պիտի իմանայի այն նամակէն զոր չընդունեցայ։

Կարտինալն ոտք ելաւ բոլորովին մտմտուքի երթալով։

Երկու շրջան առաւ սենեկին մէջ, ապա իր գրասեղանին քովը եկաւ վերստին, գրիչ մ՚առաւ և քանի մը ծանօթութիւն գրեց, որք անշուշտ իմ տուած լուրերուն կը վերաբերէին։

Գըքինկամ իրաց այս խօսքերը ըսած էր, և շատ պատեհու-

թեամբ յիշեր էի զանոնք՝ այցելութեանս պատրուակ մը գտնելու և ճշմարիտ նպատակս կարտինալին չյայտնելու համար ։

Եթէ անդադրուիմ դեսպանը մատնած ըլլալուս համար, կը պատասխանեմ թէ Պըքինկամ կը պարտաւորէր լռել ։

Թէև կը քամահրէի կարտինալը, բայց կ՚ուզէի գիտնալ թէ ինչու կը պարտաւորէի չիմացնել անոր ինչ որ Ֆրանսային դէմ կը նիւթուէր, նա մանաւանդ երբ իմացնելս ինձ այնքան օգտակար էր զինքը ծուղակս նետելու համար ։

Ռիշլիէօ դադրեցաւ գրելէ, նորէն քովս եկաւ, նստաւ և ըսաւ .

— Շարլը Ան պիտի իմացնեմ իր սիրականին ազնիւ դիտաւորութիւնները ։ Մարիօն, ծառայութիւն մը ։ Ճշմարիտ ծառայութիւն մը մատուցիր ինձ . . . ։ Այդքան է ամէնը, այնպէս չէ՞ ։

— Այո՛, տէր իմ ։

— Այդքանն իսկ արդէն շատ է, յիրաւի ։ Երբ անգլիական նաւատորմիղ մը Ռօշէլը կը պաշտպանէ, բերդն անառիկ կը դառնայ, և այն գեհենապարտ կալվինեաններն այնպիսի լրբութիւն մը պիտի առնուն . . . ։ Բայց ինչ և է, խօսք պիտի հակըցնենք ատոնց . . . ։ Պըքինկամ . ինչ զարշելի անձնաւորով . . ։ Պիտի հաւատա՞ս արդեօք, սիրելիդ իմ, եթէ ըսեմ քեզ թէ Ան Տ՚Օթրիշին մէկ պատկերին համար քսան հազար թալեր վճարեց սա ապիրատ Բուլթանժին, որ թագուհիին նախասպեան էր ։ Թագուհիին պատկերը կուրծքին վրայ կը կրէր . . . բայց մի և նոյն գումարը վճարելով դողցնել տալի զայն ։

— Եւ մի՞ գուցէ դուք ձեր կուրծքին վրայ կրէք այդ պատկերը ։

Ռիշլիէօ չլսել ձևացուց հարցումս և շարայարեց .

— Ուրիշ բան մ՚ալ կայ որ մտքէդ չանցնիր ամէնևին . անկից ՚ի զատ Պըքինկամ Շարլը Ան նշանուհին, Անրիէթ իշխանուհին Գալէի մէջ ձգելու յանդգնութիւնը ունեցաւ . . . ։ Այո՛, սիրելիդ իմ, մինակն եկաւ Բարիզ . յատկապէս եկաւ վերջին անգամ մ՚ալ Ան Տ՚Օթրիշը տեսնելու համար ։ Լուի ԺԳ և ես Ֆոնթէն-

պլօյի մէջ էինք։ Պըքինկամ Թագուհիին մինչև սենեակը մտաւ․ սա տակաւին չելած էր անկողինէն . . . ։ Շաքադիր կիներն 'ի նանիր բիւր յանդիմանութիւններ կ'ընէին Անգլիացիին, որ հոգ չըրաւ, համարձակեցաւ ներս մտնելու և ծունկի վրայ գալու․․ ․ ։ Լէ՛րբը։ Ո՛հ, եթէ հոն ըլլայի․ կ'երդնում Աստուծոյ վրայ թէ իր դեսպանի յատկութիւնը պատիժէն պիտի չազատէր զինքը․ նախապատիւ պիտի համարէի ամուսնութիւնը խզել և պատերազմ հրատարակել Մեծն-Պրիթանիոյ դէմ։

Ուղղակի պաշտօնէին նայեցայ և ըսի․

— Պէտք է որ Լուի ԺԳ ողորմի այն եռանդագին համակրութենէն որով կը պաշտպանէք Թագուհիին պատիւը, այնպէս չէ՞։

— Այս մասին բաւ է այսքանը, ըսաւ շփոթով, և հիմա մեր գործերուն վրայ խօսինք։

— Ո՛հ, պատասխանեցի հեգնական կերպով մը, կրնաք Պըքինկամին դէմ ձեր անէծքը շարունակել։ Երբեք չէի կարծեր թէ այսքան յանդգնութիւն տանելը կարելի ըլլայ . . .

Կարտինալին ոտքովը գետինը զարկաւ։

— Ներեցէ՛ք . . . կը կարծէի թէ գոհ պիտի ըլլայիք ձեզի հետ սրտմտիլս տեսնելով, տէր իմ։

Կարտինալին ինքզինքը զսպելու ջանք մ'ըրաւ, գուարթ կերպարան մ'առաւ․ ցուցամատը մինչև աչքը բարձրացուց, մեղմիկ շարժեց, և ըսաւ․

— Գուշակեցի՛ միտքդ . . . բայց ուրիշներուն պէս դուն ալ կը սխալիս, կը լսե՞ս։ Երբ բան մը կը հաստատեմ խօսքովս, կ'ուզեմ որ հաւտան խօսքիս․ կը պահանջեմ . . . ։ Է՛, ահա լմնցաւ . . . հաշտուինք, սիրելի Մարիօնիկս . . . ։ Բայց գիտե՞ս որ միշտ աւելի սիրուն և աւելի թարմացեր ես։

— Կը շողոքորթէք զիս, տէր իմ։

— Կարտինալներու ամբողջ ժողով մը, և զիս ամէնէն առաջ դժոխոց մատնելու կարող աչեր ունիս, Մարիօն։

— Ի՞նչ կը համարձակիք ըսելու։

— Ճշմարտութիւնը, սիրելիդ իմ . . . մենք ալ դիւրաբեկ ենք

մարդերու պէս . . . ։ Ո՛հ, թո՛յլ տուր ինձ ձեռքդ. մի՛ այդպէս վախով նայիր ինծի . . . ։ Չեմ հասկնար թէ ինչու իմ վրայ սէր, նաև ինծի դէմ տեսակ մը դժկամակութիւն ունիս ։ Սատանային բան մը չէ՞ մտածել թէ սա Էմըրին, թէ սա Պըքինկամը . . .

— Ա՛խ, տէր իմ, եթէ մեղք գործեցի, կը պարտաւորիք դուք ձեզի ամբաստանել այս մասին ։

— Զի՞նչ ։

— Ճիշդ ձեզի ։ Թո՛ղ Ձեր Բարձրութիւնը զիջանի յիշելու այն օրը ուր եկայ աղերսեցի որ իբր շնորհք հաւանիք թոյլ տալու ինձ հայրական տունս վերադառնալ ։

— Աղէկ, բայց կարծեմ թէ թող տուի . . .

— Կարճ կապեցէք. ամեն ինչ գիտեմ ։

Կարտինալին այտերուն վրայէն աննշմարելի կարմրութիւն մ'անցաւ ։

— Այո՛, զիս խաբեցիք, տէր իմ ։ Կ'ուզէի խայս տալ ձեզի, հաւնոզուած ըլլալով թէ երկնից անէծքը վրաս կ'իջնէր եթէ սրբապիղծ սիրոյս տեղի տայի ։ Կրօնաւոր մը, Քրիստոսի պաշտօնեայ մը սիրել . . . չէ՛, երբէ՛ք, երբէ՛ք ։ Այսպիսի սէր մը երկնից դէմ ուղղակի թշնամանք մ'է, անթողլի ոճիր մ'է, ստոյգ գեհենապարտութիւնն է ։

Րիշլիէօ սասանեցաւ ։

Ա.յն ատեն բոլորովին կը մոռնայի խաբեբայի դերս, և խօսքերս ճշմարտութեան շեշտ մ'ունէին որ վախ կը տար կարտինալին ։

— Ահա այս պատճառաւ կ'ուզէի փախչիլ, տէր իմ, և թագուհին կերպով արգիլեցիք այս նպատակը զոր խիղճս կը թելադրէր ։ Շալօնին եպիսկոպոսին խայտառակ պաշտօն մը տրուեցաւ . . . մի՛ ուրանաք ։ Վախ տրուեցաւ նօտարիս, ձեր նուիրակներէն խումբ մը տունիս չորս կողմը կը բռնէր և ամեն ընթացքս ու գնացքս կը դիտէր ։ Ձեր շնորհիւ ծնողքս մերժեցին զիս. արհամարհութեան մէջ թաղուած, նախատանաց ներքև ճզմուած ու մնայ ինքզինքս . . . յուսահատութիւնը սիրտս դրաւեց, և մոռացումը յիմարական ուրախութեանց, հեշտութենէ հեռաւ

թմրութեանց մէջ փնտռեցի ։ Ամենուն անձնատուր պիտի ըլլայի՝ ձեզ յանձնուելէ առաջ. . . ձե՜զ որ կրօնաւոր էք . . . ձե՜զ որ զիս կորստեան մատնեցիք ։

Կարտինալը մեռելատիպ կերպարան մ'առաւ՝ ոչ այնքան բարկութեան որքան զարհուրանաց պատճառաւ ։

Ընթացքիս այս կիսովին ճշմարիտ և կիսովին կեղծ բացատրութիւնը հարկաւորապէս կը պարտաւորէր՝ աստղերուն տուած տեղեկութիւններուն հետ կարտինալին ամենախորունկ համոզում մը տալ ։

Տեսարանին ամենէն բարձր կէտը բերեր էի զինքը ։

Պէտք էր հանդարտել իր վախը և նորէն քիչ մ'առաւելութիւն ստանալու միջոցը տալ իրեն ։

— Բա՛րէ, ըսի, զիս կը բռնադատէք այս բաները ըսելու . . . կամ թէ լաւ եւս է ըսել՝ չարչարանաց գրգռուելուն պատճառն է այն այլանդակ գիտունն որ այնքան անյարմարութեամբ աղետալի գաղտնիք մ'երևան հանեց ։ Տէր իմ, այս գաղտնիքը հետս գերեզման պիտի տանէի ։ Երբէք պիտի չլսէիք թէ Մարիօն Տըլօրմ ձեր սէրէն ազատելու համար բոզի դեր խաղալու խոնարհած է ։ Ցանցաւոր եղայ վատաբարոյ չըլլալու համար, և զիս կը հանդարտէ այն արհամարհանքն իսկ զոր կը պարտաւորիք ունենալ ինծի դէմ ։

— Մարիօն, ըսաւ ինձ կարտինալը, խեղճ Մարիոնս, զիս կը յուսահատեցնես, և որեթէ խիղճի խայթ կ'ունենայի եթէ բանաւորութիւնն ինձ օգնութեան չհասնէր, եթէ յայտնապէս չտեսնէի թէ կրօնական . . . շատ չափանց կարծիքներ այդ աղետալի հետևանքը ունեցան ։ Անկեղծապէս խօսի՛մ. երևակայութեան այդ ամեն շեղումներուն անձնատուր ըլլալուդ պատճառ չկար ։ Քանի որ առաջնորդի տեղ կը ծառայէի քեզ, կը պարտաւորէիր աւելի վստահութիւն ունենալ իմ վրայ ։ Արդէն ըսի քեզ, աղջիկս. թէ արարածը ակար է, և երկինք մեզի պէս դժբաղդ մեղաւորներու համար ողորմութեան միշտ բաց գանձեր ունի . . . կրնաս հաւատալ ինձ այս մասին ։ Մաղթաղինէ Քրիստոսը սիրեց, և Քրիս-

տաս Մագթաղինէն սիրեց . . . ։ Եթէ երկնային հայրը պատրաստ չըլլար այն սէրը մաքրելու, եթէ Յիսուսի աստուածութիւնն ա-նոր մարդութիւնը չպաշտպանէր . . .

— Այո՛, տէր իմ։

— Այո՛, սիրելիդ իմ, հայհոյութիւն մը չէ ասի։ Եկեղե-ցին, մեր այս բարեսիրտ մայրն անկումները կանխաւ գիտէր եւ կրօնաւորներուն ամուրութիւնը պահանջեց . . . որ կարգապա-հութեան պարզ կանոն մ'է. և այս անկումներուն համար ներո-ղութիւններ ստեղծեց։ Քեզի համար կրնամ ներողութիւն առ-նալ, խեղճ աղջիկս, որպէս զի սարսափներդ փարատին։ Բոլ-մութիւնը պէտք է թողուլ ինչ ինչ գաղափարներու մէջ որով կը զսպուի ան։ Սակայն, Մարիոն, քեզի պէս լուսաւոր, խե-լանի միտքերը չեն շղթայուիր գունհիկը շղթայող մը և նոյն տե-ձով . . . ։ Այս պատճառաբանութիւնները պէտք է որ անպա-տասխանելի երևան քեզ, այնպէս չէ՞։

— Զիս յաղթահար կը տեսնէք, ըսի. բայց, տէր իմ, այս-պէս չէին խօսեր ինծ անոնք որք որոլանէն ելնելէս ետք ինծ քրիստոնէական վարդապետութեան դաս կը տային։

— Անշուշտ, անշուշտ . . . այն պատճառաւ զոր պահ մ'ա-ռաջ քեզ կը բացատրէի։ Մտիկ ըրէ, սիրելիս. էական կէտը գայթակղութիւն տալէ զգուշանալն է, և պաշտպանութենէս հե-ռի կենալով այնքան եպերելի եղար որքան հոս չէիր ըլլար, են-թադրելով իսկ թէ մեր սէրը զգայութեանց թարթափումներուն մէջ զարտուղէր երբեմնակի։ Մանաւանդ թէ Սրբազան Քահա-նայապետն՝ որուն հետ շատ աղէկ եմ՝ խղճահարութիւններդ հանդարտելու միջոցը չէր մերժեր ինծ։ Համոզուած կերպով կ'ը-սեմ քեզ թէ այսօր իսկ չմերժեր . . .

— Տէ՛ր իմ, տէր իմ, այդ խօսքերը շատ վտանգաւոր են, մռմռացի՝ գլուխս վար ընելով և երեսս ձեռներուս ծածկելով։

— Ինծ նայէ՛, Մարիոն, սեպագեղ աչքդ մի պահեր ինծէ . . . Թոյլ տուր որ համբուրեմ այդ սպիտակափայլ թեւդ, անզու-գոյր ձիակաւոր և փառաւոր մազերուդ ոսկեթելը խաղալիկը . . .

էի՛ն, մի՞թէ յանցաւոր եմ։ Երկինքէն սուրբ մ'իջեցնէր, երկ-
քին ամէնէն արդարը, ամէնէն կատարեալը թէ՛ր, ծունկերուդ
առջևը դնէր, ինչպէս ես դրուած եմ սոյն միջոցիս, ըսէ՛ անոնց
թէ սէր ունիս իրենց վրայ, ինչպէս քիչ մ'առաջ կ'ըսէիր ինձ
. . . և ահա, բամբէ, պիտի ընկճին, ինչպէս ես կ'ընկճիմ, և,
ինչպէս քաջ կը տեսնես, Մարիոն, մեր սէրը չկրնար ոճիր մը
ըլլալ։

— Լաւ, ըսի՝ բռնադատելով զինքը ոտք ելլելու, վասն զի
առտուըն առջևս ծունկի վրայ եկած էր։

Ես ալ ոտք ելայ և ուղղակի կարաւինակին նայեցայ։

— Կը խոստովանիմ թէ պատճառաբանութիւններդ ճշմարտա-
նման են, սէր իմ. Ճիշդ այդպիսի պատճառաբանութիւններ ես
ալ ըրած եմ ինքնիս, և շատ անգամ՝ խղճիս աղաղակին հակա-
ռակ՝ ինքզինքս պատրաստ տեսայ տեղի տալու այն համակրու-
թեան որ զիս դէպ առ ձեզ կը մղէր. բայց կանգ կ'առնէի և
տակաւին կ'առնում, բացարձակ ստուգութեամբ գիտնալով թէ
ինծի համար չէ թէ սէր այլ քմահաճութիւն մ'ունիք։

— Մարիօն . . . ուրկէ՞ կրնաս կարծել։

— Ա՛լ մի՛ ջանաք զիս խաբելու. զիս չէք սիրեր, և Թագու-
հին կը սիրէք։

— Թագուհի՜ն . . . կ'երդնում քեզ թէ . . .

— Ո՛հ, ես աստղագէտ չունիմ որ հասկնամ այն գաղտնիք-
ները զոր չգիտեմ. բայց մտիկ կ'ընեմ, կը նայիմ . . . և չլսածս,
չտեսածս կը գուշակեմ։ Թագուհին սիրելէ առաջ տիկին Տը
Շըվըրէօզը սիրեցիք։

— Զրպարտութի՛ւն։

— Դքսուհին սիրեցիք, կ'ըսեմ։ Հիմա կ'ատէք զինքը. այդ
ատելութիւնը սէր է տակաւին։

— Սիրելի Մարիօնս, նախանձը կը կուրէ (aveugler) քեզի։
Այդ կնկան համար լոկ անտարբերութիւն և արհամարհանք կ'ըզ-
գամ։

— Տէր իմ, մարդս չհալածեր այն անձերը որոնց համար ան-

տարբերութիւն կ՚զգայ. վրէժ չառնուր այն անձերէն զոր կ՚արհամարհէ։

— Է՛, աղէ՛կ, դքսուհին վրէժ առնելս կը տեսնէ՞ս։

— Ուրիշ բան է եթէ փոխանակ վրէժ անուանելու վատութիւն անուանէք Անրի Տը Թալէյրանին և դքսուհիին նամակները երիկին՝ Պ. Տը Շըվրէօզին յանձնելու նպատակը։

— Մարիօ՛ն . . .

— Մի՛ կարծէք թէ ձեր բարկութեամբը վախ կը տաք ինծ. . . կը կրկնե՛մ թէ տակաւին կը սիրէք դքսուհին, կը սիրէք թագուհին . . . և՛ւ հիմակ ինձմէն կեանքս և սիրտս կ՚ուզէք . . . : Խղճի խայթին և նախանձին բոլոր անձկութիւնները առ ոչի՛նչ գրեմ ապա երեսի վրայ ձգուելու նպատակաւ . . . : Ուղղեցէ՛ք ձեր այդ սխալը . . . : Ես չեմ ամենէն այն տկար կիներուն մին որոնց գրուժան սիրահարի մը դէմ միակ պաշտպանութիւնն իրենց հեծկլտանքն և արտասուքն է։ Ես Մարիոն Տըլօրմն եմ, սիրոյս քաջութիւնը, գեղեցկութեանս հպարտութիւնը ունիմ . . . : Այո՛, այո՛, պարոն . . . : Թագուհիէն աւելի գեղեցիկ, տիկին Տը Շըվրէօզէն աւելի գեղեցի՛կ եմ, և զանոնք ինձմէ վեր պիտի չդասէ՛ք . . . : Ոչ՛, աւելի աղէկ ունիմ ինքզինքս մեռցնել կամ ձեզի անգամ մեռցնել։

Խօսքի այս շքեղ մասը կատղութեամբ համակուած կերպարանով մ՚ըսի՝ աչերս դարձնելով և այնպիսի շարժումներ և ձևեր ընելով, զոր ժամանակին ամենէն ողբերգու դերասանուհիները հաւնէին գուցէ։

Կարտինալը ուժգին փարումով մը գլխս իր կուրծքին մօտ քաշեց ու միանգամայն եռանդագին ձայնով մը գոչեց.

— Ապրի՛ս, Մարիոն. հոյակա՛պ ես, Մարիոն. կը սիրեմ այդ վագրային ընթացքը, կը սիրեմ այդ առիւծային մռնչումները. . . . Այո՛, խաչոր կ՚երդնում թէ քեզի պէս կին մը պէտք է. . . համբուրէ՛ գլխս . . . : Հիմա մտիկ ըրէ։ Իրաւ սիրեցի տիկին Տը Շըվրէօզը և թագուհին . . . ծունկի վրայ եկած եմ, կ՚երդնում թէ . . . . բայց քու սէրդ անոնց սէրէն բիւրիցս աւելի թանկագին է ինծի համար։

— Ապացո՛յց, ապացո՛յց պէտք է ինձ։

— Ըսէ՛, ի՛նչ կը պահանջես։

— Ան Տ'Օրիշին մետայլեօնը, նախ... ապահով եմ թէ... հիմա կուրծքիդ վրան է ան ինչպէս էր Պըքինկամին կուրծքին վրայ։

— Բայց ո՛վ կրյաւ իմացնել քեզ...

— Է՛հ, արդէն քիչ մ'առաջ ըսի ձեզ. կը գուշակե՛մ։ Քանի որ Պըքինկամին պէս դուք ալ քսան հազար թալեր ծախս ըրիք, անշուշտ այդ պատկերը Լուի ԺԳ-ին յանձնելու համար չըրիք։

— Լա՛ւ, կրկնեց Րիշլիէօ, կը հնազանդիմ։

Իր պատմուճանին վե՛րի կոճակներուն մէկ քանիին քակեց և կուրծքէն մետայլեօնը դուրս հանեց, սակայն դժկոհութեան խիստ յայտնի ձևով մը կտրելով պզտի ոսկի շղթայ մ'որմէն կախուած էր պատկերը։

Բայց ամպի մը պէս եկաւ անցաւ այս դժգոհութիւնը, և կարմիրնալը պատկերը ինձ տալով ըսաւ.

— Ա՛ռ. բոլոր փափաքներդ հրամաններ կը դառնան ինծի համար։

— Տէր իմ, կ'սկսիմ հաւտալ ձեր սիրոյն... վերջին ապացոյց մ'ևս, և բոլորովին ձերն եմ։

— Տէ՛, խօսէ՛, Սիրէ՛ն (sirène), գոչեց մէջքս բազուկներուն մէջն առնելով և հրաշունչ նայուածք մը նետելով ինձ. ըսէ՛, թէ ինչ կը պահանջես տակաւին։

— Շալէին և տիկին Տը Շըվրէօզին նամակները։

— Անկարելի է։

— Ըսել է թէ կ'ուզէք վրէժ առնել այդ կնիկէն, զինքը կը սիրէք միշտ...։ Մոռցէ՛ք ուրեմն մեր մէջ անցն ըսուածը և անցն եղածը, տէր իմ...։ Ահա մետայլեօնը, ետ կը տամ...։ Մնաք բարև։

— Կեցի՛ր, գոչեց, կեցի՛ր... ինչո՞ւ կ'ուզես այս նամակները։

— Որպէս զի չկարենաք վաճառել գերդանի դքսուհիին, որ պիտի չզեղչէր գնելու զանոնք որ և է փոխարինով։

— Աւետարանին վրայ կը խոստանամ քեզ, Մարիոն, թէ այս նամակները դուքսին ցոյց պիտի չտրուին։

— Աւետարանի՞ն. կը հաւատա՞ք Աւետարանին։

— Վերջապէս, պատիւ ունիմ, և պատուոյս վրայ խօսք կը տամ քեզ մինչև մահս չխօսիլ դքսուհիին հետ։

— Դքսուհին կրնայ գալ և ձեր հետը խօսիլ։

— Մտիկ պիտի չընեմ։

— Սո՛ւտ կը խօսիք.... Յաջողակ էք, բայց նախանձոտ կին մը պիտի չխաբէք բնաւ. ձեր դիմադրութիւնն իսկ կասկածներս կ'արդարացնէ։ Այն նամակները, թէ ոչ կը մեկնիմ։

— Չէ՛, բիւրիցս չէ՛. կը պատրաստուիմ Նանթի յանձնաժողովին կարդացնել այս նամակները, որք Հալէին յանցաւորութիւնը կը հաստատեն։ Դարձեալ կ'ըսեմ թէ անկարելի է։

— Եւ եթէ չմոռցնէք այդ երիտասարդը, ինչ փոյթ կ'ունենաք։ Եթէ համոզուիմ կատարելու ձեր իղձերը, տէր իմ, կը կարծէ՞ք թէ թողլ պիտի տամ ձեզ այդպէս արիւնով թաթաւելու ձեր ձեռքը։ Խորհեցէ՛ք, տղայ էք.... Ուղիղ և անկեղծ եղայ ձեր հետը։ Սաստիկ է սէրս, անկարելի պիտի ըլլայ. կ'ուզեմ որ ձերինն ալ այնպէս ըլլայ։ Պահանջեցէ՛ք իղձէն ինչ զուարճութիւն որ կ'ուզէք, կ'ընդունիմ. ապահովութիւններ տուեցէ՛ք ինչպէս ես կ'ստանամ... բայց մեր սիրոյն վրայ ամէն, բայց մեր երանութեան մէջ կասկած չե՛մ ուզեր։

Կարտինալը միշտ աժգոյն էր։ Ինքն իր հետ սաստիկ կռիւ մը կ'ընէր, կամ լաւ ևս է՝ խելք միտք կը թափէր նենգութիւն մը գտնելու որպէս զի միայն առ երևոյթս զոհ ընէ զիս։

— Նստի՛ր, Մարիոն, ըսաւ ինծի, և հանդարտ ու ծանր կերպարան մ'առ։

Նոյն պահուն զանգակը հնչեցուց։

Տէ Պուրնէ երևցաւ։

— Պահակներուն զօրապետը կանչէ։

Կասթօնին առաջին դատապարտութենէն 'ի վեր պաշտօնեան իր անձին պահպանութեանը համար ամբողջ զօրագունդ մը տուած էր թագաւորէն ։

Շուտով հրացանակիրներու զօրապետ մը ներս մտաւ ։

— Պարոն Տը Սէն-Ժէօրժ , ըսաւ Ռիշըլիէօ , հոս ներկայ գըտնուող այս տիկինը Նանթի բանտարկելոյն գործին վրայ մանրամասն պարագաներ կ'իմացնէ ինձ , և որովհետև երկու օրէն 'ի վեր հայր Յովսէփը և Սէն-Սօրլէնը ղրկեցի՝ աղաչելով որ յանձնաժողովին օգնեն իր աշխատութեանց մէջ , ստիպուած եմ ես անձամբ գրելու ինձ տրուած տեղեկութիւնները ։ Դուռս արգիլուած է ամեն մարդու համար ։

Կարտինալին ոտք ելաւ , հրացանակիրներուն զօրապետին մօտեցաւ և ականջին քանի մը խօսք փսփսաց ։

Ետքէն Սէն-Ժէօրժ ինքն ինձ իմացուց թէ Ռիշըլիէօ իրեն յետագայ խիստ լակոնական խօսքը ըսած էր , որուն նշանակութիւնը շատ յայտնի էր .

« — Կը տեսնե՞ս այս կնիկը , Հարաւային դուռէն դուրս պիտի ելնէ . . . ։ Դրամէ՛ և ինձ բե՛ր նամակներ և մետալլեօն մը զոր իր վրայ պիտի ունենայ ։»

Կարտինալին այս փսփսուքը շատ հնհնուք կը տար ինձ ։

Զօրապետն աներևոյթ եղաւ և Ռիշըլիէօ քովս եկաւ ։

— Մտքէդ անցա՞ւ արդեօք , Մարիօն , թէ հիմակ ինչ ըրի անոր ։

— Ո՛չ , տէր իմ ։

— Այնպէս հասկցուցի անոր թէ այն կարծեցեալ մանրամասն տեղեկութիւնները խիստ նպաստաւոր են Շալէին որուն վրայ սաստիկ համակրութիւն մ'ունիս ։ Մանկութեան հասակէ 'ի վեր բարեկամ են անոնք , և հաճոյք մ'է ինձ այս խեղճ Սէն-Ժէօրժին յոյս տալու ։ Անիրաւ չես , սիրելիդ իմ , ինչ հարկ արիւն թափելու ։ Միշտ դիւրութիւն պիտի ունենամ խենդ երիտասարդը ինձ վնաս տալէ արգիլելու . . . ։ Շալէ պիտի ապրի . . . . ։ Թո՛ղ երթայ դքսուհին գտնէ ։ Գանք նամակներուն , շարայարեց՝

ոսկիէ պզտի բանալի մը, տալով և դրասեղանին վրայ դրուած եբենոսեայ արկղիկ մը ցուցնելով ինծի, կնոջս առ, քուկդ են անոնք։

Բացի արկղիկը և քանի մը նամակ բացի՝ իբր թէ ուզէի քննել նամակներուն Ճիշդ Շալէին և դքսուհիին ըլլալը կամ չըլլալը․ բայց բուն նպատակս էր խուզելս չյայտնել կարտինալին։

Արգահատօռ լոյս մ՚եկած անցած էր մտքէս։

Մատնիչին պոռհալներուն զօրաւորին զազմիր ըրած խօսքը ինծի բացատրելու փոյթէն աղէտաւոր հետեւութիւն մը հանեցի․ և ապահով էի թէ հրաման տուեր էր որ ձերբակալ ըլլամ Լուվրէն դուրս ելնելուս միջոցին։

Պէտք էր անպատճառ ետ առնել տալ իրեն այս հրամանը, թէ ոչ ես և տիկին Տը Շըվրէօզ կորսուած էինք։

Վտանգին մերձաւորութիւնը նորէն ուշաբերեց զիս․ որոշեցի ամեն բանի յանդգնիլ ամեն բան ստանալու համար։

Րիշլիէօ նայուածքը իրմէն չէր հեռացներ։

Վերստին արկղիկին մէջ դրի այն նամակները զոր բացեր էի, վրան դրի նաև թագուհիին մետայլեօնը, ապա վար ընելով խուփը և կղպանքը գոցելով կարտինալին մօտեցայ, որուն երեսը զարմանք կ՚արտայայտէր։

— Վերջապէս, ըսի ժպիտով մը, փորձը լմնցաւ։ Այս փորձէն՝ ինչպէս կը յուսայի՝ պատուով և փառքով ելայ։ Ոչ միայն ապահով եմ ձեր սիրոյն նկատմամբ, բայց նաև զիս պարտաւորեցիք ձեր վրայ սքանչանալու և յարգ ու համարում ունենալու… վասն զի այս արկղիկին մէջ պարունակուած բաները ընթերելու ամեն հնարաւոր իրաւունքը կը տայիք ինծի․ կրնայի կտոր կտոր ընել մետայլեօնը, ազատ էի Ճրագ մը վառելու և այս նամակները այրելու…։ Բայց Աստուած չընէ որ Ձեր Բարձրութեան այսպիսի նախատինք մ՚ընեմ։ Զոհողութեան առջև չնահանջեցիք․ այդ զոհողութիւնը եղած կատարուած կը սեպեմ, տէր իմ, և ձեր ալ միայն զիս սիրելու խոստումին կ՚ապաւինիմ բոլորովին։

Դժուարաւ յաջողիմ թերևս նկարագրել այն յուզմունքը և զարմանքը, զոր Բիշլիէօյին երեսը դուրս կը յայտնէր այսպէս խօսելուս միջոցին։

Երկու ձեռներս բռնեց և գոչեց.

— Մարիօն, պաշտելի՛ ես, վսեմ ես. անկարելի է աշխարհիս վրայ քեզի պէս երկու կին գտնել... և կը սիրեմ քեզի, հաւատա՛ որ անմեկնելի կերպով մը կը սիրեմ քեզի...։ Կրո՛ղը տանի զիս, եթէ բնաւ մտքէս կ՚անցնէր այդպիսի վերջ մը... ...։ Մարիօն, այդ վարմունքդ լաւ է, շա՛տ լաւ է։

— Ո՛հ, վարմունքս շատ պարզ կ՚երևայ ինծի, տէ՛ր իմ։

— Չէ, անշուշտ. ատի հասարակ կին մը չըլլալդ կը հաստատէ...։ Այդ վարմունքիդ մէջ սրտի շատ փափկութիւն կայ...։ Այո՛, կը կրկնեմ թէ շքե՛ղ է այդ ընթացքը։ Հանգիստ եղի՛ր, Մարիօն, պիտի չըղջաս այդ մասին։

Իր ոսկիէ բանալիին հետ տուի նաև միւս բանալին զոր հետս բերելու հոգ տարեր էի։

— Մէկին տեղ, ըսի նոր ժպիտով մը, երկու բանալի կը տամ Ձեր Բարձրութեան։

— Ի՞նչ է ատի, Մարիօն։

— Տէր իմ, խօսքս բռնելու յատուկ կերպերուս մին է այս, և երբ ծպտելով Տէ Թուրնել փողոցին պզտի տունս այցելութեան գալու սիրտ հաճիք, պուլվարին կողմէն գաղտնի դուռ մը կայ, ուսկէ կրնաք մտնել առանց ճանճէ մը տեսնուելու։

— Բայց ատի զմայլելի՛ է... խե՛ւ կը դարձնես զիս, Մարիօն, սիրոյ գլխումով և ուրախութեամբ կը խեղդե՛ս զիս։

Ստուգապէս ծուղակը կ՚ընկնէր։

— Աշխատեցէ՛ք, ըսի կարտինալին, պահելու յիշատակը և չուշացնելու ձեր առաջին այցելութիւնը որու որ կը պատրաստուիմ սիրային ընդունելու ձեզի...։ Հիմակ ալ մնաք բարև ըսելու հրաման կը խնդրեմ Ձեր Բարձրութենէն։

— Կ՚ուզես մեկնի՞լ...։ Կարելի՞ է, սիրելիդ իմ։

— Որքան նուազ երկարին Լուվրի մէջ մեր տեսակցութիւնները,

որքան աւելի կարճատեւ ըլլան երեւումներս, այնքան աղէկ է մեկ-նութիւնները եւ չարախօսութիւնները արգիլելու համար։ Ուրեմն մնաք բարեաւ, տէր իմ։

— Ամենեւին, պիտի չթողում... Մանաւանդ որ անկարելի է։

— Ի՞նչ. դուրս ելնելս անկարելի՞ է։

— Է՛հ, այո... այսինքն... Բայց կը մոռնաս, Մարիօն, որ վաղը կը մեկնիմ Նանթ երթալու համար... Այս գիշեր հազարումէկ գործեր կարգադրելու հարկադրուած եմ։ Մեկնելէս առաջ քեզի անգամ մ'ալ չտեսնե՛լ... բայց պիտի չուզես այդ-պիսի վիշտ մը տալ ինծի, այնպէս չէ՞... Տէ՛ր Աստուած. ի՜նչ բանէ կ'սարսափիս աճապարելու... Մինչեւ թագաւորին քով երթալս եւ հետը աշխատելու սկսիլս տակաւին ճիշդ երկու ժամ ունիմ զոր քեզ կը տամ։ Մարիօն, իմս Մարիօնիկ, մի՛ մերժեր խնդիրս։ Միասին պիտի ճաշենք... զմայլելի առանձնախօսու-թիւն մը պիտի ունենանք... Տը Պուրժէ միայն պիտի ծառայէ մեզ, եւ հիմա պիտի գրեմ Սէն-Ժէօրժին որ աւելի ուշադրու-թեամբ հսկէ պատուէրիս գործադրութեան... Կ'ընդունիս, այնպէս չէ՞... Կ'ընդունիս։

— Քանի որ կը փափաքիք ընդունիլս, տէր իմ։

— Որքա՜ն որ սիրուն ես, շնորհալի ես. երկինքը քեզմէն աւե-լի գեղեցիկ հրեշտակ չկայ։

Կարտինալին ասի ըսելու միջոցին զգուանօք կը լափէր զիս։

Ինչ եւ է, մատնուած էր ան։

Կասկածներս հիմնաւոր էին, եւ խիստ վարպետութեամբ վա-րուեր էի այս պարագային մէջ։

Ռիշըլիէօ վազեց դէպ իր գրասեղանը, արագօրէն երկու կամ երեք տող գրեց. հնչակովը կանչեց Տը Պուրժէն, եւ թուղթը անոր յանձնելով ըսաւ.

— Սէն-Ժէօրժին տա՛ր. դուռը գոցը հիմակ անմիջապէս, եւ թո՛ղ զգուշանայ անհեթեթ ընթացք մ'ունենալէ... գնա՛։

Յայտնի էր թէ առաջին հրամանին յետոյ կոչումը կը զիջէր։

Երբ Տը Պուրժէ մեկնեցաւ, Ռիշըլիէօ առջեւս ծունկի վրայ ե-

կալ. երրորդ անգամն էր այս գիրքը առնուլը, և յիրաւի այ-լանդակ բան մ'էր այսպէս ծունկի վրայ եկած այս կարմիր պաստ-մուճանն ուսկէ սիրախնդիր հառաչումներ կ'ելնէին:

Ցանկարծ խորքին առանձնութեան հով մ'առի: Կարտինալը սար-սռալս տեսաւ և ըսաւ.

— Բայց ի՞նչ ունիս, սիրելիդ իմ:

— Ունեցածս . . . բայց բան մը չունիմ ամենևին, տէր իմ:

— Կը խաբես զիս. Մարիոն . . . : Կը պաղատիմ, խօսէ . . . : Դուն իսկ չըսի՞ր թէ մեր սիրոյն վրայ ամէն չես ուզեր: Խա-բէական նախազգացումներով կամ աղետալի թաղուն խորհրդով մ'ինչու խռովես այն զմայլելի վայրկեանները զոր ինձ կը շնոր-հես, կը տեսնես որ կը սիրեմ քեզի . . . Ֆրանսայի և թերևս աշխարհիս ամենէն զօրաւոր մարդն առջեւդ ծունկի վրայ եկած է . . . : Մարիո՛ն, գեղանիս Մարիոն, տո՛ւր ինձ ժպիտներդ:

— Ափսո՛ս, տէր իմ. Հոգւոյս մէջ եղածը նշմարեցիք. ա՛լ կասկած չունիք սիրոյս վրայ. սակայն սարսափները, որք զիս հա-լածեցին . . . խղճահարութիւններ որք այնքան զարթուցան, կամ-քիս հակառակ նորէն կը չարչարեն զիս: Ձեր գգուանքը . . . կը խոստովանիմ թէ մեծ ակարութիւն մ'է այս . . . այսու ամե-նայնիւ . . . կը պարտաւորիք հասկնալ:

— Խա՛չոր շատ ապուշ եմ, Մարիոն . . . : Ինձ կը պատկա-նէր զգալ թէ կարտինալի հագուստը . . . : Հիմա ասոր դարմա-նը պիտի տանիմ, անհոգ եղի՛ր:

— Շնորհակալութի՛ւն, շնորհակալութի՛ւն, ըսի՝ անոր ձեռ-ները պագնելով եռանդագին:

Ցանկալի վայրկեանը կը մօտէր. կարտինալը ապշեցնելու և կասկածի մը ստուերը անգամ իր մտքէն հանելու ժամն եկած էր:

— Ինծի դէմ չէք գչարիր այս հագուստի փոփոխութիւնը խնդրե-լուս համար, այնպէս չէ՞, տէր իմ. Ներողամիտ էք կնային խեղճ գաղափարներուս նկատմամբ: Ուրեմն համարձակապէս ըսեմ, այդ կարմիր զգեստը, այդ խաչը պատարագին ուխտը կը սառ-նահարեն, հոգւոյս սէրս կ'ահաբեկէ:

— Թո՛ղ, աւելի մի՛ կեցներ զիս . . . . երթամ անմիջապէս զգեստներս փոխեմ:

— Ո՛չ, պատասխանեց՝ անոր խելքը գլուխէն թռցնելու կարող սիրազրգիռ նայուածք մը կայծելով, զիս շատ պահանջող կը համարիք: Բայց զգուշացէ՛ք. առաջին քմահաճութեանցս այդ կերպով հաւանիլը խորագիտութիւն չէ. պէտք չէ այդպէս երես տալ կիներուն . . . : Ձէ . . . այսօրուան համար հոգ չէ այդ հագուստը, կեցի՛ք: Բայց երբ Տէ Թուրնել փողոցը գաք, ազնուականի պէս հագուած եղէ՛ք: Ֆրանսային առաջին ազնուականը չէ՞ք: Պէտք է վայելչագեղ և շքեղ զգեստներով մ'երևալ ինծի . . .

— Այն զգեստներով զոր՝ հոս՝ մօտակայ հանդերձարանիս մէջ ունիմ, Մարիօն:

— Կ'ուզեմ տունս ընդունիլ չէ թէ Նորին Բարձրութիւն՝ կարտինալը, այլ Տը Րիշլիէօ դուքսը, այլ առաջին պաշտօնեան:

— Գոհ պիտի ըլլաս:

— Ե՛լ կրօնաւորի հագուստ չե՛մ ուզեր, տէր իմ:

— Ձէ՛, կրօնաւորի հագուստ մի՛ ուզեր, իրաւունք ունիս . . . այլակերպութիւնը հոս իսկ պիտի կատարուի հիմա:

— Ի՛նչ. կ'ուզէք . . .

— Հինգ վայրկեան, և ապա քու՛կդ եմ:

Րիշլիէօ դէպ 'ի մատենատան աջակողմեան մէկ վարագոյրը սրացաւ, և աներևոյթ եղաւ այն ձևմասրահին մէջ, որ իր բնակութեան յատկացած դստիկոնին միւս սենեակները կը տանէր:

Սիրտս կուրծքս խորտակելու չափ ուժգին կը բաբխէր:

Իսկոյն դրան վարագուրին մօտելով՝ շնչասպառ՝ ականջ տուի սալաքարերուն վրայ Րիշլիէօյին քայլերուն. ապա ձևմասրահին ներսը դրան մը բացուիլը լսեցի:

Այս դուռը նորէն գոցուեցաւ:

Մինակ էի և առանց ականատեսի:

Երեկոյեան արկղիկը գրասեղանին վրան էր:

Այս արկղիկը առնուլ, լօղիկիս ներքև դնել, փայտակերտաց

դաշտնի դուռը վազել, կոճակը հրել և փողերուն մէջ նետուիլը մանրերկրորդի մը գործն եղաւ ինծի համար։

Բաւական անխռովութիւն կա՛ր տակաւին իմ վրայ, ուստի կրցայ պահապաններուն առջեւէն անցնիլ առանց մեծ աճապարումի։

Կարծեցի թէ այս երկայն և մթին նեղ ճամբաներն անվերջանալի էին։

Վերջապէս Լուվրի Հարաւային դռնակը հասայ. հոն ոչ ոք կար դուրս ելնելուս դիմադրելու համար։ Հակահրամանն իրօք և մասնաւորապէս տրուած էր Սէն-Ժէօրժին։

— Տէ՛ր Աստուած. դեղնած էք, տիկի՛ն, ըսաւ կառապանս։

Թեւը երկնցուց զիս բռնելու և օգնելու համար որ կառքս մտնեմ։

— Տունը հասի՛ր... շո՛ւտ... Թո՛ղ արշաւակի... թէ ոչ մեռած ենք։

Մտրակը շաչեց, երիվարներն անհնարին արագութեամբ մեկնեցան։ Կրնայիր կարծել թէ մրրկալի հով մը թռիչք կը տար անոնց։

Կարտինալին պարգեւած երիվարներն էին անոնք։

Տունս հասնելով սենեակս ցայտեցի, և տիկին Տը Շըվրէօզին գիրկը նետուեցայ, գոչելով.

— Ահաւասիկ նամակները... փախի՛ր. բառ մ'անգամ ըսելու առեն չկայ։ Րիշլիէօ թերեւս արդէն եռեւէս կը հալածէ զիս....։ Գնա՛, գնա՛, կ'ըսեմ քեզ... բայց մի՛ մոռնար Շալէն... վրէժը ասորմէն պիտի առնու։

Այս ամեն յուզումներն ոյժ չձգեր էին վրաս. հետեւաբար նուաղեցայ։



# Ե

Երբ սթափեցայ, դքսուհին տակաւին քովս էր։

Ինքն չուզեց մեկնիլ զիս այս կացութեան մէջ թողլով։ Նա և Թերեզա քառորդէ մ՚աւելի կորսուած խելքս գլուխս բերելու համար։

— Ո՛վ Աստուած իմ, Աստուած իմ, գոչեցի, բոլոր ըրածներս անօգուտ ըլլալ կ'ուզես։

— Բայց դուն, խե՛ղճ Մարիոնս, դուն ի՞նչ պիտի ըլլաս։

— Ես ալ պիտի փախչիմ, պիտի պահուիմ . . . ։ Վախս մի՛ ունար . . . « Յանձն՚ն Աստուծոյ, տիկին, աւելի մի՛ ուշանար։ -

Տիկին Տը Շըվրէօզ ինծի փարեցաւ սիրալիր . այտերս իր արտասուքէն թրջուած էին։

— Մնաս բարև, ըսաւ . . . մինչև 'ի մահ քուկդ եմ։

Տունէս քիչ մը հեռի առանց զինանշանի կառքի մը մէջ դքսուհին կ'սպասէր այն ծեր ծառան որուն վրայ նէ խօսեցած էր հետս։ Վախցայ որ թերևս այս կառքը բաւական արագութեամբ չտանէ տիկինն Տը Շըվրէօզը, և զինքն աղերսեցի որ իմ կառաձիս առնու։

Անմիջապէս մեկնեցաւ մայրաքաղաքէն։

Հետևեալ օրն առտու արդէն Պլուա հասած էր։

Թէև իր էրիկին և ուրիշ քանի չափ երևելի զօրաւոր անձանց ազդեցութիւնը գործածեց դքսուհին Նանթի գմբաղ բանտարկեալոյն համար, սակայն օգուտ մը չունեցան իր այս ամէն ջանադրութիւնները . յանձնաժողովը բոլորովին Րիշլիէօյին կամքին ներքև ըլլալով՝ մահուան վճիռ տուաւ Շալէին դէմ։

Անրի Տը Թալէյրան Տը Շալէ կոմսին կառափնատն և Գասթօնին հարսանեկան անկողինը մի և նոյն և մի և նոյն քաղքին մէջ պատրաստուեցան։

կարտինալն այսպէս ուզած էր միշտ։

Կայինին այս առաջին հարուածը՝ Ֆրանսային մէկ ծայրէն միւսն որոտալով հասկցուց թէ ինչ սոսկալի վիճակ վերապահուած էր այն անխոհեմներուն որք այնուհետեւ Րիշլիէօյին փառասիրութեան առջեւ խոչընդոտ ըլլալու փորձ մ՚ընել պիտի ուզէին։

Արքայական հանդերձարանի մեծ-տեսուչը դքսուհիին համար ըրած անձնուիրութեանս նահատակն եղաւ։ Կրնար կարծուիլ այս բանը, եթէ պաշտօնէին բոլոր կեանքը մէջ դէթ անգամ մը ներած ըլլար թշնամիի մը։

Րիշլիէօ միշտ անողոք, ոխակալ և անգութ եղաւ։

Ինքզինքը սիրցնելու յոյսը կտրելով, որոշեց ահարկու ըլլալ։ Իր բոլոր ջանադրութեանց նպատակն եղաւ ակար Լուի ԺԳ-ին համար անհրաժեշտ ըլլալ։ Երբ անգամ մը հաւաստի եղաւ թէ թագաւորն իր ծառայութիւններէն չէր կրնար զրկուիլ, իր ամբարտաւան իշխանութեան ասպարէզին մէջ պարծօրէն շրջեցաւ և ամեն անձի դէմ անխնայ երեւցաւ։

Մարի Տը Մէտիսին անգամ ամեն օր ապերախտութեան և մոռացումի նորանոր նշաններ կ՚արձանագրէր։ Չուշացաւ բոլորովին գժտելու կարտինալին հետ։

Երկու թագուհիներն և Կաստոն միաբանեցան հասարակաց թշնամիին դէմ. բայց իրենց բոլոր ջանադրութեանց վախճանն եղաւ հսկայն իր հիման վրայ աւելի ամրութեամբ հաստատել, և Լուի ԺԳ-ին մայրն անապատն և սրտմալի խորհրդածութիւններ ըրաւ իր տղուն բարեկամութեան պակսութեան և իր պաշտպանեալոյն աշխարհակալական դրութեան մասին։

Այս գրութիւնն երախտագիտութիւնը կը տարագրէր մանաւանդ։

Անրի Տը Թալէյրանին մահուանէն հետեւող ահաբեկութիւնը հազիւ անցեալ եղած էր, և ահա ուրիշ երիտասարդ իշխանազուն մը, Մոնմօրէնսի մը գլխատուեցաւ Կրէվի հրապարակին վրայ։

Ափսոս, պէտք է խոստովանիլ թէ սա ալ գուցէ ինք գրգռած էր իր ճակատագիրը։

Բայց հեռա մանրամաբար ապրած էր . դեռ քիչ ժամանակ առաջ կը տեսնէի որ իր առջև բաց ապագայ մ'ունեցող երիտասարդ մ'էր ան ։ Արդարութեան առ երևոյթ կերպարանը առնող այս նոր մարդասպանութիւնն ոչ նուազ անարժան և հրեշային անգթութիւն մ'էր ։

Ֆրանսուա Տը Մօնմօրէնսի Տը Պութվիլ դուքսն այն ժամանակուան ամէն ազնուականներուն պէս կ'ընդունէր պատուոյ կէտի այն չափանց վարդապետութիւնը, որ ամենէն սին իրաւունքի մը համար սուրը քաշելու վրայ կը կայանայ ։ Մենամարտութեանց դէմ հրովարտակը չէ թէ կ'արգիլէր այլ ընդ հակառակն կ'աւելցնէր զանոնք . կը թուէր թէ պատուէրին հնազանդիլն և մենամարտութիւնը մերժելը կրկին վատութիւն մը կ'ենթադրէ ։

Պութվիլ՝ առաջին անգամ փախելու և Ֆլանտրը քաշուելու ստիպուելով Պրի-Ժի փողոցներուն մէջ Տը Պէօվրան մարգիզին ուղեկառքին հանդիպեցաւ ։

— Պարոն դուքս, ազգականս Թօրինեին մեռցուցիր . դաշեց կառքին դռնակէն մարգիզը Պութվիլին ։ Ֆրանսա կը վերադառնամ . ուր կարևոր գործ մը զիս կը կանչէ ։ Սակայն ազգականիս կուրծքը Արքայական հրապարակին վրայ ծակեցիր, ուստի ես ալ Արքայական հրապարակին վրայ կ'ուզեմ քու կողը ծակել ։

— Ինչպէս որ կը հաճիս, ըսաւ Պութվիլ ։ Ե՞րբ կ'ուզես որ հոն գտնուիմ .

— Այսօր մայիսին 6ն է . . . 12ին երեկոյեան ժամն իննին քեզ կ'սպասեմ ։

— Լաւ, հոն պիտի գտնուիմ, մարգիզ ։

Եւ թշուառն եթէ չգար առ ոչինչ դրելու մահուան այս կրկին վտանգը, այսինքն մենամարտութեամբ մեռնելու կամ կառափնարին վրայ գլխատուելու վտանգը, պիտի կարծէր թէ ինքն իր և սպասաւոր մարդկանց առջև իր յարգը կորուսած կ'ըլլայ ։

Հրովարտակն իր նպատակին չէր հասներ ։

Օրինաւորապէս չէիր կրնար յուսալ այսպէս մէկ հրովարտակով և ահարկութեամբ ջնջել նախապաշարում մ'որ մարդկային

քնութեան աղնուագոյն զգացումներուն մէկէն, այսինքն քաջասրտութենէն ծագած է։ Այս նախապաշարումին ջնջումը վայելուչ խստաբարոյութեան մ'և ժամանակին գործն էր։

Ազնուականաց այս կռիւներուն մէջ զաւհիճին դեր մը տուողն ամենուն առջև ապուշ ու միանգամայն վատ գործ մ'ըրած եղաւ։

Պութվիլ և Պէօվրան ժամադրութեան տեղը ճշդապէս եկան. Արքայական Հրապարակին վրայ երեք երեքի դէմ կռուեցան. և Տէ Շաբէլ՝ որ Ֆրանսայի վկաներուն մին էր՝ Տը Պիւսի Տ'Ամպուազ կոմսը մեռցուց որ մարդիգին վկան էր։

Կռուողները հրացանաւոր պահնորդներու խումբի մը մօտիլը տեսնելով խոյս տուին։

Բայց Պութվիլ և Տէշաբէլ Վիթրի-Լը-Ֆրանսուայի մէջ բռնուեցան, Գօնսիէրժըրիի զնդաններըն տարուեցան և մահուան դատապարտուեցան։

Հոս յիրաւի չեմ համարձակիր ամեն բան ըսելու։

Անիրաւութիւն մ'ընելս սաստիկ ցաւ կը տայ ինծի, այլ սակայն իրողութիւնը պատուաւոր և արժանահաւատ անձերէ պատմուեցաւ ինծի։

Կարտինալը վեց շաբաթ առաջ Ֆրանսայի մեծ-ծովակալութեան պաշտօնէն հրաժարիլը պահանջած էր Տը Մօնմօրէնսի դուքսէն որ Պութվիլի հօրեղբօրորդին էր, ճիշդ այն Տը Մօնմօրէնսին որուն տիկին Տը Ռամպույէլի տունը հանդիպեր էի նորա ապարանն առաջին անգամ բրած այցելութեանս միջոցին։

Պ. Տը Րիշլիէօյին ախորժելի կ'երեւար իր վրայ առնուլ մեծ-ծովակալութեան պաշտօնը։

Դուքսը՝ սրտմտելով՝ չծածկեց իր բարկութիւնը զոր կը դրդուէր այսպիսի նախատինք մը։ Սակայն իր գերդաստանին անդամներուն մէկին խայտառակ մահուամբ մը մեռնելու վտանգին մէջ գտնուիլը տեսնելով՝ մոռցաւ ամեն ոխակալութիւն և վազեց Րիշլիէօյին գթութիւնը հայցելու։

Այն ատեն, կ'ըսուի, պաշտօնեան յետագայ պատասխանը տուաւ.

«— Գիտցիր, տէր իմ, որ Մոնմօրէնսիի մը գլուխն ուրիշ մարդոց գլուխներէն աւելի ամուր չկենար իր ուսերուն վրայ։ Ազգականդ պիտի գլխատուի... դուն ալ պիտի գլխատուիս, եթէ շարունակես յայտնի համարձակ խօսիլդ և իշխանութիւնս արհամարհելդ։»

Չորս տարի ետք այս սոսկալի դուշակութիւնը կատարուեցաւ Թուլուզի մէջ։

Երբ Ռիշլիէօ Պութվիլին թողութիւնը մերժեց, թագաւորին դիմելու փորձ եղաւ։ Երկու արքայազուն իշխանուհիներ, նաև տիկին Տը Վանթատուր, տիկին Տը Մոնմօրէնսի և տիկին Տ'Անկուլէմ մահապարտին դեռահասակ կնկան հետը Լուվրը գացին։ Այս դեռահասակ կինը Լուի ԺԳ-ին ոտքն ընկնելով նուաղեցաւ։

«— Ողորմեցէ՛ք, վեհափառ տէր, ողորմեցէ՛ք», գոչեցին բոլոր միւս կիները ծունկի վրայ գալով և սաստիկ արտասուելով։

Կարտինալը թագաւորին թիկնաթոռին ետևն էր։

«— Ձեր խիղճը կ'արգիլէ ձեզի ներելու», ըսաւ ցած ձայնով։

«— Տիկիննե՛ր, կրկնեց Լուի ԺԳ., խօսքին ձևը փոխելու դժուարութիւնը անգամ չկրելով, խիղճս կ'արգիլէ զիս ներելու։»

Հետևեալ օրը կառափնարը Կրէվի հրապարակին վրայ կը կանգնուէր, և Ֆրանսուա Տը Մոնմօրէնսի քրիստոնէաբար և մարտիրոսաբար կը մեռնէր։ Նոյնպէս և Տէ Շափէլ։

Այս միջոցին՝ ուր կը գրեմ՝ քառասուներհինգ տարեկան եմ։

Ուրեմն Պութվիլին մեռնելէն 'ի վեր գրեթէ քսան տարի անցած է, հետևաբար պիտի չմեղադրուիմ՝ կարծելով թէ երիտասարդութեան և կրից հասունածակողմին մէջէն կը տեսնեմ իրողութիւնները. արդ կը յայտնեմ թէ Ֆրանսուա Տը Մոնմօրէնսիին մահն այս վայրկեանիս մէջ տակաւին դատաստանական մարդասպանութիւն մը՝ տեսակ մ'ազգավնաս (lèse-nation) ոճիր կ'երևայ ինծի։

Բոլոր Ֆրանսա իր սիրէր այս երիտասարդը, որուն վրայ կ'երևային իր նախահայրց վեհ և ասպետական զգացումները։

Եթէ կշիռին մէկ նժարին մէջ իր նախահարց ծառայութիւ-

ները, և միւսին մէջն ալ անոնց մէկ թուրին ածիրը դրուէին, ո՞րն աւելի ծանր պիտի գար։ Ֆրանսուա մեր առաջին զօրապետներուն մին էր։ Առիւծի մը պէս քաջասիրտ էր, և իր հայրենիքը ու իշխանը կը սիրէր։ Մենամարտութեանց այս դժբաղդ յիմարութիւնն անշուշտ տարիքին առաջին եռանդոտութեան հետ անհերևոյթ պիտի ըլլար, և ժամանակակիցները ցաւելով պիտի չիմացնէին ապագայ սերնդոց թէ անողորմ ձեռք մ'այս դիւցազներու շառաւիղը մանգաղեց։

Պուլթվիլի դժբաղդութեան ընկերակիցն այս միջոցով խօսեցաւ դատաւորներուն որ վճիռը տալու պատրաստ էին։

Տէ Շաբէլ իր մեղսակցին ջատագովութիւնը ըրաւ՝ դատաւորաց բոլոր խստութիւնը միայն իր վրայ հրաւիրելէ չվախնալով։ Բայց Րիշլիէօ որոշած էր որ Պուլթվիլ մեռնի, և Պուլթվիլ մեռաւ։

Պաշտօնեան իրեն բան գործ ըրած էր համարձակութիւն առնուլ այն արիւնալի ասպարէզին մէջ ուր ապրեցաւ ետքէն։

Եթէ կարտինալին վրայ ազանչացողներ կան, այնպիսիներուն համարձակապէս կ'ըսեմ թէ այս մարդը միշտ վրիժառութեան և անձնական շահու նպատակով մը շարժեցաւ։ Իր կենաց մէն մի գործը քաջ քննեցէք, և պիտի տեսնէք որ ինքնամոլութեան վրայ հիմնուած է այն։ Ուզեց մեծ ըլլալ չէ թէ Ֆրանսային, չէ թէ Թագաւորին, այլ իր անձին համար, և ըստ իս ճշմարտութենէ շատ հեռի չեն որոնք որ կասկած ունեցան թէ այս մարդը գահը յափշտակելու նպատակներ կը տածէր։

Միայն առիթը չունեցաւ, այս է ահա չյաջողելուն պատճառը։

Րիշլիէօ իրեն յատուկ պալատ մը, իրեն յատուկ պահապան զօրք ունեցաւ. ամեն օր կը յափշտակէր բարձրագոյն աստիճաններն վերապահուած իրաւունքներէն, որպէս զի ետքէն միայն պարտաւորի ձեռքը երկնցնել՝ թագը բռնելու և արքայական ուրուականի մը ծիրանին կողոպտելու համար։

Եթէ իր խեղաթիւր քաղաքականութեան թշնամիները քանի մը տարի հանդիստ ձգէին իրեն, եթէ իր կենացն ասպարէզին վերջը

չպատժուէր Փիլիզալեան հիւանդութենէն, որ նոյնպէս 'ի վերուստ զրկուած իմնանի մ'էր, տասնեօթներորդ դարու պէս դարու մը մէջ մեր պատմութեան յետադայ տարօրինակ յարավէպին հերկնութիւը, այսինքն դատարկասուն ճապաւորին վանքի մը մէջ և պալատի շահասլին արքայական գահին վրայ նստիլը պիտի տեսնուէր։

Ռիշըլիէօյին համար ըսուեցաւ թէ մեծ գործեր ըրաւ, և իրեն փառքին վերագրուեցան բարեյաջող հետեւութիւններ զոր ամենևին չէր կանխատեսեր ան։

Մարդու մը գործողութիւնները դատելու համար նախ պէտք է անդրադառնալ այն տեսակէտին ուր կը տեղաւորուէր այն մարդը։

Ռիշըլիէօ Թագաւորին համար կ'աշխատէր։ Ո՛չ։ Լուի ԺԳ կը քամահրէր զինքը, ինչպէս ինքն ալ զան կը քամահրէր։ Ֆրանսային համար կ'աշխատէր։ Դարձեալ ո՛չ։ Շատ անգամ թող տուաւ որ մեր գաւառներն արշաւանաց ենթարկուին և մեր բանակները յաղթուին՝ որպէս զի անկարող և ակար իշխանի մը սարսափները գրգռէ և կարմէ շփոթութիւններ որոնցմէ եաքէն օգտա կը քաղէր իր իշխանութիւնը աւելի հաստատելու համար։

Բայց վերջապէս, պիտի ըսուի ինձ, այդ խեղճ կարտինալը մի՞ գոնէ երկնից համար կ'աշխատէր։

Ասոր վրայ տարակուսելու հրաման կը խնդրեմ խոնարհաբար, և կը հետեցնեմ թէ մի միայն իր անձին համար կ'աշխատէր։

Իբր աղխնարբաս կրօնաւոր՝ աւետարանին ճշմարտութիւնները ոտքի տակ կ'առնուր և ներումը չէր ճանչեր. իբր աշխարհական սիրտ՝ բնաւ չէր յիշեր մատուցուած ծառայութիւնները. իբր նենգասէր հոգի՝ իր խոստումը կը ծաղրէր և երդումին վրայ կը խնդար։

Ռիշըլիէօ աղնուականները կը մեռցնէր չէ թէ, ինչպէս ոմանցներ եղան, աւատականութեան սկզբունքը ջնջելու համար, այլ վասն զի աղնուականները կ'ատէին զինքը և շարունակ խոչընդոտ կը հանէին անոր փառասէր քայլերուն առջև։ Իր ինչնասիրութեան և ամբարտաւանութեան պատուանդանին վրայ կանգնած կա

ցած և մանղաղ 'ի ձեռին անգթաբար կը ղարնէր այն ամեն ճակատներուն որք չէին կրնար խոնարհիլ ։ Իր չորս կողմը սպասաւորներ, գերիներ, ծնրադիր մարդեր կ'ուզէր միայն ։

Ժողովուրդը թերևս օր մ'օգուտ պիտի քաղէ ազնուականաց այս գձձումէն. բայց երբ այս ժառանգութիւնը վայելէ, անիրաւութիւն ըրած պիտի ըլլայ եթէ այս մասին Ռիշլիէօյին շնորհակալութիւն յայտնէ ։

Ռիշլիէօ կ'արհամարհէր ժողովուրդը, և մենաշնորհ մը պարգևելէն առաջ բիւրիցս ուզէր թերևս իր կառքին անիւներուն տակը փշրել զան ։

Մարդոց արիւնը թափող պատերազմը, զանոնք ջարդող ժանտախտը, հունձքը առնող տանող փոթորիկը, վերջապէս ամեն աղէտները նոյնպէս իրենց արտադրած չարեաց մէջէն կրնան քանի մը նպաստաւոր հետևանք ունենալ, այլ սակայն չլսած եմ թէ մինչև հիմա մարդ մը շնորհակալութիւն յայտնած ըլլայ փոթորկին, ժանտախտին և պատերազմին ։

Հիմակ պիտի երթամ մինչև այն բոպէն, ուր տիկին Տը Շըվրէօզ սենեակէս դուրս ելաւ կարտինալէն առնուած նամակներուն հետ ։

Մինչդեռ դքսուհին Թերէզային հետ հոգ ու խնամք կը տանէր զիս նուաղումէս սթափելու համար, ծառաներուս մին՝ ներս աղաչանքին վրայ կտրելով բացած էր արկղիկին խուփը, չէ թէ վասն զի կը կասկածէր իմէն, այլ վասն զի առաջին պաշտօնէին նենգաւորութեան երևելի տաղանդը ճանչուած էր ։ Դքսուհին կ'ուզէր տեսնել և շօշափել նամակները որպէս զի ստուգապէս հաւտայ ձեռնարկութեանս յաջողութեան ։

Իր այս զգուշաւորութիւնը ձեռքս անցուց նորէն թագուհիին պատկերը ։ Առանց պատճառի չէր զայն արկղիկին մէջ դրած ըլլալս, բայց այս արագասահ և վտանգաւոր պարագաներուն մէջ ալ չէի մտածեր սոյն պատկերին վրայ ։

Ինչպէս ըսի արդէն, ուզեցի որ տիկին Տը Շըվրէօզ կառքս առնու ։ Նորին Բարձրութեան երիվարները դքսուհին մայրաքա-

ղաքէն դուրս տարին Ճիշդ այն արագաթեւ արշաւումով , որով զիս Լուվրէն տա բերեր էին , և ծեր Մօրիսը կրցածին չափ ետեւէն գնաց իր վարձու ձիերովը և առանց զինանշանի կառքովը ։

Քիչ մը սիրտ առեր էի . այլ միայն ինծի համար վախ ունէի ։

Թերէզա ինձ կը նայէր անհանգստութեամբ ։ Այս առեն վեր 'ի վայր շրջումներէն բան մը չէր հասկնար . բայց պատրաստ կը կենար հրամաններս ընդունելու և հնազանդելու ։

— Շո՛ւտ , ըսի , ռօպաններուդ մին բե՛ր ։

Բերաւ ռօպան ։ Ակնթարթի մը մէջ յարդուզարդս փոխեցի ։

— Ադամանդներ՛ս , Թերէ՛զա , ադամանդներ՛ս . . . ։ Հետս պի-տի գան հիմա . . . միւս ամէն բան հօրդ և էրիկիդ պահպանու-թեանը պիտի թողունք ։

Երկու վայրկենէ ետք դոհարեղէնները մեր գրպաններուն մէջն էին ։

— Փախչի՛նք , գոչեցի ։

Վազելով հասանք մինչև անդաստակը . բայց տակաւին բակը չհասեր էինք , երբ դռնապանս եկաւ բոլորովին շնչասպառ և սար-սափահար ձայնով մ'ըսաւ ինձ .

— Ոստիկանութի՛ւնը , տիկի՛ն , ոստիկանութի՛ւնը . . . չորս ոտքով սատանայի մը պէս դուռը կը զարնէ ։

Կարծեցի թէ երկրորդ անգամ պիտի նուաղիմ ։

— Ո՛չ , ըսաւ Պիւլման , դուռը կղպեցի և բանալին երկու ան-գամ դարձուցի ։

Ռիշլիէօ կը հաստատէր ինձ թէ գործադրող մարդ մ'է ։

Յաղթութենէն ետք այսքան շուտ յաղթուելուն վախը քաջա-սրտութիւնս և անխռովութիւնս տուաւ ինձ ։

Թերէզային հօրն ըսի .

— Լռէ՛ , և մեր հետն եկո՛ւր ։

Կրասէնէն 'ի զատ որ այն առեն դքսուհին կը տանէր , տան բոլոր ծառաները հոն կը գտնուէին անպակաս՝ այժմինքն .

Վեց յանդուգն յափշտակողներ՝ ժապաւէններով զարդարուած .

Պարտիզպանը .

Խոհարարս.

Իր երկու օգնականները.

Ձիադարմանը։

Ասոնց ամէնքն ալ վազեր եկեր էին փողոցին հնչակին սոսկալապէս զարնուիլը լսելով. զինուորները կը ցնցէին հնչակը։

— Գործ տեսէ՛ք, գոչեցի այս ամէն սպասաւորաց. դրան ետեւը դիմացէ՛ք։ Եթէ ամէնուդ կռնակին հակառակ դուռը կոտրուի, բարեւեցէ՛ք ոստիկանութիւնը և ըսէք թէ երեք օրէն 'ի վեր տունը չեկած եմ։

— Սկսան հնազանդիլ։

Թերէզան և Պիւլմանը քաշելով գացի։

— Կարտինալը, կ'ըսէի, թերեւս չյիշեց այն բանալին զոր իրեն տուի։ Փրկութեան յոյս մը կը մնայ ինձ.... պարտէզին դուռը վազե՛մ։

Բայց կարտինալն ամէն բան միտքը կը պահէր։

Մինչդեռ այս դրան մէկ երկրորդ բանալին գործածելու կը պատրաստուէի, կղպակին մէջ տուջի բանալիին ճռնչելը լսեցի, և հազիւ ժամանակ ունեցանք այծտերեններու թանձրախիտ հովանոցի մը տակ պահուելու։

Որդ ո՛րքան զարմացայ երբ՝ ոստերուն մէջ տեղէն նայուածքս սպրդելով կարտինալը նշմարեցի, որ սնդուսեայ փառաւոր բաճկոնակ մը հագած և կարմիր փետուրներով զարդարուն գլխարկ մը դրուած էր։ Տանթելայէ օձիք, ոսկիէ խթաններով զարդարուն կօշիկներ ունէր...։ Վերջապէս այն հագուստն էր որ տիկին Տը Շըվրէօզը քան քան խնդացուցած էր, և որք, բա՛րէ, յետին խղճահարութիւններս հանդարտելու սահմանուած էին։

Ես իսկ շատ պիտի խնդայի այս հագուստին վրայ, եթէ սաստիկ վախցած չըլլայի։

Րիշլիէօ՝ ետեւէս վազելով՝ բարկութեանը մէջ անշուշտ մոռցած էր այս սիրահարի հագուստով զարդարուած ըլլալը։

Հինգ չարադէմ մարդեր իր հետն եկած էին։

Կատաղիի մը պէս դէպ 'ի բնակարանս վազելը տեսայ. ետեւէն

գացին իր արբանեակներուն երեքը, և միւս երեքը մնացին պար-տէզին դուռը պահելու համար։

Ի՞նչ ընէի։ Իրապէս ինքզինքս կորսուած կը կարծէի երբ լաւ գունապանս՝ որ բարեբաղդաբար շատ չդինովցած էր այն օրը՝ բո-պաս բռնելով զիս քաշեց և ցած ձայնով ըսաւ.

— Եկէ՛ք, տիկին, եկէ՛ք... ուսերս ուժեղ են. կրնաք վրան ելնել։

Հովանոցին ներսը բացուած ծակէ մը մեզի փախուց։

Կը հաւանէի անոր ետևէն երթալու, սակայն աղէկ չէի գու-շակեր թէ Գիւլման ինչպէս պիտի կրնար զիս դժուարութենէ ա-զատել իմ նկատմամբ գործածելով այն միջոցը զոր Էնէոս գործ-ածեց հայրը՝ Անքիզը՝ փրկելու համար։

Պարտէզին այս կողմը շատ հոծ և բարձր տունկերով ու բոյ-սերով զարդարուած ըլլալով մեզի կը պահէր այն անձերու տե-սութենէն, որոնցմէ կը փնտռուէինք։

Ութ կամ ինն ոտք բարձր պատի մ'առջևը հասանք, և այն ատեն նշմարեցի թէ Գիւլման նպատակ ունէր զիս չէ թէ ուսե-րուն վրայ առնելով տանելու, այլ ինձ ծառայեցնելու զանոնք որպէս զի այս պատէն վեր ելնեմ, միւս կողմն անցնիմ և շրջա-կայ պարտէզներէն խոյս տամ։

— Սո՛ւրբ Աստուած, ըսաւ Թերէզա, տիկինը կտոր կտոր պի-տի ըլլայ վար ինկնելով

— Քանի որ այդպէս է, դուն ալ պիտի հաճիս կտրտուելու, վասն զի հետս պիտի գաս։

— Հանգիստ եղիք, ըսաւ Գիւլման, աղջիկս ձեզի համար ա-մէն բան պիտի կատարէ։

— Իրաւ է, պատասխանեց Թերէզա։

Ու իսկոյն ուզեց օրինակը տալ ինձ։

Հայրը ծունկի վրայ եկաւ, և Թերէզա անոր ուսերուն վրայէն վեր մագլցեցաւ։

Գունապանը նշանաւոր ոյժ մ'ունէր։ Ծանր ծանր ելաւ կանգ-նեցաւ իր բեռով մինչև որ Թերէզա այս համբարձումին մէջ պատը

իրեն յենումի կէտ ունենալով շուտով ինքզինքը դատու տեսակ մը տանեստանի վրայ, որ պատին վերևը կար։

Այս կարգն ինձ եկաւ։

Մեր գերմանացին ծունկի վրայ եկաւ, և րոպէ մ'ետք պատին վրան էի սպասուհիիս հետը։

— Հիմա, սիրելի Պիւլման, տունը դարձիր և յարգանօք բարեւէ վսեմափայլ կարտինալ Րիշլիէօն։

— Այո, պիտի խմցնեմ զինքը, ըսաւ։

Ձեռքս Թերէզային տուի, և միասին պատին միւս կողմը ցատկեցինք նոր փորուած և հարթուած ծաղկոցի մը ճիշդ մէջ տեղը։ Մեր անկումը միայն թեթև ցնցում մը պատճառեց մեզ։

Ո՞ւր էինք։ Չգիտէի, նաև ընկերուհիս չգիտէր։

Տանս մէջ պատուէր տուեր էի որ դրացիներուն նկատմամբ հարցուփորձ չըլլայ։

Պարտէզը շատ ընդարձակ երեցաւ մեզ։ Կարծես թէ կախում ունէր տունէ մ'որ մերինին ճիշդ կից չէր։

Հոն հոս անտառանման խիստ ներևախիտ պզտի հովանոցներ կային, և նախախնամութիւնը կարծես յատկապէս զանոնք հոն տեղաւորած էր մեր խոյսը ամեն նայուածքէ պահելու համար։ Այս անտառախիտ խուրձերուն մէկին տակը կծկուեցանք, ապահով ըլլալով թէ առանց որ և է անձէ մը տեսնուելու պատէն վեր ելեր և վար իջեր էինք։

Հոն ժամէ մ'աւելի սպասեցինք այնպիսի անձկութիւններով համակուած զոր դժուարին է նկարագրել։

Նորին Բարձրութիւնն և իր զինուորները մեր իրենց այնքան մօտ ըլլալը չգիտէին ամենևին։ Մեր այս պահուած տեղէն կը լսուէր դուռներուն զարնուիլը, պահարաններուն բացուիլը, կահերուն վեր 'ի վայր շրջիլը, ձեղուններուն և տախտակամածներուն խուզարկուիլը։

Նորին Բարձրութիւնը կը զիջանէր բնակարանս կողոպուտի տալ։

Ցանկարծ աղմուկը դադրեցաւ, բայց վտանգն ատով նուազ մեծ չեղաւ մեզի համար։

Ոստիկանութեան լրտեսները սկսան պարտէզս խուզարկել։

Եթէ անո՛նք ալ պատէն վեր մագլցէին։ Ա՛լ շունչ չէի առնուր. Թերէզա մոմելի մը պէս դեղնած էր։

Սակայն կարտինալին մօտէն չանցան, մեծամեծ ծառերը և պարտէզները խուզարկել։ Քիչ մը խելքը կ'երթար մտքէն. վասն զի այս արկածն իրեն կարի յանկարծապէս կը պատահէր ճիշդ այն միջոցին ուր ա՛յնքան քաղցր յոյսեր կը տածէր։ Ի՞նչ ընելու որոշում ըրաւ Ռիշլիէօ. չգիտեմ, և ետքէն երբէք չգրգռուեցայ ուզելու իրմէն այս պարագայիս մէջ իր զգացած յուզումներուն մանրամասն նկարագրութիւնը։

Միայն թէ ազատութեանս յաւիտենական մնաս բարև մը կ'ըսէի, եթէ այն օրը զիս բռնած ըլլար կարտինալը։

Վերջապէս ա՛լ որ և է ձայն և շշուք չլսեցի, և համարձակեցայ հեռանալու թագստոցէս՝ Թերէզան հետս առնելով և երևակայով թանձր վարագոյրներուն ետև պահուելու հոգ տանելով։

Տարածութեան մասին փոքր այլ ճշմարիտ անտառ մը մնայ, զոր օտարոտի ծառեր կը կազմէին։ Հոն կը տեսնէիր Սէն-Տօփինիի մագնոլենիքն, որ իր փառաւոր ծաղիկները կը փառօրէր Պրազիլիայի և Ինտիայի յուռթի բոյսերուն հետ. և որովհետև անկից ետք շատ անգամ ժուռ եկայ այն գալարաշէն գմբէթներուն ներքև զոր կը կազմէին այս գեղեցիկ ծառերը, այժմէն կրնամ ըսել թէ ասոնք տնկուեր էին Ֆերնանտէզ Տը Գիրօէն, սա սպանիացի երևելի նաւարկու (navigateur) մ'էր, որ այն առտեն Ֆիլիփ Բին տրտմալի արքունիքէն կը փախէր և կը գար Բարիզի մէջ հանգստեան փախելու համար հեռաւոր երկիրներ ըրած ճամբորդութիւններու յոգնութիւնը։

Ֆերնանտէզ տունկեր բերելը և Եւրոպայի մէջ մեր մռայլ օդին ընտելացնելը կը սիրէր։

Խնամատարութեան և համբերութեան յարատևութեամբը յաջողեցաւ։ Սակայն հազիւ ժամանակ ունեցաւ այս գեղեցիկ հաւանաւորութիւնը վայելելու։ Իր ժառանգորդները դեռ նոր ծա-

խեր էին այս ծառերը տաղաւարին հետ զոր շինել տուած էր ան ։

Եթէ Տէպարօ առենօք Պիգըռօյի կղզին կ՚անուանէր իր Սէն-Վիգթօր թաղին անտառակները, կրնար Սէյշէլ կղզին անուանել այն տեղն ուր հիմա ժուռ կը գայի ։

Հոն Աստղիկ մը կը պակսէր միայն, և չուշացայ Աստղիկին ալ երևալը տեսնելու ։

Մինչդեռ Թերէզային հետ անկասկած կը յառաջէի մամռոտ մարգագետնի մը վրայ որ մեր քայլերուն ձայնը կ՚անհետէր, համբոյրի մը, ապա երկրորդ, ապա երրորդ համբոյրի ձայնը լսեցինք . . . ապա կանկ առինք վախնալով որ մեր պատճառաւ չխռովին այսպէս պագնուող տատրակները ։

Գաղտնի գիտելու յայտնի յանցանքը գործողներու պէս էինք ։ Այս միջոցով չէինք կրնար համակրութիւն գտնել այն անձանց քով որոնց ներողամտութիւնը և պաշտպանութիւնը պէտք ունէինք հարկաւ ։

Կը պատրաստուէի ետ դառնալ Թերէզային հետ երբ մեզ աւելի մօտ տեղէ մը չորրորդ համբոյրի մը ձայնը, ապա թեթև ապտակ մը, ապա քրքիջ մը լսեցինք. ապա տեսակ մը վարդագոյն և սպիտակ ամպ մը, մետաքսէ և ժանեակներէ կազմուած մրրիկ մը նշմարեցի որ արագօրէն առջևէս անցաւ ։

Առջինին ետևէն ուրիշ մրրիկ մ՚ալ կը վազէր ։

Բայց այս երկրորդն աւելի նիւթական և յանկարծական ըլլալով խստիւ ինձ ընդհարեցաւ անցնելու ատեն ։ Թերեւս զիս մարգագետնին վրայ տապալէր եթէ Թերէզայէն չբռնուէի ։

Այսպէս մրրիկն իր ընթացումին մէջ արգելքի հանդիպելով կանկ առաւ ։

Այն ատեն կրցայ ընդնշմարել մարդ մը, և այս մարդն էր Տը Մարսիյլեագ իշխանը ։

Ոչ ան և ոչ ես չկրցանք շուարումի աղաղակ մը զսպել ։

— Ի՞նչ է աս, ըսաւ վարդագոյն և սպիտակ ամպը ։

Ես ետ եկայ յորձանքի պէս ։

Այս անգամ Նինոն Տը Լանգլօյին շողենման հասակը ճանչեցի, և սաստիկապէս ամօթով թացի Աստղիկին և իր սիրական Պարիսին սիրուն զբօսանքը ակամայ չփոթած ըլլալուս համար։

Նինոն խիստ անամօթաբար դէմքը ծռելով քիչ մը յոտից ցգլուխ ինձ նայեցաւ արհամարհութեամբ։

Իշխանը յանցաւորի մը պէս կը կարմրէր։

— Ուսկէ՞ կը գաս . . . ուսկէ՞ կ'ելնես . . . որմէ՞ն հրաման առիր պարտէզիս մէջ պահուելու . . . ։ Միթէ պատերուն վրայէն ցատկեցիր . . . երբէք տեսնուած է այսպիսի անամօթութիւն մը . . . ։ Բայց պիտի խօսի՞ս, տիկին, պիտի խօսի՞ս, գոչեց Նինոն։

Օրիորդ Տը Լանգլօ Մարսիլյեագին կը նայէր, ինձ կը նայէր. ոտքը գետինը կը զարնէր անհամբեր զամբիկի մը պէս։

— Կը խնդրեմ, ըսի, մի՛ բարկանար և հաճէ՛ մտիկ ընելու ինձ։

— Սիրելի օրիորդ, մռմռաց իշխանը Նինոնին, կ'երդնում թէ . . .

— Քեզի հետ խօսողն ո՞վ է, պարոն. մե՛ծ յանդգնութիւն է չհարցուած պատասխան տալը։ Գնա՛ անկից. կ'ուզեմ միայն բացատրութիւն ուզել տիկինէն . . . գնա՛, կ'ըսեմ քեզ։

Մարսիլյեագ վար ըրաւ գլուխը. կը համակերպէր հնազանդելու։

— Ո՞ւր կ'երթաս, ըսաւ Նինոն. կեցի՛ր, կը հրամայեմ որ կենաս։

Մարսիլյեագ կեցաւ։

Նինոն քովս եկաւ, թևերը կուրծքին վրայ դրած կռուասէր կերպարանով, ոսկեթել չուխայէ մուճակներուն ծայրին վրայ կանգնեցաւ մեծնալու համար, և հարցուց ինձ ձայնով մը, զոր հրամայական և սպառնական ընելու կը ջանար.

— Ըսէ՛, տիկին . . . կամ լաւ ևս է ըսել՝ օրիորդ, վասն զի ինծի պէս դուն ալ տիկին մը չես . . . ոմանք կը պնդեն թէ իշխանն երեք անգամ այցելութիւն ըրաւ քեզ այն օրէն 'ի վեր ուր քեզի ճանչելու պատիւը ունեցայ։ Պատասխանէ՛ և մեկուսի գիր

կեղծաւորի անմեղութեան այդ կերպարանքը . . . ։ Մի՞թէ առաքինութիւն մ'ես դուն ։

Ինքնասիրութիւնս վիրաւորեցաւ ։

Պատասխան տուի այնպիսի ձեւով մ'որ դէթ իր ձեւին չափ լիրբ էր ։

— Եւ մի՞թէ դուն ալ առաքինութիւն մ'ես, օրիորդ ։

— Այսպէս զիս նախատե՛լ, տանի՛ս մէջ ։

— Նախատական խօսքով նախայարձակը ես չեմ, և եթէ հիւրասիրութեան օրէնքը քիչ մ'աւելի հասկնայիր . . .

— Անշուշտ, համարձակեցաւ ըսելու Մարսիյլեազ, յանցաւոր ես, Նինօն, այդպէս բարկանալովդ ։

— Ա՛հ, յանցաւո՞ր եմ . . . ։ Վա՛յ, դրուժան, վա՛յ . . . Ներա կողմը կը բռնէ՛ ։ Սուտ չըսուած էր ինծի . . . իրաւ է եղեր . . . ի՜նչ մատնութիւն . . . ։ Հիմակ ալ ինքն եկած է պարոնը տունէս թախանձանօք տանելու ։ Պարո՛ն, աղէկ միտքդ դի՛ր, որ այսօրուանէ սկսեալ ուրիշ սիրող մը կ'ուզեմ . . . ։ Տա՛սը սիրող, քսա՜ն սիրող պիտի գտնեմ. այս օրիորդին պէս պիտի ընեմ . . . ։ Ա՛հ, ուրեմն գացիր տեսնուեցա՞ր ներա հետը ։

— Նինօն . . .

— Կրնաս մեկնիլ, պարոն. ա՛լ չեմ կեցներ քեզի ։

— Սիրելի՛ Նինօնիկս ։

— Քառսո՛ւն սիրող պիտի ունենամ . . . ։ Պիտի չհաճի՞ս առջեւս աներեւոյթ ըլլալու . . . ։ Կը տեսնե՞ս սա պզտի հրէշը . . . իր անմեղի դէմքովը . . . ։ Եկո՛ւր տէ, հաւտա՛մ մարդոց սիրոյն ։

— Յանո՛ւն Աստուծոյ, հանդարտէ՛, ըսաւ Մարսիյլեազ ։

— Դարձեալ կ'ըսեմ, գնա՛, թէ ոչ աչերդ կը հանեմ ։

Իշխանը բացատրութեամբ բան մը չշահիլը քաջ գիտնալով, ծառերու թանձրախիտ անտառակներուն ետեւն աներեւոյթ եղաւ ։

Օրիորդ Տը Լանգլօ մամուռեայ բազմարանի մը վրան ինկաւ, լացաւ, հեծկլտաց, ապա յանկարծ բարկութեամբ ոտք ելնելով.

— Յիսո՛ւն սիրող պիտի ունենամ . . . բոլո՛ր Բարիզը սիրողս պիտի ընեմ . . . ։ Յիրաւի խենդութիւն մ'է խղճահարութիւն

ցոյց տալով Թագաւորին արծաթեղինաց դիւրաւ գանձարանը մտնելու։

— Էմըրի՛ն, գոչեցի . . . սիրաբանե՞ց հետդ։

— Տակաւին կը սիրաբանէ՛, անընդհատ պիտի սիրաբանէ։

— Վա՜յ մատնիչ, վա՜յ։

Նինոն նայուածքը վրաս սեւեռեց. ես ալ իրեն նայեցայ նոյն-պէս։

Վայրկեանի մը չափ լուռ կեցանք, ապա թէ՛ ան և թէ՛ ես այնքան աղմկալի, այնքան տարափոխիկ քահ քահ մ՚արձակե-ցինք, որ Թերէզա մեզ ձայնակցեցաւ, և ձեռքը ազդրին վրայ տարաւ աւելի հանդստապէս խնդալու համար։

Տը Մարսիյլեագ իշխանը հարիւր քայլի չափ հեռի էր մեզմէ։

Խոկոյն ետ գալով կարծեց թէ հաշտութիւնը հաստատուած է, և սպասուհիին օրինակին հետեւեցաւ։

Յանկարծ մերիններէն աւելի սաստիկ և աւելի աղմկալի քահ քահ մը լսուեցաւ մերձակայ հովանոցներուն ետեւէն։

Արահետէն անծանօթ մարդ մը կ՚ելնէր։

Էմըրին էր եկողը։

Ամեն օր ինձմէ բոլորովին գաղտնի հոն կը գար Նինոնին այ-ցելութիւն ընելու համար։ Մեր խնդալը հեռուէն լսելով ինքն ալ վստահութեամբ կը խնդար։

Բայց խեղճ սեղանաւորը զիս նշմարելով տժգունեցաւ։

Նինոն՝ նորէն ծանր կերպարան առնելով, յարգանօք բարեւ տուաւ։

— Ձեր վրայ կը խնդանք, պարոններ, ըսաւ։

Ես ալ շատ քաղաքավարութեամբ բարեւ տալով՝ ըսի.

— Վասն զի շատ ծիծաղաշարժ երես մ՚ունիք։

— Պարոն վսեմափայլ իշխանդ Տը Մարսիյլեագ, օրիորդ Տը-լօրմին քով շատ յաջողութիւն ունենալդ կը մաղթեմ։

— Պարոն Միշել Բարթիշելլի, Էմըրիի և ուրիշ չգիտեմ ինչ տեղերու կոմսդ դու, բոլոր սրտովս կը փափաքիմ որ օրիորդ Տը Լանգլօ ողորմի քեզ։

— Եկո՛ւր, Մարիոն։

— Եկո՛ւր, Նինոն։

Եւ աներևոյթ եղանք՝ Մարսիլլեացը և Էմըրին անտանելի շուարումի մը մէջ թողլով։

— Խե՞նդ էինք, խեղճ Մարիոնս։

— Իրաւ է, սիրելի Նինոնս։

— Ինչո՞ւ քամահրենք զիրար։

— Ինչո՞ւ թշնամի ձևանք իրարու։

— Երբ շատ դիւրին է մեր համաձայնիլը....։ Ինձ նայէ, Մարիոն, դաշինք հաստատենք մեր մէջ։

— Շատ աղէկ։

— Խօսք տո՛ւր ինձ ամենևին սիրողներս չառնուլ ինծմէ. պատւոյս վրայ կը խոստանամ քուկիններդ յարգել։

— Լա՛ւ, ըսի։

— Երդում ըրէ։

— Կ՚երդնո՛ւմ։

— Լա՛ւ, ահա լմնցա՛ւ, գոչեց. մի և նոյն երդումը կ՚ընեմ։ Եթէ պաշտողներուդ մէկին անգամ մօտիմ, թո՛ղ... տգեղնամ....։ Պագնուի՛նք։

Նինոն թևերը բացաւ. ուրախութեամբ նետուեցայ գիրկը։

Սաուգիւ շնորհալի էր Նինոն։

— Վերջապէս, ըսաւ օրիորդ Տը Լանգլօ, շատ քիչ կարևորութիւն կը տամ այս երիտասարդ Մարսիլլեացի իշխանին վրայ, և իր նկատմամբ շատ պատրանք կը կազմէի ինքնին։ Անշուշտ ազնիւ է իբր մանկութեան բարեկամ. բայց իբր սիրահար՝ անհամ է... այնպէս չէ՞, Մարիոն....։

— Խի՛ստ անհամ, պատասխանեցի։ Իսկ այս գիրուկ Էմըրին գալով, կը յայտնեմ թէ բնաւ խեւի պէս չսիրած եմ զինքը...։ Պատուական մարդ, խիստ առատաձեռն. բայց անշնորհ է... այնպէս չէ՞, Նինոն։

— Խի՛ստ անշնորհ....։ Կրնաս Մարսիլլեացը պահել եթէ կ՚ախորժիս, սիրտդ իմ։

— Եթէ արծաթեղինաց գանձապետը փոքր ինչ օգտակար երևայ քեզ, քեզ կը թողում զինքը, սիրեցեալդ բարեկամուհիս։

— Բայց այսուհետև, ըսաւ Նինոն, մեզմէ իւրաքանչիւր ոք միւսին սիրային յաղթութիւնները պիտի յարգէ։

— Սիրարկուներդ նուիրական պիտի ըլլան ինծի համար։

— Պիտի հրամայեմ պաշտողներուդ որ երթան հօդ առնուն, Մարիոն։

— Ես ալ քուկիններո՛ւդ, գոչեցի . . . : Նորէն պաղնուինք։

— Այժ, գեղանիդ իմ, պաղնուի՛նք։

— Տիկի՛ն, տիկի՛ն, ըսաւ Թերէզա՝ որ մեր ետևէն կը գար, մերձակայ տուներէն կրնաք նշմարուիլ . . . : Ո՞ւր է ձեր խելքը։

Իրօք հովանաւոր տեղերէն դուրս ելեր էինք. արտայայտ ուղեղս արդէն կը մոռնար այն վտանգը որուն ենթարկուեր էի և այն վտանգը զոր անխոհեմութիւն մը կրնար բերել տակաւին։

Ուժգնակի ծառերուն տակը նետուեցայ։

— Ի՞նչ կայ, հարցուց Նինոն։

— Ի՞նչ պիտի ըլլայ. բոլոր Բարիզի մէջ կարտինալէն իբր եղջերու մը կը հալածուիմ։ Պարտիզիդ պատերուն վրայէն ոստեցի զինուորներէն չբռնուելու համար։

— Սո՛ւրբ Աստուած։

— Ճիշդ ըսածիս պէս է իրողութիւնը։

— Բայց ի՞նչ ըրիր կարտինալին։

— Ետքը պիտի իմանաս։ Արուարձանի մը մէջ առանձին տուն մը պիտի քաշուիմ մինչև որ անոր առաջին կատաղութիւնը մեղմի։ Այս գիշեր Թերէզային հետ տունէդ պիտի ելնեմ, և պիտի սկսինք անշուք պատրաստ տուն մը փնտռել, ուր պիտի պահուիմ մինչև 'ի նոր կարգադրութիւն։ Կը տեսնես որ արդէն ծպտած եմ։

— Բայց ամենևին ծպտած չես, սիրելիդ իմ, ըսաւ Նինոն. անմիջապէս ճանչեցի քեզ, և ամեն մարդէ պիտի ճանչուիս։

— Կը կարծե՞ս։

— Խելքի մաքի դէմ բան է աս . . . : Հոս կեցի՛ր . . . մի՛ շարժիր տեղէդ . . . : Մինչև հինգ վայրկեան կը գամ։

Նինոն ծիծեռնիկի մը պէս թռաւ դէպ այն աղուոր սրահարն ուր կը բնակէր։

Այս տղաւարը մօտէն կը նշմարուէր։

Սակայն Նինոն հինգ վայրկեանէն շատ աւելի ուշացաւ։

Քառորդ մը, ապա կէս ժամ անցաւ, և անհանգստութիւնս աստիկացաւ։ Օրիորդ Տը Լանգլօյին համբոյրներն անկեղծ չէի՞ն արդեօք։ Կեղծաւորութեան դիմակի մը ներքև մատնութեան նպատակ մը կը պահէ՞ր ան. կը զեղծէ՞ր իմ ամենավստահ բնաւորութիւնս, և կրնամ կարծել թէ Նինոն կարող է արդի դժբաղդ կացութիւնս իրեն պատեհ առիթ սեպելու և ոտնահարել մ'աղատուելու։

Անկարելի բան։

Այլ սակայն կանանց մէջ մատնութեան և պատրաստուած վրիժառութեան աւելի աղետալի օրինակներ տեսնուած են։

Առեւոք Վուաթիւրին առջև շատ արհամարհութեամբ վարուեցայ Նինոնին հետ. անկից ետք ակմբանոցիս մէջ արձակ համարձակ բամբասեցի զինքը. ամեն տեսակ նենգութիւններ 'ի գործ դրի իր սիրարկուները հրապուրելու և ինձ գերելու համար։

Անտարակոյս կորսուած եմ... Նինոն վրէժը կը լուծէ՜։

Ցանկարծ տեսակ մը գիւղացի կին տեսայ որ դէպ 'ի մեր կողմը կը յառաջանար, թևին տակ ծրար մ'ունենալով։

Օտարուհիի մը դալն աւելի զրգռեց կասկածներս, և սպառնալիքս ծառերուն տակը քաշեցի, որպէս զի առանց տեսնուելու կարենամ զաղտնապէս դիտել եկող անձը։

Շուտով հասաւ այն տեղն ուր էինք սպահ մ'առաջ, իր ծրարը մամուռներուն վրայ նետեց, իր չորս կողմը նայեցաւ և ձեռները իրարու զարնելով, գոչեց.

— Բարեսի՜րտ բարեկամուհիս... է՜... ո՞ւր ես։

Նինոնն էր եկողը։

Վազեցի՝ կասկածներէս բոլորովին ամօթահար, և զինքը համբուրեցի խռովութիւնս չյայտնելու համար։

Ապա հետաքրքրութեամբ իր այլակերպութիւնը քննեցի։

Օրիորդ Տը Լանգլօ ստուգիւ ճանչելի չէր ։ Կրնայիր կարծել թէ Օժէօյլի կամ Վէնսէնի գիւղացի կանանց ամենէն աղնիւը կը տեսնես ։

— Է՛, ի՞նչ կ'ըսես . ահա ասանկ կը ծպտիմ ։

— Բայց ես կը պարտաւորէի այդ լաթերը հագնիլ, հոգիս ։

— Բայց ո՞վ ըսաւ քեզ, հոգիս, թէ անոնց յար և նման պիտի չունենաս ։ Անկից երկու քայլ անդին, պուլվարին վրայ զգեստավաճառի մը խանութը տալին ու վրայ ըրի . . . ։ Չտեսնե՞ս այս ահագին ծրարը . . . ։ Տէ՛, հանեցէք րօպաները . . . ։ Դո՛ւն ալ, ըսաւ Թերէզային . . . ։ Ի՞նչ կը կարծէիր հապա . ինչ աղւոր ստատանութիւն ըրած կ'ըլլայինք չէտակը՝ տիրուհին ծպտելով, երբ սպասուհին կրնայ ճանչուիլ . . . ։ Շո՛ւտ ըրէք, պիսակներ, շալեր, անդրոյր, բօմատա ունիմ մազերը և ունքը ներկելու համար . . . ։ Քեզի պաշտելի քումայթ կնկան մը պիտի նմանեցնենք, Մարիօն ։

Նինօն անմիջապէս սկսաւ կոճակներս կտրել, լանջակալս պատռել և յոտից ցգլուխ մերկացնել զիս ։

— Աղէ՛կ, ըսաւ, այդ զանձերը ծածկելու հոգը մի՛ ունենար . . . մեր սիրահարներին արտաքսութեան և դռնապանես խիստ հրամաններ ընդունեցաւ ։ Հետդ պիտի գամ միասին տուն մը փնտռելու և գտնելու համար . պիտի չզատուիմ քովէդ մինչև որ ապահով չըլլամ թէ ա՛լ ամենևին վախ մը չունիս ։

Պաշտուական աղջիկ . ոսկիի մը պէս սիրտ մ'ունէր Նինօն ։ Ինքզինքիս դէմ կը սրդողէի ներա դէմ կասկած ունեցած ըլլալուս համար ։

Քսան վայրկենէ ետք անկից երեք շքեղ գեղջկուհիներ փախան, — վասն զի Թերէզան անգամ շատ ձևաւոր էր, — սկսան թև 'ի թև մանրաքայլ տրոտել, ժուռ եկող մարդոց ակնոցներուն առարկան ըլլալ, ման եկող կանանց նախանձը գրգռել, աջ ու ձախ կողմէն, առջևէն և ետևէն իրենց չարաճճի նայուածքին և նմանապէս սիրուն երեսին վրայ գովեստներ լսելով ։

Դէպ 'ի Պասթիյլ ուղղեցանք, ապա Սէնթ-Անթուան փողոցէն

անցանք՝ դուռներուն վրայ կախուած նշանատախտակներուն նայելով և ամեն պատրաստ տուները դիտելով։

Վերջապէս Գլօշ-Բերշ փողոցին շրջականները երկու կահազարդ պզտի սենեակներ գտանք որք մեր գործին շատ աղէկ կը յարմարէին։

Ամիսը վեցը թալեռ վարձք պիտի տայինք։

Նինոն բոլորովին անվախ յանդգնութիւն մ'և հրաշալի համարձակութիւն մ'ունէր։ Ըսաւ թէ իր քոյրերն ենք, թէ Սէնթ-Ուանէն եկած ենք դերձակներու և նորաձևութեանց վաճառականներու քով աշխատելու համար. թէ ինքն իսկ Մարէի թաղը բնակող կնկան մը քով կը ծառայէ իբր մանկասած, և թէ շաբաթուան մէջ սաէպ պիտի գար մեր հետը տեսնուելու։

Նաև մեր սովորութեանց նկատմամբ գովեստներ տուաւ։

Սակայն այս գովեստներէն տանտիրուհին ոչ այնքան ազդուեցաւ որքան տասներկու թալեռէն, զոր քսակէս հանեցի և ձեռքը տուի երկու ամսուան վարձքին համար։

Բարեմիտ կինն ամեն տեսակ մարդասիրական կերպերով մեզի մեր երկու մանսարդեան սենեակներուն մէջ տեղաւորեց։

Պահ մը նէ կահ կարասիին վրայ մեզի սքանչացնելու դիտաւորութիւնը ունեցաւ. այս կահ կարասիներն էին մէն մի սենեկի մէջ ներկուած փայտէ խշտեակ մը, երկու աթոռ, կոտրուած հայելի մը, քանի մ'անպիտան նկարներ, և՝ իբր սեղան՝ չորս ցիցի վրայ զամուած երեք տախտակ. սակայն տան տիրուհին շուտ պարտաւորեցաւ հրաժարիլ այս գեղեցիկ բաներուն վրայ մեր հիացումը գրգռելէ։

Նինոն ըսաւ թէ՝ իր տիրուհիէն դուրս ելնելու հրաման առած ըլլալով, վասն զի մանուկը Մըլէօն գացած էր իր ստնտուն տեսնելու, մեր հետը պիտի ընթրէ, պառկի, և հետևեալ օրն առաւօտուն մէկ մասը անգամ մեր հետը պիտի անցունէ։

Տան տիրուհին Թերէզային հետ վար իջաւ որպէս զի ցոյց տայ անոր թէ ուսկէ կրնար գնել մեր պզտի տունին հարկաւոր եղած պաշարքը և կարևոր անօթները։ Օրիորդ Տը Լանգլօ Թևերը

սօթթեց կերակուր եփելու համար, և ես... աթոռի մը վրան ընկայ բոլորովին յոգնաբեկ, այլ երջանիկ՝ քանի որ կրցեր էի Րիշլիէօյին ճիրաններէն ազատիլ։

Օրուան մը մէջ ո՛րքան դէպքեր։

Այսինքն ժամը տասին ժամն էր քարոզ մտիկ ընելով. ժամը տասնումէկին վերջին մնաս բարեաւ մը կ'ըսէի Տէպարոյին գրավաճառ Ամիօյի խանութին մէջ. ժամը մէկին կարտինալին խուցը կը մտնէի, և ժամն երեքին անկէ դուրս կ'ելնէի արկղիկին հետ։

Ժամը չորսին դռնապանս իր լայնակազմ ուսերը ինծի կը ծառայեցնէր որպէս զի պատէ մը մագլցելով անցնիմ։

Ժամը հինգին դէմ առ դէմ կը գտնուէի Նինօնին, այսինքն թշնամիիս հետ, որ ժամը վեցին բարեկամուհիներուս ամէնէն մտերիմը կը դառնար։

Երկար չընեմ, քաղաքատունին ժամացոյցն եօթը կը զարնէր. և օրիորդ Տը Լ'Օրմ, որ տուն, ծառաներ, կառուձի ունէր. ա՛լ պարզ գիւղացի կին մ'էր, սակայն նորաձևութեան վաճառատուհի մ'ըլլալու փառասիրութիւնը ունենալով տակաւին. Սէնթ-Անթուան փողոցը չորրորդ դստիկոնի մը վրայ անշուք սենեկի մը մէջ կը բնակէր, իրեն պէս գիւղացի քոյրերուն հետ կաղ սեղանի մը վրայ կ'ընթրէր, և Մարի Պիւլման անունը կ'առնուր։

Եթէ կենացս մէն մի օրն այսպէս պատահարներով լի ըլլար, ընթերցողներուս ամենևին ձանձրոյթ տուած չէի ըլլար... վասն զի անկարելի պիտի ըլլար ինծ պատմութիւնս գրել։

Նոր և այլանդակ կեանքիս առաջին շաբաթներն առանց հրապոյրի չանցան։

Խշտեակիս յարդալի պարկին մէջ հինգ հարիւր ֆրանքի ոսկի, տասնութ հազար ֆրանքի փոխանակագիր, հարիւր հազար թալերի արժողութեամբ ադամանդներ ունէի, և՛ւ օրերս Թերէզային հետ բոպա կարելով և փեղղոյր շինելով կ'անցունէի։

Դրացիներէն հազիւ նշմարուած էինք. սակայն գիտէին թէ աղւոր ենք, և շատ աւելի աղւոր եղանք, ես մանաւանդ, երբ մեր գիւղացիի զգեստները հանեցինք և Թերէզն կանանց յատուկ

թաւշեայ լանջակալը, զուարթ ղենջակը և պչրասիրաբար հաւաքուած բոլլան հագանք։

Մեր զգօնութիւնը կը զովուէր։ Ամեն կողմէ քաջալերութիւն կը տեղար մեր վրայ, և իւրաքանչիւր ոք հաճոյք կը սեպէր իրեն մեզ գործ տալը։

Արդ այս գործերը պէտք էր կատարել։

Նախ զմայլելի բան մ'եղաւ մեր աշխատիլը։ Առաւօտէն մինչև իրիկուն կ'երգէինք՝ ասեղը հրելով։ Հացս վաստկիլը շատ հետաքրքրական կ'երևար ինձ։

Սակայն կամաց կամաց սկսայ յոգնութիւն զգալ աշխատելէ, և յոգնութիւնը շուտով ձանձրոյթը կը բերէ։

Շատ քիչ կը բանէի, ապա թող կը տայի որ Թերէզան մինակ աշխատի. ասեղը խելքս կը փչէր կարգալ փոխանակ կարկելու. երբեմն ալ ընթերցումիս մէջ յանկարծ յօրանջելս տեսնելով գիրքը կը նետէի, պատուհանս կը բանայի և շրջակայ տանեաց ոչ այնքան ողրքուն հեռանկարովը կը ջանայի զուարճանալ, թէև դժուարին էր այս կերպով զուարճանալս։

Առաւօտ մ'երբ այս կղմինտրներու հորիզոնին կը նայէի տրտմութեամբ, շատ գեղեցիկ աղաւնի մը տեսայ որ պատուհանիս քով եկաւ կանգ առաւ մեր տան յարկին եզրին վրայ. ձեռքս երկնցնելով կրնայի բռնել զայն։

Իրօք առանց դժուարութեան բռնեցի աղաւնին, վասն զի վայրենի չէր։

Սակայն որքան զարմացայ՝ իր սպիտակ թուիչքին ներքև կապուած տոմսակ մը տեսնելով։

Ի՞նձ ուղղուած էր տոմսակը։ Ոչինչ ցոյց կը տար թէ ինծի համար է այն, բայց ոչինչ կը հաստատէր նաև թէ ուրիշի մը ուղղուած է այն։

Հետաքրքրութիւնը յաղթեց. թռչունին փետուրներուն տակէն թուղթը առի։

Իրաւ ինծի գրուած էր այն։

«ՕՐԻՈՐԴ,

«Անունդ Մարի է, զգօն և աշխատասէր ես։ Իսկ գեղեցկութեանդ մասին բան մը պիտի չըսեմ ամենևին, վասն զի դժուար է ինձ նկարագրել զգացածս՝ երկրիս վրայ տեսնելով ինչ որ միայն երկնից վրայ գտնելու յոյս ունէի։

— Շատ պահանջկոտութիւն, ըսի ժպտելով. բայց հոգ չէ, աղուոր կը խօսի գրողը։ Շարունակենք.

«Դատարկ խուց մը կայ այն բնակարանին քով ուր կը բնակիս։ Կը յայտնեմ թէ դիտաւորութիւններս պատուաւոր են։ Եթէ կը տարակուսիս այս պատուաւորութեան վրայ, պիտի հրամեշտ տամ այդ սենեկին մէջ բնակելու նպատակիս. բայց՝ եթէ պարկեշտ և ուղղամիտ աղայ մը, անդորրութիւնդ վրդովելու և ապագադ կործանելու անկարող մարդ մը կը կարծես զիս, համբոյր մ՚առ աղաւնիիս վզէն, և այսօրուընէն դրացիդ պիտի ըլլամ։»

Շրջակայ բոլոր պատուհաններուն նայեցայ։

Ասոնց մէկ մասը գոց և մէկ մասը բաց էր. բայց ոչ ոք կ՚երեւար, և ամենևին չէի տեսներ բան մ՚որ ինծի գուշակել տար աղաւնիին տիրոջ բնակարանը։

Հետաքրքրական էր այս արկածը։ Շատ պատեհութեամբ կը պատահէր՝ փարատելու համար ձանձրոյթը, որ կ՚սկսէր մենատունս այցելութեան գալ։

Ի՞նչ կ՚ուզէ թող ըլլայ, ըսի մտովին, և թռչունին փետուրներուն մօտեցուցի շուրթերս։

Ապա դէպ անջրպետն արձակեցի աղուոր բանբերը, և ո՛ր կողմը թևարկելը քննեցի։

Սիրտս սաստիկ յուզումով մը կը բախէր։

Աղաւնին Գլօշ-Բերշ փողոցին մէկ տունին կատարին վրայ և իմինիս չափ բարձր սենեկի մը քով կանգ առաւ. այս սենեկին պատուհանը դուրսէն կանաչ վարագոյրով մը գոցուած էր։

Վարագոյրը բացուեցաւ։

Մեծահասակ և աշնահար երիտասարդ մը նշմարեցի։

Երախտագիտութեամբ լի նայուածք մը ղրկելով ինձ՝ ձեռքը սրտին վրան դրաւ, ապա աղաւնիին տուաւ, և իր շուրթերուն աղաւնիին վզին վրայ համբոյրիս հեւքը փնտռելը տեսայ։

Այն օրն իրիկուն Թերէզան իմաց տուաւ ինձ թէ երիտասարդ պատկերահան մը մեր բնակարանին մօտ սենեկի մը մէջ կը տեղաւորուէր։



## Զ

Այս երիտասարդ պատկերահանին անունն էր Էթիէն Լամպեր։

Քսաներկու քսաներեք տարեկան կ'երեւար։ Գոյնը թուխ էր։ Թանձրախիտ մազեր անոր լայն ճակատին շրջանակ մը կը կազմէին, և իր փոքր ինչ նիհար երեսն անոյշ դեղնութիւն մ'ունէր։ Այս դեղնութեան շնորհիւ սքանչելապէս պայծառ կ'երեւային անոր մեծամեծ և սեւ աչերն որք զգայական արտայայտութեամբ և մտախոհ մելամաղձութեամբ լի էին բոլորովին։

Պէտք չունիմ ըսելու թէ աղաւնին ղրկող երիտասարդն էր ան։

Շուտով դրացութեան հազարումէկ պատրուակներ գտաւ երկու քոյրերուն քով գալու և իր այցելութիւնները կարելի եղածին չափ յաճախ ընելու։

Էթիէն Լամպեր, որ գաւառական դատաւորի մը տղան էր, նախ փաստաբան ըլլալու սահմանուած այլ ետքէն իր իրաւագիտութեան ուսմունքը մեկուսի դրած էր՝ գեղարուեստից զբաղելու համար։ Աւելի ընտիր բնաւորութիւն մը, աւելի ազնիւ սիրտ մը, աւելի զգայուն և վեհ հոգի մը կարելի չէր գտնել։ Անոր ամէն

գաղափարները վսեմութեան դրոշմ մը կը կրէին, և իր առաքինի զգացումները մինչև յաւիւն կը մղուէին։ Երբ մեռաւ հայրը, Էթիէն, իր ժառանգութեան մասը բոլորովին թողուց իր միակ քրոջը աւելի նպաստաւորապէս կարգուելու համար, և այսպէս չքաւորութեան մօտ վիճակի մը մէջ ընկնելու վտանգին ենթարկուած էր եթէ իր յառաջադրած նպատակին չհասնէր։

Ինչպէս ուրիշներուն, նոյնպէս և իրեն համար ասպարէզին մէջ նախ շատ խոչընդոտներու հանդիպած էր ամեն կողմէ։ Կսկծառիթ փուշեր անոր քաջասրտութեան շատ անգամ սաստիկ վէրք տուած էին։

Բայց վերջապէս հեռանկար պատկերն աւելի զուարթ և արահետը նուազ դժնդակ դարձած էր։

Էթիէն կ՚օգնէր արժանիք ունեցող պատկերահաններուն կարգը դասուիլ։

Տը Լէտիկիէր սպարապետը, այն սպիտակահեր դիւցազնն որ իր ութսունամեայ հասակին մէջ տակաւին զրահ կը դրուէր, ձի կը հեծնէր և կը պատերազմէր, իր պաշտպանութիւնը շնորհած էր երիտասարդ պատկերահանին և իր մատուռին համար պատկեր մ՚ապսպրած էր։

Մեր դրացին ցոյց տուաւ մեզ այս գրեթէ լմնցած պատկերը․ անոր մէջ նկարուած էր Լէտիկիէրին դարձը Բրօվանսի այն հռչակաւոր ժողովին մէջ ուր սպարապետը Կրընօպլի և Էօմպրէօնի արքեպիսկոպոսին առջև բողոքականութիւնը ուրացաւ։ Ծեր մարտիկը ծունկի վրայ կը գար արքեպիսկոպոսներուն առջև, աջ կողմն ունենալով իր կնքահայրերը, որք էին Պարոնայք Տը Գրեժի, Տ՚Արլէնգուր և Տը Սէն-Շոմօն․ ասոնց ետևը կեցած էին Կրընօպլի Խորհրդարանին բոլոր անդամները կարմիր պատմուճաններով։

Տեսարանը նշանաւոր հանդիսաւորութիւն մը կ՚ընծայէր, և դրացիս երջանկութիւն և հպարտութիւն զգաց իր պատկերին նկատմամբ տուած գովեստներէս։

Նորէն յօժարութիւն կ՚զգայի աշխատելու։

Էթիէն ժամանակ առ ժամանակ մեր քովը կ՚գար հանգչելու ։ Ծանր և անոյշ խօսակցութիւն մ՚ունէր, որ ոչ այնքան սովորական էր իր ժամանակին և հասակին վերաբերող երիտասարդներուն ։ Երբ կը սիրաբանէր հետս, այնքան սաստիկ յուզումով և մեծ յարգանօք կը խօսէր որ ես բոլորովին կ՚ամչնայի ։

Սակայն կամաց կամաց Էթիէն սկսաւ համարձակութիւն առնուլ ։

Հետը կը բերէր իր աղուոր աղաւնին, շուրթերովս անոր հունտեր կը տայի, զոր որկրամոլութեամբ կը կլլէր. երբ աղաւնին բերնէս առած կ՚ըլլար բոլոր հունտերը, երիտասարդ պատկերահանը նոյնպէս բերնովս անոր հունտեր կը տար, և կը տեսնէի թէ որքան երջանիկ էր այս տեսակ մը միջնորդական համբոյրէն ։

Յանկարծ եկան սիրտս յուզեցին այնպիսի զգացումներ, որք մինչև այն օրը յանցական և ունայնասէր կեանքիս մէջ տակաւին չգրգռուած էին ։

Ամենասաստիկ տրտմութեան ամենազուարթ ուրախութիւն կը յաջորդէր ։ Արտասուքը ժպիտներուս հետ կը խառնուէր, միտքս զուարթագին երազներու մէջ կը թափառէր, ուր Էթիէնին պատկերը ճակատին վրայ պսակով մը կ՚երևար ինծ, ուր անծանօթ և խորհրդաւոր ձայներ ականջիս անոյշ խօսքեր կը փսփսային և երկնային զգլխումով մը կ՚օրէին զիս ։ Կերպիւ իւիք ով ըլլալս և ինչ ըլլալս մոռցեր էի ։ Նայուածքիս առջև նոր հորիզոններ կը բացուէին ։ Երկնից վրայ ոսկեղէն ճառագայթ մը, աննախատիպ լոյս մը կը տեսնէի զոր մինչև այն ատեն չշողած էր կեանքիս վրայ ։ Երանութեամբ և զուարթութեամբ դէպ այն ճառագայթին կողմը կ՚երթայի, դէպ այն լոյսը կը քալէի երբ յանկարծ Էթիէնին ձայնն երազս փարատեց և յիշողութիւնս ու անպատուութիւնս նորէն ինծ տուաւ ։

Ափսոս, ափսոս, ընդմիշմարեր էի անարատ սէրը, սուրբ սէրը, այն սէրը որ 'ի սկզբան յերկնուստ իջած էր, և այս սիրոյ անարժան ըլլալս իմանալու կը պատրաստուէի ։

Էթիէն երբեմն երեկոյթին մինչև վերջը կ՚երկարէր իր այցե-

և կը ցայտէր այն պարբերութեանց վրայէն որք չինծու անմեղութեանս և կեղծաւոր անմեղութեանս նկատմամբ անպատեհ կ՚երեւային ։

Էթիէն՝ որ սովորաբար խիստ հեզ և մեղմ էր՝ յանկարծ կոուփովը սեղանին զարկաւ, և իր աչքին առեւի մը բարկութեամբ փողփողիլը տեսայ ։

— Իրա՛ւ է, գոչեց արհամարհութեան անասելի ձայնով մը. Մարիոն Տըլօրմ... Ճիշդ ինքը... պոռնիկը. Ճշմարիտ ակ՛ր մը զզայ.... Այս խմբագիրը խենթցած է անշուշտ.... Սակայն իր յօդուածը ծանր է.... Մտիկ ըրէ՛, բարեկամուհիս, ամէն ինչ կը համարձակի ըսելու ։

Եթէ երիտասարդն աչքը ինծ դարձուցած ըլլար, անմեղութեանս ամէն գաղտնիքս երևան հանած պիտի ըլլար ։

Կուրծքս սոսկալի կերպով կը սեղմուէր. կը թուէր ինծ թէ մեռնելու մօտ էի ։

Էթիէն յօդուած մը կարդաց զոր՝ ինչպէս լսեցի ետքէն՝ բարեկամներս Թէոփիլոսին տուեր էին ։ Խմբագիրին իմ վրայ չխօսելու խոստումին հակառակ հրատարակեց յօդուածը, համոզուած ըլլալով սակայն թէ օգտակար պիտի ըլլային ինծ այս տողերը, վասն զի ասոնցմով ամէն մարդ և գլխաւորաբար կարտինալը պիտի համոզուէին թէ Պարիզէն մեկնած եմ ։ Յօդուածը յետագայ կերպով գրուած էր .

«Լուր չկայ ամենևին. անհաւատալի բան մ՚է այս... Մարիոն աներևոյթ եղաւ, բոլորովին աներևոյթ եղաւ ։ Իր ծառաներն անգամ չգիտեն անոր ուր ըլլալը ։ Երէկ հաստատ կերպով կ՚ըսուէր մեզ թէ գեղանիներուն այս թագուհին գաւառին մէջ կը բնակի երիտասարդ տղայի մը հետ.... Բայց յարգենք այս սէրը. սուրբ և մաքուր է այն ։ Ինչպէս շատ կիներ, նոյնպէս և օրիորդ Տըլօրմ վերջապէս պիտի ամուսնանայ ։»

— Պիտի ամուսնանա՛յ, ըսաւ Էթիէն. ո՛ր մարդը պիտի ուզէ այս աստիճան անպատուութեան յանձնառու ըլլալ... ։ Պիտի

ամուսնանա՛յ . . . . Մոլութիւնը և անառակութիւնը այսպէս քեր-բականցնե՛լ, փառաբարոյ կնիկի մ'ամուսնուհիի նախիրական անունը տալ . . . . Չէ՛, չէ՛ . . . անկարելի բան է . . . . Բայց ի՞նչ ունիս Մարի, շարունակեց պատկերահանը՝ այն ատեն սարկասէս յուզուիլս նշմարելով.

— Ցաւ ունիմ . . . Հիւանդ եմ, պատասխանեցի տկար ձայնով մը. Անշուշտ յոգնութիւնը . . . այսօր մինչև իրիկուն աշխատեցանք . . . և ատենն ուշ է.

— Իրաւ է, ըսաւ, պատշաճութեան հակառակ է այսքան կեցնալս. Քեզի կը կեցնեմ մինչև հանգստանալդ. պէտք ունիս. . . . Բարէ, բաւական է որ այս տկարութիւնը դժնդակ հետեւանք չունենայ.

Փոքր տուփ Անտոնձայ. երկրաչափ պատկերահանն ալ ինչ կը գուշակէր.

Թերեզային երեսն անդամ խռոված էր. սակայն իր յուզման պատճառ կրնար սեպուիլ այն անհանգստութիւնը զոր բնակարաբար. այլոց տար իրեն հիւանդութեան վիճակս.

Աւելի հաստատ ձայնով մը կրկնեցի.

— Հանգիստ եղի՛ր . . . վրդովուած մ'էր զգացածս . . . լաւացայն եմ, շատ աւելի աղէկ եմ . . . . Բայց աղէկ միայն եկաւ, ի՞նչ կը կարծայիր, Էթիէն, մտիկ չէի ըներ ալ.

— Ո՛հ, ըսաւ, թողունք այս ընթերցումը. այսպիսի բաներ չեն կրնար ամենևին կարևորութիւն մ'ունենալ քեզի համար . . . քեզի համար, Մարի՛, որ այնքան անմեղ, այնքան առաքինի ես . . . քեզի համար, հրեշտա՛կդ երկրիս, որ չես հասկնար թէ կին մ'ինչպէս կրնայ դև ըլլալ . . . . Գիտեմ . . . . Գիշեր բարի, գեղանի՛ Մարիա.

— Քեզ լոյս բարի, Էթիէն.

Երբ դուրս ելաւ, երկու ծունկներուս վրան եկայ և ձեռներս երկինք վերցուցի՝ մրմռալով.

— Ամուսնուհիի անուն չտրուիր անպատիւ կնիկի՛ մը . . . . Էթիէն ինքն ըսաւ քիչ մ'առաջ այս խօսքը, և ես անմեղ չեմ այլ.

Թերեզա քանի մը միսիթարական խօսք ըսել ուզեց։ Ոչինչ ուզեցի լսել. և գացի սենեակս մինակ առանձին, ուր գիշերն 'ի բուն լալագին հեծկլտացի։

Ամենէն յիմարական կեանքս օրերուն մէջ միշտ քրիստոնէական զգացումներ և պատուոյ սկզբունք պահած ըլլալով' անկարգութիւններէս բազմութեան մտքին վրայ հետեւող ազդեցութեան մասին ինքզինքս կը խաբէի։ Կը մոռնայի որ մոլութեան այս կուռքերը, որք առջի օրը կը խնկարկուէին և զոր արեւը չքնաղ պայծառութեամբ մը կը փառաւորէ, հետեւեալ օրն իրենց պատուանդաններէն վար կը կործանին և խայտառակութեան մէջ կը տապլտկին։

Աշխարհիս արդարութիւնն անգութ է, եթէ նաև Աստուած ներէ։ Տիկին Տը Սենթ-Էվրըմոն արդէն հաստատեց ինծ այս ճշմարտութիւնը։

Ափսո՜ս, ափսո՜ս, ուրեմն' երբ այս աշխարհիս խայտառակութեան ճամբան անգամ մը կը բռնենք' պէտք է որ հրաժեշտ տանք ուրիշ ճամբայէ մը քալելու. վերադարձն ալ կարելի չէ. եթէ մեր հոգւոյն ներսը քանի մ'ոսկիի բեկորներ կան, կը պարտաւորի՞ն ուրեմն տղմէն քշուելով տարուիլ....։ Չէ՛, չէ՛. այս չէ՛ իրաւունքը. աշխարհս մեզի կը կործանէ. իրաւունք ունի՞ նաև դատապարտելու։ Կայ երկնային բոց մ'որ ամենամեծ աղտերը կը սրբէ, և այս բոցն է սէ՜րը, ճշմարիտ սէրը....։ Ամեն բան պիտի ըսեմ Էթիէնին... Թող իմանայ թէ ինչ անօրինակ ճակատագրէ մը բռնադատուեցայ անիծից և անպատուութեան այս ճամբուն վրայ վազելու. պիտի լսէ պատմութիւնս, և գութ պիտի ունենայ արտասուքիս վրայ....։ Ո՜հ, իրաւ է, Աստուած իմ, մինչև այսօր չսիրե՛ր էի....։ Միթէ իմս է յանցանքը, եթէ աւելի կանուխ չհանդիպեցայ այս երջանկութեան։ Թո՛յլ կը տա՞ս որ զրկուիմ այս երանութենէն' ստութեան ուրուականը ճշմարիտ երանութիւնը սպառած ըլլալուս պատճառաւ։ Էթիէ՛ն, իմ Էթիէ՛ն, կը սիրե՜մ քեզի....։ Ինչո՞ւ աչքդ կը դարձնես ինէ. քեզի չէի ճանչեր. այս է ահա բոլոր մեղքս... Էթիէ՛ն... այս

իրաւունք ունիս ․ երբեք ամուսնուհիդ մի՛ անուաներ զիս, անարժան եմ այդ անունը կրելու ։ Տարփուհիդ, գերիդ պիտի ըլլամ․․․ բայց գէթ թոյլ տուր ինծ ըսելու թէ կը սիրեմ քեզի․ թոյլ տուր ինծ ապացուցանելու թէ սրտիս մէջ անձնուիրութեան և խանդակաթ սիրոյ ո՛րչափ գանձեր թաքցած են․․․ ։ Յիրաւի, հանգիստ եղիր, միասին պիտի փախինք․ պիտի երթանք աշխարհիս մէջ տեղ մ՚ուր յիշատակին անգամ մինչև մեր քովը պիտի չհասնի․․․ ։ Ես կ՚ըսեմ քեզ, ես կ՚երդնում քեզ թէ երանութիւնը տակաւին հնարին է ։

Եւ հեծկլտանքս կը սաստկանար․ վասն զի վշտին բանդագուշանաց մէջ ինքնին ըսած այս խօսքերս ձայն մը չէին արգիլեր լսելի ըլլալու․ և այս ձայնը կ՚ըսէր ինծ․

«Երբ Էթիէն պիտի իմանայ թէ Մարիօն Տըլօրմն ես դու, զարհուրանօք պիտի նահանջէ՛, և ո՛չ քեզի պիտի չտեսնէ ։»

Այս աղետալի գաղափարին վրայ բոլոր արիւնս երակներուս մէջ կը սառէր ։

Յուսահատութիւնս հասկցնելու համար, հոս պէտք է յիշել երեք ամիսէ 'ի վեր տեղի ունեցող իրողութեանց մանրամասն պարագաները ։

Յիշատակներս զիս յափշտակելով կը տանին, ամենէն եռանդուններս միւսներէն առաջ կ՚անցնին, և թերևս չմեկնուիր սէր մ՚որ այսքան սաստկապէս և այսքան արագօրէն զբաղեց սիրտս ։

Նինօն՝ ինչպէս ըսած էր ինծ՝ շաբաթն երկու անգամ եկաւ տեսնուեցաւ հետս ։

Ապահովիչ չէին այն լուրերը զոր ինծ կը հաղորդէր նէ ։ Րիշլիէօ՝ Պրըթանը երթալու համար Բարիզէն մեկնելէն առաջ ոտք հանած էր իր մասնաւոր ոստիկանութեան բոլոր մարդերը ։ Տէ Թուրնել փողոցին տունը տեսութեամբ կը պահուէր ։ Կը կարծուէր թէ ազատ կամ անապատ տունս պիտի վերադառնամ, և ձերբակալութեանս համար հրամաններ տրուած էին ։

Կ՚աւելէն՝ դքսուհին Պլուայի Ճամբային առաջին իջևաններուն մինչև առաջինը տանելէն ետք երբ ես բերդու կառքս ու ձիերս,

ձերբակալ եղաւ և Հարցափորձի մ՚ենթարկուեցաւ։ Իր պատասխանները կարդինալին զրկուեցան, որ Նանթի մէջ էր։

Երբ տիկին Տը Շըվրէօզին անունն անգամ մը արտուեցաւ այս գործին մէջ, Ռիշլիէօ ամէն բան գուշակեց։ Նամակները գտնելու յոյսը կորեց, և այս յուսաբեկութեան պատճառաւ ան աւելի սաստկացուց զինք պատժելու փափաքը։ Սովորականէն աւելի վախնալու կը պատրաստուէր քանի որ կարդինալը թագուն և մթին միջոցներով կը գործէր ինծի դէմ։

Արքունեաց մէջ ոչինչ կամ խիստ քիչ բան իմացեր էին այս խռովութեան վրայ, և Նորին Բարձրութիւնը չէր ուզեր դէպքը հրատարակել։

Աղաչանացս վրայ Ռէնօն գնաց Սէն-Մօրլէնը տեսնելու որ այն ատեն Նանթէն ետ դարձած էր. այս այցելութեան հետևանքն եղաւ խրատ տալ ինծ որ եթէ կարելի էր երկրորդութեան մութին մէջ պահուիմ։

Երբ Ան Տ՚Օթրիշին պատկերը պարունակող մետայլեօնը տիկին Տը Շըվրէօզին նամակներուն հետ միասին արկղիկը գտեր էր, Նպատակ ունէի բանակցիլ կարդինալին հետ և բացարձակ ներում մը փոխարէն իրեն ետ տալ այս թանկագին բանը։

Սակայն Սէն-Մօրլէն բոլոր ոյժովը դէմ դրաւ այս նպատակիս։

— Ռիշլիէօ պիտի խոստանայ, ըսաւ, քաղաքագէտը։ Բայց եթէ կ՚ուզես գիտնալ թէ ինչ կերպով կը բռնէ իր խոստումը, հարցուր Շալէին գերեզմանին։

Վերջապէս Սէն-Մօրլէն կը կարծէր թէ կը պատշաճէր ամենևին կենդանութեան նշան չտալ։ Իր խօսքին նայելով, կը պատշաճէր մանաւանդ չհեռանալ մայրաքաղաքէն ուր մանրամասնին յուզարկութիւնները ապարդիւն մնացեր էին մինչև այն ատեն։

Գաւառներուն և օտար երկիրներուն մէջ անգամ կը փնտռտէին։

— Մարիօն, շարունակեց Սէն-Մօրլէն, Ռիշլիէօյին բարկութիւնը մեղմելու համար իր յոյսը կը պատրաստէր ժամանակին վրայ դնել։ Ո՛րևէ ընդհանուր պարագայ մ՚ուր կը յուսամ թէ կարդինալին քաղաքականութեանն իրական և նշանաւոր ծառայութիւն

Աշխարհիս մէջ ալ մէկ մարդ կար միայն։ Այս մարդը զիս միայն կը սիրէր, ինծի համար միայն կ'ապրէր։ Հոգեզրաւ և անպատում հիացումով մը մտիկ կ'ընէի մանկութեանս բերկրութիւն բերող անարատ սիրերգութիւնները։

Էթիէն հեռու կը սիրաբանէր այնպիսի ձևով որուն նմանը չլսուած էր բնաւ։

Երբէք չլսեր էի որուն այս զմայլելի երաժշտութիւնը։ Աշխարհիս որ և է շշուկը, որ և է մտքի թարթափում այս երաժշտութեան ականջս հանիլը չէր արգիլեր. ափսո՜ս, ի՜նչպէս ինքզինքս չխաբէի. ի՜նչպէս կրնայի շուրթերուս մօտեցող արբշռութեան բաժակէն խմելը մերժել. անցեալոյն բոլոր տխուր խորհուրդները ներկային այս հրաշալի ճառագայթին առջև աներևոյթ կ'ըլլային։ Ուստի անհուն եղաւ յուսահատութիւնս երբ չորս կողմս նորէն խաւարիլը տեսայ։

Երկինքը նշմարեր էի, և ահա խօսք մը դժոխքն իջեցուցած էր զիս վերստին։

«Այո՛, երբ Էթիէն անունս իմանայ, զարհուրանքէն սարսռիլը պիտի տեսնեմ։»

Քանի որ այսպէս է, պէտք չիմանայ անունս... ոչի՛նչ կ'ըստիպէ զիս ինքզինքս իրեն յայտնելու, ոչինչ կը բռնադատէ զիս իր ատելութիւնը և արհամարհանքը առ. ոչինչ գրելու։ Եթէ մեղք գործեցի, տէր Աստուծոյ և իմ գիտնալու բանն է։ Անծանօթ մնացած բան մ'էութիւն ունի՞. ո՛չ։ Էթիէն զիս անմեղ և սրբասուն կը կարծէ. ինչո՞ւ իմացնեմ անոր թէ անիծուած և նուաստացած եմ. ինչո՞ւ իր պատրանքը և միանգամայն իմ երանութիւնը միասին կործանեմ։

Այս աղետալի տրամաբանութեան հետևութիւնները իսկոյն ընդարձակելով ապագայիս մէջ ինչ կերպով վարուելու խորհուրդ մը կազմեցի, և այսօր խղճի տագնապով կը յիշեմ որ եթէ խղճիս առաջին դրդումին վեհանձնաբար հնազանդած ըլլայի, անդարմանելի աղետից առաջքը առած կ'ըլլայի։

Հետևեալ օրն առտու Էթիէնը չտեսայ։

«Գեղանիդ իմ Նինոն,

«Նամակս ընդունելէդ անմիջապէս ետք բարեհաճէ՛ փութալու ակնատուոր անձ մ'որ կենացը մէջ զիս տեսած չըլլայ. զիս չճանչելն անհրաժեշտ է։ Զինքը Սէնթ-Անթուան փողոցը պիտի ղրկես երկու հազար թալերու և յետագայ պատասխանին հետ զոր կը համարձակիմ քեզ թելադրելու.

«Ի շնորհս երիտասարդ պատկերահանին [illegible] տնօրէնը ընդունեցաւ. Մարի։ Ամուսինս պատժիչ մ'է, չորս տարիէ ի վեր պաշտպանելու հետ [illegible] համաձայնին.

«Գիշեր բարի, հոգիս. մօտաւորապէս այցելութեանդ միջոցին քանի մը մանրամասն պարագաներ պիտի ըսեմ քեզ։»

Գիշերուան մութը կ'սկսէր տիրել։ Նամակը Թերէզային հետ ղրկեցի և Էթիէնին հետ մինակ մնացի։

— Մարի, կը գոչամ, մոռնալով երիտասարդը՝ խիստ յուզուած։ Ի՞նչ պիտի ըսես ինծի։

— Էթիէ՛ն... չեմ ուզեր կինդ ըլլալ։

Էթիէն առջ ելաւ։

Այնուհետեւ վրայէն երկու արտասուք սահեցան, և լսեցի անոր յետագայ պատասխանը՝ տալը, այնպիսի վշտաբեկ ձայնով մ'որ հոգւոյս մինչև խորը թափանցեց։

— Չե՛ս ուզեր... Եւ ինչո՞ւ համար, Մարի։

— Վասն զի կը սիրե՛մ քեզի, գոչեցի թեւերովս անոր փաթըթելով։ Երբեք պիտի չհաւանիմ որ մեր սէրը Թաղուի ամուսնութեան մէջ, որ սիրոյ պատանքն է։ Սոսկալի՛ օրինակներ տեսայ... և եթէ օրին մէկը՝ սէրս մեռնելու, այն օրն ինծի հետաքրքրելի շղթայով մը կապուած պիտի չգտնէ՛։

— Մարի՛, երդումս ուտելու կարո՞ղ կը կարծես զիս։

— Ինչ և է, այս է որոշումս. նայէ՛ որ կ'ընդունիս թէ չէ ընդունիր։

— Աստուա՛ծ իմ, Աստուա՛ծ իմ, չե՛մ համարձակիր քաշուելու, գոչեց հոգեբոյր երանութեամբ, առջեւ ծունկի վրայ դա-

# Է

Հետևեալ օրը Նինոնին պատասխանը ընդունեցայ։ Պատասխանին ստորագրութիւնն էր. Տ'Անթրակ Պարոնուհի։

Ուստի Էթիէննին իմաց տուի թէ Գ. Տ'Անթրակ Պարոնը պիտի գայ առնելու Տը Լէտիկիէր սպարապետին ժառանգորդներէն մերժուած պատկերը։

Իրաց վայելչաձև ազնուական մը շուտով գերբաւի սանդուղէն վեր ելաւ, որ մեր սենեակները կը տանէր։ Հիացաւ պատկերին առջևը, շատ գովեստներ տուաւ Էթիէննին և երկու հարիւր լիտոն լուիզ համրեց անոր։

Երիտասարդ նկարագէտին այսքան ոսկի տեսնելն առաջին անգամն էր։ Քիչ մնաց որ գիրկը քաշելով պիտի գգուէր առատաձեռն պարոնը։

Երբ լմնցաւ սակարկութիւնը, այս պարոնն ինձ նայեցաւ շատ, և նայելէն առջի անգամ քիչ մ'անհանգստութիւն զգացի։ Բայց շուտով հանդարտեցայ, Նինոն չկրցած էր անխորհրդապահ ըլլալ։ Պարոնն անշուշտ ներա գեղեցկութեան վրայ զարմացած մ'էր, և պարագան պատեհ առիթ կը տայէր նաև ինծի վրայ հիանալու։

Շատ գոհ էի Էթիէննին ուրախութենէն։

Երիտասարդ պատկերահանը կարծեցեալ պարոնուհիին նամակը կարդացած էր. տէրը բոլորովին պարզ երեցաւ իրեն։ Առջի օրուան շփոթութիւնս և անուանութեան նկատող գաղափարներուն տարօրինակութիւնն ամենափոքր կասկած մը չտուին Էթիէննին։

Սիրոյ աչքը կապուած է։ Եթէ երբեմն կ'ուզէ վեր ընել կապը, վեր կ'ընէ այն վայրկեաններուն մէջ ուր աւելի աղէկ դարձ մը չունենար զլացելու։ Հետևաբար որոշեցի բնաւ անզգած չթողուլ Էթիէննին սիրտը։ Ինծի համար շատ դիւրին էր այս բանը

քանի որ ես ալ իբր սիրով արբշիռ կը սիրէի զինքը, սէր արուն նորանոր ապացոյցները կ'ընդունէր ան ամեն օր։

Այն օրէն սկսեալ Թերէզա շատ նեղեց մեզի։

Ըսի սպասուհիիս որ մեկնի, և գիշեր մ'իր շրջագայութիւններէն ետ դառնալով իմաց տուաւ մեզ թէ գաւառի մը մէջ բաւական աղէկ ամսականով հոգաբարձուհիի պաշտօն մը գտած է։

Էթիէն սաստիկ յորդորեց Թերէզան որ մեկնի։

Քոյրս իր ծրարները պատրաստեց, և մինչև Բօնթուազի կառատանը ընկերացանք իրեն. սակայն Թերէզա Բարիզի շրջակայքէն դուրս ելնելով ցամաքն ելաւ, արուարձաններէն դարձաւ և հասաւ Տէ Թուրնել փողոցն ուր Կրասէն՝ բնութեամբ քիչ մը նախանձոտ ըլլալով զինքը վերստին տեսնելուն չզժգոհեցաւ։

Թերէզային առաջին հոգն եղաւ երթալ աղաչել օրիորդ Տը Լանգլօն որ իր գիւղացիի լաթերը մեկուսի նետէ և դադրի ինծ այցելութիւն ընելէ մինչև նոր կարգադրութիւն մը։

Նինօն հասկցաւ և ալ չեկաւ։

Երիտասարդ սիրողս իր վրձինը կը մոռնար։ Ժամանակը մէկզմէկ սիրելով, մեր սէրը իրարու ըսելով, դարձեալ ըսելով և կրկնելով կ'անցունէինք։

Զրկումներով ապրող ամեն անձանց պէս Էթիէն կ'երևակայէր թէ երկու հարիւր յիսուն ոսկին անսպառելի էր։ Խենդութիւններ կ'ընէր. զարդեր կը գնէր ինծ և մեր մանսարդեան սենեակները կը զարդարէր այնպիսի վայելչաձև կահերով, որք չէին յարմարեր տեղւոյն անշքութեան և փոքրիկ տարածութեան։

Ներկուած փայտէ խշտեակները, հաշմած սեղանները, կաղ աթոռակները, պատերուն վրայի անշնորհ նկարներն ամօթահար գացեր պահուեր էին տանտիրուհիին վերնայարկին մէջ։ Մեր պատուհաններն ամեն տեսակ ծաղիկներով զարդարուած էր, որոնց մէջէն կը խաղար մեր սպիտակ աղաւնին։

Էթիէն մեր սիրոյ դրախտը կ'ուզէր զարդարել և ծաղկաւետել։

Նախ թող տամ որ ըսէ ուզածը։ Ապա գուշակելով թէ իր քսակը պարպուելու մօտ է, հրամայեցի որ սկսի աշխատիլ և ինձ յանձնէ գանձային վարչութիւնը։

Հնազանդեցաւ։

Իր քովը կ'աշխատէի։ Մարքի թաղին կիները կը գային և երեք բիսթօլ* տալով իրենց պատկերը քաշել կը տային. բայց շատ անգամ միայն մէկ բիսթօլ տալ կ'ուզէին, և երբեմն ալ չէին ուզեր ընդունիլ պատկերները, պատրուակ բռնելով թէ անոնք ինձ կը նմանին։

Իրենց համար արդէն շատ դժնդակ բան մը չէր պատկերներուն ինձ նմանիլը։

Սակայն Էթիէն՝ սիրահարական զբօսանաց տալով ինքզինքը և իր կամքին հակառակ իմ պատկերս գծելով՝ ալ ամենեւին յաճախորդ չունեցաւ։

Ստիպուեցայ Նինօնին գրելու որ քիչ շինծու գնորդներ ղրկէ։

Յայտնի է թէ մէն մի այցելութիւն քսակիս վնասովը տեղի կ'ունենար։ Երկու հարիւր յիսուն լուիճին ետ տրուած էր գեղանի դրացուհիիս։ Թերեզան հետը տարած էր այս գումարը, որ նոր յանձնարարութեանց գինը վճարելու կը ծառայէր։

Երանութիւնը յանդգնութիւն կը տար ինձ։

Կսկսէի դուրս ելնել և թաղին մէջ ժուռ գալ. մանաւանդ թէ ստիպուած էի պաշարքին գնելու։ Կողովը թևիս տակն առած տրոտելս տեսնելն ով որ էր. պզտի քաղաքացի կնկան մը, բարեբարոյ և շնորհալի անտեսուհիի մը կերպարանը ունէի։

Րիշլիէօ նոր մեկնած էր Բարիզէն որպէս զի Րօշէլի ապստամբները հնազանդեցնելու ջանայ ինքն անձամբ։

Անոր բացակայութիւնն ևս աւելի համարձակութիւն տուաւ ինձ։

Էթիէն և ես ստէպ շրջագայութիւններ կ'ընէինք։ Սէնթ-Ան-

* Դրամ մը որ տասնումէկ ֆրանք և քանի մը սու կ'արժէր այն ատեն։

Ծ. Թ.

Թուան արուարձանը կ'ելնէինք, քաղաքին շրջապատէն դուրս կ'ելնէինք, դպրոցի հանդիստ վայելող աշկերտներու պէս դաշտերու մէջ կը վազվզէինք, և կ'երթայինք աներևոյթ կ'ըլլայինք Վէնսէնի անտառին տերևակալ ըմբէթներուն ներքև:

Այս՝ անցեալը շատ երկար տեւող առանձնակեցութեան մը վտանգը ինձ ցոյց տուած ըլլալով՝ սատանութեամբ կրցայ համոզել Էթիէնը որ իր բարեկամներուն մէկ քանին ընդունի:

Սխրահար մարդը միշտ բերկրութիւն կ'զգայ իր տարփուհին ուրիշին ցոյց տալով. ուրիշներուն սքանչացումն անոր սիրուէն եռանդներուն սնունդն է:

Էթիէն շուտով ներկայից ինձ պատուական, բոլորովին կլորակ, վարդագոյն, զուարթ և տակաւին երիտասարդական դէմք մը, թէև այս դէմքը ունեցողին տարիքը յիսունէն աւելի ըլլար:

Անունն էր Դանիէլ Տիւ Մութիէ, որ երևելի մանրանկար պատկերահան մ'էր: Լուվրի մէջ կը բնակէր ան: Ամենէն առաջ Անրի Դին պաշտօնեան՝ Սիւլի՝ ունեցած էր Ճարտարապէտներուն Լուվրի վերնայարկներուն մէջ կորսուած պզտի խորշեր տալու գաղափարը, և քսան տարիէն 'ի վեր Դանիէլ այս խորշերուն մէկին մէջ կը բնակէր:

Սիրօղս իր պատկերահանութեան առաջին դասերը այս գիրուկ խնդայողէն առած էր:

Հաղիւ ութ օրէն 'ի վեր կը ճանչէի Դանիէլը, և արդէն հին բարեկամներու պէս կը տեսնուէինք: Գիշեր մ'առաջարկեց մեզ ցոյց տալ իր Լուվրի բնակարանը:

Առաջարկութիւնը շատ վախ տուաւ ինձ:

Բայց Էթիէն ևս իր վարպետին հետ թախանձեց որ ընդունիմ առաջարկութիւնը, և մերժում մ'արդարացնելու որ և է ընդունելի պատճառ մը չունէի: Սակայն ըսի անոնց թէ դիմակ մը պիտի դրուիմ՝ արքունիքի մարդկանց անզգոյշ հետաքրքրութեան նշաւակը չըլլալու համար:

Այս երկու պարոններուն բոլորովին բնական երևցաւ զգուշութիւնս, և մեկնեցանք:

Դանիէլ՝ մեզի իր սենեակը տանելով՝ անցաւ ճիշդ այն փողերքէն, որոնց ծայրն էր կարտինալին խուցը: Մարսուռ զգացի խորհելով թէ ատեն մը կրնար ինձ հանդիպիլ այս փողերուն մէջ, զիս ճանչել Էթիէնին տան մէջ և ըսել անոր թէ ամենևին չէի ինչ որ Էթիէնին կ'երևայի ըլլալ:

Հասանք պատկերահանին սենեակը, խիստ այլանդակ բնակարան, որ իր զուարթ և կծու բնաւորութիւնը կը յայտնէր:

Այս սենեկին շեմին վրայ մէկ զոյգ մեծ եղջիւր կախուած էր յետագայ վերնագրով.

Վ—ր դրէ+ ցերէնները:

Դանիէլ պալատին բոլոր բնակչաց ծիծաղաշարժ պատկերները ունէր, Լուի ԺԳէն և կարտինալէն սկսեալ մինչև չնապահ սպասաւորն որուն հետ կ'զբօսնար թագաւորն իր պարապ ժամերուն մէջ, և մինչև խոհանոցին ծառան որ անուշեղէն շինել կը սորվեցնէր անոր:

Այս ամեն երեսները պատերուն վրայ կը ծամրտկուէին, և ցնորական օթոց մը կը կազմէին:

Ասոնց մէջ շատերը ճանչեցի, նա մանաւանդ Բօզդրուային պատկերը, և չկրցայ զարմացման աղաղակ մը զսպել երբ ծեր Տիւ-Մէնիլ-Էսբրի ասպետին զաւեշտանկարին տակը յետագայ երկու տող ոտանաւորը տեսայ, զոր միջակ կերպով Դանիէլ հիւսած էր, և որք պաշտողներուս հաւատարմագունին տրամալի վախճանը կ'իմացնէին ինձ.

Սկսաւ ամեն ինչ, բայց ոչինչ աւարտեց,
Սիրո՛ւն մարդ. իր վերջին լոկ շունչը լմնցուց:

— Մարի, յուզուած ես, ըսաւ Էթիէն ինձ մօտենալով.

— Կը ճանչեմ այս տիկինը, թոթովեցի՝ ուրիշ պատկեր մը ցոյց տալով որ բարեբաղդաբար Բօզդրուային պատկերին մօտ դրուած էր. կը թուի ինձ թէ նորա համար կար կարած եմ:

— Տը Շըվրէօզ դքսուհին է ան, ըսաւ Տիւ Մութիէ, և ահա իր ամուսինն ալ . . . մարդերուն ամենէն աւելի այլանդակօրէն ձանձի՛րը . . . : Անընդհատ կը չարչարէ մեզի, պաշտօնակիցներս և զիս: Ես և ուրիշ եօթը պատկերահան Լուվրի մէջ կը բնակինք: Դուքսը մեր ամեն մէկին իր պատկերը ապսպրած ըլլալով, և ամեն կողմէն աղեղ գտնելով ինքզինքը, մեզի ամենքս ալ առանց խտրութեան Նեբէկաքար անուանեց: Քինքը պատժելու համար եղջիւրներ կախեցի դուռէս, և ամենէն շատ իրեն կը պատկանի վերնագրին խրատէն օգուտ քաղել: Արքայական անտառներուն մէջ քիչ երէ կը ճանչեմ որ անորմէն աւելի աղէկ եղջիւրաւոր ըլլայ:

Էթիէն Տիւ Մութիէին արմուկը մշտեց, և նայուածքով մը ջանաց հասկցնելու անոր թէ այս կատակներէն կը խրտչէր բնական անմեղութիւնս:

Առանց խռովելու չէի կրնար լսել այն անձանց վրայ խօսուիլը, որոնց առենօք հանդիպեր էի ընկերութեանց մէջ:

Դանիէլ առաջարկեց ինձ մանրանկար պատկերս գծելու սկիզբ ընել: Իր աշկերտան այս տեսակին մէջ անոր չափ յաջողակ չըլլալով շատ պիտի ուրախանայ, կ'ըսէր, պատկերս մետայլեոնի մը մէջ ունենալով: Չուզեցի կենալ՝ յանկարծահաս ակարութիւն մը պատրուակ բռնելով, և չհաւանեցայ իր փափաքը կատարելու, վասն զի պատկերահանին այցելուներէն ճանչցուելու սաստիկ վախը կը կրէի:

Էթիէն մեղմիկ ամբաստանեց զիս իբր քմահաճութիւն ունեցող կին:

Խօսք առաւ հետեւեալ օրն իր վարպետին բերելու Մարէի Թաղին կիներէն մերժուած պատկերներուն մին, որմէն Տիւ Մութիէ կրնար ճիշդ նմանութիւն մ'առնել, քանի որ անձամբ չէր ուզեր կենալ:

Այսպիսի ամենարժանական բանի մը դէմ դնելով մատնուելու վտանգին կ'ենթարկուէի: Պարտաւորեցայ լռել և անհանգստութիւնս պահել:

Սակայն, բա՛րէ, գժբաղդութիւնս չէ թէ այս այլ ուրիշ կողմէն պիտի հասնէր։

Սիրահարքս թևին կռթնելով և պատկերահանին սենեակն այցելութիւն ընելէս սաստիկ սրտմտելով Սէնթ-Անթուան փողոցը վերադարձայ. կը զղջայի Դանիէլը մեզ մտերիմ ընելուս։

Շուտով երջանկաւէտ դէպք մը մոռցնել տուաւ ամեն վախերս և Էթիէնին սիրուիլ պահանջելու նորանոր իրաւունք տուաւ ինձ։ Մայր էի։

Ո՛ մայրութեան նուիրական և առաջին զգայութիւններ, ինչպիսի զմայլումներու ծնունդ կը տաք. ինչպիսի ուխտներով կը համակէք հոգին.... Ո՛ Աստուած իմ, անպատուութեամբ աղարտած ըլլալս ներեցիր ինձ. անցեալն ա՛լ էութիւն չունի, և այս զաւակն ապագային համար ուրախութեանս նուիրական առհաւատչեայն է....։ Փա՛ռք քեզ, Տէր իմ, փա՛ռք քեզ։

Էթիէն ուրախութեամբ կը յափշտակուէր։ Արդէն ինձ կը յայտնէր իր ունեցած նպատակները այն սիրեցեալ էակին նկատմամբ որուն կ'սպասէինք։

Այս դէպքին վրայ ամեն այցելութիւն ձանձրալի եղաւ մեզ, և օրին մէկը մեր Սէնթ-Անթուան փողոցին մանսարդեան սենեակները թողելով Վէնսէն գացինք և բնակեցանք վարձու բռնուած տնակի մը մէջ որ սիրական Ճեմարանին մօտ էր բոլորովին։

Հոն մինակ, բոլորովին մինակ կը խօսակցէինք մեր երանութեան վրայ։

Երբ անտառին պողոտաներուն մէջ ժուռ կը գայինք, Էթիէն մէն մի քայլս կը հսկէր. եթէ կարենար, ճամբուս մանր մունր քարերը յօժարութեամբ մէկուսի պիտի դնէր. կը վախնար մեր գանձին համար։

Հազար անգամ մի և նոյն բանը կ'ըսէինք իրարու, անընդհատ կը կրկնէինք այն զմայլելի սովորական բաները, զոր անտարբերներն առանց ժպտելու չեն լսեր բնաւ, և որք սակայն նոր հարս ու փեսայի սիրտը բախել տալու մասնաւոր յատկութիւնը ունին։

— Մարի՛, կ'ըսէր Էթիէն, աղջիկ մը պիտի տաս ինծի։ Եւ մազերդ, փողփողուն ճակատդ, մեծ ու պայծառ աչքդ պիտի ունենայ։

— Կը կարծե՞ս, կը գոչէի. ինծի կը պատկանի զոհողութիւններ ընել քեզ, և ես անպատճառ կ'ուզեմ աղուոր մանչի մը մայրն ըլլալ։ Քու մելամաղձային և խորհուն կերպարանդ պիտի ունենայ ան։

— Ամենեւի՛ն. քեզի համար աղջիկ մը կ'ուզեմ։

— Քեզի համար տղայ մը կ'ուզեմ։

— Բայց աղջիկ մը տնական գործերու մէջ քեզ պիտի օգնէ, Մարի, մինչդեռ տղայ մը սաստիկ պիտի զբաղեցնէ քեզի.... վարտիքը պիտի խզտէ...։

— Աւելի՛ աղէկ. պիտի կարկտեմ վարտիքը։

— Պատկերս պիտի մրոտէ։

— Է՛հ, ո՛չ ապաքէն պէտք պիտի ըլլայ որ պատկերահանութեան դաս առնու։

— Աղջիկ մը պիտի ըլլայ, կ'ըսեմ քեզ։

— Ո՛չ, պարոն, ատի յամառութիւն մ'է քու կողմէ, և տղայ մը պիտի ունենաս, գիտնա՛ս։

Արդ այս սիրուն վէճերը միշտ համբոյրներով կը վերջանային։

Օր մը դարձեալ վէճ մ'ունեցանք. բայց այս անգամուանը շատ աւելի սաստիկ ըլլալով կրկնակի հաշտութիւն մը կը պահանջէր. ուստի Էթիէն հետզհետէ երեք կամ չորս անգամ պագաւ զիս՝ առանց նշմարելու մարդերու և կիներու ընկերութիւն մ'որ մեզմէ քանի մը քայլ անդին կաղնիի մը ներքև կը ճաշէին։

Աղմկալի քրքիջներ հաստատեցին մեզ թէ նշմարուած էինք։ Կարմրեցայ և ամչցայ։

Էթիէն թեւն առաւ զիս, և պատրաստ էինք մօտակայ արահետի մը շուքին ներքև աներևոյթ ըլլալու, երբ յանկարծ կիներուն մին վազեց, մեր ճամբան կտրեց և գիրկս նետուեցաւ՝ գոչելով.

— Բայց ո՛չ, չեմ սխալիր . . . նէ՛ է, ճիշդ նէ՛ է ։

Սիրտս սոսկալի ճնշումով մը սեղմուեցաւ ։

Առջեւս կը գտնուէր Լիզէթ, Գամիւզարին անարժան կնիկը ։ Լիզէթ որ նուաստութեան և անառակութեան նշանները կը կրէր յոտից ցգլուխ ։ Լիզէթ որ ժամանակէն առաջ թառամած էր, և որուն անստոյգ քայլերը կը հաստատէին թէ մինչև գինովութեան ապշութիւնն իջած էր այն օրը ։

Վտանգին մերձաւորութիւնը թոյլ չտուաւ որ նուաղիմ ։

Միայն կիսով չափ մերժեցի այս պժգալի կնկան համբոյրները, և ցած ձայնով արագօրէն ըսի ։

— Յանո՛ւն Աստուծոյ, անունս մի՛ տար, թէ ոչ կը կործանիմ ։

— Իրա՞ւ . . . սիրելի՛ բարեկամուհիս ։ աղէկ ըրեր ինձ ազդ ընելովդ . . . ։ Ի՛նչ անակնկալ բաղդաւորութիւն ։ տասը տարիէն ետք իրարու հանդիպի՛նք . . . վասն զի Սէն—Վիգթօր արուարձանին արկածէն 'ի վեր քեզի չտեսած եմ ։ Այն ատենակ զինուորները ապուշ նշանածիդ հետ զիս Շաթըլէի ծակը նետեցին . . . ։ Ի՛նչ ապուշ . . . ե՛ւ երբ կը խորհիմ թէ ըրի՛կ ըրի ինձ այդ բանը . . . բայց հանդիստ եղի՛ր, շատ նեղութիւններ կրել տուի իրեն ։ վրէժդ լուծուեցաւ . . . ։ Հա՛, հա՛, երեւակայէ՛ անգամ մը . . . ։ Նախ, սիրելիդ իմ, էշի կտոր էրիկիս տունը տեղը փլեցի ։ մէկ փուլը անգամ չմնաց . . . վասն զի անձը իր ստակին համար առած էի ։ Ինչպէս գիտես, կ՚ուզէի արքունիքը վերադառնալ և ամեն մարդ բռնադատել զիս ճանչելու Անրի Դ-ին աղջիկը . . . ։ Բա՛հ, Պարոն եղբայրս զիս խառնակչի մը տեղ դնելով արտաքսել տուաւ . . . ։ Ի՛նչ դժուար ընթացք ։ Յարդուպարդիս ծախուցը համար քանուհինգ հազար Ֆրանք վաստկած ըլլալով ։ ո՛չ էրիկս և իր անշնորհ քիթը մնացած էր ինձ . . . ինչ աղուոր բաղդի վիճակիր եմ եղեր ։ Բարեբաղդաբար, ինչպէս գիտես անշուշտ, գեղեցիկ բարեկամներ ունէի պահնորդաց գունդին մէջ . . . բոլոր գունդն, պզտի Մարգրիտդ անգամ ուզեց յարաբերութիւն հաստատել հետս . . . ։

Հա՛, հա՛, հա՛, Գամիւզար քի՛չ մնաց խոհանոցի դանակը առնոր կոկորդին մէկ կողմէն միւսը պիտի մխէր։ Դաշտի արկածի մը ապաւորութեամբ գրաւուած կը գտնուէր տակաւին...։ Այո՛, առջի օրը, պարտէզին հովանոցներուն տակը խիստ եռանդապէս կը խօսակցէի Տ'Օպինեէին հետ, երբ վրայ հասաւ սրիչ մէկ ... բարեկամս, Տը Մարինեօն տապէտը։ Յասարկի բարեկացան՝ առնելով թէ ինչ առատ էր մեր խօսակցութիւնը, Ուստի, ինչպէս կրնաս երեւակայել, սկսան մենամարտութիւն ընել։ Գամիւզար առանէն լսեց սուրերուն շաչիւնը։ ապուշ վազելով եկաւ, կռուողները զատեց, խաղաղութիւն և հաշտութիւն քարոզեց անոնց, և սաստեց որ պարզնուին... սեսնողը խնդալէն կրնա՛ր ճայթիլ։ Երկու ոսոխները քահ քահներով կը խնդային։ Ես ալ գերերջանիկի մը պէս անոնց օրհնանքին կը հետեւէի, և զուարճալի բան մ'երեւցաւ ինձ հաշտարարին իմացնել մենամարտութեան պատճառը... Հետեւաբար հետեւեալ օրը՝ քի՛չ մնաց՝ Սէնթ-Էվրըմօն մճարած պիտի ըլլար միւս ամենուն համար.. .։ Հա՛, հա՛, խե՛ղճ Մարգըրիտ....։ Է՛, ինչ կ'ըսես, զուարճալի չէ՞ այս բանը։

Բա՛րէ, Լիզէթ կրնար երկար ատեն շարունակել այս տեսակալէ խօսքերը։ Անհնարին խռովութեամբ մը համակուած էի։

Քսան անգամ զինքը ընդմիջելու փորձ ըրի. սակայն խօսքերը շուրթերուս վրայ անհետ կ'ըլլային։ Էթիէննին երեսը առնելով բոլոր արիւնս վախէս կը սառէր երակներուս մէջ։

Էթիէն մերթ արձանէ մ'աւելի ճերմկած էր և հա՛ն՝ մեր առջև՝ կը նայէր և մտիկ կ'ընէր անհնարին շփոթումով մը։

— Սիրելի՛ս, ըսի մարած ձայնով մը, տունը դառնանք... կ'երդնում թէ տկարութիւն կ'զգամ, և Տիկինը պիտի ներէ ինձ իրմէն այսքան շուտ բաժնուիլս։

— Ամենեւին, բնաւ պիտի չներեմ... կ'առնէ՛իր. դեռ հազարումէկ բաներ ունինք ըսելու։ Կը տեսնեմ որ... Պարոնը սիրող է... շատ գեղեցիկ մարդ...։ Չպիտի ուզէ երկու հին բարեկամուհիները իրենց փոխադարձ դէպքերը քիչ մը պատմելու արգիլել։

— Անշուշտ չեմ ուզեր, ըսաւ Էմիլէն տարօրինակ հանդարտութեամբ մը։

Ապա դէպ իմ կողմս դարձաւ։

— Մարի, զգուշացած է պարզապէս այն վնասներէ գլխու պտոյտներուն մէն որք յղութեան միջակէտէ՝ ի վեր սովորաբար կը պատահին քեզ։

— Ի՜նչ, գոչեց Լիզէթ, չէ՞ որ ես . . . կը շնորհաւորեմ ուրեմն քեզ . . . . Է՛, խնդ նայեցէք, պոչէն խօսքը ուղղելով այն անձերուն որոնցմէ զատուած էր մեր քովը գալու համար, բաժակ մը խմելիք. շուտ բերէք . . . . Երբ ես ալ այդ կացութեան մէջ կը գտնուէի, սիրելիդ իմ, տկարութեանցս դէմ դարմանս այս էր։

Ի նամիր աղերսալի նայուածներ կ՚ուղղէի Լիզէթին. չէր հասկնար միտքս և միշտ կը շարունակէր։

Ամօթին և վշտին ծանրութեան ներքև ճզմուելով պաղատային սեպուերին վրան ընկայ։

Նոյն միջոցին Լիզէթին բարեկամները՝ մեզ մօտելու համար ձգեր էին կողմին որուն ներքև հաւքուած էին։ Այս մարդկանց տեսքէն միայն կը գուշակուէր անոնց ընկերային ու գարշելի դասուն վերաբերիլը։ Սոորին կարգի անառակներ և հասարակային բոզերէ բաղկացեալ այս խումբն սկսաւ Էմիլէնին դէմ կատակել այն լիաշութեն համբոյրներուն նկատմամբ զոր պահ մ՚առաջ ինձ կը տար։

Գարշելի անձ մը գինետունի բաժակով մ՚ուղից օղի տալ ինձ։

Պժգումով ետ հրեցի զան։

Երիտասարդ պատկերահանը կը ժպտէր, բայց այս ժպիտը տարտուռ կը տար։

— Աղէ՛կ, աղէ՛կ . : . լռութի՛ւն, ըսաւ Լիզէթ իր ընկերներուն։ Կրնաք խըմէն առաջ ձեր տեղը դառնալ. հիմակ ես ալ պիտի գամ։

Ապա սեպուերին վրայ քովս նստաւ։

Մնացինք Էմիլէնին հետ, որ ուսքի մը կը կենար վշուհատ և տխուր։

— Կարծեմ կատակեմ, կրկնեց Լիզէթ, այնքան Ճարպիկ խաղեր խաղացի այդ Թշուառ Գամփռչարին...

— Չէ՛, չէ՛, ո՛չ խօսք մ'ընդամ չեմ ուզեր ըսել, գոչեցի ցասմամբ. Մեկնինք, Էթիէն... կ'աղերսեմ քեզի, մեկնինք.

— Կառավար մէկ մը... կ'ուզես երթո՞ւմ քաղէն...։ Անէ՛ծք։ Բայց քաղաքական արհամարհոտ և աչքաբաց կատարող կին մ'եղեր ես, պզտիկ շուարիկ....։ Խաչոր տեսնողը կարծէ թերեւս թէ անմեղիկ կոյս մ'ես։ Եթէ հիմակ որբուհի մ'ըլլալու քմահաճոյքն ունիս, պէտք է ըսել... որպէս զի ծնողքներնիս ալ ողջ ըլլան։

Նոյն միջոցին յուսահատական որոշում մ'ըրի։

— Բարեկամ, ըսի Էթիէնին, իրաւ է որ այս կնիկը տեսած եմ առաջները... ատեն մ'ուր պատանութիւնն և անփորձութիւնը յանցանք գործել տուին ինծ։ Այս ժամուս այն յանցանաց ապաշխարանքը կը կրեմ դառնապէս....։ Եկո՛ւր, եկո՛ւր։ Առաջի Աստուծոյ կը խոստանամ ամեն բան ըսել քեզ։

— Այս կնի՛կը, գոչեց Լիզէթ քթիս դպնալու չափ մօտէն խօսելով. անգամ մ'ալ ըսէ՛ այդ խօսքը։ Ինծի ակնարկելով «այս կնիկը» ըսիր... բայց միթէ չես վախնար։

Սարսափով ընդմիջեցի նորա խօսքը։

— Ների՛... քեզի նախատելու միտքով չըսի ամենեւին...։ Սակայն խօսքերդ և կերպերդ ամօթութիւններէն այնքան հեռու են...

Եւ խիստ ցած ձայնով շարունակեցի.

— Եթէ կը հաւանիս լռելու, վաղը՝ հոս՝ այս ժամուս.... քեզի հարստութիւն մը պիտի պարգեւեմ։

— Ինչո՞ւ ականջէն կը խօսիս, հարցուց Էթիէն տարտամ լի ձայնով մը։

— Հարստութի՛ւն մը, կրկնեց կամաց մը Թշուառական աղջիկը.... Այո՛, կը յիշեմ... ըսին ինծի թէ հարստացած ես, այդպէ՞ս է, Մարիօն։

— Մարիօ՛ն, մռմռաց երիտասարդ պատանեկրահանք։

Էթիէն ձեռքը կուրծքին վրայ դրաւ և սարսափահար նայուածքով երկար ատեն ինծի նայեցաւ։

խորքին աղաղակ մ՚արձակելով մարմնոյն վրան ընկաւ մեռելատիպ։

— Ի՞նչ է, ի՞նչ կայ, ըսաւ Լիզէթ, — վանեց զի իր անարժան վիճակին հակառակ նէ կը նշմարէր այն յանկարծահաս ահարկու դէպքը որուն ծնունդ կը տար այս Մարիոն անունը միայն, — մի՞ գուցէ արգիլուած ըլլայ Մարիոն անուանելը . . . ։ Բայց չաշխատիս ուրիշ կերպարան մ՚առնելու, սիրելի պարոն. այս միջոցիս շփոթիլը քիչ զուարթ է անկեցած կերպարանով։

Բայց Էթիէն ուշ չէր գտեր նորա խօսքին։ Մինչև քովս ցայտեց, թեև բանեց ուժգնապէս, և սոսկալի ձայնով մը գոչեց.

— Անուն Մարիո՛ն է . . . ։ Մարիոն Տըլորմ, այնպէս չէ՞.

— Մեղա՜յ, գոչեցի ձեռնամած և ծունկի վրայ գալով։

— Նէ՛ է, Աստուած իմ, նէ՛ ինքն է . . . Մարիոն Տըլորմը, պոռնիկ, բոզ . . . Մարիոն Տըլորմը, զաւկիս մայրը . . . կը սարսափիմ։

Էթիէն աչքը դէպ երկինք վերցուց, թևերը կարկառեցան, ակռաները կրճեցին, և շանթահար ծառի մը պէս գետնին ընկաւ։

— Մեռա՜ւ, գոչեցի, մեռա՜ւ, և ե՛ս եմ մեռցնողը։

— Հոգ մի՛ ըներ, սիրելիդ իմ, ըսաւ Լիզէթ. պարզ նուաղում մ՚է այս . . . ։ Անոր բանի պէս այս տղան ալ տխմար մ՚է եղեր . . . ։ Ա՛հ, յիրաւի, շնորհակալութեան արժանի ես առանց անգիւտ գանձ մը ձեռք անցունելուդ . . . ։ Թրջուած հա՛ մ՚է, կարծես, որ Փարիզի ամենէն աղուոր կինը իր սիրուհին ըրած ըլլալուն համար տղայի պէս կը լայ, կը նուաղի . . . ։ Այդ ճաշակին համեմատ կարգադրուելու համար ուրիշ Մարիոն Տըլօրմներ ուզածիդ չափ պիտի գտնե՛ս . . . ։ Եկո՛ւր, խօսք մտիկ ըրէ՛, պզտիկ, կարճ ու կարուկ ձևով կեցիր բարեաւ ըսէ այս կնապաշտ պարոնին, և հետս եկո՛ւր։ Տանս միջա Տը Լապրը-Սեդ փողոցն է, կը հաւատամ քեզ թէ պիտի զուարճանանք հոն։

— Տէ՛ր, Տէ՛ր, կը լսե՞ս այս խայտառակ կնկան խօսքերը . . . . Ու թող կը տաս որ ընէ տրտմութիւնս, որ կործանէ ապագաս, որ զիս առնելի ընէ Էթիէնին առջև . . . ։ Ո՛հ, արդար չե՞ս ուրեմն, Տէ՛ր։

Ճամբուն վրայ երկնցած սիրողիս քովը ծունր գնելով ճակատս կը զարնէի, երեսս կը ճզմէի։

— Բայց ինծ նայէ՛, ըսաւ Լիզէթ, սակայն ես այդ ամեն ծաղրելի ձեւերն ու շարժումները . . . ։ Յիրաւի, սիրելիդ իմ, աշխարհս տակն ու վրայ եղած է . . . քու համբաւիդ չափ բարձր չես մը՛լ։

— Ափրամ՛ս, գոչեցի, կորսուէ՛ առջեւէս . . . ։ Կ՚անիծեմ քեզի, լսեցի՞ր, կ՚անիծեմ։

— Հոգս անգամ չէ՛, ըսաւ Լիզէթ։ Այսպէս ալ բերնէդ չե՞ս ա-ղէր հեռու դալ. քու դիտմամբ բանդ է . . . համարումս վրայէդ կը վերցնեմ . . . ։ Գիշեր բարի, պզտի՛կ, գիշե՛ր բարի։

Ներքանին վրայ դարձաւ և ծառերուն ներքեւ աներեւոյթ եղաւ։

Սակայն Էթիէն կ՚սկսէր սթափիլ։ Կամաց կամաց ելաւ կանգնեցաւ և տեսաւ որ ծունկի վրայ եկած էի ձեռնամած, երեսս արտասուքով ողողուած։

Երկար ատեն ինծ նայեցաւ անմռունչ, մերթ ընդ մերթ սարսռելով և հարցնելով իրովի թէ արդեօք սոսկալի երազ մը տեսած էր։

— Մարի՛, ըսաւ վերջապէս, ետեւէս եկո՛ւր։

Էթիէն վերցուց զիս։ Ահարկու էր իր դեղնութիւնը. բայց երեսը բարկութեան ամենափոքր հետք ցոյց չէր տար։

Անտառէն դուրս ելանք։

— Էթիէն, ո՞ւր կը տանիս զիս, մռմռացի, տեսնելով թէ տունին ճամբայէն կը զարտուղի։

— Բարիզ կը վերադառնանք, պատասխանեց։

— Հիւանդ եմ, Էթիէն . . . ծունկերս կ՚երերան և չեմ կրնար քալել . . . ։ Անկարելի է աւելի հեռու երթալ . . . պիտի նուաղիմ։

— Վէնսէնի մէջ կառք կայ, քիչ մը քաջասրտութիւն ունեցի՛ր, Մարի։

Այս խօսքը քաղցր և հանդարտ ձայնով մ՚արտասանեց։ Երիտասարդին ձեռքը բռնեցի և շուրթերուս տարի։ Չքաշեց ձեռքը։

— Էթիէ՛ն, Էթիէն, պիտի ներե՞ս ինծ։

Գլուխն անդին դարձուց. բայց ժամանակ ունեցայ նշմարելու արտասուք մ՚որ բիբէն կ՚ընկնէր։

— Եկո՛ւր, ըսաւ։

Քանի մը րոպէէն ետք գիւղը մտանք։ Էթիէն սակարկութիւն ըրաւ գիւղացիի մը հետ որ իր կառքին երկու ձի լծեց, և կէս ժամուան մէջ մեզի մեր Սէնթ-Անթուան փողոցին տունը տարաւ։

Երիտասարդն առաջին սենեակը բացաւ, զիս նստեցուց, և խանդակաթ սիրոյ ու վշտի անպատում ձայնով մ'ըսաւ ինծ.

— Մարի՜ ... հազիւ կը համարձակիմ խոստովանելու քեզ թէ սակայն կը սիրեմ քեզի։

— Էթիէ՛ն, իմ Էթիէն։

— Ո՛հ, չէ՛, ա՛լ զգուիլ չեմ ուզեր....։ Մտածէ՛ անգամ մը, Մարի՛, թէ Մարիօն Տըլօրմ մէկ համբոյրը բի՞ծ մ'է... խե՞ղճ կորսուած կին, անկուն հրեշտակդ քաղցր. աղմին մէջը ակօսր էիր պժգալ, այնպէս չէ՞. Տէ Թուրնէլ փողոցին ծածուկ տարփածքէն ամօթահար՝ այս պատանին, անշուք բնակարանն ապաւինելու եկար....։ Մեռած սրտիդ նորածիլ և մաքուր սիրով մը յարութիւն տալու պէտք ունէիր....։ Ես գտնուեցայ քու առջև, ճակատագիրս այս է եղեր... չեմ ամբաստաներ քեզի, Մարի, վասն զի սիրուէտ զղջումի և երանութեան գեղեցկագոյն օրերս քեզ կը պարտաւորիմ։

Զիս պատուհանին քով տարաւ։

— Այս տեղէն առաջին անգամ քեզի տեսայ։ Կարծեցի թէ երկինք իր ամենէն փողփողուն հրեշտակներուն մին կը ղրկէ ինծ....։ Ո՛հ, չկորուսի այն յիշատակը....։ Յունիսի գեղեցիկ իրիկուններուն մին էր այն միջոցին. արևամայրին ոսկեգոյն ճառագայթներուն մէջ կը ծրարուէիր։ Ինծ այնքան գեղեցիկ երևցար որ քեզ նայեցայ երկար ժամանակ, շատ երկար ժամանակ ... ապա հարկ եղաւ անընդհատ քեզ նայիլ։ Կը կրկնեմ թէ ճակատագիրս կ'ուզէր որ նայիմ։ Կ'ըսուէր ինծ թէ աղքատ և խոհեմ գործուհի մ'ես։ Կարծեցի թէ Աստուած ինծ կը ղրկէր քեզի....։ Սխալեր էի. Սատանան քեզի ճամբուս վրայ հանեց։

— Գթութի՛ւն, գթութի՛ւն, սիրտս կը յօշես։

— Դարձեալ այս պատուհանին քով աղաւնիիս թևին տակէն տոմսակս առիր, և երբ շուրթդ թռչունին վզին դպաւ, կարծեցի թէ ուրախութեանս սաստկութենէն պիտի մեռնէի։

Էթիէն իր չորս կողմը նայեցաւ հեծկլտալով։

— Ահա աթոռդ, Մարի... վրան նստած էիր և կ'աշխատէիր երբ այցելութիւն կ'ընէի քեզ, և գործիդ վրայ ծռած տղուոր գլուխդ վեր կ'ընէիր ինծի նայելու և ժպտելու համար։ Ձմռան գիշերներն այս սենեակին քալուածքը կը հաշուէինք...։ Օր մը հոն կարդացի այն աղէտալի յօդուածը...։

— Լռէ՛, Էթիէն...։ Ո՛հ, կը տառապիմ... կը տառապիմ...։

— Ափսո՜ս, Մարի, չէի գուշակեր խռովութեանդ պատճառը, և սորված չէիր ինծի յայտնելու զայն։ Դուն ալ կը սիրէիր զիս և կ'ուզէիր յաղթուիլ իղձէն։ Կը հասկնամ այն փափուկ զգացումը որմէ գրգռուելով մերժեցիր հարազատ կինս ըլլալ. վճիռդ քու՝ իմ բերնէս ելած էր։ Հիմա, Մարի, ներէ՛ ինծի քեզի վերստին այս տեղ բերելս. կ'ուզէի յետին անգամ մ'ալ զանել յիշատակներս, կ'ուզէի վերստին աչքիս առջև բերել երանութիւնս։

— Էթիէ՛ն, զիս պիտի թողո՜ւս ուրեմն։

— Պէտք է, Մարի։

— Հապա մեր զաւակը, գոչեցի. մեր զաւակը։

— Խե՜ղճ արարած, որ ծնելէ առաջ դատապարտուած է, մռմռաց երիտասարդ պատկերահանը վշտագին։ Վկա՛յ է Աստուած թէ կ'ուզէի այս արարածին քով ապրիլ, բայց մանկան քովը մայրը պիտի գտնեմ, մայրը զոր տակաւին կը սիրեմ...։ Ճշմարիտ կ'ըսեմ, Մարի, թէ անկարելի բան մ'է քովդ մնալ, վասն զի վատութիւնս շատ սուղի պիտի նստի քեզ։ Պիտի կարծեմ թէ շուրթերուդ վրայ ուրիշներուն համբոյրները կ'զգամ յաւիտենապէս. Հեշտութեան յագուրդին պիտի յաջորդէ անէծքը, և քեզի միշտ բող Մարիօն Տըլօրմը պիտի անուանեմ...։ Ո՛հ, պատասխան մի՛ տար ամենևին, Մարի, և ոչ իսկ մէկ խօսք կ'ուզեմ լսել. որոշումս անդառնալի է իբր երկնից մէկ վճիռը.. ..։ Մնաս բարեա՛ւ... Մնաս բարեա՛ւ, գո՛ւն զոր այնչափ սիրեցի ...։ յիշատակս պահէ՛, և՝ եթէ կարելի է՝ թող քեզի համար երկրորդ անմեղութիւն մ'ըլլայ այն։

— Ո՛հ, պիտի խենթենա՛ս զիս....։ Մարիկ ըրէ, կը գուշակեմ, մեռնի՛լ կ'ուզես... լա՛ւ, ուրեմն միասին մեռնինք։

— Ի՛նչ. այդ քաջասրտութիւնը կ'ունենա՞ս, Մարի. կը համաձայնի՞ս այս հանդիսաւոր քաւութեան....։ Եկո՛ւր, թերեւս պիտի բացուին քեզի համար....։ Այո՛, մեռնի՛նք հիմա....։ Հոն, 'ի հանդերձելումն Աստուած մեզ ճանչնել պիտի տայ երկրային իրերը, եւ հոն նորէն մաքուր ու սուրբ սէրք պիտի գտնենք։ Զգիտե՞ս. քեզի ճանչնալէս առաջ, սաստիկ տրտմութեան ժամերուս մէջ, ուր ինձ արժանի կին մը գտնելու յոյս կը կորէի ... այն տրտմալի ժամերուս մէջ. Մարի, մեր հոգւոյն բանտարկող այս անարգ կապը խզելու խորհուրդը ունեցեր էի արդէն։ Գործատունիս մէջ... Թոյն ունիմ... պատրաստ ես, այնպէս չէ՞. հիմա կը գամ։

Էթիէն դուրս ելաւ մինչդեռ ես սասանումով, մոլորագին շլմորումով համակուած մնացի։

Ափսո՛ս. նահանջեցի այս մահուան գաղափարին առջեւ զոր ես ինքս ուզեր էի։ Զարհուրանքը բոլորովին գրաւեց զիս, եւ բնութեան յետին ծայր ապստամբիլը զգացի։

Սիրողս Թոյնը բերաւ եւ երկու բիւրեղեայ բաժակի մէջ պատրաստեց։

— Ահա մեր վիշտերուն վերջը, Մարի, ըսաւ։ Խմենք անահ, եւ Թող մեր հոգիները յետին համբոյրով մը Թռին։

Բաժակը շրթներուն կը մօտեցնէր։

Փայլակի մ'արագութեամբ ձեռքէն կորզեցի բաժակը, եւ սենեկին գետնի աղիւսներուն վրայ խորտակեցի։

Այս երկրորդ բաժակը առի եւ նոյնպէս խորտակեցի։

— Ոչ՛, գոչեցի, չէ՛, մեռնիլ չեմ ուզեր... չեմ ուզեր որ մեռնիս....։ Խենդութի՛ւն է, գլխու պատի՛ժ մ'է այս....։ Անցեալը ի՞նչ հոգ կ'ընես. ներկան եւ ապագան քուկդ, միայն քուկդ չե՞ն։

— Խաբեցիր զիս, Մարի, ըսաւ Էթիէն տխուր ձայնով մը։

— Ինքզինքս կը խաբէի... կը կարծէի Թէ ունիմ այս արիութիւնը... բայց չես կրնար այս մասին դժգոհիլ տկար կնոջ՞

մը դէմ որ մահուան առջև կը նահանջէ . . . : Էթիէն, քեզի միայն կը սիրեմ, կ'երդնում թէ քեզի ճանչնալէս առաջ ոչ զոք սիրած եմ. . . . Ո՜հ, դուրս ալքոտի չելնե՛ս, կը կապուիմ հետդ. ետևէդ կը գամ ամենուրեք. Մեռնի՜լ, բայց ոճիր մ'է մեռնիլը . . . : Արգանդիս մէջ գտնուող մանկիկն ինծի կը հրամայէ ապրիլ, նաև քեզ կը հրամայէ ապրիլ, կը հասկնա՞ս :

— Բայց այդ մանկան . . . հայրն ես եմ, ըսաւ աղերսալի խնդումով մ'ինծի նայելով :

— Կը սարսափիմ, Աստուած իմ :

— Վերջապէս, տիկին, բազմաթիւ տարփածուներուդ մէկին մինչև այս մնացածներուդ չեկած ըլլալը դժուարաւ կը հաւատացուի : Դու որ խարդախութեան գիտութեան այսքան քաջ հմուտ ես, կրցար դիւրաւ խաբել զիս, զի՛ս որ այնքան դիւրահաւան և միամիտ եմ : Սաստիկ վստահութիւնս զիս կ'արգիլէր նախանձոտ ըլլալու, և դուրսն ըրած շրջագայութեանցդ ժամանակ ետևէդ գալու գաղափարը մտքէս չանցաւ : Մարիոն Ֆլօրիին պէս կին մը կը պարտաւորի շատ սատանութիւններ, խորամանկութիւններ և դարձուածներ ունենալ զոր չեմ կրնար ճանչել . . . : Տէ Թուրնել փաղոցը շատ մօտ է ասկէ, տիկին . . . Թերևս մերթ ընդ մերթ հոն կ'երթայիր վաղեմի պաշտողներուդ մէկին հետ ծաղրելու համար այն միամիտ պզտիկ պատկերահանը, որ քեզի առաքինի և բնապէս անարատ երիտասարդուհի մը կը կարծէր, այնպէս չէ՞. . . : Անանց պատմելու արժանի գեղեցիկ իրողութիւն մ'էր այս : Մարիոն . . . : Ո՞վ գիտէ, չէի զարմանար եթէ գրաւ մը դրած ըլլայիր իմ մասիս :

— Չե՛ս հաւատար այդ բանին, չէ՛, չե՛ս հաւատար, գոչեցի : Վերջապէս արժանի եղայ այդ սոսկալի խօսքերուն . . . : Այո՛, իրաւունք չունիմ տրտնջալու, բայց ինքզինքս արդարացնելու իրաւունքը ունիմ :

— Մտիկ կ'ընեմ, խօսէ՛, ըսաւ այն հանդարտութեամբ որ Վէնսէնի անտառին մէջ կը սասանէր զիս :

Եւս պահարան մը կար . բացի արագօրէն և նամակներս դուրս հանեցի : Պատին մէջ փորուած այս պահարանին մէջ պահեր էի զանոնք :

— Էթիէն, վկայ է Աստուած . . . և իր առջև կ'երդնում քեզ թէ անառակութեանս ժամուան մեղսակիցներուս և ոչ մին տեսայ հօս բնակիլ սկսելէս 'ի վեր։ Եթէ այն ապիրատ կնիկն ամէն բան երևան հանած չըլլար, բոլոր օրերս երանութեանդ պիտի յատկացնէի. զեղջ պիտի չզգայի ոչ փարթամութեան ուրախութեանց, և ոչ սուտ հեշտութեանց վրայ . . . ։ Սակայն դուն ալ տեսար թէ ինչպէս օրհնեցի երկինքը երբ իմացայ թէ մայր եմ։

Էթիէն վերստին սկսաւ յուզուիլ։

Իր ձեռներուն մին բռնեցի և արտասուքովս ողողեցի։

— Էթիէ՛ն, Էթիէ՛ն, անցեալըն նկատմամբ մեղադրէ՛ զիս, խայտառակէ՛, բայց մի՛ ըսեր թէ սէրդ մոռնեցի . . . վասն զի, յիրաւի, շատ կը վշտացնես զիս այդ ըսելով։ Սրտիդ մէջ այդքան անգթութիւն չկայ։ Ըսէ՛ ինձ, հեռու ապրիլ, չարչարուելով ինչ բանէ կրնաս երկնչիլ. աշխարհիս արհամարհանքէ՞ն. զիս ճանչող անձանց նախատական ժպիտէ՞ն։ Երէկ, Էթիէն, այս ամէն բաներէն ամենևին վախ չունէիր, ինչո՞ւ ուրեմն այսօր վախնաս։ Այս ադամանդները . . . նայէ՛, մեծագին հարստութիւն մ'է . . . ապարանքս պիտի վաճառեմ, և հեռաւոր երկիր մը պիտի երթանք միասին ապրելու համար։ Ինչո՞ւ թշուառ կնկան մը ներելի չըլլա՞յ վերստին սկսիլ իր էութիւնը։ Այնքան սիրով պիտի շրջապատեմ քեզի որ մինչև անունս պիտի մոռնաս։ Հապա աղջկանդ համբոյրները, Էթիէն . . . վասն զի, իրաւունք ունէիր, անշուշտ աղջիկ մ'է արգանդիս մէջ կրածս . . . չե՞մ խորհիր թէ որքան քաղցր և թանկագին պիտի ըլլան անոր համբոյրները։ Երջանկութիւն, կ'ըսես. բայց, Աստուա՛ծ իմ, տակաւին երջանկութիւն կը մնայ մեզ . . . ։ Փախինք, հաւատա ինձ, փախինք միասին։ Էթիէննս, ուրիշ երկրի մը մէջ հարուստ պիտի ըլլանք, երջանիկ պիտի ըլլանք . . .

— Հարո՛ւստ՝ անպատուութեամբդ, երջանի՛կ՝ վատաբարոյութեամբս . . . ։ Այդքան շատ կ'արհամարհես զիս, գոչեց տեսակ մը կատղութեամբ։

— Ո՛հ, լռէ՛, լռէ՛։

— Ո՞ւր տարաւ քեզ այդ աղամանդներդ . . . . Ցէպարօ , Լէպրի , Սէն-Եօրլէն , Գըբլինեան . . . նաև Կէպրիան , Գոթլիկ , Մարսիլեաց , Անըքթէր և չըխուեմ դեռ ուրի՛շ ։ Հոսէ գանձակալը և Տը Մէս նախագահը նոյնպէս առատաձեռնութիւն ունեցան , բայց դարձեալ իրենց ընծան բերին ։ Կը տեսնես , Մարիօն , որ թէ-փրանսական՝ լրագիրը շատ մեծ պարագաներ իմացուց ինծ . . . . դիւանն պատմութիւնդ . . . ։ Այդ գոհարներ՛ը . . . այո , իրաւ տանուլով հարուստ կ՚ըլլայինք . . . ։ Հաշի՛ւն եղած է . . . . Հարիւր հազար թալեր կ՚արժեն անոնք . . . ։ Տէ՛ , աէ՛ , ապիրատ պատկերահան , բոկոտն դու , հարիւր հազար թալերի համար արհամարհանաց արժանի նետուէ՛ իբր Ճարակ , քէչ մ՚ուզի համար բոցի մը յանձնէ՛ յարգուած անուն մը , հօրդ անունը . . . ։ Այս ներսը հետ հեռաւոր երկիր մը պիտի երթաս . իր վաճառուած համբոյրներուն մնացորդը պիտի տայ քեզ . . . Եւ երջանիկ պիտի ըլլաս . . . ։ Հայս կը կատակե՞ս . պիտի չփորձե՞ս աղջկանդ համբոյրները . . . աղջկա՛նդ որ երակներուն մէջ Մարիօնին արիւնը պիտի ունենայ . . .

— Բայց մեռցո՛ւր զիս ; մեռցո՛ւր , գոչեց անոր . մեռցնելդ ոչ այնքան սոսկալի է որքան այդ անողորմ խօսքերը ինծ ըսելդ ։

Եթիէն սարսռեցաւ և ձեռքը Ճակատը տարաւ ։

— Այո՛ , իրաւունք ունիս , մեռնիլ , անիրաւ եմ այդպէս քեզի ամբաստանելու , խե՜ղճ կին . . . ։ Վատութիւն մ՚է ըրածս . . . կը հասկնամ . բայց եթէ ապրէի , եթէ հեռու ապրէի , ամէն օր կ՚ընէի այս վատութիւնը . . . այդ Մարիօն Տըլօրմ անունն անընդհատ ականջիս մէջ կը դռնար և գլխիս պտոյտ կը տար ։ Տարբեր կ՚ըսեմ թէ՝ անկարելի բան է . . . ։ Լաւագոյն է մեռնիլս . . . վասն զի ամեն բանի հակառակ դէպ ՚ի քեզ կը մղուիմ . . . ։ Ցաւահատութեանդ մէջ այնքան գեղանի ես , որ փափաք կ՚զգամ թեւերս քեզ բանալու և անպատուութեան հետ ամուսնանալու . . . ։ Դժոխային ձայն մը հօս , այս կուրծքիս տակէն կը գոչէ ինծ որ ընդունիմ առաջարկութիւններդ . . . ։ Կը կարծեմ թէ կը յաղթուէի այդպիսի հրապոյրներու առջեւ , ո՛րքան . . . ։ Մնաս բարեաւ ։

Դուրս ելաւ սենեակէն առանց ժամանակ տալու ինծի որ զինքը բռնեմ։

Խուցին ետեւէն վազեցի՝ կոկծալի աղաղակներ արձակելով։ Աղաղակներս աւելի շտապեցին անոր քայլերը։

Փողոցը հասայ։

Մութը կ՚սկսէր տիրել. փոթորիկ մը կը կազմուէր և խաւարը կը կրկնապատկէր։ Ա՛լ Էթիէնը չտեսայ։

Աղաղակներս լսելով եկող քանի մը դրացիներ բսին ինծի թէ Էթիէն քաղաքատունին կողմն ուղղուած էր քիչ մ՚առաջ։

Դէպ այն կողմն արշաւեցի։

Անձրեւի խոշոր կաթիլներ փողոցի ուղխերուն եւ եսեփ կը տային և շանթն երկնուստ կ՚որոտար։ Անցորդներուն հարցում կ՚ընէի. բայց քանի կը յառաջէի, անցորդները կը նուազէին։ Ցեղատարափ անձրեւը սկսած էր, և իւրաքանչիւր որ շրջակայ յարկերուն ներքեւ պատսպարան մը կը փնտռէր։

Ընչասպառ առջեւ գացի, Էթիէնը կանչելով մոլորաբար։ Գիշերն ու փոթորիկն իրենց խաւարովը կը շրջապատէին զիս, և կայծակին շառաչիւնն անձայնելի աղաղակներս անլսելի կը դարձնէին։

Քաղաքատունը անցեր գացեր էի, և ո՛չ ինչ Ճամբոյ բռնելս չգիտէի։

Սէն գետը գնաց. գիտեմ դէպ ՚ի Թամիզը, կամ մերձակայ Մօթերուն անելանելի բաւիղը նետուեցայ։

Ցանկարծ արագանց փայլակ մը լուսաւորեց Հրապարակը, և Էթիէնին գետին երկայնութեամբը վազելը տեսայ։

Վախը թեւեր տուաւ ինծի։

— Էթիէն, ո՛ւր կ՚երթաս, թշուառ.

— Մեռնելու։

— Օգնութեան հասէ՛ք, օգնութիւն։

Բայց որոտումը մեր չորս կողմն աղետալի դղրդիւններով գոռաց, և մրրիկը ձայնս արգիլեց։ Ի նանիր ջանք ըրի Էթիէնը զգեստներէն բռնելու. նա հրեց զիս և ոստնելով գետոյն պարապին վրան ելաւ։

Իրեն պէս արագութեամբ քովը հասայ զինքը բռնելու համար։

— Լսէ՛, ըսի, քանի որ աղետալի որոշումի մը մէջ հաստատ կը կենաս, քանի որ ոչ աղաղակներս և ոչ արտասուքս կըրնան գութդ շարժել, գիրկդ առ զիս... որոշած եմ... միասի՛ն մեռնինք ։

— Որոշա՞ծ ես մեռնիլ, Մարի՛. մռմռաց սարսռելի ձայնով մը։

— Այո՛, ա՛լ չեմ ուզեր ապրիլ առանց քեզի։

Ձեռքը յամրաբար ինծի երկնցուց, և պահ մ'ետք իր քթին տաքի վրայ կը գտնուէի։

— Աստուա՛ծ իմ. Աստուա՛ծ իմ. գոչեց Էթիէն վերջին նայուածք մը վերցնելով դէպ երկինք, հաճէ՛ ողորմութեամբդ ընդունիլ այս խեղճ կնկան հոգին և իմս։ Գիտես, Աստուած իմ, որ մեր կեանքն աղարտուած էր, մեր երջանկութիւնը ջնջուած... այս աշխարհիս մէջ այսուհետև մեզ կը մնար միայն յուսահատիլ և լալ, եթէ ապրէինք....։ Թո՛յլ տուր մեզ՝ որ յաւիտենութեան մէջ ապաւէն մը փնտռենք։

— Էթիէ՛ն... մեռնելէ առաջ... ներէ՛ ինծի։

— Ներէ՛ր, ներէ՛ր, ըսաւ ինծ. սիրտդ սրտիս, շուրթե՛րդ շուրթերո՛ւս վրայ։

Փոթորիկն ակնախտիղ և արագաթև լոյսով մը լուսաւորեց այս յետին համբոյրը. ապա Էթիէն զիս հետը քաշելով նետուեցաւ անդունդն որ մեր ոտից ներքև խորունկ կերպով կը մռնչէր։

ՎԵՐՋ. ԵՐՐՈՐԴ ՀԱՏՈՐՈՑ